


ԵՐԿԱՍԻՐԵՑ

ՄԱԿԱՐ ԵՊԻՍ. ԲԱՐԽՈՒՏԱՐԵԱՆՑ



ԲԱԳՈՒ

ՏՊԱՐԱՆ „ԱՐՕՐ"

1895.

Digitized by Google

# ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԻԿ

Իբրև հոգևոր որդի Ձերդ Վեհափառութեան՝ պարտաւոր զգացի արտայայտել իմ ամենախորին երախտագիտութիւնը մի վայելուչ ընծայով։ Այս պատճառաւ երկար մտածեցի ընծայել իմ Հոգևոր Ծնողին այնպիսի մի նուէր, որ թէ արժանաւոր լինի և թէ մշտակայ։ Բայց որովհետև սիրում է Ձերդ Վեհափառութիւն հայրենի հնութիւնները և աստուածակոխ Ա. երկիրը, ինչպէս ակներև է Ձերդ Հայրութեան սրտաշարժ և հոգեշունչ բանահիւսութիւնից— «Հրաւիրակ երկրին Արարատայ» և «Հրաւիրակ երկրին Աւետեաց», վասն որոյ բարւոք համարեցի նուիրել Հոգեծին և Բազմերախտ Հօրդ-իմոյ՝ «Արցախ»-ը, որ պատկերացնում է Մեծն-Հայաստանի 15 նահանգներից մէկի հայկական աւերակների և հնութեանց փոշիները և Յիսուս Քրիստոսի ձեռագիր աւետարանների յիշատակարանների փշրանքները։

Յուսալով արժանանալ ընդունելութեան և Հայրական օրհնութեան մնամ նուաստ որդի Ձեր հոգևոր

Մ. եպիսկոպոս Բարխուտարեանց։

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

*Այնքան անհոգ եւ անտարբեր ենք, որ չգիտենք թէ ինչ հնութիւններ կան մեր հայրենիքում՝ մեր նախնիքներից մեզ աւանդ մնացած. չգիտենք թէ պատմական փշրանաց ինչ յիշատակարաններ կան թաքնուած մեզ շրջապատող լեռների, ձորերի եւ դաշտերի մէջ. չգիտենք թէ ազգային անցեալ պատմութեան մութ կէտերը լուսաբանող ինչ արձանագրութիւններ կան աւերակ վանքերի եւ անապատների, մատուռների եւ եկեղեցիների, խաչարձանների եւ տապանաքարերի վերայ եւ մագաղաթեայ գրչագիրներ, յիշատակարաններում: Մեր անտարբերութիւնից օգուտ են քաղում օտարները:*

*Մէն մի հայրենի նահանգ հետազօտելն անկ է ընկերութեանց եւ հարուստ անձանց, որպէս զի կարողանան նիւթականի ուժով՝ մասնագէտ, հմուտ անձանց եւ ականաւոր լուսանկարների ձեռնով 'ի լոյս հանել նախնական ամեն մի հնութիւն եւ արձանագրութիւն իւրեանց իսկական ոճով եւ ձեւերով: Սակայն տեսնելով որ ժամանակի անողոք ճիրաններն լափում եւ եղծում են մեր թանկագին հայրենիքի—Արցախի—ամենապատուական հնութիւնները եւ արձանագրութիւնները. տեսնելով որ տգէտ եւ թշնամի ձեռներ քանդում, աւերում եւ ոչնչացնում են հայրենի սրբազան աւանդները. տեսնելով որ ցեցերն կրծում եւ անյայտացնում են անգին ձեռագիրների յիշատակարաններում եղած պատմական մարգարիտները եւ խոնաւութիւնն ու անհոգութիւնն կլանում են պատմական ակունքները. վերջապէս տեսնելով որ ընկերութիւններն եւ հարուստներն ցուրդ չձեռնարկեցին Արցախի հետազօտութեան գործին, վասն որոյ պարտք համարեցի սիրով կրել ամեն*

Digitized by Google

նեղութիւն, աղքատօրէն հետազօտել, զէթ ազատել մնացեալ յիշատակարանները աւերիչ ձեռքերից, ցեցերից եւ խոնաւութիւնից եւ ժամանակի ճիրաններից եւ գոնէ կազմել մի ուղեցոյց՝ ապագայ հմուտ մասնագէտների համար: Զոր օրինակ մեղուն ծաղկից ծաղիկ ոստոստելով հաւաքում է ծաղկանց ընտիր հիւթերը եւ կազմում պատուական մեղր. նոյնպէս շրջելով գաւառից գաւառ, գիւղից գիւղ, աւերակից աւերակ եւ սարից դաշտ՝ կազմեցի «Արցախ-ը»:

Գործիս մէջ յականէ յանուանէ նշանակեցի Արցախեան նահանգի նախկին եւ փոփոխեալ սահմանագլուխները եւ սոցա մէջ գտնուած լեռները եւ լեռնակները, դաշտերը եւ դաշտակները, գետերը եւ գետակները, մեծ-աղբիւրները եւ լճակները, նաւթահանքը եւ հանքային ջուրերը, ոսկու եւ արծաթի, պղնձի եւ շիպի, երկաթի եւ պողպատի, երկանաքարի եւ շինութեանց քարերի հանքերը, քարայրերը եւ վիմափորները, անտառները եւ մացառները, պտղատու եւ անպտուղ ծառերի եւ թփերի տեսակների անունները: Երկասիրութեանս մէջ զետեղեցի ինքնաբոյս եւ ցանուած ծանօթ բանջարեղինաց եւ կանաչեղինաց, ծաղիկների եւ խոտերի, ընտանի անասնոց եւ գրաստուց, սուրբ եւ անսուրբ կենդանեաց եւ գազանաց, բնիկ եւ երթեւեկ հաւքերի, սողունների եւ զեռունների, օձերի եւ միջատների, ճանճերի եւ մժղուկների եւ միանգամայն տեղական բերքերի տեսակների անունները (տեղ տեղ տեղական բարբառով):

Ըստ չափու ձեռնհասութեանս որոշակի նշանակեցի Ուտիական եւ Արցախական բոլոր գաւառների սահմանները [1]) բացի մի քանի գաւառների միջնասահման գծերից,

---

[1]) Գաւառների սահմանագծերը որոշելու համար՝ հնարաւոր զգուշութեամբ հետեւած եմ պատմութեանց, վանքերի արձանագրութեանց, մի քանի ձեռագիր աւետարանների յիշատակարաններին, Աղուանից կաթուղիկոսներին տուած շահական հրովարտակների, Էջմիածնի և Աղուանից կաթուղիկոսների կոնդակներին մատնանիշ արած սահմանագծերին և բազմադարեան յարատեւած աւանդութեանց կանոնի զօրութիւն ստացած տրամադրութեանց.

Digitized by Google

զորս անհնարին եղաւ ճշտիւ որոշել, վասն զի չկային միջնազիծ սահմանները որոշող բնական նշաններ, ինչպէս են գետեր, ձորեր, լեռներ, եւայլն: Իսկ մնացեալ բոլոր գաւառների չորս սահմանագլուխները որոշելուց յետոյ՝ կարգաւ նշանակեցի նոյն չորս սահմանների միջեւ գտնուած չէն, կիսաւեր եւ աւերակ քաղաքների եւ գիւղերի, վանքերի եւ անապատների, մատուռների եւ բերդերի, բերդերի եւ ղղեակների տեղը, դիրքը, անունները, բնակչաց ծխաթիւը, արականաց եւ իգականաց որքանութիւնը, քահանայից եւ եկեղեցեաց քանակութիւնը, միամեայ ծնելոց, պսակելոց եւ ննջեցելոց թիւերը, վարելահողերի եւ պտղաբերութեանց աստիճանները, օդի, կլիմայի եւ ջրի յատկութիւնները եւ ամենից երկար ապրողի տարեթիւը:

Համառօտ ծանօթութիւնները գրեցի մէն մի երեսի ստորոտում, իսկ ընդարձակները՝ գրքիս վերջում, ուր առանձին առանձին զետեղուած են նաեւ բոլոր յատուկ անուանց, չէն եւ աւերակ քաղաքների, գիւղաքաղաքների, գիւղերի, վանքերի եւ բերդերի ցանկերն եւս: Այս ամենը յայտնելուց յետոյ յայտնում եմ նաեւ.

Ա. Հետազօտութեանց ժամանակ ո՛չ կռատանց հետք գտայ եւ ո՛չ մեհեանների, ոչ Արցախական եւ ո՛չ Ուտիական նահանգներում։ Միայն գտայ որ կռապաշտ դարերի ընթացքում ամփոփուած են ննջեցեալներն չորս ձեւով.

Նախ՝ ահագին, խեցեղէն կարասներում:

Երկրորդ՝ երեք ահագին քարերի տակ՝ կռնկի վերայ երկարցրած:

Երրորդ՝ մեծ մեծ քարերի տակ նստեցրած դիրքով։

Չորրորդ՝ աւազանանման փիմափոր տապաններում, որք ունին եւ կափարիչ քարեր: Իւրաքանչիւր ամփոփեալ, թէ արական եւ թէ իգական, իւր հետ ունի զերեզմանում իւր զէնքերը եւ զարդերը: Բացի իգականաց զարդերից լինում են խեցեղէն պուլիկներով լի ուլունքներ։

Digitized by Google

Բ. Մի մղոնը գործ ածած եմ 7 վերստի տեղ, այնպէս 7 վերստն համասար է մի մղոնի:

Գ. Չափելու համար գործ ածած եմ մ ե տ ր չափը, որովհետեւ գրեթէ ընդհանրացած է չափս ամենուրեք:

Դ. Անխտիր չափած չեմ բոլոր վանքերի, եկեղեցիների եւ բերդերի երկարութիւնները եւ լայնութիւնները, այլ միայն չափած եմ հարկ համարածներս։

Ե. Գործ ածեցի ժողովրդական ս և ռ բառը, որ կարճ, գեղեցիկ եւ իսկական իմաստը յայտնող է եւ որ նշանակում է լեռների եւ լեռնակների թրածեւ երկարած գագաթնագիծը: Ըստ մեր կարծեաց ս և ռ արմատից հետ բաղդուած է շարականի սեռակնածեւ սեռ-ակն-ծեւ բառն. այսպէս է եւ ճախարակի իլկի լիսեռն, լի-սեռ բառն:

Զ. Առանց ժանձրանալու ընդօրինակեցի բոլոր գրչագիրների յիշատակարաններից (արժան համարուած) հատուածներ եւ պատմական հետաքրքիր կտորներ եւ վանքերի, եկեղեցիների, անապատների, մատուռների, ապարանների, խաչարձանների, մզսունքների, եւ մահարձանների արձանագրութիւնները, մանաւանդ պատմականները:

Է. Արցախեան Ջրերից գ ե տ անուանեցի միայն Թարթառը, Հակարին եւ Աղստեւը, իսկ գ ե տ ա կ եւ վ տ ա կ մնացեալ Ջուրերը, քանզի ամբողջ ամառ եղանակներում չեն հասնում Կուր գետին:

Ը. Համարեա թէ շատ լեռների, լեռնակների, բլուրների եւ բլրակների եւ սեռերի վերայ արձանացած են վաղեմի, քարեայ, անպաճոյճ եւ անարձանագիր խաչեր: Այս անխօս խաչարձանների մասին աւանդութիւնն ասում է. Մի մասն տնկուած է Ս. Գրիգոր Լուսաւորչի հրամանաւ, մի մասն Ս. Գրիգորիսի եւ միւսն՝ Ս. Մեսրովպի:

Թ. Հնարաւոր եղածին չափ նշանակեցի ուսումնարանաց անունները, թիւը, աշակերտաց ողքանութիւնը եւ դրամական մուտից եւ ելից քանակութիւնը:

Ժ. Արցախեան մէն մի գաւառ ունեցած է իւր սեպ-

Digitized by Google

հական վանքը եւ իւր առանձին գաւառական առաջնորդը միաբաններով համդերձ, որ նստելով իւր իսկ վանքում հովուած է նոյն գաւառի բանաւոր հօտը. օրինակ Դիզակ գաւառն իբրեւ եպիսկոպոսարան նախ ունեցած է Դիզափայտ վանքը, ապա Կաւաք, ապա Գտիչ եւ յետոյ Սպիտակ-Խաչ վանքը. Վարանդան՝ Ամարասը եւ Հիրհերի տաճարը եւ երբեմն Քոշիզի շինութիւնը. Խաչենն՝ Մեծ-արանց կամ Մեծ-իրանաց վանքը եւ Մայրաքաղաք, Ըոստակ գաւառն՝ Դատի վանքը, Ջրաբերդն՝ Ջրվշտկի կամ Եղիշ-առաքելի վանքը, Մեծ-Կողմանք կամ Կիւլստանն՝ նախ Հոռեկայ եւ ապա Ամենափրկիչ վանքերը, Գարդմանն նախ Մլզնաքերդ եւ յետոյ Թարգմանչաց վանքերը, Փառիսոսն՝ նախ Փառիսոսի, ապա Խորանաշատի եւ յետոյ Չարեքայ վանքերը, Քուստի կամ Քաւս գաւառն Շխմուրատայ եւ Վարագայ վանքերը, եւայլն, եւայլն։ Դեռ 1828-ին շէն եւ պայծառ եղած են վանքերս, ինչպէս վկայում են ականատեսներն: 1764 թուին հետեւեալ վանքերում գահակալում էին Աղուանից հետեւեալ եպիսկոպոսներն

Մելքիսեթ արքեպիսկոպոս առաջնորդ Եղիշառաքելի,
Ազարիա եպիսկոպոս „ Հոռեկայ,
Զաքարիա եպիսկոպոս „ Գանձակի,
Իսրայէլ արքեպիսկոպոս „ Թարգմանչաց,
Օհաննէս „ „ Փառիսոսի վանից:

Բայց յայտնի է թէ Աղուանից կաթուղիկոսութեան մահից յետոյ, այս է 1828 թուականից յետոյ վանքերն հետզհետէ սկսած են զրկուիլ եւ անզաւականալ միաբանական խմբերից եւ անխնամ մնալով քայքայուիլ մեծ մասամբ: Լուսահոգի Բաղդասար մետրապօլտի կենդանութեան ժամանակ շէն եւ պայծառ տեսած եմ Եղիշ-առաքեալը, Ինն մասը, Գանձասարը, Ս. Յակոբը, Պտկեսբերգը, Ամարասը, Գտիչը եւ Սպիտակ-Խաչը եւ Ղեւոնդեանց անապատը վանահայրերով, միաբաններով եւ ուսումնարաններով:

Զոր օրինակ քաղաքական քուռն հօսանքներից ստիպ-

Digitized by Google

եալ տեղից տեղ փոխադրուած է յաճախակի Հայոց ընդհանրական վերաբերմանն, նոյնպէս ստէպ ստէպ տեղից տեղ փոխադրուած է եւ Աղուանից կաթուղիկոսարանն. որ հաստատուած է

Ա. Դարբանդ կամ Ջօղա.
Բ. Գիս (ըստ աւանդութեան).
Գ. Պարտաւ
Դ. Կթղըկոսարան (Դոնի շինի հանդէպ).
Ե. Եղիշ-առաքեալ կամ Ջրվշտիկ
Զ. Գանձակ,
Է. Քարահերձ.
Ը. Խամշի վանք,
Թ. Հաղբատ.
Ժ. Գանձասար.
ԺԱ. Ջալէթ
ԺԲ. Վերստին Գանձասար, ուր եւ վախճանուած է կաթուղիկոսութիւնն Աղուանից եւ թաղուած վերջին Սարգիս կաթուղիկոս Ջալալեանցի գերեզմանում: Աղուանից կաթուղիկոսների մասին գրելու եմ «Աղուանից պատմութեան» մէջ եւ ոչ այստեղ:

ԺԱ. Որովհետեւ արդէն գրած եմ «Աղ. երկ. եւ Դրացիք» գրքում, վասն որոյ աւելորդ համարեցի գրել Արցախի կրօնական եւ քաղաքական կենաց մասին եւ գիւղական հիւանդութիւնների եւ բժշկութիւնների եւ կերակուրների մասին, որք գրեթէ նոյն են ամենայն մասամբ, միայն Արցախն չունի խնկալ կերակուրը:

ԺԲ. Հող. գրեթէ առհասարակ Ջրաբերդ, բազմարդիւն (այժմ բացի Մուղանի դաշտից) եւ զաճային են ամբողջ դաշտային գաւառների հողերն, որովք վարձատրուում են երկրագործներն եւ հովիւներն եւ անասնապահներն առատագոյն ցորենով, գարիով, քօժօժով, բամբակով եւ ամենատեսակ ազնիւ պտուղներով, եւ ազնիւ ոչխարով, տաւարով, գոմէշով, ձիով եւ ուղտով: Միջակ արդիւնաւէտ եւ

Digitized by Google

անջրդի են Դիզակի եւ Վարանդայի եւ Բերդաձորի հողերն, նուազ արդիւնաբեր՝ Խաչենի, Հարճլանքի, Վակունիսի, Ծարի, Ըռստակի, Ջրաբերդի, Կիւլստանի, Գարդմանի, Փառիսոսի, Քասի եւ Զաւէի վերնամասի հողերն:

ԺԳ. Ջուր. Համարեմ թէ ընդհանրապէս առատ, ամենապատուական եւ վճիտ են Արցախի բոլոր գաւառների ջրերն եւ միանգամայն ականաբուղխ. իսկ դաշտայինն (Ուտիական նահանգինն) առհասարակ գետերի, գետակների, առուների եւ առուակների եւ ուրեք ուրեք ջրհորի ջրեր են, որք լինում են յաճախակի պղտոր եւ անախորժ, սակայն ոչ վատառողջ:

ԺԴ. Որթ. Բացի Գանձակի որթից, որ ջրաբբի է, սակայն հեծած չէ ծառի վերայ, դաշտային բոլոր որթերն (այգիներն) ամբողջապէս ջրաբբի են եւ բարձրացած ծառերի վերայ. Արցախեան գաւառներինն ընդհանրապէս անջրդի են, որոց մատերը (ծայրերը) ամեն գարնան յապաւում են եւ կապոտում մարդաչափ բարձրութեամբ ցցած սարու (ձողերի) վերայ, ինչպէս եւ Գանձակինն:

ԺԵ. Հագուստ. Թէ՝ արականաց եւ թէ իգականաց զգեստներն ունին իւրեանց յատուկ ձեւը, զորս տեսած կը լինի ամեն ոք, քանզի համարեմ թէ ամեն ուրեք գտնուում են արցախեցիներ։ Սակայն հարկ է յայտնել թէ մի քանի տարիներից վեր մուտ գործած են յԱրցախ Թիֆլիսի եւ Եւրոպայի սեպհական արականաց եւ իգականաց զգեստների ձեւերն:

ԺԶ. Բնակարան. Գաւառներում տակաւին ամենամեծ մասամբ գետնափոր են բնակարաններն եւ անշուք. բայց նոր 'ի նորոյ սկսած են շինել եւ երկյարկանի գեղեցիկ բնակարաններ: Ամենամեծ մասամբ գեղեցկաշէն են քաղաքների բնակարաններն:

ԺԷ. Վանքեր, մատուռներ եւ բեմեր. Կարծում եմ թէ ոչ մի նահանգ այնպէս հարուստ չէ այսպիսի սրբավայրերով եւ ուխտատեղիներով, ինչպէս Արցախ-

եան նահանգն. բայց եւ այնպէս ոչ մի նահանգի վանքեր, անապատներ եւ ուխտատեղիներ այնպէս բոլորովին զըրկուած չեն իրեանց բարոյական եւ նիւթական փառքերից, ինչպէս Արցախեան վանքերն եւ սրբավայրերն։

ԺԸ. Ցրուած եւ գերուած հայեր. Բոլորովին զարմանում եւ սրտաճմլիկ դրութեան մէջ է ընկնում հետազօտող հայն, երբ տեսնում է միլիօնաւոր հայ բնակիչներով հարուստ Արցախն իսպառ դատարկուած։ Այո՛, դատարկուած են իրեանց հայ եւ հայադաւան բնակիչներից Պիան, Մուղան, Վարդանակերտ, Արանռոտ, Տրի, Ռոցպատեան, Աղուէ, Տուչքատակ, Ուտի-առանձնակ, Ճիկաշէն, Կողթ, Բերդաձոր, Հարճլանք, Վակունիս, Ծար եւ Ըռստակ գաւառներն. իսկ կիսով չափ կամ ամենամեծ մասամբ դատարկուած են Գարդման, Փառիսոս, Քաւս կամ Քուստի, Ջաւէ, Ջրաբերդ, Խաչեն, Վարանդայ եւ Դիզակ գաւառներն։ Ո՞ւր եղան սոցա հայ բնակիչներն։— Մի մասն կերակուր եղաւ 1798—1799 թուի սովին եւ ժանտախտին. մի մասն գերի գնաց Պարսկաստան, մի մասն գաղթեց Տաճկահայաստան, մի մասն Պարսկաստան, մի մասն Շաքի եւ Շամախի, մի մասն Նախեթ եւ Վրաստան, մի մասն Բագու, Ղուբա, Դարբանդ եւ Ռուսիա։ Տասնից մին հազիւ մնացած է այսօր, սիրելի ընթերցող, եթէ չես հաւատում ինձ, ականէ աւերակների ցանկը, որ կայ գրքիս վերջում։

ԺԹ. Օտար ցեղեր. Դաշտային գաւառներում բնակում են այժմ Արաբ, Սուննու եւ Շիա մահմետականներ. որք առհասարակ երթեւեկում են ամարանոց եւ ձմեռանոց եւ տարուայ մեծ մասը անցուցանում են թաղիքեայ վրաններում։ Թաթարաց ցեղից մնացորդներն բնակում են Ջակամ կայարանից վերեւ համանուն գետակի հովիտներում։ Մարաց ցեղից քրդեր բնակում են Ծար, Վակունիս, Հարճլանք եւ Բերդաձոր գաւառներում. իսկ Քոլանի կոչուած ցեղն՝ Ըռստակ գաւառում։ Սոքա

Digitized by Google

առհասարակ յետոյ մուտ գործած են:

Ի. Արտահանութիւն. Նահանգս արտահանում է ցորեն, գարի, բոժոժ, բամբակ, բուրդ, բրինձ, լուբիայ բակլայ, սոխ, սխտոր, գետնախնձոր, ստեպղին, ճակնդեղ, ծմերուկ, սեխ, վարունկ, խաղող, գինի. օղի, ընկուզ, իւղ, պանիր, մեղր, կով, եզն, գոմէշ, ոչխար, այծ, խոզ, ձի, ջորի, ուղտ, արջենի, աղուէսենի, ընձենի, գայլենի, սամուր (դէլէ) գոմէշենի, տաւարի, ոչխարի, ձիու, ջորու, խոզի կաշիներ եւ մորթիներ, պատուական գորգ, կարպետ, մափրաշ, խուրջին, ջրաղացաքար, տապանաքար, ձուկն, ձկնհաւկիթ եւ ձկնապուխտ:

ԻԱ. Շրջակայութեանս ժամանակ կրեցի մեծ նեղութիւն. երեք անգամ ազատուեցայ արիւնարբու աւազակաց ձեռքն ընկնելուց, երեք անգամ ձիու տակ մնացի վտանգաւոր տեղերում, այս է սահեցաւ ձիու ոտքերն, ընկաւ ուժգնակի գետնին եւ ես մնացի ձիու ներքեւ. երեք օր մնացի անսուաղ ծար գաւառում հաց չգտնելու պատճառաւ:

ԻԲ. Այս ամենը յայտնելուց յետոյ՝ յայտնում եմ հրապարակաւ իմ երախտագիտութեան խորին յարգանքը եւ ջերմ շնորհակալութիւնը այն ամեն վարդապետ, քահանայ արժ. եղբարց, վարժապետ, երիտասարդ, պատանի սիրելեաց, ազնիւ տանուտեարց, որք անձնուիրաբար օժանդակեցին ինձ այս ծանրագոյն գործում, որոց վասն մնամ միշտ աղօթարար.

Մակար եպիս. Բարխուտարեանց:



I

# ԱՐՑԱԽԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Մեծ-Հայոց 15 նահանգներից մինն է Արցախն, որի սահմաններն էին Հայոց Վաղարշակ թագաւորի ժամանակ Երասխ գետն, Արցախական ամենաբարձր սարերի գագաթնագիծն և Հնարակերտ ամրոցն [1]։ Այս սահմանների և Կուր գետի և Կովկաս մեծ սարի մէջ ընկած տարածութեան վերայ Կուսակալ կարգուած էր Սիսական Առանն նոյն Վաղարշակ թագաւորից։ Բայց երբ ծնում է և Աղուանից Արշակունի թագաւորութիւնն ևս, ծագում է սահմանի համար հակառակութիւն Հայոց և Աղուանից թագաւորութեանց մէջ. այն ժամանակ Արցախի և Աղուանից երկրի մէջ սահմանագիծ որոշւում է Կուր գետն [2]։ Ե. դարում Աղուանից թագաւորութեան ենթարկւում է և ամբողջ Արցախեան նահանգն։ Ծար, Վակունիք, Աղահէճ, Բերդաձոր գաւառներն, որք պատկանում էին Արցախին, Մեծ-Սիւնեաց թագաւորներն ճգնած էին իւրացնել, վասն որոյ ծագում է երկարատև հակառակութիւն և խռովութիւն Մեծ-Սիւնեաց և Աղուանից թագաւորութեանց և հոգևոր իշխանութեանց մէջ և զբաղեցնում Հայոց շատ կաթուղիկոսներն։ Այս խռովութեանց ընդ միշտ վերջ տալու և սէր ու խաղաղութիւնը վերահաստատելու համար սոյն երկու դրացի թագաւորութեանց և հոգևոր իշխանութեանց մէջ՝ ամենայն Հայոց Սարգիս կաթուղիկոսն՝ Հայոց ՆԾԵ. թուին արձակում է մի շրջաբերական կոնդակ [3]) որի սկզբում գրուած է. «առ Նախագահ և աստուածամեծար տունդ Սիւնեաց յաստուածապսակ թագաւորդ Վասակ և յաստուածապահ իշխանսդ Սևադայ և Աշոտ և առ այլ ազատսդ, ևայլն»։ Վերջաբանի մօտ. «իսկ բոլորովին, որում բազում հակառակութիւնք լեալ էին [4]) և մե-

---

1) Խոր. Բ. գիրք Ը. Գլ. և Մով. Կաղ. Ա. հատ. Դ. Գլ.։
2) Փաւս. Բուզ. Ե. դպր. ԺԳ. Գլ.։
3) Շրջաբերականիս բնագրի օրինակը տես Ս. Օրբէլեան ԾԷ. գլ.։
4) Աղուանից և Մեծ-Սիւնեաց մէջ։

Digitized by Google

ծամեծ նզովիւք ամրացուցեալ էին Կաթուղիկոսք Հայոց՝ հատանէ զսահմանն Աղուանից՝ Ըոմբի խոռն, Ծար գաւառ, Աղահէջ, ընդ որ Աղուանոյ գետն [1]) հատանէ մինչ ի Քարավազի կամուրջն (Երասխ գետն)»։ Ի վերջոյ շարայարում է. «թէ ոք հակառակել կամի այդմ աթոռոյ և կամ խանգարման պատճառ լինի այդմ հայրապետադիր սահմանի . . և վէճակի և ժառանգութեանց եկեղեցւոյ, զանբաւ հրահոսան անէծսն ժառանգեսցէ, որ յառաջին սուրբ հայրապետացն կարգեալ է և կրկնապատիկ 'ի մէնջ իսկ, ևն»։ Ուրեմն Եղարում և ՆԾԵ. Թուականից ցարդ Արցախի սահմանագիծն եղած է Երասխ, Կուր, Խրամ և Ձորագետ (միացած) և Հակարի գետերի և Կայենի, Դիլիջանի, Գեղամեան ամենաբարձր լեռների գագաթնագծի մէջ եղած տարածութիւնն։ Քանզի Խորենացին թէ և գրած է թէ 13 գաւառ ունի Արցախն [2]) սակայն ԻՁ. նահանգի գաւառների շարքում գրած է. «և այլ գաւառս (Արցախայ) զորս ի Հայոց հանեալ է (թագաւորն Աղուանից) Տիկաշէն, Գարդման, Կողթ և Ջաւէ և այլ քսան գաւառ մինչև ցխառնումն Երասխայ ի Կուր գետ [3])։ Քսան և չորս գաւառը ամբողջացնում է այսպէս—13 Արցախի, 6 Ուտի գաւառի [4]), 4 վերևի գաւառներն, որք են Տիկաշէն ևայլն. Վարդանակերտ գաւառ, որ գտնուում է Կուր և Երասխ գետերի խառնուրդի մէջ, որով ամբողջանում են Արցախեան նահանգի 24 գաւառներն։

Այս նահանգն զանազան դարերում փոփոխութիւններ կրելով Հայերից կոչուած է Գ ա ր գ ա ր [5]), Ա ր ց ա խ [6]), Փ ո ք ր-Ս ի ւ ն ի ք [7]) Խ ա չ ե ն ք, Ս ե ա ւ Ա յ գ ի [8]) իսկ Պարսիկներից և Տաճիկներից՝ Ղ ա ր ա բ ա ղ։

[1]) Հակարի գետի վերնամասն։

[2]) «Արցախ երի կայ Սիւնեաց. գաւառք են՝ ի նմա երեքտասան, զորս Աղուանք ունին Հաբանդ, Վակունիք, Բերդաձոր, Մեծկուանք, Մեծիրանք, Հարճլանք, Մուխանք, Պիանք, Պանծկանք, Սիսական ոստան, Քուստի, Փառնէս, Ռոստակ» (Մատ. Խոր. եր. 609 և այլ ձեռագիրք։

[3]) Մատ. Խոր. եր. 606 և այլ և այլ ձեռագիրք։

[4]) «Ուտի առ մտից կայ Երասխայ ընդ մէջ Արցախայ և Կուր գետոյ, ունի գաւառս եթն, զորս Աղուանք ունին, Արանռոտ, Տռի, Ռոցպատեան, Աղուէ, Տուչքատակ . . . Ուտի առանձնակ» (Նոյն գիրք եր. 610 և ձեռագիրք։

[5]) Մատ. Խոր. եր. 78, 168, 248։

[6]) " " " 607, Աստղ. եր. 65 ևայլն։

[7]) Խոր. Գ. գիրք Գ. Գլ. Մով. Կաղ. եր. 272. Աստղ. 107 Սամ. Անեց. եր. 192։

[8]) Սամ. Անեց. եր. 193։

# ԲՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐ

## ԼԵՌՆԵՐ.

Սարերից ամենամեծն է Արցախեան լեռնաշղթան, որ ընկած է Երասխի և Զօրագետի մէջ։ Լեռնաշղթայիս ամենաբարձր գագաթներն են—Արութիւնայ սարն [1]) Արցախի Գարդման գաւառի վերի ծայրում, Մռաւ սարի արևմտեան և արևելեան գագաթներն Հաթերքի հիւսիս-արևմտեան կողմում և Կիւլստանի հարաւային հանդէպ. Քիթ և Քեթի սարերն Ծար գաւառից վերև. Քիրսն Վարանդայ գաւառի վերի ծայրում և Դիզափայտ Դիզակ գաւառի վերի ծայրում։ Ամրան կանաչազարդ են լեռնաշղթայիս վերնամասերն իսկ անտառապատ հիւսիսահայեաց լանջերն և միանգամայն առատաջուր։ Բարձր և երկար լեռնաշղթաս, որ ընկած է Երասխի և Զօրագետի մէջ, տարածած է դէպի իւր հիւսիսահայեաց կողմերն հազարաւոր և բազմաճղի լեռնագօտիներ, սարաւանդներ և լեռնաբազուկներ, որք ողխաղխելով միմեանց կազմում են բազմաթիւ անդնդախոր ձորեր և ահարկու վիհեր, սաքսափելի կիրճեր և սոսկալի նեղուցներ, օձապտոյտ ձորակներ և մերկ ապառաժներ, բարձրագոյն քերծեր և զարհուրելի քարայրեր և միանգամայն սագաձև, ձկնաձև, ձուաձև, լխեռնաձև և թամբաձև լեռներ և լեռնակներ, բլուրներ և բլրակներ, թումբեր և խութեր։ Փոքր լեռնաշղթաներ. երկարաձիգ լեռնաշղթան, որ սկսուած է Զօրագետի և Խրամի խառնուրդի աջ կողմից, հասած է մինչև Երասխի ձախ կողմն շարունակ Արցախեան դաշտաբերանով։ Ամբողջապէս լեռնաշղթայիս վերայ են Ջաւէ, Քուստի կամ Քաւս, Փառխոս, Գարդման, Մեծ-կողմանք, Մեծ-իրանք, Հաբանդ կամ Վարանդայ, Դիզակ և Պանծկանք [2]) գաւառներն։

---

[1]) Թուրքերէն Դոչ-ղարադաղ։

[2]) Աւելի լաւ էր Բաղկանք անուանել վերջին գաւառս, վասն զի գաւառս ամբողջապէս բաղկացած է լեռնաբազուկներից, որք թեքուած են դէպի Երասխի ձախ ափն։ Կայ և մի այլ լեռնակ, Կախա անուն որ ընկած է Կուր գետի աջ եզերքով (Գանձակ գաւառում)։ Աւելի բարձր է Ղազարլու արևմտեան գագաթն, որ է 1723 ոտք. իսկ Կախան-արևմտեանն 1284 ոտք։

Digitized by Google

Այս լեռնաշղթան ևս, որ տարածուած է ամենաբարձր լեռնաշղթայի և դաշտաբերանի մէջ, նմանապէս արձակած է լեռնաբազուկներ, խոր խոր ձորեր, և ոլոր մոլոր ձորակներ, նեղուցներ և կիրճեր, տեղ տեղ ուռած և բարձրացրած սարեր և սարակներ, բլուրներ և բլրակներ, թումբեր և թուփակներ, և ուրեք ուրեք անձրևատար հեղեղատներ, միայն թէ ամենամեծ մասամբ զարդարուած են թանձր անտառներով և մացառուտներով, այգիներով և պարտէզներով։ Լեռնագօտուս ամենաբարձր գագաթներն են Կայենի լեռներն Զաւէ կամ Կայենի գաւառում, Մրղուզ՝ Քուստի կամ Քաւս գաւառում. Սուրբ Գէորգի սարն՝ Խաչենում, Բողրխան և Քեաթուկ՝ Վարանդում, Դող-բերդ, Թաղլարի և Հատրութի սարերն Դիզակում։

## ԴԱՇՏԵՐ.

Ա. Ամենամեծ դաշտն է Գարգարացւոց կամ Արցախի և կամ Մուղանի դաշտն, որի մասին արդէն գրուած է «Աղուանից Եր. և Դրաց.» գրքի մէջ.

Բ. Գագայ դաշտն, որ նոյն դաշտի շարունակութիւնից տարածուած է Զաւէ կամ ըստ այժմեան Ղազախ գաւառի ստորին մասում, Գագայ սուրբ Սարգիս սարի աջ ու ձախ կողմերում. այսինքն Ոսկեպար վտակի և Կուր գետի հովիտներում։

## ԴԱՇՏԱԿՆԵՐ.

Ա. Գտնուում է Մեծ-կողմանց կամ Կիւլստան գաւառի մէջ տարածուած Ղարաչինար և Ներքի շէն գիւղերի մէջ, որի միջով հոսում է Սև գետակն (Ղարաչայ)

Բ. Վարանդայ գաւառի ստորին մասում Ղըզղալա գիւղի կալերի մօտ։

Գ, Նոր-շէնի մօտ, որ ընկած է երկու լեռների մէջ։

Դ, Դաշտակն ընկած է Կիշի Պառաւաթումբ, Սպիտակ շէն (Աղքեանդ) գիւղերի մէջ։

Ե, Խունըշինակ գիւղի դաշտակն։

Digitized by Google

Զ, Ծարտարեցւոց կալատեղերի մօտ եղած դաշտակն։

Է, Դողայ դաշտակն, որ ընկած է Կաւաք սարի, Ազոխի, Ջրակուսի, ևն գիւղերի մէջ։ Հարկ է յայտնել որ բոլոր դաշտակներս գրեթէ Գարգարացւոց Մեծ դաշտի շարունակութիւնից էբր դաշտալեզու մտած են տեղ տեղ փոքր լեռնաշղթայիս մէջ։ Այսպէս են համարեա՛ թէ Ամարասայ, Հատրութի և Ջաբրայէլի դաշտակներն։

Ը. Բելուկանայ դաշտակն որ ընկած է Երասխ և Հակարի գետերի ձախ ափերի մէջ։

## ՀՈՎԻՏՆԵՐ.

Գեղեցիկ են Աղստևի, Թարսա չայի, Ղուլալուի, Վերին-Զակամի, Շամքորի, Գետաշէնի, Կիւլստանի, Հաթերքի [1]), Խաչենագետի, Պետրեցւոց (Խոջալլու), Գարգար, գետակների և Հակարի գետի հովիտներն, մանաւանդ բոլոր լեռնահովիտներն։

## ԳԵՏԵՐ ԵՒ ԳԵՏԱԿՆԵՐ.

Ամենամեծերն են Կուր և Երասխ, որոց մասին արդէն խօսած ենք «Աղուան. երկ. և Դր.» գրքի 31 թուահամարում։ Այս—տեղ միայն ասում ենք—համարեա՛ թէ Արցախեան նահանգն մի կատարեալ թերակղզի է, որ ընկած է Կուր և Երասխ, Զորագետ և Հակարի գետերի մէջ։

Երասխ գետին ձախ կողմից միանում է Հակարին, վերջինս, որ սկիզբն է առնում Սիսական և Վակունիք գաւառների հարաւահայեաց լանջերից, ընդունում է իւր ձախ կողմից գետակներ և առուակներ. Հարճլանք գաւառից ընդունում է Հազարագետ և Վաղազին, (Շոր-Ջուր), Ցարարի ջուր և Ղոզլու վտակները Բերդձոր գաւառից։

Երասխիս նմանապէս ձախ կողմից, խառնուում է և Թաղլարի և Դողայ միախառնւող գետակն և առուն, որք միա-

[1]) «ՑՂառոստակ գաւառն Մեծ կողմանց ի Զղախեան հովիտն յԱպարիտական դաշտակն առ ափն Տրտուական գետոյն» (Մով. Կաղ. եր. 163 տպ. Մոսկ.)

նալով կոչուում են Ղուրու չայ։ Առաջինն սկիզբն է առնում Դիզափայտ լեռնաշղթայի հիւսիսահայեաց լանջերից, կազմում երեք գլխաւոր առուակ, որք միանում են Տումի գիւղից բաւական վար։ Երկրորդն՝ հոսում է Մոխրենիս և Թաղոտ գիւղերի լեռներից, նոյն լեռնաշղթայի շարունակութիւնից՝ միանում Դողայ մօտ և խառնուում վերջի աւանից վար՝ Թաղլարի գետակին հետ։

Քեօնդալան գետակն, որ բաղկանում է գլխաւորաբար երկու վտակներից, որոց առաջինն իւր սկիզբը առնում է Քիրս լեռնաշղթայից և հոսում Աւետարանոց աւանի հարաւային ստորոտով։ Իսկ երկրորդն սկիզբն է առնում նոյն լեռնաշղթայից, հոսում Ղևոնդեանց անապատի սարին հարաւային ստորոտով և միանում առաջի վտակին նոյն անապատից բաւական վար և մանր ջրեր ընդունելով հոսում արևելահարաւ և խառնուում Երասխին (գարնան ժամանակ միայն)։ Արցախեան ամենաբարձր լեռնաշղթայից բղխում են գետակներ և հասնելով միանում Կուր գետին, որք են.

Գարգար գետակն, որ սահմանագիծ է Խաչէն և Վարանդայ գաւառների, կազմուում է հինգ գլխաւոր վտակներից. որք են՝ Ա.-բուն Գարգար, որ բղխում է Քիրս լեռնաշղթայի Ջառխստ սարերի հիւսիսային և հարաւային լանջերից և հոսում Շուշի քաղաքի հիւսիս-արևմտեան անդնդախոր ձորով։ Բ, բղխում է Քիրս լեռնաշղթայի հիւսիսահայեաց լանջերից և հոսում ահարկու ապառաժների միջով՝ յիշեալ քաղաքի հարաւ-արևելեան կողմով։ Երկու վտակներս միանում են Մազի կամրջի ստորոտում։ Բայց բուն Գարգարն՝ սկսեալ կամրջից մինչև վտակախառնուրդն՝ երկար դարերի ընթացքում ճեղքած է ապառաժ սալ քարը և բաւականին խորացնելով շինած ոլոր մոլոր ճանապարհ իւր համար։ Գ. վտակն բղխում է նոյն լեռնաշղթայի շարունակութիւնից—Խանածախ գիւղի սարից—և միանում Գարգարին փոշտի ճանապարհի տակով։ Դ. վտակն՝ սկիզբն է առնում նոյն լեռնաշղթայի շարունակութեան հիւսիսահայեաց կողմերից—Բալ-

Digitized by Google

լուջայի սարից, առուակներ ընդունելով իւր աջ ու ձախ կողմերից՝ միանում Գարգարին նոյն ճանապարհի տակով։ Ե. վտակն՝ բղխելով նոյն լեռնաշղթայից—Պետրեցւոց սարերից առուակներ ընդունելով աջից ձախից, միանում է բուն Գարգարին, որ հոսելով դէպի արևելահիւսիս և կտրելով Արցախի դաշտի կէսը, ապա անյայտանում աւազի տակ և յետոյ ելնում բաւականին վար և թափուում է Կուր գետի մէջ հեղեղների ժամանակ։

Խաչենագետ—գետակ—որ սկիզբն է առնում նոյն լեռնաշղթայից, նախ հոսում դէպի արևելք, ընդունում իւր աջ ու ձախ կողմերից մանր վտակներ, ապա իւր աջ կողմից Աղուանք կոչուած պարսպի տակով ընդունում Քոլատակի վտակը, որ բղխում է Խոխանայ և Կաչաղակայ բերդերի սարերիցն։ Խաչենագետս շատ տարիներ չէ հասնում Կուր գետին, այլ ցամաքում է։

Թարթառ գետ. Ամենից մեծն և ամենից արդիւնաւոր գետն է այս և Արցախի փառքն ու պարծանքն։ Գետիս ակունքներն բղխում են Ռոմբի խոռ կամ այժմեան անուամբ Ռումբասար լեռնաշղթայի արցախահայեաց, Մռաւսարի հարաւահայեաց և Ծար գաւառի արևելահայեաց և հիւսիսահայեաց լանջերից։

Միջին վտակն հոսում է սրընթաց Ծար գիւղաքաղաքի հարաւային կողմով, որին խառնուում է վերին ջերմուկն կամ Տաք—ջրի վտակն։

Սորա առաջին օժանդակն զմայլելի ջրվէժներ կազմելով հոսում է Ծարի հարաւային ձորով նոյն իսկ պարսպի քերծի տակով և միանում միջի վտակին՝ վանքին մօտ։ Գ. վտակն հոսում է Ծար գիւղաքաղաքի հիւսիսային քերծի տակով, միանում մի այլ վտակի, ապա միասին միախառնուում միջի գետակին Ծարի ստորոտում։ Միջին գետակս, որ ընդունելով յիշեալ վտակները՝ եղաւ մեծ գետակ, հոսում է մի խոր և աւազակաց որջ եղած ձորով և ընդունում իւր աջ կողմից Ներքի—տաք—ջուրը և իւր երկու կողմերից ուրիշ շատ

վտակներ՝ շարունակում իւր ճանապարհը։ Դ. վտակն սկիզբն է առնում նոյն իսկ Ռմբի խուից, և իւր աջ ու ձախ կողմերից ստանալով առուակներ և բարակ ջրեր հոսում դէպի հիւսիս-արևելք։ Ե. Զ և Է. վտակներն սկիզբն են առնում Մռաւի հարաւահայեաց լանջերից, անցնում Լևա գիւղի աջ ու ձախ կողմերով, նախ միանում Դ. վտակին և ապա վերև յիշուած գետակին։ Ե. Զ. Է և Դ. վտակներին միանում է և Ե ա ն շ ա ղ [1]) վտակն, որ բղխում է Մռաւի հարաւահայեաց լանջերից և հոսում դէպի արևմուտք, յետոյ խառնուում միւս վտակներին։ Սոյն ջրերը իւր հետ միացնելուց յետոյ՝ Թարթառն իւր ձախ կողմերից ընդունում է մանր մունր ջրեր իւր ծոցն, ապա Թրղին գետակը, որ բղխում է Մռաւ սարի վերնամասի հարաւահայեաց լանջերից, հոսում մութ մութ ձորերով և Երեք-Մանկունք վանքի արևմտեան և հարաւային կողմի ձորով և ապա միանում Թարթառին Ջրաբերդ ամրոցի արևմտեան վիմահերձը քերելով։ Ձախ կողմից ընդունած Թարթառի վերջին ջուրը Ջրվշտիկ վտակն է և Դոնի-շէնի և Մատաղիս շէնի առուակները։ Իսկ իւր աջ կողմից Թարթառն ստանում է մի քանի առուակներ, որոց գլխաւորն է Դ ո ւ թ խ ո ւ գետակն, Հաւքախաղացի, Խաթրա վանքի, Վաղահաս գիւղի և Ամենափրկիչ վանքի վտակները։ Զոր օրինակ Նեղոս գետն է Եգիպտոսի առատութեան և աժանութեան պատճառն, նոյնպէս Թարթառս է Արցախի առատութեան և աժանութեան պատճառն, քանզի բազմաթիւ առուներով ջրում է Ուտի առանձնակ և ուրիշ գաւառներ։ Այս է հին պատմիչներից Տ ր տ ո ւ կամ Դ ր տ ո ւ, իսկ տաճկերէն Թարթառ կոչուած գետն, որի բազմաթիւ առուներով ջուր բաշխելու մասին երգած է մի Հայ աշուղ թուրքերէն լեզուաւ։

«Բու Թարթառ նաշի Թարթառ,
Ջայլարըն բաշը Թարթառ.
Արազինան մուսայիպ,
Քիուռն եօլտաշը Թարթառ։

---

[1]) Անընդհատ խօսող. իսկ այստեղ փոխաբերաբար միշտ շըռ շըռ ձայն հանող։

Իւչ խւզ ալթմըշ ալթը
Արխըն անասը կենա կոջա Թարթառ»։

Սև գետակ կամ Ղարա-չայ. գետակիս օժանդակն հոսում է Կիւլստան գիւղի հարաւային կողմով և կոչւում է Բարակ (Ինջա)։ Մի ուրիշ օժանդակ ևս հոսում է վտակիս հարաւային կողմով—Ամենափրկիչ վանքի հարաւային կողքով և կոչւում Սռնաւոր (խիստ ցուրտ), որ միանում է Բարակին Կիւլստանից վերև։ Սև գետակս իւր սկիզբը առնում է Մռաւի Գինալ գագաթի հիւսիսային լանջերից, հոսում է Բարակի հիւսիսային կողմով Վերի շէն, Ներքի շէն, Ղահթուլթ, Նորաշէն, Նոր—Խրխափոր և Ղարա-չինար գիւղերի առջևից։ Երկու ջրերս, միանում են ու կոչւում Սև գետակ։

Կուրակ գետ, որ սահմանագլուխ է Արցախի և Թիֆլիզի առաջնորդութեանց հոգևոր իշխանութեանց, առնում է իւր սկիզբը նոյն Մռաւ լեռնաշղթայի հիւսիսահայեաց լանջերից և ընդունում հետզհետէ իւր աջ ու ձախ կողմերից օժանդակ առուներ, ապա հոսում դէպի Կուր գետն։

Ոսկանապատի կամ Գանձակ գետակ, առնում է իւր սկիզբը նոյն լեռնաշղթայից, և Արուլթինայ հարաւային լանջերից, հետզհետէ ընդունում վտակներ իւր աջ ու ձախ կողմերից, հոսում Ոսկանապատ գիւղի հարաւային ստորոտով, ապա Գանձակի միջով դէպի Կուր գետն (կոչւում է և Գանձակի գետ)։

Բանանց գետակ (Ղոչ-ղարա), առնում է իւր սկիզբը Արուլթինայ սարից, իւր աջ ու ձախ կողմերից ընդունում Քարհատ և Խաչակապ գիւղերի վտակները ևս, և հոսում Բանանց գիւղի հարաւային ստորոտով։

Շամքոր գետակ. բուն միջի վտակն առնում է իւր սկիզբը Գեղամայ լեռնաշղթայի հիւսիսահայեաց լանջերից, ընդունելով ջրեր՝ հոսում Փառիսոս քաղաքի (Ղալաքեանդ) աւերակի միջով, այնուհետև իւր աջ կողմից ընդունում Փառիս վտակը, որ բղխում է Արուլթինայ սարից, Գարդման վտակը, որ բղխում է նոյն սարի ստորոտներից, Փիփ գիւղի

Digitized by Google

ջուրը և Ծծերի առուակը։ Իսկ ձախ կողմից Սև աղբիւրի (Ղարա-բուլաղ), Գետաբակի, Գառնակեր և Բարսում գիւղերի, ևն. ջրերը և հոսում դէպի Կուր գետն։

Զակամ գետակ, որ բաղկացած է 3 գլխաւոր վտակներից, միջի վտակն բղխում է նոյն լեռնաշղթայից, Բ-ն հիւսիսայինն նոյնպէս, որ հոսում է Նովի-Սարաթովկայ մալականի գիւղի հարաւային եզերքով և միանում միջի վտակին, փոքր ինչ վար։ Իսկ հարաւային օժանդակն, որ առած է իւր սկիզբը Փառխոս բերդի հիւսիսային լանջերից և որ հոսում է Մեծ-Ղարամուրատի արևելեան կողմով, միանում է առաջի 2 վտակներին։ Միացեալ ջրերս հոսում են ապա դէպի Կուր գետն։

Տաուշ կամ Թովուզ գետակ, որ բաղկացած է 2 գլխաւոր վտակից. Ա-ն վազում է Ղուլալի գիւղի հիւսիսային ստորոտով Ախնջի անուամբ, իսկ Բ-ն Բերդ գիւղի հարաւային ստորոտով։ Երկու վտակներս ևս բղխում են Մրղուզ լեռնաշղթայի հարաւային և արևելեան ստորոտներից և լանջերից, միախառնուում Մովսէս գիւղից վար և թափւում Կուր գետի մէջ։

Հասան վտակ, որ իւր սկիզբը առնում է Մրղուզ լեռնաշղթայի հիւսիսահայեաց ստորոտներից և հետզհետէ ընդունելով բարակ ջրեր՝ հոսում դէպի վար։

Աղստև գետ, որ առնում է իւր սկիզբը Բամբակի լեռներից, իւր աջ կողմից գլխաւորապէս հետզհետէ ընդունում է Դիլիջանի կամ Պղնձահանք, Թարսա-չայ [1]) և Կարավանսարա վտակները. իսկ ձախ կողմից՝ Ջոխտակ-Վանքի, Պողոս քիլիսի, Հաղարծնի, Մթնաձորի, Ներքին-Աղդանի, Հաչաջրի և Ոսկեպարի վտակներն և ջրերն։

Զորագետ, որ հոսում է Շինող գիւղի հիւսիսային կողմով, իւր աջ կողմից ընդունում Շինողի վտակը և հետըզհետէ ընդունելով նոյն կողմից այլ ջրեր, միանում է բաւական վար Խրամի հետ և խառնուում Կուր գետին։

---

[1]) Առած է իւր սկիզբը Գեղամեան մեծ լեռնաշղթայի Ծուռ (8727 ոտք բարձր Այրիջայ) սարի հիւսիսային լանջերից։

Digitized by Google

## ՄԵԾ ԱՂԲԻՒՐՆԵՐ.

*Նախ՝ գտնւում է Փառխոս գաւառում, Փառխոս (Ղալաքեանդ) աւերակ քաղաքի արևելահիւսիս կողմում։ Ղարաբուլաղ է կոչւում այժմ աղբիւրս, որ դարձնում է երկու ջրաղաց։*

*Երկրորդ մեծ աղբիւրն, որ դարձնում է 2 ջրաղաց և ունի պատուական ջուր, գտնւում է Զաւէ կամ Կայենի գաւառում, Հաղարծնի վանքի մօտ։*

*Երրորդ մեծ աղբիւրն գտնւում է Քուստի կամ Քաւս գաւառում, Կարաւանսարայից վերև մեծ ճանապարհից ոչ այնքան հեռի և կոչւում է Զրուչ։*

*Չորրորդ մեծ աղբիւրն գտնւում է Սիսական կամ Ծար գաւառում, Զքիլ գիւղի արևմտեան կողմի ստորոտի ձորում։*

*Հինգերորդն՝ գտնւում է Տիգրանակերտ աւերակ աւանի մօտ. տես «Աղ. երկիր և դրացիք» եր. 52։*

*Վեցերորդն՝ Վարանդայ գաւառում Ղարաբուլաղ գիւղի մօտ, որ դարձնում է մի ջրաղաց։*

*Եօթներորդն՝ Ջաբրայէլ գիւղաքաղաքի մօտ, բայց այս ինքնաբուղխ չէ, այլ ականափոր է։*

## ՀԱՆՔԱՅԻՆ ՍԱՌՆ ՋՐԵՐ

*Ա. Երկաթաջուր. գտնւում է Շուշուց վերև Քիրս լեռնաշղթայի մի սարի հիւսիսահայեաց ձորի մէջ, մեծ ճանապարհի վարի կողմում։ Ցուրտ է ջուրս, որ բղխում է ձորիս ձախ ափիցն։*

*Բ, Թթու ջուր կոչւածն, (զելտերսիի), որ բղխում է նոյն ձորի նոյն ափից փոքր ինչ վերև երկաթաջրերից։*

*Գ. Ջրիս յար և նմանն գտնւում է Քուստի կամ Քաւս գաւառում Ներքին-Ճամբարակ գիւղից ներքև, Թարսա-չայի ձախ ափին ճանապարհի վերայ։ Ջուրս տաճկական բարբառով կոչւում է Ղոթուր-Բուլաղ։*

Digitized by Google

## ՀԱՆՔԱՅԻՆ ՏԱՔ ՋՐԵՐ.

Ա. Ամենալաւն և օգտակարն գտնուում է Սիսական կամ Ծար գաւառում, Զբիլ գիւղի հարաւային կողմի խոր ձորում։ Ջուրս, որ բաւական առատ է, բղխում է վտակի աջ կողմից։ Բայց չունի շինութիւններ և պատսպարուելու բնակարաններ։ Ամռան ամիսներում խռնում է այս պրօբատիկէի մօտ շրջակայ նահանգներից և գաւառներից ցաւագար անձանց մեծ բազմութիւն և առողջանալով վերադառնում։ Ափսոս որ այս պատուական ջերմուկի հօրիզօն խիստ նեղ է և տեղն անյարմար։

Բ. Ջերմուկն, որի ջերմութեան աստիճանն ստոր է Ա-ից, բղխում է նոյնպէս նոյն վտակաձորի աջ կողմից, սակայն գտնուում է Ծարից բաւական վար։

Գ. Ջերմուկն եղած է Հաղարծին վանքի կողմերում, բայց այժմ յայտնի չէ տեղն, զի անյայտացրած են (տես նոյն վանքի նկարագրութեանց շարքում)։

## ԼՃԱԿՆԵՐ.

Առաջին լճակն է Ալհարակ, որ մօտաւորապէս մի և կէս մղոն հեռի է Գետաշէնից դէպի Մռաւ լեռնաշղթան։ Լճակս շրջապատուած է անտառախիտ լեռներով, որոց մէջ ամենաբարձրն է Կեփաս [1]) ըստ Տաճ. Քեաֆազ ապառաժ քարեայ սարն, որ հպարտօրէն արձանացած է լճի արևելեան հարաւային կողմում։ Լճակս բաժանուած է երկու մասի, վերնամասն կոչուում է «Ըստծու ծով (Աստուծոյ ծով)»։ Երկու մասերի մակերևութի տարածութիւնն է մօտ 54 օրավարաչափ։ Լճակիցս, որի եզերքներով տեղ տեղ դիզուած են ահագին քարեր, ելնում են ընդհանրապէս 3 տեսակ ձուկն։

Ա. տեսակն, որ ազնիւ է միւսերից, որոշուում է իւր

---

[1]) Սարիս գագաթի վերայ կայ գերեզման, որի տապանաքարի վերայ գրուած է. «Կեփաս ճգնաւորի գերեզմանն է»։ Հաւանական է թէ Ալհարակ անունն յետոյ տեղի տուած է Կեփաս անուանս ճգնաւորիս անուան պատճառաւ, որը մահմետականք չկարողանալով ուղիղ հնչել, արտասանում են Քեաֆազ։

Digitized by Google

սպիտակութեամբ և կարմիր ու սև բծերով։

Բ. տեսակն ևս ունի սպիտակ գոյն, սակայն ունի միայն սև բծեր։

Գ. տեսակն ունի միայն սև գոյն և մեծ մեծ սև սև բծեր։ Վերջապէս բացի լճակիս հիւսիսային կողմից ելած ձկներից՝ համեղ են միւս կողմերից հանուած բոլոր ձկներն։

Երկրորդ լճակն, որ գտնուում է Գօշայ վանքի հարաւային կողմում կէս մղոնաչափ հեռի, կոչուում է Տզրկածով, որի մէջ չկայ ձուկն, այլ միայն տզրուկ, գորտ և մանր օձեր։

Երրորդ լճակն, որ փոքրիկ է, գտնուում է Ծար գաւառի Պղնձահանքի հարաւային կողմում եղած մեծ սարի ստորոտում։

Չորրորդն Գեօլ-եայլաղը կոչուած տեղում Լև գիւղի արևմտեան կողմում։

Հինգերորդն գտնուում է Լև գիւղի հիւսիսային կողմում, որ կոչուում է Տզրկածով (Զալի-գեօլ)։

Վեցերորդ՝ 3 լճակներ, որք կոչուում են Բեադը—գեօլլարը։

Եօթներորդ՝ Մարդասպան (Ղանլը-գեօլ) Իրեցի չէնի գլխին [1])։

Ութերորդ Ղամշոտ ծով, որ գտնուում է Խաչէնի Արութիւնայ չինի անդում, 2 ամենափոքր լճակներ, որոց եզերքներն բուսնում են եղեգներ։

Իններորդ լճակն է Վարանդայ գաւառի Նինկի գիւղի անդում եղածն, որ կոչուում է Սիւլիւկնածով։

Տասներորդ՝ 2 ամենափոքր լճակներ Ծովատեղ գիւղի մօտ։

Տասն և մէկերորդ՝ 2 աղի լճակներ, որք գտնուում են Արանռոտ գաւառում։

Չենք նշանակում Կուր գետի աջ ափերում տեղ տեղ եղած լճացեալ անշարժ ջուրերը, քանզի բազմիցս լի են լճակ-

---

[1]) Ծար գաւառում եղած Գ. Դ. Ե. Զ և Է. լճակներս ամենափոքր են ամբողջապէս և զուրկ լուղակներից, միայն տզրուկ ունի Տզրկածովն։

ներս, երբ յորդում է գետը. և երբեմն ցամաքած, երբ երաշտ է։ Սակայն և այնպէս կան որ անցամաքելի են։

## ԱՆՏԱՌՆԵՐ.

Արցախական նահանգն ընդհանրապէս հարուստ է (բացի Մուղանի դաշտից) ոչ միայն անտառներով և մացառներով, այլ և վայրի պտղատու ծառերով, տեսակ տեսակ թփերով, տարբեր տարբեր բուսեղէններով, սուրբ կենդանիներով և գազաններով, սուրբ թռչուններով և անսուրբ հաւքերով, ոսկու և արծաթի, պղնձի և երկաթի հանքերով, ամարանոցներով և ձմերանոցներով։ Ձորագետից մինչև Երասխի մօտ տարածուած լեռնաշղթայի վերնամասերն դալարագեղ ամարանոցներ են, իսկ մնացեալ մասերն ծածկուած են խտացեալ անտառներով. իսկ փոքր լեռնագօտին՝ մացառներով և շամբերով։ Բայց հարկ է յայտնել որ նշանաւոր անտառներն գտնուում են Դիլիջանի, Հաղարծնի, Գետաշէնի, Երից-մանկանց, Եղիշէի, Թարթառի, Խաչենագետի, Քոլատակի և Պետրեցւոց գետակի ձորերում, Քոլ կոչուած անտառում և Կուր գետի աջ եզերքում։

## ԱՆՊՏՈՒՂ ԾԱՌԵՐ.

Համարեա թէ բոլոր անտառներում կան կաղնի, հաճարկի, լայնատերևի, կռզենենի, տխկի, թեղի, հացի, բռխի, կնչի, լորի, տոսախի, ջղանի, ճապկի և կռռելի ծառեր։ Բայց սաղուզի, ծառերն սուտ ընկուզի և կարմրափայտ (ըստ տաճ. եալան-ղոզի և Ղզըլ-աղաջ) միայն գտնուում են Կուր գետի անտառում և Քոլ կոչուած տեղում։ Բռշնի և թխքեռնի ծառերն գտնուում են անդերում, գենի (գի) և բևեկնի՝ Կիւլստանի անտառներում, Թարթառի ձորերում և Դիզակ գաւառի Դիզափայտի լեռնաշղթայի, մանաւանդ դէպի Երասխն խոնարհուած մասերում, մայրի և վայրենի ունենի ծառեր միայն Դիլիջանի անտառներում, իսկ արջախնդեղնի՝ մեծ լեռների անտառներում. կաղամախի, սօսի և բարտի և

Digitized by Google

փշատի (փշաշատի) ծառեր միայն դաշտային մասերում և ուռենի գետահովիտներում։

## ՊՏՂԱՏՈՒ ՎԱՅՐԻ ԾԱՌԵՐ.

Գրեթէ բոլոր անտառներում գտնուում են ճըռ տանձի, ծտի-տանձի, ճըռ խնձորի, զկռի (զղեարի), սզնի, սալորի, հունի, տկողնի (արքայակաղնի), ընկուզի, իսկ անդերում գտնուում են միայն մոխրատանձի և լկըթնի։

## ԹՈՒՓԵՐ.

Մացառներում և շամբերում լինում են ցախուելի կամ հոլմառկի, գերմասրի, թըլղի, դժնիկ, տատասկ, ծմակամոշ (մորենի-մալինա), սևամոշ, մռամոշ, գետամոշ [1]), մասուրի, կծըխուրի, ցրդի, վարդենի։

## ԻՆՔՆԱԲՈՅՍ ՈՒՏԵԼԻ ԿԱՆԱՉԵՂԷՆՆԵՐ.

Ծմակներում լինում են խազազ, կռմզուկ, սմնդուկ, ծմակթափան, սոկոն կամ սունկ։

Անդերում ձնեբեկ, փիփերտ (ամենքեօմաշի) խնջլոզ, չրիշ-խնջլոզ, կնձմնձուկ, տորպաշար, ուտումտիտեմ, սիբեղ, թարթանջուկ, պառաւապորտ, եզնաճակատ։ գինազոխ, շուշան, եղինճ, չրիշ, աւելուկ, շէպ և բոխի։

Ջրերի մէջ կամ մօտերքում ջրիկուտեմ, դաղձ, ջրափափուկ ճռճռոկ։

Արցախի դաշտերում՝ շոմին (վայրի սպանախ), տոմբալան (նման է գետնախնձորի և կուտուի միայն խորոված), սամիթ և կապար։

---

Խոտ, առոյտ, խնձործաղիկ, կռոթնը, արջաթանթուլ, ոխտըկռնը, շնավարունկ, լօշտակ, սուտ եղինճ, կածուկ,

[1]) Ինչպէս մորենիների թուփերն նոյնպէս և պտուղներն չորս տեսակ են, որք են ծմակամոշ՝ մալինա, սևամոշ՝ անդերում եղածն, մռամոշ, որոց ցօղուններն 2—3 թիզ միայն կբարձրանան, իսկ գետամոշն լինում է սովորաբար գետերի և այլ ջրերի հովիտներում։

*բիլբիլստրի․ ագռաւի սողան, նրկարար, ալակիզ, բէանկէ, պլանուկ։*

## ՎԱՅՐԻ ԾԱՂԻԿՆԵՐ։

*Վարդ, ծմակավարդ (սպիտակ, դեղին և կարմիր և մանուշակի չափ բարձրացող), գրավարդ (մասուրի վարդ), մանուշակ, ձնծաղիկ, նովրուզ, խնձաղայ, նարկիզ, մշահամուկ (անթառամ ծաղիկ), նունուփար, կակաչ, հարսնածաղիկ, շուշան, միխակ, ձիւնածաղիկ, զամբաղ, լուածաղիկ ևն. ևն։*

## ՎԱՅՐԻ ՍՈՒՐԲ ԿԵՆԴԱՆԻՔ.

*Մեծ և բարձր սարերում և անտառներում լինում են քօշ, այծ, եղջերու, եղն, կինճ և խոզ, իսկ ամայի դաշտերում հօրաններով այծեամն, բայց անդերում նապաստակ։*

## ԳԱԶԱՆ ԿԱՄ ԳԻՇԱԿԵՐ.

*Առիւծ՝ խիստ սակաւ, վագր՝ նոյնպէս, ինձ, բորենի, արջ, գայլ, աղուէս, չաղալ, գիշերի, սևականջ (ղարաղուլաղ) սամոյր, սկիւռ, առնէտ, խլուրդ, մուկն և ջրաշուն (Թարթառ գետում)։*

## ՍՈՒՐԲ ԹՌՉՈՒՆ.

*Անտառներում և անդերում՝ փասեան, սալամն, կաքաւ, հաւփալ, աղաւնի, տատրակ, լորամարգի, չարտ, մոշահաւ կամ մշահաւ, որի (տուլաշ), արտուտ, սուրբ Յակովբի թռչուն, ճնճղուկ, չլածիտ։*

*Մեծ դաշտերում՝ կատակ հաւ (թուրաջ)։*

*Կուր գետի վերայ՝ արոս, սագ, բադ։*

## ԳԻՇԱԿԵՐ ԿԱՄ ԱՆՍՈՒՐԲ ԹՌՉՈՒՆ.

*Արծիւ, անգղ, բազէ չորս տեսակ, ա. թաւար-ղուշ, բ. թառլան-ղուշ, գ. ղզըլ-ղուշ, դ. ղիրղի, լէլակ, ցին, ուրուր, չորթանագող, բու, հողմահար, գայլագռաւ, ակռաւ. կաչաղակ, ներկարար, կտցահար (ծառակուտկուտ) ճանճագող, կու, չղջիկ, ջրային՝ ձկնկուլ, ճայ, Ղ՛ուլ։*

Digitized by Google

## ԵՐԳԵՑԻԿ ԹՌՉՈՒՆ.

Կու, կուկու, յոպոպ, սոխակ, լծի, բաբաճըղտ, չլածետ, դեղձանիկ, զուզռան, ջըրպըղտպըղտ, չափարծակի, շիլոշիլոյ, մշահաւ և ուրիշ հարիւրաւոր մանր թռչուններ, որոց անունները ոչ ժողովուրդն գիտէ և ոչ մենք։

## ՋՈՒՈՂ ԹՌՉՈՒՆՆԵՐ.

Կռունկ, արագիլ, սասարք, սարեակ, ծիծեռնակ։

## ՍՈՂՈՒՆ ԵՒ ՁԵՌՈՒՆ.

Օձ՝ բազմատեսակ, որք են՝ Շահմար, ելմար, իժ, քարբ, թևաւոր [1]), գիւրզա և ջրի օձեր զանազան մեծութեամբ և զանազան գոյներով [2]), լոկ, քարաթոթոշ, կանաչ մողէզ, մողէզ, կրիա, խեցգետին, ոզնի, գորտ, կարիճ, իշախառանջ, մորմ, (Մուղանի դաշտում), քառասնոտեայ, մրջիւն, թևաւոր մրջիւն, ձիաւոր մրջիւն։

Միջատներ. շանաճանճ, բոռ, ճախարակ, մլակ, փընթիռն, ճպուռն, մարախ, սևաճանճ, մեծ ճանճ, կանաչ ճանճ, ձիաճանճ, պիծակ, լուսատտիկ, կետ, Աստուծոյ կով, Աստուծոյ եզն, զատիկ, ականջմտուկ, ոթես, մոշաթսի, ոսկեպղոջ, սարդ, թիթեռնիկ, աղօթարար (ունի կանաչ գոյն և երկար ոտքեր)։

## ԸՆՏԱՆԻ ԿԵՆԴԱՆԻՆԵՐ.

Արցախն հարուստ է և ընտանի կենդանիներով, որք են.

Սուրբ անասուններ. գոմէշ, եզն, կով, արջառ, երինջ, ոչխար, այծ և խոզ։

## ԸՆՏԱՆԻ ԹՌՉՈՒՆՆԵՐ.

Հնդկահաւ, սագ, բադ, հաւ, աղաւնի։

---

[1]) Խիստ սակաւ է օձի այս տեսակն, որ ընդհանրապէս լինում է բարակ, կարճ, մուգ մոխրագոյն և արագաշարժ։

[2]) Աւելի մեծերն և թունաւորներն գտնուում են Մուղանի դաշտում։

## ԱՆՍՈՒՐԲ ԱՆԱՍՈՒՆՆԵՐ.

*Ուղտ, ձի, ջորի և էշ։*

## ՆԱՀԱՆԳԻՍ ԹԵՐՔԵՐՆ.

*Ցորեն, գարի, կորեկ, որիզ, գարնանի, գարնագարի, հաճար, սորեկ, կտաւհատ, ոսպ, սիսեռ, ոլոռն, բակլայ, լուբիայ, մաշ, խաշխաշ, վարունկ, դդում բազմատեսակ, սոխ, սխտոր, բողկ [1]) ճակնդեղ, գազար, գետնախնձոր, սեխ բազմատեսակ, ձմերուկ, սմբուկ (սև բաթլիջան) կարմիր տոմաթ, պղպեղ, տանձ, խնձոր, դեղձ, սևկևիլ, թուզ, նուռն, ընկուզ, զղեար, արքայակաղին, խաղող, գինի, օղի, բօժօժ, մետաքս, բամբակ, բուրդ։*

*Արդէն խօսած ենք Արցախեան ամարանոցների մասին «Աղ։ եր. և Դրացիք» գրքի* 56 *երեսում, վասն որոյ աւելորդ է վերստին գրել։*

## ՈՍԿԻ

*Ոսկի ելնում է (խառն պղնձի հետ) Գարդման գաւառի Քարհատ գիւղի մօտի հանքից և Փառիսոս գաւառի Գետաբակ գիւղի հանքերից։*

## ԱՐԾԱԹ

*Վաղ ժամանակից առատօրէն հանած են Ջրաբերդ գաւառի Մէհմանայ աւերակ գիւղի մօտ եղած արծաթահանքից. բայց այժմ մնում է անգործադրելի։*

## ՊՂՆՁԱՀԱՆՔ

*Ա. Գտնուում է Ծար գաւառի Ումբասարի արևելեան լանջի վերայ, որ սեպհականութիւն է Խոթա վանքին. հնուց գործածուած է հանքս, իսկ այժմ անգործածելի։*

*Բ. Գարդման գաւառի Քարհատ գիւղի մօտ, որ սեպհականութիւն էր Գարդմանայ իշխաններին. իսկ այժմ բանեցնում է գանձակեցի Ներսէս-բէկ Տէր-Ներսիսեանցն։*

---

[1]) *Բազմատեսակ—սև, սպիտակ, կարմիր, ամսական։*

Գ. Փառիսոս գաւառի Գետաբակ գիւղի մօտ, որ կանխաւ պատկանում է գաւառիս իշխաններին, ապա Զաքարէ և Իւանէ սպասալար իշխաններին, ապա Վահրամ իշխանին և յետոյ Կիւրիկեան թագաւորներին. այժմ գործ է անում մի գերմանացի։

Դ. Գտնուում են շատ հանքեր Քուստի կամ Քաւս գաւառի Մրղուզ սարի հիւսիսահայեաց ստորոտների ձորերում. 1) զուտ և պատուական պղնձահանք կայ Թովուզ գետակի աջ կողմում Արջաքար կոչուած օժանդակի աջ ափի վերայ ջրախառնուրդի մօտ։ 2) Բրտանոց կամ Բիւլոր-Բիւթի ձորում, փոքր ինչ վերև առաջնից, Բ. օժանդակի աջ ափի վերայ ջրախառնուրդի մօտ։ 3) և 4) հանքն, զուտ պղինձ, 2-ից (երկբորդից) փոքր ինչ վերև նոյն գետակի ձորում։ 5) Պղնձահանքն [1]) կայ նոյն գետակաձորի վերայ՝ Բուղդալու անուանեալ Օժանդակի վերի կողման մօտ [2])։ Կան պղնձահանքեր նաև նոյն գաւառի Նաւուրայ--ջուր—ջրաձորում, Հասան վտակի վերնամասում. Նախ աջ կողմից խառնուող առուակների վերայ, ապա Զաթախ առուակի վերայ Դանիէլի-ղաշ կոչուածի տակ, և ապա Արջի-կոխեր անուն ջրաձորում։ Վերջինս գործ դրուած է երբեմն։ Այժմ բոլորովին անգործածելի են գաւառիս բոլոր հանքերն։

Ներքին-Թանգիրլուի ջրաձորում կայ արծաթախառն արճճի հանք. Վերին-Թանգիրլուի ջրաձորում՝ արծաթ-պղինձ խառն արճիճ. Մեծ-Սադիր կոչուած առուակի վերայ կայ պղնձախառն արջասպի հանք։ Ինէկ (կով) դաղի ձորում, վերի կողմում կայ պղինձ, իսկ վարի կողմում՝ ցինկ։ Կայ նաև պատուական քարածուխ Մրղուզ սարի վերի կողմերում։

Ե. Պղնձահանք կայ նաև Դիլիջանից վերևի ձորում։

## ԵՐԿԱԹԱՀԱՆՔ

Գտնուում է Գարդման գաւառի Բանանց գիւղից վերև, Բանանց գետակի ձորի աջ ու ձախ կողմերում։ Հանքերիս

[1]) Հանքս գործածութեան մէջ եղած է երբեմն։

[2]) Այս տեղերքում կան նաև երկաթախառն պղինձ և ծծմբախառն այլ բաղադրութիւններ։

արտադրած քարերում կայ և պղպղատաքար. Նոյնպէս և Ջաւէ գաւառի Կողբ գիւղի Բովեր կոչուած սարում [1]։

## ԵՐԿԱՆԱՔԱՐԻ ՀԱՆՔ

Ա. կարգի և ամենալաւն է Խաչեն գաւառում Գանձասար վանքի սեպհական Ջրաղացաքարի հանքից ելածն, որ կայ Վանք գիւղից վերև։

Բ. Նոյն գաւառում Առաջաձոր գիւղի մօտ։

Գ. Փառիսոս գաւառում, Խամշի վանքի արևելեան կողմում Ջօքէ քարահանքից ելածն։

## ՇԻՆՈՒԹԵԱՆՑ ՔԱՐԱՀԱՆՔԵՐ.

Ա. կարգի և մարմարանման քարահանքն գտնուում է Գարդման գաւառի Քարհատ գիւղի մօտ։ Հանքիս մօտ կան և շինութեան ուրիշ քարահանքեր ևս։

Բ. կարգի ազնիւ քարի հանք կայ Խաչեն և Տիգրանակերտ գաւառների սահմանագլուխ սարում, որի շարունակութիւնն հասած է մինչև Ջրաբերդ և Կողթ գաւառի վերջի սահմանն։—Սպիտակ են երկու քարահանքերից ելած քարերն ևս։ Համարեա թէ լեռնային բոլոր գաւառներում ևս կան սպիտակ, մոխրագոյն և տորոնագոյն քարահանքեր. օր.

Գ. Խազազի սպիտակ քարահանքն Վարանդում։

Դ. Տորոնագոյն քարահանքն Դող բերդի մօտ Դիզակում։

Ե. Մոխրագոյն քարահանք Շուշում, Քառասնի, Դաշբուլաղ, Բալլուջա, Խանձք, և այլն գիւղերի մօտ եղած լեռներում. (Խաչենում)։ Տորոնագոյն ազնիւ քարահանք Ծմակահող գիւղից վերև, որով շինուած է Գանձասար վանքն. այսպէս են Խոթայ, Խաթրայ և Ծարայ, Վարագայ, Գօշայ և Հաղարծնի վանքերի քարահանքերն։ Իսկ մոխրագոյն են կամ մուք գորշագոյն միւս վանքերի շինութեանց քարերն։

---

[1]) Այժմ գործածական է միայն Գետապակի, Քարհատի և Դիլիջանի հանքերն։ Անգործածելի են և արծաթահանքն, նոյնպէս և երկաթահանքերն։

## ՆԱՒԹԱՀԱՆՔ [1]

Գտնուում է Ուտի—առանձնակ գաւառում Մարալեան գիւղի արևմտեան կողմում։ Հանքից ելնում է սև նաւթ, որ թանձր է քան Բագուի նաւթերն։ Նաւթից գրեթէ չեն պատրաստում վառելու, զի թանձր է հեղուկն, այլ պատրաստում են մի քանի տեսակ իւղեր, որք գործածական են զանազան մեքենաների համար։

## ԱՐՑԱԽԵԱՆ ԳԱՒԱՌՆԵՐ.

Գարգարացւոց բնակութեան տեղին, որ սկզբում կոչւած էր Գարգար [2], հետզհետէ ընդունում է Արցախ [3], Փոքր-Սիւնիք [4], Խաչէնք [5], Սեաւ այգի [6] և Ղարաբաղ [7] անունները։

Ահաւասիկ այսպիսի փոփոխութեանց ենթարկուած են նաև նահանգիս բոլոր գաւառաց անունններն։ Մեր յարգելի բանասէրները և ընթերցողները այսչափ փոփոխութեանց ծանօթացնելու համար՝ հարկ համարեցինք կարգաւ դասաւորել այստեղ գաւառներիս նախկին, փոփոխեալ և այժմեան անունները ծանօթագրութեամբ հանդերձ։

Բնութեան ճարտարապետն երեք մասի բաժանած է Արցախի բոլոր գաւառները՝ որք են Դաշտային, Լեռնային և Հարթաւային և կամ Ստորին, Միջին և Վերին։ Դաշտային կամ ստորին գաւառներն ընկած են Երասխ և Կուր գետերի, Ազատն գետի և Փոքր-լեռնաշղթայի միջավայրի տարածութեան վրայ։ Լեռնային կամ Միջին գաւառներն ըն-

[1] Փարէկլաւ հանելու, և այլ գործիքներն նոյն են, ինչպէս են Բագուի հորերինն։

[2] Ցարդ ևս Գարգար է կոչւում գետակն, որ իւր սկիզբը առնում է Ձախուս սարից, բաժանում իբրև սահման Խաչէն գաւառը Վարանդայից, հոսում Գարգարացւոց դաշտի միջով և թափւում Կուր գետի մէջ։

[3] Խոր. Գ. գիրք Գ. գլ. Ասող. եր. 65 են։

[4] Խոր. Գ. գիրք Գ. գլ. Ասող. եր. 65. տես. Տօսկ. և Սամ. Ան. եր. 192.

[5] Ասող. եր. 107 և 256։

[6] Սամ. Ան. եր. 193։

[7] Մատենագրութեանց մէջ առաջին անգամ պատահում ենք Ղարաբաղ անուան, որ գործ ածած է 1388 թիւ. Փրկ. Թով. Մեծ. եր. 20։



Digitized by Google

կած են Փոքր-լեռնաշղթայի և Մեծ-լեռնաշղթայի հիւսիսա-հայեաց լանջերի և Զորագետի միջև տարածուած մասի վերայ։ Հարաւային կամ վերջին գաւառներն ընկած են Հակարի գետի ձախ ափերի, Դիզափայտ և Քիրս լեռնաշղթայի հարաւահայեաց լանջերի մէջ Երասխից մինչև Ծար գաւառի սահմանն։

## ԴԱՇՏԱՅԻՆ ԿԱՄ ՍՏՈՐԻՆ ԳԱՒԱՌՆԵՐ.

Ա. Գաւառն, որ ընկած է Երասխի և Ղուրու չայ գետակի ձախ ափերի, դաշտաբերանի և Մուխանք գաւառի սահմանի մէջ, կոչուած է Պիանք [1]), այժմ Ջաբրայէլի գաւառ։

Բ. Գաւառն, որ ընկած է Երասխի ձախ ափի, Վարդանակերտ գաւառի և դաշտաբերանի տարածութեան մէջ, ստացած է Մուխանք [2]), Մուղան [3]) այժմ Միլին դաշտ անունները։

Գ, Դ, Ե և Զ գաւառներն, որք ընկած են Կուր գետի և Գարգար գետակի աջ ափերի, դաշտաբերանի և Մուխանք գաւառի սահմանի մէջ, ստացած են Արանռոտ, Տռի, Ռոցպատեան և Աղուէ [4]) այժմ երկուքն միասին՝ Քեաբիրլու։ Իսկ վերջին երկուսն՝ Ջաւանշիր։

Է. Գաւառն, որ ընկած է Կուր գետի և Խաչենագետի աջ և Գարգարի ձախ ափերի և դաշտաբերանի մէջ, ստացած է Տուչքատակ [5]), Տիգրանակերտ [6]) Թառնագիւտ-այժմ Շահ-բուլաղ անունները։

Ը. Գաւառն, որ ընկած է Կուր գետի, Խաչենագետի,

---

[1]) Մատ. Խոր. եր. 609։

[2]) ,, ,, ,, 609։

[3]) Կիր. Վարդ. Բարձ. Եսայի Կաթ.։

[4]) Մատ. Խոր. եր. 610 և ձեռագիրներ։ Հարկ է յայտնել, որ անհնարին է գտնել գաւառներիս մէջ ընկած միջնասահմանները, քանզի ամենևին չկայ որոշող բնական մի նշան։ Մով. Կաղանկատուացին յիշում է միայն Մուխանք, Տրի և Աղուէ այժմ (Ալուանդ) գաւառները (եր. 264),

[5]) Մատ. Խոր. եր. 610։

[6]) Սեբ. եր. 92։ Մով. Կաղ. եր. 241. Տկռանակերտ. և այլն։

Digitized by Google

Կուրակ գետակի և դաշտաբերանի մէջ, ստացած է Ուտի-առանձնակ [1]), Ուտի գաւառ, այժմ Ջուանշիր։

Թ. Գաւառն, որ ընկած է Կուր գետի, Կուրակ և Շամքոր գետակների և դաշտաբերանի մէջ, ստացած է Շիկաշէն [2]), Շակաշէն [3]) Արշակաշէն [4]) Գանձակ, Գեանջա, այժմ Ելիսաւետապօլի գաւառ։

Ժ. Գաւառն, որ ընկած է Շամքոր գետակի ձախ, Կուր և Աղստև գետերի աջ ափերի և դաշտաբերանի մէջ, ստացած է Կողթ [5]), Շամքոր [6]) և Ջակամ [7]). այժմ Շամշադին և Ղազախ անունները։ (Գ. Դ. Ե. Զ. Է. Ը. Թ և Ժ գաւառներն երբեմն պատկանում էին Ուտի նահանգին)։

## ԼԵՌՆԱՅԻՆ ԳԱՒԱՌՆԵՐ ԿԱՄ ՄԻՋՆ-ԱՐՑԱԽ.

ԺԱ. Գաւառն, որ ընկած է Երասխ գետի ձախ և Ղուրուչայի աջ ափերի, Հադրութի և Դիզափայտի լեռնաշղթայի գագաթնագծի մէջ, ստացած է Պազկանք [8]), Պանծկանք [9]), Դիզակ [10]), այժմ Ջաբրայէլ անունները։

ԺԲ. Գաւառն, որ ընկած է Ղուրու չայի ձախ և Գարգար գետակի աջ ափերի, Դիզափայտ և Քիրս լեռնաշղթայի գագաթնագծի և դաշտաբերանի մէջ, ստացած է Միւս-Հաբանդ [11]) կամ Հաբանդ—Ամարաս [12]) Վարանդայ [13]) այժմ Աւս Վարանդայ։ անունները։

1) Մատ. Խոր. եր. 610։
2) ” ” ” ”
3) Բուզ. եր. 210. Մով. Կաղ. 251
4) Մով. Կաղ. եր. 265։
5) Բուզ. եր. 176—177։ Մատ. Խոր. 610։ Մով. Կաղ։ եր. 244։
6) Մով. Կաղ. եր. 252։ Կիր. եր. 114։
7) Առ. պատմ. եր. 9։ Եւ. Կաթ. 23։ Հարկ է յայտնել, որ գաւառիս արևելեան կողմն այժմ կոչւում է Շամքոր, արևմտեանն՝ Ղազախ, իսկ միջավայրն Ջակամ։
8) Մատ. Խոր. եր. 609։
9) Ձեռագիրներում Բազկանք, Գանծկանք։
10) Եւ. Կաթ. եր. 36։ Գաղտ. եր. 195։
11) Մատ. Խոր. եր. 609։
12) Մով. Կաղ. եր. 264. «Հաբանդ և Ամարաս». իսկ ուրիշ տեղերում երբեմն Ամարաս։
13) Եւ. Կաթ. եր. 37։ Գաղտնիք. եր. 201։

Digitized by Google

ԺԳ. Գաւառն, որ ընկած է Գարգար գետակի ձախ և Թարթառ գետի աջ ափերի, դաշտաբերանի և Քիրս լեռնաշղթայի շարունակութեան գագաթնագծի մէջ, ստացած է Մեծ-իրանք [1]), Մեծարանք [2]), Ներքին-Խաչեն [3]) այժմ Խաչեն անուններն։

ԺԴ. Գաւառակն, որ ընկած է Թարթառի և Եանշաղի ձախ և Թրղու աջ ափերի մէջ, ստացած է Ռստիսական [4]) Ռուստակ [5]) Հաթերք անունները։

ԺԵ. Գաւառն, որ ընկած է Մռաւ բարձր լեռնաշղթայի, դաշտաբերանի, Թրղի և Թարթառ ջրերի ձախ և Կուրակ գետակի աջ ափերի մէջ, ստացած է Մեծ-կողմանք [6]) Մեծկուանք [7]), Ջարաբերդ [8]), Թալիշ, Կիւլստան Ջրաբերդ [9]) այժմ Ջուանշիր անունները։

ԺԶ. Գաւառն, որ ընկած է Կուրակ և Շամքոր գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի շարունակութեան մէջ, ստացած է Գարդման [10]), Գարդմանաց ձոր [11]), Գարթմանիկ [12]) այժմ Գանձակի գաւառ անունները։

ԺԷ. Գաւառն, որ ընկած է Շամքոր գետակի միջին օժանդակի և Գեղամայ լեռնաշղթայի գագաթնագծի շարունակութեան և Տաւուշ գետակի հարաւ-արևելեան օժանդակի (Ախնջի) ափերի և դաշտաբերանի մէջ, ստացած է Փառնէս [13])

---

1) Մատ. Խոր. եր. 609։ Մով. Կաղ. եր. 263։

2) Տես Արձան. Վանուց Մեծիրանաց գրքին։

3) Գաւառիս ներքին մասն կոչուում է Ներքին-Խաչեն (Վարդ. Բարձր. եր. 184)։

4) Մատ. Խոր. եր. 606։ Ձեռագիրք Ռաստակ.

5) Մով. Կաղ. եր. 163։

6) ,, ,, եր. 94 և 163։

7) Մատ. Խոր. եր. 609։

8) Մով. Կաղ. եր. 124. Կիր. Գանձ. եր. 216։

9) Գաղտ. եր. 205։

10) Մատ. Խոր. եր. 258, 606 610.

11) ,, ,, եր. 258։

12) Վարդ. աշխարհ. «Գարգման գաւառ Գարթմանիկ է»։

13) Մատ. Խոր. եր. 609։ Մով, Կաղ. եր. 273 և 279։

Digitized by Google

Փառիս [1]), Փառիսոս [2])։ այժմ Շամշադին անունները։

ԺԸ. Գաւառն, որ ընկած է Տաւուշ կամ Թովուզ գետակի Հարաւային (Ախնջի) օժանդակի, Աղստև գետի և Գեղամեան լեռնաշղթայի և դաշտաբերանի մէջ, ստացած է Քուստի [3]), Քաւս [4]), այժմ Ղազախ անունները (մեծ մասն Շամշադին)։

ԺԹ. Գաւառն, որ ընկած է Կուր գետի, Ձորագետի, Խրամի, Աղստև գետի, Պօղոս-քիլիսայի և Կայենի լեռների գագաթնագծերի մէջ, ստացած է Ձաւէ [5]), Ձորագետ, Երկիր Սևորդեաց [6]), երկիր Կայենոյ [7]) այժմ Ղազախի գաւառ անունները։

## ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿԱՄ ՎԵՐԻՆ ԳԱՒԱՌՆԵՐ.

Ի. Գաւառն, որ ընկած է Պազկանց գաւառի, Երասխ և Հակարի գետերի, Դիզափայտ և Քիրս լեռնաշղթայի հարաւահայեաց լանջերի մէջ, ստացած է Բերդաձոր [8]), Բերդձոր [9]), Բելուկան [10]), Ղալաղշլաղի ձոր, Ղալա-դարասի անունները, այժմ համարուում է Ջաբրայելի գաւառ։

ԻԱ։ Գաւառն, որ ընկած է նոյն լեռնաշղթայի գագաթնագծի շարունակութեան, Շուշուց Կօրիս տանող մեծ ճանապարհի և նոյն Հակարի գետի մէջ, ստացած է Հարճ-

[1]) Մով. Կաղ. եր. 273։

[2]) Վարդ. Բարձր. եր. 134 և Ասող. եր. 154, 198, 256 և 283։

[3]) Մատ. Խոր. եր. 906. Քստակ, Քուստի, ձեռագիրք Քուստի։

[4]) Մով. Կաղ. եր. 273. «Սահակ, որ և Սևադայ կոչեցաւ... առհասարակ տիրեաց Գարդմանայ, Քաւսայ և Փառնայ գաւառաց, այլ և Ձորագետոյն բովանդակ եղև իշխան»։

[5]) Մատ. Խոր. եր. 606։

[6]) Յով. Կաթ. եր. 234։

[7]) Վարդ. Բարձր. եր. 184, և Կիր. եր. 122 «յաշխարհն Կայենւոյ» «ի գաւառին Կայենոյ»։ Հարկ է յայտնել, որ Ձորագետ էր կոչուում գաւառիս ձորագետի կողմերն. իսկ Կայենոյ գաւառ՝ գաւառիս հարաւային վերնամասն։

[8]) Մատ. Խոր. եր. 609։

[9]) Մով. Կաղ. եր. 264։

[10]) «Վիճակեցաւ և սահմանով ի յԱղուանայ դետոյ մինչ 'ի Երասխն.. Կակունիս, Ձառիստ.. Հաքարի.. Դիզակ, Բելուկան» (Արձան. Գտչայ Վանուց)։

լ ա ն ք [1]) Զ ա ռ ի ս տ [2]) այժմ Հաճի Սամլու կամ Հաճիլար։

ԻԲ. Գաւառն, որ ընկած է Հարճլանք և Ծար գաւառի սահմանների մէջ, ստացած է Վ ա կ ո ւ ն ի ք [3]), Վ ե ր ի ն - Վ ա յ կ ո ւ ն ի ք [4]) անունները։

ԻԳ. Գաւառն, որ ընկած է Մռաւ սարի հարաւահայեաց լանջերի, Ոմբասարի գագաթնագծի, Վակունիք և Ոստանկ գաւառների սահմանների մէջ, ստացած է Ս ի ս ա կ ա ն - Ո ս տ ա ն [5]), Ս ի ս ա կ ա ն [6]), Ծ ա ր [7]) Զ ա ր [8]), այժմ Զար գաւառ։

Երևի թէ Խորենացին գաւառներիս հետ հաշուած է և Վարդանակերտ գաւառը, որով լրանում է ուղիղ քսան և չորս գաւառներն Արցախեան նահանգի։

## Ա. ՊԻԱՆ ԳԱԻԱՌ.

Խիստ պակաս է գաւառիս ջուրն։ Համարեա թէ ջուր գտնուում է միայն Երասխի, Ղուրու չայի և Քեօնդալանի եզերքներում. վասնորոյ սակաւ են և գաւառիս բնակիչներն, որք են միայն մահմետականներ։ Ինչպէս երևում է հին աւուր հետքից, Աղուանից Թագաւորների ժամանակ ջուր բերուած է Երասխից, որով ջրուած է ոչ միայն Պիան այլ և Մուխանք և այլ գաւառներն։ Հայաբնակ էր գաւառս վաղուց. բայց հայկական հնութիւններն իսպառ անհետացած են մահմետական բնակիչների ձեռնով։

---

[1]) Մատ. Խոր. եր. 609։

[2]) Արձանագ. Գտչայ վանուց։

[3]) Մատ. Խոր. Նոյն եր.

[4]) Մով. Կաղ. «Կալեալ զգաւառսն . . . որք են այսոքիկ՝ Վերին Վայկոյնիք, Բերդձոր, Սիսական»։

[5]) Մատ. Խոր. եր. 609։

[6]) Մով. Կաղ. եր. 264։

[7]) Ստ. Օրբ. ԾԷ. գլ.։

[8]) Գարսից Շահերն Աղուանից Կաթուղիկոսներին տուած հրովարտակների մէջ յականէ յանուանէ յիշում էին այսպէս. «Պետրոս Կաթուղիկոսին (Աղուանից) Գանձակայ, Ղարաբաղու, Զառ-Զբիլու (ոսկին առատ Ծար գաւառ) և Շամախու, ևն.» (Սար. Զալ. ճան. եր. 491)։

Digitized by Google

## Թ. ՄԹԻԽԱՆՔ ԿԱՄ ՄԹԻՂԱՆ ԳԱՒԱՌ (1)

Ընդարձակ է այս բոլոր գաւառներից, բայց այժմ ապարդիւն, անբնակ և անջուր է։ Այժմ համարեա թէ ամայի է լայնածաւալ դաշտս։ Բայց կայ մի հնութիւն—Աւերակ բերդ [1]. (Նօրան ղալա) անուն, որից մինչև Ամարաս մօտաւորապէս $8^1/_2$ մղոն է։ Բերդս պարսպուած է թրծեալ մեծ մեծ և հաստ հաստ աղիւսով, որից շատ մասը քանդած և տարած են Աղջաբադեցիք և Աղախանլու մահմետականներն, որ Երասխից շատ հեռի չեն։ Բերդումս կան հին շինութեանց շատ աւերակներ։ Երևում են բաւականին փորուածքներ, քանդուած տեղերից, ինչպէս վկայում են, գտած են ոսկեայ, արծաթեայ և պղնձեայ դրամներ և խեցեղէն անօթներ։

Բերդից քառորդ մղոնաչափ վար կայ հայկական հանգստարան, որի մէջ կան խաչազարդ տապանաքարեր։ Պարսիկներն հանգստարանիս մօտ կառուցած են Փեյղամպեր անուն մի գմբէթ, որի մէջ կայ մի զոյգ գերեզման կից միմեանց, խաչանիշ տապանաքարերով։ Մահմետականաց համար մեծ ուխտատեղի է այս։ Հարուստ շիաներն գմբէթիս շրջապատում են թաղում իւրեանց մեռելները։ Գմբէթիս մօտ շինուած են մի քանի բնակարաններ թէ կարդացող մոլլա պահապանների և թէ ուխտաւորների համար։ Անտանելի են այստեղ ամրան օդն և կլիման, քանզի այստեղ կան թունաւոր օձեր, կարիճներ, մորմ, մոծակ, բոռ և ուրիշ մժղուկներ։ Բայց կան, և հօրաններով այծեամներ գաւառիս դաշտումն, ուր չ'կան այժմ ո՛չ անտառ և ո՛չ ջուր։

Գ. Դ. Ե. և Զ. [2]) գաւառներն որք են Արանռոտ, Տուէ,

---

[1]) Աւերակից տեղափոխուած են Դիզակ գաւառի Թաղասեռ և Որդնաշատ գիւղերի բնակիչներն։ Աւերակս կոչուում է և Միլին քաղաք և դաշտս Միլին գիւղ։

[2]) Արցախի բուն գաւառներին են վերաբերում Գիանք և Մուխանք գաւառներն. բայց որովհետև գտնուում են դաշտային մասում, վասն որոյ դասուեցան 'ի շարս դաշտային գաւառաց—Ուտի Նահանգի։ Սակայն յայտնի են արդէն Ուտի Նահանգի գաւառներն։

Digitized by Google

Ռոցպատեան և Աղուէ, (2) նմանապէս մահմետականաբնակ են այժմ։ Գաւառներիս բնակիչներն չարունակ երթևեկում են ամարանոց և ձմերանոց։ Գաւառներս հարուստ են ոչխարներով, տաւարներով, ձիերով և ուղտերով։ Գաւառներս առհասարակ ուտիաբնակ եղած են։ Մահմետականք այնպէս անյայտացրած են եկեղեցեաց և հանգստարանների քարերը, որ նշաններն անգամ չեն գտնուում կամ հազիւ ուրեք։

## Է. ԳԱՒԱՌ՝ ՏՈՒՋՔԱՏԱԿ, ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ, ԵՒ ԱՅԼՆ.

Գաւառս խիստ արգիւնաբեր է և հարուստ այգիներով, պարտէզներով, ցորենի, գարու, կորեկի, ձմերուկի, սեխի, վարնկի, և այլ նշանաւոր մրգեղինաց բերքերով. և չորքոտանի սուրբ և անսուրբ անասուններով. սակայն հարկ է ասել, որ պակաս է գաւառիս ստորին մասի ջուրն։

Գաւառիս վերնամասումն է Տիգրանակերտ [1]) աւանն, որ աւերակ է այժմ։ Բայց հարկ է յայտնել որ ընդարձակ գիւղաքաղաք եղած է այս և երբեմն առաջնորդանիստ և գաւառագլուխ. տակաւին մնում է ընդարձակ եկեղեցու աւերակն, շուկայի և տների և բաղանիսների կիսաւեր քարուկիր շինութիւններն և։ Աւերակիս ստորոտումն է Նահ-բուլաղ մեծ աղբիւրն, իսկ վերի ծայրումն՝ հանգստարանն։ Իսկ աւերակիցս վերև է Վանքասարն և Հովուի սարն. որոց հետ կապուած է աւանդական պատմութիւն (տես ծանօթ. 3)։ Աւերակիս մօտ է և մի նոր բերդակ, որ շինուած է ամբողջապէս սրբատաշ քարով և կոչուում է Թառնաշիւտի կամ Նահբուլաղի բերդ։

Գաւառիս ստորին մասումն են Սոլթան-պուտ հողեայ բերդն, որ բլուր ձևացած է իւր բարձրութեամբ և Բեյլուկան աւերակ քաղաքատեղին Գարգարի ձախ կողմում, որ այժմ կոչուում է Բ;այեաթ և ուրիշ 7 հողաբլուրներ։

---

[1]) Եսայի Կաթողիկոս (տպ. ի Շուշի), Չէքչեան և այլք Տիգրանակերտ են անուանում, իսկ տպ. յՕրուսաղ. սխալմամբ Ակրանակերտ, այլք Տգրանակերտ, Տգռանակերտ։

Digitized by Google

## Ը. ՈՒՏԻ—ԱՌԱՆՁՆԱԿ ԳԱՒԱՌ (4)

Ոչ ինչ պակաս հարուստ է և գաւառս ցորենով, գարիով, որիզով և բամբակով։ Ձմերուկ, նշանաւոր սեխ (չորս տեսակ), բրինձ, մաշ, սոխ, սխտոր, գազար, սեւկեիլ, խաղող, և այլն կազմում են գաւառիս բերքերն։ Գաւառիս ամեն կողմերով առատօրէն վազում են առուներ, որք հանուած են Թարթառ գետից, վասնորոյ և բազմարդիւն է գաւառս և արգաւանդ հողս։

Գաւառումս է Աղուանից երկրորդ մայրաքաղաքն Պարտաւ, որ հիմնուած է Թարթառ գետի ձախ կողմում և որ հեռի է Եւլախի—երկաթուղու կայարանից երեք մղոնից փոքր ինչ աւելի ճանապարհաւ։ Այժմ համարեա թէ մի գիւղ է Պարտաւն, զրկուած իւր մեծութեան և հարստութեան փառքից, սակայն հնութիւններն և աւերակներն այնքան շատ են, որք պահպանած են քաղաքի յատկութիւն։ Քաղաքս ունեցած է համարեա թէ մի մղոն երկարութիւն և կէս մղոնից աւելի լայնութիւն, ինչպէս երևում է աւերակի հետքերից և փորուածքների նշաններից։ Հին շէնքերն ընդհանրապէս շինուած են եղել եփած աղիւսով և պարզ հողեայ ցեխով, զոր օրինակ երևում են նոր ի նորոյ քանդած ստորերկրեայ հնութիւններից։ Հողն ունի կաճային զօրութիւն, որ անքակ պահած է մօտ հազար տարի ստորերկրեայ բնակարանները։ Մինչև 6 մեթր փորուածքներից ելնում են ոսկի, արծաթ, պղինձ հին դրամներ և անօթներ և երկաթեղէն ու խեցեղէն գործիքներ, կարասիներ և ամաններ։

Այժմ անհետացած են քաղաքիս Հրջապարսպի պատերն. բայց տակաւին մնում են երեք միջնաբերդեր, որոց պարիսպներն շինուած են հողեայ ցեխով։ Առաջին միջնաբերդն, որ գտնուում է փոշտի ճանապարհի տակին, այս է արևելեան կողմում, ունի վեց բարձրագոյն բուրգեր և հաստ ու բարձր պարիսպ. որի արևելեան կողմից խախտուած է փոքր ինչ տեղ։ Տրջապարսպիս մէջ տեղում արձանացած է մի երկյարկ աշտարակ, որ շինուած է թրծեալ աղիւսով և կրաշաղախ

Digitized by Google

ցեխով։ Աշտարակս ունի կլորակ ձև, $31\frac{1}{2}$ մետր հաստութիւն (արտաքուստ չափելով) և մօտ 11 մետր բարձրութիւն։ Խաչաձև շինուած է գետնայարկն, որի առաստաղի թաղն փլած է այժմ։

Խաչաձևի մէն մի թևից բացուած է մի մի լուսամուտ, որոց վերի ծայրերն հասած են մինչև վերնայարկի սորրոտն։ Երևի թէ գերեզմաններ կան գետնայարկումս, որք ծածկուած են փլուած թաղի տակ։ Արտաքուստ զարդարուած է վերնայարկն կարմիր, կանաչ և սպիտակ մանր աղիւսներով։ Վերնայարկիս վերի կողմին մօտ կան արաբական սպիտակ գրեր. իսկ ստորին կողմին մօտ մանր աղիւսներ [1]։ Տեղ տեղ քանդուած են՝ վերի յարկից գլխի կողմն և վարի յարկից՝ 1 մետր և 80 սան. և միանգամայն երկու յարկերի դռներն։ Բերդումս է արքունի ուսումնարանն և վարժապետի բնակարանն։

Երկրորդ բերդակն, որ նմանապէս շինուած է հողեայ ցեխով, առանց բուրգի է և կիսաւեր և գտնուում է մեծ ճանապարհի արևմտեան եզրի մօտ և ունի 104 մետր երկարութիւն և 93 լայնութիւն։ Բերդակիցս շատ հեռի չեն և միւս միջնաբերդերն։

## ՈՒԽՏԱՏԵՂԻ

Միևնոյն ճանապարհի արևելեան կողմում է Իմամզատէ կոչուած մահմետականաց ուխտատեղին, որ ունի թրծեալ աղիւսով և կրաշաղախ ցեխով շինուած մի շինութիւն, որ ունի երեք դուռն մի՝ հարաւային, մի արևմտեան և մի հիւսիսային կողմից։ Շինութիւնս գրեթէ իւր մէջ տեղում ունի մի խաչաձև, միջակ, գմբեթաւոր և սենեկանման յարկ, որի մէջ տեղում ամփոփուած են երկու սուրբ անձանց մարմիններն։ Գերեզմաններիս վերայ, որ թաղուած են կից, ծածկուած է մի մանրաչեայ, փայտաշէն վանդակ, իսկ վերջնոյս վերայ թանկագին և ոսկեթել ծածկոց։ Վանդակիս

[1] Ոմանք կարծած են և կարծում են թէ արաբական գրեր են սոյն աղիւսներն։

Digitized by Google

տակ յայտնի երևում են զոյգ տապանաքարերն. իսկ սորա աչքերից կապուած և կախուած են հազարաւոր, գոյնզգոյն թելեր և մետաքսեայ ու բամբակեայ ծուէններ, որք կապուած են մահմետական ուխտաւորներից մի մի խնդրուածքի համար։ Ուխտատեղի մզկիթս ունի շրջապարիսպ, որի հիւսիսային ներսի կողմում շինուած են սենեակներ թէ կարգացող մոլլաների համար և թէ աղօթաւոր ուխտաւորների։ Թէ պարսպի ներսն և թէ դուրսն լի է սրածայր և նախշուն տապանաքարերով և գերեզմաններով։

Ուխտատեղիցս մի քանի քայլ դէպի արևելք կայ վեցաչեայ մի գմբեթ՝ ծածկուած բլրի տակ։ Գմբեթիս աչքերն ներքուստ զարդարուած են սպիտակ, սև և դեղին յախճապակեայ աղիւսով։ Այս ևս ուխտատեղի է մահմետականաց և հանգստարան։

Շիա աղանդին են պատկանում Պարտաւիս այժմեան բնակիչներն։ Այստեղ կայ շուկա և օրավաճառ, որ լինում է ամենայն ուրբաթ օրեր, ուր համախմբւում են ամեն կողմերից բազմաթիւ առևտրականներ։

## ՀԻՆ ԿԱՄՈՒՐՋ.

Հեղեղատներից երևում է որ Թարթառ գետն երեք անգամ փոխած է իւր ընթացքը Պարտաւի մօտերքում—Նախ հոսած է Պարտաւի հարաւային կողմով կէս մղոնաչափ հեռի, որի անջրդի հեղեղատն այժմ կանաչազարդ հովիտ է. երկրորդ՝ հոսած է Պարտաւից մօտ քառորդ մղոն հեռաւորութեամբ, որի վերայ շինուած է վաղուց մի քարուկիր կամուրջ, բայց անջրդի է այժմ և այս հովիտ ձևացած հեղեղատն. իսկ այժմ հոսում է Թարթառն ոչ այս և ոչ այն հովտով, այլ երկու հին ճանապարհների միջնավայրով բացած է իւր համար նոր ճանապարհ, որից հոսում է այժմ։

Կամուրջս ունի 170 մետր երկարութիւն, 5 մետր լայնութիւն և 16 աչք, որոց կամարներն արդէն քանդուած են և մնում են միայն ոտներն և երկու կողմերի պատերն։ Սրբատաշ եղած են բոլոր անկիւնաքարերն, իսկ

Digitized by Google

անտաշ՝ մնացեալ քարերն։ Ինչպէս վկայում են ունեցած է հայերէն արձանագրութիւն, բայց անյայտացած է, չ'կայ այժմ։ Աւանդաբար ասում են թէ Աղուանից Վաչէ Բ. թագաւորն շինած է կամուրջն։

## Ա. ՀԱՍԱՆ-ՂԱՅԱ

Հայաբնակ գիւղս, որ մօտ մղոնաչափ հեռի է Պարտաւից, հիմնուած է նոյն դաշտի վերայ Թարթառի ձախ կողմում։ Բնակիչք բնիկ, հողն բեկական, ջրարբի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն. ամրան ծանր օդն և կլիման և տենդաբեր ջուրն (Թարթառի ջրից չէ, այլ սև ջուր) երկար կեանք 55—60 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, գետնափոր, հողաշէն. ծուխ 46, քահանան գալիս է Մարալեան—Սարովից. արական 158, իգական 160։

Գիւղիս հայ ժողովուրդն զզուելով իւր Պարսիկ-բէկի անկարգ արարմունքներից՝ 1880 թուին տեղափոխուում է Փիրումեանց Նիկալայ-բէկի կալուածն, որ գտնուում է Մարաղայ գիւղից վերև, և բնակութիւն հաստատում նոյն կալուածի մէջ։ Սակայն 1883-ին՝ որպէս թէ անհամաձայնութեան պատճառաւ՝ վերստին վերադառնում են իւրեանց նախկին գիւղն Հասան-Ղայա ինչ ինչ հանգամանքներից ստիպեալ։

Հարկ է յայտնել որ Թարթառ գետի ձախ կողմի մարմնաւոր գործերն պատկանում են Գանձակի մարմնաւոր դատարաններին, իսկ հոգևոր գործերն՝ Արցախի առաջնորդութեան։

## Բ. ՂԱՀՐԻԼԱՐ ԿԱՄ ԽՈՐՈՋԼՈՒ.

Ճէնս հիմնարկուած է նոյնպէս Թարթառի ձախ կողմում. բնակիչք բնիկ, հողն բէկական, ջրարբի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, նոյն են նաև օդն, կլիման, ջուրն և երկար կեանքն. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Մարալեան—Սարովից։ Ծուխ 20, ար. 60, իգ. 53։

Digitized by Google

## Գ. ՂԱՐԱՄԱՆԼՈՒ.

Գտնուում է ՂաՀրիլարի Հիւսիսային կողմում, փոշտի Հին ճանապարՀի վերայ։ Ամբողջապէս Հայ եղած են գիւղիս նախկին բնակիչներն [1]), բայց այժմ մնացած է միայն եօթն գերդաստան Հայ, իսկ մաՀմետական են ամենամեծ մասամբ մնացեալներն։ Հայոցս Հոգևոր պէտքերը կատարուում է Սարով գիւղի եկեղեցում Սարովի քաՀանայի ձեռնով։ Ծուխ, 7. ար. 29. իգ. 28։

## Դ. ՍԱՐՈՎ.

Գիւղս, որ գտնուում է Ղարամանլուի Հիւսիս-արևմտեան Հանդէպ, խիստ մօտ, նոյն դաշտի վերայ, ծածկուած է այգիներով։ Բնակիչք բնիկ, Հողն բէկական, ջրարբի և բազմարդիւն. տեղական բերքերն նոյն (այստեղ լինում է առատ կապար, վայրի սամիթ, ղարաղան, որից շինում են օճառաքար, և մատուտակ)։ Օդն և կլիման ծանր ամրան, ջուրն Թարթառից, երկար կեանք 70—75 տարի. եկեղեցին Նորաշէն, Հոյակապ, բոլոր անկիւնաքարերն և կամարներն շինուած սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 22 մետր 28 սանթ. և լայնութիւնն՝ 12 մետր 35 սանթ. [2]) քաՀանայ մի։ Գիւղիս Հանգստարանում ամփոփուած են ցարդ և ամփոփուում են Սարովիս, ՂաՀրիլարի, Բօզլուի և Մարալեան-Սարովի ննջեցեալներն, որոց մէջ մի տապանաքարի վերայ փորագրուած է. «Տապանս Մէլիքին. ՌՃԻԲ. էր»։ Ծուխ 141. ար. 484, իգ. 440։

## Ե. ՄԱՐԱԼԵԱՆ-ՍԱՐՈՎ.

Հիմնուած է Սարովի Հիւսիսային կողմում. բնակիչք բնիկ, Հողն բէկական, ջրարբի և բազմարդիւն. տեղական

---

[1]) Աւանդաբար պատմում են թէ Բօզի եղած է գիւղիս նախկին անունն, իւր Հիմնադիր Բօզու անուամբ, որ մի քաջ և ազգու մարդ եղած է։ Յետոյ պակասած են բնակիչներն. Թրքաբնակ լինելուց վերջն փոխուած է Ղ ա ր ա մ ա ն լ ո ւ։

[2]) Հին եկեղեցու աւազանի արձանագրութիւնն. «Յիշատակ է սուրբ աւազանս Սարովեցւոց Սուրբ Աստուածածնայ եկեղեցուն Թվ. ՌՄՂԷ»։

բերքերն, օդն, կլիման, ջուրն և երկար կեանքն՝ նոյն. եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի, որ հովւում է և Ղահրիլարի հոգևոր հօտը։ Ծուխ 32. ար. 126. իգ. 124։

## Ջ. ԵԱՐՄՋԱՆ.

Հիմնուած է Թարթառ գետի աջ կողմում, խիստ մօտ Սէյսուլան գիւղին. հողն բէկական, բազմարդիւն. տեղական բերքերն նոյն. օդն և կլիման՝ ծանր ամրան. եր. կեանք 65. եկեղեցին և քահանան Սէյսիւլանինն են։ Ծուխ 11. ար. 30. իգ. 25։

## Ի. ՍԷՅՍԻՒԼԱՆ.

Հիմնուած է Թարթառի աջ կողմում, Մարաղա գիւղից բաւական ներքև, բնակիչք բնիկ ուտիացի, Թրքախօս, հողն բէկական, ջրարբի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն. օդն և կլիման ծանր ամրան, երկար կեանք 65. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 35. ար. 106. իգ. 103։

## Ը. ՄԱՐԱՂԱ [1])

Հիմնուած է Թարթառի աջ ափի վերայ դաշտաբերանում. բնակիչք 1828—ին գաղթած են Պարսկաստանի Մարաղայից և նոյն իսկ անուամբ հիմնած գիւղս. հողն արքունի, ջրարբի, որիզաբեր, բամբակաբեր և բազմարդիւն. տեղական բերքերն նոյն. օդն և կլիման ոչ այնքան ծանր. երկար կեանք 75—80 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ մի։ Ծուխ 104. ար. 286. իգ. 254։

---

[1]) Մարաղա գիւղիս շրջակայքում գտնում են մի տեսակ բոյս, որ գործ է ածւում իբրև թէյ։ Հաւաստացնում են որ շատ տարբեր չէ Չինաստանի թէյից. ափսոս որ այժմ անխնամ թողած են գիւղացիք այս հազուագիւտ բերքի մշակութիւնը։

Digitized by Google

### ԲՕՐՈՄԻ ԱՒԵՐԱԿՆ

Գտնուում է Կուր գետի աջ կողմում Մինկեաչեաւիւր անցքի (հուն) արեւմտեան կողմում։ Այս մի ընդարձակ գիւղաքաղաքի աւերակ է, որի մէջ կայ Ս. Յովհաննէս անուն մի ուխտատեղի։

## Թ. ՇԱԿԱՇԷՆ ԿԱՄ ԳԱՆՁԱԿԻ ԳԱՒԱՌ

Ուտի—առանձնակ գաւառի արեւմտեան կողմին կից է Շակաշէն կամ Գանձակի գաւառն։ Հարկ է նախ խօսել Գանձակ քաղաքի մասին և ապա գաւառների գիւղօրէից մասին, որ ամենատեսակ բարեմասնութիւններով աւելի է Ուտի—առանձնակ գաւառից։

### ՆՈՐ-ԳԱՆՁԱԿ ՔԱՂԱՔ (5)

Հիմնուած է Գանձակ գետակի աջ ու ձախ ափերի վերայ՝ երկաթուղու գծի հարաւային կողմում։ Մինչդեռ առաջ գաւառական մի աննշան քաղաք էր Գանձակս, մի քանի տարիներից ցարդ եղած է նահանգագլուխ քաղաք, որի այժմեան տարածութիւնն մի մղոն է այգիներով հանդերձ, որովք զարդարուած է քաղաքս և նոյն իսկ բնակարաններից շատերն։ Հին շուկայի և քաղաքամիջի արդն ու զարդն են կաղամախի ծերունազարդ ծառերն, որք տալիս են քաղաքիս առանձին շքեղութիւն և վեհութիւն։ Հին է քաղաքիս վերնամասի շինութիւնն, մանաւանդ Քիլիսաքեանդ կոչուած Հայոց թաղն, որի մէջ է մայր եկեղեցին Սուրբ Յովհաննէս Մկրտիչ, իսկ ստորին մասում Պարսից թաղն, որի մասին, ասում են թէ, հիմնուած է Ս. Շահ-Աբասից։

Հայք ունին քաղաքումս 1600 ծուխ, 4 եկեղեցի—սուրբ Յովհաննէս Մկրտիչ և սուրբ Լուսաւորիչ՝ Հայոց թաղումն. Սուրբ Գէորգ Նոր-Շուկայի մօտ, և Սուրբ Աստուածածին Նորաշէն կամ Երևանցւոց թաղումն։ Հայք զբաղուում են այգեգործութեամբ, վաճառականութեամբ և զանազան արհեստներով։

Digitized by Google

Սուրբ Յովհաննէս-Մկրտիչ մայր եկեղեցին շինուած է քարուկիր, վեց միապաղաղ և բոլորշի սիւների վերայ մի-ջակ բարձրութեամբ։ Ունի կանանց վերնատուն, երկու դուռն արևմտեան և հարաւային կողմերից, մի աւագ և չորս մի-մեանց վերայ շինուած փոքր խորաններ, վերին խորանների վերելակ սանդուղներն բարձրանում են աւագ խորանի աջ ու ձախ կողմերից։ Հարաւային վարի փոքր խորանում կայ երկու գերեզման. առաջնոյն տապանաքարի վերայ փո-րագրուած է.

«Տէր Յիսուս Քրիստոս, ՌՃՂԱ. թվին.
Այս է տապան Սուրբ Ներսէսի
Եւ Աղուանից Կաթուղիկոսի.
Եղև վախճան հանգիսի
Երկրորդեյեան կեանս հասի. (հաքիւրամեայ)
Ապա կոչումն Տեառն լսի
Փոխեալ աստէն յերկինս դասի.
Հազար երկու հարիւր ամի.
ԲԺ. (Երկոտասան) թուի
Եւ Բարագասի
Ներ սորա անուոջ յիշատակի»։

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՊԱՆԱՔԱՐԻ ՎԵՐԱՅ

«Այս է հանգիստ Իսրայէլին,
Որ է ազնիւ և գովելին,
Նման արդարոյն Աբէլին,
Եւ որդի Մելիք Հաթամին.
Ութուտասան կեանք սկսլի
Առնաւ անանց պարգևս լի
Եւ մեզ եթող տրտմութեամբ լի
ՌՄԻԵ. թուի
Եւ ԺԵ. Մայիսի»։

Եկեղեցուս հիւսիսային կողմի երկրորդ սիւնի վերայ խո-յակին մօտ գրուած է. «Խանի» [1])։ Նոյն խոյակի արևելեան

---

[1]) Պատմում են, թէ՝ Ջաւատ-խանն ամէն կիւրակէ օրերում գալիս է եղել և ներկայ գտնուելիս պատարագին։ Խանն սովորաբար կանգնելիս է եղել սիւնիս տակ, որն այժմ էլ կոչւում է խ ա ն ի ս ի ւ ն։

Digitized by Google

կողմում. «Լղար էրեց»: Եկեղեցուս շինութեան բուն արձանագրութիւնն գտնուում է արտաքուստ հարաւային որմի վերայ, արևի ժամացուցի տակ, որ է.

«Ի ժամանակն Ովանէս Կաթուղիկոսի թվին ՌՁԲ. ամի շինեցաւ սուրբ Ովանէս եկեղեցին (ս)»:

*Ներքուստ հիւսիսային որմի Ա. լուսամտի գլխին*

«Յիշատակ է լուսամուտս Մայիլեանց Ղահրամանին ու ծնողաց Նորին Աւագին և Եղիսաբէթին 1839 ամի»:

*Բ. Լուսամտի գլխին.* «Յիշատակ է սուրբ աւագանս և լուսամուտս Մահտեսի Աղաջան Խաչատուրեանի . . . և ծնողաց և եղբարց 1839 ամի»:

*Գաւիթ.* Յետոյ շինուած են քարուկիր գաւիթ, որ կից է եկեղեցուս արևմտեան կողմին և *զանգակատունն եւ կաթուղիկէն:*

*Եկեղեցուս արեւմտեան դրան գլխին արտաքուստ.*

«Հիմնեցաւ ի հիմանէ գաւիթ սուրբ Յովհաննէս եկեղեցւոյս ի հայրապետութեան տեառն Եփրեմայ և առաջնորդութեան տեառն Ներսէսի Սրբազան արքեպիսկոպոսի արդեամբ և ծախիւք Մահտեսի Տէր Գէորգի Տէր Յովհաննիսեան. հայցեմ առ սիրելի եղբարցդ՝ որք հանդիպիք ընթեռնուլ՝ զմէկ բերան զողորմի խնդրեցէք առ Աստուած 1816 ամի»:

Գաւիթս ունի երեք դուռն- հարաւային, հիւսիսային և արևմտեան կողմերից և կանանց վերնատուն որի, դուռն՝ իւր հիւսիս—արևելեան կողմից է. Ներքուստ ունի $32^1/_2$ մետր երկարութիւն և 13 մետր 30 սանթ. լայնութիւն (միասին չափելով եկեղեցին և գաւիթը): Հարաւային դրան վերայ քանդակուած է. «Շինեցաւ դուռնս արդեամբ Յովսէփ Ջառափ Գրիգորեանի յիշատակ 1860 ամի»: Գաւթումս բուն տաճարի արևմտեան դրան հարաւային կողմում.

«Ի թուին Հայոց ՌՅԺԱ. շնորհիւն Աստուծոյ ես Մահտեսի Աղաջան Խաչատուրեան իմով սեպհական արդեամբ կառուցի նորաձև կաթուղիկէս Սուրբ Յովհաննէս եկեղեցւոյս ի յիշատակ հոգւոյ իմոյ և ամենայն ննջեցելոց և կենդանեաց իմոց: Աղա-



Digitized by Google

չեմ զհանդիպողսդ, յիշեսջիք զմեզ յարժանաւոր մաղթանս ձեր», զի միջնորդութեամբ Սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց ջնջեսցէ Տէր զձեռագիր յանցանաց իմոց, յամի տեառն 1862-ին Գանձակ»։

*Գաւթումն ամփոփուած են.*

«Այս է տապան սուրբ Եղիշէի առաջնորդ Վա . . . վարդապետին թվ. ՌՄՁ.»։

«Այս է տապան Ջարաբերդցի Աթանաս վարդապետի . . . ՌՄԺԳ.»։

«Այս է շիրիմ Սուրբ Երուսաղէմայ նուիրակ Թոխաթցի Ցարաւոն վարդապետի ՌՄԼԵ.»։

«Այս է տապան Մռուտ անապատի առաջնորդ Յարութիւն վարդապետի ՌՄԽԹ. յունիս ԺՁ.-ին»։

«Այս է տապան Սուրբ Ստեփաննոս Նախավկայի միաբան Ստեփաննոս վարդապետի ՌՄՁԳ.»։

Կան և քահանայից գերեզմաններ գաւթիս ներսումն։ Արտաքուստ գաւթիս արևմտեան դրան առաջ ամփոփուած է Գաղտնիք Ղարաբաղի գրքի հերոսներից *Դալի-Մահրասայի* մարմինն, որի տապանաքարի վերայ փորագրուած է մի ցուպ և սոյն արձանագրութիւնն. «Այս է տապան Աւագ վարդապետին, որ է Ջարապերտու Մեծ—Կուէնից [1]) ՌՄԽԵ.»։ Երկրորդ հերոսն է *Թիւլի-Արզուման*, որի գերեզմանն գտնուում է գաւթիս հիւսիսային կողմում եղած պարտիզի հանգստարանում, որի շիրմաքարի վերայ քանդակուած է. «Այս է տապան Ջարաբերդցի Սարգսի որդի Արզուման ուզպաշուն ՌՄԽԵ. թուին»։

*Արտաքուստ գաւթիս հիւսիսային դրան առաջ.*

«Այս տապան Կորգի որդի Մէլիք Մնացականին ՌՄԻ.»։ Ժառանգութիւն ունեցած չէ սորա մելիքութիւնն, այսինքն յարատևած չէ որդոց-որդի, այլ սկսուած է Մէլիք-Մնացականովս և վերջացած սորա մահուամբ։

---

[1]) Գուսառի հին անունն է, որ այժմ կոչւում է Ջրաբերդ, իսկ Դալի-Մահրասայիս բուն ծննդավայրն է Նոր-Մեծ—շէն գիւղն։

Digitized by Google

Սուրբ Յովհաննէս եկեղեցին ունի չորս քահանայ և հետևեալ ձեռագրերը։

Ա. Աւետարան միջակ դիրքով, մագաղաթեայ, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ և արծաթեայ կողակալներ։ Սակայն գեղեցիկ չեն պատկերներն, թռչնագրերն և ծաղկանկարներն։ Կարևոր համարուեցաւ ընդօրինակել յիշատակարանից հետևեալը.

«Արդ՝ ով սուրբ հարք և առաքելագումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ եդեմատունկ, աստուածառոյգ վտակաց քառառաջեայ հոսանաց կենդանական աստուածային աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բառնայք ի վերայ ուսոց ի ժամ սոսկալի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յոյլքոյն ձեր զսուրբ հրեշտակաց և սքողեալ ահիւ խառնին ընդ ձեզ, նովին սուրբ աւետարանաւդ և միջնորդական հրաշիւք կենդանարար սուրբ պատարագին, յիշեսջիք զստացաւղ սորին զբարեպաշտ թագուհին Կեռան հանդերձ սուրբ թագաւորաւն Լևոնիւ և զծնողս իւրեանց և զդեռաբոյս ծիրանածին մանկունս նոցա։ Զի կենդանիքն պարագայց ամաւք և երկար խաղաղութեամբ անփորձ պահեսցին և հանդուցելոցն հանգիստ և ողորմութիւն շնորհեսցի յամենառատ բարերարէն Աստուծոյ։

Արդ գրեցաւ գիրս ձեռամբ ամենամեղ քահ(անայ) Ստեփաննոսի ի թուականիս Հայոց ՉԼԲ. (1283) ի հայրապետութեան տեառն Յակովբայ և ի թագաւորութեան Լևոնի որդւոյ Հեթմոյ ի մեծանուն սուրբ ուխտս Սկևռայ ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և մաւր լուսոյ Աստուածածնիս և կենսակիր Սուրբ Նշանիս մերձ յանմատոյց դղեակս Լամբրուն, որ է ի գլուխ Տարսոնի և ի ստորոտ մեծի լերինս Տաւրոսի, յորում ամի բարենշան և բարեպաշտ անդրանիկ որդին արքայիս մերոյ պարոն Հեթում զձիաւորութեան աշտիճան ընկալաւ և այժմ տիրէ աստուածապահ դղեկիս և այլ շուրջակայ գաւառացս, զոր յուսամ և մաղթեմ ի Բարերարէն Աստուծոյ անփորձ մնալ սորա ի յարդիւս բազում ամաւք ընդ երկայն աւուրս անուանի և յաղ-

Digitized by Google

թաւղ լինել ի վերայ երկրիս։ Եւս առաւել աղաչեմ յիշել ի Քրիստոս զնախայիշատակեալ ստացաւղ տառիս և զընաւ զարմն իւր զկենդանիս և զհանգու. . . . . .[1])»։

Բ. Աւետարան մեծադիր, մագաղաթեայ, կաշեկազմ, որի սկզբից և վերջից [2]) պակաս են շատ թերթեր, որոց հետ և յիշատակարանն։ Ամբողջապէս գրուած է գլխատառերով, որոց ձևերն ապացոյց են հեռաւոր հնութեան։ Մատթէոսի վերջում գրուած է մանր գրերով առանց թուականի. «Ո՛վ սուրբ ընթերցողք, աղաչեմ զձեզ երկրամերձ դիմաւք ապիկար Թուումէս յիշման արժանի արարէք ի մաքրափայլ աղաւթս ձեր։ Թէպէտ և անարժան եմ այլ վասն աշխատութեան յիշեցէք զիս և զծնողսն իմ, աղաչեմ զձեզ։ Զի մագաղաթս խոշոր էր և Նորոգողս տգէտ, անմեղադիր լերուք։ Զնորոգողս յիշեսջիք ի Քրիստոս»։ Խնդրում է յիշել նաև Մարկոսի վերջում։

*Ցետին ժամանակներումս գրուած է.*

«Պատճառ գրոյս այս է. ես Մէհրիզատս որդի Մկրտչին իմ աղբէրորդի Հապուլի Ն. (7) թուման պարտք ունէր, որ կէսն կանէր Գ. թուման ու կէս։ Ես Մէհրիզատս առի զսուրբ աւետարանս և շատ երկիր շրջեցի և իմ աղբերորդի Հապուլի Ն. թուման պարտքը տուի։ Ով որ յետոյ, առաջ պաղին հողին և կամ տանն խօսող լինի, Ն. թուման տայ։ Ես Կոստանդս վկայ, Փանոս վկայ, Մռաւս վկայ, Ամիրս վկայ. ես Ատի շինեցի տէր Մեսրոպս վկայ»։ Ապա գրուած է. «Ես ծառայ Աստուծոյ Սաւարշէս տանուտէր Քուչկայ գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ ընչից իմոց յիշատակ ինձ և ծնողացն իմոց հաւրն իմոյ Այտինին և մաւրն իմոյ Խութլու խաթունին և ամուսնոյն իմոյ Էմխաթունին և որդւոցն իմոց Այտինին, Գունդուզին, Ջալալին և եղբաւրորդոյն իմոյ Ահիլին։ . . . . . . Դարձեալ ծանիք (ծանիջիք) որ հետի (վասն) սուրբ աւետարանիս շատ տաւի եղաւ ի ներհակաց. չարխաթով և դատաստանաւ հաղ (իրաւունք) ինձ

---

[1]) Ընկած է թերթն և կորած։

[2]) Պակաս են նաև Ղազարոսի աւետարանի սոյն խօսքերից մինչև վերջն. «Զև ևս էր եկեալ Յիսուս ի գեաւղն»։

*եղաւ։ Ցայսմհետէ ով որ տաւի անէ յիմոց կամ յաւտարաց, նզովեալ եղիցի ի սուրբ աւետարանէս. ամէն»։*

*Գ. Աւետարան միջակ դիրքով, որ ունի ազնիւ մագաղաթ, ընտիր պատկերներ, նուրբ գրիչ և գեղարուեստի փայլուն ճաշակ։ Ընտիր են նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն, առհասարակ գեղեցիկ են և դիւրաւ—վերծանելի փոքր գրերն և վայելուչ ներկերով ներկուած չորս աւետարանչաց պատկերներն։ Աւետարանիս սկզբում գրուած է ոսկետառ գրերով. «Դու ստացաւղ քոյոցս բանի և զարդարաւղ այսմ տառի և ծառայի քո Սարգսի գրեա զանուն ի գիր քո կենդանի, որ փոխեցաւ ի Թուականիս յևթն հարիւր խ. երորդին և զՅուսէփայ փիլիսոփայի զհոգիս ընկալ հովիւ բարի և ընդ նմին Զոհագի»։*

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԻՑՆ.

*«Բայց գրեցաւ լուսազարդեալ աւետարանս ի լուսալրական ժամանակի սկզբանց արարչութեանն մինչև ,առ մեզ ՑՈԶ.* (6606)*, իսկ ի Կենարարին գալստենէն ՌՃՁԳ.* (1183)*, իսկ Խոսրովայն Պարսից սկսեալ ի մերս թիւ ՉԽԴ.* (744) *և գրեցաւ յանապատիս Դրազարկ կոչեցեալ։ Արդ եղև գրաւ կատարման սորա ի թուիս ՉԽԴ. յորում դեգերել կամք առ դրան սորա՝ ակն ունելով ամենաւրհնեալ մաւրն լուսոյ Աստուածածնին խնդրել ողորմութիւն մեզ և նեղեալ եղբայրութեանս և ամենայն աշխարհի, թագաւորաց քրիստոնէից ևս և բարեպաշտ թագաւորին Հեթմոյ, որ է յարգասիս մանկութեան իւրոյ բարձեալ բերէ յինքեան զամենայն գործս առաքինութեան, նմանեալ թագաւորացն սրբոց, զոր աջն Աստուծոյ պահեսցէ զնա և զեղբարս սորա հանդերձ ամենայն մերձաւորաւք և հնազանդեցելովք իւրովք ի կամս Աստուծոյ ի խաղաղութեան. քահանայապետական աթոռոյ սուրբ և անբիծ հայրապետն մեր Քրիստոս պահեսցէ զսա.....։ Եւ արդ ես մեղաւք մեռեալ հոգիս անպիտան և հողս Յովսէփ փիլիսոփայ եսու գրել զսուրբ աւետարանս ի յողորմութենէն Աստուծոյ։... Արդ գրեաց զերեք աւետարանն սուրբ և պատուական հայրն մեր և վարդապետն Թորոս փիլիսոփայն... իսկ զմիւս ևս աւետարանն զգլուխն*

Digitized by Google

զսուրբ աստուածարանն Յովհաննէս գրեաց Յովհան դրիչ և հօգեհոգբայրն մեր և զարդարեաց պէսպէս երանգով և գունով»։

Դ. Աւետարանն գրուած է թղթի վերայ, որ ունի միջակ դիրք և դիւրաւ վերծանելի տառեր, բայց չունի ոչ թուական և ոչ պատկեր։

Ե. Աւետարանը գրած է Եսայի անուն ումն. «Շնորհիւ Աստուծոյ յանկ ելեալ կատարեցի ի թուականութեանս ՌՃԺԲ... ի թագաւորութեան Պարսից Փոքր Շահ Աբասին և ի հայրապետութեան Աղուանից տեառն Պետրոսի Սրբազան կաթուղիկոսի ի յերկիրս Ծարայ ի գեաւղն... [1]»։ Իսկ ստացողն եղած է Սիմէօն անուն ումն։

Զ. Աւետարան գրուած թղթի վերայ Ղուկաս անուն քահանայից. «յիշել զգծող սորա Ղուկաս անուն քահանայ... ի թվին ՌՃԻԷ. զստացող սուրբ աւետարանիս զքարեմիտ պարոն Ամիրխան»։

Է. Աւետարան նոյնպէս գրուած թղթի վերայ ումն Մկրտիչ անուն անձից ՌԴ. Հայոց թուին։

Ը. Աւետարան գրուած թղթի վերայ Տէր-Մարտիրոսից ՌՃԿ. թուին։ Երկրորդ անգամ ծախուում է աւետարանս, որը գնում է Ելենու որդին, բայց չէ կամենում սա յայտնել իւր անունը՝ գրելով. «որ չեմ զանունս յիշելոյ ի սուրբ աւետարանս»։ «Գնեցաւ աւետարեր վտակս ի ՋԾԴ. թուականիս ի յերկիրս Վրաց ի անուանի աշխարհս Կախեթ ի թագաւորութեան (Վրաց) բարեպաշտ Ալէքսանդրին և որդւոյ իւր պարոն Կաւրկոյ... ի ժամանակս յորում զաւրացեալ էր Զարեաներ (՞) առ ազգս Շիխ.. Իլպաշ կոչլի, որ ելաւ ի արևելայ և էառ զԹախտն Թաւրիզոյ և կոտորեաց և կորոյս զազգն Թիւրքմանին և էառ զաշխարհս ամենայն և աւերեաց բազում գաւառ Հայոց և Տաճկաց և թողին զամենայն հայրենական բնակութիւնս և եկին ի Վրաստունս. վերջն Աստուծոյ է գիտելի թէ ինչ կու լինի»։

Թ. Աւետարան գրուած թղթի վերայ, պատկերազարդ,

[1]) Պակաս է.

միջակ գիրքով, որի սկզբում կայ սոյն ծանօթութիւնն. «.... Արդ ես մեղապարտ և անարժան Պանազուրցի Ալլահվերտի քօխաս (գիւղապետս) տեսի աստուածաշունչ սուրբ աւետարանս ի ձեռս անօրինաց գերի անկեալ, 'ի արդեանց և 'ի հալալ ընչից իմոց ազատեցի սուրբ աւետարանս և ընդ սմին մէկ թագ և մէկ շուրջառ և նուէր վախմ սուրբ Երից մանկանց փառաւոր վանիցն յիշատակ ինձ և ծնողաց իմոց և ամենայն արեան մերձաւոր որդոյ իմոյ և դստերաց իմոց... ՌճՂԴ. թվին Նոյեմբեր ամսոյ ԺԲ. գրեցաւ»: Չունի յիշատակարան:

*Ժ. Աւետարան*, գրուած թղթի վերայ, Ղուկասի վերջում գրուած է. «Ի թուաբերութեան Հայոց ՌճՀԳ. ապրիլի ԺԸ. առի (գնեցի) աստուածախօս աւետարանս ես մեղապարտ և անարժան Մէլիք Եսայիս յերկրէն Զարապերթու և 'ի գեղճէն բնակ Մոխրաթաղու: Արդ լուայ զձայն աստուածային, որ ասէ. Երանի այնորիկ, որ ունի որդի Սիօնի և ընտանի ի յԵրուսաղէմ և 'ի գութ շարժեալ որդւոյ իմոյ՝ առի զաստուածախօս սուրբ աւետարանս յիշատակ իմ և ծնողաց մարմնաւորաց իմոց և մօրն իմ ևս կողակցին իմոյ Հուրին և որդւոյն իմ Յովսէփին, Մէժլումին, Դանիէլին, Իսրայէլին և դստերացն իմոց և տուի յիշատակ և վախմ սուրբ Երից մանկանց... ի հայրապետութեան Աղուանից տեառն Ներսէսի հեզահոգի կաթուղիկոսին»:

*ԺԱ. Աւետարան* միջակ դիրքով, գրուած թղթի վերայ: Յիշատակարանից. «Արդ՝ գրեցաւ սուրբ աստուածանկար աւետարանս ձեռամբ անարժան Յովհաննիսի ի յերկիրս Գանջայ ի գեօղն Հարցհանկիստ 'ի դրան սուրբ Մալազնաբերթին 'ի հայրապետութեան երիցս երանելոյ հովուապետին տանս Աղուանից տեառն Պետրոսի Սրբազան կաթուղիկոսին, յեպիսկոպոսութեան սուրբ Ամենափրկչին քաջ և արի րաբունապետի Խաչատուր վարդապետի և թագաւորութեան Պարսից փոքր Շահ Աբասին, խանութեան երկրիս Աւղուրլու խանին ի թվականութեանս Հայոց ՌճԺԵ. ամի»:

Digitized by Google

## ՄԱՍՈՒՆՔՆԵՐ.

Ա. Մասն *Տեառնեղբօր* Յակովբոսի մի արծաթեայ, փոքրիկ խաչի մէջ, որ «Յիշատակ է սուրբ Նշխարս Տիրացու Գրիգորի թվ. ՌՄՀ.»։

Բ. Մասն *Յովհաննէս Կարապետի* մի արծաթաթել հիւսկէն (չիւթիշի) փոքր խաչի մէջ, որի վերայ գրուած է. «Այս է թիկն Յովհաննու Կարապետի»։

Գ. Մասն *Պանդալիոն* բժշկի մի արծաթեայ, ոսկեզօծ և փոքր խաչի մէջ, որ «Յիշատակ է սուրբ Պանդալիոնայ եկեղեցւոյն մասունքս պահպանութիւն հասարակ ուխտաւորաց և Տէր Սարգիս Տէր Ազարեանցին ծախիւքն 1859 ամի»։

Դ. Մասն *սուրբ Մինասայ* մի արծաթաթել հիւսկէն, փոքրիկ խաչում, որ կրում է, «Ի վայելումն ազնիւ Վահանին»։

Ե. Անյայտ մասն մի արծաթեայ, ականակուռ և մեծադիր խաչի մէջ, որի արձանագրութիւնն անկարելի եղաւ կարդալ։

Եկեղեցիս իբրև անշարժ կալուած ունի մի բաղանիս, որի արդիւնքն յատկացած է ծխական երկսեռ ուսումնարաններին։

### *Ծխական երկսեռ ուս. Ս. Յով. եկեղեցւս.*

Երկդասեան երկսեռ ուսումնարանս կանգնած է եկեղեցւս արևելեան հանդէպ։

Ուսանում են աշակերտ . . . 140
աշակերտուհի . 194

Վճարւում է բոլոր վարժապետաց և վարժուհեաց 3000 րուբ. որք գումարւում են մոմավաճառութիւնից, թոշակադրամներից և կտակադրամներից։

## Բ. ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻ. [1]

Եկեղեցիս, որ հիմնարկուած է քաղաքիս վերի թաղումն բազմամարդ հայոց մէջ, շինուած է. հոյակապ, ընդարձակ, բարձրաշէն, չորս սիւների վերայ։ Շքեղ և մեծադիր են լու-

[1]) Երկու եկեղեցիքս ևս հիմնուած են Գանձակ գետակի աջ կողմում։

Digitized by Google

սամուտներն և դռներն։ Բացի լուսամուտների մեծութիւնից, տաճարիս ձևն և մեծութիւնն նման է Երուսաղեմի Հայոց Սրբոց Յակոբեանց վանքին։ Եկեղեցին ունի երեք դուռն— հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերից, մէկն մի դուռն արտաքուստ ունի փոքր գաւիթ։ Տաճարիս երկարութիւնն է 30½ մետր, լայնութիւնն 19 մետր 70 սանթիմ։

*Եկեղեցու հարաւային սեան վերայ.* «Շինեցաւ սիւնս արդեամբք Քերովբ Տէր Մարտիրոսեանցի 'ի յիշատակ ծնողաց իւրոց 1857 ամի»։

*Արձանագր. տաճարիս արևել. կող. արտաքուստ.*

Շնորհօք և ողորմութեամբ Աստուծոյ հիմնեցաւ սուրբ տաճարս ի 14-ն Սեպտեմբերի 1853 ամի և յետ աւարտելոյն տրովք բարեպաշտ ժողովրդոց Գանձակայ 'ի կայսրութեան ամենայն Ռուսաց Ալեքսանդր Բ. և 'ի հայրապետութեան տեառն Գէորգ Դ. Օծաւ յԹ Նոյեմբերի 1869 ամի 'ի Սրբազան Մակար արքեպիսկոպոսէ առաջնորդէ Վրաստանի և Իմերէթի և անուանեցաւ Սուրբ Լուսաւորիչ եկեղեցի յանուն սրբոյն Գրիգորի մեծի հայրապետին Ազգիս։ Հիմնարկեցաւ սուրբ տաճարս յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի 1853 ամի և աւարտեցաւ 1869 ամի»։

Եկեղեցիս ունի հինգ քահանայ և միայն մի գրչագիր աւետարան, որի *Յիշատակարանից.* «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս 'ի թուականութեանս Հայոց ՌՃԺԷ. 'ի հայրապետութեան երից երանելոյ հովուապետին տանս Աղուանից տեառն Պետրոսի Սրբազան Կաթուղիկոսին և առաջնորդութեան սուրբ աթոռոյս Ամենափրկչին պարոն տէր Յովհաննէսին, թագաւորութեան Պարսից Փոքր Շահ Աբասին.. խանութեան Ուզուրլու խանին և իշխանութեան երկրիս մեծաշուք և բարեպաշտ Սիմաւոն Մելիքին։ Գրեցաւ ձեռամբ անարժան սուտանուն Յովհաննէսի 'ի յերկիրս Գանջայ 'ի գիւղս որ կոչի Հարցանկիս (ա) 'ի դրան սուրբ Մլքեարբեթդին. ամէն»։

Եկեղեցիս ունի և շրջապարիսպ, որ շինուած է. սրբատաշ քարով։ Պարսպիս հարաւային դրան կամարի սեպ քա-

րից շինած է վարպետն մի շղթայ և որի ստորին ծայրում մի խաչ։ Քարեայ շղթաս և խաչս արտայայտում են արուեստաւորի ճարտարութիւնը և գեղեցկագործութիւնը։ Ոչինչ պակաս գեղարուեստ ճարտարութեամբ շինուած են երկու փողահար հրեշտակապետաց քարեայ արձաններն, որք դրուած են նոյն դրան վերայ. Շրջապարսպի վերայ շարուած են երկաթեայ գեղեցիկ վանդակներ։ Թաղիս հայ ժողովրդեան ջերմեռանդ բարեպաշտութեան և կրօնասիրութեան ապացոյց են հոյակապ տաճարս, իւր շրջապարիսպն և ուսումնարանն։

## ՄԻԱԴԱՍԵԱՆ ԵՐԿՍԵՌ ԾԽ. ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ.

| | |
|---|---|
| Աշակերտ . . . . . | 90 |
| Աշակերտուհիք . . . . | 94 |
| Վճարւում են բոլոր վարժապետաց և | |
| վարժուհեաց տարեկան . . . | 3650 ռ., |

որք գոյանում են մոմի արդիւնքից, թոշակադրամներից, նպաստներից և դրամագլխի տոկոսներից։

## Գ. ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ

Շինուած է նոյն գետակի ձախ կողմում Մեծ-Շուկայի մօտ, հողաշէն և անշուք է։ Եկեղեցումս կայ սուրբ Գէորգայ մասունք, վասն որոյ ուխտատեղի է այս ոչ միայն Հայոց համար, այլ և այլազգեաց։ Մասունքս բերած է եկեղեցուս ծխական ժողովուրդն Երևանից, որից գաղթած է այստեղ 1814 թուին. Եկեղեցիս ունի իբր սեպհական կալուած մի քանի խանութներ և սենեակներ իւր բակում և մի քահանայ։

## Դ. ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ

Հիմնարկուած է քաղաքիս հիւսիսային կողմում Նորաշէն կոչուած թաղում։

Եկեղեցուս ծխական ժողովուրդն գաղթած է Երևանի կողմերից մօտ 1712-ին։ Եկեղեցիս, որ շինուած է Հայոց ՌՃԿԲ. թուին, քարուկիր, հոյակապ, բարձրաշէն և ընդար-

Digitized by Google

ձակ է՝ կառուցեալ վեց միապաղաղ սիւների վերայ։ Բայց ուրավհետև արևելքից արևմուտք ճաքած են եկեղեցուս հիւսիսային կողմի կամարներն, վասնորոյ արտաքուստ շինած են նոյն կողմից քարուկիր յենարաններ և մի գաւիթ դրան վերայ։ Եկեղեցուս երկարութիւնն է 26½ մետր, լայնութիւնն 16։

Եկեղեցումս կայ մի մեծագիր և ձեռագիր աւետարան, գրուած թղթի վերայ։ Յիշատակարանից. «Յամի թուականութեանս հայկազեան տոհմի ՉՀԱ. (1322) Ներսէս քահանայ ստացող աւետարանիս։ Գրեցաւ սուրբ աւետարանս ի ժամանակիս վերջացեալ դարիս, ըստ այնմ՝ որ ասէ. Յոտից մինչև ցգլուխ չիք առողջութիւն. ՙուխ, աւՙխ և ՙոխ. առ սմա ելեալն ժպիհր ազգին որ քրիստոսադաւան ազգիս հասուցին մինչև ՚ի դրունս մահու. . . . ։ Ես անպիտանս ՚ի կարգս կրօնաւորաց ստուանուն գրիչ Վդ. . . դրեցի զաստուածային տառս ՚ի գեղջն, որ կոչի Պէշկենա Գոմեր առ դրան սուրբ Զաւրավարին Գէորգեայ»։

Կայ նաև Թադէոս սրբազան առաքեալի մասունքն՝ հաստատուած մի արծաթեայ փոքր խաչի մէջ, որ կրում է սոյն արձանագրութիւնը. «Յիշատակ է սուրբ խաչս Մնացական Գրիգորեանց Վասակով, որ ետ Նորաշէն սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն, որ և այժմ նորոգեաց որդի նորին Գէորգ Վասակով 1868 ամի ի սմա է ամփոփեալ բոյթն Թադէոսի առաքելոյն Ա. Գ. Թ.»։

Եկեղեցիս ունի երկու քահանայ։

Քաղաքիս չորս եկեղեցիներն միասին ունին 12 քահանայ. ծուխ 1600. արական 4751, իգական 4516. մի տարում պատահած է ար. ծնունդ 273, իգ. 226. պսակ 103. ար. ննջեցեալ 138, իգ. 104։

Քաղաքումս է նստում նահանգապետն, քաղաքումս կան՝ բարձր ուսումնարան [1]), արուեստաւորաց ուսումն. [2]) և քաղաքական ուսումնարանն [3])։

---

[1]) Գիմնազիա, որի մէջ (բացի այլ աշակերտներից) կայ 93 հայ։

[2]) Ուսանում են այգեգործութիւն, շերամապահութիւն. հիւսնութիւն, ատաղձագործութիւն, փականագործութիւն տակառագործութիւն, ևն. ևն.։

[3]) Այդ ուսումնարաններում եղած բոլոր հայ աշակերտաց թիւն է մօտ 130 հոգի։

Digitized by Google

Արժ. Գրիգոր աւագ-քահանայ Թումանեանցի մօտ տեսայ մի կոնդակ՝ Հայոց Փիլիպպոս կաթուղիկոսից գրուած, որ ուղղած է առ ժողովուրդն, որք բնակում էին մի քանի գիւղերում։ Արժան համարեցինք զետեղել այստեղ ընդօրինակութիւնը։ Կոնդակս իւր ճակատին վերայ կրում է կարմիր թանաքով կնքուած կաթուղիկոսական կնիքը, որի մէջ գրուած է. «Աստուած Յիսուս Քրիստոս. Տէր Փիլիպպոս Կաթուղիկոս ամենայն Հայոց և Պատրիարք Վաղարշապատու, Յիսուսի Քրիստոսի ծառայ Փիլիպպոս վարդապետ 'ի վճկիդ. Գղմյ. (վիճակիդ Գեղամայ)»։

«Յիսուսի Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթուղիկոս ամենայն Հայոց և Պատրիարք Վաղարշապատու երկնահանգէտ և ազնուասարաս քրիստոսահիմն և լուսանկատ սրբոյ աթոռոյ Էջմիածնի, յորմէ ժամանեալ հասցէ գիր աւրհնութեան և նամակ պահպանութեան, շնորհք առաքելական և աստուածային աւրհնութիւնն. 'ի վերայ Սուրբ Եղիշէի առաքելոյ վանից աստուածախնամ... և վիճակի սեպհական ժողովրդեան իւրաքանչիւր գեղջ Հաթերքու, Ականու[1]) Ջանկաթաղու, Կուլաթաղայ, Մոխրաթաղու, Կիսապատու, Մեծ շինու, Մահմնու, Մալատկանու, Ջալտախին, Վերին Ճնաթաղու, Ափխուլա, Սոհլապատոյ, Թրթունին, Ուլուտակակայ, Կօկթափին, Եղակերու, Տախտաշինու, Վանքին, Գետաշենու. Սլուքեցւոյ, Բաղչիքու, Մրցնու, Հաճիշինու, Քօչկայ, Հատինու, Էիրլօղայ, Միրզիկուայ, Ոսկանապատի, .. Ցնծահալայ, Գետամիջու, Համասրապակուց եկեղեցեաց, քահանայից........... Եւ ընդ աւրհնութեանս ծաներուք վերոյգրեալ Սուրբ Եղիշէի առաքելոյ վանից առհասարակ սեպհական քահանայք և ժողովուրդք, զի մեր ճշմարտապէս լուեալ և ականատես իսկ եղեալ վանից ձերոց խաւար և աւեր մնալոյն և մանաւանդ թէ զձեզ կս տեսեալ այդպէս առանց հովուի և առաջնորդի, թէպէտ և կարծէք մինչ ցայս-

[1]) Այժմ աւերակ են Ականայ, Մահմնլու, Մալատկան, Վերին Ճնաթաղ, Ափխուլա, Սահլապատ, Թթուտ, Ուլուտակա, Հատիս, Էիրլօղա գիւղերն. Թրքաբնակ՝ Տախտաշէն, Քօշկայ, Ցնծահալայ, Համասրապակ և Մրցնա գիւղերն. Հաճիշէնն ամայանոց արած են Գանձակի համար։

Digitized by Google

փայտ եղեալ, քանզի ի վերայ ժողովրդեան, որոյ աստուածային խնամքն և ողորմութիւնն լինի, թոյլ ոչ տայ Աստուած, այլ այնպիսեացն բարձ առաջնորդ և հովիւն......[1]) որ և մեք ընտրութեամբն աստուածային այսօր առ ձեզ խոստացաք տալ ձեզ հովիւ և առաջնորդ զհոգևոր բազուկ իմ և նեցուկ սրտիս զտէր Կիրակոս վարդապետն հաւանութեամբ ձերով և խնդրուածովք..... և տուք զհաս և զիրաւունս ձեր՝ աթոռոյ ձերում ի ձեռս դորին անթերի.... զհոգեբաժինն, զաթոռահակն, զխաչահանէքն.. զկոյոպուտս, զգիազարդս... տանց մելքնեաց, տանց ազատաց, տանց քահանայից, տանց երեսփոխանաց, տանց տանուտեարց..., յանկարծամահիցն զամենայն առաջնորդին է..... յամսեան յուն.....»։

Հայրապետական կոնդակից պարզ երևում է, որ յիշեալ բոլոր գիւղերն սեպհական թեմ եղած է Ջրվշտիկ—Եղիշէ—առաքեալ վանքին. Թէ վանքս էր յատկապէս յաջորդանիստ աթոռն և թէ քանի՛ քանի՛ զուտ հայաբնակ գիւղեր աւերակ են այժմ կամ թրքաբնակ։

Ահա և Ներսէս Ե. կաթուղիկոսի արձակած կոնդակի իսկական պատճէնն, որը մեծ սիրով յանձնեց ինձ իմ ազնիւ բարեկամ Գանձակեցի պ. Աղեքսանդր Իսահակեանցն՝ ընդօրինակելով բնագրիցն, որ ուղղուած է իւր հանգուցեալ հօրը։

«Ներսէս ծառայ Քրիստոսի և անհասանելի կամօքն Աստուծոյ [2]) եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամենայն Հայոց Ծայրագոյն Պատրիարք համազգական նախամեծար աթոռոյ Արարատեան մայր եկեղեցւոյ սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի։ Ամենապատուելի հասարակութեան Հայոց Ելիսաւետպօլ քաղաքի ընկալաք զխնդրագիր ձեր գրեալ այսր ամսոյ 5. ստորագրութեամբ եօթանասուն և չորս անձանց յաղագս կարգելոյ ի տեղի զանձապետի Սրբոյ Երուսաղէմի Տիրացու Պօղոսի Զա-

[1]) Վէտադրեալ բառերից կային, որ անընթեռնլի էին, կային՝ որ անյայտացած էին թղթի պատռուելու մասին հետ և կային, զորս թողինք համառօտագրութեան համար։

[2]) Կնքոյ մէջ գրուած է. «Ն. Ներսէս եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամենայն Հայոց ՌՄՂԲ. 1843»։

Digitized by Google

ռափեանց՝ զաղայ Առոստամն Ափանասեան երեք տարի ժամանակաւ այնու պայմանաւ, զի բոլոր գումարն գանձանակաց և կրպակաց պատկանելոց սրբոյ վանիցն առաքելոյն Յակովբայ՝ որ յԵրուսաղէմ՝ եղիցի ի ձեռս Ափանասեանցին տասնին մէկ շահով, ընդ նմին խնդրէք զթոյլատրութիւն մեր վասն գնելոյ եղեալ առ ձեռն գումարաւ զկրպակս յանուն նոյն Աթոռոյն, առ որ ծանուցանեմք ձեզ, եթէ ի սկզբանէ անտի լուսաւորութեան Հայաստանի քրիստոնէական սուրբ հաւատով, եկեղեցիք մեր և վանօրայք չունէին զնշանաւոր ինչ գումար, և այժմ ևս գումարք բազում եկեղեցեաց մնալով ի ձեռս երեսփոխանաց և գանձապետաց՝ մատնեալ են ըստ ձախող դիպուածոց ժամանակին ի կորուստ, որոց աղագաւ շարունակի ցարդ գրագրութիւն ի հոգևոր իշխանութեան։ Մեք ունելով ըստ մերում կոչմանց և պարտաւորութեանց զառաւել իրաւունս քան զՊատրիարքն Երուսաղէմի և այլոց վիճակաւոր առաջնորդաց յաղագս պաշտպանութեանց կառավարութեանց և շինութեանց վանօրէից և եկեղեցեաց յանձնելոց մերում Ծայրագոյն տեսչութեանց՝ բարւոք համարեցաք վասն ապահովելոյ զվիճակն սրբոյ վանիցն առաքելոյն Յակովբայ՝ որ յԵրուսաղէմ, եդաք յարքունի բանկն զտասն և մէկ հազար րուբլիս արծաթոյ զստացեալն մեօք ի բազմաշխատ գանձապետէն Սրբոյ Երուսաղէմի ի Թիփլիզու քաղաքացի Աղա Յովհաննէսէ Մնացականեանց, և ստացաք ի բանկէն զբիլեթ յանուն նոյն աթոռոյ, զոր և առաքեցաք առ սրբազան Պատրիարգն Երուսաղէմի. Եւ այժմ ևս զբոլոր գումարն եղեալս առ գանձապետ Տիրացու Պօղոսն Զառափեանց մտաբերեմք նոյնպէս առաքել ի բանկն յանուն սրբոյ Երուսաղէմի և զբլէթն առաքել առ սրբազան Պատրիարգն, որոյ վասն գրեցաք յիշեալ Զառափեանցին առաքել առ մեզ՝ զեղեալ առ ինքն բոլոր գումարն գանձանակաց և վարձուց կրպակաց։ Եւ յաղագս փոխելոյ զնա՝ որպէս թէ 'ի պատճառս ծերութեան և անզօրութեան հաշւոց, մեք ոչ գտանեմք զօրեղ պատճառս, ըստ որում չիք ինչ դժուարութիւն յայնմ պաշտաման, զի զժողովեալ գանձանակս ունի պահել և զվարձս կրպակաց ստանալ և

յաւարտ ամին առաքել առ մեզ. և որպէս ունիմք զգրաւոր տեղեկութիւնս, նա ընտրեալ է յամին անցելոյ համաձայնութեամբ երևելեացն ի ժողովուրդս և է ինքն անձն բարեպաշտ և հարազատ սուրբ եկեղեցին։

Ցաղագս գնելոյ զկրպակս՝ նախապէս պարտին յայտնի լինել մեզ և Սինոդին սրբոյ Էջմիածնի. մանրամասն հանգամանք շինութեանց, տեղեաց, տարեկան վարձուց և ծախուց նոցին, որք եթէ արժան համարեսցին, յայնժամ տնօրինեսցեն վասն գնելոյ զայնս. իսկ յաղագս տալոյ մասնաւոր անձանց զգումարս որ և իցէ եկեղեցեաց կամ վանօրէից, ըստ զօրութեան Բարձրագոյն կարգադրութեան հաստատելոյ յամին 1836 ի Մարտի 11. պարտի լինել գրաւականօք հաստատեցելովք՚ի դատարանի, այնպէս զի գրաւականն երկպատիկ և աւելի արժիցէ քան զգըլուխ դրամն. իսկ պատասխանատուութիւնն կորստեան եկեղեցական դրամոց եղեալ կայ ի վերայ հոգևոր իշխանութեան. ուստի այսուհետև հանգամանաց լաւ համարեմք դնել ի բանկն զառ ձեռն եղեալ դրամս առ Տիրացու Պօղոսն Զառափեանց վասն ապահով և անկորուստ մնալոյ, յօգուտ սրբոյ վանիցն Ցակովբայ Առաքելոյն։

Կաթուղիկոս ամենայն Հայոց Ներսէս.

Թուահամար 124.
յամի ազգական 1302 և Փրկչական 1853.
ի մարտի ի Թիփլիզ»։

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՈՒԽՏԱՏԵՂԻ.

Քաղաքիս Հաւաւալին կողմում կայ մի քարուկիր մատուռ սուրբ Աստուածածին անուամբ, որ շրջապատուած է այգիներով, և ունի այս արձանագրութիւնը.

«Կառուցաւ այս տաճար Միածնի,
Ցանուն Սրբուհւոյ Աստուածածնի.
Արդեամբ Յովհաննէս Միւրումեանցի,
Ցիշատակ հոգւոյ իւր կենդանի։
Ի 1 Օգոստոսի 1867 ամի»։

Digitized by Google

## ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ ՄԱՏՈՒՌ.

*Քաղաքիս հիւսիսային կողմում Նորաշէն թաղի մօտ կայ մի հողաշէն մատուռ սուրբ Սարգիս անուն, որ ուխտատեղի է։ Երկու ուխտատեղեացս արդիւնքները յատկացրած են ուսումնարաններին։*

## Ս. ԿԻՐԱԿՈՍ ԵՒ ՑՈՒՂԻՏԱ.

*Պարոն Նաքաթեան եղբարց այգում գտնուած է մի գերեզման, որի տապանաքարը՝ որ խաչաձև է, վերցնելու ժամանակ ջարդուում է և լինում չորս կտոր։ Մի կտորի վերայ փորագրուած է «Սուրբ Կիրակոս», երկրորդին վերայ՝ «Սուրբ Ցուղիտա» և «Թուա», երրորդին վերայ՝ «Նուիթճ...»։ Թէ խաչերն և թէ գրերն հին են և ունին ԺԱ. դարի ձևերը և տիպերը։*

*Արդէն գիտենք որ Հայոց եկեղեցին յիշատակում է և շարս տօնուած սրբոց «Կիրակոս և մայր սորա Ցուղիդայ»։ գիտենք նաև որ սոքա—Կիրակոս և իւր մայրն Ցուղիտա Փոքր—Ասիոյ Իկոնիոն քաղաքից էին և թագաւորական ցեղից և նահատակուեցան Կիլիկեցւոց Տարսոն քաղաքում (յայսմաւուրք յուլիս 15)։ Սակայն չգիտենք թէ ո՞վ են ուրեմն Գանձակի Կիրակոսն և իւր մայրն, բոլորովին տարբեր անձեր են սոքա, գուցէ նահատակուած և ամփոփուած են այստեղ և անյայտ մնացած են գրականութեան սոցա անուններն և նահատակութեան դէպքն, և թէ յիշատակուած սրբոց անուամբ շինուած սեղանաքար է կամ գերեզման։*

## ԳԱՆՁԱԿԻՍ ԽԱՂՈՂՆԵՐԻ ՏԵՍԱԿՆԵՐՆ

1) *Լկենի* [1] *գինու խաղող (սև)՝*
2) *Թաւրիզենի* [2] *գինու խաղող (սպիտակ)՝*
3) *Տեղացի գինու խաղող (սև),*

---

[1] *Արցախեան բարբառով լակ նշանակում է տատասկ, միջին հիւթն շատ,—լակենի—։*

[2] *Նշանակում է թէ խաղողի այս տեսակը որթն բերուած է Թաւրիզից։*

Digitized by Google

4) Իծապտուկ կարմիր ուտելի խաղող.
5) ,, սև ,, ,,
6) Կանաչկենի կարմիր ,, ,,
7) Մարանդենի [1]) ,, ,,

Ճակաշէն գաւառիս մէջ այժմ կայ միայն երեք հայաբնակ և դաշտային գիւղեր, որք են.

*Ա. Ջարկեալար կամ Խոյլըլար*, որ շինուած է Կուրակ գետակի ձախ կողմում, փոշտի հին ճանապարհի գլխին. բնակիչք գաղթած են Խոյից, հողն արքունի, ջրարբի և բեղմնաւոր. տեղական բերքերն՝ ցորեն, գարի, կորեկ, բոժոժ, բամբակ, խաղող, գինի, դեղձ, սեկեիլ, արքայակաղին և այլն. օդն և կլիման ծանր ամրան և տենդաբեր և ջուրն՝ անախորժ. երկար կեանք 60—65 տարի. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հողաշէն և անշուք, քահանան գալիս է Ղարադաղլու գիւղից։ Ծուխ 38, արակ. 61, իգ. 60, միամեայ ար. ծնունդ 2, իգ. 2, պսակ 1, ար. ննջ, 1, իգ. 1.։

Բ. *Ղարադաղլու կամ Խանքեանդ*. գիւղս, որ հիմնուած է նոյն գետակի ձախ ափում, շատ հեռի չէ Ջարկեալար գիւղից. բնակիչք գաղթած են Ղարադաղից և Խոյից. հողն արքունի, ամենայն ինչ նոյն. եկեղեցին Սուրբ Գէորգ, աղիւսաշէն և գեղեցիկ, որ ունի սոյն արձանագրութիւնը. «1855 ամի 20 մարտի ի սէր սիրելի իմոց հայրենեաց որդոց Սիօնի փոքունց և մեծաց այս տաճար փոքրիկ ի հիմանց անտի բարեպաշտ կամօք աստ կառուցանի սեպհական արդեամբ մեծ իշխանի Աղա-Ռուստամի որդոյ Դանիէլի յանուն սրբոյ Գէորգայ մեծի, շքեղ հանդիսիւ աստէն օծանի»։ Քահանայ մի, ծուխ 75, ար. 174, իգ. 166, ար. ծն. 8, իգ. 7, պսակ 4, ար. ննջ. 6, իգ. 6։

*Գ. Սարով*. գիւղս հիմնուած է նոյն գետակի ձախ կողմում. բնակիչք տեղափոխուած են տեղս Ուտի-առանձնակ

[1]) Որթն բերուած Մարանդ գաւառից։ Մինչդեռ Արցախի դաշտային գաւառների որթերն ընդհանրապէս բարձրացրած են ծառերի վերայ, Գանձակումս ընդհակառակն բարձրացնում են սարու վերայ։ Սարիներն առհասարակ եղեգնեայ են. մէն մի որթի հենարանն՝ երեք եղեգն է։

գաւառի Սարովից և իւրեանց նախկին գիւղի անուամբ Սարով անուանած. գիւղիս հողն բէկական, ջրարբի և բազմարգիւն, նոյն են բերքերն, օդն և կլիման, երկար կեանքն և նոյն քաղանան, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հօղաչէն և անշուք։ Ծուխ 31, ար. 86, իգ. 77, ար. ծն. 4, իգ. ծն. 3, պսակ 1. ար. ննջեց. 1, իգ. 1։

## ՂԱՓԱՆԼՈՒ ԱՒԵՐԱԿ.

Գաւառիս ստորին մասում, այս է Կուր գետի, Կուրակ և Շամքոր գետակների և երկաթուղու գծի միջև եղած տարածութեան վերայ պակաս չեն հայկական աւերակներ, այժմ մեծ մասամբ մահմետականաբնակ գիւղեր են, հանգստարաններ և եկեղեցեաց բեկորներ։ Մանաւորապէս Ղափանլու աւերակն, որ ընկած է երկաթուղու, Շամքոր գետակի աջ ափերի և Կուր գետի մէջ։ Աւերակիս երկարութիւնն մօտ մի մղոն է, ընդարձակութիւնս կարծել է տալիս թէ գիւղաքաղաք եղած է Ղափանլուս, որ ծածկուած է ընկուզենի, կաղամախի և այլ զառամեալ ծառերով։ Հնագոյն բնակարաններն շինուած են հաստ հաստ և մեծ մեծ աղիւսներով, որոց երկարութիւնն է 40 սանթիմետր և հաստութիւնն՝ 9։ Փորուածներից ելնում են վաղեմի կարասներ, կճուճներ և այլ խեցեղէն անօթներ, արծաթեայ և պղնձեայ դրամներ և հին աղիւսներ։ Այժմ թրքաբնակ է աւերակս. թէ ինչ եղած են գիւղաքաղաքիս հայ բնակիչներն,—չգիտենք, միայն գիտենք որ մի քանի գերդաստան այստեղից փոխադրուած են Գանձակ մօտ հարիւր տարի առաջ։ Մահմետականներն անյայտացրած են եկեղեցեաց և գերեզմանների քարերը....։

## ԵԼԵՆԴՈՐՖ

Գիւղաքաղաք է այս Գերմանական գաղթականութեան, որ 1819 թուին հիմնարկուած է դաշտաբերանում Գանձակից վերև նոյն անուն գետակի աջ կողմի բարձրութեան վերայ։ Ուղղագիծ, լայն և շար ի շար են փողոցներն, որոց աջ ու ձախ եզերքներով շինուած են բնակարաններն և շարքա-

կարգ տնկուած են կաղամախի, սօսի և բարտի ծառեր, որոց գեղեցկութիւնն առանձին փայլ է տալիս գիւղաքաղաքիս։ Իւրաքանչիւր ծուխ ունի աղիւսաշէն (կայ և քարով շինուած) և մի քանի սենեակներից բաղկացած կանոնաւոր տուն, առանձին խնամքով մշակուած այգի, կարգ ու սարքով ցանուած բանջարանոց, կով, եզն, ձի, հնդկահաւ, սագ, բադ, հաւ և աղաւնի։ Այս պատճառաւ Գանձակն համարեա՛ թէ տարուան ամեն եղանակներում ունենում է թարմ կանաչի, կաթ և կարագ, սեր և իւղ։ Վերջապէս սոցա մէջ կայ եւրոպական ամեն տեսակ կարգ և կանոն թէ ներքին և թէ արտաքին կենցաղավարութեան և յարաբերութեանց մէջ։

Այստեղ կան Գանձակեցի և Ոսկանապատ, Գետաշէն, Սուլակ, Միրզիկ, Հարցհանգիստ (Զաւդառ), Բանանց և Բրաջուր գիւղերից թէ ընտանեօք և թէ սոսկական հայեր, որք զբաղուում են վաճառականութեամբ և տեսակ տեսակ արուեստներով։ Ընտանեօք հայերն բաղկացած են 30 գերդաստանից, իսկ սոսկական՝ 30 անձից։ Գիւղաքաղաքիս արեւմտեան կողմում, Գանձակ գետակի հովտում գոյանում են ինքնաբոյս տարոն և ընկուզի շատ ծառեր։

## Ժ. ԿՈՂԹ ԳԱՒԱՌ (6)

Գաւառս կից է Ծիկաշէն գաւառին արեւմտեան կողմին և անջատուում է միայն Շամքոր գետակով։ Թէև միևնոյն Ծիկաշէնի հողը ունի և գաւառս, սակայն չունի նոյնի հարուստ բարեմասնութիւնները, քանզի ամբողջապէս թրքաբնակ է գաւառս։ Մահմետականք գրեթէ ոչնչացրած են հայկական բոլոր հնութիւններ, վասնորոյ հազուագիւտ են գաւառումս եկեղեցեաց, մատուռների, հանգստարանների և խաչարձանների քարեր.

## ՇԱՄՔՈՐ ԱՒԵՐԱԿ ՔԱՂԱՔ (7).

Շամքոր քաղաքի աւերակն երևում է Շամքոր գետակի ձախ ափում՝ երկաթուղու գծի վերի և վարի կողմերում։ Մեծ եղած է քաղաքիս ծաւալն; ինչպէս երևում է աւերակիս մե-

Digitized by Google

ծութիւնից, մօտ մի մղոն երկարութիւն ունեցած է քաղաքս իւր արուարձանով միասին և կէս մղոնից պակաս՝ լայնութիւն։ Տակաւին գտնում են աւերակներիցս ոսկի, արծաթ, և պղինձ դրամներ և պղնձեղէն, երկաթեղէն և խեցեղէն գործիքներ, կարասիներ և անօթներ։ Այժմ ամենայն ինչ կործանեալ դրութեան մէջ է. միայն կիսաւեր է բերդն։

Ամրոցս՝ հիւսիսային, հարաւային և արևմտեան կողմերից շրջապատուած է քաղաքիս աւերակներովն, իսկ արևելեան կողմից (պարսպի տակով) հոսում է Ճամբոր գետակն։ Բերդս ունի շատ բուրգեր, հաստ պարիսպ և հաստատուն ամրութիւն։ Պարսպի և բուրգերի վերայ համարեա թէ մի մի շար թրծեալ աղիւս շարած է և մի մի շար անտաշ գետաքար կրաշաղախ ցեխի հետ միասին։ Ահա այսպէս շինուած է բերդս, որ ունի 130 մետր երկարութիւն, 70 մետր և 50 սանթիմ լայնութիւն, 2 մետր և 45 սանթիմ պատի հաստութիւն և 2 դուռն՝ մին հարաւային և միւսն հիւսիսային կողմից։ Բացի բերդիս պարսպից՝ կայ և մի ընդարձակ պարիսպ, որ սկսուած է բուն բերդի հարաւային պարսպի շարունակութիւնից և պատելով արևմտեան կողմով կցուած ապա բուն բերդի հիւսիսային կողմի պարսպին։ Բայց այս պարիսպն հիւսուած է տեղ տեղ քարուկիր և տեղ տեղ անեփ աղիւսով։ Երկաթուղին տակաւին չ'սկսած այստեղ էր փոշտի մի կայարանն, որ կոչուում էր Ճամբորի կայարան։

Այժմ քաղաքիս աւերակներում բնակում են մի քանի մահմեդական գերդաստան։

## ԴԻՏԱՐԱՆՆԵՐ.

Առաջին բարձրագոյն դիտարանն, որ եղած է Բ. բերդի հիւսիսային կողմում, փլած է 1844 թուին։

Երկրորդ դիտարանն՝ Ճամբոր գետակի ձախ կողմում՝ դաշտաբերանումն է։

Երրորդ և չորրորդն՝ որ կանգուն են, արձանացած են Աղդան սարի ստորոտին մօտ։ Ամբողջապէս քարուկիր են բոլոր դիտարան բուրգերն։

Digitized by Google

## ԶԱԿԱՄ

Կողթ գաւառիս միջի մասն է կազմում Զակամ գետակի դաշտերն և արեւմտեան մասն՝ Աղստեւ գետակի աջ ափերի մէջ ընկած տարածութիւնն։ Երկու Զակամ կայ—Վերին—Զակամ և Ներքին—Զակամ. առաջնոյն մասին յետոյ, իսկ վերջնոյս մասին այժմ։ Ներքին Զակամիս մէջ այժմ չէ գըտնուում հետաքըքըրաշարժ հնութիւններ, բայց գիտենք, թէ այս մասի մէջ էր Խաղխաղ քաղաքն։

## ԽԱԼԽԱԼ (8).

Զակամ գետակի հովիտն իբրև երկրայեգու դաշտի շարունակութիւնից մտած է լեռների մէջ։ Հովտալեզուս՝ սեղմուելով արևելեան և արևմտեան լեռներից՝ գետակի ընթացքով մտած է նոյն լեռների մէջ, ապա փոքր ինչ վերևում ստացած լայնագոգ ձև, մանաւանդ ջրաձորի ձախ ափերում։ Արևելեան կողմից Ընկուզուտ (Գոզլու), հարաւային կողմից Մամռուտ (Մամրթլու) սարերն պատած են լայնագոգ հովիտս իբր բնական շրջապարիսպ, գետակի աջ ու ձախ կողմերով։ Հովիտս ներկայացնում է հեռաւոր հնութեան բեկորներ և հետքեր—աւերակների թափուած քարեր, հին և կոպիտ խեցեղէն անօթների բեկորներ, իսկ ստորերկրեայ փորուածներից ելնում են կրով և աղիւսով շինուած պատեր և աճագին *տաքարներ:* Սովորականից չափազանց հաստ, երկար և լայն են աղիւսներն, այս է 31 քառակուսի սանթիմետր։

Խեցեղէն խողովակներով աղբիւրներ բերուած են աւերակ քաղաքատեղիս խիստ հնուց, որոց հետքերն ակներև է Զուլկատարով Համիտ-բէկի քանդած երկարաշար կոպիտ խողովակներից, որ գտնուում են աւերակիս արևմտեան կողմերում։ Ափսոս, որ իսպառ անհետացել են եկեղեցեաց աւերակներն։

Այժմ մի գիւղ է աւերակիս տեղն, որն ծածկուած է պարտէզներով և այգիներով. սակայն հաստակաւոր բնակիչք

*խոստովանում են, որ քաղաք եղած է այստեղ։*

*Աւերակիս արևելեան և արևմտեան կողմերում կան աւերակ գիւղատեղիներ և հանգստարաններ, բայց անարձանագիր են տապանաքարերն։ Այժմ տիրապետում են աւերակիս Զուլկատարեան եղբարք, որք են. Ալլահեար-բէկ, Մեհրալի-բէկ, Համիտ-բէկ և Ադիլ-բէկ։ Ձմեզ յարգանօք հիւրասիրողն էր Համիտ-բէկն, որ յայտնեց, թէ իւր նախնիքն Քրիստոսի 653 թուականին նախ՝ Բակտրիայից եկած են Շիրազ քաղաք, որից ապա Տիգրանակերտ և ապա, շատ յետոյ՝ այստեղ։*

*Խաղխաղ աւերակիս շրջապատում կան հետևեալ սրբավայրերն և աւերակ դղեակներն.*

1) *Սուրբ Ղազար, որ է երեք գերեզման Խաղխաղիս արևելեան կողմում եղած սարի գլխին։*

2) *Սորա արևմտեան կողմում, ոչ այնքան հեռի, կայ մի աւերակ մատուռ,*

3) *Մի աւերակ դղեակ, որ շատ հեռի չէ աւերակ մատուռից և կոչւում է Շահ-Փեքար կամ Աղաճ-ղալա։ Բարձր քերծեր են դղեկիս հարաւային, արևելեան և արևմտեան կողմերն, իսկ քարուկիր պարսպուած (այժմ կիսաւեր) հիւսիսային կողմն։ Համարեա թէ հարթ է դղեկիս մակերևոյթն։ Բայց թէ ինչ եղած է վաղեմի դղեկիս իսկական անունն.— ոչ ոք չ՚գիտէ։*

4) *Դղեկիս արևելեան կողմում կայ մի փոքրիկ վանք, որ ամբողջապէս կանգուն է, որի հարաւային հանդէպ կայ մի փոքր եկեղեցի, գիւղատեղի և հանգստարան։*

5) *Ընդարձակ և աւերակ գիւղատեղի և հանգստարան կայ նաև նոյն դղեկին հարաւ-արևելեան կողմում, որ կոչւում է Քեշիշ-Քեանդ։*

6) *Ղազանչի աւերակ և կիսաւեր եկեղեցի և հանգստարան, որք գտնւում են Քեշիշ-Քեանդի արևելեան կողմում. ոչ այնքան հեռի։*

7) *Երկու անանուն դղեականեր ևս, յորոց մին գտնւում է Ղազանչի աւերակի արևելեան կողմում, ոչ այնքան հեռի*

Digitized by Google

և միւսն հիւսիսային կողմքում։ Անյայտ և անծանօթ են բերդակներիս իսկական անուններն և անցեալն։

8) Ձակամ գետակիս Ջրաձորի աջ ու ձախ կողմերում կան նաև եկեղեցու վեց աւերակներ և հանգստարաններ։

## ԿՈՋԷՆ ԳԻՒՂ.

Հիմնուած է Կուր գետի աջ ափում՝ մօտ $2^1/_2$ մղոն հեռի Թովուզ երկաթուղու կայարանից։ Սուլթանի կամրջից ներքև միանում են բուն Տաւուշ (Թովուզ) և իւր օժանդակ Անինջին, ապա խառնուում Կուր գետին Կաջենի արևելեան կողմով։ Բուն Ուտեաց մնացորդներիցն են գիւղիս բնակիչներն, որք ունին և առանձին բարբառ (Ուտիերէն), բայց գիտեն և հայերէն։ Մօտ 700 տուն եղած է գիւղումս, բայց այսօր մնացած է միայն 30 ծուխ. պատճառն այն է, որ օդն և կլիման խիստ ծանր են ամրան։ Այս պատճառաւ համեմատելով ամեն տարուայ ծնածները մեռելոց հետ՝ միշտ աւելի եղած է վախճանուածների թիւն։ Չհաշուելով Կուր գետի քանդած տարածը՝ քառորդ մղոնից պակաս չէ հանգստարանի ծաւալն։ Հողն արքունի, ջրարբի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման տենդաբեր ամրան և մահատու. երկար կեանք 50, եկեղեցին սուրբ Յովհաննէս. քահանան գալիս է Մովսէս գիւղից։

Գիւղիս մօտ կայ և հին գիւղատեղի և հին հանգստարան և քարուկիր եկեղեցի, որից այժմ մնացած է միայն խորանի կլոր շինութիւնն։ Հանգստարանումս կայ մինչև 600 տարուան գրուած տապանաքար։ Արձանագրութիւններից երևում է որ ամփոփուած են այստեղ Թաւրիզեցի, Հալապցի, Կարնեցի և այլ քաղաքներից վաճառականներ։ Նշանաւոր է գիւղիս բոժոժն կամ մետաքսաթելն, վասնորոյ հաւանական է որ գիւղս բազմամարդ եղած ժամանակներում, արտադրած է մեծ քանակութեամբ մետաքսաթել, որը գնելու համար եկած լինին հանգուցեալ վաճառականներն։ Կան նաև գիւղիս իշխող Մելիք-Ջհանկիրի տապանաքարն և Աւետարան անուն մի ուխտատեղի մատուռ։ Ծուխ 30, ար. 90, իգ. 80։

Digitized by Google

## ՀՈՂԱԲԵՐԴ (ԹՈՓՐԱՂ ՂԱԼԱ)

Կուզենից կէս մղոնաչափ վերև նոյնպէս Կուր գետի աջ կողմում կայ մի հողեայ բլուր, որը անուանում են Հողաբերդ։ Գեղեցիկ հարթակ է բլրի գագաթն, որից ելնում են կարասներ, հին հրացաններ և պղնձեղէն ու խեցեղէն անօթներ։ Մօտ քառասուն տարի առաջ գտած են այս տեղից վեց սափոր լի արաբական և պարսկական դրամներ։

## ՂԱԶԱԽ—ՓՈՔՐԻԿ ՔԱՂԱՔ.

Նոր-քաղաքս հիմնուած է Աղստև գետակի աջ ափի բարձրութեան վերայ 1881 փետրվ. 13-ին։ Բնակիչներն են հայ, պարսիկ և ռուս։ Հայերն մեծաւ մասամբ եկած են Գանձակից, Շուշուց, Արցախի և Ղազախի գիւղերից. բայց Բանանց գիւղից եկածներն ունին տներ և խանութներ։ Հայերն կազմում են բոլոր բնակչաց երեք մասից երկուսն։ Նոր քաղաքումս կայ հիւանդանոց, դեղատուն, բժիշկ, գաւառապետ. գաւառապետի օգնական, հաշտարար դատաւոր, զօրանոց, փոշտ, հեռագրատուն, գանձարան և երկդասեան քաղաքական ուսումնարան հանդերձ ամենայն պարագայիւք։ Կայ նաև շուկայ, վաճառականի և արուեստաւորի խանութներ, որք ըստ մեծի մասին հայեր են։ Օդն և կլիման տենդաբեր ամրան. եկեղեցին նորաշէն և կիսատ տակաւին. որը շինել է տալիս պ. Մկրտիչ Ջաղէթեանցն թրծեալ աղիւսով և կրացեխով։ Ծուխ 50, 10 տուն ևս վակզալում։ ար. 120, իգ. 110։

# ԼԵՌՆԱՅԻՆ ԳԱԻԱՌՆԵՐ

## ԺԱ. ՊԱՋԿԱՆՔ ԿԱՄ ԴԻԶԱԿ ԳԱԻԱՌ.

Գաւառիս հարաւային սահմաններն են Երասխ գետն, արևելեանն՝ Պիան, հիւսիսայինն՝ Վարանդայ և արևմտեանն՝ Բերդաձոր գաւառների սահմաններն։

## ՋԱԲՐԱՅԻԼ (9).

Այժմ գաւառագլուխ է նոր և փոքրիկ քաղաքս, որ հիմ-

Digitized by Google

նուած է մի սեաւ վերայ, որի երկու կողմերն ձորակներ են։ Դիրքն նայում է Երասխ գետին, որի հեռաւորութիւնն գուցէ փոքր ինչ աւելի լինի մի մղոնից։ Բնակիչք հայ, ռուս և Թուրք—հաւաքածոյ են։ Ինչ քաղաքական հաստատութիւն որ ունի Ղազախ քաղաքն—դատարաններ, փոշտ, հեռագիր, ևն. նոյնը ունի և Ջաբրայելս. և ի վերայ այսր ամենայնի ունի և մաքսատուն, ուր առնում են Պարսկաստանից բերուած ապրանքների մաքսը. կան նաև սահմանապահ ռուս զօրք և կոզակներ, շուկայ և բազմաթիւ ծառայողներ։ Օդն և կլիման անախորժ և ծանր ամրան, ջուրն ականի է և ոչ աղբիւրի։ Դեռ եկեղեցի չունին հայերն. քահանան գալիս է Նոր-Առաքել գիւղից։ Հայք ունին 20 ծուխ։

## ՋԱԲՐԱՅԵԼԻ ՋՈՒՐՆ.

Որովհետև վազող ջուր չունի Ջաբրայելս, վասնորոյ շատ հին ժամանակից նախ փորած են արևմտեան ձորակի միջով մի ստորերկրեայ ական, ապա փորած են շատ ականներ, որոց ստորին ծայրերն սկսուած են մայր ականից և վերի ծայրերն տարածուած դէպի ձորակի աջ ու ձախ կողմերն։ Ահա այս բոլոր ականների ջրերն հաւաքուելով մայր ականի մէջ՝ արտավիժում են մի լաւ ջրաղացի ջուր, որից թէ խմում են և թէ ջրում են այգիները, որք խնամուած են առանձին հոգատարութեամբ։

## ԱՒԵՐԱԿՆԵՐ.

Ջաբրայելից բաւական ներքև Երասխի ձախ եզերքներում կան հայկական աւերակ գիւղատեղիներ, հանգստարաններ և եկեղեցիների հետքեր։ Հայոց և Աղուանից թագաւորութեանց կենդանութեան ժամանակ շէն եղած են և խիտառխիտ հայկական բազմամարդ գիւղերով լի գաւառիս բոլոր կողմերն. իսկ այժմ գիւղերից շատերն աւերակ են և շատերն մահմետականաբնակ։

Digitized by Google

## ԽՈՒՏԱՓԻՐԻՆ ԿԱՄՈՒՐՋ.

Ամբողջ հինգ մղոն է Ջաբրայէլից մինչև կամուրջս, որ շինուած է Երասխ գետի վերայ։ Գետս, որ ընկած է Դիւաի երկու սարերի մէջ, հետզհետէ դարերի ընթացքում կտրած է ապառաժ սալ քարերը և խորացրած ու սեղմած իւր յատակը։ Երկու կամուրջ կայ այստեղ—Վերին և Ներքին։ Խիստ հնաշէն և համակ սրբատաշ քարով շինուած է վերին կամուրջն, որ ունի ինն աչք, որոց ոտքերն հաստատուած են բնութենաստեղծ վէմ քարերի վերայ։ Աչքերի կամարներից կանգուն են չորսն և քանդուած՝ հինգն։ Իսկ վարի կամուրջն հիմնարկուած է նոյնպէս բնական վէմ քարերի վերայ, որ ունի տասնևհինգ աչք, որոց ոտքերն շինուած են քարով և թաղերն թրծեալ աղիւսով և կրաշաղախ ցեխով։ Վերջին կամրջիս ձախ կողմի դրան կանգնած են Ռուսաց սահմանապահ զինուորականներ, իսկ աջ կողմում Պարսից սահմանապահներն, քանզի գետս է երկու տէրութեանցս այժմեան սահմանագլուխն։

## ՄԱԶԱՆ-ՆԱՆԷ.

Խուդափիրին կամրջի հիւսիսային հանդէպ է Դիւաի սարն, որի վերայ կայ աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որ այժմ ուխտատեղի արած են մահմետականք և կոչում են *Մազան—Նանէ*։ Ծրջապարիսպ ունեցած է եկեղեցիս, բայց այժմ աւերուած է։ Ասում են թէ Հին-Թաղլարի ժողովուրդն տեղափոխուած է աւերակ գիւղիցս։

## ՉԱԼԱՊԼԱՐ-ՀԱՃԻ-ԿԱՐԱՄ.

Աւերակ գիւղատեղիս գտնուում է Հակարի գետի արևելեան կողմում։ Այստեղ ևս կայ հայկական հանգստարան և եկեղեցի, որը նոյնպէս ուխտատեղի փոխած են մահմետականք, որք անուանում են *Չալապլար—Հաճի Կարամ*։

Ա. ՆՈՐ-ԱՌԱՔԵԼ, գիւղս, գտնուում է Ջաբրայէլի արևմտեան կողմում, ականաձորակից վերև, հիմնուած է մի ձորակի

և երկու սեռի վերայ, բնակիչք գաղթած են Ղարադաղից և Ղափանի Սևաքար գիւղից 1840 թուին, հողն լեռնային, անջրդի, սակաւ և մեծ մասամբ բէկական, տեղական գլխաւոր բերքերն ցորեն, գարի, խաղող, գինի և բոժոժ, օդն և կլիման սննդարար, ջուրն՝ ականափոր, երկար կեանք 90 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածկն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ, 90. ար. 340. իգ. 312։

ՀԻՆ-ԱՌԱՔԵԼ ԱՒԵՐԱԿ ԳԻՒՂ. Նորի արևմտեան կողմում՝ գիւղից վերև, ուր մնում է եկեղեցու աւերակն, որը բարեպաշտ ոմն Մասան անուն՝ նորոգելով շինել տուած է մատուռ։ Հին գիւղատեղի, հանգստարան և աւերակ եկեղեցի կայ նաև սորա հարաւ արևմտեան հանդէպ՝ Անապատ անուն։

Բ. ՉԻԼԱՆ ԳԻՒՂ. շինուած է Առաքել գիւղի հարաւ արևմտեան հանդէպ սարի վերայ, բնակիչք գաղթած են նոյնպէս Ղարադաղից և Ղափանից (Բաղք, Բաղաց գիւղերից) 1840 թուին, հողն կիսով չափ արքունի և կիսով չափ բէկական, ամենայն ինչ նոյն, ունին և ոչխար, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քահանան գալիս է Նոր-Առաքելից։ Ծուխ 28. ար. 105. իգ. 95։

Գ. ԲԻՆԵԱԹԼՈՒ ՇԷՆ. Հիմնարկուած է Չիլանի սարի շարունակութեան վերայ, բնակիչք գաղթած Ղարադաղից նոյն թուականին, հողն արքունի և պարդիւն կամ խիստ նուազ արդիւնաւէտ. օդն, կլիման և ջուրն սննդարար. երկար կեանք 90 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, նորաշէն, ծածկն փայտաշէն, քահանան գալիս է, Նոր-Առաքելից. Ծուխ 26. ար. 80. իգ. 75։

Դ. ԾԱՄ-ՁՈՐ. Հիմնուած է Բինեաթլու շէնից վերև մի ձորի երկու լանջերին վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, սակաւ, աւազուտ և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, շինուած ՌՃԽԵ. թուին, երկարութիւնն 18 մետր, լայնութիւնն 12

Digitized by Google

մետր 33 սանթիմ, քահանայ երեք· Ծուխ 100 ար· 350· իգ· 270։

ՀԱՆԴԻՆ ՁԵՌՔ. Քարուկիր և փոքր մատուռ է շինուած Ծամ-ձորի արևմտեան հիւսիսային կողմում։ Աւանդաբար ասում են· «Սուրբ Շաղախն նահատակուելու ժամանակ փախչում է, բայց փախչելիս՝ անօրէններն կտրում են մի ձեռն, որ մնում է այս տեղ· յետոյ կտրուած ձեռնին վերայ շինում են մատուռ։ Բայց որովհետև արնաշաղախ է լինում նահատակուելիս, այս պատճառաւ կոչուում է Շաղախ—շաղախուած արիւնով»։

Ե. ՇԱՂԱԽ-ԳԻՒՂ—Սարի շէն—հիմնուած է Քարագլուխ գիւղի սարի վերայ· բնակիչք գաղթած Ղարադաղից, հողն արքունի, տեղական բերքերն նոյն (ոչխար, հաճար, գարնանի, կտաւհատ, կորեկ) գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 115 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանան գալիս է Ծամ-ձորից։ Ծուխ 70, արակ· 275, իգ· 230։

Զ. ՔԱՐԱԳԼՈՒԽ, շէնս հիմնուած է Ծամ-ձորի հիւսիսային կողմում մի քերծի գլխին, բնակիչք մեծ մասամբ բնիկ· փոքր մասն գաղթած Ղարադաղից· հողն արքունի և սակաւ արդիւնաւոր, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց· երկար կեանք 115 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանան գալիս է Ծամ-ձորից· Ծուխ 25· ար· 108· իգ· 95։

Է. ԲԱՆԱՁՈՐ. գիւղս հիմնուած է մի ապառաժուտ ձորի աջ լանջի վերայ Ցոր գիւղի հարաւային կողմում, բնակիչք բնիկ, հողն բեկական, ոչ այնքան բարեբեր, բայց նշանաւոր գինին· տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն վատառողջ, երկար կեանք 70—80 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, կառուցեալ չորս սիւների վերայ, որի երկարութիւնն է 18 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 11 մետր· քահանայ մի։ Ծուխ 150, ար· 575· իգ· 430։

## ՍՊԻՏԱԿ ՏՂԱՑ (ԱՂ-ՕՂԼԱՆ ՈՒԽՏԱՏԵՂԻ)

*Շինուած է գիւղիս արեւելահարաւ կողմում սպիտակ չերտաքարով։ Մատուռս ունի միջակ մեծութիւն, հիանալի տեսարան և պատուական օդ։*

Ը. ՑՈՐ. [1]) *Հիմնուած է մի խոր ձորում, որ գտնուում է Վէլիջանի բերդի հարաւային ստորոտում. բնակիչք բնիկ, հողն արքունի, սակաւ և խիստ նուազ արդիւնաբեր, զի ապառաժուտ և խեճուտ է հողն, բայց պատուական է խաղողն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք* 90—95 *տ. եկեղեցին՝ Ամենափրկիչ, կառուցեալ չորս սիւների վերայ, բարձրաշէն և գեղեցիկ, բեմի ժողովրդահայեաց ճակատն նրբաքանդակ նախշած. երկարութիւնն է* 22 *մ., լայնութիւնն* 12 *մ.* 35 *սանթ. դրան ճակատակալ քարի վերայ արտաքուստ. «Յիշատակ է Ն. Թվ.». քահանայ մի. Տուխ* 75. *ար.* 290 *իգ.* 270։

## ԱՆԱՊԱՏ ԿԱՄ ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ.

*Գիւղիս հարաւային կողմի ձորի ձախ եզերքի բարձրութեան վերայ կայ մի փոքր հարթակ, որի վերայ շինուած է վաղուց մի հին և անտաշ քարով եկեղեցի։ Փոքր տաճարիս շուրջն հանգստարան է, բայց երեւում են խուցեր. թուի թէ փոքրիկ միաբանութիւն եղած է այստեղ։*

*Ստորերկրեայ Դամբարան.* *Անապատիս մօտ կայ մի ստորերկրեայ, քարուկիր դամբարան, որի մէջ կայ մի գերեզման, որ ունի շիրմաքար և մեծ ուխտատ է։*

Թ. ՂՈՒՇՉԻԼԱՐ. *Հիմնուած է գիւղս Վէլիջան-իշխանի բերդասարից դէպի արեւելք խոնարհուած լանջի վերայ. բնակիչք գաղթած են Ղարադաղից. հողն բէկական և միջակ արդիւնաբեր. պատուական օդն, կլիման, ջուրն և տեսարանն. երկար կեանք* 110 *տ. եկեղեցին՝ Բերդավանք, քարուկիր. քահանան գալիս է Նորաշէնից։ Տուխ.* 12. *ար.* 36. *իգ.* 27։

---

[1]) *Համարեա թէ բոլոր գիւղերիս գոմերն փորուած են գետնի տակ որք անուանում են կ օ հ օ լ (առանց փայտի)։*

Digitized by Google

Ժ. ՆՈՐԱՇԷՆ. Հիմնուած է նոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ, բնակչաց մի մասն բնիկ և միւս մասն գաղթած Ղարաղազից, հողն բէկական, խիստ սակաւ, և նուազ արդիւնաբեր, պատուական օդն, կլիման, ջուրն և տեսարանն, երկար կեանք 113 տ. եկեղեցին նորաշէն և տակաւին առանց օծելու։ Քահանայ մի. ծուխ 20, ար. 120. իգ. 105։

ԺԱ. ՏԱԳ ԳԻՒՂ. Հիմնուած միևնոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ. բնակչաց՝ կէս մասն բնիկ և միւս կէսն գաղթած Ղարադաղից, հողն բէկական, սակաւ և նուազ արդիւնաբեր, պատուական օդն, կլիման և ջուրն; երկար կեանք՝ 100 տ. եկեղեցին նորակառոյց, քարուկիր, Սուրբ Մեսրոպ, քահանան գալիս է Վանք գիւղից. ծուխ 35. ար. 175. իգ. 135։

ԺԲ. ՎԱՆՔ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ՝ Հաւտրուբ գիւղի հարաւային հանդէպ. բնակիչք բնիկ, հողն բէկական, սակաւ և կարի նուազ արդիւնաբեր, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սպիտակ-Խաչ-Վանք, քահանայ՝ մի։ Ծուխ 35. ար. 155, իգ. 114.

## ՍՊԻՏԱԿ-ԽԱՉ-ՎԱՆՔ.

Հիմնուած է Վանք գիւղից ներքև մի տեսարանաւոր հարթակի վերայ, շինուած է անտաշ քարով և կրացեխով։ Վանքս ունի փոքր կաթուղիկէ և գաւիթ։ Տաճար և գաւիթ ի միասին չափելով երկարութիւնն է 15 մ. 75 սանթ. լայնութիւնն 7 մ. 10 սանթ.։ Վանքս, որ եկեղեցի համարուած է Վանք գիւղացւոցն, բայց միևնոյն ժամանակ մեծ ուխտատեղի է գաւառիս հայ բնակչաց։ Տաճարիս ներսում հիւսիսային խաչքարձանի վերայ, որ հաստատուած է կամարի տակ։

«Ես Սիրաւք կանգնեցի զխաչս հաւր իմոյ Խութլափի թվ. ՉՁԲ. (1333)»։

*Դրան հարաւային կամարի վերայ.* «Շինեցաւ ՌՃՁԴ։ այն տարին էր Թահմազ խան»։

*Ջանգակատան յիշատակարանն.* «Յիշատակ է զանկա-

տունս Սուրապի որդոյ Ավանէս եպիսկոպոսին» [1]։ *Արեւմտեան կուսամտի տակ արտաքուստ.*

«Տէր Աստուած Յիսուս Քրիստոս... Վրդանէս Թ. ՌՃԽԳ»։

### ԲԵՄ

*Տաճարիս արեւմտեան կողմում,* դրան մօտ հանգստարանում կայ մի բեմ, որ շինուած է սրբատաշ քարով։ Բեմիս արեւմտահայեաց երեսին մէջ զետեղուած է մի դեղեցկաքանդակ խաչարձան, որի գլխին փորագրուած է. «Ես աջամի որդի իշխանայ կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգոյ որդոյ իմոյ Աստւածարայ, որք կարդէք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, աղաչեմ. ի թվիս ՉՂԷ.»։

*Բեմիս առաջ՝ մի մէջքն կլոր քարի վերայ.* «Այս է հանգիստ բարեպաշտին Աստւածարայ, որ կէսաւրեայ ժամանակաւ ի Քրիստոս փոխեցաւ, ով կարդայ....»

*Սորա մօտ.* «Այս է հանգիստ բարեպաշտ Վալիճանայ, որ կէսաւրէ ժամանակաւ ի Քրիստոս փոխեցաւ, ով..»։ Վալիճան-բէկիս հայրն գրել տուած է տապանի միւս երեսին. «Ես Ախիջան որդի Ջալալայ կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգոյ որդոյ իմոյ Վէլիճանին, որք երկրպագէք, յաղաւթս յիշեցէք թվին ՉԻԷ.»։

*Տապանիս մօտ.* «Այս է հանգիստ Խոնաբեկուն դուստր Ախիճանին, կողակից Կոստանդեյին և քոր Վէլիճանին. յիշեցէք ի Քրիստոս յԱստուծոյ թվ. ՉԿԱ.»։

Ուխտաւորաց համար վանուցս հիւսիսային կողմին մօտ կայ մի մեծ սենեակ, որի դրան ճակատակալ քարին վերայ փորագրուած է. «Ես Մակրտիչս.. յիշատակ է թանապէս (մեծ սենեակ) Սուրապի որդի Ավանէս եպիսկոպոսի. շինեցաւ ՌՃՁԳ. թվին. այն տարին էր Թահմազ խան, Օսմանլուն երկրէս դուրս արաւ»։

[1] Վանուցս հարաւային կողմում ամփոփուած են Յովհաննէս, Մկրտիչ և Գէորգ եպիսկոպոսների մարմիններն. Աւանդաբար պատմում են. «Յովհաննէս եպիսկոպոսը եկած է Միլին քաղաքիցն (Փէյղամբարիցն) իւր ժողովրդով միասին. ինքն նստած է վանքումս, իւր հետ բերած ժողովուրդը բնակեցնում է Որդնաշատ, Թզասեռ և Հաւրութ գիւղերում»

*Վիմափոր խուցեր.* Մեծ սենեկիս հիւսիսային կողմին մօտ կայ երկու վիմափոր խուցեր, որոց մուտքն մի է։ Կարծես խուցերիցս մին եղած է ճգնարան և միւսն ննջարան։

Վանքումս եղած է մի սպիտակ խաչ, որ ունեցած է չափազանց ուխտաւոր, սակայն գողացած են սոյն թանկագին հնութիւնը. որի հետ և մի քանի կոնդակներ, որք գրուած են եղել Աղուանից Եսայի, Ներսէս և Յովհաննէս կաթուղիկոսներից։

ԺԳ. ՀԱՏՐՈՒԹ ԱՒԱՆ. Հիմնուած է մի խոր ձորում, որի հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերը պատած են բարձր սարեր, միայն բաց է արևելեան կողմն։ Բնակչաց մի մասն բնիկ, մի մասն գաղթած Ղազանչուց (Գողթան գաւառից), մի մասն տեղափոխուած Միլին քաղաքից, և փոքր մասն Բարկիւշատից, Ղարադաղից, Յորից և Թիփլիզից. հողն բէկական, չափազանց սակաւ [1]), ամենափոքր մասն ջրարբի և այգեւէտ, տեղական բերքերն նոյն, միայն չկայ ոչխար, գովելի օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 110 տարի. եկեղեցին Սուրբ Յարութիւն. քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւնն 18 մետր 35 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 4 սանթիմ։ Հիւսիսային երկրորդ կամարի խոյակից ներքև. «Թվ. ՌձՀ.» որ է շինութեան թուականն. քահանայ երկու։ Ծուխ 260. ար. 1060. իգ. .850։

Աւանումս կան շուկայ, վաճառանոց և արուեստաւորներն—դերձակ, հիւսն, սափրիչ, կօշկակար, որմահիւս, դարբին, ոսկերիչ, մսագործ, ևն. ևն.։

Կայ նաև *միդասեան* ծխական երկսեռ ուսումնարան, ուր ուսանում են 130 աշակերտ և աշակերտուհի։ Ուսումնարանիս մուտքն գոյանում է

| | | |
|---|---|---|
| Թոշակադրամներից . . . . . . | 400 | ռուբ. |
| Ննջեցելոց նուէրներից . . . . . | 200 | ,, |
| Կշռից (Ղափանից) . . . . . . | 200 | ,, |

[1]) Մօտ 300 ծուխ հատրութեան միայն վեցհարիւր օրավար հող։

| | | |
|---|---|---|
| Մարգասիր. Ընկեր. նուէր. . . . . | 120 | րուբ. |
| Մասնաւոր նուէրներից. . . . . . | 150 | ,, |
| Բարեկր. Մեսրոպ քահանայ Տէր-Ոսկանեանի նուիրած 1000 րուբլուոյ տոկոս | 40 | ,, |
| Ժամհարեան եղբայրներից նուէր . . | 25 | ,, |
| Ընդ ամենն | 1135 | ր. |
| *Ծլք.* տարեկան ռոճիկ վարժապետի. . . | 450 | րուբ. |
| ,, ,, վարժուհւոյ. . . | 440 | ,, |
| բնակարանի վարձ . . . . . . . | 180 | ,, |
| Ընդ ամենն | 1080 | ր. |

Աւանումս կայ նաև մետաքս քաշելու գործարան, հեռագրատուն, սրքունի զօրանոց, որի մէջ սովորաբար նստում է 1500 զինուորական—հեծելազօր կօզակ։

ԺԴ. ՈՐԴՆԱՇԱՏ. Գիւղս հիմնուած է Հատրութի արևմտեան կողմում եղած սարի ստորոտում, բնակիչք տեղափոխուած *Միլ* քաղաքից, հողն բէկական և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն. գովելի օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 110 տարի, եկեղեցին Սուրբ Հռիփսիմէ, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 50. ար. 195. իգ. 190։

ԺԵ. ԹՂԱՍԵՌ. Գիւղս խիստ մօտ է Որդնաշատին. բնակիչք տեղափոխուած են *Միլ* քաղաքից, հողն արքունի, ամենայն ինչ նոյն ըստ Որդնաշատի, եկեղեցին Ամենափրկիչ [1]), փայտաշէն, քահանայ մի։ Ձեռագիր աւետարան եկեղեցումս, պահուած անխնամ, չունի յիշատակարան, քանզի գողացած են և անյայտացրած։ Ծուխ 110. ար. 770. իգ. 390։

*Անապատ.* Գիւղիս արևմտեան կողմում կայ մի փոքր եկեղեցի՝ կառուցեալ մի բլրակի վերայ սոյն անուամբ, որ կանգուն է։

ԺԶ. ԿԱՐՄՐԱԳՈՒՃ. Գիւղս հիմնուած է Հատրութի հիւսիսային կողմի սարի ստորոտում մի խոր ձորի մէջ. բնակիչք

[1]) Գիւղիս նախկին բնակչաց եկեղեցին, որ շինուած է մի բլրակի վերայ և գտնւում է գիւղիս և Կարմրագուճի մէջ, քարուկիր է և կոչւում է Հին-Թղասառի եկեղեցի, որի մօտ է աւերակ գիւղատեղին և հանգստարանն։



Digitized by Google

կիսով չափ բնիկ և կիսով չափ տեղափոխուած Ղափանից. հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաւէտ, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80 տ. եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, երկարութիւնն 12 մետր 80 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 38 սանթիմ, քահանայ մի. Տուխ 50. ար. 240 իգ. 228։

ԺԷ. ՔՈՋԲԷԿ. Նէնս հիմնուած է նոյն սարի արևելեան կողմում, հարաւահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, մասամբ ջրարբի և հացատու, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն սննդարար, երկար կեանք 80—90 տարի, եկեղեցին Սուրբ Յարութիւն, քարուկիր. քահանան գալիս է Հատրութից։ Տուխ 25. ար. 75. իգ. 60։

ԺԸ. ՄԵԼԻՔՋԱՆԼՈՒ. Հիմնուած է նոյն սարի հարաւահայեաց մի բլրի վերայ, բնակիչք գաղթած Ղարադաղից, հողն արքունի, տեղական բերքերն նոյն (չիք այգի, թթենի, բոժոժ և ոչխար), պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85—90 տ. եկեղեցին նորաշէն, քարուկիր, քահանան գալիս է Հատրութից. Տուխ 32. ար. 155. իգ. 132։

ԺԹ. ՊԼԵԹԱՆՑ (Պլըթան). Հիմնուած է նոյն սարին մի ձորի արևմտահայեաց լանջին վերայ. բնակիչք բնիկ, հողն արքունի, ունի նաև այգի, բոժոժ և պարտէզ, անվնաս օդն, կլիման և ջուրն. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, քահանան գալիս է Հատրութից։ Տուխ 20. ար. 90 իգ. 70։

Ի. ԽԱՐՄԱՆՋՈՒՂ. Հիմնուած է նոյն սարի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք գաղթած են Ղարադաղից. հողն արքունի, ամենայն ինչ նոյն (միայն չունի այգի, թթենի և բոժոժ). եկեղեցին Տաղկավանք, քարուկիր, նորաշէն, քահանայ մի. Տուխ 40. ար. 160. իգ. 150։

ԻԱ. ԱՂ-ԲՈՒԼԱՂ. Հիմնուած է միևնոյն սարի արևելեան կողմում, բնակիչք գաղթած են Ղարադաղից. հողն արքունի, անջրդի, սակաւ, բայց հացատու, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ձեղունն փայտաշէն, քահանան գալիս է Խարմանջուղից։ Տուխ 32. ար, 122. իգ. 110։

Digitized by Google

ԻԲ. ԸԻԽԵՑԻՔ. Հիմնուած է միեւնոյն սարի արեւելեան ստորոտում. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, սակայն հացատու, ամենայն ինչ միեւնոյն են օդն, կլիման, ջուրն, երկար կեանքն, եկեղեցին և քահանան։ Ծուխ 20. ար. 65. իգ. 50։

ԻԳ. ԻՏԵԼԵՑԻՔ. Հիմնուած է նոյն սարի արեւելեան ստորոտում. բնակիչք բնիկ, հողն արքունի, մասամբ ջրարբի, տեղական բերքերն նոյն (ունին այգի, թթենի, մետաքսաթել), աննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, փոքր. քահանան գալիս է Հատրութից։ Ծուխ 60. ար. 265. իգ 235։

## ԿԱԻԱՔ.

Ուխտատեղիս գտնուում է այն սարի վերայ, որ ընկած է Ղուրու-չայի աջ կողմում գրեթէ, արեւելքից արեւմուտք՝ առանձնացած ամեն կողմերից։ Այս մի հին միջակ վանք է՝ շինուած չորս սիւների վերայ կոփածոյ քարով և կրացեխով. բայց արեւելքից արեւմուտք ճաքած է վանքիս գագաթն։ Հնուց ունեցած է և ամուր շրջապարիսպ, միաբանից խուցեր և ուխտաւորաց սենեակներ. սակայն աւերակ են այժմ։ Սուրբ Յակովբայ մարմինն ամփոփուած է հարաւային փոքր խորանի մէջ։ Մեծ ուխտատեղի է, սպիտակ տապանաքարն սեւացած է շատ մոմեր փակցնելուց։ «Յակովկայ և Իրաւափառայ» է վանքս ըստ պատմչին Աղուանից։

ԻԴ. ՀԻՒՔԻԻՐԱԹԱՂ. Հիմնուած է միեւնոյն սարի հիւսիսային կողմում, բնակչաց մեծ մասն գաղթած Ղարադաղից, հողն բէկական, անջրդի, բայց այգեւէտ. տեղական բերքերն նոյն. օդն և կլիման փոքր ինչ ծանր ամրան, երկար կեանք 75 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանան գալիս է Հատրութից։ Ծուխ 26. ար. 112. իգ. 114։

ԻԵ. ՈՂԵՐ. Հիմնուած միեւնոյն սարի հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ջրարբի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն (միայն չ'ունի այգի և բոժոժ), եկեղեցին կիսատ, քահանան նոյն։ Ծուխ 15. ար. 75. իգ. 55։

Digitized by Google

ԻԶ. ՋՐԱԿՈՑՍ. Հիմնուած միևնոյն սարի հիւսիսահայեաց կողմում մի ձորի ձախ լանջի վերայ, բնակիչներից եօթն ծուխ բնիկ և մնացեալներն գաղթած Ղարադաղից. Հողն բէկական, անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք 90 տ. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, կառուցեալ չորս սիւների վերայ. երկարութիւնն 17 մ. 55 սանթ., լայնութիւնն 11 մետր 24 սանթիմ. «Յիշատակ է Սուրբ Իստեփանոյս (Ստեփաննոս) եկեղեցիս ծարակոյսա ռամիկ ժողովրդեան թվ. ՌՃԽԷ.»: Քահանան գալիս է Տակուռուց: Տուխ 37. ար. 156. իգ. 153:

ԻԷ. ՄԱՄԱՏԱՂՈՐ. Հիմնուած նոյն սարի հիւսիսային կողմում երկու ձորերի մէջ կախուած մի նեղի վերայ. բնակչաց կէս մասն բնիկ. իսկ մնացեալ կէսն գաղթած Ղարադաղից և եկած Դողից. Հողն արքունի և անջրդի, տեղական բերքերն նոյն. օդն, կլիման և ջուրն գովելի. երկար կեանք 110 տ. եկեղեցին Սուրբ Մինաս, հնաշէն, կառուցեալ երկու կամարների վերայ. երկարութիւնն 14 մետր 70 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 95 սանթիմ. քահանան գալիս է Տակուռուց: Եկեղեցուս հիւսիսային կամարի վերայ. «Ես Ազարիա աբղա (աբեղայ) Դաւիթ Երեց, որ շինող եկեղեցոյ շինեցի տէր»: Նոյն կամարի միւս կողմում. «Խաչս Բաղդասարին է, իւր կողակցին . . . (եղծուած)»: Դրան գլխին. «Թվ. ՌՏ.»: Տուխ 33. ար. 110. իգ. 117:

ԻԸ. ՏԱԿՈՒՌԻ [1]) գիւղ. Հիմնուած է նոյն սարի հիւսիսային կողմում, Վանէսայ սարի ստորոտում, մի ձորի երկու լանջերի վերայ. բնակչաց մի մասն բնիկ և միւս մասն գաղթած Ղարադաղից. Հողն բէկական, սակաւ և անջրդի, փանորոյ սակաւ այգիներն. տեղական բերքերն նոյն, նշանաւոր են տանձն և խնձորն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տ. եկեղեցին Տաղկավանք, հոյակապ, կառուցեալ երկու սիւների վերայ, քահանայ մի: Դասից վերև

---

[1]) Մի քանի հայ գերդաստան կայ Գանկաթաղում:

ունեցած է կաթուղիկէ. բայց խոնարհած է։ Երևի թէ վանք եղած է այս, յետոյ փոխած են եկեղեցու, որի երկարութիւնն է 15 մետր 25 սանթիմ, լայնութիւնն 12 մետր։ Մի Խաչ-արձան քարի վերայ, որ կարծեմ հանգստարանից բերած են, փորագրուած է. «Թիւ ՌԽԷ.»։ Արձանագրութիւն դրան գլխին ճակատակալ քարի վերայ, «Ես Յակովբ վարդապետ՝ աշակերտ մեծին Եսաեա վարդապետին Գրճևանցոյ՝ ի գիւղաքաղաք գեղ-ջէն Թաղլարցի. յազգէն Թանկոց առաջնորդ կարգեալ ի հայ-րապետէն Աղուանից տեառն Երեմիայ մի քանի գիւղօրէից Ղու-զաց [1]), ոչ թողին բնակիլ ի հայրենի աթոռն մեր։ Այլ որն ելա և շրջեցա, և ոչ գտի առաւել քան զայս և հաճեցայ բնա-կիլ աստ և հրդել (հարթեալ) զՑնդուսար ի տեղի բնակութեան և սկիզբն արարեալ շինեցի եկեղեցիս ի կաթուղիկէն յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց հօրն իմոյ Դալվաթի սորան և մօրն Մարիամին և դաստիարակ սնուցիչ երկու քոյն իմոյ Սառին, Յա-շաքին՝ ողորմութեան, աղաչեմ կենաց. շինեցաւ սուրբ եկեղե-ցիս ձեռամբ Յակովբ վարդապետին ի թվին ՌՃԼԱ.»։ Ծուխ 40. ար. 140. իգ. 128։

ԻԹ. ՀԿԱԿՈՒ ՇԷՆ (Հակակ) Հիմնուած է նոյն սարի հիւ-սիսային կողմի մի ձորում, բնակիչք բնիկ, հողն արքունի. տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն սննդարար. երկար կեանք 80—85. եկեղեցին սուրբ Աստուածածին, քա-րուկիր, փոքր, քահանայ մի։ Ծուխ 25. ար. 79. իգ. 72։

Լ. ԹԱՂՈՏ գիւղ. Հիմնուած է Դող աւանի հարաւային կողմում, Մոխրենիսի ձորից հոսող առուի աջ կողմի բարձրու-թեան վերայ. բնակիչք տեղափոխուած են Մեծ-Սիւնեաց Դա-րաբաս գիւղից, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, բա-րեխառն օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին սուրբ Յովհաննէս, քարուկիր. քահանայ երեք։ Ծուխ 70. ար. 256. իգ. 219։

ԼԱ. ԴՈՂ ԱԻԱՆ. Հիմնուած է համանուն բերդասարի արևելահայեաց լանջին վերայ՝ ստորոտին մօտ. տեսարանն

---

[1]) Ղուզի նշանակում է՝ արեգդէմ չէ. իսկ այս տեղ նշանակում է տարիս հիւսիսահայեաց լանջերի վերայ եղած գիւղօրէից։

գեղեցիկ, բնակիչք բնիկ, բայց մասամբ եկած Ղազանչուց, հողն մէլիքական, պտղատու և արդիւնաւոր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, հոյակապ, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ. լայնութիւնն 12 մետր 92 սանթիմ։ Եկեղեցիս ունի և կաթուղիկէ և երկու քահանայ։ Դրան ճակատակալ քարին վերայ փորագրուած է. «Թվին ՌՃՁԵ. այս սուրբ Ոհաննէս եկեղեցոս գլուխն նորոգեց Ղուկազ վարդապետի որդի Մէլիք-Եկանն. յիշատակ է հոգոյն իւրոյ, ով որ կարդայ մէկ բերան Աստուած ողորմի ասէ»։

Եկեղեցիս ունի քարեայ խաչկալ, որի հիւսիսային դրան վերայ փորագրուած է. «Որ ողորմի Քրիստոս Աստուած. յիշատակ է խաչկալս պարոն Մէլիք Եկանիս և ծնողաց իմոց Մօսէս, Ղուկաս վարդապետին, մօրն իւր Տհօին և ծնողին իմ Մարիամին և եղբարն իմ Արամին և քոյրն իմ Խանում, կողակիցն Խանում աղին, որդի Արամին, Ըսայուն (Եսայուն) Պաղտամին, Օսէփին, Պաղրին, Առաքելին, Սափարին, Պաղումին, Վերտին, կողակիցն Գողալին, դուստր Թավարին, Խանպաճին, Խաթուն Խաթայուն, և այլն եղելոց ողորմի ասէք, ամեն. թիւն ՌՃԷ.»։ Ծուխ 280. ար. 765. իգ. 695։

ԵԿԵՂԵՑՈՒՄՍ ԿԱՆ ՀԵՏԵՒԵԱԼ ՄԱՍՈՒՆՔՆԵՐՆ.

1) *Կենաց փայտ* արծաթեայ խաչի մէջ։

2) Մի արծաթեայ խաչում, որի վերայ քանդակուած է. «Այս է մասունք և նշխարք սրբոյ *Առաքելոյն Թօմայի* և *Յակովբայ* զմահատ (°) նահատակին. ես Տռուլթեցի Մարգարիտ ապաշխարողս ետու զայս նշխարքս քեզ ծերունի Սարգիս վարդապետիդ յիշատակ հոգոյ իմոյ ի վայելումն յաւիտենական քո, թվ. Ճ.»։

3) Այլ արծաթեայ խաչում. «Յիշատակ է Մէլիք Եսայի (ու) որդի Սափարի բէկին, որ ետ Դողա կուսանաց Անապատին. սա է *Յակովբ* *հայրապետին* և *Թէոդորոսի* մասունք...»։

Digitized by Google

4) Մասն սրբոյն *Ցակովբայ*՝ նոյն տեսակ խաչում. «Ես Գրիգոր շինել տվի սուրբ խաչս յիշատակ ինձ առաջ անմահական է 'ի Քրիստոս Աստուած հաւատաց է Սուրբ Ակոփիկ, որ է Դիզակ [1]։ Համեոքեցի ոսկերիչ Մուրատս շինեցի. թվ. ՌԳ. էր»։

5) Մասն *Բարսղի Կեսարացւոյն*, մի արծաթեայ ոսկեզօծ աջում. «Այս է աջն սրբոյն Բարսեղի հայրապետին Կեսարու, որ ես Սարգիս վարդապետս վերստին նորոգել տըվի յիշատակ ինձ և ծնողաց իմոց Օհանին և Եղիսապետին ի դուռն Սուրբ Աստուածածին թվ. ՌՃԵ- ին. այժմոյս (Փրկչական) ՌՃԾԲ. ի գիւղն Կողպ»։

## ԴՈՂ ԱՒԱՆԻՍ ՄԷԼԻՔՆԵՐԻ ԴԱՄԲԱՐԱՆՆ.

Եկեղեցուս հարաւային կողմին պատկից շինուած է մի նեղ և երկար մատուռ իբրև դամբարան, որի մէջ ամփոփուած են բոլոր մէլիքներն և մէլիքազուններն։

«Այս է տապան Մէլիք Եկանի հայր Ղուկաս վարդապետի, ով կարդայ ողորմի ասէ. թվին ՌՃԿԴ.»։

«Այս է տապան քաջ իշխանին
Եկան անուն մեծ Մէլիքին,
Որ է որդի բարեպաշտին
Ղուկաս անուն վարդապետին.
Եղև սիրեցեալ ամենայնին
Նատիր անուն թագաւորին։
Տիրապետեաց սայ ի երկրին
Ի Աղուանից ի Նահանգին
Ցոյժ պատուեցաւ Պարսից ազգէն
Քան զիշխանս Հայոց երկրին… ՌՃՂԳ.»։

«Այս է տապան քաջ իշխանին
Մէլիք Եկանի որդի պարոն Մէլիք Արամին,
Որ շատ սիրական էր Նատիր Շահին,
Որ յառաջ վախճանեցաւ հայր սորին,
Որ չափաղամ ունէր Նատիր Շահին,

[1]) Դիզակ գաւառում։

Որ է Բ. հաքիմ էլաւ Ե. մուհալին.
Տահն ողեց (ուզեց) Արամ տարաւ,
ՉՌ (6000) թուման ջարմայ առաւ,
Ուրախ սրտով յղի (ուղի) արաւ,
Մէկ ամ կացաւ, վախճանեցաւ.
Ողորմի թվ. ՌՃՂԴ.
Որ փոխեցաւ առ Աստուած,

Որ ընթեռնուք, մէկ բերան Աստուած ողորմի ասացէք».

«Այս է տապան մեծին Մէլիք Եկանի որդի Մէլիք Եսայուն և էր սա իշխան կարգեալ Նատիր Տահէն. ԼԳ. ամ տիրեաց երկրիս Դիզակու և արար բազում քաջութիւն և յաղթութիւն ընդ անօրէնսն, և էր ինքն պարթև և յոյժ զօրաւոր քան զառաջինսն իւր և թել կենաց սորա և կամաւ Աստուծոյ վաղճանեցաւ թվ. ՌՄԼ. հոկտեմբերին բ.-ին գշ. որ ընթեռնուք, մէկ Հայր մեղայ ասացէք. ամէն»։

«Այս տապան լուսահոգի Մէլիք Արամի որդի Բաղր բէկին. թվ. ՌՄԼԸ. էր»։

Մելիք-Եկանի ապարանն գտնուում է աւանիս մէջ, որ բաղկացած է երկյարկ շինութիւնից, որ կառուցեալ է համակ սրբատաշ քարով։ Հետևեալն քանդակուած է գետնայարկի դրան գլխի ճակատակալ քարին և սեմերին վերայ.

«Թւին ՌՃԺՉ. յիշատակ է Թանապաս. այս է, որ ես Ղուկաս վարդապետի որդի, որ իմ անուն Մէլիք Եկան, առաջ խելին (խալխն-ժողովուրդն) ջամ դեռլին [1]), ինձ կարգեցին քոխայ, յետ նորա որ օլքան [2]) սալամաթ եղաւ։ Դեռ Աւշառ Սուլթան Հիւսէնիյ (ինի) տղայ Ղահթմիշ երեքն որ 'ի յէն չափաղու [3]) ողարկէ. որ պիրաւ ինձ. տու չես [4]) Մէլիքութիւն տվաւ։ Այլ Օսմանլուն եկաւ առաւ 'ի ձեռն որ Աւյնից (Աղուանից) որ ան էլ սա չափաղու ուղարկէ որ պերէն։ Ես թողեցի ոչ [5]) Հայաստանաս [6]) եսիր տալու... ինչ տվաւ սօվ Լղար ա-

[1]) Գումարուեցան։
[2]) Երկիրն խաղաղացաւ։
[3]) Որ Ղահթմիշն երեք գունդ զօրք ասպատակ սփռէ։
[4]) Պիրաւ—բերաւ. և ասաց—Դու չես Եկանն։ Երբ իմացաւ որ ես եմ, մելիքութիւն տուաւ.
[5]) Թողեցի ոչ—չ'թողի։
[6]) Հայաստանէս։ Աղուանից երկրի հայերիցն։

Digitized by Google

ցին [7])։ Շահ Նադիր զօրէղ թագաւոր եկաւ, զօրով առաւ օլքաս 'ի ձեռէս Օսմանլուէնեանց (Օսմանցիներից), նոր պէս (այս) չափաղուլ կոզարկէ, որ բերաւ ինձ այս եգմոհիլիս. ազկ քրիստիցց (ազգ քրիստոնէից) որ մէկն Թալիշ, մէին Ձմյալթ (Ջարաբերդ), մէկն Խաչէն, մէկն Վարանդայ, մէկն Քոչէզ, մէկն Տուզաղ. այսղունց [8]) (սոցա) խանը պակլար պէկայ տեղ աք ինձ չափաղաթ արաւ։ Ով որ յեղով կարդէ այս գիր, էս խմանայ որ մեր որպխութիւն այսպէս իլաւ. մին ողորմեայ այսէ (ասէ), եղև. ամեն»։

## ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍ ՆԱԽԱՎԿԱՅ.

Աւանիս հարաւային կողմի հանգստարանում կայ մի քարուկիր եկեղեցի, որ շինուած է մեծ մեծ քարերով։ Դրան ճակատակալ քարի վերայ.

«Թվ. ՌՃՂՋ. յիշատակ է սուրբ Ըստեփանոս եկեղեցուս գլուխն, որ նորոգեց Մէլիք Եկան և որդին Մէլիք Եսային, յիշատակ է հոգոյ»։

Դրանն սեմերի վերայ. «Ովանէս եպիսկոպոս, Մանուէլ եպիսկոպոս»։ Եկեղեցիս խիստ հին է, այն է առնուազն վեցհարիւր տարուան շէնք է։

## ԱՆԱՊԱՏ.

Հանգստարանիս վերևի ծայրում կայ մի այլ քարուկիր եկեղեցի ևս, կառուցեալ մի կամարի վերայ, որի ճակատի խաչի վերայ փորագրուած է. «Խաչս Վարդան»։ Եկեղեցուս մէջ է Մէլիք-Բախտամի գերեզմանն, որ ծածկուած է հողով։ Եկեղեցուս մօտ նշմարուում են խուցերի և կացարանների բակեր և բեկորներ, որոց մասին պատմում են թէ կուսանոց եղած է անապատս։

Դող աւանս ունեցած է ամուր չրջապարիսպ, բայց այժմ այնպէս քանդած և քարերը տարած են, որ հազիւ է նշմարուում չրջապարսպի հետքերն ուրեք ուրեք։ Սակայն տա-

[7]) Սովն վտիտ ազգային հարուած տուաւ։

[8]) Դիզակ գաւառս հաւաքուողների վերայ զիս իշխան կարգեց Շահն,

կուէին ապրում են մարդիկ, որք յաճախ կանգուն տեսած են պարիսպը։

*Գրչագիր Աստուածաշունչ.* Աւանումս կայ մի ընտիր ձեռագիր աստուածաշունչ, որի մէջ *նախադրութիւններ* կան բոլոր գրոց համար առանձին առանձին հատուածներով։ Միայն ափսոս որ անխնամ պահուած է, վասնորոյ շատ տեղերում իրարու փակած են թերթերն և բորբոսնած։ Ընկած և անյայտացած են մի քանի թերթեր, որոց հետ և յիշատակարանն։ Երկար թերթելուց վերջն հազիւ կարողացայ գտնել միայն. «Զստացող սուրբ գրոցս զՍիմէօն րաբունի զաշակերտ մեծին Գրիգորի և զանիմաստ ծրող սորին զՅովհաննէս եպիսկոպոս Անւոյ, աղաչեմ զձեզ դասք լուսերամից, յիշման առնել զմեզ արժանի, զի և դուք յիշեալ լիջիք 'ի բարիս բարերարին Աստուծոյ աւրհնելոյն յամենայն յաւիտեանս. ամէն»։ Աստուածաշունչս, որ գտնուում է պ. Տէր-Սարգսեանցի մօտ. չունի թուական։

ԼԲ. ՄՈԽՐԵՆԻՍ գիւղ. Հիմնուած է Թաղօտ գիւղի արևմտեան կողմում, ջրաձորի ձախ կողմի լանջի վերայ, դիրքն արևելահայեաց. բնակիչք բնիկ, հողն մելիքական, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց, երկար կեանք 100. եկեղեցին սուրբ Սարգիս, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 40 ար. 180. իգ. 170։

*Օխտը դռնէ* (Եօթն դուռ ունեցող)

Ուխտատեղիս գտնուում է գիւղիցս վերև մի լեռնաբլրակի վերայ։ Շինուած է եղել տորոնագոյն տաշած քարով, որ այժմ կիսաւեր դրութեան մէջ է։

ԼԳ. ՏՈՒՄԻ. Հիմնուած է գիւղս Մոխրենիսի արևմտեան կողմում Շնաքարի գետ կոչուած վտակի ձախ ափի բարձրութեան վերայ, դիրքն հարաւ-արևելահայեաց. բնակիչք բնիկ. հողն բէկական, լեռնային, անջրդի, բայց հացատու. տեղական բերքերն նոյն (կայ նաև խոզ) [1]), օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 85—95. եկեղեցին սուրբ Յով-

[1]) Գիւղս իւր անդերով և անտառներով պատկանում է մեծ. Մովսէսբէկ Աթաբէկեանցին։

Digitized by Google

հաննէս, քարուկիր, կամարակապ, առանց սիւնի, քահանայ երկու։ Ծուխ 120. ար. 563. իգ. 470։

## ԿԱՐՄԻՐ ԵԿԵՂԵՑԻ.

Գիւղիս հարաւային կողմում, ձորակի աջ կողմի սեռի վերայ, շինուած է հասարակ քարով։ Ամբողջապէս փլած է եկեղեցուս հարաւային պատն և թաղն կամարներով միասին։ Ունեցած է երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից։ Երկարութիւնն 11 մետր, լայնութիւնն 6 մետր 45 սանթիմ։ Արտաքուստ արևմտեան լուսամտի գլխին փորագրուած է։

«'Ի ՆԽԹ. թվ. և ի թագաւորութեանս տեառն Գագիկայ (Աղուանից) Որդոյ Մուսէի ես Ոսկի դուստր Մուսէի շինեցի տուն Աստուծոյ 'ի փրկութիւն հոգո իմո և ծնողաց իմոց»։ Եկեղեցիս հանգստարանի մէջ է. վաղեմի հանգստարանիս մէջ կան խիստ հին ամփոփեալներ, որոց տապանաքարերն անարձանագիր են ամենամեծ մասամբ։

## ԹԱԳԱՒՈՐԻ ՊԱԼԱՏ.

Հանգստարանիցս փոքր ինչ վերև, մի առանձնացած սարահարթի վերայ կան քարուկիր շինութեանց բեկորներ։ Հետքերիցն յայտնի երևում է որ շրջապարսպով ամրափակուած է եղել սարահարթս։ Խեցեղէն խողովակների շարքերից նշմարուած է որ ջուր բերուած է ժամանակաւ սարահարթս։ Ժողովուրդն աւանդաբար *թագաւորի պալատ* անունը յատկացրած է աւերակ հնութիւն կրող սարահարթիս։

## ԹԱԳԱՒՈՐԻ ԳԵՐԵԶՄԱՆ [1].

Պալատատեղուցս դէպի հարաւ՝ փոքր ինչ հեռի՝ մի կոնաձև բարձրացած բլրի մօտ կայ մի հին և առանձին այլ հանգստարան, որի մէջ երևում է մի մատրան աւերակ։ Աւերակիս հարաւային կողմին մօտ կայ մի տապանաքար, որ ու-

---

[1]) Ըստ մեր կարծեաց այս է գերեզման Աղուանից Ներսէհ իշխանի որդի Գագիկ իշխանին, որ էր հայր Աբու-Մուսէի, որի մասին տես ծանօթ. 12։

նի 2 մետր 3 սանթիմ երկարութիւն և 73 սանթիմ լայնութիւն և 5 գծով նախշեր, սակայն չունի արձանագրութիւն։ Ահա այս է որդւոց որդի աւանդաբար մատնանիշ արած Թագաւորի գերեզմանն։

### ԹԱԳԱՒՈՐԻ ԱՂԲԻՒՐ.

Պալատատեղու հիւսիսային ձորակում, որ կայ գիւղի և Կարմիր եկեղեցու մէջև, կայ մի պատուական աղբիւր, որի վերայ վաղուց շինուած է եղել սրբատաշ քարով կառուցեալ գեղեցիկ չէնք։ Ահաւասիկ այս է Թագաւորի աղբիւրն։ Ցաւալի է, այո, խիստ ցաւալի որ գիւղացիքս յիմարաբար քանդած և տարած են թէ Կարմիր եկեղեցու թէ Պալատի և պարսպի և մատրանն և թէ աղբիւրիս քարերը։

## ԳԱՒԱՌԻՍ ՎԱՆՔԵՐՆ

### ԳՏՉԱՅ ՎԱՆՔ.

Արդէն ծանօթացանք Հատրութի մօտի վանքին. այժմ ծանօթանանք Գտչայ վանուց, որ հիմնարկուած է մի գեղեցկատես և հիւսիսահայեաց սարահարթակի վերայ, Թաղլար աւանի հանդէպ, Ղուրու-չայ գետակի աջ կողմի բարձրութեան վերայ։ Շինուած է համակ սրբատաշ տորոնագոյն քարով (որի հանքն շատ հեռի չէ վանքիցս) խաչաձև, քառակուսի, չորս կամարներով, որոց վերայ բարձրացած է գեղեցկաձև կաթուղիկէն, որի վերայ բուսած է մի ճապկի և մի խնձորի ծառ։ Վանքս ունի մի աւագ, չորս փոքր խորան, տասներեք լուսամուտ, մի դուռն, 10 մետր երկարութիւն և 7 մետր 50 սանթիմ լայնութիւն։ 1868-ի մեծ շարժով արտաքուստ թափուած է տաճարիս արևելեան հարաւային անկիւնի քարերն։

Վանքիս *հիւսիսային որմի վերայ* փորագրուած է.

«Յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, ես Սարգիս և

Digitized by Google

Վրդանէս եպիսկոպոսք հիմնարկեցաք զեկեղեցիս ի ՈՂ. (1241) թվիս. շատ աշխատութեամբ աւագ խորանն խփեցաւ և եղբայրս իմ Տէր Սարգիս ի Քրիստոս փոխեցաւ։ Ես տէր Վրդանէս կատարեցի բազում աշխատութեամբ և հալալ արդեամբք իմովք ՈՂԷ. թվիս ի դառն և ի նեղ ժամանակիս՝ որ ազգն նետողաց զբազում գաւառս աւերեաց և մնաց այլասեռից աթոռ և վիճակ սրբոյն Գրիգորիսի, որ է հաստատեալ աջով և սուրբ նշանաւն և դաւազանաւն սրբով. վիճակեցաւ և սահմանով ի յԱղուանոյ դետոյ մինչ ի Երասխն, մինչ ի Աւազն Գաւուհատի, Վակունիս Վաղաղնազետով, ի Քարատնիս և Խողանազետովն, Զաւխտ իւր գետովն. Հաքարի Հազարազետաւն, Քրտազետ իւր գետովն, իւր սահմանովն, Դիզակ, Բէլուկան իւր գետովն և հայրենիքն եկեղեցւոյս տուինք, Փարախն և Գոտանոցն, Եկեղեցաձորն իւր սահմանովն. Ա. լուծ հող ի Տաչիս. Ա. լուծ ի Դող ի Գաղս, Ա. ի Մոխրենիս. ով որ այս սահմանէս յետ առնէ կոթուղիկոս կամ իշխան կամ հայրապետ, երեք սուրբ ժողովոյն նզոված եղիցի, յԱստուծոյ և յամենայն սրբոց անիծեալ, մասն և բաժին ընդ Յուդայի առցէ»։

*Ներքուստ հարաւային փոքր խորանի ճակատին.*

«Ի թվին ՈՂԵ. ես Տէր Վրդանէս շինեցի զեկեղեցիս և զցրուեալ վիճակս, հաստատեցի և զհայրենիքս և արձանի դրեցի հանապազ ուրբաթն անխիշատակաց ժամն, և տարւոյն Ժ, ժամ ինձ և Ժ. ժամ Տէր Սարգսի։ Յինանցն Ա. ժամ Ուխտանէս եղբաւրն իմ, Ա. ժամ Մովսիսի իմ քվեր որդու, որ խափանէ մեր մեղացն տէր է առ Աստուած»։

*Հիւսիսային փոքր խորանի ճակատին.* «Ես Զնրգամ և որդի իմ Ղարաք միաբանեցաք սուրբ ուխտիս տէր Վրդանէս իւր կամաւ զժամատունն ինձ երետ և ես իմ հալալ արդիւնն ընծա բերի Սուրբ առոռոյս (աթոռոյս)»։

Վանքս ունի և Հնաշէն գաւիթ, որի գոյութիւնն խիստ հին է քան վանքինն։ Գաւթումս, որ կառուցեալ է մի կամարի վերայ, կայ երկու խաչարձան կանգնեցրած տաճարի դրան աջ ու ձախ կողմերում։

*Հարաւային կողմի գեղեցկաքանդակ խաչի վերայ*

«Թվին ՈՂԵ. Ես տէր Վրդանէս կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգւոյ իմոյ»։

*Հիւսիսային կողմի խաչարձանի վերայ*

«Ցիշատակ է Սուրբ տաճարիս կաթուղիկէն Դողեցի Սարգսի որդի Սայուն և իւր կողակից Հերիքնազին թվին ՌՃԿԶ.»։

Գաւթումս ամփոփուած են մի քանի եպիսկոպոսների և վարդապետների մարմիններ, որոց վերայ կան տապանաքարեր։ Գաւթիս արևելեան հիւսիսային կողմին կից է մի աւելի հին եկեղեցի, որի դրան առաջ մի տապանաքարի վերայ փորագրուած է.

«Այս է տապան տէր Սիմէօնի որդի Մեսրոբ վարդապետին թվին ՌՃՀԲ.։ Լուսահոգի Մէլիք Եկանն ձեռնադրել տվաւ եպիսկոպոս, կարգեց Կտիշոյ վանքին առաջնորդ։ Որ եկի հաստատեցի սուրբ աթոռս թվին ՌՃՂԶ. ով որ կարդայ, մէկ բերան ողորմի ասէ»։

Վանքս ունի մի քանի հնոտի սենեակներ և մի աշխարհական պահապան։ Հետզհետէ քայքայուում է պատուական վանքս. գրեթէ ամբողջապէս յափշտակուած են վանքիս հողերն . . . . ։

# ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

## ՋԱԼԱԼԵԱՆ ՎԵԼԻՋԱՆ-ԻՇԽԱՆԻ ԲԵՐԴՆ *կամ* ՑՈՐԱԲԵՐԴ (10)

Մի բարձրագոյն սար է բերդատեղին (5019 ոտք), որ առանձնացած է ամեն կողմերից, երկարած արևմուտքից դէպի արևելք և արձանացած Վանք, Տաղ, Ցոր և այլ գիւղօրէից մէջ։ Բարձր քերծեր են բերդիս հարաւային կողմերն, իսկ ամուր պատերով պարսպուած մնացեալ կողմերն։ Մակերևութի մեծ մասն հարթ է, տեսարանն զմայլելի և օդն դեբաղանց։ Երկու դռներ ունեցած է, մին արևելեան և միւսն արևմտեան կողմից։ Բայց այժմ տեղ տեղ քանդուած և թափուած են պարսպի պատերն և դռներից անգամ։ Պարսպի

Digitized by Google

հաստութեան չափն է մօտ 2 մետր· որ հիւսուած է անտաշ քարով և կրացեխով։ Ջուր չկայ բերդումս, բայց ուրեք ուրեք երևում են անձրևի քանդած տեղերում մեծ մեծ և հաստ հաստ խեցեղէն խողովակներ· այս երևոյթն նշան է, որ ջուր բերուած է բերդս Շաղախ գիւղի և ուխտատեղու մօտից։ Հետզհետէ գտնում են բերդից մեծ-մեծ կարասներ, անօթներ և ուրիշ գործիքներ, և քարուկիր շինուած հորեր։

## ՎՆԷՍԱՅ ՂԱԼԱ (ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ԲԵՐԴ). (11)

Հիմնուած է Հիւքիւրաթաղից վերև եղած մի բոլորշի բարձրացած սարի գագաթին վերայ [1]) (500 ոտք) Անդնդախոր ձորեր են ամրոցիս արևմտեան, հիւսիսային, արևելեան և հարաւային կողմերն· միայն մի սեռով կցուած է հոմանուն Վանէսայ սարին։ Ամրոցս ունի քարուկիր շրջապարիսպ, որ բոլորուած է գագաթի դիրքի ձևով, երկու բարձր և ամուր բուրգ և մի դուռն։ Բայց տեղ տեղ քանդուած են պատերն և դուռնն, կանգուն մնում են միայն բուրգերն։ Պարսպի ամենաբարձր մասն երկու աշտարակների կողմն է։ Հարթ և հաւասար է ամրոցիս մակերևոյթն, որ համարեա թէ հարիւր քառակուսի մետր է և ունի ուշագրաւ տեսարան և վեհ դիրք։ Ամրոցիս յատակն լի է բնակարանների քարուկիր բակերով· իսկ վերնամասում շինուած է իբրև միջնաբերդ մի փոքրիկ դղեակ, որի մէջ է քարուկիր շինուած մի ընդարձակ ջրաւազան, որի մէջ տակաւին կայ ջուր, բայց անմաքուր։ Աւանդաբար ասում են, որ սորա ջուրն խողովակներով բերուած է եղել բերդիս հարաւային կողմում եղած աղբիւրների ջրերից, որք կան ճանապարհի վերայ։

## ԴՈՂ ԲԵՐԴ (4892 բարձ.) (12).

Բերդանսարս, որ բոլորովին առանձնացած է իւր շրջապատից, հսկայաբար արձանացած է Թաղլար, Դող, Մոխրե-

1) Բերդասարս ճիւղաւորուած է Դիզափայտ լեռնաշղթայից և ձգուած հարաւային արևմուտքից դէպի հիւսիս արևելք և վերջացած դաշտաբերանում։ Բերդս կոչւում է և Աւան-Իւզբաշու բերդ։

նիս և Տումի գիւղօրէից մէջ։ Վիմահերձ, ապառաժ և բարձր քերծեր են բերդիս հիւսիսային, արևմտեան և հարաւային կողմերն, իսկ անտառապատ և քարտկոյտ արևելեան կողմն։ Գագաթի բաց տեղն պարսպուած է վերևից վիմահերձից վիմահերձ, իսկ վարից փորուած է ահագին խրամ. վերջապէս ունի խիստ նշանաւոր, բայց անբացատրելի ամրութիւն։ Գագաթի վերայ եղած է հարիւրքառասնի չափ բնակարան, որոց պատերն այժմ դեռ մնում են կիսաւեր։

Բնակարաններիս վերի կողմում արևմտեան վիմահերձի գլխին է անտաշ քարով շինուած եկեղեցին, որ քառակիր է և ամբողջապէս կանգուն, սակայն բաւականին հնաշէն։ Եկեղեցիս ունի երկու դուռն արևմտեան և հարաւային կողմերից, երկու լուսամուտ արևմտեան և արևելեան կողմերից և 9 մետր 3 սանթիմ երկարութիւն և 6 մետր լայնութիւն։ Մի փոքր տեղ վնասուած է հիւսիսային կողմից։ Տաճարումս կան սպիտակ շերտաքարից շինուած հինգ քարեայ փոքր խաչեր, որոց վերայ քանդակուած է. «Խաչս Նազարին». «Խաչս Մրհապետին» . «Խաչս Շահումին». «Խաչս Ղազարայ». «Խաչս Եգաւայ» ։

Արտաքուստ հարաւային դրան արևելեան սեմի վերայ քանդակուած է Սուրբ Աստուածածնայ պատկերն, որ գրկած է մանկացեալ Յիսուս Քրիստոսը և մի աղերսարկու վեղարաւոր վարդապետի պատկերն, իսկ արևմտեան սեմի վերայ՝ երկու աղօթաւոր վարդապետի պատկերներն և մի խաչ։ Աւփսոս, որ թուական չունի եկեղեցիս. սակայն բաւական հին են թէ տաճարիս շինութիւնն և թէ խաչերի ձևերն և տառերն։

Եկեղեցուս [1]) ա՞րևելեան կողմում մի քանի քայլ հեռի կայ մի վարդապետի գերեզման, որի տապանաքարի վերայ փորուած է երկգլխի, օձաձև գաւազան և մի ձեռաց թաթ. որ բռնած է գաւազանը, և այս արձանագրութիւնն, «Թվին ՉԶ. (1257) այս է տապան Մովսէս վարդապետին..........»։

[1]) Սպիտակ են եկեղեցուս քարերն և բոլորովին նման Ցակովկայ տաճարի քարին, երևի թէ քարերս բերուած են Կաւաքայ սարի հանքից։

Digitized by Google

Օրն տարաժամեայ լինելու պատճառաւ հազիւ կարողացանք կարդալ այսչափ, մնացեալը չ՚ժամանեցինք ընթեռնուլ։

*Կեօլեր*. Եկեղեցուս հարաւային կողմում կայ չորս կաչաչափ մեծութեամբ մի լճակ, որ միշտ լի է անձրեւաջրով և ձիւնաջրով։ Թուի թէ պատերազմների ժամանակ պաշարեալներն կառավարուած են ջրով։

## ԴԻԶԱՓԱՅՏԻ ԲԵՐԴ (5994)

Բերդասարս իբրև լեռնաբազուկ Դիզափայտի արևմտեան կողմից կախուած է Տումի գիւղի վերայ և առանձնացած ամեն կողմերից։ Պարսպուած է սարիս հարաւային և արևելեան կողմերն և կասկածաւոր նեղուցներն ու կիրճերն, ուր եղած են։ Մուտքն արևմտեան կողմիցն է և պարիսպն չունի բուրգեր։ Պարսպիս ներսում կան բնակութեանց բակեր, թէ և հարթ չէ բերդիս անտառապատ մակերևոյթն։ Ջուր չկայ և այս ամրոցում, վասն որոյ շինուած են յատկապէս հարաւային կողմում հորեր և ամաններով ջուր բերած բերդիս արևմտեան ստորոտում եղած Թաղալ անուն պատուական աղբիւրիցն։ Հարկ է յայտնել որ բերդս չունի Դողայ բերդի բոլորովին ապահով ամրութիւնը։ Ամրոցիցս շատ հեռի չէ Դիզափայտի հին վանքի տեղն, ուր շինած են այժմ մի մատուռ (13)։ Ամրոցիս հիւսիսային կողմում քերծի գլխին՝ ծառերի տակ կայ մի աւերակ մատուռ *Օխտը-դռնէ-խութ* անուն, որ տարբեր է և այլ նախորդ յիշուածից։

## ԺԹ. ՎԱՐԱՆԴԱՅ ԳԱՒԱՌ.

Գաւառիս սահմաններն են Ղուրու-չայ և Գարգար գետակներն, դաշտաբերանն, Քիրս և Դիզափայտ լեռնաշղթաների գագաթնագիծն։ Ինչպէս Դիզակ, նոյնպէս և Վարանդայ գաւառիս ջուրն պակաս է. սակայն հարուստ է հացով և հայ բնակիչներով։

Ա. ԹԱՂԼԱՐ ԱԻԱՆ. Հիմնուած է այն սարի հարաւահայեաց լանջի վերայ, որ իբր լեռնաբազուկ սկսուած է Փոքր-Քիրս սարից և երկարած մինչև Դրախտիկ։ Բնակիչք տեղա-



Digitized by Google

փոխուած են այստեղ Հին-Թաղլարից, հողն արքունի, լեռնային, ամենամեծ մասամբ աւազուտ, խիստ սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն՝ ցորեն, գարի, կորեկ, գարնանի, հաճար, գարնագարի, սորեկ, կտաւհատ, բողկ, գազար, սոխ, սխտոր, լուբիա, բակլա, խաշխաշ, թութ, տանձ, խնձոր, գինձ (համեմ), կուտեմ, անանուխ, թարխուն, սուսամբար, և այլն։ Օդն, կլիման և ջուրն պատուական, տեսարանն գեղեցիկ, երկար կեանք 100. եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, թաղակապ երկու կամարների վերայ առանց միջնասիւների. երկարութիւնն 19 մետր. 45 սանթիմ։ Եկեղեցիս շինուած է աւանիս հասարակութեան ծախքով. երկու նոր լուսամուտներ բացուած են հարաւային կողմից։ «Այս է լուսամուտներս յիշատակ է որդոց Ճահնազար Պապալեանցին 1892»։ Քահանայ չորս։ Ծուխ 450. արակ. 1400, իգ. 1070։

Եկեղեցումս կայ մի ձեռագիր աւետարան միջակ դիրքով, գրուած մագաղաթի վերայ, պատկերազարդ, բայց անճաշակ և անարուեստ։ Յիշատակարանից։

«Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Որոտեան ի գիւղս, որ կոչի Լոր, ընդ հովանեաւ սուրբ Գէորգեայ զօրավարի ի հայրապետութեան սուրբ Էջմիածնի և փոխանորդ սուրբ լուսաւորչին Հայոց տեառն Յակովբ սրբազան Կաթուղիկոսի, և մերոյ Ստաթէի սուրբ աթոռոյս Յովհաննէս քաջ րաբունապետի և Նետողաց Տաճկաց Ճահ Սէլիմանի ի թուաբերութեանս Հայոց ՌՃԻԲ. ամի։ Գրեցաւ Աստուածախօս սուրբ տառս ուսանուն Արիստակէս սարկաւագի ....։ Արդ ստացող սուրբ աւետարանիս ... բարեմիտ քահանայն տէր Վրդանէս, որ է սա երկրէն Կաքաւաբերդու ի գեղջէն Մահրաւու ...»։ Յետոյ գրուած է. «Յիշեսջիք վերստին ստացող ... աւետարանս Թայլարեցի Պաղունց Պօղոսի որդի .. պարոն Աբրահամն. տեսեալ այլազգաց ձեռն, հալալ արդեանց իւրոց ետ և էառ և ետ ի դուռն Տեղոս (մեծ-գիւղ Մեծ-Սիւնիքում) սուրբ Գէորգ եկեղեցուն իւր և ծնողաց ...»։ Հուսկ յետոյ գրած է վերջին ստացող և եկեղեցուս նուիրողն. «Յիշատակ է զսուրբ

աւետարանս և ետու սրբոյն Ամենափրկչի եկեղեցւոյն՝ ծնողացն իմոց Պօղոսին Բաղդասարեան Թաղլարեցի, և մօրն իմոյ Խաթունին, Աբրահամ Պօղոսեան»։

Սուրբ Սահակեան տղայոց միդասեան ուսումնարան. ուր կայ 50 աշակերտ. թոշակաւոր 38, ձրիավարժ՝ 15, տարեկան ռոճիկ վարժապետաց 315 րուբլի։

*Մար-Խաթուն* (Մայր-Խաթուն) 4199 ոտք բարձ.

Հին գիւղատեղի, հանգստարան և մատուռ, որք գտնուում են Ծեխեր գիւղի հարաւային կողմի բարձրութեան վերայ։ Մատրանս շինութեան թուականն է. «Թվ. ՌԾԲ.»։

*Ծծախաչ* (Ծմանէք).

Երկու ահագին քարայրներ են, որք կան Թաղլարից վար, Դուրու-չայի ձախ եզերքին մօտ Ծծախաչ անուն։ Վարի քարայրից կաթկաթում է ջուր։

*Իշխանի գիւղատեղի* (Շշխնեցէք).

Գտնուում է Թաղլարի հարաւային հանդէպ, նոյն Դուրու չայ գետակի աջ կողմի լանջի վերայ, ուր կայ նաև հանգստարան։

*Իգակուց կամ Հայկազն գիւղատեղի.*

Այս անուն աւերակ գիւղ, հանգստարան և մատուռ կայ բուն Դուրու չայ գետակի (միջի վտակի) ձախ կողմի լանջի վերայ, Տումի գիւղի արևմտեան կողմում։ Սակայն այժմ այս տեղն պատկանում է Տումու հողերին։

*Հանգած-եղցէ* (եկեղեցի).

Թաղլարի արևմտեան կողմում ոչ այնքան հեռի կայ գիւղատեղի, հանգստարան և աւերակ եկեղեցի։

Բ. ԱՁՈԽ գիւղ. Հիմնուած է նոյն սարի հարաւ-արևելեան ստորոտում, մի ձորի հովտում. բնակիչք ամենամեծ մասամբ գաղթած են Ղարադաղից, իսկ մնացեալք բնիկ. հողն բէկական, սակաւ, բայց միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ամրան տօթագին, ջուրն պատուական, երկար կեանք 75—80. եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ, եր-

Digitized by Google

*կարութիւնն 14 մետր 70 սանթիմ. լայնութիւնն 8 մետր 17 սանթիմ, քահանայ մի։ Եկեղեցումս կայ մի ձեռագիր աւետարան միջակ դիրքով, առանց պատկերի, գրուած մանր գրերով թղթի վերայ, ոչ այնքան գեղեցիկ. չունի յիշատակարան, միայն յայտնի է որ գրած է Սարգիս անուն ծերարացեալ ումն քահանայ։ Ծուխ 140. ար. 427. իգ. 380։*

## ՈՐՎԱՆ ՔԱՐԱՅՐ

*Գիւղիս արեւելեան կողմում, ձորակի ձախ կողմի բարձրութեան վերայ կայ մի խիստ խոր, խաւարամած և միանգամայն ահարկու քարայր, որի մէջ կայ մի կնոջ արձան, որ գրկած է մի մանուկ։ Արձանս կոփուած է քարից, կնոջ զգեստի տարազն և գլխի շինութեան ձևն ներկայացնում են Արցախի կանանց հագուստների և փաթաթոցներով շինած գլուխների տիպը։ Երկիւղալի է առանց զէնքի և լուսի միայնակ ներս մտնելն. հարկ է զգուշանալ։*

Գ. ՆՈՐ-ԴՐԱԽՏԻԿ *գիւղ* [1]. *Հիմնուած է նոյն սարի ծայրում. մի արևելահայեաց լանջի վերայ, դիրքն վեհապանծ, տեսարանն զմայլելի. բնակիչք բնիկ. տեղական բերքերն նոյն, հողն բէկական, անջրդի և կարի սակաւ արդիւնաւէտ. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 60—65 տարի* [2]. *եկեղեցին սուրբ Գրիգոր Նարեկացի. քարուկիր, շինուած ՌՂԴ. թուին Հայոց մի բարձրահայեաց բլրի վերայ, որի հարթակն լի է ծերունի ծառերով և հանգիստներով. քահանայ մի։ Ծուխ 47, ար. 136, իգ. 116։*

*Նախան. Հին-Դրախտիկից հիւսիս մի բարձր բլրի գագաթին վերայ կայ մի ուխտատեղի Նախան անուն։ Երևում է որ աւերակ է այս մի հին, փոքր վանուց, որ զարդարուած*

---

[1]) *Հին-Դրախտիկն իւր քարուկիր եկեղեցիով մնում է Նորից վար՝ կալերի մէջ։*

[2]) *Զարմանալու է ընթերցողն օդի. կլիմայի և ջրի գերազանց լինելը համեմատելով բնակչաց կեանքի կարճութեան հետ, պատճառն այն է, որ սոցա հունձն և կալերն ընկած են Գիան գաւառի դաշտի վերայ ամրան տօթակէզ միջոցին գործում են դաշտումս։*

Digitized by Google

է զառամեալ ծառոց փառաւոր հովանիներով, որոց՝ ոչ ոք չէ համարձակում կացին զարկել։

Դ. ՇԵԽԵՐ չէն. Հիմնուած է նոյն սարի հիւսիսային կողմում, դիրքն հիւսիսահայեաց. բնակիչք տեղափոխուած են Թաղլարից և Աւետարանոց աւանից, հողն բէկական և արդիւնաւոր, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80. եկեղեցին սուրբ՝ Վարդան, քարուկիր և փոքր. քահանան գալիս է Նոր-Դրախտիկից։

Ծուխ 65 (բէկեր են 42 ծուխն), ար. 240, իգ. 114։

Ե. ՆԵՐՔԻՆ-ԹԱՂԱՎԱՐԴ. Հիմնուած նոյն սարի հիւսիսային կողմում, Քեօնդալան գետակի աջ կողմի բարձրութեան վերայ, գիւղի դիրքն արևելահայեաց լանջ. բնակիչք բնիկ. հողն բէկական, անջրդի, բարեբեր, տեղական բերքերն նոյն (կայ այգի և թթենի), օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 70 սանթիմ, լայնութիւնն 9 մետր։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Շինեցաւ եկեղեցիս յանուն Սրբոյ Աստուածածնին արդեամբ և ծախիւք աղնիւ Բէրամ աղայի որդւոյ պօլկովնիկ Մէլիք Ջիւմշիտեան Շահնազարեանց ի յիշատակ կենդանեաց և համայն ննջեցելոց իւրեանց ի Քրիստոս 1840 թվ. ՌՄԺԵ. [1])» Քահանայ երեք։ Ծուխ 170. ար. 590. իգ. 550։

Այստեղ կայ Սուրբ Մեսրոպեան տղայոց միդասեան ուսումնարան. աշակերտ 40, թոշակաւոր 33, ձրիավարժ 7. ուսուցչաց միամեայ ռոճիկ 300 րուբ.։

Հին-Ներքին-Թաղավարդ, որ Նորից $1/_7$ մղոն ներքև է։ Վնասուած եկեղեցին, որ կառուցեալ է երեք կամարների վերայ. դրան գլխին մի քարի վերայ. «Ես անարժան Գրիգորս շինեցի Թաղավարդու եկեղեցին առաջնորդութիւն Տաւութին որդին, Նոր Պապասին Ամիրպեկին, այնպէս սէրուն էր, որ գիշերն քուն չկէ»։

---

[1]) Սխալ է ՌՄԺԵ. թիւն, քանզի Փրկչական 1840 թուականն հաւասար է Հայոց ՌՄՋԹ.—ին։

*Բրդաճոնչին (Բերդաունչին)՝ եղցին*

Քեօնդալանի աջ կողմում, Շեխեր տանող ճանապարհի գլխին բարձր սարահարթի վերայ կայ մի հին եկեղեցի, որի դուռն աւերուած է և շինութիւնն տեղ տեղ խախտուած։ Հիւսիսային որմի մէջ խաչքարի վերայ. «Խաչս Շահումին»։ Եկեղեցուս արևմտեան կողմում, քարընկէց հեռաւորութեան վերայ կայ քարուկիր հին շինութիւն, որ նման է սենեակների։ Մեզ թւում է թէ վանք եղած է այս. քանզի եթէ եկեղեցի եղած լինէր, անշուշտ կունենար գիւղատեղու աւերակ և հանգստարան. բայց չունի ոչ այս և ոչ այն։

Զ. ՎԵՐԻՆ-ԹԱՂԱՎԱՐԴ. Հիմնուած է միևնոյն սարի հիւսիսային կողմում, նոյն ուղղութեամբ փոքր ինչ հեռի դէպի արևմուտք. գիւղի դիրքն արևելահայեաց. բնակիչք տեղափոխուած են Մեծ-Սիւնեաց Խնձորեսկ, Տեղ և Տաթև գիւղերից. հողն բէկական, անջրդի, պակաս, սակայն հացատու, նշանաւոր է ցորենն և գարին, պատուական օդն, կլիման և ջուրն և գուրալի տեսարանն. երկար կեանք 105. եկեղեցին նորաշէն ժողովրդեան ծախքով, քարուկիր և տակաւին առանց օծուելու, երկարութիւնն 18 մետր 35 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 65 սանթիմ, քահանայ մի։ Ծուխ 137. ար. 497. իգ, 398։

ՁՈԽՏ-ՊՌՀԽԱԾԱՌ (Զոյգ պառաւածառ).

Գիւղիս հարաւային կողմում, միևնոյն լեռնաբազկի վերայ (որ ձգուած է Փոքր-Քիրս[1] սարից մինչև Դրախտիկ) բարձրացած է ձուաձև մի բլրակ, որի վերայ վաղ ժամանակից շինուած է մի վանք անտաշ քարով։ Շինութիւնս ունի նեղ և երկար ձև, որ կիսաւեր է արդէն; քանզի բաղկացած է վանքից և գաւթից։ Փոքր վանքիս խորանի մէջ մի խաչքարի վերայ. Սուրբ Յովհաննէս. Սուրբ Ովհաննէս.....»։ Այլ քարի վերայ. «Յիսուս Քրիստոս Աստուած. Ուսէփ էրեց»։ Այլ քարի վերայ ևս. «Հոգևոր հայր և եղբարք. զՍողոմոն երայց

[1]) Մեծ-Քիրսն ունի 7340 ոտ. Փոքր-Քիրսն՝ 4009։

(երէց)․ կանգնող խաչիս յաղաւթս յիշեսջիք, աղաչեմ ամէն»։ Գրկին այլ խաչքարի վերայ․ «Յիսուս Քրիստոս, Հայոց թվ․ ՌՃԷ․ ես Ալի որդի Զենովբին եկի 'ի Պարսից, շինեցի զսուրբ եկեղեցիս Աստուծոյ, փրկութիւն հոգոյ իմոյ, որք երկրպագէք, զիս յաղաւթս յիշեսջիք և Աստուած զձեզ յիշեսցէ»։ Այլ ջարդուած քարի վերայ խոնչայի մի երեսին․ «Սուրբ Պաւղոս․ յամս աստուածապատիւ և հոգևոր տեառն Յովհաննիսի Ամարասա եպիսկոպոսին և պետութեան տեառն Գադիկա [1]) Աղուանից իշխանաց իշխանի ես հայր Կիրակոս առաջնորդ սուրբ ուխտիս, եղբաւրորդի Կոկոնա»։ Խոնչայի միւս կէս երեսին վերայ․ «Սուրբ Պետրոս։ կանգնեցի զխաչս 'ի փրկութիւն հոգո իմո և ծնողաց իմոց։ Արդ որք երկրպագէք սուրբ նշանիս, զիս յաղաւթս յիշեցէք և Աստուած զձեզ յիշեսցէ․ ՆԽԶ․ էր»։ Բայց թէ ինչ եկած վանքիս անունն՝ Ս․ Յովհաննէս, Պօղոս Պետրոս՝ չգիտենք։

Հարկ է յայտնել, որ բարեպաշտ գիւղական ոմն դուրս թափած է աւերակիս փլուածքը և մաքրած գաւիթը և փոքր տաճարի յատակը, որպէս զի նորոգէ ի հիմանէ։ Ուխտատեղի է աւերակս, որն ժամանակաւ ունեցած է և շրջապարիսպ, որի հետքերն երևում են ակներև։ Այժմ զրեթէ բոլորս ծածկուած է մեծ մեծ ծառերով։ Բլրիս բարձր․ մօտ 3600 ոտք։

*Ջոխտակ եղցի*

Միմեանց կից շինուած են երկու եկեղեցիներ, որք նոյնպէս կիսաւեր են։ Հազիւ թէ քարընկէց հեռի են երկու աւերակ եկեղեցիներս վանքի աւերակից։ Մենք կարծում ենք թէ այս երկու կիսաւեր շինութիւններն ևս վանք եղած լինին․ քանզի ո՛չ մօտ գիւղատեղի կայ և ո՛չ հանգստարան։

*Գէօզ ուխտատեղի*

Մի մատրան աւերակ է, որ գտնուում է Վերի և Ներքի Թաղավարդների միջև։ Մատրանս շուրջն հանգստարան է։ Ուխտի օրն է ամեն Համբարձման տօնն։

Է․ ՄՈՇ-ԽՄՀԱՏ գիւղ․ Հիմնուած է Վերին-Թաղավարդի արևմտեան կողմում մի խոր ձորի աջ լանջի վերայ, որի հիւ-

[1]) Գադիկ իշխանաց իշխանս է․ երևի թէ, որ թագաւոր է անուանում սորա թոռն Ոսկին գուստրն Աբու-Մուսէի, որպէս տեսանք կարմիր-եկեղեցու արձանագրութեանց մէջ։

Digitized by Google

սխալին կողմի ձորով հոսում է Քեօնդալանի օժանդակն։ Բնակիչք բնիկ. հողն բէկական և միջակ արդիւնաւէտ. անդական բերքերն նոյն (չկայ այգի և թթենի) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր. քահանան գալիս է Ղևոնդեանց անապատից։ Ծուխ 50, ար. 155, իգ. 120։

## ՂԵՒՈՆԴԵԱՆՑ ԱՆԱՊԱՏ (3220 ոտք).

Հիմնուած է մի բարձր սարի գագաթին վերայ, որ ձուաձև արձանացած է Աւետարանոց աւանի, Սարգսաշէնի, Վերին-Թաղավարդի և Մոշ-Խմհատի կեդրոնում։ Փոքր մատուռ է անապատս՝ կառուցեալ անտաշ քարով յանուն Ղևոնդեանց առանց կամարի։ Արևմտեան կողմին կից է մի գաւիթ, նոյնպէս նեղ դիրքով, որպիսին էր Ջոխտ-Պուրւածառի աւերակ անապատն։ Գաւիթ և անապատ միասին չափելով երկարութիւն 13 մետր 40 սանթիմ, լայնութիւն 5 մետր 10 սանթիմ։ Անապատիս դրան հիւսիսային սեմին վերայ. «Թվ. ՌԻԾ.» (Թիւ Փրկչ.)։ Գաւթի դրան նոյն կողմի սեմի վերայ.

«ՌՄԻԷ.-ին, յիշատակ է գաւիթս. Զաքարիա, Յովսէփ և Մելքոն վարդապետացն»։

Անապատումս կան հետևեալ մասունքներն.

1) *Մասն Թադէոսի առաքելոյն* մի արծաթեայ փոքրիկ և տափակ խաչում, որ ունի սոյն արձանագրութիւնը. «Յիշատակ է. մասունքս է Թադէոս առաքել, որ եդ Մուսաէլ»։

2) *Մասն Յովհաննու Մկրտչի* զետեղուած մի արծաթեայ փոքր խաչում, որի վերայ քանդակուած է. «Յիշատակ է սուրբ խաչս, մասունք Յովհաննու Կարապետին, Զախմախսազ—Պետրոսի որդի Արզըմանին և իւր կողակից Անուն ՌՄԿԶ.»։

3) Մի արծաթեայ մեծ խաչում. «Սուրբ *Յովհաննէս Մկրտչի* մասունքն է այս»։

4) Մի արծաթեայ միջակ խաչ.

«Սուրբ *Նշանս* յիշատակ է սուրբ Ղևոնդիս անապատին Յարութիւն հապեղին (աբեղային) Թվ. ՌՄԼԹ.»։

Digitized by Google

5) *Մասունք Ղեւոնդեանց մի արծաթ միջակ խաչում.* «ընծայեցաւ սուրբ խաչս Ղևոնդեայ հայրապետին Մարգարիտ Մէլիք Չիւմշիւտեանց 1876 ամի»։

Արտաքուստ վանուցս հարաւային կողմում ամփոփուած են մի քանի վարդապետաց մարմինները, որոց մէջ է և հետեւեալն.

«Աստանօր հանգչի մարմին Յակոբայ սուրբ վարդապետի որդւոյ Թովմասայ Աւան Լալաեան յազգէն Իւզբաշեանց յաւետարանոց գեղջէն, Վարանդայ սրբակրօն ճգնաւորական արար իւր կենաց զբարուք վախճան 33 ամաց 1845 Նոյեմ. 25-ին»։

Պարսպուած է անապատիս շուրջն, արևմտեան և հարաւային կողմում, պարսպի ներսում շինուած են մի քանի սենեակներ, որք կիսաւեր են այժմ մեծ մասամբ։ Անապատս ունի վարելահող, անտառ, պարտէզ, ընկուզ, տանձ, խնձոր, շագանակ, զկեռ և սալոր։ Ապաստան է մի քահանայի։

Ը. ՍԱՐԳՍԱՇԷՆ ԳԻՒՂ. Հիմնարկուած է Քեօնդալան գետակի աջ կողմում. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, բայց բազմարդիւն. տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, սակայն անշուք. քահանայ մի։ Տուխ 90, ար. 325, իգ. 254։

Թ. ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ. Հիմնուած է Քեօնդալան գետակի ձորի ձախ կողմում, Սև աղբիւր (Ղարա-բուլաղ) յորջորջուած աղբիւրի մօտ. բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն (գոյ թթենի), օդն, կլիման ծանր ամրան, ջուրն ոչ գովելի. երկար կեանք 85—80. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, բայց փտանգուած. քահանայ երկու։ Տուխ 35. ար. 162. իգ. 135.

## ՂԱՐԱԼԻ ԱՒԵՐԱԿ

Այստեղ կայ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցու աւերակ։

Ժ. ԱԼԱՄԱՆՑ ԳՈՄԵՐ. Շինուած է նոյն ջրաձորի վե-

րայ. բնակիչք բնիկ, հողն բէկական և բարեբեր. նոյն տեղական բերքերն, օդն, կլիման և այլն. եկեղեցին է Դևոնդեանց անապատն և քահանան նորա վանահայր քահանան։ Գիւղումս ծնուած է բանաստեղծ Պետրոս Մատաթեանցն, վասնորոյ կոչուում է և *Մատաթ-քեանդ:* Ծուխ 35. ար. 115. իգ. 92։

ԺԱ. ՋԱՂԱՑՆԵՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Աւետարանոցից փոքր ինչ վար. բնակիչք հատուած Աւետարանոց աւանից. Հողն արքունի, տեղական բերքերն նոյն (կայ և այգի), սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, նորաշէն, քարուկիր. քահանան գալիս է Աւետարանոցից։ Ծուխ 65. ար. 248. իգ. 181։

ԺԲ. ԱՒԵՏԱՐԱՆՈՑ ԱՒԱՆ. Հիմնուած է միևնոյն Քեօնդալան ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ, դիրքն արևելահայեաց. բնակիչք բնիկ, հողն մէլիքական [1]), բայց այժմ արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ. ունի մի փոքր կաթուղիկէ. երկարութիւն 27 մետր 35 սանթիմ, լայնութիւն 15 մետր 30 սանթիմ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Թվ. ՌՃ.»։ Քահանայ երկու։ Ծուխ 257, ար. 936, իգ. 804։

Եկեղեցումս կան հետևեալ *գրչագիրներն և մասունքներն։*

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, պատկերազարդ, որ գրուած է Աւետարանոց աւանումս ՌՃԻ. թուին, բայց անյայտ է գրողի անունն։

Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, գեղեցիկ. Նըրբաճաշակ են չորս աւետարանչաց պատկերներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն։ Յիշատակարանից. «աւարտեցաւ... *աւետարանս ձեռամբ բազմամեղ Գրիգոր անուամբ երիցու ի թուականութեանս Հայոց ռճևը. երորդի ի մարտ ամսոյ ի......*

[1]) 25 ծուխ մելիքազուն բէկեր կան, որոց հողերն սեփականութիւն է պապենական։ իսկ բնակչաց մեծ մասն տեղափոխուած է Սոթից և Մազրայից։

Digitized by Google

և ծաղկեցի երբն երբն գունովք և ոսկեզօծ ոլակօք..... եղև աւարտ սուրբ աւետարանիս ի յերկիրս Գանձայ ի գիւղս, որ կոչի Քարահատ ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս ի ժամանակս Շահ Աբասին փոքրոյ և ի կաթուղիկոսութեան հայոցս Աղուանից տեառն տէր Պետրոսի մաքրասուն և սուրբ հայրապետի և կրկին լուսաւորչի, որ և խնամօքն Աստուծոյ..... լուսաւորեաց զխաւարեալ տունս Աղուանից և պայծառացոյց զեկեղեցիս կարգօք.... և մերում եպիսկոպոսութեան բազմահանճար, պատուական քաւչապետի տեառն տէր Անտօնի վերադիտողի սուրբ աթոռոյն կաթուղիկէի վանիցն.....»:

Յետոյ գրուած է այլ գրիչ աւետարանիս սկզբումն. «Սուրբ աւետարան սրբագիր և ոսկեզօծ վախմ և յիշատակ է Աբրահամ պարոն-Տէրին, որ տվան Մէլիք Պաղուն կուսակրօն դստերացն Հուրբսիմին և Դաւլաթին և Շահանդուխտին ձեռքն ի վայելումն.... գրեցաւ մատամբ տէր Եղիազարին մայիսի ԻԵ. օրն թվ. ՌՃՁԶ. էր.....»:

1) *Մասն կենաց փայտիցն զետեղուած մի քառաթև, արծաթ խաչում*:

2) Մասն առաջին լուսաւորչացն *Թադէոսի* և *Բարդուղիմէոսի*:

3) Մասն *Պանդալիոնի* բժշկին:

*Մելիք-Շահնազարեանների ապարանի դռան ճակատին*

«Այս ամարաթս Մէլիք-Շահնազարի (Գ-ի) որդի Սէյին բէկին, որ է այս շինութիւնս, որ շինել տուած շէնքն է թ. ՌՄԼԵ.»:

### ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ.

Հիմնուած է հիւսիսից դէպի հարաւ թեքուած մի բարձրաւանդակի վերայ, որ կից է աւանիս հարաւային կողմին: Բարձրաւանդակին վերի ծայրն հասած է մինչև բերդի վերի ծայրն: Անապատս շինուած է անտաշ քարով երկու կամարի վերայ, որի երկարութիւնն է 11 մետր. և լայնութիւնն 9, (խիստ անմաքուր է): Վէմ քարի վերայ քանդակուած է. «Թվ. ՌԿԵ. ես Աթաս Հիմզչի (°) կանգնեցի խաչս ի հայր իմ (հայրենի) վիճակին»: Դրան ճակատակալ քարին վերայ.

րայ. բնակիչք ընիկ, հողն բէկական և բարեբեր. նոյն տեղական բերքերն, օդն, կլիման և այլն. եկեղեցին է Ղևոնդեանց անապատն և քահանան նորա վանահայր քահանան։ Գիւղումս ծնուած է բանաստեղծ Պետրոս Մատաթեանցն, վասնորոյ կոչուում է և Մատաթ-քեանդ։ Ծուխ 35. ար. 115. իգ. 92։

ԺԱ. ՋԱՂԱՑՆԵՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Աւետարտնոցից փոքր ինչ վար. բնակիչք հատուած Աւետարանոց աւանից. հողն արքունի, տեղական բերքերն նոյն (կայ և այգի), սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, նորաշէն, քարուկիր. քահանան գալիս է Աւետարանոցից։ Ծուխ 65. ար. 248. իգ. 181։

ԺԲ. ԱՒԵՏԱՐԱՆՈՑ ԱՒԱՆ. Հիմնուած է միևնոյն Քեօնդալան ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ, դիրքն արևելահայեաց. բնակիչք ընիկ, հողն մէլիքական [1]), բայց այժմ արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ. ունի մի փոքր կաթուղիկէ. երկարութիւն 27 մետր 35 սանթիմ, լայնութիւն 15 մետր 30 սանթիմ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Թվ. ՌԶ.»։ Քահանայ երկու։ Ծուխ 257, ար. 936, իգ. 804։

Եկեղեցումս կան հետևեալ գրչագիրներն և մասունքներն։

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, պատկերազարդ, որ գրուած է Աւետարանոց աւանումս ՌՁԻ. թուին, բայց անյայտ է գրողի անունն։

Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, գեղեցիկ. նըրբաճաշակ են չորս աւետարանչաց պատկերներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն։ Յիշատակարանից. «աւարտեցաւ... աւետարանս ձեռամբ բազմամեղ Գրիգոր անուամբ երիցու ի թուականութեանս Հայոց ռճևը. երորդի ի մարտ ամսոյ ի......

[1]) 25 ծուխ մելիքազուն բէկեր կան, որոց հողերն սեփականութիւն է պապենական։ իսկ բնակչաց մեծ մասն տեղափոխուած է Սոթից և Մաղարայից։

և ծաղկեցի երբն երբն գունովք և ոսկեզօծ որակօք..... եղև աւարտ սուրբ աւետարանիս ի յերկիրս Գանձայ ի գիւղս, որ կոչի Քարահատ ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս ի ժամանակս Շահ Աբասին փոքոյ և ի կաթուղիկոսութեան հայոցս Աղուանից տեառն տէր Պետրոսի մաքրասուն և սուրբ հայրապետի և կրկին լուսաւորչի, որ և խնամօքն Աստուծոյ..... լուսաւորեաց զխաւարեալ տունս Աղուանից և պայծառացոյց զեկեղեցիս կարգօք.... և մերում եպիսկոպոսութեան բազմահանճար, պատուական քաւչապետի տեառն տէր Անտօնի վերադիտողի սուրբ աթոռոյն կաթուղիկէի վանիցն.....»։

Յետոյ գրուած է այլ գրիչ աւետարանիս սկզբումն. «Սուրբ աւետարան սրբագիր և ոսկեզօծ վախմ և յիշատակ է Աբրահամ պարոն-Տէրին, որ տվան Մէլիք Պաղուն կուսակրօն դստերացն Հուրսիմին և Դաւլաթին և Շահանդուխտին ձեռքն ի վայելումն.... գրեցաւ մատամբ տէր Եղիազարին մայիսի ԻԵ. օրն թվ. ՌձՁՁ. էր.....»։

1) *Մասն կենաց փայտիցն* զետեղուած մի քառաթև, արծաթ խաչում։

2) Մասն առաջին լուսաւորչացն *Թադէոսի և Բարդուղիմէոսի:*

3) Մասն *Պանդալիոնի* բժշկին։

*Մելիք-Շահնազարեանների ապարանի դրան ճակատին*

«Այս ամարաթս Մէլիք-Շահնազարի (Գ-ի) որդի Սէյին բէկին, որ է այս շինութիւնս, որ շինել տուած շէնքն է թ. ՌՄԼԵ.»։

## ԿՈԽՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ.

Հիմնուած է հիւսիսից դէպի հարաւ թեքուած մի բարձրաւանդակի վերայ, որ կից է աւանիս հարաւային կողմին։ Բարձրաւանդակին վերի ծայրն հասած է մինչև բերդի վերի ծայրն։ Անապատս շինուած է անտաշ քարով երկու կամարի վերայ, որի երկարութիւնն է 11 մետր. և լայնութիւնն 9, (խիստ անմաքուր է)։ Վէմ քարի վերայ քանդակուած է. «Թվ. ՌԿԵ. ես Աթաս Հիմադչի (°) կանգնեցի խաչս ի հայր իմ (հայրենի) վիճակին»։ Դրան ճակատակալ քարին վերայ.

Digitized by Google

րայ. բնակիչք ջնիկ, հողն բէկական և բարեբեր. նոյն տեղական բերքերն, օդն, կլիման և այլն. եկեղեցին է Ղևոնդեանց անապատն և քահանան նորա վանահայր քահանան։ Գիւղումս ծնուած է բանաստեղծ Պետրոս Մաղաթեանցն, վասնորոյ կոչուում է և *Մաղաթ-քեանդ*: Ծուխ 35. ար. 115. իգ. 92։

ԺԱ. ՋԱՂԱՑՆԵՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Աւետարտնոցից փոքր ինչ վար. բնակիչք հատուած Աւետարանոց աւանից. հողն արքունի, տեղական բերքերն նոյն (կայ և այգի), սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, նորաշէն, քարուկիր. քահանան գալիս է Աւետարանոցից։ Ծուխ 65. ար. 248. իգ. 181։

ԺԲ. ԱՒԵՏԱՐԱՆՈՑ ԱՒԱՆ. Հիմնուած է միևնոյն Քեօնդալան ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ, դիրքն արևելահայեաց. բնակիչք ջնիկ, հողն մէլիքական [1]), բայց այժմ արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ. ունի մի փոքր կաթուղիկէ. երկարութիւն 27 մետր 35 սանթիմ, լայնութիւն 15 մետր 30 սանթիմ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Թվ. ՌՃ.»։ Քահանայ երկու։ Ծուխ 257, ար. 936, իգ. 804։

Եկեղեցումս կան հետևեալ *գրչագիրներն և մասունքներն*։

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, պատկերազարդ, որ գրուած է Աւետարանոց աւանումս ՌՃԻ. թուին, բայց անյայտ է գրողի անունն։

Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, գեղեցիկ. նըրբաճաշակ են չորս աւետարանչաց պատկերներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն։ Յիշատակարանից. «աւարտեցաւ... աւետարանս ձեռամբ բազմամեղ Գրիգոր անուամբ երիցու ի թուականութեանս Հայոց ռճւը. երորդի ի մարտ ամսոյ ի......

[1]) 25 ծուխ մելիքազուն բէկեր կան, որոց հողերն սեփականութիւն է պապենական։ իսկ բնակչաց մեծ մասն տեղափոխուած է Սոթից և Մաղարայից։

և ծաղկեցի երբն երբն գունովք և ոսկեզօծ ոլակօք..... եղև աւարտ սուրբ աւետարանիս ի յերկիրս Գանձայ ի գիւղս, որ կոչի Քարահատ ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս ի ժամանակս Շահ Աղասին փոքրոյ և ի կաթուղիկոսութեան հայոցս Աղուանից տեառն տէր Պետրոսի մաքրասուն և սուրբ հայրապետի և կրկին լուսաւորչի, որ և խնամօքն Աստուծոյ..... լուսաւորեաց զխաւարեալ տունս Աղուանից և պայծառացոյց զեկեղեցիս կարգօք.... և մերում եպիսկոպոսութեան բազմահանճար, պատուական քաւչապետի տեառն տէր Անտօնի վերադիտողի սուրբ աթոռոյն կաթուղիկէի վանիցն.....»։

Յետոյ գրուած է այլ գրիչ աւետարանիս սկզբումն. «Սուրբ աւետարան սրբագիր և ոսկեզօծ վախմ և յիշատակ է Աբրահամ պարոն-Տէրին, որ տվան Մէլիք Պաղուն կուսակրօն դստերացն Հուրբսիմին և Դաւլաթին և Շահանդուխտին ձեռքն ի վայելումն.... գրեցաւ մատամբ տէր Եղիազարին մայիսի ԻԵ. օրն թվ. ՌՃՁՋ. էր.....»։

1) *Մասն կենաց փայտիցն* զետեղուած մի քառաթև, արծաթ խաչում։

2) Մասն առաջին լուսաւորչացն *Թադէոսի և Բարդուղիմէոսի:*

3) Մասն *Պանդալիոնի* բժշկին։

*Մելիք-Շահնազարեանների ապարանի դրան ճակատին*

«Այս ամարաթս Մէլիք-Շահնազարի (Գ-ի) որդի Սէյին բէկին, որ է այս շինութիւնս, որ շինել տուած շէնքն է թ. ՌՄԼԵ.»։

## ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ.

Հիմնուած է հիւսիսից դէպի հարաւ թեքուած մի բարձրաւանդակի վերայ, որ կից է աւանիս հարաւային կողմին։ Բարձրաւանդակին վերի ծայրն հասած է մինչև բերդի վերի ծայրն։ Անապատս շինուած է անտաշ քարով երկու կամարի վերայ, որի երկարութիւնն է 11 մետր. և լայնութիւնն 9, (խիստ անմաքուր է)։ Վէմ քարի վերայ քանդակուած է. «Թվ. ՌԿԵ. ես Աթաս Հիմագչի (*) կանգնեցի խաչս ի հայր իմ (հայրենի) վիճակին»։ Դրան ճակատակալ քարին վերայ.

«Եկեղեցիս Թվ. ՌԿԵ. (շինեցաւ)»։

«Թվական ՌԾԻԵ. Տաճնազարին և վարդապետին Գրիգորի, յիշատակ է դուռս կոյս Խոսրովին և ծնողացն»։

Անապատս ունի և գաւիթ, որ շինուած է նոյն ոճով, երկարութիւնն 5 մետր 75 սանթիմ, լայնութիւն 8 մետր 90 սանթիմ (Հարաւից Հիւսիս)։ Ինչպէս անապատս եղած է յատուկ կուսանոց, նոյնպէս գաւիթս եղած է յատկապէս դամբարան Մէլիք Տաճնազարեանի իշխանական ցեղին։ Գաւթումս ամփոփուած են Մանուէլ վարդապետի, Մէլիք-Միրզայի, Մէլիք-Յիւսէյինի, Մէլիք-Յովսէփի և սոցա տիկնանց մարմիններն։

Ամուր պատերով պարսպուած է եղել անապատիս շուրջն՝ Համեմատ տեղի դիրքին, քանզի Հարաւային կողմն քերծ է։ Պարսպի ներսում եղել են շատ սենեակներ՝ միաբան կուսանաց Համար։ Բայց այժմ տեղ տեղ աւերուած են պարսպի պատերն և սենեակների ամենամեծ մասն։

Աւետարանոցս իբրև մէլիքանիստ աւան և գաւառագլուխ, ունեցած է ամուր պարիսպ, որով շրջապատուած է եղել ամբողջ աւանս։ Պարսպիցն այժմ կանգուն մնում է միայն լեռնակողմինն, որ բրգաշատ է և ձգուած է Կուսանաց անապատիցն մինչև սարի գլուխ, պատած Հիւսիսային և արևելեան կողմերով և միացած անապատի Հարաւային ժայռին. Սակայն այժմ Հիւսիսային և արևելեան կողմերի պարիսպներն քանդուած են տեղ տեղ։ Պարիսպս շինող որմաՀիւս վարպետի գերեզմանն գտնուում է աւանիս միջում պարոն Առստամի (մականուանեալ Ումախան) պարտիզումն։ Տապանաքարի Հարաւային երեսին. «Անուան Մէլիք Տաճնազարին (Գ-ին), որ է որդի Մէլիք Սէյինի. այն ժամանակն որ Կուրջին եկաւ (Վրացի զօրք) Թուին ՌԾԻԹ. էր, որ ղալաս (Աւետարանոցի բերդը) շինեցի, ով որ կարդա, մէկ բերան Աստուած ողորմի ասի. ամէն»։ Միւս երեսին. «Այս է տապան Գաբրիէլի որդի Գաւթին Թ. ՌՄԽԸ»։

### ՄԷԼԻՔԱԿԱՆ ԱՊԱՐԱՆՆԵՐ.

Մէլիք-Բաղու ապարանն, որ մօտ է Կուսանաց անապա-

Digitized by Google

տին, բաղկացած է երկու յարկից. գետնայարկում կայ երեք արցախական, քարուկիր տուն, որք մնում են ցարդ նոյնութեամբ։ Իսկ վերնայարկը քանդել տուած է ռազմագէտ գեներալ Առուստամ [1]) Գիւգիեան Մատաթեանցն և շինած իւր համար բնակարան. որ աւերակ է այժմ։

Մէլիք-Յիւսէյին Ա-նի ապարանն գտնուում է բերդի պարսպի լեռնային մասում-արևմտեան կողմում—որ աւերակ է այժմ։

Մէլիք-Շահնազար Բ-ի ապարանն գտնուում է աւանիս հիւսիսային կողմում պարսպի ներսում։ Այժմ նստում են բնակարանումս սոյն մէլիքի յետագաներն։

*Մէլիք—ժառանգների հանգստարան.*

Աւանիս հին հանգստարանից մի քանի քայլ ներքև է մնացեալ Մէլիք Շահնազարեանների հանգստարանն։

«Այս է տապան Մէլիք Շահնազարին (Գ-ին)
Որ է որդի Մէլիք Յիւսէյինին,
Արցախ գաւառաց իշխանին
Վարանդու տիրապետողին,
Սա էր հայր Մէլիք Ջիւմշիտին,
Ըստ Ռուսաց պլկովնիկին,
Ազնիւ ոմն Հայոց ազգին,
Արի և քաջ զօրավարին
Խնդրեմ առնել զայս արժանին
Միոյ բերան Հայր մեղային
ՌՄԽ. թվին» (1792)։

«Այս է տապան Մէլիք Ջիւմշիտին.....
(Եղծուած են կէտադրեալ բառերն) Սա էր
Թոռն մեծասեռին
Ազնիւ Մէլիք Յիւսէյինին (Բ-ին)
Խնդրեմ առնել զայս արժանին
Միոյ բերան Հայր մեղային
Թվ. ՌՄԿԱ. աբրիլի ԻԵ.» (1712)։

---

[1]) Առուստամ եղած է Կնեազ-Մատաթովի անուն, իսկ իւր հօր անունն՝ Գիւգի (Գրիգոր)։

«Այս է տապան Մէլիք Ջհանբախշին
Իշխող Վարանդայ գաւառին
Ազնիւ որդոյ Մէլիք Շահնազարին
Վախճանեցաւ 1822»։

«Մէլիք Խուդամ իշխող Վարանդայ
Թոռն ըստ մարմնոյ Մէլիք Ջիւմշիւտայ
Այս նորա տապան յորում մարմնով կայ,
Կենդանի հոգւով միշտ և յարակայ,
Ամաց քառասնից եւ սա յաշխարհէ,
Ձերծ արդ գտանի յամեն չարէ.
Զայս վէմ ետ շինել առն իւրում ի ձօն,
Ի պատիւ սորա Կին սորին զգօն,
Թվ, ՌՄՁԲ. էր»։ 1833)։

«Այս է տապան Մէլիք Ցիւսէյինի որդի.. Աւարճանին Թ. ՌՄՀԲ.»։

«Այս է տապան Մէլիք Ցիւսէյինի որդի Մանասան բէկին Թ. ՌՄԾԶ.»։

«Այս է տապան Մէլիք Շահնազարի որդի Մէլիք Ցուսէյինին (Բ-ի) Թ. ՌՄԾ. էր (1802)։

Հանգստարանիս հիւսիսային կողման մօտ, ընկուզի ծառի տակ մի հին և խաչազարդ քարի վերայ. «Այս խաչս Թորոս այղայ Թվ. ՌՁ. ար (էր)»։ Տապանաքարիս վերայ շինուած է Թորոս աղայի պատկերն, որ լարած է աղեղը և թռցնում է նետը մի եղջերուի վերայ։

Տապանաքարեցս փոքր վերև կայ մի այլ տապանաքար, որի մէջքն կլոր է և իւր աջ կողմում ունի մի թագաւորի պատկեր, խաչը ձեռին, որ հեծած է ձին և բարձրացրած խաչը, գնում է առաջ։ Բայց մի ահագին վիշապ օձ, լայն բացած իւր կզակը և ընկած է թագաւորիս ետևից։ Խաչազարդ է տապանաքարիս միւս երեսն և քանդակուած մէջքի վերայ, որ կարդացուում է խիստ դժուարութեամբ. «Ի ՌԴ. Ննճեց Հա.. Թգաորի Աղվց ..... ես տէր Մասուն գրեցիք. այս ով որ կարդէ. Աստուած ողորմի ասէ։ Այս է հանգիստ Մուրադի

Digitized by Google

Ղաթիոնա գաջի (քաջի) Խարանդայ գաւառ հմուտոյն ասպարաբետի» (սպարապետի)։ Տապանաքարիս մօտ կայ նաև մի այլ ձիու վերայ մի թագուհու պատկեր, բայց տապանաքարիս վրաց չ'կայ արձանագրութիւն։

**ԺԳ. ՍՂՆԱՂ ԳԻՒՂ.** Հիմնուած է գրեթէ Աւետարանոցի արևմտեան կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի. միջակ արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն (չիք այգի), անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին սուրբ Աստուածածին, քահանայ մի։ Ծուխ 55. ար. 236. իգ. 188։

**ԺԴ. ՎԵՐԻՆ-ՍԶՆԷՔ ԳԻՒՂ.** (Այն լեռնաբազուկն, որ սկսուած է Քիրս մեծ սարի արևելեան կողմից, անցած Շօշու գիւղի հարաւարևելեան կողմից և հասած Պողորխանայ սարն։ Այս սարից ճիւղաւորուած է երեք լեռնագօտի, Ա-ն ուղղակի ձգուած է մինչև Վարազաբուն գիւղն. Բ-ն դէպի Կղարծի, Ղզղալա, Աշան և այլ գիւղերն. Գ-ն դէպի Սարուշէն, Մաւաս, Սխտորաշէն և Խազազի սարն). Հիմնուած է վերջին լեռնաշղթայիս հարաւային կողմում. բնակիչք գաղթած են Պարսկաստանից (Ղարադաղից), հողն բէկական և խիստ սակաւ, տեղական բերքերն նոյն (ոչ այգի ունին և ոչ պարտէզ). օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 85, եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանան գալիս է Ներքին-Սզնէքից։ Ծուխ 46. ար. 175. իգ. 148։

**ԺԵ. ՆԵՐՔԻՆ-ՍԶՆԷՔ ԳԻՒՂ.** Հիմնուած է մօտ Վերին-Սզնէքին, հողն, բերքերն և այլն նոյն. եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանայ երեք։ Ծուխ 92. ար. 377. իգ. 350։

**ԺԶ։ ԽԱՉՄԱՉ ԳԻՒՂ** (խաչերի մէջ եղած գիւղ, զի գիւղիս չորս կողմերում կան քարեայ խաչարձաններ). Հիմնուած նոյն լեռնաշղթայի հարաւահայեաց լանջի վերայ. բնակչաց կէս մասն բնիկ և միւս կէս մասն գաղթած Բարկիւշադից և տեղափոխուած Հին-Քեաթուկ գիւղից (այժմ աւերակ), հողն բէկական, անջրդի, բայց հացաւէտ, տեղական բերքերն նոյն,

օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 90. եկեղեցին սուրբ Ստեփաննոս, կառուցեալ մի կամարի վերայ առանց սիւների, որ ունի մի փոքր կաթուղիկէ, երկարութիւնն 13 մետր 90 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 32 սանթիմ։ Դրան արևելեան սեմին վերայ. «Ես ուստա Յուսէփ և Գէւքուրգ (Գէորգ) Ըմմանայ եկեղեցիս շինեցի յիշատակ, ով որ տեսնոյ, Աստուած ողորմի ասէ»։ Իսկ դրան ճակատակալ քարի վերայ. «Թվին ՌՃ.»։ Քահանայ մի։ Ծուխ 62. ար. 290. իգ. 220։

Գիւղիս քահանային մօտ կայ երկու գրչագիր սաղմոս.

Ա. Սաղմոս մագաղաթեայ, գեղեցկագիր, որ ունի իւր սկզբում. «Յառաջաբանութիւն Դաւթի Մարգարէին մեկնութեան՝ Աթանասի եպիսկոպոսի արարեալ»։

Բ. Սաղմոս, գրուած թղթի վերայ, պակասաւոր, այս է վերջից թափուած են թերթեր։

Գիւղիցս փոքր ինչ ներքև կայ մի հին գիւղատեղի և ընդարձակ հանդստարան։

## ՇՕՇԿԱՅ ՎԱՆՔ (4669 ոտք)

Հիմնուած է նոյն լեռնագօտու գագաթնագծի վերայ, Խաչմաչ և Ըմմնայ գիւղերի մէջ. շինուած է մի կամարի վերայ եկեղեցու ձևով։ Երևում է հիմքերից՝ որ խիստ հին եղած է վանքս. բայց ժամանակ առ ժամանակ նորոգուած է սպիտակ անտաշ քարով։ Ունի միայն մի խորան, երեք լուսամուտ և մի դուռն արևմտեան կողմից և խաչազարդ բեմ, որոց մէջ մին յիշատակ եղած է առանձին առանձին մարդից։ Երկարութիւնն 9 մետր 18 սանթիմ, լայնութիւնն 6 մետր 25 սանթիմ։

ԺԷ. ՍԱՐՈՒՇԷՆ. Հիմնուած է նոյն սարի հարաւ արևմտահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100. տեսարանն գեղեցիկ, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, կառուցեալ մի կա-

մարի վերայ, հնաշէն և նորոգուած քանիցս. երկարութիւնն 13 մետր 50 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 45 սանթիմ։ Գաւառիս բոլոր եկեղեցեաց մէջ առաջնակարգ տեղ բռնած է եկեղեցուս ներքին և արտաքին պայծառութիւնն, զարդն ու զարդարանքն։ Այս պայծառութիւնը պարտական ենք Գերազնիւ Գրիգոր աղա Այվազեանցին հոգատար խնամոցն։ Քահանայ մի։ Ծուխ 70. ար. 331. իգ. 253։

Եկեղեցումս է Սարուշէնի հռչակուած ձեռագիր աւետարանն, որի մօտ ուխտի են գալիս ոչ միայն Արցախի շատ կողմերից, այլ Բագուից, Թիփլիզից, այլ և մահմէտականք։ Աւետարանս մագաղաթեայ և մեծադիր է, որ ունի Ռստակէս, Վրդանէս և Ստեփաննոս վարդապետների պատկերները, բայց անճաշակ նկարուած.

Առաջնոյն մօտ գրուած է. «ԶՌստակէս գրիչ յիշեսջիք, սիրելի եղբարք»։ Ապա վախճանուելուց յետոյ գրուած է այլ գրողից. «որ փոխեցաւ առ Քրիստոս, որ գրեց զՄատթէս և զՄարկոս» (աւետարանները)։ Երկրորդին մօտ գրուած է. «ԶՎրդանէս գրիչ՝ որ գրեցի զՂուկաս և զՅովհանէս զվերաւրս մեղաւք յիշեսջիք ով պատուական եղբարք, զի չիք մարդ մեղաւոր քան զիս յերկրի...»։ Երրորդին մօտ գրուած է միայն իւր անունն։ Անճաշակ են պատկերներն, նախշերն և ծաղիկներն. սակայն գեղեցիկ է մագաղաթն և ամբողջապէս գրուած է գլխագրերով։ Սկզբում ունի յիշատակարանի նման մի գրութիւն, որն կարդացւում է խիստ դժուարութեամբ, ուր ի միջի այլոց գրուած է.

«Բայց գրեցաւ սուրբ աւետարանս... յաքեմեանս թուականին ՈԼԱ.»։ Իսկ Մատթէոսի պատկերի տեղում գրուած է փակագրի ձևով.

«Տէր Աստուած ողորմեա Յակովբայ նկարչի»։ Նոյնպէս գրուած է սկզբում. «Յամի Տեառն 1827 և ի թուականիս (Հայոց) ՌՄՀԶ. սուրբ աւետարանս, որ գերի էր ընկել Պարսից տէրութիւնն, ես Ղարաբաղու Շուշի Ղալի բնակիչ Միրզայ Օհաննէսեան Զարկարեանցովս տեսի զսուրբ աւետարանս



Digitized by Google

ի ձեռս անօրէն պղպղեաց ի քաղաք Թաւրէզ, վասն որոյ դրամս ետու և գնեցի ի արդար վաստակոց իմոց և բերեալ 'ի ամուրս Ճուշի և յանձնեցինք այն տեղն, ուր կայր և այժմ 1833 ամի և յամսեան մայիսի 12-ին. բերաք տեղս վասն մեր ուխտադրութեանն նորոգելութեամբ աւետարանս, ահա նորոգեցինք և պայծառացուցինք 'ի յիշատակ մեր համայն կենդանեաց և ննջեցելոց.. Միրզայ Օհանեան»։

## ԳՐԻԳՈՐԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ

Գիւղումս կայ և երկսեռ միդասեան ուսումնարան, որի երկյարկ շէնքը կառուցանել տուած է վերոյիշեալ բազուաբնակ Գերազնիւ Գրիգոր աղա Թովմասեան Այվազեանցն։ Գետնայարկն ծառայում է իբրև փայտատուն, իսկ վերնայարկն՝ ուսումնարան, որի մէջ կայ չորս սենեակ, մի մեծ դահլիճ և մի գեղեցիկ սրահ, որի մէջ է հետևեալ արձանագրութիւնն.

«Շինեցաւ ուսումնարանս արդեամբ և յիշատակ Բազուաբնակ Գրիգոր Թօմասեան Այվազեանցին 1890 թիւ Դեկտեմբեր»։։ Վերնայարկն ունի գեղեցիկ պատշգամբներ, նոր ձևի շինուած. պատուական նստարաններ և գրատախտակներ աշակերտաց և աշակերտուհեաց համար։ Ծխական ուսումնարանիս երկարութիւնն 29 մետր է, լայնութիւնն 11 մետր 48 սանթիմ։ Ուսանում են մօտ 60 աշակերտ և աշակերտուհի։

| | | |
|---|---|---|
| Տարեկան ռոճիկ վարժապետի . . . | 500 | րուբլի. |
| ,, ,, վարժուհու . . . | 400 | ,, |
| Լրագիր, գիրք, և զանազան նիւթեր . | 300 | ,, |
| Միամեայ ընդհանուր ծախք . . | 1200 | րուբ. |

Այս բոլոր ծախքերը ամեն տարի անում է միևնոյն բարերար Գրիգոր աղա Այվազեանցն։ Բացի ծախքերից նորին Գերազնութիւնն անում է հագուստ մի քանի որբ աշակերտաց և աշակերտուհեաց համար։ Երջանիկ է Սարուշէնն, որ ունի այսպիսի բարերար։

ԺԸ. ՄԱԻԱՍ ՇԷՆ. Հիմնուած է նոյն լեռնագօտու գա-

գաթնագիծ սարահարթի վերայ. բնակիչք տեղափոխուած են Ջրաբերդից. հողն բէկական, աւազուտ և սակաւ արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն, ձմրան խիստ, ամրան գերագանց օդն, կլիման, տեսարանն և ջուրն. երկար կեանք 90—100. եկեղեցին Երեք մանկունք. քարաշէն, որ կրում է սոյն արձանագրութիւնը. «Շնորհօքն Աստուծոյ ես տիկին Քալոյ Յովսէփ-բէկ Մէլիք Շահնազարեանց կառուցի զայս Երից մանկանց եկեղեցիս յարդար վաստակոց իմոց 1854 թուին». Քահանայ մի. Ծուխ 34. ար. 114. իգ. 87։

## ՄԱՄԱՍԻ ՎԱՆՔ

Այսպէս է անուանում Արցախի հասարակութիւնն այն վանքը, որ շատ վաղուց շինուած է շենիս մօտ բարձր բլրի վերայ, որի արևելեան և հիւսիսային կողմերն վիմահերձ բարձրութիւններ են։ Վանքս, որ կառուցեալ է երկու սիւների վերայ, ունի եկեղեցու ձև։ Խորանի տակ կայ չորս գերեզմանաձև շիրիմ, որ նորոգուած է երբեմն երբեմն տաճարիս հետ միասին։ Մեծ ուխտատեղի է վանքս և շիրիմներս։ Վանքիս մօտ եղած են խուցեր միաբանից համար, որք աւերակ են այժմ բոլորովին։ Երևում են նաև պարսպի հետքերն, որով պատած են վիմահերձից վիմահերձ։

ԺԹ. ԲԼԲԼԱԿ ՇԷՆ. Հիմնուած նոյն լեռնագօտու հարաւահայեաց լանջի վերայ։ Բնակիչք բնիկ. հողն բէկական, տեղական բերքերն նոյն. չունին եկեղեցի. հոգևոր պէտքերն կատարուում են Սխտորաշինում։ Ծուխ 15. ար. 65. իգ. 65։

Ի. ՍԽՏՈՐԱՇԷՆ. Հիմնուած է նոյն լեռնագօտու հարաւահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն (ունին այգի, պարտէզ և թթենի), օդն, կլիման և ջուրն անվնաս. երկար կեանք 75—80. եկեղեցին Նորաշէն և կիսատ տակաւին, քահանան գալիս է Ծովատեղ գիւղից։ Ծուխ 65. ար. 281. իգ. 203։

Շէնիս այգիների աղբիւրի մօտ կայ մի թեղի բազմադարեան ծառ, որի հաստութիւնն է 22 մետր, 75 սանթիմ։

Digitized by Google

ԻԱ. ՀԻՐՀԵՐ ԳԻՒՂ. Հիմնարկուած է նոյն լեռնագօտու հիւսիսային կողմում. գիւղի դիրքն արեւելահայեաց. բնակիչք բնիկ, հողն կիսով չափ արքունի և կիսով չափ բէկական, բայց բարեբեր և պտղատու, տեղական բերքերն նոյն, առատ է տանձն և խնձորն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100. քահանայ մի. ծուխ 80. ար. 325. իգ. 255։ Եկեղեցին Սուրբ Գրիգորիս, հոյակապ, համակ սրբատաշ քարով շինուած, կառուցեալ չորս սիւների վերայ, արտաքուստ խաչաձև. ներքուստ, ժողովրդեան կանգնած տեղից, վերև գմբէթ. երկարութիւնն 19 մետր 24 սանթիմ, լայնութիւնն 13 մետր 63 սանթիմ։ Բեմի ժողովրդահայեաց երեսին փորագրուած է.

«Կամաւն Աստուծոյ ես Պետրոս Կաթուղիկոս Աղուանից սուրբ աթոռոյ Գանձասարայ՝ նորոգեալ սուրբ աթոռս Ամարասայ արհի եպիսկոպոսութեան բոլոր նահանգի Վարանդու և Քոչիզու, քանզի փեռեկտեալ և պատառեալ էին զվիճակ սորին արարեալ ըստ իւրաքանչիւր կամաց. իսկ մեք զցանկ հայրենի նորոգեալ ժողովեցաք, նորոգեցաք զսիրելի աշակերտս մեր զտէր Բարսեղ արհի եպիսկոպոսն, որ և հրամայեցաք սմա շինել զեկեղեցի իմ Հովարան Ամարասայ, զոր և շինեալ կատարեաց ըստ մերում հրամանի յաւուր տաւնի այլակերպութեանն Քրիստոսի. և աւրհնեցաք զսուրբ տաճարս անուանելով զսա սուրբ Գրիգորիս՝ բերելով ի նշխարաց սրբոյն Գրիգորիսի ամփոփեցաք երկրիս Վարանդու և Քոչիզու, զի եղիցի այս երկու աթոռս մի։ Ով ոք զայս վիճակս բաժանել և զոք նստուցանել այլ տեղի, եթէ կաթուղիկոս լիցէ կամ եպիսկոպոս Տէր զայնպիսին՝ նզովեալ եղիցի ՅԺԸ. հայրապետացն, ընդ խաչահանուացն դասեսցի. Յուդայի մասնակից եղիցի։ Այս կտակ և արձանագիր յաւիտեան մնայ հաստատ»։

*Հարաւային փոքր խորանի հիւսիսային սեմի վերայ.*

«Մեք Հիրհերայ ճամիաթս տանուտէր Ղասումս, մեծ և փոքր ճանապարճի գլխի տափն ի սկզբանէ վախմ էր սուրբ Աստուածածնին. մեք ես վախմ արարաք Սուրբ Գրիգորիսին. ով քակէ, նզովեալ եղիցի յԱստուծոյ»։

*Հիւսիսային փոքր խորանի հարաւային սեմի վերայ.*

«Աստուած ողորմի տնտես Մարիամին, որ Է. (7) տարի եկեղեցուս հացն և ճաշն արաւ»:

*Աւագ խորանի հիւսիսային կամարակալ սեան վերայ.*

«Կամաւն Աստուծոյ... եկի սուրբ Ս.ս... թիւն Հայոց ՌՃԵ. ին հանդերձ Յո..Ալէքսան, Եղիայ. և Մարտիրոս եպիսկոպոսօքս, որ աո. Աստուած փոխեցան, որ թիւն էր ՌՃԺԶ. ի ա. յուլ. հիմնարկեցաւ սուրբ տաճարիս.. արնա սուրբ Գրիգորիսի ձեռնտուութեամբ.... 'ի թիւ... աշխատանս արարի... Մահդասի Գէսուն.... ցէ ըստ աշխար... անց... յիշեցէք... ցս ոս.. [1])»:

*Արեւմտեան դրան ճակատակալ քարին վերայ.*

«Ես Պետրոս կաթուղիկոս աշակերտ Ղուկաս վարդապետին եառ շինել կաթուղիկէս յիշատակ ինձ և աշակերտին իմոյ Բարսեղ եպիսկոպոսին. յիշեցէք ի Քրիստոս»:

«Աստուած ատրհնէ Քոչիզու ժողովուրդն այն ատրհնութեամբն, որ ոչ անցանէ, ձեռնտու եղեն կրին և քարին»:

«Զաւրութեամբն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ի դառն և ի նեղ ժամանակիս, վասն ծովացեալ մեղաց մերոց եկն մարախ եկեր զերկիրս Աղուանից և աւերեաց բազում տեղիս ի թագաւորութեան Տահ Սուլէմանին, պարոնութեան Միրզա Ղուլի բէկին և իշխանութեան երկրիս Վարանդու Մէլիք Բագու որդի Մէլիք Տահնազարին և օժանդակութեան (թեամբ) Ովանիսին և քահանայից և տանուտեարց, մեծամեծաց և փոքունց ամէն. թվին ՌՃԻԲ.»:

*Հարաւային դրան ճակատակալ քարի վերայ*

«Տնորհօքն Քրիստոսի ես Բարսեղ եպիսկոպոս աշակերտ Պետրոս կաթուղիկոսին և ծնողքն իմ Աղայն և Գիւլաղայն ի գաւառէն Վարանդու, ի գեղջէ Գիշուն՝ նորոգեալ պայծառացուցի զսուրբ աթոռս Ամարասայ, պարսպօք շրջապատեցաք հանդերձ յոգնաթիւ սենեկօք, զեկեղեցիս շքեղացուցաք զարդուք, տուաք շինել զեկեղեցիս անուամբ Սրբոյն Գրիգորիսի

---

[1]) Եղծուած են կէտադրեալ բառերն և գրերն։

Հովարան սուրբ աթոռոյն Ամարասայ, որ և մասն բերեալ ի Նմանէ ամփոփեցաք աստ, իսկ հիմնարկեցաւ ՌՃԺԶ. թվին, կատարեցաւ ՌՃԻԵ. ին»։

Գիւղիս հին հանգստարանում կայ մի հնաշէն մատուռ Սուրբ Աստուածածին անուամբ, որ խարխուլ է արդէն և քայքայւում է։

ԻԵ. ԾՈՎԱՏԵՂ ԳԻՒՂ. Ծննուած է նոյն սարի հիւսիսային կողմում ոչ այնքան հեռի Հիրհերից. բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, միջակ արդիւնաբեր, բայց պտղատու. տեղական բերքերն նոյն (նշանաւոր են տանձն ու խընձորն), պատուական օդն, կլիման, տեսարանն և ջուրն. երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ. քահանայ մի։ Ծուխ 86. ար. 306. իգ. 276։

## ԿԱՐՄԻՐ ԵԿԵՂԵՑԻ.

Այս անուամբ է կոչւում Մէլիք Փաշաեանցների Դամբարանն, որ կայ գիւղիս արևելեան կողմում, ոչ այնքան հեռի, մի բլրակի վերայ։ Դամբարանիս շուրջն հանգիստներ են հնուց խիտ առ խիտ ամփոփուած, որի մէջ կան և խաչագարդ տապանաքարեր։ Դամբարանս ստորերկրեայ է և բաղկացած չորս պատկից մատուռներից, որոց Ա.-ն մեծ. Բ.-ն միջակ մատուռներ են։ Գ.-ն եկեղեցի է՝ Դ.-ն փոքր մատուռ է։ Լայնութիւնից լայնութիւն պատկից մատուռներս հաղորդակցութիւն ունին միմեանց միջնադռներով։ Ա.-ն մեծ մատուռն— մնասուած է գագաթնագիծ ճեղքուածով, որի հարաւային պատն և դուռնն միայն են երևում. քանզի ստորերկրեայ են բոլոր մատուռներս։

*Ա. Մատրան ճակատակալ քարի վերայ.*

«Թվ. ՌՀ. Դաւիթ եպիսկոպոս. յիշատակ է եկեղեցի վանքս որ լինի սա դամբարան և շիրիմ մերոց Նախնեաց»։

*Մատրանս խորանի հարաւային կողմի խաչին վերայ.*

«Թվ. ՌԼԵ. ի հայրապետութեան Դաւիթ, առաջնորդի Մէլիք Փաշիկ [1]), Պետրոս եպիսկոպոս»։

[1]) Այսինքն ՚ի մէլիքութեան կամ ի պարոնութեան։

*Վէմ քարի ժողովրդահայեաց երեսին.*

«Դաւիթ եպիսկոպոս»։

*Բեմի խաչի վերայ.*

«Դաւիթ աբեղա կանգնեցի գխաչս Առան վարդապետի Տարսոնե.. և զիս իշա (յիշեա)»։

*Խորանի հիւսիսային կողմի խաչքարի վերայ.*

«Թվ. ՈԻԵ. ի հայրապետութիւն տէր Յովհաննիսի. առաջնորդութիւն Մէլիք Փաշին, յանուն Աստուծոյ ես Սահակ եպիսկոպոս կանգնեցի զխաչս ի փրկութիւն եղբաւր մերոյ Ղազարին, աղաւթս յիշեցէք» (14)։

*Բ. Մատրան մէջ հարաւային պատում մի կիսատ խաչի վերայ.*

«Անուն Տեառն Աստուծոյ ես Մեիկ Հացգերգ (?) կանգնեցի զխաչս որդոյ իմոյ Սադիկայ և որ Եւայ ու Արզուն ձորոյ խոց. Աստուած ողորմի ......»։

*Մի մեծ խաչի կէս երեսին վերայ.*

«Այս է Սահակ եպիսկոպոսն, որ փոխեցաւ ....»։ *Միւս կողմի վերայ*։ «Անուամբն Աստուծոյ ես Պետրոս եպիսկոպոս, Դաւիթ խան այանս կանդնեցինք զխաչս ի փրկութիւն Սահակ եպիսկոպոսին, աղաւթեցէք»։

*Գ. Մատրան մէջ մի գեղեցկաքանդակ խաչքարի վերայ.*

«Կամաւ ամենակալին Աստուծոյ, ես Մէլիք Աւան կանգնեցի զխաչս 'ի փրկութիւն իմոյ Մէլիք Պապին, մաւրն իմոյ Խոնդի խաթունին, ով որ յիշէք 'ի Տէր, յիշեսջիք առ Աստուած թվ. ՌԺԵ. ին»։

*Ուրիշ խաչի վերայ*

«Կամաւ Ամենակալին Աստուծոյ ես Մէլիք Ադամ որդի Մէլիք Պապին որդոյ Հախիջանայ Ժռանց որդոյն Թոմասին որդոյ մեծի իշխանին Աւանայ կանգնեցի զխաչս ի փրկութիւն նախնեաց մերոց ....»։

*Այլ խաչարձանի վերայ*

«Իշխանութեան Թահմազին, հայրապետութեան տեառն Գրիգորիսի և առաջնորդութեան ուխտիս Սահակայ եպիսկոպոսի ...»։

Սարսափելի մութ, խոնաւ և անմաքուր են մատուռները և լի ջղջիկներով, մաշուած, տեղ տեղ եղծուած և դըժուարաւ ընթեռնլի են արձանագրութիւններն. վասնորոյ հազիւ թէ երկու օրում կարողացանք ընդօրինակել մեծ զգուշութեամբ այդ արձանագրութիւններդ։ Թողում ասել որ յաճախակի յարձակուելով ջղջիկներն մեր վառ մոմերի վերայ՝ անցուցանում էին զայն և զմեզ թողնում դժոխային մթութեան մէջ։

Արդէն խօսած ենք լճակների շարքում երկու փոքր լճակներին մասին, որք կան Ծովատեղ գիւղի և Խերխան շինի միջև։ Ոմանք ասում են թէ Ծովատեղ գիւղն լճերից ստացած է իւր ծովատեղ անունը։

ԻԳ. ԽԵՐԽԱՆ ՇԷՆ. Հիմնուած է նոյն լեռնագօտու հիւսիսային լանջի վերայ. բնակիչք բնիկ [1]), հողն բէկական. ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Գրիգոր, քարուկիր, քահանան գալիս է Ծողատեղից։ Ծուխ 31. ար. 150 իգ. 120։

ԻԴ. ՄԱՇԱԴԻ ՇԷՆ. Հիմնուած է մի ձորի երկու լանջերին, որ գտնուում է Մսմնայ գիւղի արևելեան կողմում. բնակիչք բնիկ. հողն բէկական և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 75—80. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր. քահանայ մի։ Ծուխ 120. ար. 510. իգ. 433։

ԻԵ. ՄՍՄՆԱՅ. Հիմնուած է նոյն լեռնագօտու հիւսիսային կողմում, Ծօշկայ վանքի արևելեան ձորի լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման, տեսարանն և ջուրն, երկար կեանք 89—90. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ. քահանան գալիս է Ղուախան գիւղից։ Ծուխ 70. ար. 260. իգ. 230։

ԻԶ. ՀՂՈՐԴԻ ԳԻՒՂ. Հիմնուած է մի բարձր սարի արևելահայեաց լանջին վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական,

[1]) Սոքա կանխաւ բնակած են հին գիւղում, որ կայ այժմեան շինից ներքև, որի մէջ դեռ երևում է Րևալ (երևայ, երևի) անուն եկեղեցին և որի մօտ՝ հին հանգստարանն։

տեղական բերքերն նոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 136. ար. 624. իգ. 508։

Միդասեան ուսումնարան տղայոց. աշակերտք 35. թոշակաւոր 25, ձրիավարժ 10, տարեկան ռոճիկ վարժապետի 220 րուբլի։

ԲՈՂՐԽԱՆԻ ՎԱՆՔ (սարից բարձ 5326 ոտ.)

Հիմնուած է համանուն սարի հարաւ արևելեան կողմում մի փոքր ձորակի ձախ լանջում մի հարթակի վերայ։ Ըստ ամենայնի ունի եկեղեցու ձև կառուցեալ անտաշ կաթնագոյն քարով մի կամարի վերայ։ Ունի մի մեծ և միայն մի փոքր խորան, մի դուռն, երեք լուսամուտ, երկու խորհրդարան. 9 մետր 65 սանթիմ երկարութիւն, 5 մետր 50 սանթիմ լայնութիւն։ Մի կոտրած և փոքր խաչքարի վերայ. «Խաչս տանն Արխի»։ Այլ փոքր խաչքարի վերայ. «Խաչս Կ. Ես Բ. Հ.»։

Ունի շրջապարիսպ քառակուսի ձևով պատուած, որ ունի միայն մի դուռն։ Պարսպի հարաւային և արևմտեան կողմում ներքուստ շինուած են թաղակապ խուցեր, անվնաս մնում է միայն վանահօր սենեակն, ամբողջապէս խոնարհուած են միաբանից սենեակների գլուխներն։ Պարսպի երկարութիւնն է 40 մետր, լայնութիւնն՝ 18 մետր 50 սանթիմ։ Անտառապատ է վանքիս շուրջն, որ ունի պատուական ջուր և մաքուր օդ։

ԻԷ. ՀԱՐԱՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Ա. լեռնադօտու [1]) հիւսիսային կողմում մի ձորակի աջ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական և սակաւաբեր, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք 85 տարի, եկեղեցին սուրբ Մեսրոպ, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 65. ար. 245. իգ. 200։

ԻԸ. ՆԻՆԿԻ ԳԻՒՂ. Հիմնուած է Բ. կամ միջին լեռնա-

---

[1]) Բարձր գագաթն է Խաչախուռ 5028 ոտք։

գոտու հարաւահայեաց լանջին վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, բայց բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ, քահանայ երկու։ Ծուխ 230. ար. 1041. իգ. 818։

## ԾԱՌԵԽ ՈՒԽՏԱՏԵՂԻ.

Գիւղիս հիւսիսային կողմում մի բարձր սեաւ վերայ կայ հնուց մնացեալ մի մատրան աւերակ, որի մէջ դրուած է մի խիստ հին քարեայ խաչ։ Ահա խաչս է ուխտատեղին, որի շուրջն բուսած են ծերունի ծառեր, որք անձեռնմխելի մնացած են իբր նուիրական ծառեր գիւղացու կացնի հարուածներից։

ԻԹ. ՂԱԽԱԽԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է մի ձորի մէջ, խեղդուած է տեսարանն և սեղմուած հօրիզոնն շրջապատող լեռներով [1]). բնակիչք կիսով չափ բնիկ, կիսով չափ տեղափոխուած Ղափանից, Խանձաձորից և չորս գերդաստան Խնձորստանից, հողն բէկական, բարեբեր, ամրան ծանր օդն և կլիման, երկար կեանք 65—75, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, երկարութիւնն 17 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 65 սանթիմ. «Շինեցաւ այս եկեղեցիս Ղաւախանու հասարակութեան աշխատանօք 1871 ամի»։ Քահանայ մի։ Ծուխ 34, ար. 149, իգ. 131։

Գիւղիս հիւսիսային կողմում կայ հին հանգստարան և քարուկիր մատուռ, որի մէջ կան խաչարձաններ, որից միոյն վերայ. «Թվ. ՋՂԷ ես Տահաւոր կանգնեցի խաչս հայր Պախա, մայր իմ Տահմար . . .»։

Լ. ԵՆԿԻՋԱՆ գիւղ. Հիմնուած է Նինկի գիւղից բաւական ներքև նոյն գիւղի Ջրաձորի ձախ կողմում մի սեաւ վերայ. բնակիչք հատուած և եկած Նինկի գիւղից. ամենայն ինչ նոյն, եկեղեցին նոր շինել է տալիս պ. Գալուստ Գաբ-

[1]) Արևելեան սարի բարձ. 3780 ոտք։

րբէլեան եւր սեպհական ծախքով, քահանան գալիս է Նին-կի գիւղից։ Ծուխ 20. ար. 115. իգ. 95։

## ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Ծառեխի սարի շարունակութեան վերջի ծայրին մօտ՝ քարձր սեաւ վերայ շինուած է կաթնագոյն անտաշ քարով մի փոքր և հին եկեղեցի, որ ուխտատեղի է։ Աւանդաբար ասում են թէ Սուրբ Գրիգորիս Աղուանից Ս. կաթուղիկոսն հիմնարկել տուած է յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։ Դարերի ընթացքում քանիցս նորոգուած է։

ԼԱ. ՊԱՌԱՒԱԹՈՒՄԲ. Հիմնուած է սուրբ Լուսաւորչի եկեղեցու սարի վերջացած տեղի հիւսիսային ստորոտում, ջրաձորի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Մեծ-Սիւնեաց Պղնձահանքի մօտից, հողն արքունի և բարեբեր, տեղական բերքերն նոյն (մանաւանդ տանձ, խնձոր, բոժոժ), սննդարար օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Կղարծուց։ Ծուխը (Հաշուած է Կղարծի գիւղի վերայ)։

ԼԲ. ԿՂԱՑԾԻ ԳԻՒՂ. Հիմնուած է Ս. լեռնագօտու հարաւային կողմում, Պառաւաթմբի հիւսիսային հանդէպ, նոյն ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ, դիրքն արևելահայեաց, բնակիչք բնիկ, հողն բէկական, արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100. եկեղեցին յանուն Սրբոց Թարգմանչաց, քարուկիր, հօյակապ չորս սիւների վերայ, շինուած բնակչաց ծախքով, երկարութիւնն 18 մետր 75 սանթիմ, լայնութիւնն 12 մետր 60 սանթ. քահանայ մի։ Ծուխ 165. ար. 604. իգ. 585։

*Եկեղեցումս կայ.*

Ա. Մասն կենաց փայտից զետեղուած մի արծաթեայ խաչում։

Բ. Աւետարան գրչագիր, գրուած հաստարակ թղթի վերայ, մեծադիր, պատկերազարդ։

Digitized by Google

*Ցիշատակարանից* «Զաւրութեամբն Աստուծոյ կատարեցի զսուրբ աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս Աղթամար., ի հայրապետութեան տեառն Զաքարիայի և ի թուաբերութեան Հայկազեանս տումարի ՋԻԶ. ի դառն և ի նեղ ժամանակիս։

Արդ ես Յովհաննէս եսոււ գծագրել զսուրբ աւետարանս..»։ Տատ յէտոյ գրուած է. «Ի վերջին գառն և ի նեղ ժամանակ խուժադուժ ազգ նետողաց՝ տաճկաց ազգաց չարամահ եղեն. Համզաբէկ անուն պարոն և այլ անթիւ զաւրք հրամանաւ ինքնակալին՝ որ կոչի Շահ Իսմայիլ՝ գնացին ի վերայ աշխարհին Քուրդստանայ, աւերումն բազմապատիկ ածին ի վերայ Հայոց, զորն սպանելով և զոր գերելով, գիւղ և քաղաք, վանք և անապատ միահաղով (ոյն) յափշտակեցին զՀայք և բերին զսուրբ աւետարանս գերմամբ ի յերկիրն՝ որ կոչի Արցախ, և հանդիպեալ այսմ աստուածաշունչ բուրաստանիս քահանայ մի և տեսեալ զսա... և գնեաց զանգին մարգարիտս ի հալալ ընչից իւրոց, ետ գին սորա ՁՌ. դահեկան և ետ յառաջնորդ Գանձասարու աթոռոյն և ծախեաց զսա ի Թաւրոս էրեց....»։

*Մատթէ ուխտատեղի.*

Գիւղիս հիւսիսային հանդէպ մի տեսարանաւոր բլրի վերայ կայ մի հին մատուռ, որ շրջապատուած է ծերունի ծառերով։ Ասում են աւանդաբար. «Խաչարձանիս տակ ամփոփուած է Մատթէ անուն քահանան, որ նահատակուած է անհաւատ բռնաւորներից հին ժամանակներում»։

ԼԳ. ՄՋԿԱՊԱՏ [1]) գիւղ. Հիմնուած է այն բարձր լեռնաշղթայի վերայ, որ ճիւղաւորուած է Ա. լեռնագօտուց և հասած մինչև Ամարաս վանքի հիւսիսային կողմն. բնակիչք բնիկ. հողն արքունի և բէկական և արդիւնաւոր. տեղական բերքերն նոյն. օդն և կլիման գերազանց, ջուրն պատուական, երկար կեանք 100 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին [2]), քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 83. ար. 465. իգ. 362։

ԼԴ. ՔԱՐԱՀՈՒՆՋ (ունչ) ԳԻՒՂ. Հիմնուած նոյն լեռնաշղթայի հարաւային կողմում. բնակիչք բնիկ, հողն արքու-

---

[1]) Մէջքն (ետևի կողմն) պատուած, քանզի բերդն շատ հեռի չէ գիւղից։
[2]) Եկեղեցուս մօտ է Վարդան անուն նահատակի մատուռն։

նի, միջակ արդիւնաւոր, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ոչ այնքան լաւ. երկար կեանք 65—70. եկեղեցի չ'կայ, քահանան գալիս է Քերթից, որ խիստ մօտ է։ Ծուխ 36, ար. 125. իգ. 95։

ԼԵ. ՔԵՐԹ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն սարի հարաւ արևելահայեաց ստորոտում, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, ջուրն պատուական, օդն և կլիման փոքր ինչ բարեխառն, երկար կեանք 75—80. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 56. ար. 194. իգ. 150։

## ԱՄԱՐԱՍ ՎԱՆՔ (15)

Հիմնուած է այն երկրալեզուի վերայ, որ Մուղան դաշտից կամ գաւառից մտած է Խազազի և Լուսաւորչի սարերի մէջ և կազմած դուրալի հովիտ, որի միջից հոսում է Ամարաս վտակն [1]։ Վանքս ի հիմանէ նորոգ կառուցեալ է 1858-ին չորս հաստատուն սիւների վերայ ամբողջապէս սրբատաշ կաթնագոյն քարով։ Ունի մի աւագ և երկու փոքր խորաններ, տասն մեծ մեծ լուսամուտ, մի դուռն արևմտեան կողմից, երկու խորհրդարան, մի աւազան և մի փոքր կաթուղիկէ։ Աւագ խորանի տակ է շատ վաղուց շինուած հնութիւնն, որի մուտքն բացուած է դասի հարաւային կողմի բեմի մօտից. տասնևուռթ սանդուղներով իջնում է մինչև յատակի մատուռն։ Ստորերկրեայ շինութեանս երկարութիւնն (ներսից չափելով) 3 մետր 70 սանթիմ, լայնութիւնն 1 մետր 90 սանթիմ։ Փոքրիկ մատուռս, որ ամբողջապէս շինուած է Խազազի հանքի սրբատաշ քարով, բացի հարաւային մուտքից ունեցած է և միւս մուտք արևելեան կողմից, որ փակ է այժմ։

Հիւսիսային դասում առաջին լուսամտին պատկեց շինուած է մի գեղեցիկ տապանաքար, որի տակ է ամփոփուած

[1]) Վտակս առնում է իւր սկիզբը Սօս, Քերթ, Քարահունջ, Հերհեր, Խերխան գիւղերի աղբիւրներից և մօտերքից և ջրում Ամարասի արտերը, այգիները և պարտէզները։

Սուրբ Լուսաւորչի Թոռին-Աղուանից Ս. կաթուղիկոս Գրիգո-րիսի մարմինն։ Ահա այս է գլխաւոր ուխտատեղին։ Վանքիս երկարութիւնն է 23 մետր, լայնութիւնն 13 մետր 33 սանթիմ։

Տաճարումս է մասն սրբոյն Գրիգորիսի զետեղուած մի արծաթեայ, ոսկեզօծ, ականակուռ և մատանիներով զարդա-րուած աջի մէջ, որ կրում է.

«Աջ սրբոյն Գրիգորիսի Աղուանից Հայրապետին. շինեցաւ յամին 1870 ի Շուշի քաղաքի անվարձ աշխատութեամբ շուշե-ցի ոսկերիչ Միրզաջանայ Խոջաբաղրեանց, Գրիգորի Բատամ-եանց և Առաքելի Յարութիւնեանց»։

Տաճարս ունի քարաշէն, ամրակազմ, քառակուսի և բարձրագոյն շրջապարիսպ, չորս անկիւններում չորս աշտա-րակներ և պատերի վերնամասից հրացան արձակելու ծակեր, որք շինուած են ռուսներից, երբ այստեղ էր մաքսատունն։ Պարսպիս երկարութիւնն արևելքից արևմուտք 94 մետր է, լայնութիւնն 56 մետր 40 սանթիմ։ Պարսպիս ներսում արևե-լեան կողմում կայ 5 մեծ սենեակ (այժմ գոմ), հարաւային

,, ,, 6 ,, արևմտեան

,, ,, 5 ,, (այժմ 4-ն անկարգ) հիւսիս.

,, ,, 8 ,, ( ,, 5-ն ,, )։

Հարաւային մասում միայն կայ վերնայարկ երկու աւերուած սենեակ։ Շինութեան մէջ ամենաշքեղ մասն եղած է միայն սենեակներս, որք շինուած են տաշուած կաթնագոյն քարով և ունին չորս կողմերից զոյգ զոյգ լուսամուտներ և մէն մի լուսամուտ ունի մի մի բաժանարար քարեայ սիւն [1])։ Ահա այս եղած է երբեմն կաթուղիկոսարան Աղուանից։ Ընդհան-րապէս անմաքուր, անկարգ և անխնամ է այս պատուական վանքն ամենայն մասամբ, որ այժմ ընկած է բարոյապէս և նիւթապէս։

*Վանուցս անշարժ կալուածներն են.*

Ա. Վարելահողեր,

Բ. Այգի և թթենեաց պարտէզ,

Գ. Մի ջրաղաց։ Վանահայրն է մի տիրացու....։

---

[1]) Յաւալի է տեսնել որ քանդուած է այս հնադարեան պատուական հնութիւնն։ Ասում են թէ «Մի տիրացու քանդած է առանց հրամանի......»։

*Ամարաս աւերակ գիւղաքաղաք.*

Վանքիս հարաւային կողմում, ջրի աջ կողմի բարձր լանջի վերայ կայ ընդարձակ աւերակ։ Տնաքակերից երևում է, որ տներից ամենամեծ մասն շինուած է եղել Արցախի յատուկ և հին ձևով—գետնափոր։—Ոչինչ պակաս ընդարձակ է և գիւղաքաղաքիս հանգստարանն, որ մօտ է աւերակիս։

ԼՁ. ՍՕՍ ԳԻՒՂ. Հիմնուած է Լուսաւորչի սարի արևմըտահայեաց ստորոտին մօտ լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն կիսով չափ արքունի և կիսով չափ բէկական, անջրդի, բայց բարեբեր և հացաւէտ. տեղական բերքերն նոյն, օդն և կլիման սննդարար, ջուրն գովելի, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, առանց կամարի և սեան. երկարութիւնն է 12 մետր 60 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 90 սանթիմ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Զայս պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս»։ Քահանայ երկու։ Ծուխ 107. ար. 385. իգ. 302։

*Լուսաւորչի սար.* Բարձրացած է գիւղիս գլխին վերև արևելեան հանդէպ։ Սարիս կատարին վերայ կան շատ թափուած քարեր, տնաքակեր և եկեղեցու աւերակ։

*Աւանդութիւն.* Աւանդաբար պատմում են. «Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ կողմերումս քարոզելու և եկեղեցիներ հիմնարկելու ժամանակ գիշերն բարձրացած է սարիս գլուխն և աղօթքով լուսացրած գիշերները։ Սուրբ Գրիգորիս Աղուանից կաթուղիկոսի մարմինը երբ փախցրած բերում են նորա աշակերտներն Դարբանդից այստեղ, նահատակել տուող թագաւորի զօրականներն, փախցնողների ետևից ընկած, գալիս են մինչև այստեղ։ Սակայն աշակերտներն ապաւինելով յԱստուած և դիմելով Սուրբ Լուսաւորչի աղօթած տեղն, ազատ են մնում հալածողներից և ապա նահատակուած Սուրբ Գրիգորիսի մարմինը տանում թաղում Ամարասի վանքում և իրանք փախչում դէպի Հայաստան»։

## ԵՂԻՇԱՅ ԿՈՒՍԻ ԱՆԱՊԱՏ.

Հիմնարկուած է այն բարձրագոյն գագաթի վերայ, որ

Digitized by Google

արձանացած է Սօսի, Լուսաւորչի սարի, Քերթի և Ղուզի-ձորտարի մէջ։ Հանգստարան է անապատիս շուրջն. գագաթս զարդարուած է թեղի և տխկի ծառերով և հին ու նոր տապանաքարերով։ Մենաստանս շինուած է անտաշ որձաքարով, իսկ կամարներն և բոլոր անկիւնաքարերն սրբատաշ քարով։ Մենաստանս, որ կանգնած է երկու սիւների վերայ, ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, աւազան, վեց լուսամուտ, քարեայ խաչկալ, մի դուռն արևմտեան կողմից, մի փոքր կաթուղիկէ իբրև զանգատուն և մի փոքրիկ խորանաձև գերեզման՝ աւագ խորանի բեմի տակ, որի դուռն բաց է դէպի դասի մէջ տեղն։ Ահա այս է Եղիշա Կուսի գերեզմանն, որ մեծ ուխտատեղի է։ Անապատիս երկարութիւնն է 15 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 70 սանթիմ։ Քարեայ խաչկալի հարաւային դրան հիւսիսային սեմի վերայ. «Յիշատակ է Համասուտանց Միրզախանի որդի Մանուէլ վարդապետիս այս խաչկալս. եղբարքն իմ Պապան և Վանլալան, քորար (քորք) իմ Գուլասմար, Ինթալիհ, ծնողքն իմ Մումխանում, կողակից իմ Նազլու, որդի իմ Հախնազար, Շահպատ, Սիրուն, Վռամին, Մազրվանին և դստերն իմ Բաջուն, Դօսդաշին թվ. ՌՃԴ.»։

*Խաչկալի հիւսիսային կողմում մի խաչքարի վերայ.*

«Ղազար, կողակից ուր (իւր) Նազլու թվ. ՌՃԴ.»։

*Հիւսիսային խորանի ճակատակալ քարի վերայ.*

«Ես Աղէս կանգնեցի զխաչս փրկութիւն ինձ և կենակցին իմոյ, որդւոյ և դստերաց իմոց ՁՀ.»։ Կարծում ենք որ խաչքարս գերեզմանից վեր առած և դրուած է այստեղ։

*Դրան ճակատակալ քարի վերայ* [1])

«Կարողութեամբ ամենազօրին Աստուծոյ ես Նուաստ տէր Յոհան անձամբ տկար աբեղայս և որդէգիր Փոքր տէր Յոհանս շինեցաք սոյն զեկեղեցիս ըստ անուան Սրբուհոյ Կուսին Եղիշէի ի կաթուղիկոսութեան տեառն Երեմիայի և տանս Աղուա-

---

[1]) Դրանս հիւսիսային սեմի վերայ, «Տէր Եղիազարս որ ձեռնադրեցաւ յաբեղայ ՌՃՀԴ.»։

նից որ 'ի մայր աթոռոյն Գանձասարայ վասնորոյ յիշել աղաչեմք հանդերձ ծնողովք մերովք ՌԾԻԴ.»։ Անապատիս որմին արևմտեան արտաքին երեսն խաչազարդուած է խաչքարերով։

*Սոյն երեսի լուսամտի գլխին.*

«Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ես անարժան ուստայ Գաբրիելս շինեցի այս եկեղեցիս ի ձեռամբ իմով, ով կարդա, մէկ բերան ողորմի ասէ. խաչս յիշատակ է Գաբրիելիս և ծնողաց իմոց և դստերաց և որդոց իմոց»։

ԼԷ. ԴՈՒԶԻ-ՃԱՐՏԱՐ (Հիւսիսահայեաց ճարտար). Շինուած է նոյն սարի հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, առատաբեր, տեղական բերքերն նոյն, նշանաւոր է ցորենն և գարին, գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 110 տարի, եկեղեցին Սուրբ Գէորգ, կառուցեալ մի կամարի վերայ, երկարութիւնն 15 մետր 50 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 60 սանթիմ, քահանայ երկու։ Ծուխ 145. ար. 580. իգ. 465։

Եկեղեցումս կայ մի փոքրադիր, թղթեայ ձեռագիր աւետարան, պատկերազարդ, անյայտ է գրողի անունն, միայն յայտնի է, որ ստացած է Յովհաննէս անուն ոմն։

Մասունք *Երից մանկանց* մի արծաթեայ փոքր խաչի մէջ։

ԼԸ. ԿԻՒՆԻ-ՃԱՐՏԱՐ (Արեգդէմ ճարտար) Հիմնուած է բերդասարի հարաւային կողմում. դիրքն հարաւ-արևելահայեաց, միայն մի ձորակով բաժանուած Դուզի-ճարտարից. բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի, սակայն բազմարդիւն, տեղական բերքերն նոյն (այգի, թթենի գովելի, հռչակուած է գիւղիս ցորենն), գերազանց օդն, կլիման, ջուրն և տեսարանն. երկար կեանք 111 տարի, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, կառուցեալ մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան. երկարութիւնն է 11 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 55 սանթիմ։ Դրան ճակատակալ քարին վերայ. «ՌՄԼՁ. թվին. այս է Ամենափրկչին սուրբ եկեղեցիս, սա եղէւ ղքնոր յիշատակ տէր.... Իյ. Խանումէն»։ Իսկ վերև.



Digitized by Google

«Ուստայ Թինի» (Յարութիւն չինող վարպետի անունն է)։ Քահանայ մի։ Ծուխ 260. ար. 1095. իգ. 855։

Գիւղումս կայ Ս. Գրիգորեան միդասեան ուսումնարան տղայոց, աշակերտք մօտ 50, Թոշակառու 38, ձրիավարժ 10. միամեայ ռոճիկ վարժապետին 220 ր.

## ԿՈՀԱԿ ՈՒԽՏԱՏԵՂԻ

Մի աւերակ մատուռ է Կոհակ անուամբ, որ հիմնուած է գիւղիս անդում մի խութի վերայ։ Աւերակս ծածկուած է ճապկի ծառերով։ Խութիս գագաթն ունի մօտ երկու կալաչափ մեծութիւն։ Ուխտի օրն է ամեն Համբարձման տօնն։

*Դավէ-չիշէք*

Այս անունը կրող աղբիւրն բղխում է գիւղիս արեւմտեան հանդէպ եղած քերծիցն եւ Թափուում իւր տակի փոսին մէջ։ Կարմրուկ (տեղական բարբառով խաւարթնը) ախտով հիւանդացեալները բերում եւ լողացնում են փոսի միջի ջրովն, որով բժշկուում է հիւանդն։

*Բերդի նահատակ*

Աղբիւրիցս վերեւ մի բարձր ապառաժի վերայ կայ մի կիսաւեր մատուռ, որ իւր մէջ կրում է իւր արեամբ ներկուած մի նահատակի մարմինը, որի անունն անյայտ է։ Միայն յայտնի է որ ուխտատեղի է խիստ հին դարերից աւանդաբար մնացեալ։

ԼԹ. ԽՈՒՆՉԻՆԱԿ (Խուն-չինակ). Հիմնուած է բերդասարի արեւելահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի բայց բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, օդն եւ կլիման փոքր ինչ ծանր ամրան, տեսարանն պատուական, ջուրն սննդարար, երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, կամարակապ, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 45 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 80 սանթիմ, քահանայ երկու։

Արձանագրութիւն դրան ճակատակալ քարի վերայ.

«Ի ՌՅԹ. (1860) Կամաւն Աստուծոյ կառուցաւ եկեղեցիս

Խնչինագ գեղջ անուն սուրբ Աստուածածնի սեպհական արդեամբք և ծախիւք Տուշի քաղքցի բարեպաշտօն, ազնուազգի աղա Հայրապետ բէկի Դօլուխանեանց ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ազնուհւոյ ամուսնոյն իւրոյ Բակումայ Մէլիք Բէկլարեանց և ծնողաց իւրոց հօրն Բաղդասար բէկի, մօրն Նազլու Խանին»։

Ձեռագիր աւետարան փոքր գիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ (ընկած է Ղուկաս աւետարանչի պատկերն)։ Գեղեցիկ և ճարտարարուեստ են պատկերները, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն, ընտիր ոսկեզօծն և ներկերն։

*Ցիշատակարանից*. «Որ (Ամեն. Երրորդութիւն) ետ կարողութիւն տկար և մեղապարտ, անարժան Գրիգոր երիցու, որ ծաղկեցի զիս (զայս) և հասայ 'ի յաւարտ սուրբ աւետարանիս. ծրագրեաց սա 'ի յանդանց [1]) ձեռամբ Վարդան երիցու.... Մահտեսի Թաղիաշի խօջա Գազպարն և որդի նորա խօջա Ցակովբջանն յայսմ տարւոջ եկին ի Վան, որ էր թուականիս Հայոց ՌՃ և ԻԱ. և ստացան զսա ի հալալ վաստակոց իւրեանց ի յիշատակ իւրեանց և իւրեանց ծնողացն»։

Չգիտենք ինչ պատճառաւ յետոյ աւետարանս ընկած է Աւետարանոց աւանն. «Գրեցաւ ի 1845 ամի փետ. 18-ին. այս յիշատակ հայերէն աւետարանս տուեալ եղև ի գիւղն Խունիշինակ Սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն որ է ընծայողն Չանաղչու (Աւետարանոց) գիւղին բնակիչ Մէլիք Չահանբաղշի որդի դուստր Նանակուլ Մէլիք Շահնազարեանց և այլ մին սուրջառ (շուրջառ) իւր արծաթի չափաստովն...»։

*Գրչագիր մաշտոց*. գրուած է թղթի վերայ, «Արդ աղաչեմ զՁեզ... յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զԱստուածատուրն և զեղբայրն իւր զՄարգարէն և զծնողսն նորա և զՅակովբ քահանայ և զՍիմէոն քահանայ, որ աշխատեցաւ ի գրելն . . .»։ Մաշտոցս եկեղեցւոյ նուիրած է շուշեցի տիրացու Անաստաս Տէր-Մկրտչեանց 1855-ին դեկ. 1-ին։ Ծուխ 96. ար. 485. իգ. 325։

---

[1]) Թերևս գծագրեցաւ այս ընտիր աւրինակաց։

Խ. ԿԻՇԻ ԳԻՒՂ. Հիմնուած է բերդասարին հիւսիսային կողմում մի հարաւահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական, ամենամեծ մասամբ անջրդի, բայց արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն (բոժոժ, թութ, խաղող առատ են), օդն, կլիման և ջուրն պատուական, տեսարանն զմայլելի, երկար կեանք 60. եկեղեցի Սուրբ Մինաս, թաղակապ, երկարութիւնն 16 միտր 65 սանթիմ, լայնութիւնն 7 միտր 85 սանթիմ. քահանայ մի: Գիւղումս կայ եօթանասուն այրի կին: Պատճառն այն է, որ մարդիկ ամրան ջերմ ամիսներում աշխատում են Մուղանի դաշտաբերանում և վախճանուում անժամանակ: Ծուխ 127. ար. 584. իգ. 481:

## ՈՍԿԵԱՆՑ ԽԱՉ

Այս անուամբ կոչուում է այն վաղեմի սրբավայրն, որ կայ գիւղիս աղբիւրի մօտ, ջրաձորի աջ ափում և որ ունի այժմ քառակուսի ձև, քարուկիր շինուած: Այժմ բաց է շինութեանս գլուխն և մի ծերունի թթենի ծառ բուսած է սրբավայրիս մէջ, ուր կայ և մի քարեայ խաչ, որի վերայ վառում են մոմեր: Դրան սեմի վերայ.

«Թվ. ՌՅ. յիշատակս յօրինեցաք Սայեամ կամ (և) Բաղդասար Յարութիւնեան Բաղբեանց»: Սրբավայրիս մօտ եղած հին հանգստարանում. «Այս է տապան Պակնայզարի որդի Աղաբէկ բոխային (գիւղապետին) ՌՃՀԲ.»:

ԽԱ. ՍՊԻՏԱԿ ՇԷՆ. Հիմնուած է Կիշի գիւղի հիւսիսային կողմում, մի հարաւ արևելահայեաց սարալանջի վերայ: Այն գեղեցիկ հովիտն, որ վտակաձորով [1]) ներս մտած է Մուղանից իբրև երկրալեզու, բաժանած է Սպիտակ գիւղի սարս Կիշու սարից: Բնակիչք գաղթած են Խոյից. հողն բէկական և արդիւնաւոր, տեսարանն հիանալի և նախանձելի, տեղական բերքերն նոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, երկարութիւնն է 15 մետր 33 սանթիմ, լայնու-

[1]) Վտակս առնում է իւր սկիզբը Նինկի, Կղարծի և Պառաւաթումբ գիւղերի և անդերի աղբիւրներից:

թիւնն 7 մետր. քահանայ մի։ Ծուխ 70. ար. 220. իգ. 180։

*Ամենափրկիչ (Զարկեա մարագ) ուխտատեղի.*

Սպիտակ շէն և Եմիշջան գիւղերի միջև մի բարձրավանդակի վերայ (3192 ոտք) խիստ հնուց շինուած է մի մատուռ, որ այժմ կիսաւեր է։ Բայց կանգուն մնում է տակաւին վէմ քարն և մի խաչարձան։

Ուխտատեղիս ծածկուած է մեծ մեծ ծառերի փառաւոր հովանու ներքև, իսկ իւր շրջապատն լի է հին և նոր խիտառխիտ ամփոփեալներովմ։ Կանխաւ ուխտատեղուս մօտ եղած է շարքով շինուած մարագներ, վասնորոյ կոչուած է և *Զարկեա մարագ:*

ԽԲ. ԵՄԻՇՋԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Ամենափրկչիս հիւսիսային ստորոտում մի սարահարթի վերայ, բնակիչք մեծ մասամբ տեղացի, իսկ փոքր մասամբ գաղթած Պարսկաստանից. Հողն կիսով չափ արքունի և կիսով չափ բէկական, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 62. ար. 222. իգ. 180։

ԽԳ. ԱՇԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է գրեթէ Եմիշջան գիւղի արևմտեան կողմում, մի ձորի հարաւահայեաց լանջի վերայ. բնակչաց կէս մասն բնիկ, իսկ մնացեալ մասն տեղափոխուած է Ջրաբերդից. Հողն մասամբ արքունի և մասամբ բէկական, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 95 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, շինուած հասարակութեան ծախքով երեք կամարների վերայ. երկարութիւնն 17 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 85 սանթիմ։ Աւազանի վերայ. «Յիշատակ Դաստանց Թա.»։ «Յիշատակ Սահակ Աբրահամեան»։ Քահանայ մի։ Ծուխ 104. ար. 415. իգ. 270։

*Կարմիր աւետարան*

Գիւղիս մէջ մի մատուռում, որ հիմնուած է ձորի ձախ կողմում, կայ մի ձեռագիր աւետարան մեծադիր, գրուած

Digitized by Google

թըղթի վերայ, պակասաւոր (թափուած են թերթերից) անյայտացած է և յիշատակարանն։

*Յիշատակարան*

Գիւղումս պ. Յակովբ Իշխանեանցի մօտ կայ մի հնատիպ ճաշոց, որի մէջ համբարձման պատկերի տակ գրուած է. «Ի հայրապետութիւն Աղուանից տէր Ներսէս Կաթուղիկոսն էր ամաց ՃԻ. էր փիթեալ (փթեալ, զառամեալ) իբրև ծերունի»․․․․ «Յիշատակ է ճաշոց գիրքս իշխանի որդի Բալու քոխին (գիւղապետին) և իւրեան թոռն իշխանին, իւր կողակից Մարեանին, և իւր մայր Խանփերին և իշխանին և իւր կողակից Գամիլին և որդի Սարգիսին և դուստր Աղիզգուլին, Բալուի որդի Ալթանդիլին, Գրիգորին, իւրեան դուստր Անային, իմ քոյր Խանումին, Ակուլին իւրոյ․․․ որ է ի գաւառէն Վարանդու ի գեղջէն Աշանու ի ձեռն գերընդիր․․․ Մարտիրոս վարդապետին․․․․ թուական մեր Հայոց ՌՃԴՂ. էր․․․ Մարաստ (Ամարասայ) առաջնորդն էր Գասպար վարթապետն, իշխանն էր Ալլահղուլի Սոլթանն, որ է Չարայպերթու, այսինքն ազգաւ հայ և քաջամարդ, հախթող ընդ թշնամին իւր, Աստուած ինքն երկար կենօք պահեսցէ ամենայն պատահարաց, ամէն»։

ԽԴ. ԴՋԴԱԼԱ ԳԻՒԴ. Հիմնուած է Աշանի արևելեան կողմում, սարերի մէջ մի գոգաւոր ձորի արևելահայեաց լանջին վերայ. բնակչաց ամենամեծ մասն բնիկ, մի քանիսն փոխադրուած Ջրաբերդի Եղակեր գիւղից, հողն բէկական, գինեւէտ և բարեբեր, տեղական բերքերն նոյն, (նշանաւոր է գինին, թութն, նուռն, դեղձն, թուզն և տոմբալանն), պատուական օդն, կլիման և ջուրն, գովելի տեսարանն, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կամարակապ. երկարութիւնն է 14 մետր 30 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 12 սանթիմ։

Եկեղեցուս դրան ներսում, արևելեան Բ. կամարի վերայ. «Ես Օհանէս շինեցի եկեղեցիս ի հալալ ինչից իմոց, հայրն իմ Թուման և մայրն իմ Իւսան, կողակիցն իմ Խանում,

Digitized by Google

հանգուցեալ որդին իմ Ա...»։ Միւնոյն կամարի հիւսիսային կողմի վերայ. «Ես Յովհաննէս եպիսկոպոս վերակացու շինեցի եկեղեցիս, հայրն իմ Տաղտան, մայրն իմ Խոնտի։ Եւ Եղիա քահանայն, տէր Պօղոս, տանուտէրն Վէլիճան, եկեղեցուս վարպետ Կէսբեր Յակոբ»։ Քահանայ մի։ Ծուխ 103. ար. 471. իգ. 337։

Եկեղեցումս կայ մի *փոքրադիր* ձեռագիր *աւետարան*, առանց պատկերի և միանգամայն պակասաւոր։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՌՀԲ. ձեռամբ մեղսամած և փծուն գրչի Աւետիքի ի քաղաքն Հալապ ի դուռն սուրբ Քառասնիցն ի դառն և ի նեղ ժամանակիս։ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ աւետարանիս Դիպխիսցի խոճա Մահտեսի Հովադեղն և զկողակիցն Խասխաթունն... Հովադեղն որ գնաց ի Երուսաղէմ և հանդիպեցաւ ի Հալապ, էառ զսուրբ աւետարանս յիշատակ ի դուռն Կաթուղիկէ Սուրբ Աստուածածնին»։

*Ձեռագիր մաշտոց*

Գիւղիս հոգևոր հովիւ բարեկրօն Թովմաս քահանայ Տէր-Գրիգորեանցի մօտ կայ մի ձեռագիր մաշտոց, որի յիշատակարանից կարողացանք քաղել միայն հետևեալը. «Գրեցաւ գիրքս, որ կոչի մաշտոց, ձեռամբ... Թուին Հայոց ՌԾԻ.»։

Մաշտոցիս առաջին թերթի առաջին երեսին. «Յիսուսի Քրիստոսի ծառայ Աստուծոյ տէր Գրիգորէս գրեցի. ես առէ (գնեցի) մաշտէց (մաշտոցս) ա. թուման Եղագրցի Մեծ տէր Սարգսի որդի Ապրհամի որդի տէր Գրիգորէս առ էս մաշտէս, որ Փաթալի խանն [1]) եկաւ Շուշի ղալին երայ (վերայ) կուի թւին ՌՄԺ.»։

*Փոքր նահատակ*

Կոչուում է այն նորաշէն և կիսատ մատուռն, որ կայ գիւղիս արևելեան հանդէպ մի բարձրագոյն բլրի գագաթին վերայ։ Նահատակն վաղուց ամփոփուած է. իսկ մատրանս շէնքն քանիցս նորոգուած է 'ի հիմանէ։

---

[1]) Ուրմեցի Փաթալի-Խանն։ Տես Գաղտնիք եր. 40։

*Ցիշատակարանից* «Զաւրութեամբն Աստուծոյ կատարեցի զսուրբ աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս Աղթամար., ի հայրապետութեան տեառն Զաքարիայի և ի թուաբերութեան Հայկազեանս տումարի ՉԻԶ. ի դառն և ի նեղ ժամանակիս։

Արդ ես Յովհաննէս ետու գծագրել զսուրբ աւետարանս..»։ Տատ յետոյ գրուած է. «Ի վերջին դառն և ի նեղ ժամանակ խուժադուժ ազգ նետողաց՝ տաճկաց ազգաց չարամահ եղեն. Համզաբէկ անուն պարոն և այլ անթիւ զաւրք հրամանաւ իւրնակալին՝ որ կոչի Շահ Իսմայիլ՝ գնացին ի վերայ աշխարհին Քուրդստանայ, աւերումն բազմապատիկ ածին ի վերայ Հայոց, զորն սպանելով և զոր գերելով, գիւղ և քաղաք, վանք և անապատ միահաղով (ոյն) յափշտակեցին զՀայք և բերին զսուրբ աւետարանս գերմամբ ի յերկիրն՝ որ կոչի Արցախ, և հանդիպեալ այսմ աստուածաշունչ բուրաստանիս քահանայ մի և տեսեալ զսա ... և գնեաց զանգին մարգարիտս ի հալալ ընչից իւրոց, ետ գին սորա ՉՌ. դահեկան և ետ յառաջնորդ Գանձասարու աթոռոյն և ծախեաց զսա ի Թաւրոս էրեց ....»։

*Մաթէ ուխտատեղի.*

Գիւղիս հիւսիսային հանդէպ մի տեսարանաւոր բլրի վերայ կայ մի հին մատուռ, որ շրջապատուած է ծերունի ծառերով։ Ասում են աւանդաբար. «Խաչարձանիս տակ ամփոփուած է Մաթէ անուն քահանան, որ նահատակուած է անհաւատ բռնաւորներից հին ժամանակներում»։

ԼԴ. ՄՉԿԱՊԱՏ [1]) գիւղ. Հիմնուած է այն բարձր լեռնաշղթայի վերայ, որ ճիւղաւորուած է Ս. լեռնագօտուց և հասած մինչև Ամարաս վանքի հիւսիսային կողմն. բնակիչք բնիկ. հողն արքունի և բէկական և արդիւնաւոր. տեղական բերքերն նոյն. օդն և կլիման գերազանց, ջուրն պատուական, երկար կեանք 100 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին [2]), քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 83. ար. 465. իգ. 362։

ԼԵ. ՔԱՐԱՀՈՒՆՋ (ունչ) ԳԻՒՂ. Հիմնուած նոյն լեռնաշղթայի հարաւային կողմում. բնակիչք բնիկ, հողն արքու-

[1]) Մէջքն (ետևի կողմն) պատուած, քանզի բերդն շատ հեռի չէ գիւղից։
[2]) Եկեղեցւս մօտ է Վարդան անուն նահատակի մատուռն։

նի, միջակ արդիւնաւոր, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ո՛չ այնքան լաւ. երկար կեանք 65—70. եկեղեցի չ՚կայ, քահանան գալիս է Քերթից, որ խիստ մօտ է։ Ծուխ 36, ար. 125. իգ. 95։

ԼԵ. ՔԵՐԹ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն սարի հարաւ արևելահայեաց ստորոտում, բնակիչք բնիկ, հողն արգաւնի, անջրդի և բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, ջուրն պատուական, օդն և կլիման փոքր ինչ բարեխառն, երկար կեանք 75—80. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, քահանայ մի։ Ծուխ 56. ար. 194. իգ. 150։

## ԱՄԱՐԱՍ ՎԱՆՔ (15)

Հիմնուած է այն երկրալեզուի վերայ, որ Մուղան դաշտից կամ գաւառից մտած է Խազազի և Լուսաւորչի սարերի մէջ և կազմած դուրալի հովիտ, որի միջից հոսում է Ամարաս վտակն [1]։ Վանքս ի հիմանէ նորոգ կառուցեալ է 1858-ին չորս հաստատուն սիւների վերայ ամբողջապէս սրբատաշ կաթնագոյն քարով։ Ունի մի աւագ և երկու փոքր խորաններ, տասն մեծ մեծ լուսամուտ, մի դուռն արևմտեան կողմից, երկու խորհրդարան, մի աւազան և մի փոքր կաթուղիկէ։ Աւագ խորանի տակ է շատ վաղուց շինուած հնութիւնն, որի մուտքն բացուած է դասի հարաւային կողմի բեմի մօտից. տասնևութ սանդուղներով իջնում է մինչև յատակի մատուռն։ Ստորերկրեայ շինութեանս երկարութիւնն (ներսից չափելով) 3 մետր 70 սանթիմ, լայնութիւնն 1 մետր 90 սանթիմ։ Փոքրիկ մատուռս, որ ամբողջապէս շինուած է Խազազի հանքի սրբատաշ քարով, բացի հարաւային մուտքից ունեցած է և միւս մուտք արևելեան կողմից, որ փակ է այժմ։

Հիւսիսային դասում առաջին լուսամտին պատկից շինուած է մի գեղեցիկ տապանաքար, որի տակ է ամփոփուած

---

[1]) Վտակս առնում է իւր սկիզբը Սօս, Քերթ, Քարահունջ, Հիրհեր, Խերխան գիւղերի աղբիւրներից և մօտերքից և ջրում Ամարասի արտերը, այգիները և պարտէզները։

Սուրբ Լուսաւորչի Թոռին-Աղուանից Ա. կաթուղիկոս Գրիգո-րիսի մարմինն։ Ահա այս է գլխաւոր ուխտատեղին։ Վանքիս երկարութիւնն է 23 մետր, լայնութիւնն 13 մետր 33 սանթիմ։

Տաճարումս է մասն սրբոյն Գրիգորիսի պետեղուած մի արծաթեայ, ոսկեզօծ, ականակուռ և մատանիներով զարդա-րուած աջի մէջ, որ կրում է.

«Աջ սրբոյն Գրիգորիսի Աղուանից հայրապետին. շինեցաւ յամին 1870 ի Շուշի քաղաքի անվարձ աշխատութեամբ շուշե-ցի ոսկերիչ Միրզաջանայ Խոջաքաղրեանց, Գրիգորի Բատամ-եանց և Առաքելի Յարութիւնեանց»։

Տաճարս ունի քարաշէն, ամրակազմ, քառակուսի և բարձրագոյն շրջապարիսպ, չորս անկիւններում չորս աշտա-րակներ և պատերի վերնամասից հրացան արձակելու ծակեր, որք շինուած են ռուսներից, երբ այստեղ էր մաքսատունն։ Պարսպիս երկարութիւնն արևելքից արևմուտք 94 մետր է, լայնութիւնն 56 մետր 40 սանթիմ։ Պարսպիս ներսում արևե-լեան կողմում կայ 5 մեծ սենեակ (այժմ գոմ), հարաւային

,, ,, 6 ,, արևմտեան

,, ,, 5 ,, (այժմ 4-ն անկարգ) հիւսիս.

,, ,, 8 ,, ( ,, 5-ն ,, )։

Հարաւային մասում միայն կայ վերնայարկ երկու աւերուած սենեակ։ Շինութեան մէջ ամենաշքեղ մասն եղած է միայն սենեակներս, որք շինուած են տաշուած կաթնագոյն քարով և ունին չորս կողմերից զոյգ զոյգ լուսամուտներ և մէն մի լուսամուտ ունի մի մի բաժանարար քարեայ սիւն [1])։ Ահա այս եղած է երբեմն կաթուղիկոսարան Աղուանից։ Ընդհան-րապէս անմաքուր, անկարգ և անխնամ է այս պատուական վանքն ամենայն մասամբ, որ այժմ ընկած է բարոյապէս և նիւթապէս։

*Վանուցս անշարժ կալուածներն են.*

Ա. Վարելահողեր,

Բ. Այգի և թթենեաց պարտէզ,

Գ. Մի ջրաղաց։ Վանահայրն է մի տիրացու.....։

---

[1]) Յաւելի է տեսնել որ քանդուած է այս հնադարեան պատուական հնութիւնն։ Ասում են թէ «Մի տիրացու քանդած է առանց հրամանի......»։

Digitized by Google

*Ամարաս աւերակ գիւղաքաղաք.*

Վանքիս հարաւային կողմում, ջրի աջ կողմի բարձր լանջի վերայ կայ ընդարձակ աւերակ։ Տնաքակերից երեւում է, որ տներից ամենամեծ մասն շինուած է եղել Արցախի յատուկ եւ հին ձեւով—գետնափոր։—Ոչինչ պակաս ընդարձակ է եւ գիւղաքաղաքիս հանգստարանն, որ մօտ է աւերակիս։

ԼԶ. ՍՈՍ ԳԻՒՂ. Հիմնուած է Լուսաւորչի սարի արեւմըտահայեաց ստորոտին մօտ լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն կիսով չափ արքունի եւ կիսով չափ բէկական, անջրդի, բայց բարեբեր եւ հացաւէտ. տեղական բերքերն նոյն, օդն եւ կլիման սննդարար, ջուրն գովելի, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, առանց կամարի եւ սեան. երկարութիւնն է 12 մետր 60 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 90 սանթիմ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Զայս պատուիրեմ, զի սիրեսջիք զմիմեանս»։ Քահանայ երկու։ Ծուխ 107. ար. 385. իգ. 302։

*Լուսաւորչի սար.* Բարձրացած է գիւղիս գլխին վերեւ արեւելեան հանդէպ։ Սարիս կատարին վերայ կան շատ թափուած քարեր, տնաքակեր եւ եկեղեցու աւերակ։

*Աւանդութիւն.* Աւանդաբար պատմում են. «Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ կողմերումս քարոզելու և եկեղեցիներ հիմնարկելու ժամանակ գիշերն բարձրացած է սարիս գլուխն և աղօթքով լուսացրած գիշերները։ Սուրբ Գրիգորիս Աղուանից կաթուղիկոսի մարմինը երբ փախցրած բերում են նորա աշակերտներն Դարբանդից այստեղ, նահատակել տուող թագաւորի զօրականներն, փախցնողների ետևից ընկած, գալիս են մինչև այստեղ։ Սակայն աշակերտներն ապաւինելով յԱստուած և դիմելով Սուրբ Լուսաւորչի աղօթած տեղն, ազատ են մնում հալածողներից և ապա նահատակուած Սուրբ Գրիգորիսի մարմինը տանում թաղում Ամարասի վանքում և իրանք փախչում դէպի Հայաստան»։

## ԵՂԻՇԱՅ ԿՈՒՍԻ ԱՆԱՊԱՏ.

Հիմնարկուած է այն բարձրագոյն գագաթի վերայ, որ

Digitized by Google

արձանացած է Սօսի, Լուսաւորչի սարի, Քերթի և Ղուզի-ծարտարի մէջ։ Հանգստարան է անապատիս շուրջն. գագաթս զարդարուած է թեղի և տխկի ծառերով և հին ու նոր տապանաքարերով։ Մենաստանս շինուած է անտաշ որձաքարով, իսկ կամարներն և բոլոր անկիւնաքարերն սրբատաշ քարով։ Մենաստանս, որ կանգնած է երկու սիւների վերայ, ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, աւազան, վեց լուսամուտ, քարեայ խաչկալ, մի դուռն արևմտեան կողմից, մի փոքր կաթուղիկէ իբրև զանգատուն և մի փոքրիկ խորանաձև գերեզման՝ աւագ խորանի բեմի տակ, որի դուռն բաց է դէպի դասի մէջ տեղն։ Ահա այս է Եղիշա Կուսի գերեզմանն, որ մեծ ուխտատեղի է։ Անապատիս երկարութիւնն է 15 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 70 սանթիմ։ Քարեայ խաչկալի հարաւային դրան հիւսիսային սեմի վերայ. «Յիշատակ է Համասուտանց Միրզախանի որդի Մանուէլ վարդապետիս այս խաչկալս. եղբարքն իմ Պապան և Վանլալան, քորար (քորք) իմ Գուլասմար, Ինթաղին, ծնողքն իմ Մումխանում, կողակից իմ Նազլու, որդի իմ Հախնազար, Տահպատ, Սիրուն, Վռամին, Մազրվանին և դստերն իմ Բաջուն, Դօսդաշին թվ. ՌԾԴ.»։

*Խաչկալի հիւսիսային կողմում մի խաչքարի վերայ.*

«Ղազար, կողակից ուր (իւր) Նազլու թվ. ՌԾԴ.»։

*Հիւսիսային խորանի ճակատակալ քարի վերայ.*

«Ես Աղէս կանգնեցի զխաչս փրկութիւն ինձ և կենակցին իմոյ, որդւոյ և դստերաց իմոց ՋՀ.»։ Կարծում ենք որ խաչքարս գերեզմանից վեր առած և դրուած է այստեղ։

*Դրան ճակատակալ քարի վերայ* [1])

«Կարողութեամբ ամենազօրին Աստուծոյ ես նուաստ տէր Յոհան անձամբ տկար աբեղայս և որդէգիր Փոքր տէր Յոհանս շինեցաք սոյն զեկեղեցիս ըստ անուան Սրբուհւոյ Կուսին Եղիշէի ի կաթուղիկոսութեան տեառն Երեմիայի և տանս Աղուա-

[1]) Դրանս հիւսիսային սեմի վերայ, «Տէր Եղիազարս որ ձեռնադրեցաւ յաբեղայ ՌՃՀԳ.»։

Digitized by Google

նից որ 'ի մայր աթոռոյն Գանձասարայ վանորոյ յիշել աղաչեմք հանդերձ ծնողովք մերովք ՌՃԻԴ.»։ Անապատիս որմին արևմտեան արտաքին երեսն խաչազարդուած է խաչքարերով։

*Սոյն երեսի լուսամտի գլխին.*

«Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ես անարժան ուստայ Գաբրիելս շինեցի այս եկեղեցիս ի ձեռամբ իմով, ով կարդա, մէկ բերան ողորմի ասէ. խաչս յիշատակ է Գաբրիելիս և ծնողաց իմոց և դստերաց և որդոց իմոց»։

ԼԷ. ՂՈՒԶԻ-ԺԱՐՏԱՐ (Հիւսիսահայեաց ժարտար). Շինուած է նոյն սարի հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, առատաբեր, տեղական բերքերն նոյն, նշանաւոր է ցորենն և գարին, գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 110 տարի, եկեղեցին Սուրբ Գէորգ, կառուցեալ մի կամարի վերայ, երկարութիւնն 15 մետր 50 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 60 սանթիմ, քահանայ երկու։ Ծուխ 145. ար. 580. իգ. 465։

Եկեղեցումս կայ մի փոքրադիր, թղթեայ ձեռագիր աւետարան, պատկերազարդ, անյայտ է գրողի անունն, միայն յայտնի է, որ ստացած է Յովհաննէս անուն ոմն։

Մասունք *Երից մանկանց* մի արծաթեայ փոքր խաչի մէջ։

ԼԸ. ԿԻՒՆԻ-ԺԱՐՏԱՐ (Արեգդէմ ժարտար) Հիմնուած է բերդասարի հարաւային կողմում. դիրքն հարաւ-արևելահայեաց, միայն մի ձորակով բաժանուած Ղուզի-ժարտարից. բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի, սակայն բազմարդիւն, տեղական բերքերն նոյն (այգի, թթենի գովելի, հռչակուած է գիւղիս ցորենն), գերազանց օդն, կլիման, ջուրն և տեսարանն. երկար կեանք 111 տարի, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, կառուցեալ մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան. երկարութիւնն է 11 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 7 մետր 55 սանթիմ։ Դրան ճակատակալ քարին վերայ. «ՌՄԼԶ. թվին. այս է Ամենափրկչին սուրբ եկեղեցիս, սա եղէւ ոքևոր յիշատակ տէր.... Իյ. Խանումն»։ Իսկ վերև.



Digitized by Google

«Ուստայ Թինի» (Յարութիւն շինող վարպետի անունն է)։ Քահանայ մի։ Ծուխ 260. ար. 1095. իգ. 855։

Գիւղումս կայ Ս. Գրիգորեան միդասեան ուսումնարան տղայոց, աշակերտք մօտ 50, Թոշակաւոր 38, ձրիավարժ 10. միամեայ ռոճիկ վարժապետին 220 ր.

## ԿՈՀԱԿ ՈՒԽՏԱՏԵՂԻ

Մի աւերակ մատուռ է Կոհակ անուամբ, որ հիմնուած է գիւղիս անդում մի խուլթի վերայ։ Աւերակս ծածկուած է ճապկի ծառերով։ Խուլթիս գագաթն ունի մօտ երկու կալաչափ մեծութիւն։ Ուխտի օրն է ամեն Համբարձման տօնն։

*Դավէ-չիշէք*

Այս անունը կրող աղբիւրն բղխում է գիւղիս արևմտեան հանդէպ եղած քերծիցն և թափուում իւր տակի փոսին մէջ։ Կարմրուկ (տեղական բարբառով խաւարթնը) ախտով հիւանդացեալները բերում և լողացնում են փոսի միջի ջրովն, որով բժշկուում է հիւանդն։

*Բերդի Նահատակ*

Աղբիւրիցս վերև մի բարձր ապառաժի վերայ կայ մի կիսաւեր մատուռ, որ իւր մէջ կրում է իւր արեամբ ներկուած մի նահատակի մարմինը, որի անունն անյայտ է։ Միայն յայտնի է որ ուխտատեղի է խիստ հին դարերից աւանդաբար մնացեալ։

ԼԹ. ԽՈՒՆՇԻՆԱԿ (Խուն-շինակ). Հիմնուած է բերդասարի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի բայց բազմարդիւն, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման փոքր ինչ ծանր ամրան, տեսարանն պատուական, ջուրն սննդարար, երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, կամարակապ, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 45 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 80 սանթիմ, քահանայ երկու։

Արձանագրութիւն դրան ճակատակալ քարի վերայ.

«Ի ՌՅԹ. (1860) Կամաւն Աստուծոյ կառուցաւ եկեղեցիս

Խնչինակ գեղջ անուն սուրբ Աստուածածնի սեպհական արդեամբք և ծախիւք Տուշի քաղքցի բարեպաշտօն, ազնուազգի աղա Հայրապետ բէկի Գօլուխանեանց ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ազնուհւոյ ամուսնոյն իւրոյ Բակումայ Մէլիք Բէկլարեանց և ծնողաց իւրոց հօրն Բաղդասար բէկի, մօրն Նազլու Խանին»։

Ձեռագիր աւետարան փոքր գիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ (ընկած է Ղուկաս աւետարանչի պատկերն)։ Գեղեցիկ և ճարտարարուեստ են պատկերներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն, ընտիր ոսկեզօծն և ներկերն։

*Յիշատակարանից.* «Որ (Ամեն. Երրորդութիւն) ետ կարողութիւն տկար և մեղապարտ, անարժան Գրիգոր երիցու, որ ծաղկեցի զիս (զայս) և հասայ 'ի յաւարտ սուրբ աւետարանիս. ծրագրեաց սա 'ի յանդանց [1]) ձեռամբ Վարդան երիցու.... Մահտեսի Թաղիաշի խոջա Գազպարն և որդի նորա խոջա Յակովբջանն յայսմ տարւոջ եկին ի Վան, որ էր թուականիս Հայոց Ռծ և ԻԱ. և ստացան զսա ի հալալ վաստակոց իւրեանց ի յիշատակ իւրեանց և իւրեանց ծնողացն»։

Չգիտենք ինչ պատճառաւ յետոյ աւետարանս ընկած է Աւետարանոց աւանն. «Գրեցաւ ի 1845 ամի փետ. 18-ին. այս յիշատակ հայերէն աւետարանս տուեալ եղև ի գիւղն Խունիկշինակ Սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն որ է ընծայողն Չանաղչու (Աւետարանոց) գիւղին բնակիչ Մէլիք Չահանբաղշի որդի դուստր Նանակուլ Մէլիք Շահնազարեանց և այլ մին սուրջառ (շուրջառ) իւր արծաթի չափուաստովն...»։

*Գրչագիր մաշտոց.* գրուած է թղթի վերայ, «Արդ աղաչեմ զՁեզ... յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զԱստուածատուրն և զեղբայրն իւր զՄարգարէն և զծնողսն նորա և զՅակովբ քահանայ և զՍիմէոն քահանայ, որ աշխատեցաւ ի գրելն . . .»։ Մաշտոցս եկեղեցւոյս նուիրած է շուշեցի տիրացու Անաստաս Տէր-Մկրտչեանց 1855-ին դեկ. 1-ին։ Տուփ 96. ար. 485. իգ. 325։

---

[1]) Թերևս գծագրեցաւ այս ընտիր աւրինակաց։

Խ. ԿԻՇԻ ԳԻՒՂ. Հիմնուած է բերդասարին հիւսիսային կողմում մի հարաւահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական, ամենամեծ մասամբ անջրդի, բայց արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն (բոժոժ, թութ, խաղող առատ են), օդն, կլիման և ջուրն պատուական, տեսարանն զմայլելի, երկար կեանք 60. եկեղեցի Սուրբ Մինաս, թաղակապ, երկարութիւնն 16 միտր 65 սանթիմ, լայնութիւնն 7 միտր 85 սանթիմ. քահանայ մի։ Գիւղումս կայ եօթանասուն այրի կին։ Պատճառն այն է, որ մարդիկ ամրան ջերմ ամիսներում աշխատում են Մուղանի դաշտաբերանում և վախճանուում անժամանակ։ Ծուխ 127. ար. 584. իգ. 481։

## ՈՍԿԵԱՆՑ ԽԱՉ

Այս անուամբ կոչուում է այն վաղեմի սրբավայրն, որ կայ գիւղիս աղբիւրի մօտ, ջրաձորի աջ ափում և որ ունի այժմ քառակուսի ձև, քարուկիր շինուած։ Այժմ բաց է շինութեանս գլուխն և մի ծերունի թթենի ծառ բուսած է սրբավայրիս մէջ, ուր կայ և մի քարեայ խաչ, որի վերայ վառում են մոմեր։ Դրան սեմի վերայ.

«Թվ. ՌՅ. յիշատակս յօրինեցաք Սայեամ կամ (և) Բազդասար Յարութիւնեան Բաղրեանց»։ Սրբավայրիս մօտ եղած հին հանգստարանում. «Այս է տապան Պակնայզարի որդի Աղաբէկ բոխային (գիւղապետին) ՌՃՀԲ.»։

ԽԱ. ՍՊԻՏԱԿ ՇԷՆ. Հիմնուած է Կիշի գիւղի հիւսիսային կողմում, մի հարաւ արևելահայեաց սարալանջի վերայ։ Այն գեղեցիկ հովիտն, որ վտակաձորով[1]) ներս մտած է Մուղանից իբրև երկրալեզու, բաժանած է Սպիտակ գիւղի սարս Կիշու սարից։ Բնակիչք գաղթած են Խոյից. հողն բէկական և արդիւնաւոր, տեսարանն հիանալի և նախանձելի, տեղական բերքերն նոյն, գերազանց օդն, կլիման՝ և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, երկարութիւնն է 15 մետր 33 սանթիմ, լայնու-

[1]) Վտակս առնում է իւր սկիզբը Նինկի, Կղարծի և Պառաւաթումբ գիւղերի և անդերի աղբիւրներից։

թիւնն 7 մետր. քահանայ մի։ Ծուխ 70. ար. 220. իգ. 180։

*ԱՄԵՆԱՓՐԿԻՉ (Ձարկեա մարագ) ուխտատեղի.*

Սպիտակ չէն և Եմիշջան գիւղերի միջև մի բարձրավանդակի վերայ (3192 ոտք) խիստ հնուց շինուած է մի մատուռ, որ այժմ կիսաւեր է։ Բայց կանգուն մնում է տակաւին վէմ քարն և մի խաչարձան։

Ուխտատեղիս ծածկուած է մեծ մեծ ծառերի փառաւոր հովանու ներքև, իսկ իւր շրջապատն լի է հին և նոր խիտառխիտ ամփոփեալներով։ Կանխաւ ուխտատեղուս մօտ եղած է շարքով շինուած մարագներ, վասնորոյ կոչուած է և Ձարկեա մարագ։

ԽԲ. ԵՄԻՇՋԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Ամենափրկչիս հիւսիսային ստորոտում մի սարահարթի վերայ, բնակիչք մեծ մասամբ տեղացի, իսկ փոքր մասամբ գաղթած Պարսկաստանից. հողն կիսով չափ արքունի և կիսով չափ բէկական, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 62. ար. 222. իգ. 180։

ԽԳ. ԱՇԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է գրեթէ Եմիշջան գիւղի արևմտեան կողմում, մի ձորի հարաւահայեաց լանջի վերայ. բնակչաց կէս մասն բնիկ, իսկ մնացեալ մասն տեղափոխուած է Ջրաբերդից. հողն մասամբ արքունի և մասամբ բէկական, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 95 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, շինուած հասարակութեան ծախքով երեք կամարների վերայ. երկարութիւնն 17 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 85 սանթիմ։ Աւազանի վերայ. «Յիշատակ Դաստանց Թա.»։ «Յիշատակ Սահակ Աբրահամեան»։ Քահանայ մի։ Ծուխ 104. ար. 415. իգ. 270։

*Կարմիր աւետարան*

Գիւղիս մէջ մի մատուռում, որ հիմնուած է ձորի ձախ կողմում, կայ մի ձեռագիր աւետարան մեծադիր, գրուած

Digitized by Google

թմբթի վերայ, պակասաւոր (թափուած են թերթերից) անյայտացած է և յիշատակարանն։

*Յիշատակարան*

Գիւղումս պ. Յակովբ Իշխանեանցի մօտ կայ մի հնատիպ ճաշոց, որի մէջ համբարձման պատկերի ետև գրուած է. «Ի հայրապետութիւն Աղուանից տէր Ներսէս Կաթուղիկոսն էր ամաց ՃԻ. էր փիթեալ (փթեալ, զառամեալ) իբրև ծերունի».... «Յիշատակ է ճաշոց գիրքս իշխանի որդի Բալու քուխին (գիւղապետին) և իւրեան թոռն իշխանին, իւր կողակից Մարեանին, և իւր մայր Խանփերին և իշխանին և իւր կողակից Քամիլին և որդի Սարգիսին և դուստր Ազիզգուլին, Բալուի որդի Սւլթանդիլին, Գրիգորին, իւրեան դուստր Անային, իմ քոյր Խանումին, Ակուլին իւրոյ... որ է ի գաւառէն Վարանդու ի գեղջէն Աշանու ի ձեռն գերընդիր... Մարտիրոս վարդապետին.... թուական մեր Հայոց ՌՃԴԸ. էր... Մարասու (Ամարասայ) առաջնորդն էր Գասպար վարթապետն, իշխանն էր Ալլահղուլի Սոլթանն, որ է Ջարայպերթու, այսինքն ազգաւ հայ և քաջամարդ, հախթող ընդ թշնամին իւր, Աստուած ինքն երկար կենօք պահեսցէ ամենայն պատահարաց, ամէն»։

ԽԴ. ԴԶԴԱԼԱ ԳԻՒՂ. Հիմնուած է Աշանի արևելեան կողմում, սարերի մէջ մի գոգաւոր ձորի արևելահայեաց լանջին վերայ. բնակչաց ամենամեծ մասն բնիկ, մի քանիսն փոխադրուած Ջրաբերդի Եղակեր գիւղից, հողն բէկական, գինեւէտ և բարեբեր, տեղական բերքերն նոյն, (նշանաւոր է գինին, թութն, նուռն, դեղձն, թուզն և տոմբալանն), պատուական օդն, կլիման և ջուրն, գովելի տեսարանն, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կամարակապ. երկարութիւնն է 14 մետր 30 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 12 սանթիմ։

Եկեղեցուս դրան ներսում, արևելեան Բ. կամարի վերայ. «Ես Ոհանէս շինեցի եկեղեցիս ի հալալ ինչից իմոց, հայրն իմ Թուման և մայրն իմ Իւսսան, կողակիցն իմ Խանում,

Digitized by Google

հանգուցեալ որդին իմ Ա...»։ Միւնոյն կամարի հիւսիսային կողմի վերայ. «Ես Յովհաննէս եպիսկոպոս վերակացու շինեցի եկեղեցիս, հայրն իմ Տաղտան, մայրն իմ Խոնտի։ Եւ Եղիա քահանայն, տէր Պօղոս, տանուտէրն Վէլիճան, եկեղեցուս վարպետ Կէսբեր Յակոբ»։ Քահանայ մի։ Ծուխ 103. ար. 471. իգ. 337։

Եկեղեցումս կայ մի *փոքրադիր* ձեռագիր աւետարան, առանց պատկերի և միանգամայն պակասաւոր։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՌՀԲ. ձեռամբ մեղսամած և փծուն գրչի Աւետիքի ի քաղաքն Հալապ ի դուռն սուրբ Քառասնիցն ի դառն և ի նեղ ժամանակիս։ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ աւետարանիս Դիպլխիցի խոճա Մահտեսի Հովադեղն և զկողակիցն Խասխաթունն... Հովադեղն որ գնաց ի Երուսաղէմ և հանդիպեցաւ ի Հալապ, էառ զսուրբ աւետարանս յիշատակ 'ի դուռն Կաթուղիկէ Սուրբ Աստուածածնին»։

*Ձեռագիր մաշտոց*

Գիւղիս հոգևոր հովիւ բարեկրօն Թովմաս քահանայ Տէր-Գրիգորեանցի մօտ կայ մի ձեռագիր մաշտոց, որի յիշատակարանից կարողացանք քաղել միայն հետևեալը. «Գրեցաւ գիրքս, որ կոչի մաշտոց, ձեռամբ... Թուին Հայոց ՌԾԻ.»։

Մաշտոցիս առաջին թերթի առաջին երեսին. «Յիսուսի Քրիստոսի ծառայ Աստուծոյ տէր Գրիգորէս գրեցի. ես առէ (գնեցի) մաշտէց (մաշտոցս) ա. Թուման Եղագրցի Մեծ տէր Սարգսի որդի Ապրհամի որդի տէր Գրիգորէս առ էս մաշտէս, որ Փաթալի խանն [1]) եկաւ Շուշի ղալին երայ (վերայ) կուի Թւին ՌՄԺ.»։

*Փոքր նահատակ*

Կոչւում է այն նորաշէն և կիսատ մատուռն, որ կայ գիւղիս արևելեան հանդէպ մի բարձրագոյն բլրի գագաթին վերայ։ Նահատակն վաղուց ամփոփուած է. իսկ մատրանս շէնքն քանիցս նորոգուած է 'ի հիմանէ։

---

[1]) Ուրմեցի Փաթալի-Խանն։ Տես Գաղտնիք եր. 40։

*Մեծ նահատակ*

Մի քարուկիր մատուռ է, շինուած այն բարձր սարի գագաթին վերայ (2492 ոտք), որ սահման է Աշան, Նոր-շէն և Ղզղալա գիւղերի և որ առանձնացած նայում է Աղուէ-քաւառի դաշտի վերայ։ Նահատակի գերեզմանն գտնուում է մատրանս մէջ, որի շրջապատում կան խուցեր։ Երևի թէ փոքր միաբանութիւն եղած է այս տեղ. մինչև ց՚այսօր *վար-դապետի տափ* (գետին) են անուանում արտավարը, որ կայ մատրանս ստորոտում փոքր ներքև սարալանջին վերայ, որի մէջ կայ մի շուքարան ծառ։ Մատրանս մօտ ևս կայ հան-գըստարան։

ԽԵ. ՆՈՐ-ՇԷՆ. Հիմնուած է Հացի գիւղի արևելեան կողմում, մի բարձր սարի ստորոտի մօտ. դիրքն արևելահայ-եաց. բնակիչք գաղթած Ղարադաղից, Կիւլստանից, Կուսա-պատից, Բանանց գիւղից և Ծամ-ձորից. հողն բէկական, խիստ սակաւ, անջրդի, բայց այգեւէտ, բարեխառն օդն և կլիման, սննդարար ջուրն, երկար կեանք 95—105. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, խիստ վտանգուած, քահանայ մի։ Ծուխ 70. ար. 272. իգ. 205։

ԽԶ. ՀԱՑԻ ԳԻՒՂ. Հիմնուած է Կզարծի գիւղի հիւսի-սային և Նոր-շէնի արևմտեան կողմում մի խոր ձորի հարաւ-արևելահայեաց լանջի վերայ (լանջիս եաևն—արևմտեան կողմն քարեայ բարձր սար է [1]) բնակիչք բնիկ, հողն ար-քունի, բարեբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման և գովելի ջուրն, բայց խեղդուած տեսարանն լեռ-ներով, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կամարակապ, շինուած հասարակութեան ծախքով, քահանայ երկու՝ հայր և որդի։ Ծուխ 143. ար. 545. իգ. 450։

## ԲՈՒԻ ԵՂՑԷ (*եկեղեցի*)

Այսպէս է անուանում ժողովուրդն այն ընդարձակ և հին հանգստարանը և եկեղեցիները, որք կան գիւղիցս ներ-

[1]) Որ ունի 3829 ոտք, կոչուում է Գոտկեաբերք Վարանդի։

քև ջրաձորի ձախ ափի ճանապարհի գլխին։ Հանգստարանիս մէջ կայ երկու մատուռ, երեք բեմ և երկու եկեղեցի։ Մատուռների և եկեղեցեաց մէջ նստած են յատկապէս վանահայրեր։ Կարծում ենք որ Աղուանից թագաւորազների և իշխանազների մարմինները ամփոփուած լինին այս առանձնապէս պատրաստուած շինութեանց մէջ և ազօթաւոր վարդապետներ կարգուած պաշտօնապէս։ Այսպէս էին Խոթայ, Խաթրոց, Գանձասարայ, Եղիշառաքելի, Հոռեկայ և այլն վանքերն ևս։

Ա. մատուռն փոքր է և լանջի ստորոտում։ Խաչազարդ է մատրանս արևմտեան արտաքին ճակատն և խոնարհուած ամբողջ գլխի ծածքն, որի դրան հիւսիսային սեմին վերայ.

«Զ. Ծահէն վարդապետ եկեղեցոյս յիշեցէք ի Տէր»։ Արտաքուստ դռնից վերև. «.... քահանայ և եղբայր իմ Վարհամ և Վարհայք... ունափա շինեցաք զեկեղեցիս բազում աշխատանաւք յեպիսկոպոսութեան տէր Յովհաննիսին և տէր Ներսիսի յիշատակ հոգոց ազգաց և ծնողաց մերոց, որք կարդայք, յաղաւթս յիշեցէք աշխատողք եկեղեցոյս»։

Բ. մատուռն, որ ողջամբ կանգուն է, ունի 6 մետր 50 սանթիմ երկարութիւն, 4 մետր 12 սանթիմ լայնութիւն և սիրամարգի պատկերներ և սոյն արձանագրութիւնը. «ԶԽաչենիկ վարդապետ սուրբ եկեղեցոյս յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս»։

Ա. բեմն շինուած է Ա. մատուռից փոքր ինչ վերև։ Բեմիս բարձրութիւնն 3 մետր 58 սանթիմ է, լայնութիւնն՝ 3 մետր 22 սանթիմ, հաստութիւնն 1 մետր 85 սանթիմ, որի արևմտեան ճակատում զետեղուած են չորս գեղեցկաքանդակ խաչարձաններ։ Հազար ափսոս, որ ժամանակի մշտազօրծ մուրճն հարուածելով եղծած և թափած է խաչարձանիս ընդարձակ արձանագրութիւնը, այսու ամենայնիւ արտագրում եմ պակասները լցուցանելով կէտադրութեամբ։

«ՆԱ. թիւս..... տէր Վարթ..... ի տարին Ի. ժամ.....
աղտատե........ անէաքս..... մեր սու......... աղաչեմ»։

Digitized by Google

Հիւսիսային կողմի վերայ.

«Ես Խաչենե.. կանգնեցի վարդապետ սուրբ Նշանաւս որդի Վարհամա, որք կարդէք (կարդայք) յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս»։

Բ. բեմն շինուած է առաջնոյն հարաւային կողմին մօտ, որ ամեն ինչով նման է Ա-ին.

«............... իւրս մա....... Մխիթարս ձվ այ-րեցայ..... բենա... ասվաքչին գիսն պատյի.. տէր.... Ննպա-տա ոչ յիսա զդերլեյոց..... ի Թաքա է մին պետ.... ի մինսն պատ...... սուրբ աղաւթս ձեր....»։

Գ. Բեմն, որ փոքր ինչ հեռի է Բ-ից, յար և նման է միւսերին. Թափուած են իւր միջի երկու խաչերի նախշերն և տեղ տեղ արձանագրութեան բառերից գրեր.

«Թվ. ՉԺ. Թ... ի կաթուղիկոսութեան տէր ըստեփաննո-սի և յեպիսկոպոսութեան հայր տէր Ներսէսի Աստուծով մեր եղբարցս... ուց այդ եղայ Վարդս.. այար կաթ.... բամիկս.. յորդեացս..... և ծնողաց մերոց... ազգականաց... բար....»։

Ա. Եկեղեցին հիմնուած է հանգստարանիս հիւսիսային կողմում, բարձր հարթակի վերայ շինուած սպիտակ անտաշ քարով։ Ունի և գաւիթ իւր արևմտեան կողմին կից, եր-կուսն միասին չափելով երկարութիւնն 14 մետր 75 սան-թիմ, լայնութիւնն 8 մետր 20։ Ունի և սոյն արձանագրու-թիւնը.

«Թվ. ՉԺԹ... ի տէրութեան.... տր Ստեփաննոսի յե.... սիսի (յեպիսկոպոսութեան Ներսիսի) Ես մխիթար որդի... կանգնեցի զխաչս»։

Բ. Եկեղեցին, առաջնոյն արևմտեան կողմում մի քանի քայլ միայն հեռի. փոքր է ևամբողջէն։ Շատ կարելի է որ պատուաւոր ամփոփեալներ լինին եկեղեցեացս և մատուռնե-րիս մէջ և մանաւանդ գաւթումս, բայց ծածկուած լինին թափուածքների ներքև, քանզի խիստ անմաքուր են յատակ-ներն։ Արձանագրութեանց մեծ մասն եղծուած են թէ տա-պանաքարերի և թէ խաչարձանների վերայից։ Թողում ասել

ջարդած, կոտրած և փշրած շիրմաքարերը, որոց թիւն խիստ մեծ է և որոց վերայ կան արձանագրութիւններ, բայց անվերծանելի, զի անյայտացած են կոտորներն։ Վերջին եկեղեցուս մօտերքում մի ջարդուած քարի վերայ.

«Այս է տապան խմիչի որդուն Սարքիսին. էն ժամանակն որ Պապա Ուշաղին թվ. ՌՃՀԴ. որ եկն, ես թապուղի առաջք տուսդ իլի (դուրս ելայ). այանին ճդօվն (պարանոց) սպանեցէն, Տերքերանցս Աթային, Հերփքիս [1])»։

ԽԷ. ԱՎՏՈՒՌ ԳԻՒՂ. Հիմնուած է Հացի գիւղի արևմտեան կողմում մի ձորի երկու լանջերի վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական, անջրդի, բազմարդիւն և պտղաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90. եկեղեցին սուրբ Աստուածածին, կամարակապ, որը իւրեանց ծախքով շինել տուած են մեծ. Սարգիս-բէկ և Յարութիւն-բէկ Ղազեանց, քահանայ մի։ Ծուխ 125. ար. 477. իգ. 370։

ԽԸ. ՄԻՒՐԻՇԷՆ. Հիմնուած է Ավտուռի արևմտեան կողմում. դիրքն արևելահայեաց լանջ, բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն, նմանապէս օդն, կլիման և ջուրն և երկար կեանքն, եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր, թաղակապ, քահանան գալիս է Ավտուռից։ Ծուխ 31. ար. 150. իգ. 130։

ԽԹ. ՄԻՐԻՇԱԼԼՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Աղուէ գաւառի դաշտաբերանում, բնակիչք տեղափոխուած Բէլուկան քաղաքից շատ վաղուց, հողն բէկական, բեղմնաւոր, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ծանր ամրան, երկար կեանք 65—70, եկեղեցին սուրբ Գէորգ, խախտեալ, քահանան գալիս է Դահրազից։ Ծուխ 55. ար. 194. իգ. 175։

Ծ. ՎԱՐԱԶԱԲՈՒՆ [2]) ԳԻՒՂ. (Արանզամի) Հիմնուած է

[1]) Հարկ է բացատրել արձանագրութիւնս մթութիւնը, որ է այսպէս ըստ մեր կարծեաց. 1725-ին Սարգսի վախճանուած ժամանակ Արցախիս վերայ զօրքով եկաւ Պապա-Ուշաղին, ես դիմաւորեցի, բայց սպանեցին մայրս, հօրաքոյրերս—Աթայ և Հերիք։

[2]) Ոմանք կարծում են թէ այս եղած է Առանի ամարանոցն, նոյնպէս և Վարազ—Տրդատ և Վարազ—Գրիգոր իշխաններին, վասն որոյ կոչուած է Վարազաբուն—բուն Վարազ—Տրդատ իշխանի բնակութեան տեղին։

Ա. լեռնագօտու Աղուէ գաւառի գաշտաբերանի վերայ կախուած՝ արեւելահայեաց վերջին լանջի վերայ. բնակիչք գաղթած Պարսկաստանի Ղարադաղ նահանգից. հողն բէկական, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրըն, երկար կեանք, 85—90. եկեղեցին սուրբ Աստուածածին, քահանան նոր վախճանեալ։ Ծուխ 155. ար. 540. իգ. 415.

Տղայոց միգասեան ս. Գրիգորեան ուսումնարան. աշակերտ 40, Թոշակաւոր 38, տարեկան ռոճիկ վարժապետին 360 րբլի.։

ԾԱ. ՓԻՐ—ՃԱՄԱԼ [1]) ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն սարի արեւելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, ոմանք տեղափոխուած Ջրաբերդից, սակաւք Հին—Քեաթուկից և Բէյլուկանից, հողն բէկական, անջրդի, այգեւէտ, բայց հացաւոր, օդն, կլիման և ջուրն նշանաւոր. երկար կեանք 100, եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր, որը կառուցանել տուած են իւրեանց ծախքով Շուշեցի բարեպաշտ Մահտեսի Տահկեալդին և Փիր-ճամալեցի հանգուցեալ Բաղդասար Տամխալեանն.քահանայ մի։ Ծուխ 146. ար. 475. իգ. 357։

*Ղոքա ուխտատեղի*

Գիւղիս անդումն է այս անուն ուխտատեղին, այս է երկու փոքրիկ մատուռներ, որոց մէջ, ասում են աւանդաբար, թէ ամփոփուած են նահատակուած *Փիրու և Ճամալի* մարմիններն, վասն որոյ ուխտատեղի է յարգուած ոչ միայն հայերից, այլ և մահմետականներից։

ԾԲ. ՆԱԽԻՋԵՒԱՆԻԿ ԳԻՒՂ. Հիմնուած նոյն սարի արեւելահայեաց լանջի վերայ, բնակիչք գաղթած են Հին-Նախիջեւանի կողմից, հողն բէկական, կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն միեւնոյն, բարեխառն օդն և կլիման և սննդաբար ջուրն, երկար կեանք 80 տարի, եկեղեցին Սուրբ Աս-

[1]) Աւանդութիւն. Ասում են. «Հարազատ եղբարք էն Փիր և Ճամալ. երկուքն ևս հաստատ մնալով իւրեանց լոյս հաւատքի վերայ՝ նահատակուում են անօրէններից։ Ցետոյ երկու եղբարցս անուամբ կոչուում է գիւղս Փիր-Ճամալ։ Իսկ սոցա քոյրն նահատակուած է Նախիջեւանիկ գիւղի հիւսիսային կողմում»։

Digitized by Google

տուածածին, քարուկիր բայց խախտուած, քահանայ երկու։ Ծուխ 193. ար. 618. իգ. 521։

*Նահատակունի*

Գիւղիս և Ասկերան բերդի միջև կայ մի ուխտատեղի, որի մասին ինչպէս ասացինք, Փիրու և Ճամալի քոյրն է, որպէս վկայում է աւանդութիւնն։

ԾԳ. ՆՈՐ-ՔԵԱԹՈՒԿ. Հիմնուած է միևնոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ, Ասկերանից բարձր մի ձորի գըլխին, բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած Հին-Քեաթուկից, հողն արքունի, կիսով չափ լեռնային և անջրդի և կիսով չափ հովտային և ջրարբի (Գարգար գետակից), տեղական բերքերն նոյն (չիք այգի, առատ են թթենեաց պարտէզներ), օդն, կլիման և ջուրն վնասակար, տենդաբեր և մահատու, երկար կեանք արականաց նկատմամբ 50, այրի կանայք բազմաթիւ, եկեղեցին Սուրբ Աստուածածին. քարուկիր, կամարակապ, քահանայ մի։ Ծուխ 25. ար. 60. իգ. 64։

*Հին-Քեաթուկ.* Մօտ կէս մղոնաչափ վերև է աւերակս, որ ունի ընդարձակ ծաւալ։ Աւանդութիւնն ասում է թէ 400—500 ծուխ եղած է Հին-Քեաթուկս, բայց ներկայ դարուս սկզբում՝ սաստկեալ սովի և ժանտախտի անողորմ երեսից՝ գաղթում և տեղափոխուում են զանազան տեղեր, որպէս տեսանք։ Այժմ մնում է աւերակ եկեղեցին և մեծ հանգստարանն։

*Սպիտակ-Հէօլ* (ուլ այծի) այսպէս է անուանուում այն աւերակ եկեղեցին, հանգստարանն, որ գտնուում է Հին-Քեաթուկի մօտ։ Ուխտատեղի են նոյնպէս թէ աւերակ եկեղեցիս և թէ *Չինաւոր* կոչուածն, որ փոքր ինչ վերև է իւր հանգըստարանով Սպիտակ-Հէօլից։

ԾԴ. ԴԱՀՐԱՉ-ԳԻՒՂ. Հիմնուած է Միրիշալլուից բաւական վերև, դիրքն արևելահայեաց, բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն (այգի չունին), պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 95—100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, որ շինուած է հանգուցեալ Դաւիթ

Digitized by Google

Ադամեանի և Բաղդասար Սողոմոնեանի ծախքով, կամարակապ և գեղեցիկ, քահանայ մի։ Ծուխ 65. ար. 249. իգ. 214։

ԾԵ. ՔՌԱՍՆԻ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն իսկ Պողրխան սարի հիւսիսային ստորոտում, բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն (բացի այգուց և բոժոժից), բարեխառն օդն և կլիման և սննդարար ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Հռիփսիմէ, քարուկիր. քահանայ մի։ Ծուխ 50. ար. 207. իգ. 168։

ԾԶ. ԴԱՇՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Քռասնու արևմտեան կողմում, դիրքն արևմտահայեաց, բնակիչք բնիկ. հողն արքունի, աւազուտ, անօգուտ. տեղական բերքերն՝ ցորեն, գարի և կորեկ, բարեխառն օդն և կլիման և անվնաս ջուրն. երկար կեանք 70—75, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քահանայ մի։ Ծուխ 40. ար. 245. իգ. 125։

*Սուրբ Սրաբեկ*. Ուխտատեղի Նահատակ գիւղիս հիւսիսային կողմում։ Թափուած քարերից երևում է, որ հնուց մատուռ եղած է Նահատակիս վերայ, բայց կործանուած է հիմնայատակ։ Այժմ ծերունի ծառերի փառաւոր հովանու տակ շարուած են չոր քարեր իբր պատ, որի մէջ դրուած է մի հնաշէն քարեայ խաչ միջակ մեծութեամբ՝ յենած մի մեծ ծառի։ Ահա խաչս է ուխտատեղի, որի ուխտաւորն ամառ, ձմեռ անպակաս է, մանաւանդ Շուշուց, որ շատ հեռի չէ։ Նշանաւոր է արդարև Սրաբեկիս աղբիւրի ջուրն, որի մօտ կայ մի քանի սենեակ։

*Ներքի-շէն և Սողոմոնի շէն* աւերակներն, որոց բնակիչք փոխադրուած են Շուշի 1860-ին, կան Գարգար գետակի աջ ափի բարձրութեան վերայ։ Սակայն տակաւին մնում են Ներքի-շէնի կիսաւեր եկեղեցին, հանգստարանն և թթենի ծառերն։

ԾԷ. ԴՈՆԱՎԱՐԶ ԳԻՒՂ. Հիմնուած է Պողրխանայ սարի հարաւ արևմտահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի, աւազուտ, անջրդի և սակաւ արդիւնաւէտ, սեսարանն գովելի, տեղական բերքերն նոյն բացի այգուց,

պարտէզից և բոժոժից, ամրան ջերմ օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք 90—100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 60 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 90 սանթիմ, հիմնարկեալ Հայոց ՌՄՂ. թուականին, քահանայ երեք։ Ծուխ 128. ար. 466. իգ. 362։

Տղայոց միդասեան ուսումնարան, աշակերտ 65, թոշակաւոր 60, տարեկան վարժապետին 250 րուբլի։

*Աղին Նահատակ*

Գիւղիս հիւսիսային կողմում մի բլրակի վերայ անտաշ քարով շինուած է շատ հնուց մի փոքրիկ եկեղեցի, որ կոչւում է այս անուամբ։ Երկարութիւն 7 մետր 94 սանթիմ, լայնութիւն 5 մետր 12 սանթիմ։ Խաչազարդ է բեմի ժողովրդահայեաց երեսն և հանգստարան եկեղեցուս շուրջն, ուր կայ և մի սենեակ, իսկ բլրի վարի կողմում գիւղատեղի։ Խաչարձանին վերայ, որ թեքուած է տաճարիս արևելեան կողմում. «Ես Սահակ կանգնեցի զխաչս»։ Սենեկի վերայ. «Ես Աղամս Աստուծով սուրբ խաչս կանգնեցի»։

*Բեմ*

Եկեղեցւցս փոքր ինչ վերև է սրբատաշ չէչ քարով շինուած բեմն, որ ունի երեք մետր լայնութիւն, 2 հաստութիւն և 5 մետր բարձրութիւն։ Բեմիս արևմտահայեաց ճակատում զետեղուած է երեք դեղեցկաքանդակ և նրբագործ խաչարձան, որոց վերև գրուած է.

«Թվ. ՇԻ. կամաւ ամենակալին Աստուծոյ ես... Գրիգոր... Աստուծոյ միաբան եղբարբս լա... զխաչս իշխանութեան.. և հայրապետութեան.. Օհանէսի տէր Ներսէսի ո... աղաւթեցէք»։

ԾԸ. ՇՕՇՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է մի հիւսիսահայեաց ձորի աջ ու ձախ լանջերին վերայ, որ կայ Շուշի քաղաքի արևելեան և Գոնավարղի արևմտեան կողմում, Կարգար գետակի հաքաւային օժանդակ վտակի աջ կողմի բարձրաւթեան վերայ. բնակչաց փոքր մասն բնիկ, մեծ մասն տեղափոխուած

Digitized by Google

Մելիք-Բաղու հետ Սոթից, մի քանի ծուխ Ջրաբերդից և մի ծուխ Պարսկաստանից, հողն արքունի, ամենասակաւ, անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, կայ և թթենի, օդն, կլիման և ջուրն պատուական. երկար կեանք 100. եկեղեցին ՍուրբՍտեփաննոս, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 50 սանթիմ, լայնութիւնն 10 մետր 60 սանթիմ, քահանայ երեք. հիւսիսային կամարի վերայ ներքուստ «ՌԾԻԸ»։

Դրան ճակատակալ քարին վերայ.

«Փոքր ծոթով ուր դա.. հասայ քև Տէր. ուտարք շինեցաք զՍուրբ Ամենափրկիչ եկեղեցիս յիշատակ հոգոց մերոց և ննջեցելոց ի հայրապետութեան Աղուանիցս տեառն Երեմիայի.. և ի մերոցս նահանգի աթոռն, որ Ղույ (?) տէր Գրիգոր և տէր Դաւիթ եպիսկոպոսաց. ես մեղաւորս տէր Դաւիթ էրեցս եղէ պատկառ յիշ (ատակի) ի Տէր հանդերձ ԺԵ. քահանայիւ, զտէր Առաքել քահանայն յիշեցէք ի Տէր, թվ. ՌԾԴ. էր, յաղաւթս յիշեցէք։ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած ողորմեա ննջեցելոցն»։

Երևի թէ Սոթից և Մազրայից եկած *ուտարք*—ոտարք—հայերն շինած են եկեղեցիս *Ամենափրկիչ* անուամբ, բայց օծողն անուանած է Սուրբ Ստեփաննոս։ Ծուխ 367. ար. 1248. իգ. 1100։

*Հին-եկեղեցի*. գիւղիս հիւսիսային հանդէպ ձորի միւս կողմում կայ մի հնաշէն և խարխլուած եկեղեցի, որի արևմտեան լուսամտի մէջ մի խաչքարի վերայ։ «Թվ. Ջէ. (1458) ես Ղոչ սարկաւագ գոյարեցի (կանգնեցի) խաչս Ազիզա մաւր իմ»։ Վաղեմի և ընդարձակ հանգստարան է եկեղեցուս շուրջն։

*Պըլը-Պուղու գերեզմանն*.

Գիւղիս արևմտեան կողմում, մի փոքր քարայրի մէջ, որ գրեթէ սահման է Ծօշու գիւղի և Արկաթալու շէնի հողերին, ամփոփուած է Պըլը-Պուղու մարմինն, որ զուարճաբան էր Մէլիք-Շահնազար Գ-ի մօտ։

ԾԹ. ԱՐԿԱԹԱԼՈՒ ՇԷՆ, հիմնուած է Պըլը-Պուղու գերեզմանի հարաւ-արևմտեան կողմում մի հովտանման ձորա-

Digitized by Google

կում, որ շատ հեռի չէ· բնակիչք բնիկ· հողն արքունի· տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80—90· եկեղեցին Սուրբ Աստուածածին. քահանայ մի։ Ծուխ 26· ար· 120. իգ· 108։

Կ. ՀԻՒՆՈՏ ՏԷՆ (հուն պտղի անուամբ) Հիմնուած է Գարգար գետակի հարաւային օժանդակի ձախ ափի վերայ, մի սարսափելի խոր ձորում, որի գլխին է Շուշի քաղաքն և խիստ նեղ է հօրիզօնն· բացի ջրաղացներից չունին ուրիշ և ոչինչ։ Ծուխ 19· ար· 70· իգ· 60։

ՀՈՒՆՈՏԻ ԿԱՐԱՆ (քարայր)

Երկար դարերի ընթացքում օժանդակս միջից ճեղքած է այն ապառաժ քարեայ սարը, որ միացած է եղել Շուշու սարի հետ։ Հետզհետէ խորացնելով այս ջրատար ճեղքը շինած է մի կատարեալ անդունդ։ Նեղ, խոր և ահարկու ճեղքուածքիս երկու կողմերն ձևացած են անձեռագործ, բայց յաւիտենական պարիսպներ։ Օժանդակ վտակիս ձորին երկու կողմերում ևս կան շատ քարայրներ, որոց առաջինն գտնուում է Հունոտի մօտ, օժանդակիս աջ ափի բարձրութեան վերայ։ Մի նեղ, զառիվեր և միանգամայն վտանգաւոր քարեայ կածան առաջնորդում է դէպի քարայրն։ Սոսկալի է կածանիս վտակի կողմն. Տէրն մի՛ արասցէ, եթէ սահեց կամ մի փոքր ծռուեց ոտքդ, թաւալգլոր կորած ես մութ անդընդում։ Քարայրիս առաջին մուտքն որ քարուկիր է, ներկայացնում է պահապանի կամ դռնապանի բնակարան, երկրորդ տեղն ծառաների, իսկ երրորդն ընդարձակ և գեղեցիկ քարայր է, որ է իշխողի բնակարանն։ Քարայրիս մէջ կայ և աղբիւր ջուր։

ԿԱ. ՔԱՐԻՆ-ՏԱԿ ԳԻՒՂ. Հիմնուած է Շուշի քաղաքի հարաւային ստորոտում, նոյն օժանդակի ձախ ափի վերայ, մի խոր ձորում· բնակիչք տեղափոխուած Բերդաձոր գաւառի Խցաբերդ գիւղից· հողն արքունի, բայց կարի սակաւ և նուազ արդիւնաբեր· տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, գարնանի, սորեկ, հաճար, թթենի, ունին և ջրաղացներ, բարե-



Digitized by Google

խառն օդն և կլիման, պատուական ջուրն, բայց խեղդուած տեսարանն և նեղ հօրիզօն. երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածցն, քարուկիր և հոյակապ, քահանայ երկու։ Ծուխ 174. ար. 625. իգ. 443։

*Բ. Աւանայ-կարան*—քարայր—որ կայ գիւղիս հիւսիսային հանդէպ Աւանայ քերծում։ Մուտքն կլորակ է, բայց դժուարաւ բարձրանալի. խիստ խոր, սոսկալի մութ և բաւական երկար է քարայրս, որի ծայրն հասնում է համարեա թէ մինչև Ճուշու տակն, այս է Կոհար-աղայի տան տակն։ Առանց լապտերի անհնարին է մտնել և յառաջ գնալ, քարայրիս բնաշունչ հողմն անցուցանում է մոմը։ Քարայրիս խորքումն ևս կայ ջուր (16)։

*Գ. Ալեքսանդր դուզուն կարան*

*Դ. Ծուղունիկի կարան* (աղաւնու քարայր). որք կան նոյն օժանդակի աջ կողմի բարձր լանջերի վերայ։

ԱՄԱՐԱԹՆԵՐԻ ՇԻՆՈՒԹԻՒՆ [1])

Դարձեալ դժուարամատչելի և հին քարայրներ են, որոց առաջքն պատուած են տեղ տեղ և գտնուում են նոյնպէս նոյն վտակին աջ կողմի բարձրութեան վերայ։ 1886 թուին մի կատաղի վագր գալիս և մտնում է քարայրներիս մէջ. անյայտ մնում է մի քանի օր, ապա յայտնուում և սարսափ տարածում ահաւասարակ գիւղականաց և քաղաքացիների վերայ, ապա անսպասելի կերպով յանկարծ մի գիշեր յայտնուում է Գանձակում և վերջապէս մի օր սպանուում Ջաբրայէլում։

Պակաս չեն աւերակ գիւղեր, եկեղեցիներ և հանգստարան Ձառխստում և սորա շրջականերում։

# ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

## Ա. ԲՐԴԱՀՈՆՋԻՆ (բերդաունչ) ՂԱԼԱ (3300)

Զորս կողմերից առանձնացած և ձուաձև բարձրացած մի սար է բերդատեղիս, որ կայ Ներքին-Թաղավարդի արևելեան

[1]) Նշանակում է ապարանների շինութիւն։

հանդէպ, որի արեւմտեան, հարաւային եւ արեւելեան կողմերն սեպացեալ վիմահերձեր են գագաթին մօտ, իսկ հիւսիսային կողմն սարսափելի զառիվայր։ Զառիվայր կողմովս վիմահերձից վիմահերձ ձգուած է կրկնապարիսպ, արտաքին պարիսպն ունի եւ բուրգեր։ Ամրոցս ունի միայն մի դուռն արեւելեան կողմից, որից մտնելով ուղին պատում է հիւսիսից, ապա մըտնում միջնաբերդն։ Այժմ գրեթէ անվնաս մնում են պարիսպներն ամուր շինութեան պատճառաւ։ Բերդիս մակերեւոյթն չունի հարթութիւն, այլ անհարթ է սարի ձեւովն։ Միջնաբերդում նշմարուում են բնակարանների շատ բակեր։ Արժանի է բերդս անառիկ տիտղոսին. միայն ափսոս որ չունի ջուր իւր մէջ։ Բայց բերդիս արեւելեան ստորոտում կայ մի աղբիւր, որի ջուրն աննման է։ Ահա ջրից բերած եւ լցրած են այն աւազանների մէջ, որ կան բերդումս։ Այժմ անտառապատ է թէ բերդիս ներսի եւ թէ դրսի կողմերն։

Բ. Բերդն է Աւետարանոցն, որի մասին արդէն խօսած ենք։

Գ. Բերդն է Ղալին-Խութ (բերդասար) կոչուածն (17), որ ընկած է Կիշու, Մշկապատի եւ Կիւնի-ճարտարի միջեւ։ Բաւական բարձր է բերդասարս (3735), որի հարաւային եւ արեւմտեան կողմերն անմերձենալի քերծեր են, իսկ արեւելեան եւ հիւսիսային կողմերն պարսպուած են ամուր պատով առանց բուրգերի։ Այժմ տեղ տեղ աւերուած են պարիսպներն։ Ամրոցիս մակերեւոյթն, որ այժմ հերկուում է, տանում է մօտ 14 չուալ [1] սերմացորեն։ Հարթ է ամրոցիս մակերեւոյթի հարաւային մասն, իսկ փոքր ինչ լանջ՝ դէպի Կիշի թեքուած՝ հիւսիսային մասն։ Այս մասի մէջ՝ պարսպի ստորոտումն է աղբիւրն, որ ունի գերազանց ջուր, որից տարած եւ լցրած են ջրաւազանները ի պաշար պատերազմի։ Քերծերիս մէջ պակաս չեն քարայրներ։

Դ. Աղջկայ բերդ (Ղզղալա)

Ագուէ գաւառում դաշտաբերանի վերայ արձանացած է մի

[1] Մի չուալն հաւասար է 7 փութի։

բարձր սար, որ առանձնացած է բոլորովին ամեն կողմերից։ Սարիս հարաւային հանդէպ է Դզղալա գիւղն և իւր ստո-րոտում նոյն գիւղացւոց կալերն։ Սարիս արևելեան, հարա-ւային և արևմտեան կողմերն վիմահերձ և սարսափելի բարձր ժայռեր են. իսկ հիւսիսային կողմն սաստիկ զառիվայր, որի ստորոտով փորուած է հնուց խիստ խոր և լայն խրամ և տեղ տեղ պարսպուած, ինչպէս երևում է հետքերից։ Սարիս կատարի հարթակին վերայ շինուած են ստորերկրեայ շատ շինութիւններ, որք կարծես թէ հաղորդակցութիւն ունէին միմեանց հետ։ Բերդիս գիւղահայեաց լանջի վերայ, շինու-թիւններից ոչ այնքան հեռի, երեք տեղ մօտ առ մօտ շի-նուած են երեք վիմափոր ջրաւազաններ, որք ունին բաւա-կան մեծութիւն և խորութիւն։

Խեցեղէն խողովակների շարունակութեան հետքն Դզղա-լա գիւղից եղած է մինչև բերդիս ստորոտն—կալերի մօտ. աւանդութիւնն ասում է որ «Եմիշջան գիւղի արևելեան կող-մից խողովակներովն ջուր բերուած է բերդս»։

Հիանալի՛ տեսարան ունի բերդս, հիւսիսային և արևե-լեան կողմերում տարածուած է Արցախեան—Գարգարացւոց լայնատարած դաշտն, արևմտեան և հարաւային կողմերում Դզղալի, Աշանի, Մեծ-նահատակի և Խաչեն գաւառի ստորին լեռներն և Տիգրանակերտ գաւառն։

## ՇՈՒՇԻ ՔԱՂԱՔ (50 0 ոտք)

Հիմնուած է մի բարձրագոյն սարահարթի վերայ, որ գրեթէ առանձնացած է իւր չորս կողմերից։ Լայն հօրիզոն և անդնդախոր ձոր է հիւսիսային և արևմտեան կողմերն. որից հոսում է բուն Գարգար գետակը. հօրիզոնն նեղ, վի-մահերձ սարսափելի խոր ձոր է քաղաքիս արևելեան և հա-րաւային կողմն, որից հոսում է Գարգար գետակի օժանդակն, լայնատարած վիմահերձ և խոր երևոյթ ունի արևմտեան և հարաւային կողմերի միջավայրն—քաղաքի արտաքին կողմն. իսկ սաստիկ զառիվայր է արևելեան և հիւսիսային կողմերի միջավայրի տարածութիւնն՝ պարսպից դուրս։ Այլպէս գրե-

Digitized by Google

լով երեք կողմերն բարձր քերծեր են, իսկ չորրորդ կողմն պարսպուած զառիվայրի բերանով: Աւելորդ է գրել թէ քաղաքս կոչուած է և ընրղ, ընրղաքաղաք և ամրոց, որի մակերևոյթն զգալի կերպով թեքուած է Հարաւային արևմուտքից դէպի Հիւսիսային արևելք և որի տարածութիւնն պակաս է քառորդ քառակուսի մղոնից: Համարուած է այս գաւառագլուխ քաղաք, որի մէջ նստած է գաւառապետ, հաշտարար դատաւոր իւրեանց պարագաներով հանդերձ:

Քաղաքիս գլխաւոր բնակիչներն են Հայ և շիա-մահմետական. վերջիններս բնակում են քաղաքի ստորին մասումն: Մեծամասնութիւնն կազմում են առաջիններն—Հայերն, որք բնակում են քաղաքի վերնամասում և ունին չորս եկեղեցի: Բայց որովհետև հայ տարրն հաւաքուած է քաղաքս չորս տեղերից, որք են Ղազանչի, Ագուլիս, Մեղրի և Արցախի գիւղերն, վասնորոյ եկեղեցիք բացի իւրեանց օծման անուններից, սովորաբար ունին և երկրորդական տնուններ, որք նախապատիւ տեղ բռնած են՝ Ղազանչեցւոց եկեղեցի, Ագուլեցւոց եկեղեցի, Մեղրեցւոց եկեղեցի և Նոր եկեղեցի և Անապատ կուսանաց:

Ա. Ամենափրկիչ մայր եկեղեցի Ղազանչեցւոց՝ շինուած է ամբողջապէս սրբատաշ կրաքարով՝ կառուցեալ խաչաձև չորս հաստատուն սիւների վերայ, հոյակապ և բարձրաշէն, լուսաւոր և փառահեղ և միանգամայն զարդարուն ներքուստ և արտաքուստ: Երկու փոքր խորանների վերայ ունի այլ ևս երկու խորաններ: Նշանաւոր է փայտեայ և ոսկեզօծ խաչկալն՝ որ յիշատակ է բարեհամբաւ Ժամհարեան եղբարց: Ունի երեք դուռն՝ Հարաւային, արևմտեան և Հիւսիսային կողմերից, որոց վերայ արտաքուստ շինուած է երեք նոյնպէս հօյակապ և գեղեցկաշէն սրահ: Երկարութիւնն է 34 մետր 75 սանթիմ, լայնութիւն 22 մետր 70 սանթիմ:

*Հարաւային դրան գլխին արտաքուստ.*

«Շնորհիւ և ողորմութեամբ ամենազօրին Աստուծոյ կառուցաւ հրաշակերտ սուրբ տաճարս արդեամբ և տրօք բարե-

պաշտօն ժողովրդականաց Սուրբ Ամենափրկիչ եկեղեցւոյն Ղազանչեցւոց Շուշի քաղաքիս, որոյ շինութիւնն սկսեալ ի 1868 ամի յաւուրս թագաւորութեան աստուածազօր ինքնակալ մեծ կայսեր ամենայն Ռուսաց Աղէքսանդրի Բ.-ի և ի հայրապետութեան Գէորգայ Դ.-ի, աւարտեցաւ ի 1887 ամի ի թագաւորութեան որդւոյ Նորին օրհնաբանեալ կայսեր Աղէքսանդր Գ-ի և ի կաթուղիկոսութեան Մակարայ Ա-նոյ՝ ի 20 Սեպտեմբերի 1888 ամի»։

*Տաճարումս կան հետեւեալ գրչագրերն.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, գրուած նրբարուեստ ճաշակով և ընտիր ոսկեզօծ պատկերներով, որք լուսանցքներում նկարուած են Քրիստոսի բոլոր բժշկութեանց և հրաշագործութեանց պատկերները։ *Յիշատակարանից.* «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ նուաստ և յետին Նիկողայոսի մեղապարտի ի թուաբերութեանս Ասքանազեան և Աբեթական տումարի ՌԾԴ. և ըստ Նորում շրջանի ԼԴ. և ի գալստենէ Կենարարին ՌՈԾԸ. (1658) ի ստոյգ և ընտիր աւրինակէ ևս առաւել համաբայիցն (զի գաղափար սորին էր ի դրանէ Սուրբ Յովհաննէս աւետարանչին) ի յաշխարհիս Յոնաց.. ի քաղաքս Կաֆայ (Թէոդոսիա) ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածին... ի հայրապետութեան Հայոց տեառն Յակոբայ և յեպիսկոպոսութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Խաչատուր աւրհնեալ քահանայապետի»։

Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր տասնեւմի նրբագործ և ընտիր պատկերներով, համանման ըստ ամենայնի Ա-ին։ *Յիշատակարանից.* «Աստուածաւանդ սուրբ աւետարանս գրեցաւ ի մայրաքաղաքն Կոստանդնուպոլիս ձեռամբ ոգնամեղ և անարհեստ Ղազար գրչի ի թուականիս մերոյ ՌԾԵ. Աւգոստոս ամսոյ է.»։ «Ես անարժան Ղուկաս ստացայ զսուրբ աւետարանս ի դուռն սուրբ Ամենափրկչին»։ Հուսկ յետոյ աւետարանս գնած է Ղազանչեցի Նարինն, որի բարեպաշտ ժառանգներն ընծայած են եկեղեցւս ՌՄԺԴ, թուականին Հայոց։

Գ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերները. *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՉԻԲ. ի Նահանգիս Վայո ձորո ի վանս Հերմոնի ընդ հովանեաւ ամբարձուղէս (՟Հ) և դերաշնորհ սուրբ Լուսաւորչիս և աքանչելագործ սուրբ Նշանիս աւ ոտն շնորհազարդ հրաբունոյս մերոյ Սարգիս վարդապետիս, ձեռամբ Եսայի նկարողի սորին... Նաև ստացող սուրբ աւետարանս Յետկար աղէն և կողակից Խաթուն...»: «Վերջին ստացող աւետարանիս ՌՄԱ. թվ. Հայոց Խաչյաքակեցի Միրզանց Սահակի որդի Գէօրգին...»:

Դ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ. *Յիշատակարանից*. «Արդ այսմ աստուածային.. մարգարտիս ցանկացան աստուածասէր և բարեպաշտ կանայք Ազուլթ Խաթուն և Շահդիշէն...... Արդ յանկ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ յոգնամեղ... երիցու Վարդանայ... ի քաղաքս՝ որ կոչի Վան... ի թուականութեանս Հայոց ՋԹ....»:

Ե. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ. «*Յիշատակարանից*. «Արդ՝ այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացող ցանկացաւ աստուածասէր կինն Մուղալ խաթուն և քոյրն իւր Շամշիդամարն և ետուն դրել զսա յիշատակ բարի հոգւոց իւրեանց և ծնողաց իւրեանց հօր Բաղդասարին և մօրն Սուլտան Մէլիքին......: Եւ արդ ես... սուտանուն քահանայ Վարդան... յանձն առի զաւետարանս և ողորմութեամբն Աստուծոյ կատարեցի ի քաղաքս՝ որ կոչի Վան ընդ հովանեաւ սուրբ Աստուածածին և սուրբ Վարդան քաջ զօրավարին ի թուականութեանս Հայոց ՋԺ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ մին ամ է, որ նստաւ յաթոռ սուրբ Լուսաւորչին ի յէջմիածին»: Աւետարանիս սկզբում. «... կամաւն Աստուծոյ ես Մաղաքիա քահանայս գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ ընչից իմոց.... և ես Բէկիջանս դուստր Համբուլին և կողակից Ումիտին իմ կամաւորութեամբ.. ծախեցի զաւե-

տարանս Մաղաքիայ քահանային ... Թվական Հայոց ՋՂԴ. էր և տանուտէր տարւոյն Առիւծն»։ Ապա աւետարանս գնում է Մալիջանն .. «ՌԽԹ-ին»։

Զ. Աւետարան մեծադիր, գրուած թղթի վերայ, որ ունի չորս աւետարանչաց անճաշակ պատկեր. Յիշատակարանից.

«Արդ գրեցաւ ի թվ. ՋԿԹ. գրագմամեղ գրիչ, կազմիչ և նորոգիչ»։ Սկզբում. «Կամաւն Աստուծոյ ես Եղիայ էրեցս, որդի իմ տէր միլիքսեթ նորոգել տուինք զսուրբ աւետարանս ի յերկիրս Մաղայոզ ի գեղն Արտաշիպի, թագաւորութիւն Շահ Ապազին, հայրապետութիւն տեառն մերոյ Յովհաննէս կաթուղիկոսին թվ. Հայոց ՌԿԴ»։

Է. Աւետարան միջակ դիրքով, թղթի վերայ, գրուած է Արցախի Վարանդայ գաւառի Խաչմաչ գիւղում Աղէքսանդրը եպիսկոպոսի ձեռնով ՌԺԸ. թուին Հայոց. իսկ ստացած է Թադէոս քահանան։ Բոլորովին անճաշակ են պատկերներն։

Ը. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, անյայտ թուականաւ և առանց պատկերի, միայն յայտնի է. «ի հայրապետութեան տեառն Նահապետ կաթուղիկոսի ի առաջնորդ Մարտիրոս պարոն տէր Հազարափրկչին արդ նորոգեցաւ յիշատակարան սուրբ աւետարանիս ՌԾԽ և Ե. թվին ... տուրբ Գրիգոր եկեղեցին ի գիւղն Գոմէր ի գաւառն Շահբունեաց ի յերկիրն Նախչուան»։

Թ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ առանց յիշատակարանի, ունի միայն չորս աւետարանչաց հասարակ պատկերներ։

Ժ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, անյայտ գրողի անունն, թուականն և տեղն։

ԺԱ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, ընկած է բուն յիշատակարանի մի մասն, բայց գրուած է յետոյ. Յիշատակարանից. «......գրեցաւ ի դառն և վերջացեալ ժամանակի, որոյ (յորում) Լեկզին եկաւ Գանջոյ, Պարտոյ, Խաչենոյ, Վարանդոյ, Շաքոյ, Շամախոյ, Վարաստանոյ, Ջակամայ չորեքանկիւն երկիրն, ամեն ասպատակեալ աւերեցին։ Բազում ար-

ւն անմեղաց եղաւ (հեղաւ) երկրի, անթիւ գիրք և անմեղ գերիք անկան ի ձեռն անօրինաց։ Եկեղեցիք խախթեալ և խաւարեալ ամայի մնացին։ Երկրորդ Օսմանլուն եկաւ կրկին, բազում արիւնհեղութիւն եղև. գերիսն անթիւ եղև ի ձեռս Օսմանցոց վասն մեր ծովացեալ մեղացն՝ սուք մեծ եղև քրիստոնէից ազգիս.... ՌճՀԱ. թվին մայիսի ԺԴ-ին ի գիւղն Արգաւոն էր ի դուռն սուրբ իշխանաց.....»։

ԺԲ. Աւետարան փոքր, թղթեայ, առանց յիշատակարանի։ Այսպէս և մի գրչագիր *սաղմոս* (գողացած են յիշատակարանները։

*Մասունքներ.*

1) Մի քառաթև արծաթեայ խաչում զետեղուած են.
«Սուրբ *Կենաց Փայտն* է.
Սուրբ *Գէորգայ* մասունքն է.
Սուրբ *Թէոդորոսի* ,,
Սուրբ *Մեռկեռիոսի* ,,
Սուրբ *Մինասայ* ,,
Թվ. ՌճԹ.»։

2) Մասն Սրբոյն *Գրիգորիսի* Աղուանից կաթուղիկոսի՝ մի արծաթեայ ոսկեզօծեալ աջում. որ ունի այս արձանագրութիւնն. «Այս է աջ սրբոյն Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսին թոռին սրբոյ Լուսաւորչին. Նորոգող սորա տէր Յովհաննէս որդի Տաւութին թոռն Պաղդասարին, որ է որդի Մէհրապ պէկին տեառն Խաչենոյ թվ. ՌՀ.»։ «Արուեսի Գալուստ»։ Հուսկ յետոյ գրուած է. «Նորոգեաց վերստին սուրբ աջս Գրիգորիսի Բէյրամ բէկ Մէլիք Ջիմշիտեան Մէլիք Շահնազարովի ՌՄԿԱ. էր»։

Արտաքուստ. եկեղեցուս արևմտեան գաւթի ճակատին դրուած է քարից շինուած Փրկչի գեղեցիկ պատկերն, որ ազօթում է։ Իսկ տանեաց խաչաձև շինութեան չորս կողմերի բարձրութեան վերայ դրուած են արձաններ՝ շինուած նոյնպէս քարից։

Արևմտեան գագաթին վերայ Փրկիչն գրկած է Խաչափայտը։

Digitized by Google

Հիւսիսային գագաթի վերայ կանգնած է սուրբ Յովհաննէս Մկրտիչն։

Արևելեան գագաթի վերայ պայծառափայլ արձանացած է խաչափայտն.

Հարաւային գագաթին վերայ իջնում է Հոգին Սուրբ Աստուած։

Արտաքուստ արևմտեան գաւթի հիւսիսային կողմում ամփոփուած է Անդրէաս եպիսկոպոսի մարմինն, որի տապանաքարի վերայ քանդակուած է՝ թագ, գաւազան և իւր տիտղոսների ձևերն և արձանագրութիւնն. «Վիճակաւոր առաջնորդ Թեմին Հայոց Արցախայ Անդրէաս արքեպիսկոպոս Պօլսեցի վախճանեալ է 8 Սեպ. 1882 ամի ի հասակի 48 ամաց»։

Եկեղեցիս ունի իւր արևմտեան կողմում մի եռայարկ զանգատուն. գետնայարկի չորս անկիւններում դրուած են չորս հրեշտակապետաց քարաշէն, բայց ճարտարարուեստ, մարդահասակ բարձրութեամբ արձաններն, որք ահարկու տեսլեամբ փչում են փողերը։ Այս զանգակատունն յիշատակ շինուած է հանգուցեալ բարեպաշտ Աբրահամ Խանդամիրեանցն։

Եկեղեցիս ունի չորս քահանայ։

Ունի և ամուր շրջապարիսպ։

Բ. Ագուլեցւոց Սուրբ Աստուածածին եկեղեցին, հոյակապ, կառուցեալ չորս վայելչակերտ սիւների վերայ անտաշ քարով քաղաքի կենտրոնում, ունի երեք դուռն—հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերից. երկու գաւիթ հարաւային և հիւսիսային դռների վերայ. երկու փոքր, բայց գեղեցիկ կաթուղիկէներ տանեաց արևելեան և արևմտեան գագաթնագծի վերայ և մի փայտեայ մեծ կաթուղիկէ երկոցունցս միջավայրում. մի աւագ խորան և չորս փոքր խորան միմեանց վերայ, վերնատուն կանանց. 28 մետր 90 սանթիմ երկարութիւն և 17 մետր 50 լայնութիւն։ Բայց որովհետև ճաքած է գագաթնագծի երկարութեան համեմատ, վասնորոյ արտաքուստ յենարան պատեր հիւսած են նորից հարաւային

Digitized by Google

և հիւսիսային կողմերից։ Հարաւային դրան ճակատակալ քարին վերայ արտաքուստ.

«Կամաւն Աստուծոյ Սուրբ Աստուածածնայ աւագ [1]) եկեղեցիս կառուցին արգեամբք և ծախիւք իւրեանց իշխանք ազնուազգի հարազատ աղայք Զօհրապ Յովհանջան, Մարկոս և Բաբա տէր Մատթէոսեան Թառումեանց ընդ որս և որդիք նոցա Յովհաննէս աղայն և Աւետիս աղայ ի յիշատակ և ի փրկութիւն հոգւոց իւրեանց և սոցա ծնողաց, ամուսնոց, որդւոց, դստերաց իւրեանց ամենից և առհասարակ ննջեցելոցն ի Տէր ի կայանս երկնից, ի 1822 ամի Տեառն»։

*Եկեղեցումս կան հետեւեալ գրչագրերն.*

Ա. Աւետարան միջակ մեծութեամբ, թղթեայ գրողն է ոմն Եսայի. գրեցաւ «'ի թուին Հայոց ՌՂԴ. ի հայրապետութեան տեառն Գրիգորի, ընդ հովանեաւ Սուրբ Նահատակիս 'ի յերկիս Տայուշ 'ի դեաւղս, որ կոչի Թաւուզ, յորում ամի և ըստ մեղաց մերոց բռնացաւ անօրէնութեան չարիք 'ի վերայ մեր 'ի հինէ Պարսից լուծ ծառայութեան նոցա հարկանելով և տանջելով ստիպեն դարձուցանել 'ի մոլար յաւրէնս իւրեանց»։

Բ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, չորս աւետարանչաց պատկերներով. «Գրեցաւ սուրբ աւետարանս 'ի թուիս ՋԾԵ. յանապատիս Ասպիսնկայ (?) ընդ հովանեաւ սուրբ յարութեանս և Սուրբ մօրս լուսոյ Աստուածածնիս յառաջնորդութեան Ստեփաննոս վարդապետի, գրեցաւ ձեռամբ Ղազարի սուտանուն կրաւնաւորի 'ի վայելումն Հայրապետի»։

Գ. Աւետարանս փոքրադիր, թղթեայ և անթուական. «Գրեցաւ սուրբ աւետարանս 'ի յերկրիս Աղուանից 'ի գաւառիս Դիզակայ, 'ի գեաւղս, որ կոչի Թեղասեռ 'ի դուռն սուրբ Սարգսիս 'ի Տաճ Սեփու երրորդ ամին ձեռամբ փծուն և անարհեստ գրչի՝ սուտանուն Մելքիսեդ երիցու և միաշունչ եղբաւրս իմոյ սրբամիտ և հեզահոգի տէր Կիրակոս քահանայի, որ ի միասին սկսաք և աւարտեցաք»։ Աւետարանս գերի ընկած է Պարսից Թաւրէզ քաղաքն. ապա Հայոց ՌՄԾԵ. թուին գնած և յետ բերած է Արզրումցի պ. Մկրտիչ և յանձնած է Շուշեցի մահտեսի

[1]) Մինչև Ղազանչեցւոցն շինելն՝ այս էր աւագ եկեղեցին, այժմ Ղազանչեցւոցն է աւագ եկեղեցին։

Digitized by Google

Սրապիոն Տխեանցին...։

Դ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, անյայտ թուականաւ. միայն յայտնի է. «՚Ի թվիս Հայոց ՌՂ. և ՚ի հայրապետութիւն Սուրբ Էջմիածնայ տեառն Փիլիպպոսի նորոգեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Սարգիս կրօնաւորի՝ աշակերտ (ի) սուրբ աւետարանիս ՚ի Սուրբ անապատս Զարեքայ և առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Դաւիթ եպիսկոպոսի»։

Ե. Աւետարան փոքրադիր, թղթեայ և պատկերազարդ. Յիշատակարանից. «Արդ գրեցաւ վարդապիթիթ և ոսկզօծ սուրբ և աստուածաշունչ աւետարանս ձեռամբ մեղաներկ և տառապեալ Բարսեղ լոկ անուամբ քահանայի ՚ի՝ թուականիս Հայոց ՌՃԽԹ. ամին ամսեանն Սեպտեմբերի, որոյ էին աւուրք Ժ. ՚ի թագաւորութեան Պարսից Շահ Սուլէմանին և ՚ի հայրապետութեան տանս Արտանից տեառն Երեմիայի Սրբազան և Նորընծայ Կաթուղիկոսի ՚ի յերկիրս Գեանջա ՚ի գեօղս Քարահատ [1]) հովանեաւ Սուրբ Աստուածածնիս»։

*Մասունքներ.*

1) Մի արծաթեայ միջակ մեծութեամբ խաչի ակումն զետեղուած է մասն *կենաց փայտի*. իսկ թևերում մասն *Ղուկաս և Փիլիպպոս* առաքեալների։

2) Մի լուսամտաձև արծաթեայ զարդի մէջ.

«*Ա. Պանդալիոնի* մասն.

*Բ Օսեփ Արեմաթացւոյն* մասն.

*Գ. Բարթուղիմէոսի* ,,

*Դ. Կենաց փայտն* ,,

*Ե. Անդրէասի մասն*

*Զ. Լուսաւորչի* ,,

*Է. Յովհաննու Մկրտչի* մասն. Յիշատակ է Զարեքու Մկրտիչ վարդապետին և իւր ծնողացն թվն. ՌՃՁԸ. փետրվարի»։

3) Մի արծաթեայ միջակ մեծութեամբ խաչի մէջ զետեղուած է *Թադէոս, Բարդուղիմէոս, Թովմաս* առաքեալների

[1]) Գարդման գաւառի Քարհատ գիւղն։

և ուրիշ սրբոց մասունքներ։ Տաճարս ունի չորս քահանայ։

Եկեղեցիս իւր արևմտեան կողմում ունի մի նորաշէն և չքեղ զանգատուն, որի երկու յարկերն արդէն պատրաստ է և մնում է պատրաստել երրորդ յարկն։ Ունի նաև պեփական կալուած իւր հարաւային կողմում տասներկու խանութ և հիւսիսային կողմում տասնևհինգ։

Գ. Մեղրեցւոց եկեղեցի Սուրբ Աստուածածին, հիմնուած քաղաքի վերի կողմին մօտ նոյն անուն թաղում, կառուցեալ անտաշ քարով չորս սիւների վերայ. բայց ո՛չ բարձրաշէն։ Ունի երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, որոց վերայ երկու գաւիթ, կանանց վերնատուն և տասն լուսամուտ. 24 մետր 75 սանթիմ երկարութիւն և 12 մետր 77 ս. լայնութիւն։

*Հարաւային դրան ճակատակալ քարի վերայ.*

«1838 Մահտեսի Պապայ Հախումեանց տոհմին չ'ունէր զզաւակ մարմնաւոր ինքեան՝ նախ քան զօրհասին պատրաստեաց կտակ՝ շինել զտաճար սուրբ եկեղեցւոյ մի երկնահանգոյն, որ տայ վերճեմիլ մարդկային սեռից ի բարին անհուն՝ յանուն Տիրամայր սուրբ Աստուածածնին կենաց պատճառի յիշատակ հոգւոյն ընդ անցաւորին յայսմ աշխարհի նախ քան կատարել նոր նպատակի հողացաւ մարմին, որ աստ կայ եդեալ ի մէջ տաճարիս պերճ գերեզմանիս»։

*Եկեղեցումս կան հետևեալ գրչագիրներն.*

Ա. Աւետարան փոքրադիր, գրուած թղթի վերայ, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ, բայց անճաշակ գրողն է ոմն Յովսէփ քահանայ. *Յիշատակարանից.* «Արդ գրեցաւ սուրբ՝աւետարանս ի թվլին Հայոց ՊԿԳ. 'ի դրան սուրբ Խաչին և սուրբ Կարապետին և սուրբ Գրիգոր Լուսաւորչին.. որ կոչի Կտուց... ի հայրապետութեան տեառն Հայոց կաթողիկոսի տէր Դաւթի, Սուրբ Խաչի Ախամարա (Աղթամարայ) առաջնորդի և առաջնորդութեան սուրբ ուխտին Սուրբ Կարապետին.. արհիեպիսկոպոսին Մխարա.... արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն և ի նեղ ժամանակիս որ հարկապահան...

Digitized by Google

զի կարի ձանձրացեալ եմք յանաւրինաց բռնութենէ, ի Քրթէ, ի Թաթարէ և յայլ ամենայն.... Ես Մարտիրոս Նոր շինախուհս զաւետարան գնեցի յիշատակ ինձ և ծնողաց իմոց»։

Բ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ, սակայն անճաշակ. Յիշատակարանից. «Արդ՝ գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Մոգաց 'ի գիւղս Փասավանք ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գրիգորիս և սուրբ Կարապետիս ի թուականիս Հայոց ՋԻԲ. ամին ի Ղանութիւն Ամթեցի Յասան բէկին և Խոնդքար Ըռոմցին իրար առին»։ Աւետարանիս գրողն է Իսրայէլ անուն ոմն, իսկ ստացողներն են եղբարք Մարգարայ, Կիրակոս, Յովհաննէս և Դաւիթ։

Գ. Աւետարան միջակ դիրքով, անճաշակ պատկերներով, գրուած թղթի վերայ. «Թւին ՌՄԺԷ, տէր Մեսրոպս գրեցի»։ Զունի յիշատակարան, գրուած է վերջում այլ դրողից. «Արդ եղև նորոգութիւն կազմի սորա ձեռամբ Յակոբի ի հայրապետութեան Հայոց տեառն տէր Մովսէսի ի գեաւղն Շուլթ....»։

Դ. Աւետարան փոքրադիր, գրուած թղթի վերայ, որի գրողն է Յովհաննէս աբեղայ ոմն. իսկ գնողն է Մարիամ անուն տիկին ոմն. «Ես Մարիամս սուրբ աւետարանս առի տուի տէր Մովսէս քահանային»։

*Մասունքներ.*

Մասն *Յովհաննու Մկրտչի* զետեղուած մի արծաթեայ խաչի մէջ, որի վերայ գրուած է. «Յիշատակ է սուրբ մասունքս Ներքին շէնացուոց [1]) եկեղեցուն Յովհաննու Մկրտչին, որ այժմս պատկանի սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն Մեղրեցւոց 1856»։

Եկեղեցումս քահանայ երեք։

Դ. Եկեղեցի Նոր-Թաղի [2]) Սուրբ Յովհաննէս Մկրտիչ, խաչաձև, առանց սիւների, Թաղակապ. սրբատաշ քարով, որ

---

[1]) Մինևոյն Ներքին-շէնն է, որի բնակչաց մասին առաջինք թէ փոխադրուած են Շուշի։

[2]) Հիմնուած է քաղաքի հիւսիսային կողմում, որ կոչւում է և Վ ե ր ի ն Թ ա ղ ի եկեղեցի։

Digitized by Google

ունի երկու դուռն հիւսիսային և արևմտեան կողմերից, մի զանգատուն և մի գմբէթ խաչաձևի վերայ, երկարութիւն (զանգատան հետ միասին) 27 մետր 70 սանթիմ, լայնութիւն 10 մետր 90 սանթիմ։

Տաճարումս կայ մի փոքրիկ գրչագիր աւետարան, գրուած մագաղաթի վերայ, որ չունի պատկերներ, բայց ունի գեղեցիկ գիր, մանր և անճաշակ նկարներ, նախշեր և ծաղիկներ.

*Յիշատակարանից.* «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկրիս մերում Կեղըւայձոյ ի գեօղն, որ կոչի Կից. ի դրանէ Սուրբ Ստեփաննոսի 'ի հայրապետութեան Սուրբ Էջմիածնայ տէր Եղիազարու ի հովուապետութեան Ըստաթէի տէր Յով-հաննէս արքեպիսկոպոսի և սորին սպասաւոր տէր Զաքարիա վարդապետի, ամէն։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս թվ. ՌՑԼԳ. յունվ. Ժ. աւարտ սորա ի թագաւորութիւնն Պարսից Շահ Սուլմանի (Սուլէյմանի) և դիտող յերկրիս մերում զԲաք-դար Սուլդանն, որում չարչարանք կորուսուց յերկիրս, որ (որում) ետ Աստուած զերեք պատուհասն Հաճի Ալի խան սարդար (փո-խարքայ) եղև, եկեալ ԽԲ. Ռ. հեծելով բնակեցաւ ի քաղաքն Կանջայ և բազում աւերութիւն արար ի Հայոց աշխարհիս և յետ նորա զմարախն և զերաշտութիւնն և բազումք կորեան վասն անհնչութեան իւրեանց.... պարձեալ յիշեցէք զՇնա-թաղու քահանայ զտէր Առաքելն և զտէր Գրիգորն, որ եղև պատճառ սորին և տանուտէր Շապանն...»։ Նոտ յետոյ գրած է ուրիշ ոմն.

«Կրկին յիշատակ է սուրբ աւետարանս Անդամէջցի Ծա-տուրի որդի Սիրականին, որ դերի էր անկեալ (աւետարանս) 'ի ձեռս այլազգեաց, վերոյ (դրեալ) Սիրականն ազատեաց և յետ (ետ) յիշատակ Անդամիջոյ Սուրբ Աստուածածնայ եկեղեցոյն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի... գրեցաւ ի թվն. ՌՄԽԵ. (1796) սէպ. ԺԵ.»։ Հուսկ յետոյ գրուած է.

«Յիշատակ ետու սուրբ աւետարանս Շուշա քաղաքացի Աւագ Դանիէլեան Ղազարեանցս Սրբոյն Յովհաննու Մկրտչի եկեղեցւոյն յիշատակ հոգւոց մերոց, որոյ յիշեցէք զպատճառն

սորա, զի այլոց կալայ (գնեցի յայլմէ)... Թուական Քրիստոսի հազար ութհարիւր ութսուն երեք ամի Ժ. մարտի»։

Եկեղեցիս ունի չորս քահանայ.

## ԱՆԱՊԱՏ ԿՈՒՍԱՆԱՑ.

Հիմնուած է մի սեաւ վերայ (որ գրեթէ միջավայր է Մեղրեցւոց և Նոր-Թաղի եկեղեցիների) կամարակապ՝ առանց սիւների, որ ունի երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, ինն լուսամուտ և մի եռայարկ զանգատուն՝ որ պատկից է հարաւային կողմին։ Երկարութիւն տաճարիս 20 մետր է, լայնութիւն 9 մետր 45 սանթիմ։

*Հարաւային դրան ճակատակալ քարին վերայ.*

«Շինեցաւ սուրբ եկեղեցիս յանուն Սուրբ Աստուածածնայ արդեամբ ձեռագործ աշխատանաց Կոյս Հռիփսիմեայ օժանդակութեամբ երից եղբարց իւրոց հարազատաց Իսրայէլի, Աստուածատրոյ և Պետրոսի Գրիգորեանք Բահադուրեանց ի թվին 1816 ամի»։ Միևնոյն բազմաշխատ Կոյս Հռիփսիմէն շինել տուած է զանգատունը առանց օժանդակութեան այլոց։

Անապատումս կայ մի գրչագիր աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, պատկերազարդ, *Յիշատակարանից*.

«Հաւատարիմ տանուտէրն Յակովբ և հայր իւր պարոն Գրիգորն, որ ստացաւ զսա (աւետարանս) ի հալալ վաստակոց իւրոց...... Եւ արդ ես յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց... Մկրտիչ աբեղայ հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն... գրեցաւ սուրբ աւետարանս ի յաստուածաբնակ և հրեշտակաճեմ սուրբ ուխտս, որ Սալն Անապատ կոչիւր. ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Կարապետիս.... ի հայրապետութեան տեառն Սարգսի կաթուղիկոսի և ի Թուականիս Հայոց ՋԼԴ. ձեռամբ... հաբեղայի...»։ Աւետարանիս կողքին գրուած է.

«Յիշատակ է սուրբ աւետարանս Մայրապետ մենաստանի Կուսանաց Շուշու Վառվառեայ Բահաթրեանցին 1888 ամի 8 (ութերորդ ամսի) 31 ի Շուշի»։

Անապատս ունի մի ազնիւ, աշխատասէր տնտեսագէտ և խնամածու թեքասուհի, երեք սարկաւագուհի և մի նորեկ միաբանուհի։

Նուշումս է թեմական առաջնորդարանն. գրեթէ Աղուանից կաթուղիկոսութեան մահից վերջն քաղաքումս նստած են Արցախի թեմակալ առաջնորդներն՝ սկսեալ Բաղդասար մետրապօլտից մինչև ցայսօր։

Նուշում կայ Հայոց ծուխ 3016, ար. 7859, իգ. 5792, ար. ծն. 325, իգ. ծն. 281, երկորեակ 4, պսակ կոյս ընդ կուսի 138, այրի ընդ կուսի 17, այրի ընդ այրւոյ 15, միամեայ վախճանեալ ար. 179, իգ. 178։

## ԹԵՄԱԿԱՆ ԴՊՐՈՑ Զ. ԴԱՍԵԱՆ

| | |
|---|---|
| Թիւ համօրէն աշակերտաց . | 330 |
| Թոշակատու . . . . . | 260 |
| Ձրիավարժ . . . . . | 70 |

*Արդեանց աղբիւրներն են*

1) Թոշակադրամ աշակերտներից [1])
2) Մոմավաճառութիւնից.
3) Սրբադրամից
4) Ծննդեան վկայականներից
5) Պսակադրամներից
6) Տպարանից

Ընդ ամենն մօտ . 11000 րուբլի

*Ելք*

Տասնևչորս վարժապետաց և մի տեսչի
Տարեկան ռոճիկ . . . 11000 ,,

*Ս. Մարիամեան օրիորդ. երկդասեան ուսումնարան*

| | |
|---|---|
| Թիւ համօրէն աշակերտուհեաց մօտ | 200 |
| Թոշակատու . . . . | 165 |
| Ձրիավարժ . . . . | 35 |

---

[1]) Երեք աստիճանի բաժանուած է թոշակների քանակութիւնն, հարուստներն տարեկան վճարում են 12 ր. միջակներն՝ 8, իսկ երրորդ դասակարգն 4 րուբլի։



Digitized by Google

Նոյն են արդեանց աղբիւրներն
Վեց վարժապետաց և երկու վարժուհեաց
տարեկան ռոճիկ . . . . . 3250 ր.
Փայտի, տան վարձուց, ծառայի և սպասուհու 300

Ընդ ամեն 3550 ր.

Քաղաքումս կայ նաև Բէալական գիմնազիա. քաղաքական ուսումնարան և Օրիորդաց վարժարան։

*Քամու խաչ*

Քաղաքիս ստորին մասում, Թրքաց թաղում` կայ մի հին քարեայ խաչ, որ կոչւում է *Քամու խաչ*, այս է յօղացաւ *հիւանդութիւնը բժշկող խաչ*։ Ուխտագնացութեան օրն է աւագ—չորեքշաբթի։ Այս օր առաւօտեանից մինչև երեկոյ անպակաս է ուխտաւորն և այն խուռն բազմութեամբ։

*Նահատակ*

Քաղաքում եղած Հին—Հանգստարանի վարի կողմին մօտ կայ մի գերեզման, որ կոչւում է *Նահատակ*: Սորա տապանաքարի վերայ գրուած է. «Այս է տապան Թիփլիսեցի Նահատակ Անտոնին ՌՄԽԴ. ին։ Ես Թիփլիսեցի Սիմոնի որդի Սարկիս այս քարս հոկացի սէրս Նահատակին»։

*Հանգստարանիս հարաւային կողմում*

«Ցարձմնիս չիրմի ամփոփեալ դնի
Մարմին իշխանին Խաչեն գաւառի,
Վեհ իշխանազնեայ Դանիէլ Բէկի
Որդւոյ Մէլիք Բէկ իշխանապետի,
Ի տանէ հայկազն մեծ Ջալալ Դօլի
Տեառն Արցախայ Հայոց աշխարհի,
Որ Ղարապաղայ կամ Շուշւոյ նահանգ
Նա սովորաբար արդ վերաձայնի,
Առ սուրբ հաւատոյ սա լուսահոգի
Նահատակի աստ յամրոցիս Շուշի
Դառն տանջանօք Իմրահիմ խանի
Որ թշնամի էր Խաչին Քրիստոսի.
Ի ՌՄԽ. կանգնեաց զայս արձան

Վշտալի ուղին այս նահատակի
Բաղդասար արհին տէր Մետրապօլիտն
Հասան Ջալալեանց արմատ. հովուապետն
Աղուանից երկրին, որք հանդիպիք այժմ տապանի
Տուք հօրն և որդւոյն Աստուած ողորմին ի 1851»։

ԺԳ. ԽԱՉԵՆ ԳԱՒԱՌ. Սահմաններն են Գարգար գետակն, Քիրս լեռնաշղթայի շարունակութեան գագաթնագիծն, Թարթառ գետն, որից մինչև Խաչեն գետակն ձգուած Արծաթահանքի սարի գագաթնագիծն, որ անցնում է Ղազանչի գիւղի արևմտեան կողմից. և դաշտաբերանն, Խաչեն գետակից մինչև Գարգար գետակն։

Ա. ՂԱՅԻԲԱԼԻ ԳԻՒՂ. Հիմնուած է Շուշու արևմտահիւսիսային հանդէպ, Գարգար գետակի ձախ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, գարնանի, հաճար, կորեկ, խաշխաշ, (հազիւ է բաւականանում իւրեանց ուտելոյ) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանայ երկու։ Ծուխ 78. ար. 320. իգ. 260։

Բ. ԿԱՐԿԱԺԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Ղայիբալու և Խանքենդու միջև մի բարձրահայեցիկ սեռի վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական, անջրդի, խճային և նուազ արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն (պատուական վարունկն, սակաւ թթենի) երկար կեանք 90—100. եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, քահանան գալիս է Ղայիբալուց։ Ծուխ 61. ար. 215. իգ. 190։

Գ. ԽԱՆ-ՔԵԱՆԴԻ ԱՒԱՆ. Հիմնուած մի տափարակի [1]) վերայ 1847 թուին Ռուսներից՝ իբրև զօրանոց։ Հետզհետէ հեռանում է զօրքն այստեղից և մնում են միայն ամուսնա-

[1]) Տափարակս պատկանում է Վարար-ակն գիւղի բնակչաց, որք փոխադրուած են Շուշի. բայց գիւղի աւերակն, քարուկիր եկեղեցին և հանգստարանն մնում են Խան-քեանդու հիւսիսային ձորակի ձախ լանջի վերայ Վարար-ակն աղբիւրի մօտ։

ցեալ ռուս գերդաստաններ, և սակաւ զինուորականներ և ղազախներ։ Շուշուց, Կարկաժան, Խանածախ, Պալլուճայ, Փահլուլ գիւղերից վաթսուն հայ գերդաստաններ գալով բնակում են այժմ Խան-քեանդում. ուր կայ փոշտ և գաւառական դատարան։ Բարեխառն է օդն և կլիման, բայց ոչ պատուական ջուրն, երկար կեանք 70—75. Հայոց եկեղեցին քարուկիր, անկնունք և անարձանագիր. քահանայ մի։ Ծուխ 60, ար. 160. իգ. 140։

Սուրբ Գէորգեան միդասեան ուսումնարան տղայոց. աշակերտ 35, թոշակառու 28, ձրիավարժ 7, տարեկան ռոճիկ ուսուցչի 200 րուբլի։

Դ. ՓԱՀԼՈՒԼ ՇԷՆ. Շինուած է Խան-քեանդու և Ջամիլլու շէնի միջև մի ձորում, որի հիւսիսային, արևմտեան և հարաւային կողմերն սարեր են. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, անվնաս օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին փոքրիկ, քարուկիր, քահանան գալիս է Խանածախ գիւղից։ 18 ծուխ, 66 ար. 42 իգ.

Ե. ՋԱՄԻԼԼՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Փահլուլի հիւսիս—արևմտեան կողմում, Խանածախի վտակի ձախ կողմում մի հովտի վերայ. բնակիչք տեղափոխուած են Մեծ-Սիւնիքից. Հողն բէկական, տեղական բերքերն նոյն։ բարեխառն օդն և կլիման, գերազանց ջուրն. երկար կեանք 90. Հոգևոր պէտքերն կատարուում են Խանածախի եկեղեցում։ Ծուխ 13. ար. 40. իգ. 31։

Զ. ԽԱՆԱԾԱԽ ԳԻՒՂ. Հիմնուած է Ջամիլլուի հիւսիս արևելեան կողմում մի բարակ ջրաձորի երկու ափերին վերայ, բնակիչք նախ Մեծ-Սիւնեաց Խանածախ գիւղից 1686-ին [1]) տեղափոխուում են Ջրաբերդ և յետոյ բնակութիւն հաստատում գիւղումս. Հողն բէկական, սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն (առատ է թթենի), օդն և կլիման բարեխառն, ջուրն պատուական, երկար կեանք 100,

[1]) Գաղտ. Ղար. եր. 119—121։ Գիւղիցս վերև Բեեռաթափ (Մխիթէօ-ւան) սարի բարձ. 6944 ոտք։

եկեղեցին Սուրբ Աստուածածին, հօյակապ, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 18 մետր. 82 սանթիմ, լայնութիւն 10 մետր 60 սանթիմ. քահանայ մի [1]։ Ծուխ 85. ար. 289 իգ. 274։

Եկեղեցումս կայ հետեւեալ գրչագրերն.

Մի գրչագիր ճաշոց գրուած ընտիր և հաստ թղթի վերայ, գերազանց են պատկերներն, նախշերն, ծաղիկներն, թռչնագրերն, ագնիւ ներկերն և ոսկեզօծներն։ Ունի Յիսուսի Քրիստոսի աւետման, ծննդեան, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, համբարձման, հոգեգալստեան (երկու պատկեր) Աստուածածնայ վերափոխման, սուրբ Խաչի և բոլոր տօնեցեալ նահապետաց, սուրբ մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, հայրապետաց, թագաւորաց, կուսանաց, ճգնաւորաց, Քրիստոսից բոլոր բժշկուածների պատկերները զետեղուած լուսանցքներում։

«Գիրքս, որ կոչի ճաշոց, յիշատակ է Առաքելին, հաւրն Ղուլուն, մաւրն Մարիամին, եղբայր Մարգարին և մեղապարտ գրչի Փիլիպոսին ի գիւղն Գոմորանց, ի դուռն սուրբ Հռիփսիմէին, որ է (Առաքելն) բարեպաշտ և սրբասէր, բարեբարոյ և առաքինասէր, հաւատարիմ և Աստուածասէր և ամենայն որբոց և այրեաց և կարօտելոց տէր և տիրական»։ Անյայտ է բուն յիշատակարանի թուականն բայց յետոյ նորոգել տուած են ճաշոցս գիւղիս ժողովուրդն և քահանան։

Մի գրչագիր աւետարան, որ գրուած է թղթի վերայ և պահուած անխնամ, որի ստացողն է. «յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զՄանուէլ փիլիսոփայն և զսրբազան քահանայն»։։ «Արդ գրեցաւ կենսաբեր սուրբ աւե-

[1]) Գիւղումս ծնուած է և գրքիս հեղինակն. գիւղիս հանգստարանում հանգչում են իմ պապ Քեանդխուտա-Խաչատուր Բարխուտարեանցն իւր չատ քաջերով, իմ հայր Գրիգոր, իմ մայր Եղիսաբէթ, իմ տատ Մարիամ, իմ հօրեղբարք Մկրտիչ, Սարգիս, Թէոս, իմ վաղաժամ եղբայր Ստեփան. բայց կենդանի են Աստուծոյ ամենակարող զօրութեամբ իմ մեծ եղբայր Կարապետն, փոքր եղբայր Յակովբն և իմ մեծ քոյրերս Անթառամն, Շահզատն և Հերիքնազն (վաղաժամ վախճանուած է Գեյլուճայում իմ միջակ քոյր Վառվառեան)։ Հանգիստ ոսկերաց Ձերոց սիրելիք իմ։

Digitized by Google

տարանս ձեռա . . . անիսի . . . . . . . թեանս [1]) Հայոց, ի տէրութեան Կիլիկեցւոց նահանգին երկրորդ Հեթմոյ բարեպաշտի 'ի դառն և յանբարի ժամանակիս, յորում զհայրապետական աթոռն ամենայն սրբութեամբն և զհայրապետն ժողովրդեամբն կորուսաք . . . . . Արդ դրեցաւ սուրբ աւետարանս ի մեծահռչակ սուրբ ուխտս Դրազարկ կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածինս»:

Գիւղիս անդերում կան հետեւեալ հնութիւններն—

1) Տհրատեղ (Տհարատեղ—քաղաքատեղ) գիւղիս հիւսիսային կողմում, երեք կողմերից առանձնացած, միջակ մեծութեամբ տեղ, որ այժմ հերկուում է: Ելնում են խեցեղէն բեկորներ, իսկ կանխաւ գտնուած է և արծաթ ու պղինձ դրամներ:

2) Վաղեմի հանգստարան անարձանագիր քարերով գիւղիս վերի գլխին: Հանգստարանիցս վերև մի բարձր բլրակի վերայ Նուղուրլուի խաչարձանն: Ծակ քար:

3) Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցու աւերակ կան Բանւոր—նան [2]) կոչուած տեղում, որ գտնուում է գիւղից կէս ժամ տեղ վերև մի գեղեցիկ սարահարթի վերայ. գիւղատեղի, խաչզարդ հանգստարան և եկեղեցու աւերակ Դրագետի [3]) ակունքներում, երկու առուակների խառնուրդում. Ջալալ-Հասանի [4]) գիւղատեղի, հանգստարան, որ սեփական գոմանոց եղած է Խանածախ գիւղացւոց 1790 թուականից վեր. նոյնպէս գիւղատեղի և հանգստարան Մլըկինց շէնատեղ կամ Գիւմրատեղ կոչուած վայրում, որ գտնուում է Պալլուճայ գետակի աջ կողմում Խանածախ և Պալլուճայ գիւղերի սահմանի վերայ:

Է. ՊԱԼԼՈՒՃԱՅ ԳԻՒՂ. Հիմնուած է համանուն գետակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք նախ Մեծ-Սիւնիքից տեղափոխուած Զրաբերդ գաւառն, որից ապա և այս-

---

[1]) Անյայտացած են կէտադրեալ բառերն և տառերն:

[2]) Այժմ ուխտատեղի է:

[3]) Խանածախ գիւղիս վտակի անունն է:

[4]) Այժմ Ջան-Հասան՝ ըստ կրճատման օրինաց Արցախի:

Digitized by Google

տեղ Խանածախ գիւղացւոց հետ, հողն բէկական, անջրդի և միջակ արդիւնաբեր. անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 86—90. եկեղեցին նորաշէն, Սուրբ Աստուածածին, համակ սրբատաշ կրաքարով շինուած հասարակութեան ծախքով կառուցեալ չորս սիւների վերայ, որ ունի մի կլոր գմբէթ ժողովրդեան աղօթած տեղից վերև, մի քարացեալ օձ ներքուստ հարաւային որմի վերայ երկու լուսամուտների մօտ, 20 մետր 10 սանթիմ երկարութիւն, 11 մետր 45 սանթիմ լայնութիւն. քահան. մի։ Ծուխ 160. ար. 550. իգ. 432։

*Գիւղիս անդերում կան հետեւեալ հնութիւններն.*

1) Գիւղիս հիւսիսային կողմում հին գիւղատեղի, հանգստարան և քարուկիր եկեղեցի Սուրբ Վանէս անուն, որ մեծ ուխտատեղի է և հանգստարան, որի մէջ հանգստանում են և Պալլուճեցի քաջերի ոսկերքներն։

2) Աւերակ գիւղատեղի և հանգստարան գիւղիս արևմտեան կողմում *Ալուխանայ շէն* անուն։

3) *Թամցի եղցի* (եկեղեցի) աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի այս անուամբ Ցռցագետ կոչուած վտակին աջ կողմում։

Ը. ՄԷՑՏԻ-ՇԷՆ. Հիմնուած է Պալլուճայի հիւսիսային կողմում լեռների մէջ մի ձորում. բնակիչք գաղթած են Խոյից 1828-ին հողն բէկական, տեղական բերքերն նոյն. անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, քարուկիր, քահանան գալիս է Պալլուճայից։ Ծուխ 54. ար. 186. իգ. 155։

Թ. ԴԱՀՐԱԻ [1]) ԳԻԻՂ. Հիմնուած է Մէյտի-շէնի արևմտեան կողմում մի բարձր, սեպացեալ քերծի տակ. բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն, պատուական օդն կլիման և ջուրն, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Յովհաննէս կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւն 17 մետր 40, լայնութիւն 8 մետր 60։ Դրան ճակատակալ քարի վերայ.

[1]) Գիւղիս գլխի սարի բարձ. 4606։

Digitized by Google

«Սրբոյն Հովաննու Կարապետին եկեղեցույն շինութիւնս այս է 1885 ամի»։ Ծուխ 110. ար. 430. իգ. 351։

Գիւղիս հիւսիս-արեւմտեան կողմում կայ երեք բեմ.

Ա. Հարաւային բեմի զոյգ խաչերի գլխակալ քարի վերայ. «Ի թվ. ՋԻԵ. ես Հասան որդի Վասակայ կանգնեցի զխաչս եղբաւր իմոյ Ջուրճին Ուքանայ ի փրկութիւն հոգւոյ. ով կարդէք, յիշեցէք ի Տէր»։

Բ. Բեմի վերայ, որ քարընկեց հեռի է առաջինից, փորագրուած է.

«Թիւ ՇԻ. ես Ոհան կանգնեցի զխաչս ինձ և ամուսին իմ Թիթեղնիկայ, աղաւթս յիշեցէք»։

Գ. Բեմն կիսակործան է, որ նոյնպէս քարընկեց հեռի է երկրորդից։

*Բռշնին-նահատակ* [1])

Ա. Բեմից փոքր ինչ վերև քերծի տակ մի բռշնի ծառի մօտ կայ մի գերեզման, որի վերայ շինուած է մի փոքրիկ սեղան։ Գերեզմանիս շուրջն պարսպուած է պատով, որի դրան գլխի քարի վերայ գրուած է.

«Սուրբ Նահատակին Փռշնին չորս կողմանն հասար քաշեցինք Անդրի, Ստեփան, Արզման Խսրայէլեանք»։

Ժ. ՊՏՐԵՑԻՔ [2]) Գիւղս հիմնուած է համանուն գետակի ձախ կողմում, մի ջրաձորի արևելեան ափում. դիրքն հարաւահայեաց, բնակիչք բնիկ, հողն բէկական. անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (առատ է ընկուզն և խոզ) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, թաղակապ երեք կամարների վերայ, երկարութիւն 16 մետր 75 սանթիմ, լայնութիւն 9 մետր 35 սանթիմ. քահանայ մի։ Դրան մօտ մի տապանի վերայ.

«Ազնիւ տապան Գաբրիէլ վարդապետին,
Որ է որդի Գրիգոր Այտինովին

[1]) Բռշնի ծառին մօտ եղած Նահատակ։

[2]) Պտրեցւոց սարի (Դրխզըզ) բարձր. 9324, գիւղից վերօ գետի ձախ կողմի սարի 5227։

Եւ էր հայր Սրգավաք Մովսէսին
Եւ տէր Յարութիւնին
Սա էր միաբան Յակոբա սրբո վանքին
Վախճանեցաւ 1860 ամի»։
Ծուխ 121. ար. 540. իգ. 442։

*Բերդ*. գիւղի հարաւային հանդէպ գետակի աջ կողմում մի լեռնակի գլխին փոքրիկ և հին բերդակ, որից գետնափոր ական կայ մինչև գետակն։

## *Ամենափրկիչ եկեղեցի.*

Գիւղի արևմտեան կողմում երկու ձորակի մէջ մի փոքր հարթակի վերայ, շինուած է անտաշ քարով երկու կամարների վերայ։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան. երկու խորհրդարան, երկու դուռն և չորս լուսամուտ. 11 մետր 3 սանթիմ երկարութիւն և 9 մետր 70 սանթիմ լայնութիւն և մի երկար գրութիւն բեմի ժողովրդահայեաց երեսին վերայ. սակայն ափսոս որ եղծուած է մեծ մասամբ. ընդօրինակում ենք մնացեալը.

«Յանուն..... զեկեղեցիս զԴարապաս Նկարաք......... Ուխանին Մեծունիքն. յիս ովին արդ ծննդեան Ը. աւր էր և աղուհացից տաներն և ի զատկէն ինն ու նոր կիրակին զպատարագն մեզ առնեն Դարապաս վաճառն Հուռահոա տներն եկեղեցւոյս»։

Արևմտեան դրան գլխին արտաքուստ մի սպիտակ խաչարձանի վերայ.

«Աթանաս է. նա կաթուղիկոս է Աշխարհին [1])»։ Մեծ հանգստարան պատած է տաճարիս շուրջն, որից փոքր ինչ հեռու կայ և գիւղատեղի։

Մեծ գիւղատեղի, հանգստարան և փոքր եկեղեցի կայ Պտրեցիք գիւղի հարաւային հանդէպ, ջրաձորի աջ հովտում։

## *Օձկայ վանք*

Ամենափրկչից դէպի արևմուտք՝ հիմնուած մի սարա-

---

[1]) Բառ արաբերէն, որ նշանակում է 4—չորս երկիրների վերայ կաթուղիկոս է։

հարթի վերայ, որի շրջապատն զառիվայր է։ Ունի փոքր դիրք և եկեղեցու ձև։ Վանքիս մօտ ևս կայ և հանգստարան և գիւղատեղի։

*Ծերայ Նհատակ*

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի կայ գիւղիցս քաւական ներքև գետի ձախ կողմում (գետիս վերի կողմն կոչւում է Պտրեցւոյ գետ, իսկ վարինն՝ Խօջալլուի գետ), որք միասին կոչւում են Ծերայ նհատակ։ Եկեղեցումս ամփոփուած է Տէր նահատակի մարմինն։

*Սուրբ Յովհաննէս Մկրտիչ*

Ծերայ նահատակից փոքր ինչ բարձր, նոյնպէս գետակի ձախ կողմում կայ գիւղատեղի, հանգստարան և քարուկիր փոքր եկեղեցի, որի գլուխն արդէն խոնարհած է։ Այս ամենն կոչւում է նաև Խրաւանդ։

*Դարապասի եկեղեցիներն*

Սուրբ Յովհաննէսից վերև կայ չորս քարուկիր մատուռ, որք շինուած են մօտ առ մօտ, կայ և գիւղատեղի և հանգստարան։

*Օխտը (եօթն) եղցի*

Նոյն գետակի աջ կողմում մի սարահարթի վերայ մօտ առ մօտ շինուած են եօթն եկեղեցիներ, որոց մօտ կայ գիւղատեղի և հանգստարան։

ԺԱ. ԽԱՆՑՔ ԳԻՒՂ. Հիմնուած է Պտրեցիք գիւղի հիւսիսային կողմում մի հարաւահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական և նուազ արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. քահանան գալիս է Դաշ-Բուլաղից. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, կամարակապ, երկարութիւն 19 մետր 52 սանթիմ, լայնութիւն 8 մետր 95 սանթիմ։

*Դրան ճակատակալ քարի վերայ.*

«Ի ՌԾԻԲ. թվին ես Պետրոս կաթուղիկոս Աղուանից ի գեղջէս Խանցկայ, հայրն իմ Մանկասար, մայրն Աղխանն և աւագ եղբայրն իմ Իշխանն և իւր որդիքն Ովանէսն, Պապա-

Digitized by Google

ջանն և իւր Թոռ Մանկասարն և տատ Խաթունն շինեցաք զե-կեղեցիս յիշատակ մեզ և ննջեցելոց մերոց»։

Եկեղեցուս հիւսիսային կողմում.

«Թւին ՈՀԹ (1230) ես Հայրապետ, Պետրոս, Վարդան. Ցոհան կանգնեցաք զխաչս մաւրն մեր, որ բարեպաշտ, աղքա-տասէր էր. յաղաւթս յիշեցէք»։ Ծուխ 60. ար. 233, իգ. 191։

Ջոխտակ խաչ

Գիւղիս հարաւային կողմում, ճանապարհի վերայ, մեծ ծառերի տակ կայ երկու մեծ քարեայ խաչարձան, որից մի-այն վերայ.

«Ցանուն Սուրբ Երրորդութեան ես Սոստանէս ու Բարսեղ կանգնեցաք զխաչս հաւր մերոյ Հայրապետայ և մաւրն մերոյ Հոռամսիմին, որք երկրպագէք, յաղաւթս ՉԲ. (1253)»։

Սուրբ Ցովհաննէս

Ջոխտակ—խաչերից ներքև, առուակի ձախ կողմում քա-րուկիր շինուած մատուռ, որի մօտ կայ և հանգստարան։ Կայ հանգստարան նաև վարդապետի Խութում։

Անապատ

Գիւղիս արևմտեան կողմում Եաշղան խութի ստորոտում կայ մի քարուկիր մատուռ Անապատ անուն, երկու մեծ հան-գստարան և երկու գիւղատեղի։

**ԺԲ. ԴԱՇ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ.** Շինուած է Խանձքի արևե-լեան—հիւսիսային կողմում մի ձորակի աջ կողմում, հիւսի-սահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, ան-ջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն (կան և ձիթահան-քեր) ամրան՝ ճնշիչ օդն և կլիման, ջուրն անվնաս, երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, կա-ռուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւն 17 մետր 34 սանթիմ, լայնութիւն 8 մետր 45 սանթիմ. քահանայ մի։ Ծուխ 136. ար. 577. իգ. 547։

Սուրբ Մեսրովբեան միդասեան տղայոց ուսումնարան, աշակերտ 26, Թոշակառու 16, ձրիավարժ 10. միամեայ ռո-ճիկ վարժապետի 300 րուբլի։

**ԺԳ. ՀԻԼԻՍ ԳԻՒՂ.** Շինուած է Դաշ-Բուլաղի արևմտա-հիւսիս կողմում երկու առուակների ջրախառնուրդում. բնա-կիչք գաղթած Ղարադաղ նահանգից. հողն բէկական, միջակ

Digitized by Google

արգիւնաբեր, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, քարուկիր, քահանայ երկու։ Ծուխ 50. ար. 165. իգ. 130։

ԺԴ. ԽՆՁԻՐՍՏԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Հիլիսի արեւմտահիւսիս կողմում (ոչ այնքան հեռի, Հիլիսի հիւսիսային փտակի վերայ) դիրքն հարաւահայեաց լանջ. հողն արքունի, անջրդի և նուազ արգիւնաբեր, տեղական բերքերն միևնոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ։ Ունի 16 մետր 62 սանթիմ երկարութիւն և 10 մետր լայնութիւն, մի փոքր կաթուղիկէ, 2 քահանայ և դրան ճակատակալ քարին վերայ սոյն արձանագրութիւնը.

«ՌՄԳ. յիշատակ է Սուրբ Աստուածածին եկեղեցիս Խօնձրուստանցի Մէլիք Մէզախանին և ծնողացն Այտինին և Մարիանին և կողակցուն պարուն Նանին և Հերիքին և որդուն Ալայվերտին»։

«Յիշատակ է Սրանոցս (Ձիթահանքս) շինեցաւ Մէլիք Ալահվերտին, որ էր որդի Մէլիք Միրզայխանին, թվ. ՌՄԼԱ»։ Ձիթահանքս, որ գրեթէ կից է եկեղեցուս արեւմտեան կողմին, աւերակ է այժմ։

*Եկեղեցուս հարաւային պատի տակին արտաքուստ.*

«Կամաւն Աստուծոյ ամենազօրին, այս է տապան Մէլիք Միրզախանին, որ է որդի Այտինին, հայր էր Մէլիք Ալավերտին, իշխանութիւն անէր Խաչենու երկրին, որ մասկան Նստաւ Խնծրստանայ գեղին, շինեց յիշատակ Աստուածածնայ սուրբ եկեղեցին ամի վախճանեցաւ ՌՄԻՁ. թուականին»։

Այստեղ են Մէլիք-Ալլահվերտու և Մէլիք-Ղահրամանի գերեզմաններն ևս։ Բայց ըստ Գաղտնիք Ղարաբաղու սոքա չեն ի շարս հարազատ մէլիքների, այլ ծըռ մելիքներ են։ Ծուխ 90. ար. 227. իգ. 255։

*Հանգած եղցի*

Այսպէս է կոչւում այն եկեղեցու աւերակն, որ կայ

գիւղիս սարրոտում։ Աւերակիս շուրջն ընդարձակ հանգստարան է՝ լի հին ամփոփեալներով։ Մի քարեայ խաչարձանից.

«Ես Դաւիթ կանգնեցի գխաչս իմ ծնողաց թվ. ՇԵ.»։

*Աւերակ եկեղեցու հիւսիսային կողմում.*

«Այս է տապան Մեծ շինայցի Տէր Սարգիսի դուստր Մարեանին, որ էր կողակից Բալի որդի Խսամին, որ է եղբար ուզպաշի Պողոսին, որ էր առաչ Զալաղան ուզպաշին հարսն էր. սորայ համար շատ մուվայտի [1]) վեր իկաց, յետով մենք բերինք. թվ. ՌՃՁԶ. օվ որ կարդայ. Աստուած ողորմի ասէ»։

ՊՊԷՆ ՇԷՆ (Պապուն շէն)

Աւերակ գիւղատեղի է այս, որը այժմ Խնձիրստանցիք փոխած են Գոմեր որոց մօտ կայ և հանգստարան։

*Սուլուլ քար*

Գիւղիցս վերև մի բլրի վերայ կայ մի մարդաձև քար, որ ունի իւր գլխին վերայ կաթսայի ձևով մի այլ քար։ Աւանդութիւնն այս քարի մասին տալիս է հետևեալ տեղեկութիւնը.

«Թաթարների տիրապետութեան ժամանակ հայ կին ոմն եփում է կերակուր, պատրաստում հաց, դնում գլխին կերակրով լի կաթսան, որ տանէ և կերակրէ գութանաւորները [2])։ Հազիւ թէ հասնում է կէս ճանապարհ, մի քանի Թաթարներ ընկնում են խեղճ կնոջ ետևից և հետապնդում որ հասնեն և բռնեն։ Որքան կարողութիւնն հասնում (որքան կարողանում է) է, վազում է խեղճ կինն, յետոյ ճարահատեալ դիմում է դէպի սարին գագաթն, բայց որովհետև իւր գլխին վերայ է լինում կերակրով լի ծանր կաթսան և չէ կամենում թափել կերակուրը և միւս կողմից հասուահաս [3]) էին անիրաւ Թաթարներն, վասնորոյ ի բոլոր սրտէ խնդրում է Աստուածանից քարանալ, միայն թէ չընկնել պիղծ Թաթարների ձեռքն. իսկոյն քարանում է կաթսայով միասին և մնում մինչև ցայսօր»։

---

[1]) Նշանակում է՝ շատերն հետամուտ էին կին առնել այս հարսը։

[2]) Այժմ եւս կայ այս սովորութիւնն։

[3]) Բառ տեղական, որ նշանակում է հ ա ս ն ե լ ո ւ վ ե ր ա յ է ի ն, չորս կամ հինգ քայլ մնացած էր, որ հասնէին կնոջ ետևից։

Digitized by Google

Նոյն են արդեանց աղբիւրներն
Վեց վարժապետաց և երկու վարժուհեաց
տարեկան ռոճիկ . . . . 3250 ր.
Փայտի, տան վարձուց, ծառայի և սպասուհու 300

Ընդ ամեն 3550 ր.

Քաղաքումս կայ նաև Րէալական գիմնազիա. քաղաքական ուսումնարան և Օրիորդաց վարժարան։

*Քամու խաչ*

Քաղաքիս ստորին մասում, Թրքաց Թաղում՝ կայ մի հին քարեայ խաչ, որ կոչուում է Քամու խաչ, այս է յօղացաւ հիւանդութիւնը բժշկող խաչ։ Ուխտագնացութեան օրն է աւագ—չորեքշաբթի։ Այս օր առաւօտեանից մինչև երեկոյ անպակաս է ուխտաւորն և այն խուռն բազմութեամբ։

*Նահատակ*

Քաղաքում եղած Հին—Հանգստարանի վարի կողմին մօտ կայ մի գերեզման, որ կոչուում է Նահատակ։ Սորա տապանաքարի վերայ գրուած է. «Այս է տապան Թիփլիսեցի Նահատակ Անտօնին ՌՄԽԴ. ին։ Ես Թիփլիսեցի Սիմոնի որդի Սարկիս այս քարս հոկացի սէրս Նահատակին»։

*Հանգստարանիս հարաւային կողմում*

«Ցարձանիս շիրմի ամփոփեալ դնի
Մարմին իշխանին Խաչեն գաւառի,
Վեհ իշխանազնեայ Դանիէլ Բէկի
Որդւոյ Մէլիք Բէկ իշխանապետի,
Ի տանէ հայկազն մեծ Ջալալ Դօլի
Տեառն Արցախայ Հայոց աշխարհի,
Որ Ղարապաղայ կամ Շուշւոյ նահանգ
Նա սովորաբար արդ վերաձայնի,
Առ սուրբ հաւատոյ սա լուսահոգի
Նահատակլի աստ յամրոցիս Շուշի
Դառն տանջանօք Իմրահիմ խանի
Որ Թշնամի էր Խաչին Քրիստոսի.
՚Ի ՌՄԽ. կանգնեաց զայս արձան

Digitized by Google

Վշտալի որդին այս նահատակի
Բաղդասար արհին տէր Մետրապօլիտն
Հասան Ջալալեանց արթուն հովուապետն
Աղուանից երկրին, որք հանգիպիք այսմ տապանի
Տուք հօրն և որդւոյն Աստուած ողորմին ի 1851»։

ԺԳ. ԽԱՉԵՆ ԳԱՒԱՌ. Սահմաններն են Գարգար գետակն, Քիրս լեռնաշղթայի շարունակութեան գագաթնագիծն, Թարթառ գետն, որից մինչև Խաչեն գետակն ձգուած Արծաթահանքի սարի գագաթնագիծն, որ անցնում է Ղազանչի գիւղի արևմտեան կողմից. և դաշտաբերանն, Խաչեն գետակից մինչև Գարգար գետակն։

Ա. ՂԱՅԻԲԱԼԻ ԳԻՒՂ. Հիմնուած է Շուշու արևմտահիւսիսային հանդէպ, Գարգար գետակի ձախ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, գարնանի, հաճար, կորեկ, խաշխաշ, (հազիւ է բաւականանում իւրեանց ուտելոյ) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, քահանայ երկու։ Ծուխ 78. ար. 320. իգ. 260։

Բ. ԿԱՐԿԱԺԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Ղայիբալու և Խանքեանդու միջև մի բարձրահայեցիկ սեռի վերայ. բնակիչք բնիկ. հողն բէկական, անջրդի, խճային և նուազ արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն (պատուական վարունկն, սակաւ թթենի) երկար կեանք 90—100. եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր, քահանան գալիս է Ղայիբալուց։ Ծուխ 61. ար. 215. իգ. 190։

Գ. ԽԱՆ-ՔԵԱՆԴԻ ԱՒԱՆ. Հիմնուած մի տափարակի [1] վերայ 1847 թուին Ռուսներից՝ իբրև զօրանոց։ Հետզհետէ հեռանում է զօրքն այստեղից և մնում են միայն ամուսնա-

[1] Տափարակս պատկանում է Կարար-ակն գիւղի բնակչաց, որք փոխադրուած են Շուշի. բայց գիւղի աւերակն, քարուկիր եկեղեցին և հանգստարանն մնում են Խան-քեանդու հիւսիսային ձորակի ձախ լանջի վերայ Կարար-ակն աղբիւրի մօտ։

Digitized by Google

*ցեալ ռուս գերդաստաններ, և սակաւ զինուորականներ և ղազախներ։ Նուշուց, Կարկաժան, Խանածախ, Պայլուճայ, Փահլուլ գիւղերից վաթսուն հայ գերդաստաններ գալով բնակում են այժմ Խան-քենդում. ուր կայ փոշտ և գաւառական դատարան։ Բարեխառն է օդն և կլիման, բայց ոչ պատուական ջուրն, երկար կեանք* 70—75. *Հայոց եկեղեցին քարուկիր, անկնունք և անարձանագիր. քահանայ մի։ Ծուխ* 60, *ար.* 160. *իգ.* 140։

*Սուրբ Գէորգեան միդասեան ուսումնարան տղայոց. աշակերտ* 35, *թոշակատու* 28, *ձրիավարժ* 7, *տարեկան ռոճիկ ուսուցչի* 200 *րուբլի*։

Դ. ՓԱՀԼՈՒԼ ՏԷՆ. *Շինուած է Խան-քենդու և Ջամիլլու շինի միջև մի ձորում, որի հիւսիսային, արևմտեան և հարաւային կողմերն սարեր են. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, անվնաս օդն և կլիման, պատուական ջուրն, երկար կեանք* 85, *եկեղեցին փոքրիկ, քարուկիր, քահանան գալիս է Խանածախ գիւղից*։ 18 *ծուխ*, 66 *ար.* 42 *իգ.*

Ե. ՋԱՄԻԼԼՈՒ ՏԷՆ. *Հիմնուած է Փահլուլի հիւսիս—արևմտեան կողմում, Խանածախի վտակի ձախ կողմում մի հովտի վերայ. բնակիչք տեղափոխուած են Մեծ-Սիւնիքից. հողն բէկական, տեղական բերքերն նոյն։ բարեխառն օդն և կլիման, գերազանց ջուրն. երկար կեանք* 90. *հոգևոր պէտքերն կատարուում են Խանածախի եկեղեցում։ Ծուխ* 13. *ար.* 40. *իգ.* 31։

Զ. ԽԱՆԱԾԱԽ ԳԻՒՂ. *Հիմնուած է Ջամիլլուի հիւսիս արևելեան կողմում մի բարակ ջրաձորի երկու ափերին վերայ, բնակիչք նախ Մեծ-Սիւնեաց Խանածախ գիւղից* 1686-*ին* [1]) *տեղափոխուում են Ջրաբերդ և յետոյ բնակութիւն հաստատում գիւղումս. հողն բէկական, սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն (առատ է թթենի), օդն և կլիման բարեխառն, ջուրն պատուական, երկար կեանք* 100,

[1]) *Գաղտ. Ղար. եր.* 119—121։ *Գիւղիցս վերև Բևեռաթափ (Մխիթէօքեան) սարի բարձ.* 6944 *ոտք*։

եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 18 մետր. 82 սանթիմ, լայնութիւն 10 մետր 60 սանթիմ. քահանայ մի [1]։ Ծուխ 85. ար. 289 իգ. 274։

*Եկեղեցումս կայ հետեւեալ գրչագրերն.*

Մի գրչագիր ճաշոց գրուած ընտիր և հաստ թղթի վերայ, գեղազանց են պատկերներն, նախշերն, ծաղիկներն, թռչնագրերն, ազնիւ ներկերն և ոսկեզօծներն։ Ունի Յիսուսի Քրիստոսի աւետման, ծննդեան, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, համբարձման, հոգեգալստեան (երկու պատկեր) Աստուածածնայ վերափոխման, սուրբ Խաչի և բոլոր տօնեցեալ նահապետաց, սուրբ մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, հայրապետաց, թագաւորաց, կուսանաց, ճգնաւորաց, Քրիստոսից բոլոր բժշկուածների պատկերները զետեղուած լուսանցքներում։

«Գիրքս, որ կոչի ճաշոց, յիշատակ է Առաքելին, հայրն Ղուլուն, մայրն Մարիամին, եղբայր Մարգարին և մեղապարտ *գրչի Փիլիպոսին* ի գիւղն Գոմորանց, ի դուռն սուրբ Հռիփսիմէին, որ է (Առաքելն) բարեպաշտ և սրբասէր, բարեբարոյ և առաքինասէր, հաւատարիմ և Աստուածասէր և ամենայն որբոց և այրեաց և կարօտելոց տէր և տիրական»։ Անյայտ է բուն յիշատակարանի թուականն բայց յետոյ նորոգել տուած են ճաշոցս գիւղիս ժողովուրդն և քահանան։

*Մի գրչագիր աւետարան*, որ գրուած է թղթի վերայ և պահուած անխնամ, որի ստացողն է. «յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զՄանուէլ փիլիսոփայն և զսրբազան քահանայն»։։ «Արդ գրեցաւ կենսաբեր սուրբ աւե-

[1]) Գիւղումս ծնուած է և գրքիս հեղինակն. գիւղիս հանգստարանում հանգչում են իմ պապ Քեանդխուտա-Խաչատուր Բարխուտարեանցն իւր չատ քաջերով, իմ հայր Գրիգոր, իմ մայր Եղիսաբէթ, իմ տատ Մարիամ, իմ հօրեղբարք Մկրտիչ, Սարգիս, Թէոս, իմ վաղաժամ եղբայր Ստեփան. բայց կենդանի են Աստուծոյ ամենակարող զօրութեամբ իմ մեծ եղբայր Կարապետն, փոքր եղբայր Յակովբն և իմ մեծ քոյրերս Անթառամն, Շահզատն և Հերիքնազն (վաղաժամ վախճանուած է Գիւլլուճայում իմ միջակ քոյր Վառվառիան)։ Հանգիստ ոսկերաց Ձերոց սիրելիք իմ

Digitized by Google

տարանս ձեռա . . . անիսի . . . . . . . թեանս [1]) Հայոց, ի տէրութեան Կիւլիկեցւոց նահանգին երկրորդ Հեթմոյ բարեպաշտի 'ի դառն և յանբարի ժամանակիս, յորում զհայրապետական աթոռն ամենայն սրբութեամբն և զհայրապետն ժողովրդեամբն կորուսաք . . . . . Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի մեծահռչակ սուրբ ուխտս Դրազարկ կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածինն»։

Գիւղիս անդերում կան հետևեալ հնութիւններն—

1) Տհրատեղ (Տհարատեղ—քաղաքատեղ) գիւղիս հիւսիսային կողմում, երեք կողմերից առանձնացած, միջակ մեծութեամբ տեղ, որ այժմ հերկուում է։ Ելնում են խեցեղէն բեկորներ, իսկ կանխաւ գտնուած է և արծաթ ու պղինձ դրամներ։

2) Վաղեմի հանգստարան անարձանագիր քարերով գիւղիս վերի գլխին։ Հանգստարանից վերև մի բարձր բլրակի վերայ Նուղուրլուի խաչարձանն։ Ծակ քար։

3) Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցու աւերակ կան Բանուր—Նան [2]) կոչուած տեղում, որ գտնուում է գիւղից կէս ժամ տեղ վերև մի գեղեցիկ սարահարթի վերայ. գիւղատեղի, խաչազարդ հանգստարան և եկեղեցու աւերակ Դրագետի [3]) ակունքներում, երկու առուակների խառնուրդում. Ջալալ-Հասանի [4]) գիւղատեղի, հանգստարան, որ սեփական գոմանոց եղած է Խանածախ գիւղացւոց 1790 թուականից վեր. նոյնպէս գիւղատեղի և հանգստարան Մելիկենց շինատեղ կամ Գիւմրատեղ կոչուած վայրում, որ գտնուում է Պալլուճայ գետակի աջ կողմում Խանածախ և Պալլուճայ գիւղերի սահմանի վերայ։

Է. ՊԱԼԼՈՒՃԱՅ ԳԻՒՂ. Հիմնուած է համանուն գետակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք նախ Մեծ-Սիւնիքից տեղափոխուած Ջրաբերդ գաւառն, որից ապա և այս-

---

[1]) Անյայտացած են կէտագրեալ բառերն և տառերն։

[2]) Այժմ ուխտատեղի է։

[3]) Խանածախ գիւղիս վտակի անունն է։

[4]) Այժմ Ջան-Հասան՝ ըստ կրճատման օրինաց Արցախի։

տեղ Խանածախ գիւղացւոց հետ, հողն բէկական, անջրդի և միջակ արդիւնաբեր. անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 86—90. եկեղեցին նորաշէն, Սուրբ Աստուածածին, համակ սրբատաշ կրաքարով շինուած հասարակութեան ծախքով կառուցեալ չորս սիւների վերայ, որ ունի մի կլոր գմբէթ ժողովրդեան պօթած տեղից վերև, մի քարացեալ օձ ներքուստ հարաւային որմի վերայ երկու լուսամուտների մօտ, 20 մետր 10 սանթիմ երկարութիւն, 11 մետր 45 սանթիմ լայնութիւն. քահան. մի։ Ծուխ 160. ար. 550. իգ. 432։

*Գիւղիս անդերում կան հետեւեալ հնութիւններն.*

1) Գիւղիս հիւսիսային կողմում հին գիւղատեղի, հանգստարան և քարուկիր եկեղեցի Սուրբ Վանէս անուն, որ մեծ ուխտատեղի է և հանգստարան, որի մէջ հանգստանում են և Պալլուճեցի քաջերի ոսկերքներն։

2) Աւերակ գիւղատեղի և հանգստարան գիւղիս արևմտեան կողմում *Ալուխանայ շէն* անուն։

3) *Թամցի եղցի* (եկեղեցի) աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի այս անուամբ Ցռցագետ կոչուած վտակին աջ կողմում։

Ը. ՄԷՑՏԻ-ՇԷՆ. Հիմնուած է Պալլուճայի հիւսիսային կողմում լեռների մէջ մի ձորում. բնակիչք գաղթած են Խոյից 1828-ին հողն բէկական, տեղական բերքերն նոյն. անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, քարուկիր, քահանան գալիս է Պալլուճայից։ Ծուխ 54. ար. 186. իգ. 155։

Թ. ԴԱՀՐԱԻ [1]) ԳԻՒՂ. Հիմնուած է Մէյտի-շէնի արևմտեան կողմում մի բարձր, սեպացեալ քերծի տակ. բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն, պատուական օդն կլիման և ջուրն, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Յովհաննէս կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւն 17 մետր 40, լայնութիւն 8 մետր 60։ Դրան ճակատակալ քարի վերայ.

[1]) Գիւղիս գլխի սարի բարձ. 4606։

Digitized by Google

«Սրբոյն Հոյաննու Կարապետին եկեղեցույն շինութիւնս այս է 1885 ամի»։ Ծուխ 110․ ար․ 430․ իգ․ 351։

Գիւղիս հիւսիս-արեւմտեան կողմում կայ երեք բեմ․

Ա․ Հարաւային բեմի զոյգ խաչերի գլխակալ քարի վերայ․ «Ի թվ․ ՁԻԵ․ ես Հասան որդի Վասակայ կանգնեցի գլխաչս եղբաւր իմոյ Ջուրճին Ուքանայ ի փրկութիւն հոգւոյ․ ով կարդէք, յիշեցէք ի Տէր»։

Բ․ Բեմի վերայ, որ քարընկեց հեռի է առաջինից, փորագրուած է․

«Թիւ ՇԻ․ ես ՈՀան կանգնեցի զխաչս ինձ և ամուսին իմ Թիլթեղնիկայ, աղաւթս յիշեցէք»։

Գ․ Բեմն կիսակործան է, որ նոյնպէս քարընկեց հեռի է երկրորդից։

*Բուշնին-նահատակ* [1])

Ա․ Բեմից փոքր ինչ վերև քերծի տակ մի բուշնի ծառի մօտ կայ մի գերեզման, որի վերայ շինուած է մի փոքրիկ սեղան։ Գերեզմանիս շուրջն պարսպուած է պատով, որի դրան գլխի քարի վերայ գրուած է․

«Սուրբ նահատակին Փուշնին չորս կողմանն հասար քաշեցինք Անդրի, Ստեփան, Արզման Իսրայէլեանք»։

Ժ․ ՊՏՐԵՑԻՔ [2]) Գիւղս հիմնուած է համանուն գետակի ձախ կողմում, մի ջրաձորի արեւելեան ափում․ դիրքն հարաւահայեաց, բնակիչք բնիկ, հողն բէկական․ անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (առատ է ընկուզն և խոզ) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100․ եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, թաղակապ երեք կամարների վերայ, երկարութիւն 16 մետր 75 սանթիմ, լայնութիւն 9 մետր 35 սանթիմ․ քահանայ մի։ Դրան մօտ մի տապանի վերայ․

«Ազնիւ տապան Գաբրիէլ վարդապետին,
Որ է որդի Գրիգոր Այտինովին

---

[1]) Բուշնի ծառին մօտ եղած նահատակ։

[2]) Գարեգւոց սարի (Դրխըրզ) բարձր․ 9324, գիւղից վերօ գետի ձախ կողմի սարի 5227։

Եւ էր հայր Սրդավաք Մովսէսին
Եւ տէր Յարութիւնին
Սա էր միաբան Յակոբա սրբո վանքին
Վախճանեցաւ 1860 ամի»։
Ծուխ 121․ ար․ 540․ իգ․ 442։

*Բերդ*․ գիւղի հարաւային հանդէպ գետակի աջ կողմում մի լեռնակի գլխին փոքրիկ և հին բերդակ, որից գետնափոր ական կայ մինչև գետակն։

*Ամենափրկիչ եկեղեցի.*

Գիւղի արևմտեան կողմում երկու ձորակի մէջ մի փոքր հարթակի վերայ, շինուած է անտաշ քարով երկու կամարների վերայ։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան. երկու խորհրդարան, երկու դուռն և չորս լուսամուտ. 11 մետր 3 սանթիմ երկարութիւն և 9 մետր 70 սանթիմ լայնութիւն և մի երկար գրութիւն բեմի ժողովրդահայեաց երեսին վերայ. սակայն ափսոս որ եղծուած է մեծ մասամբ. ընդօրինակում ենք մնացեալը.

«Յանուն․․․․․ զեկեղեցիս զԴարապաս նկարաք․․․․․․․․ Ուխանին Մեծունիքն. յիս ավին արդ ծննդեան Ը. աւր էր և աղուհացից տաւներն և ի զատկէն ինձ ու նոր կիրակին զպատարագն մեզ առնեն Դարապաս վաճառն Հուռահոա տներն եկեղեցւոյս»։

Արևմտեան դրան գլխին արտաքուստ մի սպիտակ խաչարձանի վերայ.

«Ալթանաս է. նա կաթուղիկոս է Արբային [1])»։ Մեծ հանգստարան պատած է տաճարիս շուրջն, որից փոքր ինչ հեռի կայ և գիւղատեղի։

Մեծ գիւղատեղի, հանգստարան և փոքր եկեղեցի կայ Պտրեցիք գիւղի հարաւային հանդէպ, ջրաձորի աջ հովտում։

*Օձկայ վանք*

Ամենափրկչից դէպի արևմուտք՝ հիմնուած մի սարա-

---

[1]) Բառ արաբերէն, որ նշանակում է 4—չորս երկիրների վերայ կաթուղիկոս է։

հարթի վերայ, որի շրջապատն զառիվայր է։ Ունի փոքր դիրք և եկեղեցու ձև։ Վանքիս մօտ ևս կայ և հանգստարան և գիւղատեղի։

*Ծերայ Նհատակ*

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի կայ գիւղիցս քաւական ներքև գետի ձախ կողմում (գետիս վերի կողմն կոչւում է Պտրեցւոյ գետ, իսկ վարինն՝ Խօջալլուի գետ), որք միասին կոչւում են Ծերայ Նհատակ։ Եկեղեցումս ամփոփուած է Տէր Նահատակի մարմինն։

*Սուրբ Յովհաննէս Մկրտիչ*

Տերայ Նահատակից փոքր ինչ բարձր, նոյնպէս գետակի ձախ կողմում կայ գիւղատեղի, հանգստարան և քարուկիր փոքր եկեղեցի, որի գլուխն արդէն խոնարհած է։ Այս ամենն կոչւում է նաև Խրաւանդ։

*Դարապասի եկեղեցիներն*

Սուրբ Յովհաննէսից վերև կայ չորս քարուկիր մատուռ, որք շինուած են մօտ առ մօտ, կայ և գիւղատեղի և հանգստարան։

*Օխտը (եօթն) եղցի*

Նոյն գետակի աջ կողմում մի սարահարթի վերայ մօտ առ մօտ շինուած են եօթն եկեղեցիներ, որոց մօտ կայ գիւղատեղի և հանգստարան։

ԺԱ. ԽԱՆՁՔ ԳԻՒՂ. Հիմնուած է Պտրեցիք գիւղի հիւսիսային կողմում մի հարաւահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական և նուազ արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. քահանան գալիս է Դաշ-Բուլաղից. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, կամարակապ, երկարութիւն 19 մետր 52 սանթիմ, լայնութիւն 8 մետր 95 սանթիմ։

*Դրան ճակատակալ քարի վերայ.*

«Ի ՌԾԻԲ. [թ]վին ես Պետրոս կաթուղիկոս Աղուանից ի գեղջէս Խանցկայ, հայրն իմ Մանկասար, մայրն Աղխանն և աւագ եղբայրն իմ Իշխանն և իւր որդիքն Ովանէսն, Պապա-

ջանն և իւր Թոռ Մանկասարն և տատ Խաթունն շինեցաք զե-կեղեցիս յիշատակ մեզ և ննջեցելոց մերոց»։

*Եկեղեցու հիւսիսային կողմում*.

«Թվին ՈՀԹ (1230) ես Հայրապետ, Պետրոս, Վարդան. Ցոհան կանգնեցաք զխաչս մաւրն մեր, որ բարեպաշտ, աղքա-տասէր էր. յաղաւթս յիշեցէք»։ Տուխ 60. տր. 233, էջ. 191։

*Ջոխտակ խաչ*

Գիւղիս հարաւային կողմում, ճանապարհի վերայ, մեծ ծառերի տակ կայ երկու մեծ քարեայ խաչարձան, որից մի-ոյն վերայ.

«Ցանուն Սուրբ Երրորդութեան ես Սոստանէս ու Բարսեղ կանգնեցաք զխաչս հաւր մերոյ Հայրապետայ և մաւրն մերոյ Հոռամսիմին, որք երկրպագէք, յաղաւթս ՉԲ. (1253)»։

*Սուրբ Յովհաննէս*

Ջոխտակ—խաչերից ներքև, առուակի ձախ կողմում քա-րուկիր շինուած մատուռ, որի մօտ կայ և հանգստարան։ Կայ հանգստարան նաև վարդապետի Խութում։

*Անապատ*

Գիւղիս արևմտեան կողմում Եաշլան խութի ստորոտում կայ մի քարուկիր մատուռ Անապատ անուն, երկու մեծ հան-գստարան և երկու գիւղատեղի։

ԺԲ. ԴԱՇ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ. Շինուած է Խանձքի արևե-լեան—հիւսիսային կողմում մի ձորակի աջ կողմում, հիւսի-սահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, ան-ջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն (կան և ձիթահան-քեր) ամրան՝ ճնշիչ օդն և կլիման, ջուրն անվնաս, երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, կա-ռուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւն 17 մետր 34 սանթիմ, լայնութիւն 8 մետր 45 սանթիմ. քահանայ մի։ Տուխ 136. ար. 577. էջ. 547։

Սուրբ Մեսրոպեան միդասեան տղայոց ուսումնարան, աշակերտ 26, Թոշակառու 16, ձրիավարժ 10. միամեայ ռո-ճիկ վարժապետի 300 րուբլի։

ԺԳ. ՀԻԼԻՍ ԳԻՒՂ. Շինուած է Դաշ-Բուլաղի արևմտա-հիւսիս կողմում երկու առուակների ջրախառնուրդում. բնա-կիչք գաղթած Ղարադաղ նահանգից. հողն բէկական, միջակ

Digitized by Google

արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 85—90. եկեղեցին Սուրբ Յով-հաննէս, քարուկիր, քահանայ երկու։ Ծուխ 50. ար. 165. իգ. 130։

ԺԴ. ԽՆՁԻՐՍՏԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Հիլիսի արևմտա-հիւսիս կողմում (ոչ այնքան հեռի, Հիլիսի հիւսիսային փոա-կի վերայ) դիրքն հարաւահայեաց լանջ. հողն արքունի, ան-ջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն միևնոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 100. եկե-ղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ։ Ունի 16 մետր 62 սանթիմ երկարութիւն և 10 մետր լայնութիւն, մի փոքր կաթուղիկէ, 2 քահանայ և դրան ճակատակալ քարին վերայ սոյն արձանագրութիւնք.

«ՌՄԳ. յիշատակ է Սուրբ Աստուածածին եկեղեցիս Խօնձ-րուստանցի Մէլիք Մէզախանին և ծնողացն Այտինին և Մա-րիանին և կողակցուն պարուն Նանին և Հերիքին և որդուն Ալայվերտին»։

«Յիշատակ է Սրանոցս (Զիլթահանքս) շինեցաւ Մէլիք Ալահվերտին, որ էր որդի Մէլիք Միրզայխանին, թվ. ՌՄԼԱ»։ Զիլթահանքս, որ գրեթէ կից է եկեղեցուս արևմտեան կող-մին, աւերակ է այժմ։

*Եկեղեցուս հարաւային պատի տակին արտաքուստ.*

«Կամաւն Աստուծոյ ամենազօրին, այս է տապան Մէլիք Միրզախանին, որ է որդի Այտինին, հայր էր Մէլիք Ալավեր-տին, իշխանութիւն անէր Խաչենու երկրին, որ մասկան նստաւ Խնձրստանայ գեղին, շինեց յիշատակ Աստուածածնայ սուրբ եկե-ղեցին ամի վախճանեցաւ ՌՄԻՁ. թուականին»։

Այստեղ են Մէլիք-Ալլահվերտու և Մէլիք-Ղահրամանի գերեզմաններն ևս։ Բայց ըստ Գաղտնիք Ղարաբաղու սոքա չեն ի շարս հարազատ մէլիքների, այլ ծըռ մելիքներ են։ Ծուխ 90. ար. 227. իգ. 255։

*Հանգած եղցի*

Այսպէս է կոչուում այն եկեղեցու աւերակն, որ կայ

Digitized by Google

գիւղիս ստորոտում։ Աւերակիս շուրջն ընդարձակ հանգստա-
րան է՝ լի հին ամփոփեալներով։ Մի քարեայ խաչարձանից.

«Ես Դաւիթ կանգնեցի գխաչս իմ ծնողացն թվ. ՇԵ.»։

*Աւերակ եկեղեցու հիւսիսային կողմում.*

«Այս է տապան Մեծ չինայցի Տէր Սարգսի դուստր Մա-
րեանին, որ էր կողակից Բալի որդի Իսամին, որ է եխբար
ուզպաշի Պողոսին, որ էր առաչ Ջալաղան ուզպաշին հարսն
էր. սորայ համար չատ մուվայտի [1]) վեր իկաց, յետով մենք
բերինք. թվ. ՌԾՁՋ. օվ որ կարդայ. Աստուած ողորմի տայ»։

ՊՊԷՆ ՇԷՆ (Պապուն շէն)

Աւերակ գիւղատեղի է այս, որը այժմ Խնձիրստանցիք
փոխած են Գոմեր որոց մօտ կայ և հանգստարան։

*Սուլուլ քար*

Գիւղէցս վերև մի բլրի վերայ կայ մի մարդաձև քար,
որ ունի իւր գլխին վերայ կաթսայի ձևով մի այլ քար։ Աւան-
դութիւնն այս քարի մասին տալիս է հետևեալ տեղեկութիւնը.

«Թաթարների տիրապետութեան ժամանակ հայ կին ոմն
եփում է կերակուր, պատրաստում հաց, դնում գլխին կերակրով
լի կաթսան, որ տանէ և կերակրէ դուլթանուորները [2])։ Հա-
գիւ թէ հասնում է կէս ճանապարհ, մի քանի Թաթարներ
ընկնում են խեղճ կնոջ ետևից և հետապնդում որ հասնեն և
բռնեն։ Որքան կարողութիւնն հասնում (որքան կարողանում է)
է, վազում է խեղճ կինն, յետոյ ճարահատեալ դիմում է դէպի
սարին գաղաթն, բայց որովհետև իւր գլխին վերայ է լինում
կերակրով լի ծանր կաթսան և չէ կամենում թափել կերա-
կուրը և միւս կողմից հասուահաս [3]) էին անիրաւ Թաթար-
ներն, վասնորոյ ի բոլոր սրտէ խնդրում է Աստուածանից քա-
րանալ, միայն թէ չընկնիլ պիղծ Թաթարների ձեռքն. իսկոյն
քարանում է կաթսայով միասին և մնում մինչև ցայսօր»։

[1]) Նշանակում է՝ շատերն հետամուտ էին կին առնել այս հարսը։
[2]) Այժմ են կայ այս սովորութիւնն։
[3]) Բառ տեղական, որ նշանակում է հասնելու վերայ էին, չորս կամ հինգ քայլ մնացած էր, որ հասնէին կնոջ ետևից։

Digitized by Google

ԺԵ. ՍԷՅՏԻ ՇԷՆ. Հիմնուած է Խնձիրստան գիւղի արեւմտահիւսիս կողմում այն ճանապարհի վերայ, որ բանում է Շուշուց Գանձասար. բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Յովհաննէս, քարուկիր, յիշատակ Շուշեցի Մահտեսի Բալայ Զաքարեանցին, բայց վտանգաւոր կերպով վնասուած, քահանան գալիս է Խնձիրստանից։ Ծուխ 45. ար. 195. իգ. 175։

ԺԶ. ՈՒԼՈՒ-ՊԱՊ ՇԷՆ. Հիմնուած է 1855 թուին Սէյտի-շէնի հիւսիսային կողմում մի սարի հարթակի վերայ. բնակիչք, որ հաւաքուած են մերձակայ գիւղերից, նախ բնակած են Խաչէն գետակի աջ ափի մօտ, ապա օդի ծանրութեան պատճառաւ բարձրացած են սարահարթս, հողն վանքապատկան և հացաւէտ, տեղական բերքերն նոյն (չ'ունին թթենի և պարտէզ), գերազանց օդն, կլիման և ջուրն, եկեղեցին է Պտգեսբերք (Պտկի սուրբ Գէորգ) վանքն, որ է շինիս արեւլեան հանդէպ բարձրագոյն սարի գագաթի վերայ։ Ծուխ 20. ար. 60. իգ. 58։

## ՊՏԳԵՍԲԵՐՔ ՎԱՆՔ (մօտ 4900 ոտք) (18).

Արդէն իմացանք որ Պտկի Սուրբ Գէորգ էր վանքիս անունն, որի սարի գագաթն բարձր է Խաչէն գաւառի բոլոր գիւղաբնակ սարերից։ Վանքս ունի միեւնոյն ձեւը և գրեթէ նոյն իսկ մեծութիւնը, ինչ որ ունի Գտչայ վանքն. մինչեւ քարերի գոյնն, կարծրութեան աստիճանն, ճարտարապետութեան ոճն նոյն և նման են միմեանց։ Տարբերութիւնն այն է միայն, որ բարձր և սրածայր է Գտչայ կաթուղիկէն և ունի հին գաւիթ, իսկ ցածր է Ս. Գէորգիս կաթուղիկէն և չունի գաւիթ։ Վանքիս դասումն կայ մի փոքր գերեզման, որի մասին աւանդութիւնն ասում է թէ սոյն ամփոփեալն մահմետականի որդի է լինում. քանիցս սա իւր ծնողաց հետ գալիս է ուխտի վանքս։ Բայց որովհետեւ չ'բերք են լինում

Digitized by Google

ծնողներն և ուխտով խնդրած այս զաւակն, վասն որոյ որդին թողնում է իւր ծնողները և յաճախ դիմում վանքս և շաբաթներով աղօթում վանքումս։ Քանիցս գալիս է հայրն և իւր տուն տանում իւր որդին, սակայն կրկին և կրկին փախչում է որդին և մտնում վանքս։ Վերջապէս հայրն՝ ձանձրանալով որդու արարմունքից և չ'կամենալով քրիստոնեայ տեսնել իւր որդին, գալիս է վանքս, համոզում որդին տուն տանելու։ Իսկ որդին չկամենալով բնաւ տուն գնալ, մտնում է տաճարումս և չէ դուրս գալիս, հասնում է զայրացած հայրն և նահատակում այժմեան գերեզմանի տեղում, որի մարմինը ամփոփելով այս իսկ տեղում մնում է մինչև ցայսօր. ուխտատեղի է գերեզմանս։

Ամենամեծ ուխտատեղի է վանքս, մանաւանդ ամուլ մարդոց և կանանց համար, ոչ միայն քրիստոնէից, այլ և մահմետականաց համար։

Արտաքուստ վանքիս արևելեան կողմում կայ մի անտաշ և կոպիտ մեծ քար, որի մասին աւանդութիւնն պատմում է թէ Արջի գերեզման է այս։ Վանքիս շինութեան ժամանակ մի որձ արջ, 'ի բաց թողլով իւր գազանային բնաւորութիւնը, հեզաբար մօտենում բանւորներին և վարժուելով կրում ծանր քարերը հանքից վանքիս մօտ մինչև շինութեան աւարտն. և միշտ կերակրուում այստեղ մինչև իւր վերջին շունչն։ Ապա թաղում են այստեղ։ Որքա՜ն ուշագրաւ և դուրալի է սարիս տեսարանն։

ԺԷ. ՌԵՒ ԳԻՒՂ. Հիմնուած է սուրբ Գէորգ վանքի սարի արևելեան ստորոտում. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն և տեսարանն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին վնասուած է և անգործածելի. քահանայ մի։ Ծուխ 40. ար. 180. իգ. 150։

ԺԸ. ՍԱՐԴԱՐԱՇԷՆ. Հիմնուած է Ռև գիւղի հիւսիս-արևելեան կողմում մի ձորակի մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, փոքր մասն գաղթած Խոյից, հողն արքունի, ամենայն ինչ

Digitized by Google

միևնոյն, երկար կեանք 85—90· եկեղեցին Սուրբ Գէորգ, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Նորագեղից։

Մի *վաղեմի մատուռ* կայ գիւղիս հին հանգստարանում, որի գոյութիւնն հին է և չէ վերաբերում այժմեան բնակչաց։ Ծուխ 40· ար· 174· իգ· 175։

Խաչէն գետակի աջ կողմում, գետակահայեաց լանջի վերայ կայ գիւղատեղի և հանգստարան, որ կոչւում է *Վաքա*։

ԺԹ. ՂՇԼԱՂ—ԳԻԻՂ. Հիմնուած է Սարտարաշէնի հարաւային կողմում մի ջրաձորի ձախ կողմի վերայ· բնակիչք բնիկ հողն բէկական, մասամբ ջրարբի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, (կայ և այգի, թթենի, գործարան մետաքս քաշելու), օդն, կլիման փոքր ինչ տաք ամրան, ջուրն անվնաս, երկար կեանք 80—85· եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կամարակապ, քահանայ երկու։ Ծուխ 159· ար· 613· իգ· 483։

Ի. ՆՈՐԱԳԵՂ. Հիմնուած այն սարի արևմտահայեաց լանջին վերայ, որ սկսած է Թարթառ գետի աջ կողմից, անցած Արծաթի հանքով և Ղազանչի գիւղի արևմտեան կողմով, ընդհատուած Խաչէն գետակի հեղեղատներով, վերստին շարունակած մինչև Գարգար գետակն Ասկերանի մօտ՝ հանդէպ Քեաթուկայ սարին։ Իսկ միւս լեռնագօտին սկսեալ Նորագեղիս հիւսիս—արևելեան կողմից ձգուած է Խաչէն գետակի եզերքով մինչև դաշտաբեղանն։ Բնակչաց մեծ մասն բնիկ· փոքր մասն գաղթած Խոյի գաւառից· հողն բէկական, կարի սակաւ, անջրդի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (այգի չունին), պատուական օդն, կլիման և ջուրն և միանգամայն տեսարանն, երկար կեանք 90· եկեղեցին Սուրբ Գէորգ, թաղակապ և գեղեցիկ, երկարութիւն 16 մետր 79 սանթիմ, լայնութիւն 9 մետր 60 սանթիմ, քահանայ մի։ Ծուխ 81· ար· 600· իգ· 475։

*Հիւնի-խաչ* (հունի ծառի մօտի խաչ) որ կայ միևնոյն սարի արևմտահայեաց լանջի վերայ գիւղից դէպի Ասկերանի կողմն։ Երբ չորքոտանի ընտանի կենդանեաց պատա-

Digitized by Google

հում է *ղաբաղ*[1]) կոչուած հիւանդութիւնն, գիւղացիք մեծ ջերմեռանդութեամբ բերում են այս խաչի ոտքն և բժշկուում են անասուններն։

ԻԱ. ՂԼԻՋԲԱՂ ԳԻՒՂ. Հիմնուած է Նորագեղի արևելեան կողմում. միևնոյն սարի արևելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (ունին այգի) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն և հնացեալ. քահանան գալիս է Խանաքատից։ Ծուխ 56. ար. 242. իգ. 252։

ԻԲ. ԽԱՆԱԲԱՏ ԳԻՒՂ. Հիմնուած է Ղլիջբաղի մօտ նոյն լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն, օդն և կլիման անախորժ և ճնշիչ ամրան, երկար կեանք 70—75. եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Գիւղիս հանգստարանում կայ մի հին քարուկիր մատուռ։ Ծուխ 95. ար. 430. իգ. 370։

ԻԳ. ԽՐԱՄՈՐԹ ԳԻՒՂ. Հիմնուած է Խանաբատի հիւսիսային կողմում, մի բարձրաւանդակի վերայ, դիրքն արևելահայեաց, բնակիչք բնիկ. հողն բէկական, տեղական բերքերն նոյն, երկար կեանք 70. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քահանան գալիս է Քարագլխից։ Ծուխ 55. ար. 213. իգ. 215։

ԻԴ. ՔԱՐԱԳԼՈՒԽ ԳԻՒՂ. Հիմնուած է Ճիկաքար կոչուած քերծի գլխին։ Վիմահերձ, սեպացեալ և բարձր ապառաժներ են գիւղիս շրջապատն, ունի միայն երկու մուտք արևելեան և արևմտեան կողմերից, մէկ խօսքով գիւղատեղիս հին ժամանակներում նշանաւոր բերդ եղած է։ Բնակչաց կէս մասն բնիկ, իսկ միւս կէսն տեղափոխուած Մեծ-Թիւնեաց Արաւիւս և Դարապաս գիւղերից և Բարկիւշատից, հողն վանքապատկան (Գանձասարին) տեղական բերքերն նոյն, (չունին այգի և պարտէզ) գերազանց օդն և կլիման և

[1]) Սաստիկ ցաւում են կճղակներն և սկսում են կաղալ անասուններն և տանջուիլ։

ջուրն (վերջինս խիստ պակաս է) երկար կեանք 120, եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 79. ար. 358. իգ. 280։

Եկեղեցուս հարաւային կողմում մի խաչարձանի վերայ.

«Ես Սումպատ կանգնեցի զխաչս Համ . . մ . . կողակից իմ Հաւասայ և Հեղան»։

Հին հանգստարան

Գտնուում է գիւղիս հարաւ-արևմտեան կողմում, որի մէջ կան նշանաւոր մահարձաններ խաչազարդեալ։ Մի խաչքարի վերայ.

«Մեք հետևիք Աստուծոյ որդիքս Պապս, Սնպատ, Սարգիս . . . . .» (անընթեռնլի)։

Մի այլ կիսատ քարի վերայ «Խաչս Մխիթարայ, Քրիստոս ողորմի նմայ»։ Այլ նշանաւոր խաչարձանի վերայ

«Թիւ ՉԲ. Իշխանութիւն Հասանայ ես Սնպատ և եղբարք իմ կանգնեցաք զխաչս բարեխաւս առ Քրիստոս ինձ և ամուսին (Նոյն) իմոյ Կատային, զոր եա Պարոն մեզ հայրենիք և գերեզմանատեղ. Քրիստոս աւգնէ իւր որդեացն. ամէն»։

Գիւղիս հիւսիսային կողմում կայ աւերակ գիւղատեղի և հանգստարան։ Իսկ հարաւային կողմում աւերակ եկեղեցի և հանգստարան։

Գիւղիս շրջապատում կան ականաւոր քարայրեր.—արևելեան կողմում կայ երեք քարայր, մէկի առաջքն փակուած է քարուկիր պատով. մի քարայր հիւսիսային և մի նշանաւորն արևմտեան կողմում։

ԻԵ. ՓԱՌՈՒԽ ՇԷՆ. Հիմնուած է Խաչէն գետակի աջ կողմում, Շիկաքարի հիւսիսահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ, հողն վանքապատկան, բարեբեր և այգեւէտ, տեղական բերքերն նոյն (խաղող և թթենի առատ), վատառողջ օդն և կլիման և ոչ սննդարար ջուրն, երկար [1]) կեանք 45—50. եկեղեցին Սուրբ Աստուածածին։ Ծուխ 8. ար. 12. իգ. 12։

---

[1]) Հաստատում են որ 100 տուն եղած է գիւղս, հետզհետէ պակասելով՝ մնացած է այժմ 8 տուն։

Digitized by Google

*Տիկաքար*. Այժմ ևս այս անուամբ է կոչուում Քարագլխի ամբողջ բնակավայրն։ Բերդասարն, որի արևմտեան հիւսիսային կողմումն է Փառուխ շէնս, որի արևելեան հանդէպ քերծի մէջ է այն նշանաւոր քարայրն, որի մէջ հաւաքուելով մօտակայ ժողովուրդն պատերազմների ժամանակ, ազատ մնացած է վնասուելուց։ Այժմ խիստ բարձր մնացած է քարայրիս մուտքն—բերանն—հետևաբար և վտանգաւոր՝ բարձրանալն, քանզի շատ իջած է քերծի շարունակութիւնն։

ԻԶ. ԿԻՉԱՆ ՇԷՆ. Հիմնուած է Փառուխի արևմտեան կողմում, Խաչէն գետակի ձախ ափից բաւական դէպի հիւսիս, Պտղեսբերքի հանդէպ. դիրքն հարաւահայեաց և գեղեցիկ, բնակիչք բնիկ, երկու տուն եկած Առաջաձորից. հողն վանքապատկան. ամենամեծ մասամբ անջրդի, բայց հացատու, տեղական բերքերն նոյն, (չունին այգի) օդն և կլիման և ջուրն անվնաս. երկար կեանք 70. եկեղեցին Սուրբ Աստուածածին, նորաշէն, գեղեցիկ, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւն 14 մետր 20 սանթիմ, լայնութիւն 8 մետր 16 սանթիմ, քահանան գալիս է Առաջաձորից։ Ծուխ 15. ար. 58. իգ. 49.

## ԱՆԱՊԱՏ ԿԻՉԱՆԻ.

Շինիս արևմտեան կողմում, բերդաձև սարին վերայ շինուած է անտաշ քարով մի եկեղեցի երկու կամարների վերայ։ Բոլորովին անվնաս է և կանգուն։ Ունի և միաբանից համար մի քանի խուցեր, հանգստարան զարդարուած խաչարձաններով, ուր կան և վարդապետաց գերեզմաններ։

ԻԷ. ԹԲԼՂՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Խաչէն գետակի և Քոլատակ վտակի մէջ մի առուակի ձախ եզերքին, բնակիչք գաղթած Մեծ-Սիւնեաց Մաղաւուզ գիւղից, հողն վանքապատկան (զարմանալի՜ է. այժմ բէկական), տեղական բերքերն նոյն, տեսարանն խեղդուած, օդն և կլիման ծանր ամրան. երկար կեանք 70, եկեղեցին Քոլատակ գիւղինն է. քահանան գալիս է Ծմակահողից։ Ծուխ 22. ար. 100. իգ. 102։

Digitized by Google

ԻԸ. ՔՈՂԱՏԱԿ ԳԻՒՂ. Հիմնուած է Քոլատակ փոակի ձախ ափի մօտ, բնակիչք բնիկ (մի քանի տուն գաղթած նոյն Մաղաւուզից). հողն վանքապատկան (այժմ բէկական). տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85—90. եկեղեցին քարուկիր, կամարակապ, քահանան գալիս է Ծմակահող գիւղից։ Ծուխ 41. ար. 157. իգ. 140։

*Գիւղիս հանգստարանում մի մահարձանի վերայ.*

«՚Ի ՌՂԲ. թուին Ողորմութեամբն Աստուծոյ և տէրանց Խաչինոյ ես տէր Վարդան վարդապետ Հռասարեցի, պարոնայքն հողն ինձ տուին, ես գնեցի զԲուրին հանդն, զՇեղջատափն, Երկրի տնատեղն, տուի վասն հոգոյ իմ վախմ ի Սուրբ Գանձասար. սոքա տուին Բ. ժամ ՚ի տաւնի Վարդանանց։ Ով զհայրենիքս հանէ ՚ի սուրբ ուխտէս, ՅԺԸ. հայրապետաց նզոված լիցի և իմ մեղաց պարտական»։

*Եղցուն խութ.*

Գիւղիս արևելեան հանդէպ, փոակի աջ կողմի բարձր սեռի վերայ վաղուց շինուած է մի քարուկիր փոքր եկեղեցի, որի մօտ կայ և գիւղատեղի և հանգստարան։

*Կոշիկ անապատ.*

Հիմնարկուած է Քոլատակ գիւղից վերև համանուն փոակի ձախ կողմում։ Տարքով շինուած են երեք եկեղեցաձև տաճարներ, որոց հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերն վիմահերձ և սեպացեալ ապառաժներ են, իսկ արևելեան կողմն ձոր է։ Անտաշ քարով շինուած են երեք տաճարներս ևս, միջին տաճարի բեմի ժողովրդահայեաց երեսին քանդակուած է.

«....Հասանայ և Մամա խաթունին թոռն Գ. հետ (անգամ) ՚ի Ղանն գնացի յամի... իմ ազգէն թափեցի դ..... ատաստանաւ զհարկանին մեր.... Խերխան, Մարծպան, Մամիկոն կամեցաք նորոգել զմեր գերեզմանատունս, ես Էրիվան ..եցի զՍուրբ Ստեփաննոս [1]) և նորոգեցի զայլ եկեղեցիքս և

---

[1]) Երևի թէ միջի տաճարիս անունն է։

*զարդարեցի Մխիթար եղբաւր իմոյ... Թ. ես Մարտիրոս. ես Սևադա տվի զԳրիգորանանց, զՄռընդանանց, զԳիլմարդանց ի սուրբ եկեղեցիս.... մՆ. Ժ. աւր ժամ Բ. Հասանա զատկին. Բ. Մամա Խաթունին՝ Վարգավառին. Ա. Ռուզու... Բ. Խեր-խանին յայտնութեան... կատարին, որ հակառակի կամ զրկել ջանա զայս տեղիս ի Սուրբ Գէորգա, ոսոխն նորա Աստուած եղիցի... գրեցաւ ի թվ. Հայոց ՉԺԴ.»։*

*Անապատս ունի և գաւիթ, որի մէջ կան իշխանազգի ամփոփեալներ։*

*Գաւիթիս ողմին վերայ.*

*«ՈՂԳ. յանուն Աստուծոյ ես Պռոշ որդի իշխանին Վակա (Վասակայ) յուսով միաբանեցայ Կոշիկ անապատոյ, տվի խաչ, աւետարան.. Նապատ, ճառ, միաբանքս տվին Սուրբ Խաչին Չ. աւր ժամ, որչափ կենդանի եմ, իմ մաւրն, յետ ելից իմոց ինձ. կատարիչքն աւրհնին, խափանիչքն դատին յԱստուծոյ»։*

*«...Ես Ծղել որդի.. այ իմ ընչից գնեցի հող... բնակեցայ սուրբ Նշանիս կամակցութեամբ եղբարց Կոշիկ անապատոյ, և տվին ինձ ի տարին Բ. ժամ Սուրբ Գրիգորին ազուհացն, Ա. իմ որդի Խուչախին, Ա. իւր մաւրն յետ ելից իմոց ինձ [1])։*

*Անապատիս մօտ կայ միաբանական աւերակ խուցեր և հանգստարան։*

## Ս. ՅԱԿՈՎԲ ՎԱՆՔ.

*Կոչուում է նաև Մեծ-Իրանց կամ Մեծ-Արանց Սուրբ Յակովբ, որ շինուած է յանուն Մծբնայ Յակովբ հայրապետին մի բարձր լեռնաբազկի սեռի հարթակին վերայ, որին մօտ է և Քօլատակ գիւղն և Թբլղուն։ Լեռնաբազուկս իւր սկիզբը առած է Նատարի բերդասարիցն և հետզհետէ խո-*

*[1]) Նախ՝ անընթեռնլի են կէտադրեալ բառերն։ Երկրորդ՝ սոյն բոլոր արձանագրութիւններից ակներև երևում է, որ Կոշիկ եղած է անապատիս անունն.*

*Որ անապատիս գաւիթն դերեզմանատուն եղած է Ջալալեան տոհմի մի ճիւղին. որ միջի տաճարն կոչուած է Սուրբ Ստեփաննոս, իսկ աջ ու ձախ կողմերինն Սուրբ Նշան և Սուրբ Գէորգ։*

նարհուելով հասած մինչև Թըլղու շէնի ստորոտն։ Վանքս ունի նեղ, երկար և բարձր ձև, որպիսին էր Գևոնդեանց անապատն և շինուած է անտաշ քարով առանց սիւների։ Չունի փոքր խորաններ, այլ ունի միայն մի խորան։ Զափազանց բարձր է բեմն, որ ունի միայն մի վերելակ սանդուխ հարաւային կողմից։ Տաճարս ունի մի դուռն հարաւային և միւս արևմտեան կողմից, մի նեղ լուսամուտ արևելեան և միւս խաչազարդ արևմտեան կողմից և մի գաւթանման շինութիւն կից իւր արևմտեան կողմին, նոյնպէս շինուած անտաշ քարով, որի յատակն քլաչափ բարձր է վանքի յատակից։ Գաւթիս ներսի դրան երկու կողմերում ևս կան երկու քարեայ խաչարձան։ *Հիւսիսային խաչարձանի վերայ.*

«Թիւ ՈՀԲ. (1223) ես տէր Սարգիս կանգնեցի զխաչս ի տապանի եղբաւր իմո տէր Յակովբոսի արհի եպիսկոպոսի և Մեծարանաց հայրապետին[1]) յաղաւթս յիշեցէք»։

*Հարաւային խաչարձանի վերայ.*

«Թ. ՈՀԴ. ես տէր Սարգիս եղբաւր որդի տեառն Գրիգորա, եղբայր տէր Յակովբոսի առաջնորդ տանս Մեծարեանց կանգնեցի զխաչս բարեխաւս մեզ առ Աստուած»։ Գաւթումս կան շատ ամփոփեալներ, սակայն մեծ մասամբ անտաշ և աներձանագիր են տապանաքարերն։ Մի մոխրագոյն տապանաքարի վերայ փորագրուած է խիստ խոշոր տառերով. «Տէր Վարդան է տապանս արհի եպիսկոպոսին»։

*Տաճարիս հարաւային դրան սեմի վերայ*

«Յիշխանութեան Ջալալին ես Խութլու բէկ որդի Խոյդանայ միաբանեցայ սուրբ աւետիս ընծայիւք, տվին ի տարումն Բ. աւր ժամ 'ի տաւնի զատկի, ով խափանէ, դատի յԱստուծոյ թվ. ՉԽԲ.»։

*Երկրորդ վանք*, որ պատկեց է առաջի վանքին արևելեան կողմին ունի միևնոյն հին ոճը, իւր հիւսիսային կողմում ունի նաև չորս փոքրիկ խուցեր, որք նման են ճգնարանների, որոց մուտքն բացուած է տաճարիս միջից և որք

[1]) Գաւառիս առաջնորդին։

ունին լուսամուտներ հիւսիսային որմից։ Երկու վանքերս եւ հին և խարխուլ են և տձև ու անճաշակ շինուած. բայց ունին հարաւային կողմում երեք կամարակապ աչքերով մի սրահ։

*Սրահումս կան ամփոփեալ կաթուղիկոսներ.*

*«Այս է հանգիստ տէր Ոհանէս կաթուղիկոսին»։*

*«Առքստակէս կաթուղիկոս»։*

*«Սիմէոն եպիսկոպոս»։*

*«Այս է հանգիստ Սիմէոն կաթուղիկոսին Թվ. ՌԿ.»։*

*Երկրորդ տաճարիս դռնից վերեւ արտաքուստ.*

«ՌԿԱ. Թիւ ես Խորիշահ ամուսին Վախտանգա, տէր Խաչենոյ, դուստր մեծին Սարգսի, քոյր Զաքարի և Իւանոյ, վերստին շինեցի զեկեղեցիս Մեծարանից ի փրկութիւն հոգոյ իմոյ Ա. Խ. (Ա. քառասուն) ժամ ինձ. յիշատակ իմ ծնողացն. զՎախտանգ և զիս յաղաւթս յիշեցէք»։

«Ես Մուշեղ որդի Հեջքին միաբանեցայ սուրբ ուխտիս գնեցի զսուրբ..... Թվ. ՉԽԲ.»։

Վանքս ունի երեք թաղակապ հին խուց, երեք կիսաւեր խուց, շրջապարիսպ, մի թթենեաց պարտէզ, չորս հարիւր օրավար (դեսեատին) անտառ և հող [1]), Մծքնայ Յակովբ հայրապետի աջը, մի պատուական աղբիւր, որի մօտ կայ մի բազմադարեան կաղամախի ծառ, որի շրջապատի հաստութիւնն է 7 մետր 35 սանթիմ։ Վանահայրն է մի սարկաւագ։

**ԻԹ. ԳԵԱՌՆԱՔԱՐ ՇԷՆ.** Հիմնուած է Հաւապտուկ աւերակ վանքի արեւելեան ստորոտի ձորում. բնակիչք հաստուածեալ եկած են Առաջաձոր և Վանք գիւղերից. հողն վանքապատկան, բարեբեր, տեղական բերքերն նոյն, բառեխառն օդն և կլիման, գովելի ջուրն, տակաւին չունին եկեղեցի և քահանայ, վերջինս գալիս է Առաջաձորից։ Ծուխ 12. ար. 59. իգ. 53։

*Լ. Վանք, Վանք գեղ, Վանքի շէն։*

Այսպէս է կոչւում գիւղն, որ հիմնուած է Գանձա-

[1]) Խլուած են հողերն, կտրուած անտառներն և թողած մացառուտներն։

սարի արևելեան հանդէպ Խաչէն գետակի ձախ կողմումն։ Աւելորդ է յայտնել թէ իւր անունը ստացած է վանք անունից։ Սակայն հարկ է յայտնել թէ գիւղս բաժանուած է երկու թաղի, որք շատ հեռի չեն միմեանցից և որք ընդհանուր առմամբ կոչուում են Վանք, իսկ մասնաւորապէս ստորինն կոչուում է Հինայ—հող, իսկ վերինն Գոմայ—կալ։ Գիւղիս բնակիչներն նախ բնակած են եղել Գանձասար վանքի մօտ, ուր մինչև ցայսօր մնում են տնաբակերն, ապա փոխադրուած են այստեղ։ Ուրեմն բնակիչք բնիկ, հողն վանքապատկան, տեղական բերքերն նոյն. բարեխառն օդն և կլիման և անվնաս ջուրն, երկար կեանք 85—90, երկու թաղի եկեղեցին է Գանձասար վանքն, քահանայ երկու։

Ծուխ (երկու թաղերում) 167. որոց հետ և Ճահմասուրն. Ծուխ 180. ար. 849. իգ. 687։

## *Հղեզեան* (5768 ոտք)

Սարումս [1]), որ գիւղիս հիւսիսային կողմումն է, կայ մի խաչարձան Նահատակ անուն կամ *Հղեզեանայ Նհատակ*։ Ուխտատեղի է, բայց ո՛չ ոք չգիտէ Նահատակիս անունը։

## *Ճղցուն խուլթ*

Այսպէս է կոչուում այն քարակիր եկեղեցին, գիւղատեղին և հանգստարանն, որ գտնուում է Գոմայ—կալից բաւական վերև։ Այս տեղից շատ հեռի չէ *Ջրաղացաքարի հանքն*, որ սեփական կալուած է Գանձասարայ վանքին։

## ԳԱՆՁԱՍԱՐ ՎԱՆՔ (4168 ոտք) (19)

Հիմնուած է մի գեղեցիկ, բարձր և տեսարանաւոր սարահարթի վերայ, որ կոլոլահող սարից իբրև լեռնաբազուկ անջատուած և կախուելով Խաչէն գետակի վերայ վերջացած է։ Տաճարս, որ շինուած է ամբողջապէս սրբատաշ, տորոնա-

[1]) Լեռնաշղթաս սկսուած է Գանձասար վանքի սարից, ձգուած Ճահմասուր, Ծմակահող, Առաջաձոր, Կիչան գիւղերի արևմտահիւսիսային գլուխներից, անցած Արծաթահանքի մօտով և ճիւղաւորուելով հասած մինչև դաշտաբերանն։

Digitized by Google

գոյն ագնիւ քարով, հիմնարկել տուած է Ջալալ—Դօլայ իշխանն յանուն սուրբ Յովհաննէս Մկրտչի չորս հրաշակերտ կամարների վերայ։ Ունի մի աւագ և ութ փոքր խորաններ (որոց չորսն արևմտեան կողմում դրան աջ ու ձախ անկիւններում շինուած իրարու վերայ՝ հիանալի վերելակ սանդուխներով) երկու խորհրդարան, մի դուռն արևմտեան կողմից, մի հրաշագան կաթուղիկէ, ութ փոքր, երեք միջակ, չորս բոլորակ և չորս մեծ լուսամուտներ և մի աւազան։ Երկարութիւնն 16 մետր 95 սանթիմ, լայնութիւն 12 մետր 25 սանթիմ։

*Վանքիս ներսում աւազանից վերև.*

«Յանուն սուրբ Երրորդութեան Հաւր և որդւոյ և Սրբոյ Հոգւոյն այս գիր արձանի է, զոր ես նուաստ ծառայ Աստուծոյ Ջալալ Դաւլա Հասան որդի Վախտանգայ՝ թոռն մեծին Հասանայ՝ բնակաւոր ինքնակալ բարձր և մեծ Արցախական աշխարհի, թագաւոր և ի յողնասահման նահանգի. զի հայրն իմ ի վախճան կենաց ելից իւր աստեացս անդարձ կտակի հաստատեաց ինձ և մաւր իմոյ Խորիշահի՝ որ էր դուստր մեծ իշխանաց իշխանին Սարգսի, զի շինեսցուք զեկեղեցիս ի գերեզմանատուն հարց մերոց ի Գանձասար, զոր սկսեալ մեր ի ՈԿԵ. թուին Հայոց աւգնականութեամբ բարերարին Աստուծոյ. և ի խփել լուսամտին արևելից մայրն իմ կրոնաւորեալ չոգաւ յԵրուսաղէմ երկրորդ անգամ, անդէն ի դրան Յարութեան խարազնազգեաց ճգնութեամբ, բազմամեայ ժուժկալութեամբ հանգեաւ ի Քրիստոս լուսոյ վկայութեամբ և անդէն պահեցաւ։ Իսկ մեր զբազմածուփ կենցաղոյս ի մտի եդեալ փոյթ գործոյ արարեալ աւարտումն եղև շնորհաւք ողորմութեան ամենագութ Տեառն ՈՋԵ թուին գաւտէօրեալ ամենազան ձևաւք, պատկերազան յաւրինակերտ գմբէթազարդ յաւրինուածովք յաւժարութեամբ կամաց մերոց, որպէս տեսանէ Աստուած. հոգացաք զպէտս միաբանիցս գիւղաւրայս Մաչեղ, Հաւչանտուս բոլորքօջն, մէկ լուծ Խաչենաձոր, Նորաշէնկան գետն Այգեստան, Սեղնկնի, զոր իմ հայրն էր տուեալ Սահակայն, Փուրկատոստիցն, Արծա-

Digitized by Google

թենիսն, որ ես տուր խաչաւք, գրաւք, մասամբք, նշխարաւք, պատուական ձուլածոյ ամենայն սպասուք և հանդերձ երևելի զարդուք ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և Աստուծով ի մեր իշխանութեան եկեղեցիքս ազատ են կամաւ տէր Վարդանայ առաջնորդի սուրբ ուխտիս և միաբանիցս դրեցաք ժամ զաւագ խորանն բոլոր տարին մեզ, և այլ ամեն եկեղեցիքս զատիկն իւր ճրագալուցովն իմ հայրն է Վախտանգայ, Աստուածածնին Դ. աւրն իմ մաւրն Խորիշահին, և յայտնութիւնն իւր ճրագալուցովն իմ եղբաւր Զաքարէի, զաւագ սեղանն, որ իմ է, յԱստուածածնէն մինչ ի խաչն իմ պապուն Հասանայ. յխնակամտէն մինչ ի յայտնութիւն Մամքանայ իմ կենակցին, Ութորէից ելիցն մինչ ի առաջաւորն հասարակաց անյիշատակաց, բարեկենդանին Ա. շաբաթն իմ եղբաւր Դաւլին, Բ. (երկրորդ) շաբաթն իմ քուերն Մարինայ, այուհացից շաբաթ կիւրակէքն իմ եղբաւրն Իւանէին, զատկէն մինչ ի Աստուածածինն և ի խաչէն մինչ ի յխնակամուտն ինձ Հասանայ: Աւրհնեցաւ եկեղեցիս ի ՈԶԹ. թուին ի հայրապետութեան տեառն Ներսիսի Աղուանից կաթուղիկոսի: Հաստատ է գիրս կամաւն Աստուծոյ, որ հակառակի, ոսոխն Աստուած է և իւր սուրբքն: Անտաւնի տաւնին մի աւր ժամ Յովասափ միայնակեցին կատարի կամաւ մեծին Հասանայ»:

Վանքս ունի, իւր արևմտեան կողմին կից և հրաշազան Գաւիթ, նոյնպէս շինուած սրբատաշ քարով, որ կառուցեալ է երկու միապաղաղ միջնասիւների և վեց պատկից կիսասիւների վերայ: Միմեանց միջից անցած են չորս խաչաձև կամարներ, որոց վերայ բազմած է զանդակատան գեղեցկաքանդակ գմբէթն: Գաւիթս ունի երկու դուռն հիւսիսային և արևմտեան կողմից, մի փոքր կաթուղիկէ զանգերի համար, գմբէթի գլխին, 15 մետր 52 սանթիմ (արևելքից արևմուտք) երկարութիւն և 14 մետր 65 սանթիմ լայնութիւն (հիւսիսից հարաւ չափելով):

*Արձանագրութիւն գաւթիս.* «Թուին ՉԺԵ. կամաւն ամենակալին Աստուծոյ ես Ջալալ Դաւլաս որդի Վախտանգայ կող-

Digitized by Google

մանցն Արցախայ և ամուսին իմ Մամքան Թոռն Բաղուց Թագաւորին, և հարազատ որդին իմ Աթաբակն յետ կատարման եկեղեցոյս հիմնարկեցաք ժամատունս և բազում աշխատութեամբ աւարտեցաւ, զոր և հայցեմ անմոռաց յիշել յաղաւթս ձեր. փոքր ընծայ տուի զՄառգիլն իւր չարեքտարովն, զծուանց իւր սահմանովն։ Դարձեալ ես Աթաբակս ընծայեցի յաւժարութեամբ ոսկետուփ՝ աւետարան և պատուական սուրբ նշան, զՔրիստափորն և զմեր հայրենի հարաւակուռն զՔլրին իւր սահմանովն. և սահմանեցին զխաչի ուլթաւրէքն պատարագել զՔրիստոս։ Եւ եթէ քրիստոսադաւան ոք հանել ջանայ, ի փառացն Աստուծոյ մահով և կենաւք նզոված է, և յիշատակ նորա մի յիշեսցի առաջի Աստուծոյ. և թէ մահմետական ոք զհողն հանէ այս եկեղեցոյս, առ. հասարակ նզոված յԱստուծոյ և ի մարգարէից»։

*Վանքումս կան հետեւեալ գրչագրերն.*

1) Գրչագիր յայսմաւուրք գրուած թղթի վերայ, սկզբից և վերջից թափուած են թերթեր. անխնամ պահուելուց բորբոսնած և ոչնչացած է։

2) Մի Սարգիս շնորհալի, գրուած թղթի վերայ, մեծադիր, պակասաւոր սկզբից և վերջից։

3) Մի հատ մեկնութիւն Նարեկի գրուած թղթի վերայ, պակասաւոր սկզբից և վերջից։

*Աջեր մասունքներով.*

1) Արծաթեայ, ոսկեզօծեալ աջ, որի մէջ է մասն *Ս. Յովհաննէս Մկրտչի*, շինել տուած է Աղուանից Յովհաննէս կաթուղիկոսն 1779-ին և նորոգել տուած է Բաղդասար մետրապօլիտն 1848-ին։

2) Արծաթեայ ոսկեզօծեալ աջ, որի մէջ է *Տեառնեղբայր Յակովբ* առաքեալին, ՌԾՀԴ. թուին շինել տուած է Աղուանից Եսայի կաթուղիկոսն։

3) Արծաթեայ ոսկեզօծեալ աջ, որի մէջ է մասն Աղուանից *Գրիգորիս Ա. կաթուղիկոսին* ՌՄԳ. թուին նորոգել տուած է Բաղդասար մետրապօլիտն։

4) Արծաթեայ աջ, որի մէջ է մասն Յակոբայ գլխա-

դիր առաքեալին, ՌՃՀԶ. թուին յիշատակ է Թարխանու:

*Սրբոց մասունքներ խաչերում*

5) Արիւն Զաքարիա մարգարէի մի բիւրեղեայ խաչում:

6) Մասն Յակովբայ *Տեառնեղբօր եւ Պանդալիոն* բժշկի զետեղուած մի արծաթեայ խաչում:

7) Մասն *Ս. Գէորգի*, զետեղուած արծաթեայ անճաշակ շինուած խաչում:

8) Մասն Պանդալիոնի մի արծաթեայ խաչի մէջ.

9) Մի արծաթեայ, տափակ և տապանաձև զարդի վերայ գրուած է. «Շնորհիւ ամենազօրին կազմեցաւ մասնատուփս նշխարաց սրբոց *Բանտալիոնի* և *Ուհանու Գընեցոյն* ձեռամբ Առաքիլ վարդապետի թվ. ՌՃԾԵ.»:

*Գաւթումս ամփոփուած են.*

«Այս է հանգիստ մեծին Ջալալի. յաղաւթս յիշեցէք. թվ. ՊԶ.»:

«Յովհաննէս կաթուղիկոս»:

«Այս է... Գրիգոր ...ողիկոսին ..նից (Գրիգոր կաթուղիկոսին Աղուանից) ի ՌՃԲ. թուին»:

«Այս տապան Երեմիա կաթուղիկոսին Աղուանից, որ է յազգէն Ջալալ Դօլին ՌՃԽԹ.»:

«Այս է տապան Եսայի կաթուղիկոսին Աղուանից, որ է յազգէն Ջալալ Դօլին ՌՃՀԷ. թուին»:

«Այս է հանգիստ Դաւիթ կաթուղիկոսի, (որ է) որդի Բաղտասար պէկին»:

«Այս է տապան Յօհաննէս Աղուանից կաթուղիկոսին, որ է յազգէն Ջալալ Դօլին թվին ՌՄԼԵ. ին»:

«Այս է տապան Սարգիս Աղուանից կաթուղիկոսին թվին ՌՄՀԷ. ին»:

«Այս է տապան Միտրապօլտին Բաղդասարայ մեծի արհին
Կայսեր պսակ հովուապետին
Տանս Աղուանից Հայոց ազգին,
Յազգէ Ջալալ մեծ իշխանին
Տեառն Արցախական աշխարհին,
Թվին ՌՅԳ. 1854 Գ. յուլիսի»:

Digitized by Google

*Գաւթի հիւսիսային դրան ճակատակալ քարի վերայ.*

«Թվին ՉԻ. կամաւն Աստուծոյ ես Յովհաննէս որդի Իւանէի առաջնորդ սուրբ ուխտիս Գանձասարայ հրամանաւ տեառն Խաչենոյ Աթաբակին յիմ հալալ արդեանց գնեցի զՎարդանայ թաղս մին չորից և զնա և այլ ընծէք տվի սուրբ կաթուղիկէս. միաբանքս տվին զՕհանու, զԱկոբա տաւնին զամէն եկեղեցիքս ինձ պատարագ...»։

Վանքիս և գաւթիս որմերի վերայ արտաքուստ փորագրուած են բոլոր շարժական և անշարժ կալուած, ինչք նուիրողաց անունները։ Ընդօրինակում ենք այստեղ ամենը, նպատակ ունենալով ի լոյս ածել ժամանակակից անունները, նուէրները, կալուածները, հաւատքը, յոյսը, սէրը և ջերմեռանդութիւնը։

*Հիւսիսային կողմում արտաքուստ.*

«Ես Այտինս, Խիմչէս որդիք Աթաբակին տվաք Ալմաճայտար հողն ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսի թվ. ՉԽԴ.»։

«Ես Սմբատ որդի Փիրհամզին տվի Բեմին հողն իմ պապեց հօգուն սուրբ ուխտիս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսէսի թվ. ՉԻ.»։

«Թվ. ՋՂԵ. ես Սարգիս կաթուղիկոս որդի Հատիր Մէլիքին, թոռն մեծին Սայտունին և գնեցի զհայրենիքն ի Կասրայ գ. ըստակն, մինակ տան դ. ըստակն ու կէսն, Առատունոյ բ. ըստակն, Կուալանայ դ. ըստակն տվի սուրբ ուխտս Գանձասարայ. ով զայս հայրենիքս հանէ ի սուրբ եկեղեցոյս, ԳՅԺԸ. հայրապետացն նզոված է, սուրբ Ովանիսիս (Յովհ» Մկրտ.) կապած»։

«Կամաւն Աստուծոյ ես Սայտունս որդի պարոն Աղբաստի տվի իմ հայրենեացն զՏանձաձոր ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Եղիային. սորա ետուն տարուան Գ. ժամ. ով զայս հայրենիքս հանցէ, յեկեղեցւոյս, ԳՅԺԸ. հայրապետացն նզոված է թվիս ԹԾԶ. (1507 փրկչ. թուին)»։

«Թվ. ՊԺ. Իշխանութեամբ մեծի Իւանէի ես տէր Կոս-

*տանդ մեծ փափագանաւք գնեցի զզանկականիս, սուրբ ուխտս բերի»։*

*«Ես Տուրսուն Թոռն մեծի Ջալալին տվի Մսերշին հողն ի սուրբ ուխտս Գանձասար առաջնորդութեամբ տէր Ներսիսի թվ. ՋԽԲ.»։*

*«Ես Պաստամ որդի մեծին Ջալալին տվի Կունճի հողին կալէն վեր ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսին թվ. ՋԻ.»։*

*«Ի թվս. ՋԻ. ես Պուտայս ու Վախտանգս և այլ եղբարքս միաբանեցաք ու տուաք Փտուռանց, Կակաշանց, Ծաղկավանաց Գ. ըստակն տուաք ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսի»։*

*«Յանուն Աստուծոյ ես Սասնայս Հանդաբերդցի եկի մեծ յուսով ի սուրբ ուխտս Գանձասարա իշխանութեամբ Աթաբակին, զիմ հոգոյ արդիւնքն կաթուղիկէս տվի; միաբանքս տուին զծառազարդն զամեն եկեղեցիքս ինձ պատարագ. Բ. ժամ իմ կողակից Մարհանին, ով խափանէ, իմ մեղացս պարտական է ՋԻ. թիւ»։*

*«Յուսովն Աստուծոյ ես Էսուգնաս դուստր մեծ ամիր Հասանայ, յետ մահուան մեծին իմոյ սահմանեցի զնա (?) սուրբ ուխտիս և տվի ընծայ տէր Յոհաննէսին. և միաբանքս տվին Բ. պատարագ ի տանի քառասնից... թվ. ՋԾ.»։*

*«՚Ի ՌՄԼԹ. թուիս կամաւն Աստուծոյ ձեռամբ տեառն Յովհաննու կաթուղիկոսին ես Ապաւ (Մէլիք-Աբով) ուզբաշի որդի Մէլիք Յովսեփա Թալիշու և իմ կենակից Հերիքնազ և որդիք Մէլիք Պէկլար և Մէլիք Ապաւ մեր հալալ արդեանց շինեցաք սրբոյ աթոռոյս Աղուանից Գանձասարու երկու եկեղեցեաց (տաճարի և գաւթի) տանիսն և խախտեալ որմունս բազում աշխատութեամբ յիշատակ մեզ և ննջեցելոց մերոց....»։*

*Գաւթիս արեւմտեան կողմում արտաքուստ.*

*«Կամաւն Աստուծոյ ես տէր Ներսէս Ամարասայ եպիսկոպոս եկի մեծաւ յուսով ի սուրբ ուխտս իշխանութեամբ Աթաբակին, միաբանեցայ, տվի զիմ հոգոյ արդիւնս, սոքա ետուն Ե. աւր ժամ... ՋԼԱ.»։*

«Կամաւ ամենակալին Աստուծոյ ես Բարսեղ որդի Ապաջաւր երիցու, ամուսին իմ Մամաք.... գնեցի զՏնկին երկիրն, տուի ի կաթուղիկէս...... թուին ՉԻԵ.»։

*Գաւթիս եւ տաճարիս հարաւային կողմում արտաքուստ.*

«Կամաւն Աստուծոյ ես Վէլիջան և եղբարքս իմ որդիք Սայտունին թոռն մեծին Աղպաստու տեարք Խաչենու տուաք Աշմանայ իւր Դ. սահմանաւն 'ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսէսի թվ. ՉԻԹ.»։

«Կամաւն Աստուծոյ ես Մէլիքս որդի Սայտունին թոռն մեծին Աղպաստու շուրջառ, սկի և այլ ընծայ Կակաչանց, Փտուռանց, Ծաղկավանից.. տվի ի սուրբ ուխտս Գանձասարայ....»։

*Տաճարիս հիւսիսային կողմում ամփոփուած են.*

«Յովսէփ՝ գիտնական վարժապետ—վարդապետ [1]) էր Աւագեանց Արցախայոյ պերճ, տապան որպէս կարես, հանդուրժես, մեծն վարժապետն ի քեզ կրեալ զհտեղես, զհինաւուրց երախտաւորն ամփոփես, զանխօս մանկունս ի սուրբ հօրէն որբ թողես, եկայք ընկերք, ո՜ դուք մուզայք սիրասունք զհօրս զմահ յորդ արտասուօք ողբասցուք, եթէ Յիսուս զիւր Ղազարոս արտասուեաց. 1847»։

«Այս է տապան Արիստակէս եպիսկոպոսին, որ էր եղբայր Երեմիա կաթուղիկոսին ՌՃԼԳ. թուին»։

«Մովսէս խաչակիր վարդապետ վախճանեալ 1849-ին»։

«ՌՂԴ. ես Ամադ կանգնեցի զխաչս ի փրկութիւն....»։

«Թւին ՌԾԱ. ես Վախտանգ որդի Հասանայ կանգնեցի զխաչս ի տապանի..... (կտրած է)»։

«Այս է տապան Գրիգոր վարդապետին, որ է ազգէն Ջալալ Դոլին թվ. ՌՃՂԷ.»։

«Յովսէփ վարդապետ Իսրայէլբէկեան Ջալալեանց թվ. ՌՅԺԲ.»։

Վանքս ունի մի քանի թաղակապ հին սենեակներ և շրջապարիսպ, որ ունի երեք դուռն—արեւելեան, հարաւա-

[1]) Այս է գիտնական Յովսէփ վարդապետի գերեզմանն, որ շատ տարիներ վարժապետութիւն արած է Արցախիս վանքերումն։

Digitized by Google

յին և արևմտեան կողմերից։ Վանքս ունէր ընդարձակ հողեր, կալուածներ և անտառներ, ինչպէս տեսանք արձանագրութիւններից, որք այն աստիճան յափշտակուած են, մինչև անգամ մնացած է միայն 9000 արտավար հող ու անտառ, վասն որոյ բարոյապէս և նիւթապէս քայքայւում է աննման վանքս. հետզհետէ թափւում են քարերն և ոչնչանում, կաթում է շարունակ, զի խախտուած է տանեաց սալարկն, քանդուած է պարիսպն տեղ տեղ և չունի օրինաւոր դռներ. գողացուած են այնքան ընտիր ձեռագրերն, խոնաւութեան և անխնամութեան կերակուր եղած են մնացեալ ձեռագրերն, որպէս տեսանք. ամիսներով ժամ չէ ասւում վանքումս, քանզի ո՛չ կարդացող կայ, ո՛չ դպրոց, ո՛չ միաբան և ո՛չ գոնէ փոխասաց։ Մի վանահայր վարդապետ կայ այստեղ, որ ունի մի ծառայ։

## ՊԱՌԱՒԱԶՈՐԻ ԵԿԵՂԵՑԻՆ.

Այս տեղն, որ կոչւում է և Քեարխանի հարթ, գտնւում է վանքիցս վերև Խաչեն գետակի ձախ կողմի բարձրութեան վերայ։ Այստեղ կայ մեծ գիւղատեղի, հանգստարան և երկու փոքր եկեղեցիներ, որք շինուած են պատկից։ Տակաւին կանգուն են եկեղեցիներս, բայց փլած է գաւիթն, որ շինուած է եղել տաճարներիս արևմտեան կողմին պատկից. դեռ մնում են չորս պատերն։

*Հարաւային եկեղեցու որմի վերայ*

«ՈԼ» թուին և իշխանութեան Սմպատա ես Բարսեղ երէց ու Սարգիս և այլ եղբայրքս և Սանասի իրեցս որդիք մեր ժողովրդովս շինեցաք զեկեղեցիս և բերաք զջուրս, որք երկրպագէք զտեղիս, յաղաւթս յիշեցէք և Աստուած զձեզ յիշեսցէ»։ Գաւթում հիւսիսային որմի մէջ հաստատուած մի խաչարձանի վերայ.

«Թւին ՈԼԲ.»։ Սորա մօտ մի այլ խաչարձանի վերայ.

«Թւին ՈՀԷ. ես Սարգիս կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգւոյ իմոյ յիշատակ Բ. ժամի ի տարւոջն . . .»։

Հանգստարանում, որ կայ տաճարներիս արեւելեան հանդէպ, մի խաչարձանի վերայ. «Թւին ՈԻԹ. ես Գրիգոր կանգնեցի զսուրբ Նշանս Վասակ.....»։

## ԴԱՐՊԱՍՆԵՐ.

Ջալալեան մեծահամբաւ իշխանազն տոհմի ապարանն է այս, որ գտնուում է Վանքաշէն գիւղի հարաւային հանդէպ Խաչէն գետակի աջ կողմի բարձրութեան վերայ եւ Հաւապտուկ վանքի արեւմտեան կողմում։ Մի ընդարձակ շինութիւն է այս, որ իւր մէջ ունի շատ սենեակներ մի քարուկիր պարսպի մէջ։ Ջալալ-Դօլայի ապարանիս մէջ աւելի ուշադրաւ է ընդունարանն եւ մի այլ սենեակ, որք ներկայացնում են ժամանակին ճարտարապետութեան եւ ճաշակին ոճը։ Բարձրաշէն, ամրապատ, թաղակապ եւ գեղեցկատես են սենեակներս։ Թաղերի տակ շարուած են վայելուչ եւ բարակ խոյակներ, որոց վերայ դարձրած ապա թաղերն կամարների վերայ, որք չեչ քարի ազնիւ տեսակիցն են, համակ սրբատաշ։ Առհասարակ սակաւ են լուսամուտներն եւ փոքր։ Չկարողացանք իմանալ սենեկաց թիւը, քանզի ծածկուած են խտացեալ մացառով, ծառերով եւ մորենիներով։ Անհնար է հետազօտել առանց մացառուտը հարթելու։

Ապարանիցս մի քանի քայլ վար, մի շարքի վերայ շինուած է անտաշ քարով երկու միջակ մեծութեամբ եկեղեցի, որոց հիւսիսայինն ունի մի աւագ եւ մի փոքր խորան իւր հիւսիսային կողմում. իսկ հարաւային կողմի պատկից տաճարն փոքր է, բայց ունի առանձին դուռն, երկու փոքր եւ մի աւագ խորան։ Երկու տաճարներիս արեւմտեան կողմում եղած է քարուկիր եւ թաղակապ սրահ, որպիսին էր Պառաւաձորինն, բայց խոնարհուած է այժմ ամբողջ թաղն։ Անյայտացած են Ապարանի եւ տաճարներիս արձանագիր քարերն։

## ՀԱՒԱՊՏՈՒԿ ՎԱՆՔ (մօտ 5000 ոտք) (20).

Աւերակ վանքս, որ Ջաջուռ իշխանի ցեղի յատուկ դամբարանն է, շինուած է Դարպասների արեւելեան կողմում, մի

ձուաձև բարձրացած սարի գագաթին վերայ։ Վանքիս արևելեան ստորոտումն է Գետռնաքար շէնն, հարաւային հանդէպ Խոխանաբերդն, արևմտեան հանդէպ Դարպասներն և հիւսիսային ստորոտով հոսում է Խաչէն գետակն, որ կոչուում է Խաչենագետ։ Վանքս փոքր է և թաղակապ, որ ունի մի փոքր գաւիթ իւր արևմտեան կողմում և մի սրահ տաճարի և գաւթի երկարութեամբ հարաւային կողմում։ Այժմ խոնարհուած են գաւթի, սրահի և փոքր խորանի թաղերն ամբողջապէս, բայց մնումեն տակաւին որմերն։ *Փոքր խորանի դրան ճակատակալ քարի վերայ։*

«Թւին ՈԺԲ. էր յիշխանութեան Հասանա որդո Վախտանգա և ամուսնո նորա Մամքանա ես տէր Յոհան քվերորդի տէր Գրիգորո և Գեորգ եղբաւրորդի և այլ միաբանքս շինեցաք զեկեղեցիքս 'ի փրկութիւն հոգոց մերոց և յիշատակ ծնողաց մերոց . . . .»։

*Այլ քարի վերայ.*

«Յանուն Աստուծոյ ես Աթանաս, որ զԳոգին երկիրն գնեցի 'ի Հաւուց պտուկ տվի. հայր Գեորգ և այլ միաբանքս տվին ի տարումն Դ. աւր պատարագ Նոր կիրակէին. որ զհողն յեկեղեցւոյս հանէ, ՅԺԸ. հայրապետացն նզոված է . . . . .»։

*Հանգստարանում, որ խիստ մօտ է, մի խաչի վերայ.*

«Թուականն ՈՀԳ. էր ես Ջաջուռ որդի Խաղբակայ կանգնեցի զխաչս 'ի տապանի որդոյ իմոյ Սմպատա, ոյք երկրպագէք . . . . .»։ *Մօտ սորին.*

«Ես Վասակ կանգնեցի զխաչս ի տապանի եղբաւր իմոյ Աբու [1]) Սեդայ»։ Ջաջուռ իշխանն և իւր Հասան որդու գերեզմանի վերայ, որ հեռի չէ Աբու-Սեդի տապանից, կանգնած է մի գեղեցկաքանդակ խաչարձան։

---

[1]) Արաբերէն աբու նշանակում է հայր. իսկ Աբու-Սեդայ՝ Սեդի հայր. օրինակ Աբու Բեքր, Աբու Եուսուփ, նշանակում է Բեքրի հայր, Եուսուփի հայր։ Բայց այստեղ Աբու Սեդ նշանակում է հայր Սեդ։ Ինչպէս կարծում եմ Արցախեան նահանգում գործածուած ապեր բառն ծագորդ է Արաբացւոց աբու բառին։ Այժմ ևս գործ են ածում Գեաբի-ապեր, Թինի-ապեր, ևն։

Digitized by Google

Վանքիս արեւմտեան կողմում ոչ այնքան հեռի մի կիսատ եւ ընկած խաչարձանի վերայ.

«Թի. ՈՂԵ. յանուն Աստուծոյ յիշխանութեան Հասանայ ես Գէիորգ (Գեորգ) կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգոյ իմոյ.............»։

## ՀԱՄԱՄԻ ՁՈՐ.

Ձորումս, որ գտնուում է Գեառնաքարից վերեւ կան բաղանիքներ ջրաձորի ձախ ափում, գիւղատեղի եւ հանգստարան եւ *Անապատ* անուն մի հնաշէն եկեղեցի։ Այս ամենի համար աւանդաբար ասում են որ պատկանում են Ջաջուռ իշխանին եւ սորա յետագաներին։ Դեռ մինչեւ ցայսօր ժողովուրդն յարգանօք է վերաբերում այս իշխանական հին շինութեանց։

**ԼԱ. ՇԱՀՄԱՍՈՒՐ ՇԷՆ.** Հիմնուած է դէպի Արծաթասարն երկարած լեռնաշղթայի հարաւային ստորոտում Վանքաշէնի եւ Ծմակահողի միջեւ, բնակիչք տեղափոխուած են Դիզակ գաւառի Առաքել գիւղից. հողն վանքապատկան եւ միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն. անվնաս օդն, կլիման եւ ջուրն, երկար կեանք 80. եկեղեցին Նորաշէն, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Վանք գիւղից։

Գիւղիս ծխաթիւերը եւ մարդաթիւերը մտցրած են Վանքաշինի հաշուոյն մէջ։

**ԼԲ. ԾՄԱԿԱՀՈՂ ԳԻՒՂ**[1]. Հիմնուած է նոյն լեռնաշղթայի հարաւային ստորոտում Առաջաձոր գիւղի եւ Շահմասուր շինի միջեւ, բնակիչք բնիկ, հողն բէկական, տեղական բերքերն նոյն. սննդարար օդն, կլիման եւ ջուրն, երկար կեանք 80—85. եկեղեցին Ս. Ստեփաննոս, քահանայ մի։ Ծուխ 40, ար. 226, իգ. 197։

*Անկնունք եղցի.*

Գիւղիս մօտ կայ մի հին եկեղեցի, որը հասարակութիւնն

---

[1]) Թուրքերէն Բաղարքեանդ, իսկ հին անունն՝ Վաճառ գիւղ կամ գիւղաքաղաք։

անուանում է Անկնունք, այս է ոչ օծուած է և ոչ անուն դրուած։

*Վաճառ աւերակ գիւղաքաղաք.*

Գիւղիս արևելեան հանդէպ, վաճառ առուի ձախ ափի լանջի վերայ երևում են ընդարձակ աւերակի հետքեր-տնատեղեր, խանութների և այլ շինութեանց քարուկիր մնացորդներ։ Այս է Ջալալեան իշխանների գիւղաքաղաքն, որպէս ցոյց է տալիս և անունն և աւերակն.

Ոչինչ պակաս ընդարձակ ծաւալ ունի և Վաճառ գիւղաքաղաքիս հանգստարանն, որի մէջ սրբատաշ չեչ քարով կառուցեալ է մի եկեղեցի, որի երկարութիւնն է 9 մետր 8 սանթիմ, լայնութիւնն 6 մետր 15 սանթիմ։ Հիւսիսային խորհրդարանի ետև կայ մի գաղտնի մուտք, որի ետև և մի անյայտ պահարան։ Տաճարիս հարաւային կողմում, գրեթէ պատկից շինուած է մի երկյարկանի փոքր մատուռ նոյնպէս սրբատաշ քարով։ Գետնայարկի մէջ կայ մի գերեզմանի նման շէնք, որ ուխտատեղի է։ Վերնայարկ մատուռն ունի սեղան և լուսամուտ և դուռն արևմտեան կողմից։ Փլած է մատրանս հարաւ արևելահայեաց կողմն։

*Տաճարի արձանագրութիւնն.*

«Ես Մամքան թագուհի ամուսին Ջալալ Դաւլին և թոռն Բաղուց թագաւորին, այսինքն Սիւնեաց, շինեցի զեկեղեցիքս և տուի ընծայ Այնճայ հողն զիմ հոգւոյ. սպասաւորքս Ե. պատարագ առնեն ինձ, և ծննդեան ութ աւուրքն իմ ծնողաց առնեն, մինչ մեռանիմ՝ ինձ։ Ով ոք որ զտուածս հանէ կամ զժամս խափանէ, դատի յԱստուծոյ և 'ի սրբոց թվին Չ. (1251)»։

*Դրան արեւմտեան սեմին վերայ.*

«Հրամանաւ աստուածասէր իշխանին Հասանա տեառն Խաչենոյ ես Գրիգոր որդի քաջ զաւրականին Ջաջուռա ետու զԱւանախառին երկիրն ի Սուրբ Նահատակս. տէրս և միաբանքս տուին ինձ Սուրբ Գրիգորի տաւնն Բ. պատարագ.....»։

*Տաճարիս արեւմտեան կողմում.*

«Յանուն Աստուծոյ ես Սարգիս Կարնու քաղաքացի սա-

լեցի եկեղեցիս և կանգնեցի զխաչերս լինձ և աշակերտի իմո Յովհաննիսի, յաղաւթ . . . .»։

Արդէն ընկած են խաչերն։

*Փոքր մատրան արեւմտահայեաց ճակատին.*

«Ես Պապաքո և Խութլաա տուաք զԴոխիներերն ի սուրբ Նահատակս, տէրս և միաբանքս տուլին Ա. ժամ, Դաւ-թի տաւնին աղբայրակամ, կատարիչքն . . .»։

Մի ընկած քարի վերայ. «. . ՁԺԸ. ես Գելանշահգեցի . . . . Ալանջալի կամ Եղերն և տուաք ՍուրբՍտեփաննոս. միա-բանքս տուին Ա. աւր ժամ 'ի տարւոջն Ադնաանց (գուցէ Ատո-մանց) տաւնին կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»։

«Շնորհիւն Աստուծոյ ես Հասան որդի Վախտանկայ և Խորիշահի տէր Խաչենու շինեցի զսուրբ եկեղեցիս՝ յորժամ յայտնեցաւ մասունք սուրբ Ստեփաննոսի 'ի սոյն տեղւոջս ի թուին ՈՀԸ. (1229). սահմանեցի 'ի սպասաւորացն զժամ զատ-կին վասն ինձ և վասն հօրն իմոյ [1]»։ Միևնոյն Ջալալ—Դո-լա—Հասանն է արձանագրութիւնս գրել տուողն, որ շինել տուած է Գանձասարայ հռչակաւոր վանքը, ինչպէս տեսանք։

Եկեղեցուս հիւսիսային կողմում արտաքուստ կայ մի նշանաւոր մահարձան, որի վերայ կայ երկու գեղեցկաքան-դակ քարեայ խաչեր։ Երկար արձանագրութիւն կայ խաչե-րիս պատուանդանին վերայ, թէև եղծուած են գրերից շա-տերն, այսու ամենայնիւ ընդօրինակում ենք եղածը նոյնու-թեամբ, կէտեր դնելով պակասած տեղերում.

«. . . . . . ԻՁԱ . . . . րդի կանգ . . . . աչս յիշատակ Ջալալ Դաւլին . . . . . բարեխաւս ծ . . . . . 'ի Քրիստոս թ. ՈԼԹ.»։

**ԼԳ. ԱՌԱՋԱՁՈՐ ԳԻՒՂ** [2]. Հիմնուած է նոյն լեռնա-շղթայի հարաւային ստորոտում, բնակիչք բնիկ, հողն բէկա-

---

[1]) Այժմ պարզուեցաւ մթութիւնն։ Արձանագրութիւնս հաստատում է, որ յայտնուած է այստեղ Ս. Ստեփաննոս Նախավկայի և Նահատակի մասունքն. հաստատուում է, որ երկյարկ մատուռներս շինուած են Փրկչա-կան 1229 թուին և կոչուած Ս. Ստեփաննոս, իսկ եկեղեցին շինուած է 22 տարի յետոյ, Չ. (1251) թուին դարձեալ յանուն Ս. Նահատակի (Սուրբ Ստե-փաննոս Նահատակ)։

[2]) Զիլէթ սար 5132 ոտք Առաջաձորից վերև։

Digitized by Google

կան, անջրդի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, առաա է լուբիան, պատուական օդն, կլիման և ջուրն, եր. կար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, թաղա-կապ երկու կամարների վերայ, երկարութիւնն 16 մետր 13 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 15 սանթիմ և մի քահանայ։ Եկեղեցւոյս հարաւային կողմում. «Թվին ՌՃԺ և Է. հայրա-պետութիւն Պետրոս կաթուղիկոսին, գիւղիս տանուտէրութիւն Եաղուբ (Յակովբ) պէկին, աղսախկալութիւն Պհարին ես ան-արժան Դաւիթ էրեցս շինեցի զեկեղեցիս 'ի յիշատակ հոգոց մերոց, ով կարդաք, ողորմի ասէք մեղաւորիս»։ Տուխ 197. ար. 814. իգ. 687։

Եկեղեցումս կայ մի ձեռագիր աւետարան գրուած թղթի վերայ, միջակ գիրքով, առանց պատկերի.

Յիշատակարանից. «Արդ շնորհիւն Աստուծոյ սկսեալ և ողորմութեամբն կատարեալ 'ի ձեռաց մեզ. և բիծուն գրչիս Վարանէ (Վարդանէ) եպիսկոպոսիս 'ի խնդրոյ Շմաւոն քահա-նայիս։ Արդ գինեցի (գնեցի) զսուրբ աւետարանս 'ի հալալ և արդեանց ինչից իմոց յիշատակ ինձ և ծնողաց իմոց»։ Մատ-թէոսի վերջում գրուած է. «Զստացող սուրբ գրոյս և զծրաւղ սորա զՅորդան եպիսկոպոս յաղաւթս յիշեցէք»։

Աստուածաշունչ. կայ և մի ձեռագիր սուրբ գիրք, որը գրած է Խոսրով անուն ոմն, իսկ ստացողներն են Մելքիսե-դեկ, Յովհաննէս և Մելիտէն քահանայք. բայց յայտնի չէ գրութեան թուականն։ Երկրորդ անգամ սուրբ գիրքս գնած է Վաճառ գիւղաքաղաքցի պարոն Ըռուզ-բէկն և իւր կողա-կից Հաւրին (Հուրին)։ Վերջին անգամ նորոգել տուած են գիւղաքաղաքին բնակիչներն. «Զվերջին աւր նորոգել տուող սուրբ Աստուածաշունչս ես Մկրտիչ, ես Մեհրպապս, ես Շահ-պանդս, Վաճառի մեծն և փոքրն նորոգել տվինք սուրբ Աս-տուածաշունչս . . . թվ. ՌԿԶ.»։

Աստուածաշունչս գրուած է թղթի վերայ, չունի պատ-կերներ, նախշեր և ծաղիկներ, բայց գեղեցիկ են գրերն և գիւրաւ վերծանելի։ Հուլթի գրքի վերջում գրուած է.

Digitized by Google

«Կամաւ ամենակալին Աստուծոյ, փաթիշահութեան Ջա-յան (Ջհան) Շահիս Ուլու պէկս որդի Մէջլիսին՝ թոռն մեծին Ճալալին, ես Շահանշէս որդի Մեհրապին՝ թոռն Արղութինի մեր հայրենեացս մէջն խաւաք իլաւ (եղաւ), պարոն Ուլու պէ-կին թալեզ [1]) մէկ մարդ մեռաւ. Արապայ հողին վեր [2]), գի-նացինք [3]) պարոն Աղայպաստին մուտ (մօտ). երեք սահրա-տին [4]) վեր արիւն կապեց, Արապայ հողն երետ Ուլու պէկին, սահրատն շինեց Սուաջաձորայ ջուրն [5]) ու վեր գայ Ցամաք ձորն, ջուրն վեր գայ Ցեց դրած քարերն. Պզտիկ Փոսն, վեր գնայ Կապն, գեայ գինայ Արապայ ջոթերն, գինայ Արապայ հողն, դինայ սարն, վեր գինայ Սրխէ աղբիւրի հողն վեր գի-նայ Սթու, վեր գեայ Հաւագայ խուռն [6]), վեր գեայ Խաւն, վեր գինայ Քարհատն, վեր դինայ Քարի ջաղացն, գինայ գետն [7]): Այսչանք [8]) հանգ տեղ ա Շահանշին, իւր հայրենիքն է, այ-լուն պուն բան չկայ (այլում ոչինչ չկայ). ով այլայլում անի, այն (նա) նահլաթ իլնի [9]). այս պայմանիս կապած Եղիա ե-պիսկոպոս առաջնորդ Գանձասարայ վկ [10]). ես Յովհաննէս կա-թուղիկոս որդի Ջալալին, թոռն մեծին Աթապէկին վկ. ես Ազապաստի որդի Ճալալին վկ. ես Աղէկս որդի Ճալալին վկ. ես Միրզալիս որդի Տուրսունին վկ. Պաստամս վկ. ես Ամիր Հասանս որդի Ճալալին վկ. թ. ՋԵ. (1456)»:

*Երկու քարեայ խաչարձան*. Կայ գիւղիցս Ծմակահող տանող ճանապարհի վերայ, բերդի հիւսիսային հանդէպ, խիստ մօտ: Մարդաչափ բարձր և մեծ խաչարձաններս կանգ-նել տուած է իւր ծնողաց գերեզմանների վերայ Սէր անուն ոմն. «'Ի թվ. ՌՁՁ. ես Սէրս կանգնեցի գխաչս ծնոյին Մայր

[1]) Մի մարդ մեռաւ Ուլու պէկի կողմի մարդիկներից:
[2]) Վեր գնացինք Արապայ հողից:
[3]) Գնացինք:
[4]) Երեք սահմանների վերայ:
[5]) Դատաւորն սահման որոշեց Առաջաձորի ջուրը:
[6]) Իջնէ Աւագի մօտն (քանդուած տեղն):
[7]) Խաչեն գետակն (Խաչենագետն):
[8]) Այսչափ անդ տեղ է:
[9]) Նզովեալ լինի:
[10]) Այս կապած պայմանիս վկայ եմ Եղիա և այլն:

Digitized by Google

Տիկին (Մայր Տիկնոջ), որք երկիրպագէք Աստուծոյ Քրիստոսի, յաղաւթս յիշեցէք»։

*Ճգնաւորի հանգիստ.*

Ա. Ճգնաւորի բնակարանն և գերեզմանն գտնուում է գիւղիս եկեղեցուց վերև քարայրին մէջ, որի առաջի երեսն պատած, մի լուսամուտ և մի դուռն թողուած է։ Այժմ քանդուած է պատի վերնամասն։ Ո՞վ է և ինչ անուն ճգնաւոր. —ո՛չ ոք չգիտէ։

Բ. Համանման քարայր և Ճգնաւորի գերեզման կայ նաև *Ճգնաւորի ձոր* կոչուած տեղում, գիւղիս արևելեան կողմում։

Գ. Ցար և նման ճգնաւորի քարայր և գերեզման կայ և գիւղիս արևելեան կողմում Անապատի մօտ։

*Անապատ.* Գիւղիս արևելեան կողմում, մի բարձր քերծի տակ, բարակ ջրաձորի, բարձրից թափուած ջրվէժի աջ կողմում, Շապարանց Ցարուեթիւնի պարտիզում կայ երկու փոքր եկեղեցի, որք համարեա թէ կից են միմեանց։ Եկեղեցիներս գրեթէ մեծ մասամբ գոյացած են քարայրից, որի առաջի կողը քարուկիր պատով պատելով ձևացրած են եկեղեցիներ։

Արևելեան եկեղեցին ունի երկու խորան. մինի վերայ գրուած է. «Սուրբ Ովաննէս Մկրտիչ»։ Իսկ մուտքի արևելեան կողմում մի քարի վերայ. «Խորանք սաւրին (սորին) է, որ դրախտի նման են, երկնաւորի Հոգուն սուրբ են՝ զաւրաւարի՝ քրիստոնէից փրկանաւորեցաւ [1] 'ի փրկութիւն Կարապետս և ի լուսաւորութիւն հոգոյ նորա շինեցաւ խորանս յիշատակ սմայ»։

Իսկ արևմտեան եկեղեցին չունի գրութիւն։

Եկեղեցիներիս դռների առաջ, (հարաւային հանդէպ) մի մեծ և անտաշ քարի վերայ.

«Ցորժամ նկարեցան հզաւր հանքս, թիւն ՈԴԸ. էր, ես տէր Խաչի Նոյջալա, գրեցան, նկարեցան. կատարեցաք, առաք. և էջս յանող սորա մեր որդի՝ սուրբ տնաւրէնութեամբնաՔրիս-

[2] Մինչև 1 խուանշանս փորագրուած է մուտքի մի քարին վերայ, որպէս դրեցի, իսկ խուանշանից վերջն՝ մի ընկած քարի վերայ է։

տոսի ի բարեխաւս հոգոց և մարմնոց և ի պարծանս...: Տէր Եղիա շինեց զՍուրբ Անապատս և ի սմա յեծէ, ի սմայ ճշնամին կործանեաց էսորա. այլք բարեկամ են սմայ. սա բարեխաւս է նոցա, որք միաբան են. սոցա բարին քո Տէր առատ խաղաղութեամբ ...ցէ, մնասցէ նմա այժմս ահա և հանդերձեալսն, ոչ միայն 'ի մի աչեալ, այլ աւրհնեալ եղիցին միաբան: Մայր Տեառն.. միամաւր իմ, յուսացեալ ի Միածինդ քոյ, լուսաւորեա ընդ սուրբս քո»: *Քարիս արեւելեան երեսին.*

«Որ Աստուծոյ արքայ Ջալալ Դաւլայ և Աթաբակ որդին, որ Աստուծոյ [1]) իշխան Խաչենոյ և Ըռանայ [2]), Ուքան մանուկն Հասանայ սաղաբ գոլ Աստուած ու մեծ փաթչայան պարոն շահ տէր Միքան Աստուծոյ սիրուլ մեաբան նայ 'ի սմա ՅԼ: (330) մեծամեծ իշխանք և զաւրքն ՌՅ. (1300) աց միահամուռ, համակից միմեանց աւրհնեալ և զաւրացեալ եղիցին 'ի կամս Աստուծոյ Հաւր և նմա փառք յաւիտեանս ամէն: Տունկս բարի, ծառս ամենի, պտուղն լիր հազար բարի, ով փափագի՝ աստ վայելէ, կենաց յուսոյն նա հասանի, ողորմի Աստուած միաբանելոցս 'ի սմա սիրով և արդեամբք յամենայն բարեպաշտ իշխանաց մերոց, տացէ Աստուած զքարեմտութիւն հոգոց, մարմնոց մերոց. ամէն»:

*Կարմիր եղցի.* Գտնուում է Առաջաձորիս հիւսիսային կողմում. գիւղիս ձմերանոց գոմերի մօտ: Բոլորովին կանգուն է տաճարս, որի մօտ կայ և գիւղատեղի և հանգստարան:

*Նահատակ.* Նոյն կողմերում քարուկիր փոքր եկեղեցի, որի մօտ նոյնպէս կայ ընդարձակ հանգստարան և մեծ գիւղատեղի:

ԼԴ. ԿՈՃՈՂՈՒՏ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն լեռնաշղթայից (Եկեղանայ սարից) դէպի հիւսիս թեքուած սարահարթի վերայ. բնակիչք տեղափոխուած են Վանքաշէնից, հողն վանքապատկան, տեղական բերքերն նոյն (չունին ոչխար), ամենապատուական օդն, կլիման և ջուրն, սքանչելի տեսարանն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին Ս. Աստուածա-

[1]) Կամ Որ ըստ Աստուծոյ և կամ Աստուծով և կամ յաստուծոյ:
[2]) Առանի երկրին իշխող.

Digitized by Google

ծին, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Վանք գիւղից։

Վաղուց արդէն բնակիչ եղած է գիւղումս. հին է և եկեղեցիս և հանգստարանս, որ եկեղեցուս շրջապատումն է։ Տաճարիս դրան մի խաչքարի վերայ. «ՈՂԸ. ես Սարգիս որդի Ասլանայ եկի աւտար աշխարհ. կալայ հազս մայր իմ (շալակեցի մայրս) Տահհնար, յազուէս յիշեցէք»։

Գիւղիս և Արութիւնաշէնի ծուխերը ձգած են Վանքաշէնի վերան։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ.

Հիմնուած է Կոճողուտի արևելեան հանդէպ եղած մացառուտ ձորում, այն առուակի հեղեղատի աջ կողմի բարձրութեան վերայ, որ թափվում է Թարթառին։ Վանքս ունի բոլորակաձև և բարձր շինութիւն և կաթուղիկէ և մի դուռն արևմտեան կողմից։ Քանդուած են այժմ խորանն, կաթուղիկէի սալկախն և գռնագլխի քարերն։ Հանգստարան է վանքիս շուրջն, որոց մէջ կան գեղեցիկ ու մեծ մեծ խաչարձաններ։ Վանքս ունեցած է միաբանից սենեակներ, որք կործանուած են այժմ։ Ամայի է վանքս։

*Խորաստանայ մատուռ.* Շինուած է վանքիցս վերև երկու բարակ ջրերի մէջ։ Աւերակ է այժմ մատուռս, որի մօտ է գիւղատեղի և հանգստարան։

*Թխախոռ.* Գիւղիս արևմտեան կողմում կայ այս անուամբ գիւղատեղի, հանգստարան և աւերակ եկեղեցի.....։

Գիւղիցս վերև կայ կիսաւեր մատուռ և ընդարձակ հին հանգստարան. որի մէջ մի խաչարձանից. «Թ. ՈՀԷ. ես Սարգիս որդի Բազար (ատայ) կանգնեցի գխաչս մաւր իմոյ Աղ (իզին)»։

ԼԵ. ԱՐՈՒԹԻՒՆԱՑ ՇԷՆ կամ ԿԱՐՄԻՐ-ՔԱՐ. Շինուած է մի ձորակի երկու լանջերի վերայ, նոյն լեռնաշղթայի հիւսիսային կողմում. բնակիչք տեղափոխուած են Վանք գիւղից. հողն բէկական, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 85—90 տ. եկեղեցին, քահանան և հանգստարանն Վաղահաս գիւղինն է։

Digitized by Google

Գիւղիս արեւելեան հանդէպ Երի—Հոռաթաղ [1]) կոչուած տեղում կայ գիւղատեղի. հանգստարան և կանգուն եկեղեցի, նոյնպէս հարաւային կողմում եղած անտառում կայ *աւերակ եկեղեցի*, հանգստարան և գիւղի տեղ։ Նոյնպէս Վարի և Վերի *Ղամշուա-ծով* (Եղեգնուտ-Լիճ) անուն տեղում կան գիւղատեղեր, հանգստարաններ և աւերակ եկեղեցիներ։

ԼՁ. ՎԱՂԱՀԱՍ կամ ՎՂԱՀԱՍ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն լեռնաշղթայի հիւսիսարեւմտեան կողմում, Թարթառ գետի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ. հողն վանքապատկան, անջրդի և բարեբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տ. եկեղեցին Մայրաքաղաք կամ Տիրամայր, քարուկիր և խիստ հին, քահանան գալիս է Վանքից։ Ծուխ 40. ար. 160. իգ. 166։

Գիւղիս եկեղեցին սովորաբար կոչուում է *Մայրաքաղաք*, որի շրջապատում կայ մեծատարած հանգստարան։ Եկեղեցու մեծութիւնից և գերեզմանատան ծաւալից երևում է որ ժամանակաւ *նշանաւոր*, վանք եղած է մայրաքաղաքս և բազմաբնակիչ գիւղս, որ փոքր է այժմ։ Վանքս կամ եկեղեցիս, որ ամբողջապէս շինուած է տորոնագոյն սրբատաշ քարով, ունի մի մեծ գաւիթ, հարաւային եկեղեցի և գրադարան։ Ամբողջ շինութեանս երկարութիւնն (արևելքից արևմուտք) 14 մետր 45 սանթիմ, լայնութիւն 12 մետր 97 սանթիմ։ Տարօրինակ ձև ունի գաւիթս, որի արևելեան հիւսիսային անկիւնն գրադարան է, իսկ արևելեան միջին և արևելեան հարաւային մասն երկու խորաններ և արևմտեան մասն գաւիթ, որի ամբողջ կամարներն խոնարհուած են և մնում են միայն չորս պատերն։ Սակայն կանգուն են գրադարանն միջի միջակ և հարաւային փոքրիկ խորաններն։ Գաւթիս հարաւային կողմին պատկից է մի նեղ, ցածր և բարձրաշէն եկեղեցի, որ ունի մի միայն փոքր խորան հարաւային

[1]) Երի՝ նշանակում է Վերի, Վարի—Հոռաթաղն արդէն գոմանոց է, բայց կան գեռ մի քանի գերգաստան։ Հոռաթաղ՝ նշանակում է Ուռի ծառի թաղ։

կողմում և մի մեծ խորան։

*Գաւթի միջի խորանի ճակատին.*

«Աստուծոյ շնորհիւն ես Կոստանդին (Ա.) կաթուղիկոս ամենայն Հայոց միաբանեցայ եպիսկոպոսարանիս 'ի ձեռն հոգևոր որդւոյ իմոյ տէր Մարգարէին, յիշխանութեան Մեծի Ջալալ Դաւլին և առաջնորդութեան սորայ տեառն Ներսեսի Աղուանից Կաթուղիկոսի, և այլ սպասաւորք սուրբ ուխտիս հաստատեցին Գ. պատարագ ի տաւնի տեառնընդառաջին Բ. ինձ, Ա. տէր Մարգարէին. կատարիչքն օրհնին յԱստուծոյ։ Ով հանէ զաւետարանս յեպիսկոպոսարանէս, ինքն եղիցի որոշեալ և հանեալ 'ի փառացն Աստուծոյ. 'ի թվիս ՈՂԵ. էր»։

*Խորանի աջ կողմում.* «ՈԼԲ. թուականութիւն Հայոց 'ի հայրապետութիւն տեառն Գրիգորոյ ես Հասան որդի Վասակայ շինեցի զեկեղեցիս.....»։

*Գրադարանի հարաւային պատի ստորոտում.*

«Յառաջնորդութիւն Գրիգորոյ ես Սիմէոն և եղբարք իմ ետու շինել զփռնախուցս և կազմել զդրատունս և եղբարք ետուն Բ. աւր պատարագ. կատարիչքն աւրհնին...»։

Քանդակագրուած է գաւթիս դրան արտաքին ճակատին.

«ԶԳրիգորէս և զմայր և զամուսին իւր յաղաւթս յիշեցէք թիւ ՉԺԷ.»։

Գաւթիս արևմտեան և հիւսիսային կողմերում արտաքուստ եղած են ընդարձակ արձանագրութիւններ, որոց մէջ յականէ յանուանէ նշանակուած է եղել վանքիս նուիրուած անշարժ կալուածների քանակութիւններն, տեղերն և նուիրողաց անուններն։ Գրուած քարերս քանդած և անյայտացրած են..... այժմ բաց մնացած են քարերի տեղերն։

*Վանքիս հիւսիսային կողմում մի խաչարձանի վերայ.*

«Յանուն Աստուծոյ ես Յոհան գրասէր և Վախտանգս կանգնեցաք զխաչս 'ի տապանի որդոյ իմոյ Գրիգորի..... թիւն ՈԿԲ. էր»։

*Վաղահաս գիւղիս շրջակայքում.* Հին Վաղահաս գիւղն գտնուում է նորիս հարաւային կողմում, որ ունի ընդարձակ

գիւղատեղի, կիսաւեր մեծ եկեղեցի և ճոխ հանգստարան և մի քարեայ բարձր խաչ, որի երկարութիւնն աւելի է 3 մետրից։

Կամիր-Վանք, որ բարձր է փոքր ինչ աւերակից, և որ փոքր եկեղեցի է առանց կաթուղիկէի, բայց իւր մօտ կայ հանգստարան։

Վահին անուամբ երկու մատուռ, որք գտնուում են Հին-Գայլ [1]) (Ղօջա-Ղուրդ) սարի վերայ։ Մատուռներից, որ ուխտատեղի են, մէկի վերայ երբ լցնում են ջուր, անձրև է գալիս, իսկ միւսին վերայ երբ վառում են կրակ, արև է անում։ Վաղահասցիք կատարում են այս գործողութիւնները երաշտային և անձրևային տարիներում։

Վաղահաս գիւղիս արևելեան կողմում կայ Մատաղիս անուն գիւղատեղի, որ շատ հեռի չէ և ունեցած է՝ ըստ աւանդութեան՝ 800 տուն։ Աւերակիս հիւսիս-արևմտեան կողմում, Թարթառ գետի աջ ափի մօտ կայ մի քարուկիր կիսաւեր մատուռ, քարուկիր կամրջի աւերակ և մեծ մեծ քարեայ խաչարձաններ։

Խունկըլթալա կոչուած տեղում ևս կայ աւերակ գիւղ, եկեղեցի և հանգստարան։

Վաղահաս գիւղիս արևմտեան հանդէպ, խիստ մօտ է մի հին մատուռ, որի դուռն և արևելեան լուսամտի արտաքին կողմն քանդուած են։

## ԽԱԹՐԱՅ ՎԱՆՔ ԿԱՄ ԽԹՐԱՎԱՆՔ.

(Գերեզմանատուն Դոփեանց ցեղին)

Հիմնուած է Դոփեանց Գրիգոր իշխանի գանձով Թարթառ գետի աջ կողմի բարձրութեան վերայ մի սարահարթում, որ հեռի է Վաղահասից դէպի արևմուտք $3^1/_2$ մղոնաչափ։ Կառուցեալ է չորս սիւների վերայ, որոց երկուսն միապաղաղ են և միւս երկուսն երկերկոտոր չորս կամարների գլխին բազմած է գմբէթն։ Վանքս ունի երկու փոքր և

[1]) Բարձրութիւն Գայլասարիս 7875 է։

Digitized by Google

մի աւագ խորան, մի առանձին խորան և հիւսիս-արևմտեան կողմում տաճարիս արևմտեան անկիւնում, մի գաղտնի պահարան հիւսիսային դասի ձեղունի մէջ [1]), երեք դուռն հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերից, 17 մետր 10 սանթիմ երկարութիւն, 14 մետր լայնութիւն։

*Արտաքուստ տաճարիս արեւելեան ճակատին.*

«Ի ՈԾԳ. (1204) թուիս ես տէր Յովհաննէս շինեցի զեկեղեցիս (արդեամբ նոյն իշխանի) և ժողովեցի զխաչս և զգիրս որ ի սմա և արկի զՁոթացն այգին և զՄատաղիսն [2]) բազում աշխատութեամբ, և ետու զվանքս իւր ամէն սահմանաւն իմ եղբաւրս (եղբօրս) Հասանայ և իւր որդեանցն Հաթերքու տեառն միջնորդութեամբ. ով խափանէ, խափանեսցի ի կենացն Աստուծոյ»։ «Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Հասանայ որ երբ իմ աղբերս զեկեղեցիս շինեաց ու զվանքս ինձ երետ, ես զԽնձորոյ Բակս իւր սահմանով ի ի յեկեղեցիս տուի, ով հակառակ կայ, Աստուծոյ հակառակ կայ, ով զայս գիր խափանէ, չունի թողութիւն յԱստուծոյ»։

*Մի ջարդուած կիսատ քարի վերայ.*

«Կամաւն Աստուծոյ ես Հասան և մայր իմ Տուշիկ շինեցաք զսուրբ կամար, Պետրոս հաւր իմոյ...... թվ. ՈԿԴ.»։

*Վանքիս ներսում՝ բեմի երեսին.*

«Շնորհիւ Քրիստոսի ես Ասփէ [3]) դուստր արքայաշուք իշխանին Տարսայիճի, թագազարմ մաւրն իմոյ Մինա Խաթունին, նպաստ եղեալ քրիստոսապսակ գլխոյ իմոյ մեծափառ իշխանին Գրիգորի 'ի շինութեան լուսանուէր սուրբ եկեղեցւոյս, կամեցայ ի ձեռն քահանայապետին մեծի տեառն Յովհաննիսի՝ զիմ յարդար ընչից կանգնեցի Բեմի սեղան 'ի զենմանն Քրիստոսի, զի յամենայն կիրակէ և շաբաթ տաւն ծննդեան և տեառնընդառաջին, ատկին, զվարդավառին, աստուածածնին և սուրբ

[1]) Գաղտնի պահարան կայ և աւագ խորանի գլխին։

[2]) Միևնոյն Մատաղիսն աւերակ գիւղ է, որ էր Վաղահասի արևելեան կողմում։

[3]) Տես սորա մասին Գարդման գաւառի Խարգմանչաց վանքի աւետարանի յիշատակարանը։

խաչի ինձ կատարի պատարագ զամեն եկեղեցիքս. որ և տուի զմեր Խաս հողն Բլթի հանդի զսեննեկպան ա. բահի ջուր, թէ ոք 'ի մերոց կամ յաւտարաց զայս յայս եկեղեցւոյս հանէ կամ զպատարագն խափանէ, 'ի փառաց որդւոյն Աստուծոյ, որոշեալ եղիցի»։

*Ձախակողմեան փոքր խորանի վերայ.* «Այս ձախակողմ խորանի սուրբ Պաւղոսիս է, զմեծ տէր Յովհաննէս շինող եկեղեցոյս որդի Դաւիթին, եղբայր մեծ իշխանին Հասանայ յաղաւթս յիշեցէք»։ «Աջակողման սուրբ Մինաս, զՄինա խաթուն դուստր մեծ իշխանին Ջալալին և ամուսին Տարսայիճին յաղաւթս յիշեցէք»։

*Վէմ քարի վերայ.*

«Աստուած ողորմեա Սմպատիս եղբաւր . . .»։

*Հիւսիսային վերջի սիւնի վերայ.*

«Աստուծով ես Ազարիա միաբանեցայ սուրբ ուխտիս, տէր Յովհաննէս և միաբանքս տուին Ա. աւր ժամ համբարձման...»։

«Կամաւքն Աստուծոյ և Հասանայ և տէր Յովհաննիսի ես Յակոբ ստացայ զսոյնս (սիւնս) հալալ արդեամբք իմովք, և միաբանքս ետուն 'ի տարւոջն Դ. պատարագ . . . . .»։ Վանքս նորոգուած է ՌՃԽ. թուին Հայոց Յօհան, Բարսեղ, Աթանաս և Ղազար վարդապետների ձեռնով։

Վանքումս, մէջ տեղին մօտ, կայ մի գերեզման, որի տապանաքարի արձանագրութիւնը անհնարին եղաւ կարդալ, քանզի պատեց միգամածն, մթնեց տաճարիս ներսն, չկար մոմ վառելու, մօտենում էր երեկոն, $3^1/_2$ մղոնաչափ (մօտ 25 վերստ) ճանապարհ ունէինք գնալու և այն գազանների միջով. վասն որոյ մնաց առանց կարդալու։ Սակայն գիտենք հաստատապէս, որ բարեպաշտուհի Ասփայի մարմինն ամփոփուած է տաճարումս։ Օրհնեալ տիկինս Մեծ-Սիւնեաց Տարսայիճ իշխանին դուստրն էր և Դոփեանց քաջ Հասան իշխանի որդի Գրիգոր իշխանին ամուսինն։ Ասփայ տիկինս վախճանուած է Հայոց ՉԿ. (1311) և ամփոփուած վանքումս (տես նոյնը Թարգմանչաց վանքի աւեր. Ա. յիշատակարանը)։

Digitized by Google

*Զանգատուն.* Շինուած է [1]) վանքիս արեւմտա-հիւսիսային անկիւնում արտաքուստ. երկյարկ և սրբատաշ տորոնագոյն քարով։ Վանքս ունի և շրջապարիսպ, քարուկիր սենակներ և խուցեր իւր հիւսիսային կողմում։ Այժմ աւեր է պարսպի հարաւային կողմն և մի քանի խուցեր։ Պարսպի մեծ դուռն, որ հիւսիս-արեւմտեան կողմից է, դեռ կանգուն է իւր պատերովն։ Վանքս շրջապատուած է անտառախիտ վաղեմի ծառերով։

*Վանքիս կալն.* Շինուած է տաճարիս արեւելեան հանդէպ, ձորի աջ կողմի սեռի վերայ։ Կալիցս փոքր ինչ վերև նոյն սեռի վերայ կայ մի *քարուկիր մատուռ*, որի մօտ նաև այլ կալեր։

*Խաչարձան եւ կամուրջ.* Վանքից ներքև Թարթառի վերայ կայ մի հին կամուրջ և կամրջիս մօտ մի խաչարձան, որի վերայ քանդակուած է. «Կամաւն Աստուծոյ ես Ասփայ դուստր մեծ իշխանին Տարսայիճին և Մինայ խաթունին և ամուսին հսկայազաւր իշխանին Գրիգորի որդւոյ մեծ իշխանին Հասանայ քաջի տեառն Աղուանից կապեցի գխաչս, շինեցի զկամուրջս յիշատակ հոգւոց անցելոց, ներկայից և ապագայից»։

*Այլ խաչարձանի վերայ.* «Յորժամ թուականն էր ՈԺ. (1201) բարեպաշտ պատրոնիկն Վասակ թոռն Իւրիկայ թագաւորին, որդի Հասանայ որդւոյ Սակռայ տեառն Հաթերքոյ, Հանդաբերդոյ, Հաւքախաղացին, եղբայր Վախտանկայ Նորին աթոռակալի երեր զխաչս և ոչ կարաց կանգնել վասն անպարապութեան. քանզի երթեալ եղև ի Գոլաչտեան և առ զնա յանաւրինաց աւգնութեամբն Աստուծոյ և բնակեցոյց անդ զորդին իւր և ինքն նահատակեցաւ 'ի վերայ քրիստոնէից և իջեալ լոյս 'ի վերայ 'ի տեսութիւն բազմաց. և յետոյ ՈԾ. թուին կանգնեցին որդիք նորա Խոյդան և Խաւչախն յիշատակ հոգւոյ նորա և յերկարութիւն կենաց իւրեանց....»։

Պէտք չէ մոռանալ իմ առաջնորդը, որ վաղահասցի մի

[1]) Շինել տուած է Վահրամ իշխանի որդի Սարգիս եպիսկոպոսն (տես Դատի վանուց արձանագր. շարքում)։

քաջ, սրտոտ և զուարթ երիտասարդ էր Գրիգոր Օհանեանց անուամբ և որ օգնեց ինձ ամեն կերպով։

Խոթայ վանքից ներքև, Թարթառի աջ ափերի վերայ, Հետևեալ աւերակ գիւղերում կան աւեր եկեղեցիներ, մատուռներ և հանգստարաններ—*Չոխտակ-եղցի*, *Վարդանայ գիւղ*, *Մրջման շինատեղ* (ընդարձակ աւերակ)։

## ԽԱՉԵՆ ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Ա. *Շիկաքար* (21) որի տեղն այժմ կոչուում է Քարագլուխ, իսկ սորա հիւսիսային բարձր քերծն՝ Շիկաքար (մօտ 3100)։ Բերդս ունի երկու մուտք—*արեւելեան* և *արեւմտեան* կողմերից. դռների կողքերն ամրապնդուած է եղել քարուկիր պատերով, ինչպէս նշմարուում է հետքերից։

Բ. Բերդն է *Ուլու-պապի* ամրոցն, որ կայ Պտգեսբերքի մօտ։ Բայց ամրոցիս մէջ ևս չկայ ջուր։ Այս բերդն Շիկաքարի չափ հին չէ, այլ պատկանում է Ջալալեան իշխանների ժամանակներին։

Գ. *Կաչաղակաբերդ*, (5642 ոտ.) որ գտնուում է Պտրեցիք գիւղի արևմտեան կողմում։ Գիւղ մի ժամի ճանապարհ է Պտրեցիք գիւղիցն մինչև ամրոցս, որ արձանացած է Մեծ-Իրանաց վանքի հարաւային կողմում։ Բերդակալ (22) սարն ժայռ է միապաղաղ, առանձնացած բոլորովին իւր չորս կողմերից և սեպաձև ցցուած հիւսիսից հարաւ դիրքով. որի մակերևոյթն փոքր ինչ թեքուած է դէպի հարաւ։ Բերդաքարիս արևմտեան, հիւսիսային և արևելեան կողմերն գագաթներից մինչև գետինն բնութեան քարտաշն այնպէս ուղիղ կտրած է, կարծես թէ յատկապէս կանխաւ մրաթելով նշան արած լինէր։ Հարաւային կողմով վիմահերձից վիմահերձ պատուած է քարուկիր պատով, նոյնպէս միւս կողմերով քերծերի եզերքներովն։ Միայն հարաւային կողմից է մուտքն, որ բաւական դժուարատար է։ Բաւական տարածութիւն ունի բերդիս մակերևոյթն, ուր կայ շատ բնակարանների բակեր։ Ափսոս որ ջուր չկայ բերդումս, որ արժանի է *անառիկ*



Digitized by Google

տէտղոսին. բայց գրեթէ կեդրոնի մէջ ունի մի վիմափոր ջառանկիւնի հոր։ Պատերազմների ժամանակ ջուր բերած և լցած են հորս այն պատուական աղբիւրից, որ գտնուում է մուտքի ուղղութեամբ դէպի հարաւ փոքր ինչ հեռու։ Քանի գեղեցիկ տեսարան ունի ամրոցս, հարաւային կողմում երեւում են Քիրս լեռնաշղթան, Շուշին, Բողրխան, Խաչենի հարաւակողմի գիւղերն, արևելեան կողմում մօտուստ Սուրբ Գէորգ, հեռուստ Կովկասեան լեռնաշղթան, հիւսիսային կողմում Ջրաբերդի լեռներն, Առաջաձորի լեռնաշղթան, Մռաւ սարն, իւր ստորոտում Աղուան [1]) պատն, իսկ իւր արևմտեան կողմում Խոխանաբերդն և Նատարի-Ղալան։

Դ. Խոխանաբերդ (23) կամ Թարխանայ Ղալա. (6237)

Ջորս կողմերից առանձնացած և ձուաձև արձանացած մի բարձր ժայռ է մի բարձրագոյն սարի վերայ, որ կայ Գանձասարի հարաւային հանդէպ, Խաչէն գետակի աջ կողմում։ Սաստիկ զառիվեր, խիստ վտանգաւոր և միշտ ահարկու կածան ժեռքարի վրայով արևելեան կողմից դէպի հարաւ արևմուտք բարձրանում է մանուածոյ ձևով։ Ահա այսպիսի դըժուարատար և միանգամայն սոսկալի է նեղ կածանն, քանզի, Տէրն մի՛ արասցէ, եթէ սահեցաւ բարձրացողի ոտքն կամ փոքր ինչ ծռուեցաւ նորա մարմնոյ հաւասարակշռութեան դիրքն, իսպառ կորուսած է. վասն զի ընկնելուց յետոյ սեպացեալ ժայռերին զարկուելով պիտի գլորուի անդունդն։ Բերդակիս մակերևոյթի տարածութիւնն աւելի չէ երեք կալաչափ մեծութիւնից. այսու ամենայնիւ պակաս չեն քարուկիր հին շինութեանց հետքեր։ Քարուկիր պատով պատուած են տեղ տեղ ժայռիս կատարն, ոչ եթէ իսպառ խզելու համար թշնամեաց մուտքը ամրոցիցս, այլ որպէս զի մարդ-

[1]) Այս վաղեմի պարիսպն, որ ընկած է Խաչէն գետակի և Քոլատակվտակի մէջ՝ խառնուրդի մօտ, չկարողացանք իմանալ թէ ինչ պատճառաւ կոչուում է Աղուանք, թէ և ջանքն անպակաս եղաւ մեր կողմից։ Արդեօք պարսպի խիստ հեռաւոր հնութեան պատճառաւ. թէ Աղուանից թագաւորների ժամանակից շինուած լինելու պատճառաւ։—Միայն յայտնի է որ պարիսպս շինուած է ռազմագիտական դիրքով, որով արգելուած է թշնամին ջրաձորս մտնելուց։ Սորա մասին տես ծանօթութիւն 26։

Digitized by Google

չընկնի վերևից վար պաշարուածներից։ Արդարև անառիկ է ամրոցս և միանգամայն անմերձենալի և շրջապատուած վաղեմի անտառներով։ Բայց որովհետև այստեղ ևս չկայ ջուր, վասն որոյ պատրաստած են վիմափոր հորեր և ի պահանջել հարկին ջուր բերած մօտակայ աղբիւրից, որ գտնուում է բաւական տեղ ներքև։ Թէ որքան դժուարութեամբ իջանք, թողնում ենք բարեմիտ ընթերցողաց երևակայութեանց։

Ե. *Նատարին* (24) *Ղալա*. (6493 ոտք) Համարեա թէ յար և նման ամրոց է այս Խոխանաբերդին։ Առաջինն գտնուում է վերջնոյս հարաւային կողմում քառորդ մղոն հեռաւորութեան վերայ։ Միայն թէ Նատարն բարձրանալու ուղին այնքան վտանգաւոր չէ։

Զ. *Անանուն բերդակ*. Գտնուում է գրեթէ Առաջաձորի և Ծմակահողի միջև երկու քարեայ խաչերի մօտ։ Բերդաբլուրն բոլորովին առանձնացած և ձգուած է հիւսիսից հարաւ դիրքով և միանգամայն թրաձև տեսքով. վասն որոյ նեղ և երկար է բերդակիս մակերևոյթն բլրի գագաթի ձևով։ Պարսպուած է բլրիս գագաթն ամուր պարսպով, միայն հիւսիսային ու հարաւային անկիւններում շինուած են երկու բուրգեր, որք միևնոյն ժամանակ ծառայած են իբրև ջրամբար, որոց ջուրն բերուած է մօտակայ աղբիւրներից։ Անպակաս են և սորա միջից քարուկիր հին տնաբեկեր։

Է. *Խաթրայ բերդ* (25) Գտնուում է Խաթրայ վանքի արևմտեան հանդէպ, ձորի ձախ լանջի գլխի քերծի մէջ։ Այս ընդարձակ քարայրի նման մի տեղ է, որի առաջն պարսպուած է և որ ունի մի դժուարատար և վերելակ կածան։ Այս ևս պատկանում է Ջալալեան իշխաններին։ Շատ անգամ եղնորթներն գալիս և պատսպարուում են ինչպէս բերդումս, նոյնպէս և Խաթրայ վանքում։

**ԺԴ. ԳԱՒԱՌՆ**, որ ընկած է Թարթառ գետի և Եանշաղ վտակի ձախ և Թրղի գետակի աջ ափերի, Մթնաձորի [1] և այս ձորի սարի լեռնաշղթային մէջ, որի ստորին ծայրն

[1] Ղարանլուխ-դէրէ։

հասած է նոյն Թարթառ գետի ձախ եզրին, ստացած է Ըստիսական, Ըռստակ և Հաթերք անունները։ Գաւառս հարուստ է ջրերով, անտառներով և ամարանոց պատուական լեռներով, բայց փոքր գաւառակ է։ Ըստ կարգի այժմեան գաւառութեան մարմնաւոր կառավարութիւնն միացրած է գաւառակս Ջրաբերդի հետ։

Ա. ՀԱԹԵՐՔ ԳԻՒՂ (27)․ Հիմնուած է Թարթառ գետի ձախ կողմում, մի բերդաձարի արևելեան ստորոտում, բնակչաց փոքր մասն բնիկ, իսկ մեծ մասն տեղափոխուած Փառուխ, Կղարծի, 2 ծարտար, և Խաչէն գաւառի Խանածախ գիւղերից և Վանից, հողն արգասնի, մեծ մասամբ անջրդի և բարեբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, գարնանի, գարնագարի, հաճար, կորեկ, կտաւհատ, սորեկ, լուբիա, բակլայ, խաշխաշ, սիսեռ, ոլոռն, տանձ, խնձոր, թութ, կեռաս, ոչխար, տաւար, գոմէշ, ձի, խոզ․ օդն և կլիման բարեխառն, պատուական ջուրն, երկար կեանք 80—90․ եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ չորս կամարների վերայ առանց միջնասիւների, խիստ հին և բոլորովին անշուք, երկարութիւն 22 մետր 75 սանթիմ, լայնութիւն 9 մետր 85 սանթիմ․ քահանան գալիս է Մեծ-Շէնից։ Ծուխ 70․ ար․ 369․ իգ․ 325։

Եկեղեցուս դրան արտաքին կողմում մի քարի վերայ կայ կանացի պատկեր, որի շուրջն քանդակուած է կարականաձև․

«Կամաւն Աստուծոյ ես տէր Թաթէոս, Մարկոս եղբարքս ամեն կանկնեցինք Սուրբ Աստուածածնայ եկեղեցիս, Ուրստակէս աւագ քահանայ․ Տէր Աստուած ողորմեա»։

*Մուղդուսին գերեզմանոտ*․ Ընդարձակածաւալ, վաղեմի հանգստարան, որ կայ գիւղի արևելեան հանդէպ, ձորի միւս կողմում։

Մատաուռների մէջ խաչարձանների վերայ․

1) «Սուրբ խաչս բարեխաւս պարոն Ղալաբէկին թվ․ ՌԿ․»։

2) «Սուրբ խաչս է բարեխաւս Խանխաթունին հոգուն,

Մանկասարին»։

3) «Սուրբ խաչս բարեխաւս Խաթունին հոգուն»։

4) «Կամաւն Աստուծոյ պարոն տէր Ոհանէս կանգնեցի սուրբ խաչերս. Թագաւոր Շահ Աբազն, երկրիս պարոն տէր Ոհանէս»։

5) «Կամաւն Աստուծոյ ես Ղալաբէկի Ո... հաւր եղբայր իմ պարոն տէր Ոհանէս Ղա.... [1])։

6) «Սուրբ խաչս բարեխաւս Զիլփիխանին»։

Մի այլ խաչազարդ քարի վերայ. «Աստուած ողորմի Դէլոյխանին, որ է որդի Սարումին»։ Սորա վերայ կայ մի գալխոնի քանդակ։

Հաթերքիս շրջակայքում կան հետեւեալ հնութիւնները.

*Աստղաբլուր*. Մի բլուր է, որ գտնուում է գիւղիս արեւելեան հանդէպ Թարթառի ձախ կողմում։ Բլրիս վերայ կայ մի հնաշէն մատուռ, որի մէջ է մի գերեզման, որ մեծ ուխտատեղի է։ Բայց այժմ խոնարհուած է թաղն։ (28)

*Քարահունջ*. Խիստ մօտ Հաթերքին հարաւ-արեւմտեան կողմին, կանգուն քարուկիր եկեղեցի, հանգստարան և գիւղատեղի, որի աջակողմին ընկուզի ծառերն ապրում են տակաւին։

*Մասիս* կամ *Միս* անուն ուխտատեղի աւերակ մատուռ, որ շինուած է Մռաւ սարից անջատուած մի լեռնաբազկի սեւին վերայ, Հաթերքի հիւսիսային կողմում։

*Շուքավանք*, որ շինուած է մի թանձր անտառի մէջ, այժմ աւերակ է վանքս, մնում են միայն չորս պատերն։

*Մթնաձոր*. (Ղարանլուխ դէրէ) աւերակ եկեղեցի, հանգստարան, գիւղատեղի, կալեր, մարագատեղեր։ Աւերակիս մօտ կայ մի ամենապատուական և մեծ աղբիւր։

*Սոխն շինատեղ*, հանգստարան և գիւղատեղի, որի եր-

[1]) Հետեւելով բոլոր արձանագրութեանց տեսնում ենք որ պ ա ր ո ն տիտղոսը կամ պատուանունը յատկացրած են միայն այն եպիսկոպոսներին, վարդապետներին և քահանաներին, որոց ծագումն իշխանական է, նոյնը տեսաւ նաև ընթերցողն։ Աւանդաբար ասում են որ սոքա են Առաք. պատ. (Գ. գլ. 9 եր.) գրուած. «Օղլան քեշիշն և իւր եղբայր Ղալաբէկին ի Հաթերք գեղջէ»։ Սոքա, որք գնացած են լինում Պարսկաստան, վերադառնում են վերստին իւրեանց հայրենիքն։

Digitized by Google

կու կողմերով հոսում են ջրեր և թափւում Թրղին գետակի մէջ, որ օժանդակն է Թարթառին։

*Ծոս* գիւղատեղի—կալեր, ընկուզի ծառեր, կալատեղեր և այլն։

*Խոտորաշէն* քարուկիր տնաբակեր, ջրաղացներ, հանգստարան։ Գիւղից տեղափոխուած են գանձակի գետաշէնցիք։

*Սրաշէն* (Սարին շէն) քարուկիր մատուռ, հանգստարան։

*Սումին շինատեղ.* նոյնպէս գիւղատեղի, հանգստարան և հիմնայատակ մատուռ։

Երկու լճակներ կան Հաթերքի հիւսիսային և 2 արև-մտեան կողմումն։

*Ականայ աւերակ.* Մեծ գիւղատեղի է Ականայ անուն վտակի աջ կողմում շինուած, որի մէջ կանգուն է տակաւին եկեղեցին որ կառուցեալ է հոյակապ վեց սիւների վերայ, բայց անմարդաբնակ։ Տակաւին մնում են ընկուզի, թթենի և զամոնի ծերունազարդ ծառեր, և ընդարձակ հանգստարան աւերակիս մօտ։

Բ. ՋԱՓԱՐ [1]) ՇԷՆ. Հիմնուած է Հաթերքի արևմտա-հարաւ կողմում, Թարթառ գետի ձախ ափին մօտ. եկեղեցին, հանգստարան խիստ հին են. այժմեան բնակիչք՝ մօտ ութ տարի առաջ տեղափոխուած են 20 ծուխ Ղալաղշլաղ, Ծամ-ձոր և Տաթև գիւղերից՝ բնակութիւն հաստատած այնտեղ. ամենայն ինչ նոյն։ Ծուխ 12. ար. 35. իգ. 30։ [2])

Կայ *պղնձահանք* Նոր-շէն աւերակ գիւղի մօտ, որ Ջա-փար-շինի հարաւային կողմումն է, և Դադի վանքին հարա-ւային կողմում—Թարթառի ձորում։

Սկսեալ Ջափար շինից մինչև Խոթայ վանք, մինչև Եան-շաղ կան շատ աւերակներ, որոց մէջ կան աւերակ եկեղեցի-ներ և մօտերքում հանգստարաններ։ Գաւառումս այժմ մնա-ցած են միայն երկու հայաբնակ գիւղ. երեսուն գիւղից ա-ւելի է մնացեալ հայ գիւղերի աւերակներն, որոց շատերին

---

[1]) Ջափար գիւղ անուն յիշուած է Դադի վանուց արձանագրու-թեանց մէջ։

[2]) Վերադարձած են իւրեանց գիւղերն 8 ծուխերն։

Digitized by Google

մէջ այժմ տեղակալած են աւազակաբարոյ Քեօլանի անուն մահմետականներ։ Այսպէս են Խոժ գիւղն և Եանշաղ փոքր մօտ եղած Եանշաղ գիւղն, որոց մէջ բնակում են մահմետականք, բայց եկեղեցիներն մնում են դեռ կանգուն։ (Եանշաղ գիւղիս մասին տես և Ջրաբերդ գաւառի Մաղավուզ գիւղի մաշտոցն)։ Ահա այսպէս Թափուր մնացած է խեղճ Ըռստակ գաւառս հայ բնակիչներից։ Մի առ մի գրելով աւերակները՝ ձանձրացնում եմ իմ յարգելի ընթերցողները։ Ես չձանձրացայ մի առ մի շրջելուց, Դուք էլ մի՛ ձանձրանաք կարդալուց, ձեր հոգուն մատաղ, սիրելի ընթերցողք։ Այցելուն համարեա՛ ամեն քայլափոխում տեսնում է խաչարձաններ, աւեր կամ կիսաւեր մատուռներ, եկեղեցիներ և վանքեր, գիւղերի և շէների աւերակներ եւն. եւն......։

## ԴԱԴԻ ՎԱՆՔ [1]).

Վանքս գտնուում է Թարթառ գետի ձախ կողմում Խաթրայ վանքի ուղղութիւնից բաւական վերև, և ունի վաղեմի շրջապարիսպ։ Առաջին անգամ վանքս հիմնարկուած է, ինչպէս վկայում է աւանդութիւնն, Թադէոս առաքեալի Դադի անուն աշակերտի անուամբ։ Բայց անյայտ է այս շինութեան թուականն, զի հետզհետէ նորոգուած է հնութիւնս այլ և այլ ժամանակներում. վասն որոյ և գլխովին անյայտացած է հնութիւնն, միայն մնացած են նորոգութիւններն։ Ահա այս վանքիս վանահայրն էր Վախտանգ Թագաւորազնի որդի Գրիգոր եպիսկոպոսն, որի մօտ գալով կրօնաւորեցան իւր եղբայր Հասան և իւր եղբայրակին Մամայ.

«Կամաւն Աստուծոյ ես Հասան որդի Վախտանգայ, տէր Հաթերքու և Հանդաբերդու, Խաչենաբերդու և Հաւքախաղացին կացի յաւագութեանս ամս Խ. շատ պատերազմաւ յաղթեցի Թշնամեաց իմոց աւգնութեամբն Աստուծոյ և եղեն ինձ Ձ.

1) Կոչուում է և Խութայ կամ Գոթայ վանք, քանզի շինուած է մի խութի վերայ։ Խոթ գիւղն ունեցած է մօտ 300 տուն բնակիչ, որք նախ գաղթում են Երևանի կողմերն և հիմնում Եղիջա գիւղը և յետոյ տեղափոխուում են Շուլաւերի կողմերն։

(վեց) որդի, զբերդերս և գաւառս ետու նոցա և ես եկի 'ի վանս մօտ իմ եղբայր պարոն տէր Գրիգորէս և եղէ կրաւնաւոր և բերի զխաչքարս ի յԱղուայ, շատ աշխատութեամբ և բազում հնարիւք կանգնեցի սուրբ նշան հոգւոյ իմոյ։ Արդ՝ վասն ձեր հոգւոցդ, որք ընթեռնուք՝ զիս յաղաւթս յիշեցէք ՈԼԱ. թուիս»։

«Ես Մամա թագուհի ամուսին Հասանայ՝ դուստր Կուրիկայ թագաւորին, կացաք յաւագութեան ամս Խ. ես և այր իմ, և թողեալ զհայրենիքս որդւոց մերոց եկաք 'ի վանքս մօտ տէր Գրիգորիս և որդի մեր հոմանուն Նորին և զգեցաք զձև միանձանց և կանգնեցի զխաչս յիշատակ հոգւոյ իմոյ, որք երկիրպագէք, յաղաւթս յիշեցէք ՈԼԱ. թուիս (1182)»։

Ապա 1214 (ՈԿԳ.) թուին Թագաւորազն Վախտանգը բարեպաշտ տիկինն չորս սիւների վերայ կառուցանել է տալիս սրբատաշ քարով առաջնոյն—նոյն վանքի կից հրաշալի շինութիւնը որի հարաւային որմի վերայ արտաքուստ գըրուած է.

«Շնորհիւ ամենակարողին Աստուծոյ և Միածնի որդոյ Յիսուսի Քրիստոսի և պարգևօք ամենասուրբ Հոգւոյն ես Արզուխաթուն նուաստ աղախին Քրիստոսի՝ դուստր մեծի իշխանաց իշխանի Քրդին և ամուսին Վախթանկայ Թագաւորազնոյ տեառն Հաթերքոյ և ամենայն Վերին-Խաչենոյ, յուսով մեծաւ շինեցի զսուրբ կաթուղիկէս ի տեղւոջ հանգստարանի առն իմոյ և զաւակաց իմոց Հասանայ անդրանկին իմոյ և Գրիգորի՝ որ ի Տէր կէսաւրեայ վաղճանելոյ. զի վասն մեղաց իմոց խրատեաց զիս Աստուած և եբարձ ի գլխոյ իմոյ զերկոսեան պսակսն վայելուչս, զի անդրանիկն իմ Հասան սպանաւ ի Թուրքաց պատերազմին վասն քրիստոնէական հաւատոյս և զկնի երից ամաց զկրտսեր որդին իմ զԳրիգորն ի Տէր կոչեցեալ զպարտ բնութեանս հատուցանելով վճարեաց 'ի կենցաղոյս և փոխեցաւ առ Քրիստոս՝ առ 'ի անմխիթար թողլոյ թշուառացելոյ մաւրս իւրեանց։ Այլ զի ի կենդանութեան իւրեանց յոյս 'ի մտի եդեալ նոցա շինել եկեղեցի յայսմ տեղւոջ և ոչ ժամանեցին վասն աքաղահաս լինելոյ 'ի վերայ նոցա մահուն. և ինձ աւանդեցին

անդարձիւ կատարել զփափագ սրտից նոցա. և իմ յանձն առեալ մեծ յուսով և շատ աշխատութեամբ շինեցի զքաւարանս է փրկութիւն հոգւոց նոցա և իմ դստերաց և ամենայն զարմից։ Արդ աղերսիւ հայցեմ, որք երկրպագէք սրբոյ խորանիս, յիշել յաղաւթս ձեր զվերոյգրեալս 'ի սմա։ Կատարեցաւ ի թուականնութեանս Հայոց ՈԿԳ. 'ի փառս Աստուծոյ»։

*Տաճարիս խորանում սեղանի ետեւ.*

«Ողորմութեամբն Աստուծոյ ես Մամա ամուսին արիականին Հասանայ և որդիս մեր Գրիգոր տեարք գոլով տեղոյս հայրենիաւք որ և մեր պարոնէքն հաստատեալ էին և մեք տուաք ի սուրբ ուխտս զԾովատեղն, զձաճռուանց, զՋաւլբէկանց։ Ես Գրիգոր տվի զԾագունանց հողերն զմեր բաժինն իւր չորեցովն [1]) որդին իմ Տէր Սարգիսն և միաբանք սահմանեցին սուրբ Ստեփաննոսի տաւնի ժամն, որ լինի իմ մաւրն և ամուսնոյ իմոյ Ասփային, թէ ոք զժամն խափանէ կամ զընծայն յետ ունէ, դատի յԱստուծոյ. Մոխրաքակս մեր բաժին ես տվաք 'ի սուրբ ուխտս թվ. ՉԿԱ.»։

*Աւագ խորանի ճակատին.*

«Շնորհիւն Աստուծոյ ես Աշոտ որդի Ամիր Հասանայ..... ած իշխանէն Պաւուշա և մայրն իմ Աճիրնի միաբանեցաք սուրբ ուխտիս և տվաք... հողն ի Խաչենագետի զլ... սուրբ կակաթուղիկէս տէր Աթանաս... տվին ինձ պատարագ զամեն եկեղեցիս.... թվ. ՁԻ.»։

«Կամաւն Աստուծոյ ես Սմպատ իշխան որդի մեծի Լիպարտի միաբանեցայ սուրբ ուխտիս Դատու վանաց առաջնորդութեամբ տէր Աթանասի և գնեցի զԽռանտաշանց այգին և յԵղեգիս իմ գնած Ձիթահանքն և այլ արդիւնք ըստ կարի և զկանանչաւոր գեղն և այլ որ հաստատեցի ամեն խարճովն անչար և ետու 'ի սուրբ Կաթուղիկէս։ Տէր Աթանաս և այլ միաբանքս սահմանեցին մեզ զատկի կիրակի յարութեան աւրն զա-

[1]) Արցախում արօրով հերկած ժամանակ լծում են երկու գոմէշ և երկու եզներ, որ կոչւում է չ ո ր ե ց, չ ո ւ ր ո ւ ց, չ ա ր կ ո վ։ Ծագած չորս բառից։ Այժմ ևս գործածական են բառերս։ Այստեղ նշանակում է «հողերն» չ ո ր ս ա ն ա ս ո ւ ն ն ե ր ո վ մ ի ա ս ի ն։

Digitized by Google

մեն եկեղեցիքս մեզ ժամ: Արդ ով խլէ զմեր տուածն կամ զժամն խափանէ, ՅԺԸ. հայրապետացն նզոված եղիցի, թուին ՉԺԴ.»:

Որովհետև տաճարս և գաւիթն շինել տուած էր բարեպաշտուհի Արզու խաթունն իբր հանգստարան Վախթանկեան ցեղին, վասն որոյ ամփոփուած են գաւթումս.

Վախթանկ թագաւորազնի, իւր կնոջ
Արզու խաթունի և սոցա որդւոց
Հասանայ անդրակի և կորսերոյն
Գրիգորի , որ վաղաթառամ վախճանեցաւ.
Մամքանայ [1]), որ քոյր էր Արզու խաթունիս, կին միւս
քաջ Հասանին և մայր Գրիգոր իշխանին.
Զաքարիա կաթուղիկոսին.
Աթանաս ,,
Յովհաննէս [2]) ,,
Սարգիս [3]) եպիսկոպոսին.
Գրիգոր Կաթուղիկոսին մարմիններն:

## ԴՈՓԻ ՈՐԴԻՔՆ ԵՒ ԹՈՌՆԵՐՆ [4]).

Դոփ բարեպաշտուհի դուստր Սարգսի իշխանաց իշխանին. սա (Դոփ) ունէր ամուսին իւր զբարեպաշտ իշխանն զՂարա Գրիգորն և որդի սոցա քաջ և յաղթող զաւրավարն և մեծ իշխանն Հասան տէր Ականոյ, Հանդաբերդոյ, Սոթից, Ծաղվաքու և այլ բազում գաւառաց, որ և քան զամենայն առաւել սիրէր զգեաւղն Ծար, հայրենիք և պարգևք քաջութեան, որ են գինք արեան տուեալ յաշխարհակալացն Հայոց:

[1]) «Այս է հանգիստ Մամքանայ ամուսնոյ Հասանայ դստեր Քրտին և Խորիշահի մայր Գրիգորոյ, աղաչեմ, յիշէք 'ի բարի թվ. ՉԽԷ.»: Տես և արժան. Տարայ:

[2]) «․․ ի հայր ․․․ և 'ի երանեալն Հաղբատայ և Դատէի և Խաթրայի աթոռակալն զտէր Յովհաննէս, եղբայր քաջ զամրականին Հասանա, և արքայաշնորհ իշխանին հաւրն զինուորին Գրիգորոյ, աղաչեմ, յիշէք 'ի բարին թվ. ՉՁԴ.»: Միևնոյն ցեղից է:

[3]) «Զտէր Սարգիս ․․․ յիշեցէք ի բարի թվ. ՉՁԲ.»:

[4]) հատուածս ընդօրինակեցինք իշխանական շղթայի շարունակութիւնը պարզելու համար:

Սա ունէր զկին Մամքան դուստր Քրտին, և որդի սոցա զբա-րի Գրիգորն և ամուսինն իւր Ասփայ դուստր Կոմսի Տարսա-յիճին իշխողի կողմանն Սիւնեաց. և սա բազում ընչիւք և ծախիւք փարթամացոյց զսուրբ ուխտն Դատի վանս և զԽաթ-րի վանս, զի շինեաց զտաճարսն, որ է Դարպասներն և այլ բազում արդիւնս արար, և միւս որդին տէր Յովհաննէսն՝ որ շինեաց զսուրբ ուխտն գէտամէջ, և որդի Գրիգորի Վահ-րամն, որդի սորա Սարգիսն, որ զբազում արդիւնս արարեալ՝ և մի ի բազմացն այս է զգեղեցիկ զանգականին ի Դատի վանս, ի Խաթրի վանս, ի Գետամէջ, ի գեաւղաքաղաքն Ծար, և է մինչև ցայսօր։ Որդի սորա (Սարգսի) Հասան և այս Հա-սանէս բաժանին Դոփայ ցեղն որք են այսոքիկ.

Ճահանշէն Ուլուբէկանց պապ.

Աղբուղէն Այտինցւոց պապ.

Ջհանշէն Ջհանշեցւոց պապ։ Եւ որդի Հասանայ Աղբու-ղէն և որդի սորա Տուրսունն, և որդի սորա Այտինն և ի ժամանակի սորա 'ի զաւրանալ Իսմայէլացւոցն և ի նուազիլ տանս Հայոց, ցիր և ցան լինելն իշխանացն Հայոց, յարեան այլազգիքն և զմուլքն մեծ իշխանին Հասանայ պէթալմալ արարին. գնաց պարոն Այտինն 'ի դիւան և երեք ամ աշխա-տեաց, և բազում ինչ տուեալ՝ ազատեաց ի ձեռաց այլազ-գեացն զվանորայքս և զշինարէքն, զոր Տէրն ամենայնի տա-ցէ զվարձս վաստակոց իւրոց»։

Վանքիս հարաւային որմի վերայ

«Եւ 'ի Նորոգութիւն սուրբ ուխտիս գեաւղս և ագարակս իւրեանց սահմանաւքն զԱպահէն, զԵզնարածանց, զԵշանց, զԿանաչաւորն, որ 'ի Վայոց ձոր, Բ. տունս յԱրփա հաստատե-ցաք կամակցութեամբ եղբարցս զաւագ խորանի պատարագն յանուն վերագրելոցս կատարի անխափան։ Եթէ ոք այսմ վճռի հաստատնոյ խափանումն առնէ յիշխանաց կամ յառաջնորդաց տեղւոյս կամ ով ոք լիցէ, խափանեսցի յոյս նորա՝ որ առ Քրիս-տոս և դատեսցի յԱստուծոյ»։

Digitized by Google

## Զանգակատուն [1])

Ինչպէս տեսաւ ընթերցողս, զանգակատունս շինուած է Դոփեանց Վահրամ իշխանի որդի Սարգիս եպիսկոպոսի ձեռնով այն խաչս հնաձև, նեղ և երկար վանքի վերայ, որ հիմնարկուած էր յանուն Դատի առաքելոյն և յետոյ նորոգուած քանիցս։

«Կամաւ ամենակալին Աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի այս մեր գիր է իշխանական հրամանի։ Ես Տուրսունս, Սէյտիս, Պաւուչս, Գրիգորս, Հասանս և եղբարքս և որդիքս մեր զայս հաստատ Սիկիլս տուաք տէր Աւագ եպիսկոպոսին և իւր եղբայր Մանուէլ արեղային, որ մեր հայրենի աթոռն զԴատի վանս, զԽաթրի վանս, զԳետամէջն, որ մեր գերեզմանատունն է 'ի մեր պապանցն մեզ մնացած, վասն սոցա լաւ միամտութեան համար, զի 'ի վանօրայքս մարդ չ'կար, որ յառաջն կար և չէն պահէր և եկեղեցիքս լուսաւորէր. յայս պատճառէս երես դրաք և զայս սուրբ աթոռնին 'ի նոքա ապըսպարեցաք, և զերկու իշխանութիւնն էլ հէնց ի (նոսա) յանձնեցաք, որպէս առաջին մեծ կաթուղիկոսն մեծ տէր Զաքարիային, տէր Աթանասին և տէր Սարգսին էր տուեալ զԴատի վանս, զԽաթրի վանս, զՀաղբատ իւր վիճակաւն, նոյնպէս և այս տէր Գրիգոր կաթուղիկոսն զայս երեք աթոռս հաստատեաց վիճակաւ և շրջաբերական թղթիւ»։

«Կամաւ ամենակալին Աստուծոյ ես Սէյտիս, որդի պարոն Շանչին, թոռն պարոն Հասանայ, ես Գրիգորս, Հասանս, Պէկիս, Ալթունս որդիք պարոն Վահրամայ, թոռունք պարոն Հասանայ, ես Այտինս որդի պարոն Տուրսունին, թոռն պարոն Աղբուղին. ես Շահանչէս որդի Հասանայ, թոռն պարոն Ճհանշին. մեք չորս եղբարք տուաք մեր վանորէիցս զԱպահէն, զԽուլթ, զԽոզենակս իւր չորս սահմանովն, ի Զափարին հան-

---

[1]) Զանգակատանս մօտ, արևելեան կողմում կան երկու մատուռ, որոց մէջ կայ մի մի քարեայ, սխրագործ և հիանալի քանդուած խաչեր. մէկի վերայ. «Զաւրութեամբ Աստուծոյ ես տէր Աթանաս որդի Հասանայ կանգնեցի զսուրբ նշանս ի յիշատակ հոգւոյ իմոյ». Իսկ միւսին վերայ «զՏէր Գրիգոր անուցանող Աթանասայ յիշեցէք ի Քրիստոս»։

դէն Զագունանց ագարակ տեղումն, Բունչի աղբիւրումն, Թաղանանց գետումն. Պետրոսաքակ, որ մեր պապերն տուեալ են զՍոխանանց, զՏովատեղն, Ջաջուանց, Զալլքէկանց, զՑրտնոտն, զՇիռմանանց, զԳրիգորաթաղս, զԴատի վանս [1]) իւր քալատակերումն (մացառուտներով) զՀերանանց Հակառակաքերդումն, Նաւի աղբիւրումն, Բերդաքարումն, Կռապաշտուցումն, Ողնումն, Խուզենակուց մեծ այգին, Մանանածումն, Ծաղիկանց, Եղնարածանց տուաք Աւագ եպիսկոպոսին, որ մեր ճոճաւոր էր, քանի որ իւր պէտքն է՝ վարէ [2]) Աստուծով ազատ է։ Իսկ եթէ այլ մարդ վարէ, տասանորդն առնու և տայ վանքին անպատճառ։ Այս եղև մեր ուխտ առաջի Աստուծոյ և սուրբ Դատի առաքելոյս։ Արդ՛ ով ոք զկնի այս փախմիաթներս այլայլէ կամ խլէ թէ յորդոց և թոռանց մերոց և յազգայնոց իցէ, առաջի Աստուծոյ պարտական և սներես լինի. ՅԺԸ. հայրապետաց նզոված է........»։

Վասակ Նահատակի որդի Գրիգոր եպիսկոպոսն շինած է մի ուրիշ գաւիթ անտաշ քարերով։

Հասանի որդի Գրիգոր եպիսկոպոսն [3]) շինած է մի եկեղեցի չորս սիւների վերայ, որ շատ հեռի չէ վանքերից, որ գտնուում է խղճալի անմաքուր դրութեան մէջ։ Վանքիս վանահայրն է այժմ տաթևացի ոմն քահանայ, որ մեր եկած ժամանակ նա գնացած էր իւր հայրենիք։ Ափսոս, ափսոս, հազար ափսոս, քայքայուում և աւերուում են պատուական վանքերս, խլուեցան, ինչպէս տեսանք զանազան ժամանակներում, զանազան իշխաններից վանքերիս նուիրուած ահա-

---

[1]) Խոթայ վանքի գիւղն։

[2]) Նշանակում է՝ հ ե ր կ ե լ։

[3]) Այլ Գրիգոր եպիսկոպոս ոմն ԺԶ. դարում ասում է. «Յանուն Աստուծոյ ես տէր Գրիգորէս տղայութեամբ եկի ի դուռն եկեղեցոյս շատ աշխատանք արարի. իշխանութիւն Շահ Թահմազինէր զվանքս տուին տըհուլ, ես ղաբուլ չարարի, գնացի Նոր շէնն, շինեցի երեք ջաղաց, երեք բաղճայ և եկի 'ի դուռն սուրբ Առաքելոյն, շինեցի զ Խ ո ւ Թ (Խոթայ վանք), որ եկեղեցոյս մալն քաշէ. զբաղուբաղճէս և զՋրաղացներս և այլ ամենայն աշխատանս եկեղեցւոյս վախմ տուի։ Արդ՛ ով որ այս գեղարանքերս և զիմ վախմերս հանել ջանայ 'ի սուրբ Առաքելոյս (Դատի վանուցս) ՅԺԸ. հայրապետացն նզոված է........ Թուին ՌԷ. (1558)»։

գին կալուածներն, անտառներն և հողերն։

*Վիմափոր քարայր.*

Դատի կամ Խոթայ վանքից վար Թարթառի ձախ կողմում կայ մի վիմափոր քարայր, որի մուտքն գետնի երեսիցն է։ Լուսահոգի Բաղդասար մետրապօլտի կենդանութեան ժամանակ Քեօլանի մահմետական ոմն որսորդ կրակում է մի քօշ, որ անյայտանում է թաւալգլոր։ Հասնում է ետևից որսորդն և տեսնում որ քօշն ընկած միջոցին ջարդուած են այրի բերանի փտած փայտերն, այրի մէջ ընկած է որսն, ուր և դարսուած են շատ գրքեր։ Որսորդն վեր է առնում գրքերից մին, աճապարում Շուշի, յայտնում Բաղդասար մետրապօլտին, որ պարգևատրում է որսորդը և Շուշի փոխադրել տալիս ձեռագրերը։ Գրչագիրներումս եղած է մի ձեռագիր ընտիր մաշտոց՝ գրուած սուրբ Մեսրոպի աշակերտ Ստեփաննոս վարդապետի ձեռնով, որ այժմ գտնուում է Ս. Էջմիածնի հնադարանում [1])։

## ՎԻՄԱՓՈՐ ԴԻՏԱՐԱՆ.

Մի քերծի մէջ, որ կայ Խաթրայ բերդի հիւսիսային հանդէպ Թարթառի ձախ ափի բարձրութեան վերայ, կայ մի բնակարան, որի առաջն պատած և լուսամուտ թողուած է։ Բայց՝ այս բնակարանն մուտ գործելու համար՝ քերծի դրսից չունի վերելակ սանդուղ. իսկ ներսից անյայտ է բոլորովին մուտքի տեղն։ Արտաքուստ ակներև երևում են քարուկիր պատն և լուսամուտն, որի ստորոտով—գետահովտով ճանապարհ է։ Այս դիտարանն, մեր կարծիքով հաղորդակցական կապ ունեցած է Խաթրայ և Հաւքախաղաց բերդերի հետ և թշնամու արշաւանքը արգելելու քաղաքական նշանակութիւն։ Դիտարանիցս ներքև կայ մի քարուկիր մատուռ։

---

[1]) Շուշու առաջնորդարանում եղած ձեռագրերի ամենամեծ և ընտիր մասը, որը փոյթ խնամքով ժողոված էր Բաղդասար մետրապօլիտն, վաճառած է Շուշու առաջնորդներից ոմն եպիսկոպոս՝ մի Թիփլիզեցու վերայ մի քանի հազար րուբլու։

Digitized by Google

*Մշահանի վանք.*

Հիմնուած է յանուն սուրբ Աստուածածնի մի բլրի վերայ, որ գտնուում է նոյն գետաձորում և որի գլուխն մեծ հարթ է։ Փոքր է վանքս և պատկից ունի մի փոքր եկեղեցի որ ունի մի գաւիթ, որք ամբողջապէս շինուած են անտաշ քարով։ Գաւթի որմի մէջ կայ մի ամենափոքր մատուռ։ Բոլոր շինութիւններս քայքայման վիճակի մէջ են։

*Եկեղեցու պատի վերայ.*

«Աստուծով ես Մլեհ տուի զիմ գնած հողն 'ի Զափարին 'ի սուրբ ուխտս. միաբանք տուին Սուրբ Յակոբի երկու ժամն Ա. ին. Ա. Փ . . . . .»։

*Վանքի վերայ.*

«Ես Մամա խաթուն միաբանեցայ սուրբ ուխտիս, առաջնորդ Յովհաննէս և եղբարքս տուին Բ. ժամ»։

# ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

## Ա. ՀԱՒՔԱԽԱՂԱՑ (ԼԱՉԻՆ ԴԱՅԱ) (29)

Մի անտառապատ, վիմահերձ, խոր ձորերով անջատուած, բարձր սար է, որ սեպաձև արձանացած է Թարթառի աջ կողմի բարձրութեան վերայ։ Սարիս արևելահայեաց վիմահերձի մէջ կայ մի ահագին քարայր, որի առաջն պատուած է ժամանակաւ քարուկիր պատով, որով ձևացած է քարայրս անառիկ բերդ։ Արդէն աւերուած է քարայրս տանող կածանն, հետևապէս այժմ անկարելի է մուտ գործել ամրոցս։ Սարիս գագաթն գեղեցիկ և սքանչելի սարահարթ է, և բնական ամրոց ձևացած, որ նոյնպէս ունի դժուարատար մուտք, բայց չունի ջուր իւր մէջ։ Մի քանի տասնեակ տարիներ առաջ՝ բարեհամբաւ Ասլան-բէկ Աթաբէկեանցն շարժուած հետաքրքրութենից՝ չուանով վերևից կախել է տալիս քարայրս Հաթերքեցի Գալուստ անուն սրտոտ տղամարդը։ Վերև քաշելուց յետոյ վերջինս յայտնում է թէ քարայրում կան հնուց մնացած շատ հին, ահագին և խեցեղէն ու դատարկ կարասներ։ Պատերազմի պաշարի համար պահուած են կարասներն։

Digitized by Google

Բ. ՀԱԿԱՌԱԿԱԲԵՐԴ [1]) Գտնուում է Դատի վանքից վերև մի թրաձև և անտառապատ սարի վերայ։ Բերդս ունի ամուր դիրք, հիանալի տեսարան և նշանաւոր ջուր։ Մի քարուկիր և մեծ ջրամբար է լի կենդանի ջրով, որ ո՛չ աւելանում է և ո՛չ պակասում, ո՛չ ջուր է ընդունում և ոչ արտահանում։ Բոլորովին անջրպետուած է բերդասարս իւր չորս կողմերից խորանդունդ և լայնգոգ ձորերով. միայն ունի մի թեւուղի, որ մի սեռի գլխով բարձրանում է դէպի բերդն։ Ամրոցիս մէջ տեղ տեղ երևում են հին շինութեանց հետքեր։

Գ. ԲԵՐԴԱՔԱՐ [2]), որ կայ Հաթերք գիւղին կից՝ իւր արևմտեան կողմից, որի արևելեան, հարաւային և արևմտեան կողմերն բարձր քերծեր են. իսկ հիւսիսային կողմն պարսպուած է եղել, բայց այժմ իսպառ անհետացած է պարիսպն և հազիւ հազ է նշմարուում ուրեք ուրեք։ Բերդս, որի մակերևոյթն հերկուում է այժմ, չունի ամրութիւն, բայց ունի մօտակայ տեղից բերուած ջուր, և ուշագրաւ տեսարան։

Դ. ԱԿԱՆԱՅ ԲԵՐԴ. Հիմնուած է անառիկ ամրոցս Հաթերքի հիւսիս արևելեան կողմում, Բալի սարի ստորոտում։ Խոր խոր ձորեր են բերդիս հիւսիս-արևմտեան և հարաւարևելեան կողմերն. պարսպուած է եղել բերդիս մնացեալ —վերի և վարի կողմերն։ Ամրոցիս մակերևոյթն թեքուած է ձորերի դիրքով դէպի արևելեան հարաւ. բայց սորա մեծութեան ծաւալն, համեմատելով միւս բերդերի հետ, անհամեմատ մեծ է։ Բերդիս մակերևոյթն լի է շինութեանց աւերակներով [3]), հանդիստներով, կայ և եկեղեցու աւերակ և ականակիտ աղբիւրի պատուական ջուր։ Այժմ տեղ տեղ աւերուած են պարսպի պատերիցն։ Բալի սարի հիւսիսահայեաց լանջի վերայ կայ մի աւերակ մատուռ։

Բերդիս հիւսիսային կողմում, ձորի միւսափում կայ ե-

---

[1]) Անունս կայ և Դատի վանուց արձանագրութեանց մէջ. այժմ կոչում են Զ ա փ ա ր ի բերդ։

[2]) Հաթերք—Դղեակ է անուանում այս Գօշ-Մխիթարն (եր. 72—73)։

[3]) Կայ իշխանական բնակարանների աւերակ ապարաններ, սենեակներ և գմբեր։

Digitized by Google

րեք տարօրինակ շինուածք, որ հեռի են փոքր ինչ իրարից և ունին իւրեանց վարի և վերի կողմերին մօտ կարակնաձև կլորակ լուսամուտներ։ Թէ՝ ինչ եղած են շինութիւններս, չգիտենք, զի անծանօթ է մեզ շինութեանցս անցեալն։

## ԺԵ. ՋՐԱԲԵՐԴ ԳԱՒԱՌ. (30)

Առ հասարակ հարուստ է գաւառս խոր խոր ձորերով, գալարագեղ, անտառապատ, ամենաբարձր, միջակ և փոքր լեռներով, վանքերով և ամրութիւններով և բաւարար հացով և արծաթահանքով։

Ա. ՂԱԶԱՆՉԻ ՏԷՆ, որ կայ Կիչանի արևելեան հիւսիսային կողմում Խաչէն և Ջրաբերդ գաւառների սահմանագլուխ սարի հիւսիսային կողմում։ Տէնիս հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերն՝ սկսեալ շինի ստորոտներից, բարձրապատ սարեր են, միայն բաց է արևելեան կողմն. վերջապէս խոր փոսի մէջ ընկած է շէնս։ Բնակիչք բնիկ, հողն քէկական, բարելի, տեղական բերքերն՝ ցորեն, գարի, գարնանի, կորեկ, կտաւհատ, սորեկ, ոբիզ, ընկուզ, տանձ, խնձոր, տաւար, գոմէշ, խոզ, օդն և կլիման ճնշիչ ամրան եղանակներում, ջուրն պատուական, երկար կեանք 75—80 տարի, եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, թաղակապ, երկարութիւնն 16 մետր 15 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 30 սանթիմ. քահանան գալիս է Ջանեաթաղից (Ճանկաթաղ)։

. Դրան ճակատակալ քարի վերայ. «Սուրբ Գէորգ այ (է) եկեղեցիս թվ. ՌՃԻ.»։ Տուխ 35. աը. 175. իգ. 150։

Տաճարիս արևմտեան որմին մօտ մի տապանաքարի վերայ քանդակուած է մի քաջ ձիաւոր, որ հանած է իւր թուրը, և բարձրացրած մի այլ ձիաւորի վերայ, որ իջած է իւր ձիուց, բռնած նորա կապը, հանած իւր թուրը, կարծես յանձնում է զայն յաղթողին։ Յաղթուածն փէս ունի իւր գըլխին վերայ և կանգնած է խղճալի դիրքով։ Քարիս վերայ.

«Այս է տապան Ղապատ որդի Յովան . . . չըէ եղբարսն զայն ստայօն, թվ. ՌՉ. եկաւ եիկրիս, շաղ դեղ . . ցայք, վեր-



Digitized by Google

ջին Ղալա մէ տեսար ասգար եկաւ մեզ վերայ։ ՉԾ. (700), Թօպկոլայ եկաւ, իմ քարէն չի կարաց օնել (յինքն ունել, դըրաւել), յեդոյ մասիհագարն դան պանեցին»։

Յաղթող ձիաւորի գլխից վերև գրուած է.

«Քարս ըերաւ որ է Եղբարասմաց պարոն»։

*Գիւլ-Մալիք* [1]) և *Կարմիր Եղցուն խուլթ* տեղերում, որք գտնուում են շինիս արևմտեան կողմում, կան գիւղատեղեր, հանգստարաններ և եկեղեցու աւերակներ։

Բ. ԾԱՆԿԱԹԱՂ կամ ըստ օտարահնչիւն ձայնին Ջանեաթաղ գիւղ. հիմնուած է մի ձորի աջ ու ձախ լանջերի վերայ (նոյն լեռնաշղթայի արևելեան կողմում) Ղազանչու հիւսիսային կողմում. բնակիչք գաղթած են Պարսկաստանի Ղարադաղ նահանգից [2]) Պասգևչի ժամանակ. հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (ունին և մասնաւոր այգի), անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 75—85. եկեղեցին Սուրբ Գէորգ, հնաշէն, կառուցեալ երեք կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 17 սանթիմ, լայնութիւն 8 մետր 82 սանթիմ. *Դրան ճակատակալ քարի վերայ.*

«Թ. ՌԾԲ. յիշատակ Ղուկասի որդի Գրիգորի»։

Քահանայ մի։ Տաճարիս դրան ամփոփուած են տասնևմի քահանաներ, որք են նախկին բնակչաց հոգևոր հովիւներն։ Տուն 85. ար. 390. իգ. 338։

Մեղրակեր (Ղաբարթու) կոչուած տեղում կայ հանգստարան, գիւղատեղի և եկեղեցու աւերակ։

Գ. ԳԻՒԼԵԱԹԱՂ, որ մի սեռով միայն բաժանուած է Ծանկաթաղից, հիմնուած է վերջին գիւղիս հիւսիսային կողմում մի ձորի ձախ լանջին վերայ, որի երեք կողմերն լեռնապատ են, բաց է միայն արևելեան կողմն. բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, բայց հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90

---

[1]) Նշանակում է Գ ա յ լ - Մ է լ ի ք։

[2]) Ամրադիւլ և Քիւնի գիւղերից։

Digitized by Google

տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր կառուցեալ երեք կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 5 սանթիմ, լայնութիւն 8 մետր 40 սանթիմ. քահանայ մի։

Գիւղիս վերի կողմումն է ճըռ-մէլիք-Ալլահվերտու բնակարանն, որ բաղկացած է հինգ սենեկից, որից կանգուն է երկուսն և կիսաւեր երեքն։ Ճինութեանս երկարութիւնն ձգուած է հիւսիսից հարաւ, որ ունի իւր չորս անկիւններում չորս աշտարակներ։ Դրան հիւսիսային սեմի վերայ.

«Այս է Մէլիք Աւուշան թվ. ՌՄԽԸ.»։

Ծուխ 74. ար. 327. իգ. 284։

*Պղնձահանք.* Գիւղից կէս մղոնաչափ հեռի դէպի արևմուտք կայ պղնձահանք, որ անգործածելի է այժմ։

*Ցովսէփ եղցի.* փոքր ինչ վերև պղնձահանքից, ուր կայ այս անուն եկեղեցի ջրաձորի աջ կողմում, իսկ ձախ ափին՝ գիւղատեղին և հանգստարան։

*Մեհմանանց գիւղատեղի*, ուր կայ աւերակ եկեղեցի, գիւղատեղի և հանգստարան։

*Արծաթահանք* գտնուում է Մեհմանանց գիւղատեղից կէս մղոնաչափ վերև նոյն սահմանագլուխ լեռնաշղթայի հիւսիսային կողմում։ Որպէս երևում է փորուածներից, գործածութեան մէջ եղած է հանքս շատ վաղուց։ 1870 թուին գալիս են Յոյներ, կապալաւ վեր առնում հանքս, բնակութիւն հաստատում հանքիս մօտ և սկսում հալել նիւթը։ Որպէս թէ կապարախառն է արծաթն և դժուարաւ է ծածկում ծախքը, վասն որոյ անգործածելի է այժմ հանքն.....։

Դ. ԿՈԽՍԱՊԱՏ ԳԻԻՂ. հիմնուած է Գիւլեաթաղի հիւսիսային կողմում մի բարակ ջրաձորի ձախ լանջին վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի [1]) անջրդի և միջակ արդիւնաբեր և միանգամայն սակաւաջուր, բայց այգեէտ. տեղական բերքերն նոյն (նաև ոչխար, ձի, այգի, բամբակ, *սումաղ*, սեխ, վարունկ, ձմերուկ), պատուական օդն, կլիման և ջուրն,

[1]) Նախ եղած է մէլիքապատկան. չգիտենք ինչ պատճառաւ յետոյ փոխուած է արքունի։

երկար կեանք 100 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ, վնասուած է գագաթնագծից, քահանայ երեք։

Եկեղեցուս դռնատակին մի քարի վերայ․

«Թի․ ՉԺԸ․ այս է հանգիստ․․․․․»։

Դռնագլխին․

«Թւին ՌՂ․ ես Ապրել որդի Ուզտիկակա գնեցի գլխաչս ինձ ու ամուսին իմոյ, աղաւթեցէք [1])»։

Եկեղեցուս թէ ներսում և թէ դրսում ամփոփուած են շատ քահանաների մարմիններ։

Ե. ՀՈՌԱԹԱՂ, որ կից է Կուսապատի այգիներին, թէպէտ կազմում է առանձին գիւղ, սակայն ծխաթիւն անբաժան է․ այսպէս և

Զ. ՄԱՐԴԱԿԵՐՏՆ, որ ունի առանձին եկեղեցի և մօտ կէս մղոն հեռի է Հոռաթաղից, հիմնուած միևնոյն Կուսապատի ձորի շարունակութեան վերայ, Ուտի առանձնակ գաւառի դաշտաբերանի մօտ, բնակիչք անջատուած Կուսապատից [2]), հողն արքունի, բազմարդիւն, օդն և կլիման ջերմագին ամրան, ջուրն ոչ այնքան լաւ, երկար կեանք ոչ աւելի 70-ից․ եկեղեցին Սուրբ Կարապետ, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Երեք գիւղերումն միասին ծուխ 355, ար․ 1850, իգ․ 1199, քահանայ 4։

Նահատակ անուն ուխտատեղի, որ գտնուում է Հոռաթաղի արևմտեան հանդէպ մի բլրի գագաթին վերայ․ իսկ Կոտրած եղցին՝ սոյն գիւղի արևելեան հանդէպ սարին վերայ․

Երի-Գիւլխաթաղում (Վերի-Գայլաթաղ), որ գտնուում է միևնոյն ջրաձորի մէջ Կուսապատից վերև, կայ հանգստարան, գիւղատեղի և քարուկիր փոքր եկեղեցի։

Ինն-մաս անապատ—Հին-Մոխրաթաղ․ Հիմնուած է Կուսապատի հիւսիսային կողմում մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Կառուցեալ է սրբատաշ քարով մի կա-

---

[1]) Անկասկած քարերս բերուած են Հանգստարանից.

[2]) Արքունի երկդասեան ուսումնարան կայ Կուսապատումն։

Digitized by Google

մարի վերայ, որ ունի եկեղեցու և ոչ վանքի ձև, երկարութիւն 14 մետր 37 սանթիմ, լայնութիւն 8 մետր 20 սանթիմ։ Ունի միայն աւագ խորան. որի միջից հիւսիսային և հարաւային կողմերից բացուած է դռնաչափ մուտքեր երբ փոքր խորաններ.

*Հիւսիսային որմի վերայ.*

«Ի 1881 ամի շինեցաւ սուրբ ուխտս Ինն Մասանց տրօք ժողովրդոց 'ի ժամանակս Յովսէփ վարդապետի Փինաչեանց»։

*Խորանի հիւսիսային կողմում.*

«Շինեցաւ Սուրբ Ինն Մասանց սեղանն դստուխս (?) Ահար խանումին վասն հանգուցեալ Յարութիւն բէկ Աթաբէկեանի Կուսապատ գեղջ 1884 ամի»։

Տաճարիս հարաւ-արևելեան կողմում կայ և մի հին եկեղեցու աւերակ։ Հարկ է յայտնել թէ այստեղ եղած է Մոխրաթաղ գիւղն, որի բնակիչք մի քանի տասնեակ տարիներ տեղափոխուած են Նոր-Մոխրաթաղ և մնացած է այստեղ հին եկեղեցին, գիւղատեղին և հանգստարանն։

Նոր-տաճարիս հիւսիսային որմի մօտով ամփոփուած են Մէլիք Իսրայէլեանների ննջեցեալները—Սայիբէկի, Ահարխանումի, Մէլիք-Ադամի կին Թումար-խանումի, և այլ մէլիքազուն գերդաստանների մարմիններն։

Անապատս ունի երեք սենեակ և մի աշխարհական վանահայր։

## ՄԷԼԻՔ-ԻՍՐԱՅԷԼԵԱՆՆԵՐԻ Ա. ԱՊԱՐԱՆՆ.

Շինուած է Անապատիս արևմտեան կողմում մի քանի տասնեակ քայլ հեռի։ Շինութիւնն ունի արտաքուստ բերդի ձև—քարուկիր բարձր պարիսպ և մի դարբաս արևելեան կողմից։ Արտաքուստ չափելով ունի 49 մետր երկարութիւն 29 մետր 25 սանթիմ լայնութիւն։ Ամբողջ ապարանն բաղկացած է տասներկու սենեկից, որք ունին զանազան ձև և տարբեր մեծութիւն, Սենեակներն եղած են ընտանեկան սենեակ, ննջարան, ընդունարան, դատարան, թոնրատուն, խո-

Digitized by Google

մեն եկեղեցիքս մեզ ժամ։ Արդ ով խլէ զմեր տուածն կամ զժամն խափանէ, ՅԺԸ. հայրապետացն նզոված եղիցի, Թուին ՉԺԴ.»։

Որովհետև տաճարս և գաւիթն շինել տուած էր բարեպաշտուհի Արզու խաթունն իբր հանգստարան Վախթանկեան ցեղին, վասն որոյ ամփոփուած են գաւթումս.

Վախթանկ Թագաւորազնի, իւր կնոջ
Արզու խաթունի և սոցա որդւոց
Հասանայ անդրակի և կորսերոյն
Գրիգորի, որ վաղաթառամ վախճանեցաւ.
Մամքանայ [1]), որ քոյր էր Արզու խաթունիս, կին միւս
քաջ Հասանին և մայր Գրիգոր իշխանին.
Զաքարիա կաթուղիկոսին.
Աթանաս ,,
Յովհաննէս [2]) ,,
Սարգիս [3]) եպիսկոպոսին.
Գրիգոր Կաթուղիկոսին մարմիններն։

## ԴՈՓԻ ՈՐԴԻՔՆ ԵՒ ԹՈՌՆԵՐՆ [4]).

Դոփ բարեպաշտուհի դուստր Սարգսի իշխանաց իշխանին. սա (Դոփ) ունէր ամուսին իւր զբարեպաշտ իշխանն զՂարա Գրիգորն և որդի սոցա քաջ և յաղթող զաւրավարն և մեծ իշխանն Հասան տէր Ականոյ, Հանդաբերդոյ, Սոթից, Ծաղվաքու և այլ բազում գաւառաց, որ և քան զամենայն առաւել սիրէր զգեաւղն Ծար, հայրենիք և պարգևք քաջութեան, որ են գինք արեան տուեալ յաշխարհակալացն Հայոց։

[1]) «Այս է հանգիստ Մամքանայ ամուսնոյ Հասանայ դստեր Քրտին և Խորիշահի մայր Գրիգորոյ, աղաչեմ, յիշէք 'ի բարի Թվ. ՉԽԷ.»։ Տես և արձան. Տարայ։

[2]) «... ի հայր ... և 'ի երանեալն Հաղբատայ և Դսեղի և Խաթրայի աթոռակալն զտէր Յովհաննէս, եղբայր քաջ զամրականին Հասանա, և արքայաշնորհ իշխանին հաւրն զինուորին Գրիգորոյ, աղաչեմ, յիշէք 'ի բարին Թվ. ՉԶԴ.»։ Միևնոյն ցեղից է։

[3]) «Զտէր Սարգիս ... յիշեցէք ի բարի Թվ. ՉԶԲ.»։

[4]) հատուածս ընդօրինակեցինք իշխանական շղթայի շարունակութիւնը պարզելու համար։

Digitized by Google

Սա ունէր զկին Մամքան դուստր Գրտին, և որդի սոցա զԲա-
րի Գրիգորն և ամուսինն իւր Ասփայ դուստր Կոմսի Տարսա-
յիճին իշխողի կողմանն Սիւնեաց․ և սա բազում ընչիւք և
ծախիւք փարթամացոյց զսուրբ ուխտն Դատի վանս և զԽաթ-
րի վանս, զի շինեաց զտաճարսն, որ է Դարպասներն և այլ
բազում արդիւնս արար, և միւս որդին տէր Յովհաննէսն՝
որ շինեաց զսուրբ ուխտն գէտամէջ, և որդի Գրիգորի Վահ-
րամն, որդի սորա Սարգիսն, որ զբազում արդիւնս արարեալ՝
և մի ի բազմացն այս է զգեղեցիկ զանգականին ի Դատի
վանս, ի Խաթրի վանս, ի Գետամէջ, ի գեաւղաքաղաքն Տար,
և է մինչև ցայսօր։ Որդի սորա (Սարգսի) Հասան և այս Հա-
սանէս բաժանին Դոփայ ցեղն որք են այսոքիկ․

Ճահանշէն Ուլուբէկանց պապ․

Աղբուղէն Այտինցուց պապ․

Ջհանշէն Ջհանշեցւոց պապ։ Եւ որդի Հասանայ Աղբու-
ղէն և որդի սորա Տուրսունն, և որդի սորա Այտինն և ի
ժամանակի սորա 'ի զաւրանալ Իսմայէլացւոցն և ի նուազիլ
տանս Հայոց, ցիր և ցան լինելն իշխանացն Հայոց, յարեան
այլազգիքն և զմուլքն մեծ իշխանին Հասանայ պէթալմալ
արարին․ գնաց պարոն Այտինն 'ի դիւան և երեք ամ աշխա-
տեաց, և բազում ինչ տուեալ՝ ազատեաց ի ձեռաց այլազ-
գեացն զվանօրայքս և զշինարէքն, զոր Տէրն ամենայնի տա-
ցէ զվարձս վաստակոց իւրոց»։

*Վանքիս հարաւային որմի վերայ*

«Եւ 'ի նորոգութիւն սուրբ ուխտիս գեաւղս և ագարակս
իւրեանց սահմանաւքն զԱպահէն, զԵղնարածանց, զԵչանց,
զԿանաչաւորն, որ 'ի Վայոց ձոր, Բ․ տունս յԱրփա հաստատե-
ցաք կամակցութեամբ եղբարցս զաւագ խորանի պատարագն
յանուն վերագրելոցս կատարի անխափան։ Եթէ ոք այսմ վճռի
հաստատնոյ խափանումն առնէ յիշխանաց կամ յառաջնորդաց
տեղւոյս կամ ով ոք իցէ, խափանեսցի յոյս նորա՝ որ առ Քրիս-
տոս և դատեսցի յԱստուծոյ»։

Digitized by Google

*Զանգակատուն* [1])

Ինչպէս տեսաւ ընթերցողս, զանգատունս շինուած է Դոփեանց Վահրամ իշխանի որդի Սարգիս եպիսկոպոսի ձեռնով այն խիստ հնաձև, նեղ և երկար վանքի վերայ, որ հիմնարկուած էր յանուն Դատի առաքեալին և յետոյ նորոգուած քանիցս։

«Կամաւ ամենակալին Աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի այս մեր գիր է իշխանական հրամանի։ Ես Տուրսունս, Սէյտիս, Պռաւշս, Գրիգորս, Հասանս և եղբարքս և որդիքս մեր զայս հաստատ Սիկլիս տուաք տէր Աւագ եպիսկոպոսին և իւր եղբայր Մանուէլ աբեղային, որ մեր հայրենի աթոռն զԴատի վանս, զԽաթրի վանս, զԳետամէջն, որ մեր գերեզմանատուն է 'ի մեր պապանցն մեզ մնացած, վասն սոցա լաւ միամտութեան համար, զի 'ի վանօրայքս մարդ չ'կար, որ յառաջն կայր և չէն պահէր և եկեղեցիքս լուսաւորէր․ յայս պատճառէս երես դրաք և զայս սուրբ աթոռնին 'ի նոքա ապրսպարեցաք, և զերկու իշխանութիւնն էլ հէնց ի (նոսա) յանձնեցաք, որպէս առաջին մեծ կաթուղիկոսն մեծ տէր Զաքարիային, տէր Աթանասին և տէր Սարգսին էր տուեալ զԴատի վանս, զԽաթրի վանս, զՀաղբատ իւր վիճակաւն, նոյնպէս և այս տէր Գրիգոր կաթուղիկոսն զայս երեք աթոռս հաստատեաց վիճակաւ և շրջաբերական թղթիւ»։

«Կամաւ ամենակալին Աստուծոյ ես Սէյտիս, որդի պարոն Ճանչին, թոռն պարոն Հասանայ, ես Գրիգորս, Հասանս, Պէկիս, Ալթունս որդիք պարոն Վահրամայ, թոռունք պարոն Հասանայ, ես Այտինս որդի պարոն Տուրսունին, թոռն պարոն Աղբուղին. ես Ճահանչէս որդի Հասանայ, թոռն պարոն Ճհանշին. մեք չորս եղբարք տուաք մեր վանորէից զԱպահէն, զԽութ, զԽոզենակս իւր չորս սահմանովն, ի Զափարին հան-

[1]) Զանգակատանս մօտ, արևելեան կողմում կան երկու մատուռ, որոց մէջ կայ մի մի քարեայ, ախրագործ և հիանալի քանդուած խաչքար․ մէկի վերայ․ «Զաւրութեամբ Աստուծոյ ես տէր Աթանաս որդի Հասանայ կանգնեցի զսուրբ նշանս ի յիշատակ հոգւոյ իմոյ»․ Իսկ միւսին վերայ «զՑէր Գրիգոր սնուցանող Աթանասայ յիշեցէք ի Քրիստոս»։

դէն Զագունանց ագարակ տեղոյն, Բռնչի աղբիւրովն, Թաղանանց գետովն. Պետրոսաբակ, որ մեր պապերն տուեալ են զՍոխանանց, զՏովատեյն, Ջաջռանց, Զալբէկանց, զՑրտնոտն, զՇխռմանանց, զԳրիգորաթաղս, զԴատի վանս [1]) իւր քալատակերովն (մացառուտներով) զՀերանանց Հակառակաբերդովն, Նաւի աղբիւրովն, Բերդաքարովն, Կռապաշտուցովն, Ողնովն, Խուզենակուց մեծ այգին, Մանանածովն, Ծաղիկանց, Եղնաբաժանց տուաք Աւագ եպիսկոպոսին, որ մեր ճոճաւոր էր, քանի որ իւր պէտքն է՝ վարէ [2]) Աստուծով ազատ է։ Իսկ եթէ այլ մարդ վարէ, տասանորդն առնու և տայ վանքին անպատճառ։ Այս եղև մեր ուխտ առաջի Աստուծոյ և սուրբ Դատի առաքելոյս։ Արդ՝ ով ոք զկնի այս վախմխաթներս այլայլէ կամ խլէ թէ յորդոց և թոռանց մերոց և յազգայնոց իցէ, առաջի Աստուծոյ պարտական և սևերես լինի. ՑԺԸ. հայրապետաց նզոված է .........»։

Վասակ Նահապետակի որդի Գրիգոր եպիսկոպոսն շինած է մի ուրիշ գաւիթ անտաշ քարերով։

Հասանի որդի Գրիգոր եպիսկոպոսն [3]) շինած է մի եկեղեցի չորս սիւների վերայ, որ շատ հեռի չէ վանքերից, որ գտնուում է խղճալի անմաքուր դրութեան մէջ։ Վանքիս վանահայրն է այժմ տաթևացի ոմն քահանայ, որ մեր եկած ժամանակ նա գնացած էր իւր հայրենիք։ Ափսոս, ափսոս, հազար ափսոս, քայքայուում և աւերուում են պատուական վանքերս, խլուեցան, ինչպէս տեսանք զանազան ժամանակներում, զանազան իշխաններից վանքերիս նուիրուած աղա-

[1]) Խոթայ վանքի գիւղն։

[2]) Նշանակում է՝ հ ե ր կ ե լ։

[3]) Այլ Գրիգոր եպիսկոպոս ոմն ԺԶ. դարում ասում է. «Ցանուն Աստուծոյ եւ տէր Գրիգորէս տղայութեամբ եկի ի դուռն եկեղեցոյս շատ աշխատանք արարի. իշխանութիւն Շահ Թահմազին էր զվանքս տուին տըհոյ, եւ զաբուլ չարարի, գնացի Նոր շէնն, շինեցի երեք ջաղաց, երեք բաղճայ և եկի 'ի դուռն սուրբ Առաքելոյն, շինեցի զ Խ ո ւ թ (Խոթայ վանք), որ եկեղեցոյս մաւն քաշէ. զբաղուբաղճէս և զջրաղացներս և այլ ամենայն աշխատանս եկեղեցւոյս վախմ տուի։ Արդ՝ ով որ այս գեղարանքերս և զիմ վախմերս հանել ջանայ 'ի սուրբ Առաքելոյս (Դատի վանուցս) ՑԺԸ. հայրապետացն նզոված է......... Թուին Ռէ. (1558)»։

Digitized by Google

գին կալուածներն, անտառներն և հողերն։

*Վիմափոր քարայր.*

Դատի կամ Խոթայ վանքից վար Թարթառի ձախ կողմում կայ մի վիմափոր քարայր, որի մուտքն գետնի երեսից է։ Լուսահոգի Բաղդասար մետրապօլտի կենդանութեան ժամանակ Քեօլանի մահմետական ոմն օրսորդ կրակում է մի քօշ, որ անյայտանում է թաւալգլոր։ Հասնում է ետևից որսորդն և տեսնում որ քօշն ընկած միջոցին ջարդուած են այրի բերանի փտած փայտերն, այրի մէջ ընկած է որսն, ուր և դարսուած են շատ գրքեր։ Որսորդն վեր է առնում գրքերից մին, ածապարում Շուշի, յայտնում Բաղդասար մետրապօլտին, որ պարգևատրում է որսորդը և Շուշի փոխադրել տալիս ձեռագրերը։ Գրչագիրներումս եղած է մի ձեռագիր ընտիր մաշտոց՝ գրուած սուրբ Մեսրոպի աշակերտ Ստեփաննոս վարդապետի ձեռնով, որ այժմ գտնուում է Ս. Էջմիածնի հնադարանում [1]։

## ՎԻՄԱՓՈՐ ԴԻՏԱՐԱՆ.

Մի քերծի մէջ, որ կայ Խաթրայ բերդի հիւսիսային հանդէպ Թարթառի ձախ ափի բարձրութեան վերայ, կայ մի բնակարան, որի առաջն պատած և լուսամուտ թողուած է։ Բայց՝ այս բնակարանն մուտ գործելու համար՝ քերծի դրսից չունի վերելակ սանդուղ. իսկ ներսից անյայտ է բոլորովին մուտքի տեղն։ Արտաքուստ ակներև երևում են քարուկիր պատն և լուսամուտն, որի ստորոտով—գետահովտով ճանապարհ է։ Այս դիտարանն, մեր կարծիքով հաղորդակցական կապ ունեցած է Խաթրայ և Հաւքախաղաց բերդերի հետ և թշնամու արշաւանքը արգելելու քաղաքական նշանակութիւն։ Դիտարանիցս ներքև կայ մի քարուկիր մատուռ։

---

[1] Շուշու առաջնորդարանում եղած ձեռագրերի ամենամեծ և ընտիր մասը, որը փոյթ խնամքով ժողոված էր Բաղդասար մետրապօլիտն, վաճառած է Շուշու առաջնորդներից ոմն եպիսկոպոս՝ մի Թիփլիզեցու վերայ մի քանի հազար րուբլու։

*Մշահանի վանք*.

Հիմնուած է յանուն սուրբ Աստուածածնի մի բլրի վերայ, որ գտնուում է նոյն գետաձորում և որի գլուխն մեծ հարթ է։ Փոքր է վանքս և պատկից ունի մի փոքր եկեղեցի որ ունի մի գաւիթ, որք ամբողջապէս շինուած են անտաշ քարով։ Գաւթի որմի մէջ կայ մի ամենափոքր մատուռ։ Բոլոր շինութիւններս քայքայման վիճակի մէջ են։

*Եկեղեցու պատի վերայ*.

«Աստուծով ես Մլեհ տուի զիմ գնած հողն 'ի Զափարին 'ի սուրբ ուխտս. միաբանք տուին Սուրբ Յակովբի երկու ժամն Ա. ինձ. Ա. Փ . . . . .»։

*Վանքի վերայ*.

«Ես Մամա խաթուն միաբանեցայ սուրբ ուխտիս, առաջնորդ Յովհաննէս և եղբարքս տուին Բ. ժամ»։

# ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

## Ա. ՀԱՒՔԱԽԱՂԱՑ (ԼԱՉԻՆ ԼԱՑԱ) (29)

Մի անտառապատ, վիմահերձ, խոր ձորերով անջատուած, բարձր սար է, որ սեպաձև արձանացած է Թարթառի աջ կողմի բարձրութեան վերայ։ Սարիս արևելահայեաց վիմահերձի մէջ կայ մի ահագին քարայր, որի առաջն պատուած է ժամանակաւ քարուկիր պատով, որով ձևացած է քարայրս անառիկ բերդ։ Արդէն աւերուած է քարայրս տանող կածանն, հետևապէս այժմ անկարելի է մուտ գործել ամրոցս։ Սարիս գագաթն գեղեցիկ և սքանչելի սարահարթ է, և բնական ամրոց ձևացած, որ նոյնպէս ունի դժուարատար մուտք, բայց չունի ջուր իւր մէջ։ Մի քանի տասնեակ տարիներ առաջ՝ բարեհամբաւ Ասլան-բէկ Աթաբէկեանցն շարժուած հետաքրքրութենից՝ չուանով վերևից կախել է տալիս քարայրս Հաթերքեցի Գալուստ անուն սրտոտ տղամարդը։ Վերև քաշելուց յետոյ վերջինս յայտնում է թէ քարայրում կան հնուց մնացած շատ հին, ահագին և խեցեղէն ու դատարկ կարասներ։ Պատերազմի պաշարի համար պահուած են կարասներն։

Digitized by Google

Բ. ՀԱԿԱՌԱԿԱԲԵՐԴ [1]) Գտնուում է Դատի վանքից վերև մի թրաձև և անտառապատ սարի վերայ։ Բերդս ունի ամուր դիրք, հիանալի տեսարան և նշանաւոր ջուր։ Մի քարուկիր և մեծ ջրամբար է լի կենդանի ջրով, որ ո՛չ աւելանում է և ո՛չ պակասում, ո՛չ ջուր է ընդունում և ոչ արտահանում։ Բոլորովին անջրպետուած է բերդասարս իւր չորս կողմերից խորանդուռնդ և լայնգոգ ձորերով. միայն ունի մի թելուղի, որ մի սեռի գլխով բարձրանում է դէպի բերդն։ Ամրոցիս մէջ տեղ տեղ երևում են հին շինութեանց հետքեր։

Գ. ԲԵՐԴԱՔԱՐ [2]), որ կայ Հաթերք գիւղին կից՝ իւր արևմտեան կողմից, որի արևելեան, հարաւային և արևմտեան կողմերն բարձր քերծեր են. իսկ հիւսիսային կողմն պարըսպուած է եղել, բայց այժմ իսպառ անհետացած է պարիսպն և հազիւ հազ է նշմարուում ուրեք ուրեք։ Բերդս, որի մակերևոյթն հերկուում է այժմ, չունի ամրութիւն, բայց ունի մօտակայ տեղից բերուած ջուր, և ուշագրաւ տեսարան։

Դ. ԱԿԱՆԱՑ ԲԵՐԴ. Հիմնուած է անառիկ ամրոցս Հաթերքի հիւսիս արևելեան կողմում, Բալի սարի ստորոտում։ Խոր խոր ձորեր են բերդիս հիւսիս-արևմտեան և հարաւարևելեան կողմերն. պարսպուած է եղել բերդիս մնացեալ—վերի և վարի կողմերն։ Ամրոցիս մակերևոյթն թեքուած է ձորերի դիրքով դէպի արևելեան հարաւ. բայց սորա մեծութեան ծաւալն, համեմատելով միւս բերդերի հետ, անհամեմատ մեծ է։ Բերդիս մակերևոյթն լի է շինութեանց աւերակներով [3]), հանդիստներով, կայ և եկեղեցու աւերակ և ականակիտ աղբիւրի պատուական ջուր։ Այժմ տեղ տեղ աւերուած են պարսպի պատերիցն։ Բալի սարի հիւսիսահայեաց լանջի վերայ կայ մի աւերակ մատուռ։

Բերդիս հիւսիսային կողմում, ձորի միւս ափում կայ ե-

---

[1]) Անունս կայ և Դատի վանուց արձանագրութեանց մէջ. այժմ կոչում են Զ ա փ ա ր ի բերդ։

[2]) Հաթերք—Դղեակ է անուանում այս Գօշ-Մխիթարն (եր. 72—73)։

[3]) Կայ իշխանական բնակարանների աւերակ ապարաններ, սենեակներ և դոմեր։

րեք տարօրինակ շինուածք, որ հեռի են փոքր ինչ իրարից և ունին իւրեանց վարի և վերի կողմերին մօտ կարակնաձև կլորակ լուսամուտներ։ Թէ ինչ եղած են շինութիւններս, չգիտենք, զի անծանօթ է մեզ շինութեանցս անցեալն։

## ԺԵ. ՋՐԱԲԵՐԴ ԳԱՒԱՌ. (30)

Առ հասարակ հարուստ է գաւառս խոր խոր ձորերով, ձալարագեղ, անտառապատ, ամենաբարձր, միջակ և փոքր լեռներով, վանքերով և ամրութիւններով և բաւարար հացով և արծաթահանքով։

Ա. ՂԱԶԱՆՉԻ ՇԷՆ, որ կայ Կիչանի արևելեան հիւսիսային կողմում Խաչէն և Ջրաբերդ գաւառների սահմանագլուխ սարի հիւսիսային կողմում։ Շինիս հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերն՝ սկսեալ շինի ստորոտներից, քարձրապատ սարեր են, միայն բաց է արևելեան կողմն. վերջապէս խոր փոսի մէջ ընկած է շէնս։ Բնակիչք բնիկ, հողն քէկական, բարելի, տեղական բերքերն՝ ցորեն, գարի, գարնանի, կորեկ, կտաւհատ, սորեկ, որիզ, ընկուզ, տանձ, խնձոր, տաւար, գոմէշ, խոզ, օդն և կլիման ճնշիչ ամրան եղանակներում, ջուրն պատուական, երկար կեանք 75—80 տարի, եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, թաղակապ, երկարութիւնն 16 մետր 15 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 30 սանթիմ. քահանան գալիս է Ջանեաթաղից (Ճանկաթաղ)։

Դրան ճակատակալ քարի վերայ. «Սուրբ Գէորգ այ (է) եկեղեցիս թվ. ՌՃԻ.»։ Ծուխ 35. ար. 175. իգ. 150։

Տաճարիս արևմտեան որմին մօտ մի տապանաքարի վերայ քանդակուած է մի քաջ ձիաւոր, որ հանած է իւր թուրը, և բարձրացրած մի այլ ձիաւորի վերայ, որ իջած է իւր ձիուց, բռնած նորա կապը, հանած իւր թուրը, կարծես յանձնում է զայն յաղթողին։ Յաղթուածն փէս ունի իւր գըլխին վերայ և կանգնած է խղճալի դիրքով։ Քարիս վերայ.

«Այս է տապան Ղապատ որդի Յովան . . . չբէ եղբարսն զայն ստայօն, թվ. ՌՋ. եկաւ եւկրիս, շաղ դեղ . . ցայք, վեր-

15

ջին Ղալա մէ տեսար ազար եկաւ մեզ վերայ։ ՉՃ. (700), Թօպկոլայ եկաւ, իմ քարէն չի կարաց օնել (յինքն ունել, դրաւել), յեղոյ մասինազարն դան պանեցին»։

Յաղթող ձիաւորի գլխից վերև գրուած է.

«Քարս բերաւ որ է Եղբարամաց պարոն»։

*Գիւլ-Մալիք* [1]) և *Կարմիր Ծղցուն խուլթ* տեղերում, որք գտնուում են շինիս արևմտեան կողմում, կան գիւղատեղեր, հանգստարաններ և եկեղեցու աւերակներ։

Բ. ՃԱՆԿԱԹԱՂ կամ ըստ օտարահնչիւն ձայնին Ջանեաթաղ գիւղ. հիմնուած է մի ձորի աջ ու ձախ լանջերի վերայ (նոյն լեռնաշղթայի արևելեան կողմում) Ղազանչու հիւսիսային կողմում. բնակիչք գաղթած են Պարսկաստանի Ղարադաղ նահանգից [2]) Պասգևչի ժամանակ. հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (ունին և մասնաւոր այգի), անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 75—85. եկեղեցին Սուրբ Գէորգ, հնաշէն, կառուցեալ երեք կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 17 սանթիմ, լայնութիւն 8 մետր 82 սանթիմ. *Դրան ճակատակալ քարի վերայ.*

«Թ. ՌԾՐ. յիշատակ Ղուկասի որդի Գրիգորի»։

Քահանայ մի։ Տաճարիս դրան ամփոփուած են տասնեմի քահանաներ, որք են նախկին բնակչաց հոգևոր հովիւներն։ Ծուխ 85. ար. 390. իգ. 338։

Մեղրակեր (Ղաբարթու) կոչուած տեղում կայ հանգստարան, գիւղատեղի և եկեղեցու աւերակ։

Գ. ԳԻՒԼԵԱԹԱՂ, որ մի սեռով միայն բաժանուած է Ճանկաթաղից, հիմնուած է վերջին գիւղիս հիւսիսային կողմում մի ձորի ձախ լանջին վերայ, որի երեք կողմերն լեռնապատ են, բաց է միայն արևելեան կողմն. բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, բայց հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90

[1]) Նշանակում է Գ ա յ լ - Մ է լ ի ք։
[2]) Ամրադիւլ և Քիւնի գիւղերից։

տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր կառուցեալ երեք կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 5 սանթիմ, լայնութիւն 8 մետր 40 սանթիմ. քահանայ մի։

Գիւղիս վերի կողմումն է Ճըռ-մելիք-Ալլահվերտու բնակարանն, որ բաղկացած է հինգ սենեկից, որից կանգուն է երկուսն և կիսաւեր երեքն։ Շինութեանս երկարութիւնն ձգուած է հիւսիսից հարաւ, որ ունի իւր չորս անկիւններում չորս աշտարակներ։ Դրան հիւսիսային սեմի վերայ.

«Այս է Մէլիք Աուշան Թվ. ՌՄԽԸ.»։

Ծուխ 74. ար. 327. իգ. 284։

*Պղնձահանք.* Գիւղից կէս մղոնաչափ հեռի դէպի արևմուտք կայ պղնձահանք, որ անգործածելի է այժմ։

*Ցովսէփի եղցի.* փոքր ինչ վերև պղնձահանքից, ուր կայ այս անուն եկեղեցի ջրաձորի աջ կողմում, իսկ ձախ ափին՝ գիւղատեղին և հանգստարան։

*Մեհմանանց գիւղատեղի,* ուր կայ աւերակ եկեղեցի, գիւղատեղի և հանգստարան։

*Արծաթահանք* գտնուում է Մեհմանանց գիւղատեղից կէս մղոնաչափ վերև նոյն սահմանագլուխ լեռնաշղթայի հիւսիսային կողմում։ Որպէս երևում է փորուածներից, գործածութեան մէջ եղած է հանքս շատ վաղուց։ 1870 թուին գալիս են Յոյներ, կապալաւ վեր առնում հանքս, բնակութիւն հաստատում հանքիս մօտ և սկսում հալել նիւթը։ Որպէս թէ կապարախառն է արծաթն և դժուարաւ է ծածկում ծախքը, վասն որոյ անգործածելի է այժմ հանքն.....։

Դ. ԿՈՒՍԱՊԱՏ ԳԻՒՂ. հիմնուած է Գիւլեաթաղի հիւսիսային կողմում մի բարակ ջրաձորի ձախ լանջին վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի [1]) անջրդի և միջակ արդիւնաբեր և միանգամայն սակաւաջուր, բայց այգևէտ. տեղական բերքերն նոյն (նաև ոչխար, ձի, այգի, բամբակ, *սումաղ*, սեխ, վարունկ, ձմերուկ), պատուական օդն, կլիման և ջուրն,

[1]) Նախ եղած է մէլիքապատկան. չգիտենք ինչ պատճառաւ յետոյ փոխուած է արքունի։

երկար կեանք 100 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ, վնասուած է գագաթնագծից, քահանայ երեք։

*Եկեղեցուս դռնատակին մի քարի վերայ.*

«Թի. ՋԺԸ. այս է հանգիստ . . . . .»։

*Դռնագլխին.*

«Թւին ՈՂ. ես Ապրել որդի Ուղտիկակա գնեցի գլխաչս ինձ ու ամուսին իմոյ, աղաւթեցէք [1])»։

Եկեղեցուս թէ ներսում և թէ դրսում ամփոփուած են շատ քահանաների մարմիններ։

Ե. ՀՌՈՒԱԹԱՂ, որ կից է Կուսապատի այգիներին, թէպէտ կազմում է առանձին գիւղ, սակայն ծխաթիւն անբաժան է. այսպէս և

Զ. ՄԱՐԴԱԿԵՐՏՆ, որ ունի առանձին եկեղեցի և մօտ կէս մղոն հեռի է Հռուաթաղից, հիմնուած միևնոյն Կուսապատի ձորի շարունակութեան վերայ, Ուտի առանձնակ գաւառի դաշտաբերանի մօտ, բնակիչք անջատուած Կուսապատից [2]), հողն արքունի, բազմարդիւն, օդն և կլիման ջերմագին ամրան, ջուրն ոչ այնքան լաւ, երկար կեանք ո՛չ աւելի 70-ից. եկեղեցին Սուրբ Կարապետ, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ *Երեք գիւղերում* միասին ծուխ 355, ար. 1850, իգ. 1199, քահանայ 4։

*Նահատակ* անուն ուխտատեղի, որ գտնուում է Հռուաթաղի արևմտեան հանդէպ մի բլրի գագաթին վերայ. իսկ *Կոտրած եղցին*՝ սոյն գիւղի արևելեան հանդէպ սարին վերայ.

*Երի-Գիւլխաթաղում* (Վերի-Գայլաթաղ), որ գտնուում է միևնոյն ջրաձորի մէջ Կուսապատից վերև, կայ հանգստարան, գիւղատեղի և քարուկիր փոքր եկեղեցի։

*Ինն-մաս անապատ*—Հին-Մոխրաթաղ. Հիմնուած է Կուսապատի հիւսիսային կողմում մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Կառուցեալ է սրբատաշ քարով մի կա-

---

[1]) Անկատակած քարերս բերուած են Հանդստարանից.

[2]) Արքունի երկդասեան ուսումնարան կայ Կուսապատում։

մարի վերայ, որ ունի եկեղեցու և ոչ վանքի ձև, երկարութիւն 14 մետր 37 սանթիմ, լայնութիւն 8 մետր 20 սանթիմ։ Ունի միայն աւագ խորան. որի միջից հիւսիսային և հարաւային կողմերից բացուած է դռնաչափ մուտքեր երբ փոքր խորաններ.

*Հիւսիսային որմի վերայ.*

«Ի 1881 ամի շինեցաւ սուրբ ուխտս Ինն Մասանց տրօք ժողովրդոց 'ի ժամանակս Յովսէփ վարդապետի Փինաչեանց»։

*Խորանի հիւսիսային կողմում.*

«Շինեցաւ Սուրբ Ինն Մասանց սեղանն դստուխս (?) Ահար խանումին վասն հանգուցեալ Յարութիւն բէկ Աթաբէկեանի Կուսապատ գեղջ 1884 ամի»։

Տաճարիս հարաւ-արևելեան կողմում կայ և մի հին եկեղեցու աւերակ։ Հարկ է յայտնել թէ այստեղ եղած է Մոխրաթաղ գիւղն, որի բնակիչք մի քանի տասնեակ տարիներ տեղափոխուած են Նոր-Մոխրաթաղ և մնացած է այստեղ հին եկեղեցին, գիւղատեղին և հանգստարանն։

Նոր-տաճարիս հիւսիսային որմի մօտով ամփոփուած են Մէլիք Իսրայէլեանների ննջեցեալները—Սայիբէկի, Ահարխանումի, Մէլիք-Ադամի կին Թումար-խանումի, և այլ մէլիքազուն գերդաստանների մարմինները։

Անապատս ունի երեք սենեակ և մի աշխարհական վանահայր։

## ՄԷԼԻՔ-ԻՍՐԱՅԷԼԵԱՆՆԵՐԻ Ա. ԱՊԱՐԱՆՆ.

Շինուած է Անապատիս արևմտեան կողմում մի քանի տասնեակ քայլ հեռի։ Շինութիւնն ունի արտաքուստ բերդի ձև—քառուկիր բարձր պարիսպ և մի դարբաս արևելեան կողմից։ Արտաքուստ չափելով ունի 49 մետր երկարութիւն 29 մետր 25 սանթիմ լայնութիւն։ Ամբողջ ապարանն բաղկացած է տասներկու սենեկից, որք ունին զանազան ձև և տարբեր մեծութիւն, Սենեակներն եղած են ընտանեկան սենեակ, ննջարան, ընդունարան, դատարան, թոնրատուն, խո-

Digitized by Google

հանոց, սպասաւորանոց, գոմանոց։ Այս ամենի լուսամուտները բացուած են բերդի ներսի կողմից։ Արևելեան կողմից հաշուելով չորրորդ սենեակն ունի քառակուսի ձև և երդիկ, ամբողջապէս քարուկիր շինուած և սոյն արձանագրութիւնը.

«Որ զօրմութեամբն ամենազօրին Աստուծոյ բազում ժամանակ է յոյժ տաքնապի շինեալ զտունս, իսկ բարերարին Աստուծոյ տուաւ ինձ կարողութիւն և զօրութիւն Սուրբ Հոգոյն՝ հանգուցեալ Մէլիք Խսրայէլի որդի ես Մէլիք Յադամս շինեցի զգեղեցիկ կամարօք և դեղեցկանկար տունս և սարայիս բազմահանճար զօրդեակն իմ Մէժլումին . . . ծ. Աստուծոյ, աստուածայնով բարեաւ վայելեսցէ հանդերձ մեօք ՌՄԻ.» [1]։

*Հինգերորդ սենեկի վերայ.*

«Տեսէք մեր հաւատոյ հայրն Աբրահամ, կեանք նորա է . . ամ, նայ ոչ շինեաց տուն և տեղի և բակ . . վրանօք շրջէր յերկրին ի Խառան . . այլ սոյն կեանք մեր կարճացեալ լթիւ Ծ. (50) ամ, համայն բոլոր երթալոց եմք մեք միւս անգամ, տեսէք 'ի մեր յիմարութիւնս, որ այժմուս գայ, չենք . . ազմա նման ամօք Աբրահամայ թվ. Ռ . . .»։

*Խաչ-Խոռհատ* անուն տեղում, որ կայ Հին և Նոր-Մոխրաթաղի միջև, կայ աւերակ՝ գիւղատեղի, հանգստարան և մի քարուկիր և միջակ եկեղեցի, որ կանգուն է բոլորովին, որի երկարութիւնն է 12 մետր 23 սանթիմ, լայնութիւնն 7 մետր։

Է. ՆՈՐ-ՄՈԽՐԱԹԱՂ. Հիմնուած է Կուսապատի հիւսիսային կողմում, տեսարանն զմայլելի (դաշտահայեաց) սեռի վերայ, հողն արքունի, անջրդի, բայց բազմարդիւն. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւնն 17 մետր 95 սանթիմ, լայնութիւնն 11 մետր։ Քահանայ մի։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Ես Շուշուայ քաղաքի բնակիչ Մեսրոպ Թառումեանս կառուցի ծախիւք իմօք [2]) յանուն

[1]) Անձեռնմխելի թողինք սխալները։

[2]) Հաստատապէս տեղեկացայ որ գիւղի հասարակութիւնն շինած է եկեղեցուս պատերը մինչև թաղն։

Աստուածամօր վասն անյիշատակ հանգուցեալ եղբարցն իմոց Աբրահամայ, Գրիգորի և որդւոյն իմոց Աստուածատրի Մ. Թառումեանց ի 1883 ամի»: Ծուխ 85. ար. 394. իգ. 349:

Ը. ՄԵԾ-ՇԷՆ. Շինուած է համարեա թէ Նոր-Մոխրաթաղի արևմտեան կողմում, մի արևելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ (ամենամեծ մասն տեղափոխուած են Գանձակի գետաշէնք կողմերն), հողն կիսով չափ արքունի, անջրդի, բայց հացաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Գէորգ, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւնն 18 մետր 25 սանթիմ, լայնութիւնն 8 մետր 67 սանթիմ: Աւազանին վերայ «Թվ. ՌԿԹ.—Բնաս.. յիշեցէք 'ի Քրիստոս»:

*Խորանի հիւսիսային կողմում.* Սուրբ խաչս բարեխաւս Կարապետ եպիսկոպոսին, սայ է լեալ պատճառ սուրբ եկեղեցոյս (շինութեան) Թվ. ՌՂԹ.»: «Սուրբ խաչս բարեխաւս Հայրապետին եղբայր պարոն տէր (իշխանազն քահանայ)»: Քահանայ երկու: Ծուխ 70. ար. 309. իգ. 268:

*Կարմիր աւետարան.*

Եկեղեցումս կայ մի գրչագիր մեծադիր աւետարան, մագաղաթեայ, ամբողջապէս գրուած գլխատառերով: Բոլորովին անճաշակ են նախշերն և չունի պատկերներ: Գրուած է Մատթէոսի սկզբում խաչի տակ. «Սուրբ Նշանաւ գնեաց (Յիսուս) միղաւորիս Իգնատոսի»: Տեղ տեղ գրուած է նաև «Ձխաւչեն և գիր ծնողսն յիշեցէք ի Քրիստոս»: Գրուած է նաևս Մարկոսի վերջում. «Յամի չորրորդի առաջնորդի (°) ի հայրապետութեան տեառն Բարսղի [1]) Հայոց կաթուղիկոսի, ես Հայրապետ աբեղայս գնեցի զսուրբ աւետարանս ի Յոստան քաղաքի յայլազգեաց 'ի ԻԵ. գեկ. կարմիր և ետու ի սուրբ Խաչի վանքն յիւր սեպհական տեղն, որ առնեն յամէն յամի.. Բ. պատարագ, զտեառնընդառաջին և զԿիւրղին անխափան և որ հեռացուցանել ջանայ 'ի սուրբ Խաչէն զինչ և իցէ պատճառաւ,

[1]) Նայելով գլխագրերի ձևերին՝ կարծում ենք որ Բարսեղ Ա. հայրապետի օրով (1086 թուերում մօտաւորապէս) եղած է գնելն և ոչ թէ Բարսեղ Բի, որ գահակալած է 1557—1562:

ինքն հեռացեալ լիցի 'ի փառաց Որդոյն Աստուծոյ. ամէն»։ Իսկ ցանկեց յետոյ.

«Արդ՝ ես յամենայնի նուաստ տէր Սարգիս ստացայ սուրբ աւետարանս անչինչ յիշատակ ինձ և իմ ծնողացն, որք ընթեռնույք, յիշեցէք 'ի Քրիստոս»։

Յիշատակարանը գողացած է մի սարկաւագ ինչպէս վկայեցին։ Երանի թէ այս միայն լինէր գողացած....։ Ասում են որ 900 տուն եղած է Մեծ-շէնս, որպէս ապացուցանում է և մեծ անունն, քանզի այս եղած է մեծ Մէլիք-Ադամի մէլիքանիստն։ Երեք եկեղեցի եղած է գիւղումս, մէկն բոլորովին անհետացած է, միւսին աւերակն արդէն մնում է, երրորդն կանգուն է։

Գիւղումս ծնուած է Դալի-Մահրասա—Աւագ վարդապետն, որ ազգական էր այժմեան Մկրտիչ քահանայի և Անդրէաս-բէկի։

*Նղցաթումբ*. մի թումբ է գիւղիցս վերև, որի վերայ կայ ընդարձակ գիւղատեղի, մեծ հանգստարան և կանգուն եկեղեցի։

*Հարթապատուկ*. Մեծ-շէնիս հիւսիսային հանդէպ շրջապատից առանձնացած և ձուաձև բարձրացած մի սար է, որի գագաթն պատուական հարթակ է։ Հարթակի եզերքներով պարսպուած է եղել հնուց, ինչպէս ակներև է հետքերից։ Այժմ կայ կատարիս վերայ մի ջրաւազան, հանգստարան և ուխտատեղի։ Ի նկատի առնելով շատ բերդասարեր, թուի թէ բերդ եղած է և սարիս գագաթն—Հարթապատուկն։

Թ. ՄԱՂԱՎՈՒԶ կամ Զարտախլու. Հիմնուած է Թարթառ գետի աջ կողմի բարձրութեան վերայ. Մեծ-շէնի հիւսիսային կողմում, մի լեռնահովտում. բնակիչք շատ վաղ՝ նախ տեղափոխուած են Մեծ-Սիւնեաց Մաղավուզ գիւղիցն այստեղ, ապա այս տեղից Նուխաւէրի կողմերն, ապա վերադարձած Գետաշէն, հուսկ յետոյ վերստին այստեղ։ Հողն արքունի, անջրդի, բայց բեղմնաւոր, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90. եկեղեցին Սուրբ Գէորգ, փայ-

Digitized by Google

տաշէն, քահանայ մի։ Ծուխ 66. ար. 254. իգ. 299։

Գիւղիս բարեկրօն Յովհաննէս քահանայի մօտ կայ մի գըշագիր մաշտոց, գրուած թղթի վերայ, դիրքն փոքր. յիշատակարանից. «Արդ գրեցաւ դիրքս այս ի թուականութեան հայկազեան տումարիս ՌՒԴ.»։ Ստացողն է Գրիգոր անուն ոմն կրօնաւոր, իսկ գրողն է ոմն Յովհաննէս Աբեղայ։ Վերջին ստացողն է. «Արդ զվերջին ստացաւղ սուրբ տառիս, որ կոչի մաշտոց.. Ովանէս էրէց... ՌՃԺԱ.»։ «Յիշատակ է բարեմիտ Յուրին, որ կողակից էր Ավագակին ի երկրէն Ծարայ ի գեղջէն Եանշաղէն. յիշատակ է այս սուրբ.. մաշտոցս հոգոյ իմոյ, տվի իմ ձեռովս Դաւիթ քահանային, օվ որ կարդայ, Աստուած ողորմի ասէ, ամէն»։ «Ես Մրչմանցի տէր Մէլիքսեթի որդի Մարկոսըս... թվն ՌՃՀԸ. էր» (Այժմ աւերակ են Եանշաղ և Մըջման գիւղերն, ինչպէս գիտէ և ընթերցողն)։

Աւետարան փոքրադիր, գրուած թղթի վերայ առանց պատկերի։ Անյայտ է գրողն, տեղն և ժամանակն, միայն յայտնի է երկրորդ ստացողն, որ է Շաղուպատ անուն ոմն։

Նոյն բարեկրօն քահանայ Տէր-Գրիգորեանի մօտ կայ և Ա. Մէլիք-Ադամից մի թուղթ, որով յայտնում է. «Մէլիք Հաթամէս մալում լինի ձեզ Մաղավուզեցուց, մեծ և փոքր որ իմանաք Մէլքումն ձեզ քօվխայ (տանուտէր) շինեցի. պիտի որ յեսապի (իրաւացի) խօսկան դուս չի կեաք։ Դարձեալ ջամիյեաթ, թէ եդ [1]) Նորայ եկիք թէ Մէլքումը մեզ հաջաթ (հարկաւոր կամ պէտք)-չի, ղապուլ չի, դուք էք հաւանել, շինել թվին ՌՄԻԸ. փետրվարի ամսուն ԺԵ.» (տեղի կնքոյ որի մէջ գրուած է. «Քրիստոսի ծառայ Մէլիք Ադամ»։

## ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՀԱՆԳՍՏԱՐԱՆ.

Այսպէս է անուանում ժողովուրդն այն հանգստարանը, որ կայ Մաղավուզի արևմտեան կողմում, Թարթառ գետի աջ լանջի բարձրութեան վերայ, Երից մանկանց վանքի դէմուդէմ։ Ընդարձակ ծաւալ ունի հանգստարանս, բայց ծան-

[1]) Իմաստն է, (եդ Նորայ) եթէ այնուհետև եկիք իմ մօտ և տեսցիք թէ Մէլքումն պէտք չէ մեզ, ևն.։

կուած է գժնիկ փուշերով և մացառուտներով։ Հանգստարանումս կայ մի հնաշէն մատուռ. որ ուխտատեղի է և փոքր և շինուած անտաշ քարերով, որի գլուխն արդէն խոնարհուած է. դրան ճակատակալ քարի վերայ քանդակուած է.

«Թիւ ՋԹ. էր Կամաւն Աստուծոյ ես Խուռում (Հռիփսիմէ) շինեցի զեկեղեցիս, եղբայր իմ Վահրամ Շահ ի յիշատակ մեզ և ծնողաց մերոց 'ի յիշխանութեան Ուքանին և յամիրութեան Փախրայդինին և 'ի յառաջնորդութեան Տէր Սուքիասին. յադաւթս . . »։

*Մատրանս մէջ մի խաչքարի վերայ.* «Թիւ ՈՂԹ.»։

Սորա մօտ. «Ես Գր . . րս սնուցած տէր Նարսի [1]) կանգնեցի զ (խ) աչերս ծնողաց իմոց և ննջեցելոց»։

Հանգստարանիս տապանաքարերի մէջ գտանք միայն հետևեալը.

Ա. «Այս տապան Քաչալ . . . է որդի Ապրէսին մեծի . . պապին եսպօրորդի . . . իմոյ պարոն Անին Թվ. Ռ.»։

Բ. «Թվ. Ռ . . . . . որ փոխեցաւ առ Աստուած. Այս է տապան Շահփարին . . . . Նոյեմզարին . . . . »։

## ՄԱՅՐԱՔԱՂԱՔ կամ ՔՂՐՔԱՏԵՂ. (31)

Սևկևլասեռ կոչուած սարի ստորոտով ընկած է մի խոր ձոր գրեթէ արևելքից արևմուտք։ Մատրան կամ հանգստարանին ստորոտից սկսեալ դէպի նոյն խոր ձորն կախուած են չորս ձորակներ, որոց վերայ վաղուց շինուած է քաղաքի նման մի շինութիւն։ Բերդավայրն ունի միայն երկու մուտք, արևմտեանն՝ խոր ձորին ստորոտովն, որ համարեա թէ հպած է Թարթառ գետի աջ եզերքին, իսկ արևելեան կողմի մուտքն նոյն ձորի վերի ծայրովն։ Երկու մուտքերն ամրապնդուած է եղել քարուկիր պատով, որք քանդուած են այժմ։ Իսկ մնացեալ կողմերն բնութենաստեղծ և անմատչելի ամրութիւններ են, այս է բարձր վիմահերձ և քարաժայռ քերծեր են և ահարկու ձորեր։ Վաղուց շինուած են երկու երկյարկ

[1]) Գուցէ «Ես Գրիգոր սնուցած տէր Ներսիսի»։

Digitized by Google

քարուկիր և բոլորշի դիտարան, որոց մին քաղաքի հարաւային կողմի բարձրութեան վերայ բերդից դուրս իսկ միւսն՝ արևմտեան մողմում քաղաքի ծայրում, բայց ամրոցի ներսումն։ Թափուած են միայն վերշնոյս որմի արտաքին մասերն տեղ տեղ։

Այժմ աւերակ և անմարդաբնակ քաղաքատեղումս մնացած են տակաւին հնութեան շատ նշաններ, ինչպէս են քարուկիր բնակարանների և այլ շինութեանց աւերակներ։ Հիւսիսային դիտարանի մօտ կայ մի մեծ շինութիւն, որ իւր արտաքին կողմում ունի երեք բուրգ, մէջ տեղում տասն մետրաչափ բարձր քարուկիր սիւն և երկու մեծ սենեակներից բաղկացած շինութիւն։ Այս է ամենից աւելի հնութիւնն, որ կարծես թէ իւր ամրագին կազմուածքովն ներկայացնում է տեղիս հին իշխողի բնակարանը, որ ունի և բնութեան հրաշալի տեսարան։

Բնակարանիս հարաւային կողմերում կան կիսաւեր քարուկիր շատ բնակարաններ, բաղանիսներ, ձիթահանք, որի քոլորաձև մեծ քարերն մնում են անվնաս և կանգուն, կամուրջներ, երեք կողամախի ծերունազարդ և հաստ ծառեր, պառաւ ընկուզենիք, ևն։ Նշանաւոր է Շուշուան աղբիւրի ագնիւ ջուրն, որ քաղաքի կենտրոնում շուշուալով թափուում է ժայռից։

Բ. *Ապարան.* Մէլիք-Ադամ մեծի. երկրորդ ապարանս շինուած է արևելեան մուտքի կողմում, որի երկարութիւնն հիւսիս-արևմուտքից ձգուած է արևելեան հարաւ։ Շինութեանս գետնայարկն ծառայած է միայն տեղի զառիվայր դիրքը հարթելու. վերնայարկում կայ տասնևհինգ սենեակ, ընդարձակ դահլիճ, խոհանոց [1]), երկու պատշգամ։ Գեղեցկաձև տաշուած և նախշած ճակատակալ քարեր ունին վառարաններն (բուխարի)։ Ամբողջ շէնքն ունի 37 մետր երկարութիւն, 34 մետր 40 սանթիմ լայնութիւն, որի ծածքն

[1]) Գետնայարկով դուրս հանուած է արտաքնոցի և խոհանոցի միացեալ ոտքը։

Digitized by Google

ողջ փլած է, իսկ պատերն բովանդակ մնում են կանգուն։ Հարկ է յայտնել թէ ապարանիս կողքին է եկեղեցու աւերակն։ Բացի տասնեւհինգ սենեկից, որք շինուած են մի միջնապատով, բայց երկու շարքով, կայ այլ եւս չորս պատուական, բայց կիսաւեր սենեակ եւ մի երկար գոմ, որի մէջ կայ տասնեւվեց ձիու ախոռ, եւ որի երկար ախոռափայտն մնում է դեռ անփուտ։ Շատ սենեակներում արդէն բուսած են ծառեր։

Հարկ է յայտնել նաեւ որ Մէլիք-Ադամն [1]) նորոգած է ապարանս, որ եղած է կանխաւ, ինչպէս երեւում է հին եւ նոր որմերի տարբերութիւնից։

Ապարանից փոքր ինչ վերեւ, արեւելեան մուտքի մօտ կան վիմափոր քարայրներ, որք եղած են գոնապանների բնակարաններ։

Քաղաքատեղիս հարաւային կողմումն է Հին—Մեծ-շէնի աւերակն, որի մէջ է մի աւերակ եկեղեցի եւ մօտերքում հանգստարան։ Մէլիք-Ադամ Բ-ի ժամանակ աւերակիս բնակիչներն տեղափոխուում են Գանձակի եւ Թիֆլիսի կողմերն։ Յետոյ տեղափոխուածների փոքր մասն վերադառնում է, բայց փոխանակ այստեղ բնակելու, հիմնում Մեծ-շէնը եւ բնակում այնտեղ. քանզի երկիւղալի է լինում այստեղ բնակելն։

Ժ. ՔՄՔԱՁՈՐ ՇԷՆ. Հիմնուած է Մաղաւուզի արեւելեան սարի ստորոտի հարթում։ Բնակիչներն մօտ քսան տարի առաջ բաժանուելով Մաղաւուզից բնակութիւն հաստատած են այստեղ. միեւնոյն են հողն, բերքերն, միայն աւելի լաւ է տեղիս օդն եւ կլիման. քահանան եւ եկեղեցին Մաղաւուզինն է, եւ ծուխն հաշուած նորա վերայ։

ԺԱ. ՕՒԱԾ [2]) ԹԱՓԷ ՇԷՆ. Հիմնուած է փոքր ինչ վար Քմքաձորից, բնակիչք նոյնպէս անջատուած են Մաղաւուզից.

[1]) Աւանդաբար ասում են թէ այս եղած է Մէլիք Իսրայէլեանների ձմերանոց ապարանն. իսկ Ինն-Մաս անապատի մօտինն՝ ամարանոց։

[2]) Արցախեան բարբառի գլխաւոր յատկութիւններից մին եւ այն է որ ինչ պարագայում ու տառերով սկսուած անունների առաջի 2 գիրը հնչւում է իբր Օ. օրինակ ուռած—օռած, ուղտ—օղտ, ուրախ—օրախ, են. Ուռած բլուր—Օռած Թափէ։

ամենայն ինչ նոյն։ Ծուխ Քմքաձորում, Օռած-Թափում և Վառնկաթաղում 30 114․ իգ․ 103։

ԺԲ. ՎԱՐՆԿԱԹԱՂ կամ ԼԻՒԼԱՍԱՉ. Շինուած Թարթառի աջ ափի բարձրութեան վերայ․ բնակիչք բնիկ, միևնոյն հողն և բերքերն. օդն և կլիման ծանր և անախորժ ամ.րան. երկար կեանք 60․ եկեղեցին սուրբ Մինաս․ քահանայ մի։ Ծուխ 20, ար․ 70, իգ․ 60։

*Ջրխտակ շինատեղ*․ աւերակ գիւղեր են, որք գտնուում են Մաղավուզի հիւսիսային կողմում, Թարթառ գետի աջ կողմի լանջի վերայ, ուր կայ և հանգստարան։

*Կթղուկոսարան* (32) (Կաթուղիկոսարան), որ գտնուում է Թարթառ գետի աջ կողմի նոյն լանջի վերայ, Դոնի շէնի դիմացն։ Քարայրի նման մի բան է, որի առաջն պատելով ձևացրած են բնակարան, որի մէջ մի ժամանակ մնացած է Աղուանից Վիրոյ և այլ կաթուղիկոսներ։ Այժմ ուխտատեղի է հին աւերակս։

## ՊԱՌԱԻԻ ԿԱՄՈՒՐՋ (Դառը քեօրփի).

Արդէն գիտենք Թարթառ գետի վերայ շինուած կամուրջներից առաջինն էր Պարտաւի մօտ եղած բազմաչեայ կամուրջն։ Բ-ն է Պառաւի կամուրջս, որ ունի միայն մի աչք և որ շինուած է Վարնկաթաղի առաջ։ Կամրջիս երկու կողմերի հիմքերն ևս հաստատուած են վիմահերձ ապառաժների վերայ։ Շինողն եղած է հայ բարեպաշտուհի ոմն տիկին։ Գ. կամուրջն (փայտեայ) Դոնի շինի մօտ է։ Դ. կամուրջն (փայտեայ) Ջրաբերդի մօտով է։ Թարթառիս Ե. կամուրջն է Սարսանքի (քարուկեր) կամուրջն։ Զ-ն, որը շինել տուած էր տիկին Ասփան Խաթրայ վանքից վար Թարթառիս վերայ։

ԺԳ. ՆԵՐՔԻՆ-ՉԱՅԼՈՒ. Հիմնուած է Թարթառ գետի ձախ ափի վերայ դաշտաբերանի մօտ. բնակիչք 1828-ին գաղթած են Պարսկաստանի Բաղրբեօվ գիւղից․ հողն արքունի, բարեբեր, ջրաբբի, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, խաղող, դեղձ, թութ, կեռաս, բամբակ, բոժոժ և որիզ, օդն

և կլիման տենդաբեր ամրան, երկար կեանք 70․ եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն․ քահանան գալիս է Վերին-Ջայլուից։ Ծուխ 45, ար․ 142, իգ․ 115։

ԺԴ․ ՎԵՐԻՆ-ՋԱՅԼՈՒ․ Հիմնուած նոյն գետի ձախ ափում փոքր ինչ վերև Ներքին-Ջայլուից, բնակիչք գաղթած 1828-ին Ուրմիոյ Ըռհաւա գիւղից, հող, տեղ․ բերքեր, օդ և կլիմայ երկար կեանք նոյն են․ եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ (Գիւղիս մօտ կայ ընտիր գաճ)։ Ծուխ 55, ար․ 255, իգ․ 234։

ԺԵ․ ԹԱԼԻՇ ԳԻՒՂ․ Հիմնուած է Վերին-Ջայլուի հիւսիսային կողմում լեռների մէջ մի սարալանջի վերայ․ բնակիչք բնիկ, հողն բէկական (մէլիքական), անջրդի (մասամբ ջրարբի) հացաւէտ․ ջուրն սակաւ, տեղական բերքերն միայն ցորեն և գարի, բարեխառն օդն և կլիման, քաղցրահամ ջուրն․ երկար կեանք 85—90․ եկեղեցին Նորաշէն, կառուցեալ հասարակութեան ծախքով չորս միապաղաղ սիւների վերայ, որ ունի 21 մետր 85 սանթիմ երկարութիւն, 13 մետր լայնութիւն․ երկու դուռն հարաւային և հիւսիսային կողմից․ քահանայ մի։ Ծուխ 130․ ար․ 568․ իգ․ 455։

*Մագաղաթեայ* մեծադիր աւետարան [1]) գրուած ամբողջապէս գլխագրերով․ գողացած են յիշատակարանը, վասն որոյ գրում ենք յետոյ գրուածները․ «Յանուն Աստուծոյ մեք Ներքի տանուտէրքս . . . յիշէ Ջաւելի դի Մոսին [2])․ ես Դաւիթ իմ վանական եղբարքս (եղբարբքս) վկայ եմ այս գրոյս 'ի թուականութեանս ՇԺՁ․ հաստատուն, եթէ Աստուած կամի»։ Ապա գրուած է վերջին երեսի վերայ․ «զՄաթէոս զՅակոբ երիցու քեռին, որ յարդեանց իւրոց ծախք արար յեկեղեցիս և յեղբարքս, որք զգիրս կարդայք, զնա յայաւէժս յիշեցէք և մեղաց թողութիւն խնդրեցէք . . . հաւր Պետրոսի հրամանաւ Գրեցի»։ Յետոյ գրուած է․

«Զաստուածափառ և զաշխարհալոյս սուրբ աւետարանս որ

---

[1]) Մեզ անյայտ պատճառաւ գտնուում է մի աշխարհականի տան։

[2]) Ոճ լատինական, որ նշանակում է՝ Ջաւելի Մովսէսեան։

ձեռամբ Հասանայ Ուզին որդոյ բերաւ ի Կեսարիոյ և Նոյն Հասանայն և ամուսին Ելթի և պարծանաց. որդիք իւր Հասըմբեր և Սասնայ եւտուն զսա յիւրեանց տապանատունս որ էին տեղւոյս իշխանք զտուն Ծիրանշահանց Դաւթի ձեռամբ 'ի վանս Եղիշէի և հաստատի սմա բանիւն Աստուծոյ և յանուն Հասանային և Ելթոյն յետ մահու պատարագ ի Քրիստոս յամեն եկեղեցիս 'ի զատկին յալուլթեան աւրն, որ յարոյց ընդ իւր բազում մեռեալք և յարուցէ Քրիստոս փառաւք զՀասանայն և զԵլթի հանդերձ իւր ծնելաւք միւսանգամ գալստեանն։ Արդ որք խափանեն զպատարագն և կամ հանէ զաւետարանս և զԾիրանշահեանց տունն ի Տապանատնէս [1]), հանեսցի նա յարքայութենէն Աստուծոյ։ Առանց աշխարհաւերի թիւն Հայոց էր ՋԺԵ.։ ՋԻԱ. շինեցաւ ժամատունս (Եղիշէի)»։

*Նորոգութեան մասին.* «Ի թուաբերութեան Հայկական տումարի հազարերորդի հարիւրերորդի ինուսուներորդի մէկումն (ՌՃՂԱ.) թուին դրեցաւ ամսեանն դեկտեմբերի Գ. հանուրց դիտապետի տեառն Ներսիսի Աշտարակեցւոյ Կաթուղիկոսին և իշխանութեանս երկրիս Մէլիք Թամրազին»։ Ապա գրուած է։

«Ես Մէլիքս և եղբայր իմ Նուկզար որդիք Մուրատայ ստացաք զսուրբ աւետարանս 'ի հալալ արդեանց մերոց ի յիշատակ մեզ և մեր նախնեաց հաւր Մուրատայ և մաւր Մարգարտին և որդոց մերոց Եղիշէին և այլ ամենայն արեան մերձաւորաց և ետուք զսայ ի ձեռն Ստեփաննոս արհեպիսկոպոսին առաջնորդ սուրբ ուխտին Գանձասարայ, որ կենայ ի դրան սուրբ Յովհաննիսին յիշատակ մեզ և մերոց ամենայնի կենդանեաց և մեռելոց»։ Հուսկ յետոյ գրուած է. «Ով մանկունք Սիովնի . . . ի թուականիս Հայոց ՌՂԹ. Գանձասարայ կաթուղիկոսն Գանջայո խանին տուլթսաղ էր արել (բանտարկեալ էր), մինչև հատոյց զպարտսն դահճացն, ազատեցաւ, ելեալ գնաց թէ շրջեսցէ վասն պարտուցն. մինչև Խաչեն գնացի ես ընդ նմա... Գանձասարայ կաթուղիկոսն անուն Գրիգոր կոչի»։

Գիւղումս Ասրի-բէկ Մէլիք-Թամրազեանցի մօտ կան հե-

---

[1]) Եղիշ-առաքեալի վանքից (Ջրվշտիկ)։

Digitized by Google

տեւեալ հին թղթերն. «ՌՃԾ. թվին Սեպտեմբերի ԻԹ ես Թիւրաշեցի Ատին տղայ Հախնազարս, Հաճի Փահրատս» ծախում են սոքա իւրեանց բաղը Մելիք-Իսախանի [1]) տղայ Յոհանէին և սորա եղբօր Բէկլարին։ Առուծախի թուղթս նախ վաւերացրած է Յովհաննէս, ապա Եսայի կաթուղիկոսն,

«Եսայի կաթուղիկոս այս գրեալ մարդկանց իղրարովն, դապուլութիւնովն վկայեմ» կնքած է և իւր կնքով։

Երկրորդ. «ՌՃԿԵ. յունվարի ԺԸ. Ն. ես Ներքին շէնացի (Կիւլստանի գաւառումն է) Ետկարին տղայ Ուհանս իմ կամով ծախեցի իմ բաժին բաղն Գրիգոր վարդապետին ախպօր Սարգսին վերայ ԺԸ. ռ. [2])։ Մէլիք Թամրազ վկայ.. Եղիա վկայ... Յարութիւն քոխա վկա.»։ Իւրաքանչիւր ստորագրող կնքած է և իւր կնիքը։

Երրորդ թուղթն մխիթարական կոնդակ է գրուած Աղուանից վերջին Ներսէս կաթուղիկոսից առ Մէլիք-Թամրազ, որ սգաւոր եղած է իւր որդու մահուան պատճառաւ, բայց չ'ունի թուական։

*Ռախտարխանա*

Այս անուամբ ճանաչուում է միայն աւերակն, որ կայ Խանակեան դաշտակի վերի բերանում, Թալիշ գիւղն տանող ճանապարհի աջ եզերքի վերայ։ Հին շինութիւնս, որ ունի գղեկի ձև, ասում են, եղած է մաքսատուն Կիւլստանի Մէլիքներին. որք մաքս առած են գաւառս բերուած ապրանքներից։ Ռուսաց տիրապետութիւնից յետոյ մի ժամանակ եղած է փոշտի կայարան շինութիւնս, որ այժմ բոլորովին աւերակ է։

## ՀՈՌԵԿԱՑ ԿԱՄ ՀԻՒՐԵԿԱՑ ՎԱՆՔ (33).

Հիմնարկուած է Թալիշ գիւղի արևմտեան կողմում լեռների մէջ մի հիւսիսահայեաց լանջի վերայ։ Վանուցս շինութիւնն ունի շատ հին ձև, քանզի խորանն, ըստ սովորութեան, կլոր չէ ներ ուստ, այլ քառակուսի, և շինուած է

[1]) Երևի թէ Մէլիք-Բէկլարեանների ցեղից է Մէլիք-Իսախանն։
[2]) Հաղարն արժէ մի րուբլի, ուրեմն տասնևութ րուբլի ամենն։

անտաշ քարով։ Բաց յայսցանէ բոլորովին մութն է, նեղ, փոքր և բարձրաշէն, որ ունի 7 մետր 60 սանթիմ երկարութիւն և 4 մետր 32 սանթիմ լայնութիւն։ Դրան վերայ.

«Ի քահանայապետութեան Ստեփաննոսի զշինող եկեղեցւոյս զտէր Յովհաննէս յիշեցէք 'ի Քրիստոս նաև զծնողս և զեղբարսն իւր թիւ ՉԻԸ.»։ Վանքս ունի և գաւիթ, որ նոյնպէս շինուած է անտաշ քարով, որի երկարութիւնն է 7 մետր 75 սանթիմ, լայնութիւնն 7 մետր։ Գաւթիս վերայ.

«Յաշխարհակալ տէրութեան Ապաղա խանին և 'ի հայրապետութեան տէր Ստեփաննոսին և ի պարոնութեան Նորադինին և Սրաադինին և Գուրգադինին ես տէր Յովհաննէս շինեցի զգաւիթս յիշատակ ինձ և ծնողաց իմոց ՉԼԳ.»։

Գաւթումս ամփոփուած են շատ եպիսկոպոսաց, վարդապետաց և սարկաւագաց մարմիններ, այնպէս որ ամբողջ յատակն սալարկուած է տապանաքարերով։

Վանուցս արևմտեան կողմում դեռ կանգուն են միաբանից սենեակներ, որ շինուած են բոլորովին քարուկիր և թաղակապ։ Բայց այժմ վանքումս չկայ ոչ վանահայր, ոչ միաբան և ոչ իսկ պահապան, վասն որոյ հետզհետէ քայքայուում է ամենայն ինչ։

Գեղեցկաքանդակ տապանաքարերով և խաչարձաններով զարդարուած են վանուցս շրջապատն։ Այստեղ ամփոփուած են ոչ միայն միաբանից, այլ և Մէլիք-Բէկլարեանց տոհմի և նոյն իսկ Թալիշ գիւղի ննջեցեալներն. այժմ ևս թաղում են Թալիշեցիք։ Հետևապէս խիստ ընդարձակ է հանգստարանս. որի մէջ փայլուն տեղ գրաւած են Մէլիք-Բէկլարեանց քարեհամբաւ տոհմի շիրիմներն իւրեանց գեղեցիկ արձաններով և երկար արձանագրութիւններով, և նախշած տապանաքարերով։

## ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ ԱՊԱՐԱՆՆ.

Վանքասարիս լանջի ստորոտում կառուցեալ է Կիւլստանի իշխող մէլիքների ապարանն, որ արտաքուստ չափելով



Digitized by Google

ունի 42 մետր երկարութիւն, 36½ լայնութիւն։ Ըստ երկարութեան ներսի կողմում արեւելքից արեւմուտք երկու շար սենեակներ շինուած են, որոց մէջն բաց է երբեւ հրապարակ։ Հարաւային շարքում կայ վեց սենեակ, որք ունին ութաչեայ կամարակապ սրահ։ Միջի եր՝կու սենեակներն ընդարձակ են և գմբէթաւոր։ Հիւսիսային կողմն բաղկացած է երեք մեծ սենեակներից, որոց թաղակապ կամարներն թափուած են։ Ապարանս ունեցած է երկու դուռն—արեւելեան և արեւմտեան կողմերից. առաջինն արդէն քանդուած է իւր կողմի ամբողջ պատով և երկու բուրգով միասին. իսկ արեւմտեան դուռն իւր սեմերով քանդած և տարած են Թալիշեցիք եկեղեցուն համար։ Ցաւալի է տեսնել որ Թալիշի հայերն չգիտեն սրբութեամբ պահպանել իւրեանց նախնեաց թանգագին հնութիւնները։

*Քառաքուրգ բերդակ.*

Ապարանիս հիւսիսային կողմում, մի քանի քայլ հեռի ձորակի ձախ լանջին վերայ շինուած է քառուկիր մի դղեակ չորս ամրաշէն բուրգերով, որք արձանացած են չորս անկիւններում։ Կանգուն են հարաւային, հիւսիսային և արեւմտեան պարիսպներն իւրեանց երկու բուրգերով. իսկ կործանուած է արեւելեան կողմի պատն իւր երկու աշտարակներով։ Դղեկիս մէջ տեղումն կայ մի նուիրական ուխտատեղի, բայց յայտնի չէ իւր անունն։ Հիւսիսային պարսպի ներսի կողմում կան մի քանի թաղակապ սենեակներ։

*Դիւտական գիւղատեղի* (34)

Այժմ եւս Դիւտական է կոչուում աւերակ գիւղատեղիս, որ կայ Թալիշ և Մաստարա գիւղերի գրեթէ միջև։ Աւերակիս մօտ կայ մի կիսաւեր եկեղեցի, որ ունի 13 մետր երկարութիւն և 7 լայնութիւն. և որ շինուած է բաւական ճաշակով։ Եկեղեցւոյ արեւմտեան և հիւսիսային կողմերն լի են գերեզմաններով. սակայն ամենամեծ մասամբ ծածկուած՝ անտառի ծառերով։ Հիանալի աղբիւր, ուշագրաւ դիրք, գուրալի տեսարան ունի աւերակս։

Հարկ է յայտնել բարեմիտ ընթերցողաց թէ Թալիշ գիւղըն, Հոռեկայ վանքն, Ներքին և Վերին—Զայլուներն և Դիւտական աւերակս կանխաւ պատկանում է եղել Ջրաբերդի գաւառիս՝ ըստ որոշման սարերի բնական սահմանին։ Ահա այս է պատճառն որ Ջրաբերդ գաւառի շարքում գրեցինք շէն և աւերակ տեղերս։ Բայց մէլիքութիւնն ծնունդ առնելուց յետոյ՝ այս մասը յատկացրած են Կիւլստանի մէլիքութեան։

ԺԶ. ՄԱՏԱՂԻՍ [1]) ՇԷՆ. Հիմնարկուած է Թարթառ գետի ձախ ափի վերայ Պառաւի կամրջից փոքր ինչ վերև. խոր ձոր է գիւղիս տեղն և բարձր լեռներ շրջապատած են գրեթէ չորս կողմերն. իսկ Թարթառն վշվշալով և մռմռալով հոսում է շինիս ստորին կողմով։ Բնակիչք բնիկ, հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, եկեղեցին նորաշէն, կիսատ և դեռ անկնունք, 15 մետր 50 ս. երկարութիւն 8 մետր 50 սանթիմ լայնութիւն. քահանան գալիս է Վարնկաթաղից։ Ծուխ 35, ար. 90, իգ. 75։

ԺԷ. ԴՈՆԻ-ՇԷՆ (Դանիէլի շէն) Հիմնուած է նոյն գետի ձախ կողմում Մատաղիսից բաւական վերև. բնակիչք տեղափոխուած են Մաղավուզից. հողն արքունի, լեռնային. գերազանց օդն, կլիման և ջուրն, եկեղեցին խիստ հին, փոքրիկ, Սուրբ Գէորգ, քահանայ մի։ Հարկ է յայտնել որ գիւղս և եկեղեցիս և հանգստարանս հին են, իսկ այժմեան բնակիչք շատ յետոյ եկած են։ Եկեղեցիս շինուած է անտաշ քարով, որի երկարութիւնն է 6 մետր, լայնութիւնն 4 մետր 40 սանթ. դռնագլխի քարին վերայ. «Ծառայ Աստուծոյ ես Մելքիսեթս նորոգեցի ժամատունս յիշատակ»։ Վաղեմի գերեզմաններով լի են եկեղեցւոյ չորս կողմերն։ Ծուխ 35, ար. 134. իգ. 113։

Հին գիւղատեղի. այսպէս է կոչւում այն աւերակ գիւղատեղին, որ կայ Դոնի շինից վերև և որ ունի պատուական

[1]) Բնաւ շփոթելու չէ այս Մատաղիսը Խաչէնի գաւառի Մատաղիս աւերակ գիւղի հետ։

Digitized by Google

և առատ ջուր, ընկուզի զառամեալ ծառեր, և որ պատուած է անտառով։

*Ձորխտակ մատուռ*, Զոյգ շինուած քարուկիր մատուռներ են, որք կան Ուղտը-կերանք կոչուած տեղում, նմանապէս գիւղիցս վերև։ Այստեղ ևս կան գիւղի աւերակ, քարուկիր շինութեանց հետքեր և կաղամախի ծառեր։

## ԵՐԻՑ ՄԱՆԿԱՆՑ ՎԱՆՔ.

Վանքս շինուած է Մռաւ սարից դէպի արևելք խոնարհուած մի լեռնաբազկի հարաւահայեաց լանջի հարթակին վերայ, որի ստորոտով սրընթաց խոխոջում է Թրղին[1]) գետակն, որ և օժանդակ Թարթառի։ Կառուցեալ է չորս սիւների վերայ փոքր դիրքով, անճաշակ ոճով, բայց հպարտ արձանագրութեամբ։ Դրան ճակատակալ քարի վերայ. «Ի թուին ՌՃԽ. ին ի ժամանակս Շահ Սուլէյմանին մեծի արքային Պարսից ես Սիմէօն շնորհիւն Աստուծոյ կաթուղիկոս[2]) Աղուանից շինեցի զեկեղեցիս ընդ հարազատ եղբաւր իմոյ Իգնատիոս վարգապետին, որ եմք որդիք Սարգիս քահանային Մեծ շինացւոյ, յաղաւթս յիշեցէք որդիք Նոր Սիաւնի . . .»։

*Խորանի ճակատին*. «Կերտեցաւ այս յարկ նուիրանաց տանն Աստուծոյ և տաճար փառաց Նորոյ ուխտի պատարագաց, զոր Տէր Յիսուս մեզ աւանդեաց, շինեցաւ յերկուց հարազատաց Սիմէօնի կաթուղիկոսի և Իգնատիոսի րաբունոյ և այլ յոգունց աշխատողաց գրելոց 'ի դպրութեան կենաց, ի թուականիս ՌՃԺԳ ին աւարտեցաւ սոյն եկեղեցի 'ի փառս անճառ Տեառն Յիսուսի . . . . . .»։

Վանքս ունի երկու քարուկիր և թաղակապ խուցեր մին մեծ և միւսն փոքր։

[1]) Թրղին կամ Թորաղա գետակս առած է իւր սկիզբը Մռաւի ամենաբարձր գագաթի Գոմէշ (կեամուշ) Սարի (որի բարձ. 12269) հարաւահայեաց լանջերից։

[2]) Այս է ըստ Գաղտնիքի Ա. ճըռ և ինքնակոչ կաթուղիկոսն, որ շինած է տաճարս ոչ 'ի փառս Աստուծոյ, այլ 'ի յագուրդ իւր անարգ փառասիրութեան, 'ի դաւաճանութիւն Աղուանից հարազատ կաթուղիկոսութեան, հակաթոռ Գանձասարի . . . . . . . ։

## ԺԸ. ԴԱՍՏԱԿԻՐ (Դաստակերտ) (35)

Աւերակ գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր եկեղեցի, որք գտնուում են Դոնի շէնի հիւսիսային կողմում մի բարձր, տեսարանաւոր, անտառապատ, բայց ուշադրաւ սարահարթի վերայ։ Բաւական փառաւոր շինուած է եղել քարուկիր եկեղեցիս, որի գլուխն այժմ խոնարհած է, բայց տակաւին մնում են կանգուն աւագ և երկու փոքր խորանների թաղերն։ Թէև աւերակ, սակայն վսեմ տպաւորութիւն է թողում այցելուաց վերայ եկեղեցիս, որի երկարութիւնն է 13 մետր, լայնութիւնն 10։ Աջակողմեան փոքր խորանի ճակատին.

«Թւ ՉԻԵ. 'ի փաթշահութեան Ապաղէին, յամի տէրութեան Իւանէի, 'ի հայրապետութեան տէր Ստեփաննոսի ես, տէր Սուքիասեանց ցեղէն տէր Ներսէս հիմնայրի, տկար ոգով շինեցի զեկեղեցիս յիշատակ մեզ և մերոց, յիշեցէք 'ի Քրիստոս, աղաչեմ»։

Աջակողմեան խորհրդարանում. «Ես Մուսէս (կանգնեցի) զխաչս Խաթունա և Մամխաչունայ»։

Եկեղեցուս դրան ճակատակալ քարի վերայ.

«Կամաւն Աստուծոյ, ի դատաւորութեան Արղունին, ի հայրապետութեան տէր Ստեփաննոսի, ի տէրութեան Իւանէին և Սադրադինին որդոյ Փախրադինին, ես տէր Սարգիս շինեցի զժամատունս, զուգեցի զգաւազանս, զաւետարանս զըստ ողոգին...» (Անընթեռնլի)։ Այժմ չկայ ժամատունն, այլ աւերակ է։ Եկեղեցուս չորս կողմերն լի են խիտառխիտ ամփոփեալներով։

Այժմ մի փոքրիկ շէն կայ այստեղ, որի բնակիչք տեղափոխուած են Շուշուց երեք գերդաստան, Մեծ-Սիւնեաց մի գիւղիցն երեք գերդաստան, Ջէյուալից չորս գերդաստան, որք զբաղուում են անասնապահութեամբ, գերազանց է օդն, կլիման և ջուրն, քահանան գալիս է Դոնի շէնից։ Ծուխ 10. ար. 50. իգ. 40։

*Միայնակ խաչարձան.* Դաստակերտից Եղիշ առաքեալի

վանքն տանող ուղու աջ կողմում, ոչ այնքան հեռի ուղուց, անտառում կայ մի հին խաչարձան, բայց անարձանագիր։

## ԵՂԻՇ-ԱՌԱՔԵԱԼ ԿԱՄ ՋՐՎԺՇՏԻԿ ՎԱՆՔ. (36)

Մռաւ սարի քղանցքներից մի լեռնաբազուկ յանկարծ խոնարհուած է բարձրից երկու ձորերի մէջ, ուր և կազմած է իւր ծայրից մի բլրակ, որի վերայ հիմարկուած է վանքս։ Սրբավայրս շրջապատուած է աքխաղխեալ և բարձրագոյն լեռներով և անդնդախոր ձորերով և սոսկալի կիրճերով, վասն որոյ նեղ է և սեղմուած իւր հօրիզոնն։ Վանքաբլրիս հիւսիսային ծայրում բարձրացած և ցցուած է լեռնաբազուկն, արևմտեան և հարաւային կողմերում Դաստակերտի սարի շարունակութիւնն և արևելեան կողմում երկու սարերիս գրկախառնուած դիրքն։ Մի վտակ արևմտեան կողմից շըռաշռալով վիժում է շատ բարձրից [1]), պատում վանքիս հարաւային ստորոտի խորագոյն ձորով, դառնում դէպի արևելք և սրընթաց վազում դէպի Թարթառ։ Վանքաբլրի հարաւային կողմն սոսկալի վիմահերձ է. իսկ միւս երեք կողմերն՝ պարսպուած քարուկիր պատով, որ ունի երեք դուռն արևմտեան, հիւսիսային և արևելեան կողմերից։

Բլրիս գագաթում հիմնարկուած է վանքն անտաշ քարերով, որի շինութիւնն շատ հին է, ճարտարապետութիւնն՝ հասարակ, բարձրութիւնն՝ չափազանց, և ոճն անճաշակ։ Այսու ամենայնիւ ազդում է այցելուաց պատկառանք և սրբութիւն։ Ունի երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, 10 մետր երկարութիւն, 5 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Որմերի վերայ տեղ տեղ գործ դրուած է և աղիւս, որի երկայնութիւնն և լայնութիւնն 30 սանթիմ է և հաստութիւնն 11 ս.։ Այժմ խոնարհուած է վանքիս ամբողջ ձեղունն և խորանի արևելեան պատն։

Մենաստանս ունի և գաւիթ շինուած միևնոյն ճաշա-

[1]) Ջրվշտիկ անունը՝ հաւանական է՝ որ վանքս ստացած լինի ջրիս այս զմայլելի ջրվէժիցն։ Վանքս կոչուած է և Ներս-Միհրի վանք։

Digitized by Google

կով և ոճով չորս սիւների վերայ, նոյնպէս անտաշ քարով, գաւիթս ունի մի դուռն արեւմտեան կողմից, 9 մետր 5 սանթիմ երկարութեամբ, 8 մետր 45 սանթիմ լայնութեամբ, և սոյն արձանագրութիւնը.

«Թւ. ՉԺԳ. կամաւն Աստուծոյ ես Խաչատուր շինեցի ժամատունս յառաջնորդութիւն տէր Սիմէօնի, աղաչեմ զձեզ, յիշեցէք 'ի Քրիստոս»։ Ինչպէս տաճարիս շուրջն, նմանապէս գաւթիս յատակն ծածկուած է հանգուցեալ եպիսկոպոսաց, վարդապետաց և միաբանից տապանաքարերով։ Ահա շատերից մի քանիսի արձանագրութիւններն

«Այս է հանգիստ տէր Սիմէոնի ՉԽԷ.»։
« ,, ,, ,, տէր Ովանէսի 'ի թվ. ՊՁ.»։
« ,, ,, ,, տէր Վարդանի Ծ. Քս. ՉԽ.»։
« ,, ,, ,, Մատէոս եպիսկոպոսին թվ. ՃՁ.»։
« ,, ,, ,, Մելքիսէթ եպիսկոպոսին, որ է առաջնորդ սուրբ ուխտիս, որ անմեղ սպանեցին Օսմանցիք ՌԾ.»։

Մենաստանիս երկու կողմերում կան մատուռներ։

Հիւսիսային կողմում, (սկսեալ այս կողմից դէպի հարաւ)։

Ա. մատուռն ունի երկու խորան և երկու սեղան, որ շինուած է անտաշ քարով։

Բ. մատուռն, որ նոյնպէս շինուած է անտաշ քարով, ունի միայն մի խորան և մի սեղան։

Գ. մատրան մէջ, որ շինուած է միևնոյն ձևով, կայ Աղուանից Գ. Վաչական թագաւորի գերեզմանն, որի վերայ ձգուած է մի եռանկիւնի տապանաքար, որ պատրաստուած է առանձին խնամքով և յղկուած մաքուր տեսքով, որի երկարութիւնն է 1 մետր և 60 սանթիմ. բայց չունի արձանագրութիւն; Տապանաքարիս մօտ կայ մի քարեայ խաչարձան, որ նշանաւոր է ոչ միայն իւր խիստ հեռաւոր հնութեամբ, այլ և իւր վաղեմի քանդակագործութեան գեղարուեստի ճարտարապետութեան ձևով, այսպէս է և խորանի աջ կողմում եղածն։ Մատրանս, որ ունի մի խորան, դրան

ճակատակալ քարին վերայ քանդակուած է.

«Այս է հանգիստ Վաչական Թագաւորին (37). Աստուած ողորմի Հայրապետայ և օյր (իւր) ծնողացն, որ շինեց զեկեղեցիս առաջնորդութիւն տէր Սիմոնի Թիւ ՉԼԵ. էր»: Մատրանս դրան դիմացն է Չրաքերդ գաւառի իշխող բարձրահաչակ Մէլիք Ադամ մեծի գերեզմանն: Ցաւալի է տեսնել որ անկիրթ մահմետականներն ջարդած են արձանագրութիւն կրող մարմարիոնը, որ զետեղուած է եղել մէլիքիս տապանաքարի մէջ: Այսու ամենայնիւ գաւառիս մեծ և փոքր ամենքն աւանդութեամբ գիտեն իւրեանց սիրելի իշխան մէլիքիս գերեզմանը:

Դ. մատուռն, որ կանգնած է վանքին հարաւային կողմում, երկխորան է և ունի հեռաւոր հնութիւն, որի մէջ է մի գերեզման, որի վերայ փորագրուած է. «Այս է հանգիստ տէր Մեսրոպին որդի (որդւոյն) որ է աւագ եղբայր Մելքիսէթ եպիսկոպոսին Թվ. ՌՃԿԲ.»:

Ե. մատուռն, որ Դ-ից հարաւ կայ, ունի մի խորան:

Զ. մատուռս աւելի հնաշէն է, որ ունի մի սեղան և գրութիւնս. «Յանուն Աստուծոյ ես Առաքել վարդապետ, տէր Մատթէոս շինեցինք զեկեղեցիս, հաչ բերինք . . . . .»:

Է. մատուռն ունի միայն մի սեղան:

Վանքումս կայ մի հնուց մնացած և կոտրած զանգակ, որի վերայ փորագրուած է. «Յիշատակ է զանկակս Ղազարին, որ է որդի Գիրիգորին, է Թոռն Եսային. Յուսիփի որդի Պապէն, որ է Պօղոս Թուլղէր (հիւսն). ես Շահնա կալմրեցի (ձուլեցի). գինն է Գ. Թուման»: Բացի զանգակիցս կայ և մի այլ կոպիտ և երկարաձև զանգակ, որ աւելի հին է:

Վանքս ցարդ սրբութեամբ պահած է Գաղտնիք Ղարաբաղի հերոսներից երկու քաջերի յիշատակը, որք են Դալի-Մահրասան և Տեօնմազ: Վանքիս արևելեան պարսպի մօտ է Աւագ-վարդապետ—Դալի-Մահրասայի բնակած սենեակն, որ ունի նեղ և փոքր լուսամուտներ և ամուր դիրք: Սենե-

Digitized by Google

կիս մէջ տիրում է խորհրդաւոր մթութիւն [1]։

Վանքիս հիւսիսային պարսպի փակուած դրան մօտ ներքուստ փորագրուած է գլխագրերով. «ՐՇՑՃ ես Տոնմազս բեկեցի թվ. ՌՃՀԷ.»։ Գրերիս մօտ շինուած է մի *փակագիր* մեծ ձևով, որը կարդացի միևնոյն *Տոնմազ* անունը։

Մենաստանս ունի և մի քանի հին սենեակներ և գոմ պարսպի ներսում։ Վանքիս դրութիւնն խիստ խղճալի է։ Անդիմադրելի ժամանակն քանդում և աւերում է ամենայն ինչ։ Վիճի տակ ընկած են վանքիս սեփական և անբռնաբարելի իրաւունք կալուածներն և բոլոր հողերն, սպառուել են արդեանց աղբիւրներն, վանքս կարօտ է նորոգութեան, բայց փող չկայ փող, զի խցուած են արդիւնք հոսող ակունքներն։ Այժմ վանքումս մնում է իբրև պահապան մի տէրացու, որ շինած է վանքի ճանապարհը և նորոգած Զ. մատուռը։

*Ողտի մատուռ*. այսպէս է կոչւում կիսաւեր մատուռն, որ կայ վանքի մօտակայ սարի ուսին վերայ։ Այստեղ կայ և գիւղատեղի և հանգստարան։

*Մատուռ*. այս անուամբ է ճանաչւում այն կիսաւեր, փոքրիկ և հին շինութիւնն, որ գտնուում է Եղիշ-առաքեալ վանքի և Եղակեր շինի միջև մի տեսարանաւոր բլրի վերայ։ Մատրան դռնագլուխ քարի վերայ. «.. Ես Գրիգոր կանգնեցի եկեղեցիս բարեխաւս ինձ և ծնողաց իմոց»։ Եկեղեցուս մօտ կայ և հանգստարան, որք ծածկուած են մացառուտներով և չունին արձանագրութիւն։ Այսպիսի կիսաւեր եկեղեցի, հանգստարան և գիւղատեղի կայ նաև Թթոտ կոչուած տեղում, որ գտնուում է աւերակիս հարաւային հանդէպ վարի լայնագոգ լեռնահովտի մէջ։

ԺԹ. ԵՂԱԿԵՐ ՇԷՆ. Հիմնուած է այն սարի հարաւային լանջի խոր ձորում, որ իբրև սահմանագլուխ ձգուած է Մռաւից մինչև դաշտաբերան։ Բնակիչք քսան տարի առաջ

[1]) Ժամանակի հանգամանքներից ստիպեալ ամրոցի ձև ստացած է Դալի-Մահրասայի սենեակս. լուսամուտներն ոչ եթէ իսկապէս լուսամուտներ են, այլ հրացան արձակելու տեղեր—նեղ ծակեր։

Digitized by Google

փոխադրուած են Մեծ-Սիւնեաց Տեղ աւանից այստեղ։ Հօգն որքունի, լեռնոտ և յարմար անասնապահութեան, տեղական բերքերն նոյն, (առատ է ոչխար, տաւար, չ'կայ այգի, պարտէզ և մեղուք), գերազանց օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Սուրբ Աստուածածին քարուկիր, կառուցեալ մի կամարի վերայ և հին, երկարութիւնն 12 մետր 5 սանթիմ, լայնութիւն 7 մետր 50 սանթիմ. քահանան գալիս է Կիւլստանից։ Տաճարիս մօտ կայ հնուց մնացեալ մեծ հանգստարան, որի մէջ գիր ունեցող գտանք միայն. «Այս է տապան Մխիթարի որդի Մեժլում քոխային թվ. ՌՃՂԹ»։ Ինչպէս երևում է հին աւերակներից, աւելի շատ եղած է Եղակերիս նախկին բնակչաց ծխաթիւն։ Այժմ ծուխ 35. ար. 100. իգ. 85։

*Մռաւի սուրը.*

Արցախեան նահանգի ամենաբարձր լեռներից մին է Մռաւ սարն, որ ընկած է Ծար, Ռստակ, Ջրաբերդ, Կիւլստան և Գարդման գաւառների մէջ։ Արդէն գիտենք որ սարիս հարաւային կողմն ընկած են Ծար և Ռստակ գաւառն, արևելեան կողմն՝ Ջրաբերդ. իսկ հիւսիսային կողմն ընկած են Կիւլստան և Գարդման գաւառներն։ Մռաւիս այս ամենաբարձր գագաթն, որ սահմանագլուխ է Ջրաբերդ և Կիւլստան գաւառների, բազմած է սարիս վերայ իբրև քարաժայռ և ցից բլուր։ Երկու դժուարատար, երկիւղալի և վտանգաւոր կածան կայ քարաբլրիս կատարն բարձրանալու համար, մին արևելքից՝ որ է Կիւլստանի մուտքն և միւսն արևմտեան կողմից՝ որ է Ջրաբերդի մուտքն։ Քարաբլրիս գագաթի մակերևոյթն մի մեծ կալաչափ հարթակ է, որի եզերքներումն շարուած են ահագին վէմ քարեր [1]) ինչպէս պարիսպ, որպէս զի մարդ չընկնի գագաթիցն, նոյնպէս և տեղ տեղ մուտքերի երկու կողմերում։ Ահա գագաթիս վերայ կայ մի սպիտակ, փոքր խաչքար, որի տակ աւանդաբար ասում են, թէ կայ նահատակի գերեզման, որ է ուխտատեղի։ Արևելեան մուտքի մօտ կայ մի թոնրաչափ սառցատուն, որի միջից անպա-

[1]) Զարմանում է մարդ թէ ինչպէս բարձրացրած են այս լեռանման մեծ մեծ քարերը այստեղ։

կտաս է ամրան եղանակներում ջուր և սառն։ Սրբավայր գագաթիս բարձ. է 11219 ոտք։

Քանի՜ սքանչելի է տեղիս տեսարանն, քանի՜ ուշագրաւ է բնութեան գեղեցկութիւնն, մանաւանդ երբ բոլորովին պարզ է երկինքն։ Հարաւային կողմերում երևում են ի բացուստ Արցախեան բարձր լեռնաշղթան, որոց վերայ արձանացած են Ծար, Խաչէն, Վարանդայ և Դիզակ գաւառների բարձր գագաթներն. Պարսկաստանի Սաւալան սարն և Երասխըն։ Արևելեան կողմերում երևում են ամբողջ Արցախի և Աղուանից դաշտերն, Կասպից ծովի հարաւային մասն, հիւսիսային կողմում Կովկասեան լեռնաշղթան, Շահ-դաղն իւր ընկերներով և Կազբէկն. իւր. արևմտեան կողմում Կայենի լեռներն։ Բայց մօտուստ պատկերացած են բոլոր դաշտային և լեռնային գաւառներն, տեղ տեղ բազմաճղի աղխաղխեալ լեռնագօտիներ, միայնակ կամ ճիւղաւորուած լեռնաբազուկներ, սարաւանդներ, օձաձև գալարուած, նաւաձև, նաւակաձև ձգձգուած ձորեր և ձորակներ, վիմահերձ լեռնաճականեր, խոտադէզերի նման լեռնագլուխներ, բլուրներ և բլրակներ և միանգամայն լերկ, դալարագեղ, անտառապատ և մացառուտ սարալանջեր, սեռեր և սրածայր բլուրներ։

## ՋՐԱԲԵՐԴ ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Երկու են գաւառիս գլխաւոր բերդերն—Քաղաքատեղի կամ մայրաքաղաք և Ջրաբերդ։ Արդէն խօսած ենք ինչպէս առաջնոյն մասին, նոյնպէս և Ինն-Մասի բերդանմանապարանի մասին, ուրեմն խօսինք վերջնոյս Ջրաբերդիս [1]) մասին։

Ամրոցս գտնուում է Մայրաքաղաքի ուղղութեամբ Թարթառի խոր ձորումն գետի ձախ ափի վերայ։ Համարեա թէ ջրով շրջապատուած է բերդավայրս. որի արևմտեան ստորոտով սրընթաց խոխոջում է Թրղին կամ Թորաղա գետակն և միանում Թարթառին. ապա միացեալ ջրերս պատելով բերդին

---

[1]) Կոչուած է նաև Չարաբերդ, Չրաբերդ, Ջերմուկի բերդ, ղալա։ Բերդս խիստ հին է. տես. Մով. Կաղ. եր 124 «հանդիպեցան յամրոցին Չարաբերդոյ»։

հարաւից և արևելքից՝ դառնում են դէպի հիւսիս և ապա հեռանում վշվշալով։ Ահա այսպէս Թերակղզի ձևացած է բերդատեղիս։ Սակայն Թրղին և Թարթառն բազմադարեան ժամանակամիջոցում քանդած, տարած և խոր խոր ձորեր ձևացրած են իւրեանց յատակը, այնպէս որ այժմ անմատչելի, ահարկու և բարձր վիմահերձ ժայռեր են բերդիս երեք կողմերն. իսկ լեռնակողմն վիմահերձից վիմահեբձ պարսպուած է ամուր պատով։ Ունի միայն մի մուտք պարսպի պատով։ Բաւական տարածութիւն ունի բերդիս մակերևոյթն, որի վերայ կան բաւական քարուկիր շինութիւններ, կան՛ որ բոլորովին՛ անվնաս մնացած են։ Սակայն բուսած են բերդումս ծառեր, որոց հաստաբուն արմատներն հետզհետէ փորձ են փորձում քանդել շինութեանց հիմքերը։ Բայց որովհետև բերդումս չկայ ջուր, վասն որոյ բերդիս միջից դէպի Թարթառ գետն կտրած են վիմափոր ականներ, որոց միջի սանդղաձև աստիճաններով երթևեկելով ջուր մատակարարած են բերդիս պաշարման ժամանակ։ Թարթառն գործ դնելով իւր մշտագործ գործիները վերստին փորած և իջեցրած է բաւականին իւր յատակը. այս պատճառաւ ականների արտաքին բերաններն բարձր մնացած են գետի երեսից [1]։

Ինչպէս տեսանք գաւառների սահմանների բաժանմանց շարքում, հնուց մի և անբաժան եղած են Ջրաբերդ և Կիւլըստան գաւառներս։ Բայց որովհետև մէլիքութեան ժամանակ բաժանուած են իրարից գաւառս, որպէս գծուեցաւ սահմանն, վասն որոյ առանձին ենք դասաւորում գաւառիս գիւղերը, ծխաթուերը և հնութիւնները։ Նշանաւոր են Կիւլստանիս տանձն, խնձորն և ցորենն։

Ա. ԿԻՒԼՍՏԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Մռաւ սարի հիւսիսային կողմում Ինջա գետակի ձախ ափի վերայ։ Լեռներով շրջապատուած է գիւղս, վասն որոյ գտնուում է այն մի փոսանման ձորի մէջ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, բարեբեր, մեծ մասամբ անջրդի, անվնաս օդն, կլիման և ջուրն,

[1]) Բերդիս հանդէպ Թարթառ և Թրղի դետախառնուրդի մէջ է Անապատն, որ ունի և մի քանի խուցեր։

երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ չորս սիւների վերայ (երկու փոքր խորանների վերայ կան երկու խորաններ ևս), երկարութիւն 22 մետր 80 սանթիմ լայնութիւն 15 մետր 67 սանթիմ, քահանայ մի։ Ծուխ 56, ար. 200, իգ. 175։

*Ծեր-աւետարան*. երկէջ, մեծադիր, թղթեայ, որ կայ եկեղեցումս և ունի չորս աւետարանչաց անճաշակ պատկերները։ Աւետարանիս գրողն է. «ԶԳրիգոր մեղապարտ գրիչ յիշեա ի Քրիստոս»։ Գողացած են յիշատակարանը մի քանի թերթերով միասին, վասն որոյ անյայտ է աւետարանիս գրութեան թուականն և գրուած տեղն։ Տաճարիս դուրսն, արևմտեան որմի մօտ մի քարի վերայ. «Այս է տապան Օհանէսին, որ էր որդի Օսէփ բէկին և թոռն Մելիք Ստեփանին [1]) ՌՄՁԴ.»։

Գիւղիս հիւսիսային ծայրում կայ մի *հնաշէն* եկեղեցու աւերակ, որ շինուած է եղել ամբողջ սրբատաշ քարով և կոչուում է այժմ սուրբ Մինաս, որի հիւսիսային որմի վերայ. «Կամաւն Աստուծոյ շինեցինք խորանս տանուտէրն Ուլուխան, աշխատողք երկու տէր Դաւիթն, Սպարապետն, պողն (պողաբերողքն) առ հասարակ ժողովուրդքն թվ. ՌԾԸ.»։

Գիւղումս կայ մի քարուկիր և կամարակապ ապարան, որ ունի սոյն արձանագրութիւնը. «Շնորհիւն Աստուծոյ շինեցաւ ապարանս ի թվ. ՌՄԱ. ես Յակոբոս ծառայ Աստուծոյ իշխող գեղոյս որդի Աբրահամ Ըսպարապետին [2])»։ Բնակարանիս տէրն, որ այն սոյն սպարապետիս յետագայ ժառանգն է, ունի մի պահովագիր, որով «Տանուտէրանց Ջանի որդի Յարութիւնն» վաճառում է Ամենափրկիչ վանքի մօտ եղած իւր գետինը Աբրահամ—իւզբաշու որդի Յակովբջան իւզբաշուն 10,000 թումանի։ Առուծախիս վկայ գրուած են «Հիւբեկայ առաջնորդ տէր Պետրոս. Նիրսէս ճդնազգեաց վարդա-

[1]) Մէլիք-Բէկլարեանների ցեղիցն չէ մէլիքս։ որպէս հաստատում են, մէլիքութիւնն սկսուած է իւրով Մէլիք-Ստեփանով և մեռած իւր հետ։ Բայց ինչպէս կարծում եմ, ամփոփեալս լինելու է Մեծ-Սիւնեաց Մէլիք-Ստեփանեանների ցեղիցն։

[2]) Երևի թէ Սպարապետս եղած է Մէլիք-Բէկլարեանների զօրապետն, բայց չկայ գրաւոր և ոչինչ։

պետ, Քաջամարդիկ Մէլիք-Յուսէփ, Քաշալ Հրապետ, Կոստանց Եաւրի. Զովրուն [1]) Յարութիւն, Ուստա Բալաս» ևն. Հուսկ ուրեմն գրած է գրագիրն. «ՌՄԻԳ. մայիսի Զ. գրեցաւ Գիւլըստանին գլխին կալին Քարագլխին»։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ ԿԻՒԼՍՏԱՆԻ

Վանքս գտնուում է Սռնուորայ (սառնագին) վտակի ձախ ափի մօտ։ Ինջա գետակի օժանդակն է Սռնաւոր վտակն որ իւր սկիզբը առած է Մռաւի սրբասարի արևելեան կողմից։ Մենաստանս, որ գիւղիցն մօտ կէս մղոն հեռի է դէպի հարաւ, կառուցեալ է անտաշ քարով չորս միապաղաղ սիւների վերայ, ունի մի դուռն հարաւային կողմից, մի մեծ, երկու փոքր խորաններ, երկու խորհրդարան և երկու նեղ լուսամուտ։ Վանքս, որ ունի 23 մետր 50 սանթիմ երկարութիւն, 10 մետր 10 սանթիմ լայնութիւն, տակաւին կանգուն է, միայն ճաքուած է արևելեան պատն գագաթից մինչև գետինն և ծակուած է աւազանի ետևից, որի մօտ քանդակուած է. ՌԴ. թվ.»։ Չունի ուրիշ արձանագրութիւն։ Հարաւային կողմում կան ամփոփեալներ։

Մենաստանս իւր արևմտեան կողմում (խիստ մօտ) ունի երկու թաղակապ սենեակ, մէկի մուտքի սեմին վերայ. «Թիւ ՌՃԿԳ. յիշատակ է այս օթաղս Եղիա վարդապետին»։ Միաբանութեան սենեակներն, որ գտնուում են հիւսիս արևելեան կողմում (մի քանի քայլ հեռի) արդէն կիսաւեր են։

*Ամենափրկիչ մատուռ*. որ մօտ է վանքիս և շինուած քարուկիր, աւազանի արևելեան խաչի վերայ. «Խաչս Հիւրիա ապաշխարողին»։ Սորա դրան առաջ. «Այս է հանգիստ Հիւրեղ տատին, աղաչեցէք. թվ. ՌԿԲ.»։

*Կարմիր եղցի* գտնուում է գիւղից վերև Ինջայի ձախ կողմի լանջի վերայ աւերակ եկեղեցի, որ շինուած է եղել

---

[1]) Փոխաբերական մականուն, որ նշանակում է՝ բանականները և անասունները կոտորող կարկտաբեր կամ բքաբեր ամենասաստիկ քամի. իսկ իմաստն է քաջամարտիկ, այսպիսի մականուններ շատ կայ Գաղտնիք Ղարաբաղի մէջ։

Digitized by Google

երկյարկ, այժմ մնում է միայն գետնայարկն, որ ծառայած է լանջը հարթելու։ Աւերակիս մօտ կայ գիւղատեղի և հանգստարան, որի մէջ մի մամռապատ քարի վերայ. «Այս է տապան Առուսի որդի ՌԱ. (թուին)»։

## ԴԱՏԻ-ԲԷԿԱՆՑ ՎԱՆՔ.

Կիսաւեր վանքս գտնուում է Կիւլստան գիւղից ներքև Ինջա գետի աջ կողմում։ Մենաստանիս մօտ կայ միաբանից սենեակներ և հանգստարան։

*Զաքին Նհատակ.* Աւերակ վանքիս հիւսիսային կողմում, Պարանպատ անուն անտառում, Ինջայի ձախ կողմում կայ գիւղատեղի, հանգստարան և կիսակործան մի փոքր եկեղեցի Զաքին նահատակ անուն։

*Հին-Խրխափոր գիւղ.* հիմնուած է Կիւլստան և Նոր-Խրխափոր գիւղերի միջև մի հովտում. ուր այժմ երևում են գիւղի աւերակն, թթենի, ծիրանի, տանձի և խնձորի ծառերն և պարտէզներն. իսկ ձորի արևելեան կողմում փոքր եկեղեցին և հանգստարանն։

Բ. ՆՈՐ-ԽՐԽԱՓՈՐ. Հիմնուած է Սև-գետ—գետակի (ղարաչայ) աջ կողմում, Գեօրգին սարի ստորոտում, մի գեղեցիկ դաշտակի հարաւային ծայրում. բնակիչք մի քանի տարի առաջ տեղափոխուած են Հին-Խորխափորից. հողն բէկական, (մելիքապատկան) ջրարբի և բազմարդիւն, բացի սովորական բերքերից ընտիր տանձ, խնձոր, մետաքս և բամբակ. օդն և կլիման փոքր ինչ տաք ամրան, ջուրն պատուական. եկեղեցին նորաշէն, կիսատ, կառուցեալ չորս սիւների վերայ. որ ունի երկու դուռն հարաւային և արևմտեան, վեց լուսամուտ, 16 մետր 56 սանթիմ երկարութիւն և 11 մետր լայնութիւն։ Շինուում է Մէլիք-Բէկլարեանց Թալիշ-բէկի ծախքով և բնակչաց աշխատութեամբ. քահանայ մի։

Եկեղեցիս ունի մի պատկերազարդ գրչագիր, փոքրադիր աւետարան, գրուած թղթի վերայ, գողացած են յիշատակարանը, վասնորոյ անյայտ է գրողն, թուականն և տեղն. մի-

Digitized by Google

այն գրուած է Մատթէոսի վերջումն. «Ստացող սուրբ աւետարանիս Նիրվանայ Հինդարցի Մելքումն և եղբարք Ապրիսն, Փիրպուտաղն»։ Իսկ Մարկոսի վերջում յիշուած են նոյն Մելքումի բոլոր ազգակիցների անուններն յականէ յանուանէ։ Ծուխ 21, ար. 88, իգ. 88։

*Աղբիւր.* Որովհետև եղած չէ գիւղումս աղբիւր կամ պատուական ջուր, այս պատճառաւ աւագ—սարկաւագուհին Համեստափայլ Փեփրոնէ կոյս Խուբեանց Մէլիք-Բէկլարեանցն՝ իւր սեփական ծախքով վերի սարեցն խեցեղէն խողովակներով շէնս բերել տուած է պատուական ջուր, որը և երկու բաժին անելով՝ մի մասը հանած է եկեղեցուս մօտ հասարակութեան համար և միւս մասը՝ մեծ. Թալիշ-բէկ Մէլիք-Բէկլարեանցի բակն։ Եկեղեցու մասին աղբիւրի շինութեան վերայ փորագրուած է. «Ես կոյս աւագ սարկաւագուհի Փեփրոնեայ Խուբեանցս Մէլիք-Բէկլարեանց Խարխափուլթ (Խրխափոր) գեղջ աղբիւրն կառուցի իմով արդեամբ ի յիշատակ իմ և հանգուցեալ ծնողացս և քերց և եղբարց իմոց 1-ն մարտի 1893 թ.»։

*Երկու արձաններ.* Կիւլստանից մինչև Նոր-Խրխափոր քարեպաշտ ումն հարթելով պատրաստած է կառքի ճանապարհ։ Մի արձան կանգնած է Խաչ-կեադուկի [1]) մօտ և միւսն Հին և Նոր-Խրխափորի միջև։ Վերջին արձանագրութիւնը. «1890 ամի ի 1-ն մայիսի ճանապարհս շինեց Գրիգոր Մէլիք-Բէկլարեան իւր հօր Բէկլար Ֆրիդօնեան Մէլիք-Բէկլարեանցի յիշատակին։ Այս յիշատակի յարգողը թող ապագայում նորոգի գիրս»։

*Աւերակ վանք.*

Կողեր անուանեալ տեղում կայ մի աւերակ վանք, որից մնացած է միայն արևմտեան պատն և հիմքերն, այստեղ կայ և հին հանգստարան։

Գ. ՂԱՐԱ-ՋԻՆԱՐ կամ Աղջա-Ղալա. Հիմնուած է Սև գետակի աջ կողմում. բնակիչք բնիկ, հողն բէկական, ամե-

[1]) Խաչ-կեադուկումս, կայ երկու քարեայ հին խաչարձան ճանապարհի աջ ու ձախ եզերքներում, բայց գիր չունին։

նայն ինչ նոյն, երկար կեանք 65—70. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, նորաշէն, կառուցեալ չորս սիւների վերայ. քահանայ մի, կայ արքունի ուսումնարան։ Ծուխ 120, ար. 405, իգ. 400։

Դ. ՆՈՐԱՇԷՆ ԳԻՒՂ. Հիմնեալ նոյն գետակի աջ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Մինաս, ձեղունն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 38, ար. 223, իգ. 200։

Ե. ՂԱՀՏՈՒԹ կամ ՋԷՅՈՒԱ ԳԻՒՂ. Հիմնուած նոյն գետակի ձախ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, չունին եկեղեցի, զի խիստ մօտ է Ղարաչինարին. քահանան գալիս է Նորաշէնից։ Ծուխ 11, ար. 45, իգ. 42։

Զ. ՆԵՐՔԻՆ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն դաշտակի վերի ծայրումն և նոյն գետակի ձախ ափի վերայ մի սարի ստորոտում. բնակիչք բնիկ, հողն բէկական [1]), կիսով չափ ջրարբի, ամենայն ինչ նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, բայց սազաշէն և ցած, խորանի հիւսիսային կամարի վերայ. «Եկեղեցիս անուանեցաւ Սուրբ Աստուածածին թվ. ՌՃԽԶ.»։ Երկարութիւնն 20 մետր, լայնութիւն 9 մետր 5 սանթիմ, ճաքած է արևելեան պատն։

Եկեղեցուս դրան ճակատակալ քարի վերայ.

«Աստուած ողորմի Գօրեցի Գօրգինի որդի Տաւթին, որ պատճառ եղև»։ «Կամաւն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ձեռամբ տէր Եղիային յիշատակ իւր և ծնողացն հօրն Աթին և մօրն Հոռոմին և կողակցին և որդոցն տէր Պաւթին, Կոսդանտին, Ետկարին . . . տացութեամբ Տիրմազանի որդի Մելքումին . . .»։ Քահանայ երեք։

Եկեղեցումս կայ երկու գրչագիր աւետարան.

Ա. աւետարան փոքրադիր, անճաշակ նախշերով, գրուած թղթի վերայ. գողացած են յիշատակարանը, վասն որոյ ան-

[1]) Թալիշից սկսեալ մինչև այստեղ բոլոր հողերն պատկանում է Մէլիք-Բէկլարեանց ժառանգներին. իսկ գիւղինս Թուրք բէկի։



Digitized by Google

յայտ է գրողն, թուականն և տեղն։ Մարկոսի վերջում միայն յայտնի է նախ՝ որ Յովհաննէս անուն միայնակեաց ստացած է աւետարանս իւր Յովասափ հարազատ եղբօր հետ։ Երկրորդ-անգամ ստացած են նոյն աւետարանը այլ հարազատ եղբարք Յունան և Դաւիթ թվ. ՌՁԷ.—ին։

Բ. աւետարան. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Որոտան, ի գիւղն՝ որ կոչի Լոր ձեռամբ անիմաստ և անարժան Աբրահամ գրչի ՌԾԻԷ. ամի.»։ Աւետարանս չունի ոչ պատկեր և ոչ յիշատակարան։ Ծուխ 105, ար. 481, իգ. 372։

*Իրեք մանկունք.* Աւերակ վանքս, որի միայն կանգուն են արևմտեան և հիւսիսային պատերն, գտնուում է գիւղիս հարաւային կողմում, նոյն գետակի աջ կողմում շինուած մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Չունի արձանագրութիւն, միայն աւանդութեամբ են ասում Իրեք (երեք) մանկունք։ Վանքիցս վար, ձորի մօտ կայ Լիտր անուն հին գիւղատեղի, հանգստարան և երեք քարեայ խաչեր։

*Անջուր կամուրջ.*

Ներքի և Վերի շէներքի միջև կայ մի հնաշէն և քարուկիր կամուրջ Սև գետակի վերայ։ Գետակն փոխած է իւր ընթացքը դէպի հիւսիս և անջուր մնացած է կամուրջն։

Է. ՎԵՐԻ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն հովտի վերայ միևնոյն գետակի ձախ ափումն. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի, հացաբեր. տեղական բերքերն նոյն. գիւղն շրջապատուած լեռներով, անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւնն 19 մետր 50 սանթիմ, լայնութիւն 10 մետր 80 սանթիմ։ Հիւսիսային խորանի գլխին կայ գաղտնի պահարան։ Քահանան գալիս է Ներքին-շէնից։

Եկեղեցումս կայ մի գրչագիր, մագաղաթեայ աւետարան, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ և փոքր դիրք։ Գեղեցիկ են փոքր գրերն, բայց անճաշակ և անոճ բոլոր գլխագրերն, նախշերն, ծաղիկներն և նոյն իսկ պատկեր-

Digitized by Google

ներըն. գրողն է Սարգիս անուն ումն։ *Յիշատակարանից.* «Ի ժամանակիս յայսմիկ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ի վտանգի կայր ազգն քրիստոնէից ի ազգէն անօրինաց և էր թուականն Հայոց ՋԽԲ. և ողիմբիաթն, որ է նահանջ՝ ՄԼ. և դանութիւն Հասան բէկին, որ գնաց յաշխարհն Հոռոմոց և ազգի ազգի չարութիւն հասոյց ի հետ ազգին տաճկաց և ի կաթուղիկոսութեան Հայոց տէր Ռաստակեսի (Գ-ի) և հայրապետութեան սուրբ ուխտին գետամիջոյ տէր Սարգսի և փակակալութեան տեղւոյն Յովհաննէս կրօնակրաւն աբեղայի։ Բայց արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառիս Խաչենաձորոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, սուրբ սքանչելագործ Նշանիս [1]) Սուրբ Սարգսի և ի տէրութեան տեղւոյս պարոն Վէլիջանին, զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս յաւրինակէ տեառն Եփրեմի Խուրին Ասորոյ համարաւ և կիտիւ և բանիւ և նշանագրով... ի խնդրոյ արքեպիսկոպոսի, որ վառեալ ջահ է եկեղեցւոյ... Պարոն Տէր։ Թողութիւն արարէք եղանակիս, որ գրուեցաւ. անձրև խիստ և տեղիքս գէճ և հողս ջրքաշ և ես մենակ»։ Շարայարուած է յետոյ.

«Կազմեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Քարթմանկեցի (Գարդմանցի) Արիստակէս երիցու որդի Վարդան քահանային ՌԾԴԸ.»։ Ապա գրուած է ի միջի այլոց. «Ես Վերին չէնի տանուտէր Յարութիւնս առի (գնեցի) զայս Քրիստոսի սուրբ աւետարանս ի անօրինաց ձեռքէն, իբր թէ գերի անկեալ թափեցի»։ Ծուխ 91, ար. 524, իգ. 454։

## ՄԷԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

Գիւղումս բնակում է Բէկլար-բէկ Մէլիք-Շահնազարեանց Շահփուրեանցն, որի նախնիքն Ւս Մեծ-Մազրա գիւղից փոխադրուած են Արցախ, նախ բնակութիւն հաստատած Աւետարանոց աւանում, ապա Շուշում, ապա Թիփլիզում և հուսկ յետոյ գիւղումս։ Մէլիք-Շահնազարեանների այս ճիւղի պատ-

[1]) Խաչենաձորիս վանքերն են Կոշիկ անապատն, որի մէջ գրուած է աւետարանս։

մուլթիւնն անյայտ մնացած է գրականութեան. վասն որոյ զետեղում եմ այստեղ հետևեալ վաւերաթղթերը իբրև նիւթ ապագայ պատմութեան։

Ա. «Վկայական. 1860 ամի մայիսի 3-ին Առուստամ բէկ Բապայբէկեան Մէլիք Շահնազարեանց Շահփուրեանց, որոյ նախնիքն եղեալ են բնակիչք Գեղարքունւոյ (այլ ազգ. Գեօգչայու) բնակելով ի Ղարաբաղ ի ժամանակի նախկին տիրապետող կողմանս խանաց [1]) շահեալ է ամենայն արտօնութեամբք և իրաւամբ յարգելի և մեծապատիւ բէկացն Ղարաբաղու՝ լինելով 'ի շարս մեծարգոյ Հայոց իշխանաց, ունեցեալ է ընդ տիրապետութեամբ իւրով զտրուկս բնակեալս ի գեղջն Մազրայ Գեօգչայ գաւառի Ջարզբիլ [2]) մերձ Նախիջևանայ, ընծայեալ ծնողաց նորա 'ի Պարսից Շահացն, առ որ յիշեալ Առըստամ բէկն ունի զհրովարտակս 'ի Շահ Ապասէն յանուն հաւու հօրն իւրոյ Մէլիք Եաւրուն Մէլիք Շահնազար Շահփուրեաննին Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ազգն Առուստամբէկին և ի ներկայ ժամանակիս նոյն շահի յարգելի բէկական իրաւամբք և արտօնութեամբք. Առուստամ բէկն այժմ ևս գտանի ընդ որդւոց իւրոց ի շարս Ղարաբաղու բէկաց և ունի հրովարտակս ի Շահ Ապասէն շնորհեալ նախնեաց նորա և զվկայականս ի տիրապետող խանացն Ղարաբաղու և յարգելի ադալարաց վասն մեծապատիւ բէկական իրաւանց իւրոց և վասն ծագման նորա յազգէն Մէլիք Շահնազարայ Շափուրեանց Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ի ճշմարտութիւն վերագրելոցն տուեալ եղև այժմ ևս մեօք այս վկայութիւն որդւոց նորա մեծապատիւ Ասլան բէկին և Բէկլար բէկին Մէլիք Շահնազար Շահփուրեանց ի հետևումն պահանջման նոցա» ։

Ստորագրուած են Մուսայէլ Դօլուխանեանց, Սարգիսբէկ Մուսայէլբէկեան Մէլիք-Շահնազարեանց,
Սարգիս Բաղըբէկեան ,, ,, ,
Օվանէս-բէկ Իսրայէլբէկեան ,, ,

1) Ծըռ խաներն։

1) Գտնուում է Սոթի հարաւ արևելեան կողմում, որ և տարբեր է Տար գաւառի Ջարից և Ջրիլից։

Digitized by Google

Բ. «Վկայական. Ըստ հրամանի Նորին Կայսերական մեծութեան ինքնակալին ամենայն Ռուսաց տուաւ այս ի Լուսաւորչական Հայոց կանսիստորիէս Ղարաբաղու համաձայն օրագրական սահմանադրութեան Նորին կայացելոյ յ3-դ աւուր փետրվարի 1861 ամի հիմնեցելոյ ի վերայ խնդրագործութեան բնակչի Շուշուայ գաւառի Ջրաբերդ գաւառակի Վերին չէն գեղջ Ասլան բէկի Ռուստամբէկեան Մէլիք-Շահնազար-Շահփուրեանց վասն այն թէ արդէն երևի 'ի հաւաքեալ օրինաւոր եղանակաւ հաւաստութեանց՝ ազգապետ սերնդոց նորա է Մէլիք Շահնազար Շահփուրն, յորմէ ծնեալ են Մէլիք Եավրին և Եաւրի աղայն, ի Մէլիք Եավրիէն ծնեալ է Մէլիք Աստուածատուր, յորմէ ծնեալ են Միր-Դաւիթ-խան և Բապայ բէկն, ի Եավրի աղայէն ծնեալ է Նացոի բէկն, յորմէ և ծնեալ է Միանսար բէկն, ի Բապայ բէկէն ծնեալ են Ռուստամ բէկն և Առուշան բէկն, ի Ռուստամ բէկէն ծնեալ են Ասլան-բէկն և Բէկլար բէկն, յԱսլան բէկէն ծնեալ են Միրզաջան բէկր և Բալայ բէկե և ի Բէկլար [1]) բէկէն ծնեալ են Բալասան բէկն և Սերկէյ բէկն։ Ստուգութեան որոյ վկայէ Լուսաւորչական Հայոց վիճակային Կոնսիստորիայն Ղարաբաղու ստորագրութեամբ և դրոշմամբ արքունի կնքոյ, ի 19 Ապրիլի 1861 ամի 'ի Ք. Շուշի։

Անդամ Կանսիստորիայի Տէր Իսրայէլով.

№ 871 Քարտուղար Մէլիք Շահնազարեանց»։

Մի հաստ և հին թղթի վերայ վիմագրուած է Միր-Դաւիթ-խանի պատկերն՝ Պարսից Շահիցն շնորհուած տիտղոսի ժապաւէնով և պարսկական սաղաւարտ շքանշանով. Պատկերի տակ վիմագրուած է. «Միր Դաւիթ խան Ծառուրեան ի տանէ Մէլիք Շահնազարեանց Մազրայի. սպէտ առաջին սատիճանի կարգացն Արեգական առևծոյ Պարսից Արքային, են. երբեմն դեսպան 'ի կողմանէ նոյն արքայէ առ Թագաւոր Փռանցիոս 1816 թուին»։ Տպուած է նաև նոյնի Գաղ-

[1]) Բէկլար-բէկիցս ծնուած են (բացի Բալասան և Սերկէյ բէկերից) Ջաւատ-բէկ, Նազար-բէկ և Առուստամ-բէկ։ Իսկ Ասլան-բէկից ծնուած են Գալի-բէկ և Ջիմշիտ-բէկ։

Digitized by Google

ղիերէն Թարգմանածն։

Քարահունջ աւերակ կամ Բալլու ղալա կոչուած տեղում, որ գիւղիցս վերև է, կայ գիւղատեղի, հանգստարան և մի փոքր եկեղեցու աւերակ, որից մնում են տակաւին չորս պատերն և խորանի թաղն։

Հին-Պարիս աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որ գտնւում են այն սարի գլխին, որ արձանացած է Ներքին և Վերին շէներքի և Նոր-Պարիս գիւղի մէջ և կոչւում է Տամփրապատուկ. Այժմ աւերակ գիւղումս բնակւում են մալականներ։

Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի, որը անուանում են Նահատակ։

Ը. ՆՈՐ-ՊԱՐԻՍ գիւղն շատ հեռի չէ մալականներից, բնակիչք տեղափոխուած են Հին-Պարիսից, հողն բէկական, ջրարբի և արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, տակաւին չունին եկեղեցի. քահանայ մի։ Տուն 38, ար. 191, իգ. 165։

Թ. ԷՐՔԱՋ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր և հօրիզոնն նեղ ձորի մէջ, որի արևելեան, հարաւային և հիւսիսային կողմերն բարձր լեռներ են, բնակիչք բնիկ, որք մելիքների հետ գնացած են բնակելու Բօլնիս և յետոյ վերադարձած այս տեղ. հողն բէկական, կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց, երկար կեանք 115 տարի. եկեղեցին Սուրբ Սարգիս, հոյակապ, բարձրաշէն, կառուցեալ վեց սիւների վերայ (երկուսն միապաղաղ) երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ, լայնութիւն 14 մետր 60 սանթիմ. դրան ճակատակալ քարի վերայ. «. . . մէ յիշատակ թվն ՌՃԿԵ.»։ Աւագանին կողմին մօտ փոքր խորանի ճակատին մի նրբագործ խաչքարի վերայ. «Թվ. ՉԹ. ես Ակոբ կանգնեցի գխաչս Սարգիսա և կամ ամեն ծնողաց մերոց, Աստուած ողորմի»։ Եկեղեցուս արևմտեան պատին մօտ արտաքուստ. մի տապանաքարի վերայ «Թվ. ՌՄԿՋ. որ է Պօլնուսու գալն (վերադարձն) մայիսի Ի. (20) Քրիստոսի ծառայ տէր

Digitized by Google

Դանիէլ»։ Քահանայ երկու։

Գիւղիս արեւմտեան սարոտի խոր ձորով հոսում է *Փոքր-Կուրակ* անուն վտակն, որ է օժանդակ [1]) Կուրակ գետակին։ Գիւղիս բարեկ. Սարգիս քահանայ Տէր-Սարգսեանցի մօտ կայ.

Ա. Մի օրինակ գրչագիր, փոքրադիր, ընդհանրական գրուած թղթի վերայ, որի մէջ է Յակոբոսի, Յովհաննու եւ Յուդայի առաքելոց թղթերն. (անյայտացած է յիշատակարանն)։

Բ. Բացատրութիւն Հայոց ամիսների, որպէս են Նաւասարդ, հոռի, եւն.։

Գ. Մարմնախաղութիւն եւ երազահան։

Դ. Բացատրութիւն յատուկ եւ հասարակ անուանց։

Ե. «Թարգմանութիւն ի Պարսիկ բառից» եւ ընդօրինակութիւն «ի գրոցն Վարդանայ աշխարհագրի»։

Զ. Խրատ Պլուտարքոսի, անյայտ է գրողների անուններն։

Հարկ է յայտնել որ «Պայդասար» անուն ոմն հեղինակից գովասանական ոտանաւորներ են պարունակում Ս. Լուսաւորչի, Հռիփսիմեանց եւ Տրդատ թագաւորի մասին Բ. ձեռագրումն։ Ծուխ 78, ար. 384, իգ. 364։

Ժ. ԲՕՋԼՈԽ ՇԷՆ. Հիմնուած է Երքաջից վերեւ Կուրակի նոյն օժանդակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական եւ անջրդի, բայց հացատու. տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ եւ այգի), եկեղեցին Սուրբ Մինաս, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Նոր-Պարիսից։ Ծուխ 15, ար. 80, իգ. 70։

*Սուրբ Մինաս*. ուխտատեղի. գիւղիցս վերեւ նոյն, օժանդակի աջ կողմում, մի հին քարուկիր փոքր եկեղեցի է սուրբ Մինաս անուն, որի մօտ կան աւերակ գիւղ եւ հանգստարան։

ԺԱ. ՄԱՆԱՇԻԹ կամ Մանուշ շէն. Հիմնուած է Բօզլուխից ներքեւ նոյն օժանդակի ձախ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, սա-

---

[1]) Իւր սկիզբը առած է Գոմէշ (Նոյն Մռաւ) սարի հիւսիսային կողմից։

Digitized by Google

կայն արգելնաւէտ, անտառանն գաւելը, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 110. եկեղեցին նոր են սկսում շինել. քահանան նոյն: Ծուխ 35, ար. 218, իգ. 141:

*Նահատակ*. Գիւղիս արևելեան կողմում ընկուզի ծառերի տակ մի մատուռ է Նահատակ անուն, որի մէջ կայ մի գերեզման, բայց տապանաքարի վերայ չ'կայ արձանագրութիւն:

*Թեօղման աւերակ*, գիւղատեղի է որ գտնւում է Ղարա-Բուլաղ գիւղն տանող ճանապարհի վերայ, մի ձորակի հիւսիսահայեաց լանջի վերայ: Քարուկիր և սրբատաշ քարով շինուած է եկեղեցին, որի գլուխն խոնարհուած է: Հարաւային կողմի փոքր խորանի վերայ. «Ժամանակս Տէր Սեփին, խանութիւն Մուրթուզա Ղուլի խանին Թաւուլդ, կաթուղիկոս Գանձասարայ տէր Գրիգորին թվ. Ռ.»:

*Այլ քարի վրայ*. «Կամաւն Աստուծոյ ես տէր Եղիշէս շինեցի սուրբ եկեղեցիս յիշատակ հոգւոյ իմոյ, կողակցին, Եկագին, որդիքն Աթի բէկին, Նկեղ»:

*Թեօղմանի մատուռ*, աւերակէցս փոքր ինչ վերև մի քարուկիր հին մատուռ, որ ունի 5 մետր 18 սանթիմ երկարութիւն և 4 մետր 5 սանթիմ լայնութիւն, սակայն չունի արձանագրութիւն: Արտաքուստ դրան հիւսիսային կողմում պատին յենած է քարեայ մի հին խաչ, որի երկարութիւնն է 2 մետր 35 սանթիմ, և լայնութիւնն 1 մետր 5 սանթիմ. և որի ստորոտում քանդակուած է. «Ի թուին ՉԾԷ. (1308) ես Գրիգոր ու Պապաք կանգնեցաք զխաչս ի բարեխաւսութիւն ծնողաց մերոց ԷՂոր...»: Մատուռս նորոգած են Մանաւշեցիք. «Սուրբ եկեղեցիս Մանաւշեցի շինողք են Ղեւոնդ, Աւետիս, Սահակ, Գրիգոր, Դանիէլ, Սարգիս Ալիքանեանց 1890 ամի»: Ուխտատեղի է մատուռս, որի շրջապատն մեծ հանգստարան է, սակայն անարձանագիր են քարերն:

ԺԲ. ՀԻՆ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ. Հիմնուած է մի հիւսիսահայեաց լանջի վերայ, որի ստորոտով հոսում է Կուրակ գետակի աջ կողմի երկրորդ օժանդակն և փոքր ինչ յետոյ

միանում նոյն գետակի հետ։ Բնակիչք ընիկ, հողն բէկական, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 25 սանթիմ, լայնութիւն 12 մետր 36 սանթիմ. քահանայ մի։

*Արեւմտեան դրան ճակատակալ քարի վերայ.*

«Շնորհօք ամենակալին մեք Ղարաբուլաղի ժողովուրդս մեծ և փոքր շինեցինք սուրբ եկեղեցիս յիշատակ հոգոց մերոց և ամենայն ննջեցելոց ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Աղուանից), ի թագաւորութեան Պարսից Շահ Սուլէմանի խանութեան երկրիս Ուղուրլու խանին և պարոնութեան գեղիս Ֆարզալի բէկին, տարուղէն (հարկահան) Մուրթուզա Ղուլին, տանուտէր տէր Սիմէոն, տէր Յակոբ, տէր Ազարիէն, տէր Դաւիթ, Գրիգոր, Ազարիա, Շահնազար, Սարուխ Աւան, որ ջերմեռանդ սիրով աշխատեցին. ես Մեղիդիթ էրեցս [1]) գրեցի թուին ՌՃԻԵ. որ կարդաք, մէկ բերան ողորմի ասէք ամէն»։

Արձանագրութեանս աջ ու ձախ կողմերում.

«Սուրբ խաչս բարեխօս Շահնազարին»։ «Ես Խօճա Անտոնս սակաւ օգնական եղէ սուրբ եկեղեցուս վարձուն յիշատակ ինձ և կողակցին Մարիանին և որդոցն Գասպարին, Մելքումին»։ «Ես Սիմէօն անարժան էրեցս կանգնեցի զսուրբ խաչս և սակաւ աշխատեցի ի վերայ սուրբ եկեղեցոյս . . .»։ Ծուխ 36, ար. 149, իգ. 147։

Կրակի դիմացող քարահանք—огнеупорная глина գտնուում է գիւղիս արեւելեան կողմում խիստ մօտիկ։ Հանքիցս հանուած և Բագու տարուած քարերն գործադրուում են կրակով գործող մեքենաների վառարանների համար։

*Հին եկեղեցի* քարուկիր, միջակ մեծութեամբ, որ գտնուում է գիւղիս վերի ծայրում ընկուզենի ծառոց հարթակի վերայ, ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և

---

[1]) Եկեղեցուս մեծութիւնն, ութ քահանայից քանակութիւնն և գիւղիս շատ աւերակ տնաքակերն ապացուցանում են թէ գիւղս մօտաւորապէս 700 ծուխ եղած լինելու է, մինչդեռ այժմ 36 ծուխ և մի քահանայ մնացած է։

մի աւագ խորան։

*Անապատ*. այսպէս է անուանում ժողովուրդն այն քարուկիր մատուռը, որ կայ Հին եկեղեցու Հիւսիսային կողմում խիստ մօտ։ Մատրանս մէջ կայ մի Հանգիստ որի տապանաքարն չունի արձանագրութիւն. Հետեւապէս անյայտ է մեզ ամփոփեալս։ Մատրանս և Հին եկեղեցու միջավայրն ամբողջապէս Հին ամփոփեալներ են։

Բրտի շինի եղցին. Գիւղիս արեւմտեան Հանդէպ վտակի ձախ ափի բարձրութեան վերայ կայ աւերակ գիւղատեղի և մի միջակ եկեղեցի։ Այժմ ոչ ոք չէ բնակուում այստեղ. բայց կանգուն մնացած է եկեղեցին։

## *Միջի վանք*.

Այսպէս է կոչուում այն եկեղեցին, որ շինուած է Հին-Ղարաբուլաղից վերև նոյն օժանդակի աջ կողմում։ Եկեղեցիս շինուած է միայն մի կամարի վերայ, որի վերնամասն քանդուած և եկեղեցին ճաքած է արեւելքից արեւմուտք ուղղութեամբ. խախտուած է և բեմն։ Շատ ջանացինք գտնել արձանագրութիւն, սակայն չ'գտանք, միայն գտանք մի խաչքարի վերայ. «Այս խաչս է Կոսին» և այլ կիսատ խաչքարի վերայ. «Այս սուրբ խաչս է տէր Առաքելին Աստուծոյ»։ Եկեղեցուս մօտ կայ ընդարձակ գիւղատեղի և սրբատաշ տապանաքարերով և նրբագործ խաչարձաններով նշանաւոր Հանգստարան, որի մէջ ամփոփուած են եպիսկոպոսներ, վարդապետներ, քաՀանաներ և ժողովուրդ։ Զմայլում է մարդ գեղեցկաքանդակ շիրմաքարերը տեսնելով։

## *Երի վանք* (վերին վանք)

Միջի վանքից բաւական վերև վտակի ձախ ափում կառուցեալ է երկու կամարների վերայ մի քարուկիր տաճար, որ ունի մեծ և փոքր խորաններ, աւազան, լուսամուտներ և մի դուռն Հարաւային կողմից։ Երկարութիւն 17 մետր 35 սանթիմ լայնութիւն 8 մետր։ *Հիւսիսային որմի վերջին կամարի տակ*. «Թվ. ՉԻ. Ես Տաւտար Որդի Զանասի կանգնեցի զխաչս ինձ և եղբաւր իմոյ»։ Տաճարիս մէջ տեղում

Digitized by Google

ամփոփուած է մի պատուասոր ննջեցեալ, որի տապանաքարի վերայ փորագրուած է. «Այս է հանգիստ Սուրբ Գրիգորոյ Գանձակայ եպիսկոպոսին»։ Անվնաս մնում է տաճարս, միայն թէ գլխին բուսած են ծառեր, որք կարող են վնասել հետզհետէ մեծանալով։ Այստեղ կայ ևս գիւղատեղի վտակի ձախ հովտի վերայ և փոքր ինչ վերև հանգստարան։

## ԱԼՀԱՐԱԿ ԼՃԱԿ (38)

Մղոնաչափ է Երի-վանքից մինչև լճակս, որ տաճկերէն կոչւում է Գեօզ-գեօլ և որ շրջապատուած է անտառախիտ լեռներով։ Ներանց մէջ ամենաբարձրն է Կեփաս [1]) (ըստ Տաճկ. Քեափազ) անուանած ապառաժ սարն, որ հպարտօրէն արձանացած է լճակի արևելեան հարաւային կողմում։ Սարիս լանջերի դժուարատար տեղերում հօրաններով ճարակում են քօշեր։ Լճակս բաժանուած է երկու մասի, վերնամասն կոչւում է «Ըստծու ծով» (Աստուծոյ ծով)։ Լճակիս մակերևութի խորանարդ տարածութիւնն է 54 օրավարաչափ (դեսեատին)։

Լճակիցս, որի շրջապատում տեղ տեղ դիզուած են ահագին քարեր, ելնում են ընդհանրապէս երեք տեսակ ձկներ.

Ա. տեսակն, որ ազնիւ է միւսերից, որոշւում է իւր սպիտակութեամբ և կարմիր ու սև բծերով։

Բ. տեսակն ևս ունի սպիտակ գոյն, բայց ունի միայն սև բծեր։

Գ. տեսակն ունի սև գոյն և միայն սև ու մեծ մեծ բծեր։ Բացի հիւսիսային կողմից ելած ձկներից ազնիւ և համեղ են միւս բոլոր կողմերից հանուած ձկներն։

*Կոսի կալ*

Միջի վանքի արևմտեան հանդէպ վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ մի գեղեցիկ սարահարթում կայ գիւղա-

---

[1]) Սարիս գլխին կայ մի գերեզման, որի տապանաքարի վերայ գրուած է թէ Կեփաս ճգնաւորի գերեզմանն է։ Հաւանական է թւում մեզ, որ Ալհարակ լեռ անուն տեղի տուած է Կեփաս անուան, որը մահմետականներն չկարողանալով ուղիղ հնչել Քեափազ են հնչում։

տեղի, հանգստարան և փոքր եկեղեցի։ Խորանի հարաւային կողմի կամարի վերայ մի խաչքարի ստորոտում. «Թվն. ՌՀԹ. է.... [1]) Աստուած ողորմի Սարգսին»։ Եկեղեցու հարաւային կողմում հանգստարանի մէջ. «Ամիերին Մելիցքու Բուրխա Թվին Ռ.»։ Բոլոր հին եկեղեցիներս խոզանոց արած են Գետաշէնի խոզարածներն։ Պատիւ է բերում Գետաշէնցւոց...։

ԺԳ. ՆՈՐ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ՇԷՆ. Հիմնուած է շէնս Հին-Ղարա-Բուլաղից փոքր ինչ ներքև նոյն օժանդակի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Խաչակապ, Բանանց և Փիբ գիւղերից, որք նախ գնած են Պալի-խան հայ բէկից շինատեղի և անդի հողերը, շինած բնակարաններ և ապա բնակած այստեղ։ Տակաւին չունին եկեղեցի։ Ծուխ 25, ար. 60, իգ. 55։

Նորաշէն կամ Ենիջայ աւերակ գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, որ գտնուում է շինիցս ներքև։

## ԲԵՐԴ ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ.

Չորս կողմերից առանձնացած, վիմահերձ սեպաձև բարձրացած և դէպի արևելք երկարած մի բարձրագոյն սար է, որ գտնուում է Կիւլստան գիւղից վերև։ Ինջա գետակն նախ հոսում է բերդիս արևմտեան կողմով, ապա հիւսիսային ստորոտով և ապա դառնում դէպի արևելք, վասնորոյ գրեթէ թերակղզի ձևացած է բերդասարս, որի գլուխն բարձրանալու համար կայ մի դժուարատար և ոլոր մոլոր կածան, որ խիստ զառիվեր է։ Բերդս ունի կրկնապարիսպ, արտաքինն՝ սարի կիսով՝ արևելքից արևմուտք. իսկ երկրորդն՝ սարի գագաթի եզերքներով, որ աւելի բրգաշատ է և անմատչելի, կարող ենք ասել, և անառիկ։ Բերդիս երկարութիւնն է 230 մետր, լայնութիւնն 20 մ., պարսպի հաստութիւնն 80 սանթիմետրից մինչև $1^1/_2$ մետր։ Բերդիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի և շատ աւերակ տնատեղեր։ Բայց տակաւին կանգուն մնում են Մէլիք-Յովսէփի ապարանն, որ հիմնուած է բերդի հարաւային կողմում մուտքի աջ ու ձախ

[1]) Անընթեռնլի են կէտադրեալ բառերն։

Digitized by Google

անկիւններում։ Բերդս ունի երկու դուռն, որից մեծն հարաւային կողմից, իսկ փոքրն հիւսիսային կողմից որ անգործածելի է։ Ապարանն բաղկացած է երկու մասից, արևելեան և արևմտեան, խոնարհուած են երկոցունց ծածքերն ևս, բայց տակաւին մնում են պաշտելի հնութիւններն։

Բայց որովհետև խմելու ջուր չկայ բերդումս, վասն որոյ բերդի վերի կողմին մօտ արևմտեան հիւսիսային կողմից մինչև գետակն շինուած է մի նշանաւոր, թաղակապ, քարուկիր և ստորերկրեայ ական իբրև ջրի ճանապարհ, որով ջուր փոխադրած են բերդիս ջրամբարներն, որք գտնուում են ամրոցի վերի կողմին մօտ, հիւսիսային պարսպի մէջ։ Այժմ գետակն քանդելով խորացրած է իւր յատակը և բարձր մնացած է ականի բերանն։

Ղալաչա

Բերդիս հարաւային հանդէպ հարթակի վերայ կայ մի դղեակ, որը տեղական անուամբ կոչուում է Ղալաչա։ Դղեակս ամուր է և քառակուսի. չորս անկիւններում ունի չորս հաստատուն աշտարակ. իսկ հիւսիսային կողմից մի դուռն և ամեն կողմերից հրացան արձակելու ծակեր, $7^1/_2$ մետր երկարութիւն, 7 մետր լայնութիւն, $4^1/_2$ մ. բարձրութիւն և 1 մ. 28 ս. պարսպի հաստութիւն։ Այս ևս պատկանում է Մելիք-Բէկլարեաններին.

Դղեկիս շուրջն ընդարձակ, բայց աւերակ գիւղատեղի է, որն կարծես թէ, քաղաք եղած լինի, տակաւին պարզ երևում են քարուկիր և խիտ առ խիտ շինուած շատ տնաբեկեր, փոքր ինչ հեռուն ընդարձակ հանգստարան, բայց անարձանագիր։ Դղեկիս հարթակի ստորոտում շինուած են եղել նշանաւոր բաղանիսներ. որք կիսաւեր դրութեան մէջ են։

## ՉԱՓԱՐԻ ՂԱԼԱ.

Մռաւ սարից դէպի արևելք կախուած մի գալարագեղ լանջի վերայ կայ հողաբերդ, որի արևելեան կողմից հոսում է Ինջա գետակի աջ օժանդակն, որ և միանում է Ամենափրկիչ վանքից ներքև՝ Ինջային։ Բերդիս, որի շրջապատն պա-

Digitized by Google

յայտ է գրողն, թուականն և տեղն։ Մարկոսի վերջում միայն յայտնի է նախ՝ որ Յովհաննէս անուն միայնակեաց ստացած է աւետարանս իւր Յովասափ հարազատ եղբօր հետ։ Երկրորդ անգամ ստացած են նոյն աւետարանը այլ հարազատ եղբարք Յունան և Դաւիթ թվ. ՌՉԷ.—ին։

Բ. աւետարան. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Որոտան, ի գիւղն՝ որ կոչի Լոր ձեռամբ անիմաստ և անարժան Աբրահամ գրչի ՌԾԻԷ. ամի.»։ Աւետարանս չունի ո՛չ պատկեր և ոչ յիշատակարան։ Տուփ 105, ար. 481, իգ. 372։

*Իրեք մանկունք.* Աւերակ վանքս, որի միայն կանգուն են արևմտեան և հիւսիսային պատերն, գտնուում է գիւղիս հարաւային կողմում, նոյն գետակի աջ կողմում շինուած մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Չունի արձանագրութիւն, միայն աւանդութեամբ են ասում Իրեք (երեք) մանկունք։ Վանքիցս վար, ձորի մօտ կայ Լէոր անուն հին գիւղատեղի, հանգստարան և երեք քարեայ խաչեր։

*Անջուր կամուրջ.*

Ներքի և Վերի շէներքի միջև կայ մի հնաշէն և քարուկիր կամուրջ Սև գետակի վերայ։ Գետակն փոխած է իւր ընթացքը դէպի հիւսիս և անջուր մնացած է կամուրջն։

Է. ՎԵՐԻ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն հովտի վերայ միևնոյն գետակի ձախ ափումն. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի, հացաբեր. տեղական բերքերն նոյն. գիւղն շրջապատուած լեռներով, անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւնն 19 մետր 50 սանթիմ, լայնութիւն 10 մետր 80 սանթիմ։ Հիւսիսային խորանի գլխին կայ գաղտնի պահարան։ Քահանան գալիս է Ներքին-շէնից։

Եկեղեցումս կայ մի գրչագիր, մագաղաթեայ աւետարան, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ և փոքր դիրք։ Գեղեցիկ են փոքր գրերն, բայց անճաշակ և անոճ բոլոր գլխագրերն, նախշերն, ծաղիկներն և նոյն իսկ պատկեր-

Digitized by Google

նեւրն. գրողն է Սարգիս անուն ոմն։ Ցիշատակարանից. «Ի ժամանակիս յայսմիկ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ի վտանգի կայր ազգն քրիստոնէից ի ազգէն անօրինաց և էր թուականն Հայոց ՋԽԲ. և ողիմպիաթն, որ է նահանջ՝ ՄԼ. և դանութիւն Հասան բէկին, որ գնաց յաշխարհն Հոռոմոց և ազգի ազգի չարութիւն հասոյց ի հետ ազգին տաճկաց և ի կաթուղիկոսութեան Հայոց տէր Ռաստակեսի (Գ-ի) և հայրապետութեան սուրբ ուխտին գետամիջոյ տէր Սարգսի և փակակալութեան տեղւոյս Յովհաննէս կոյսակրաւն աբեղայի։ Բայց արդ գրեցաւ ոուրբ աւետարանս ի գաւառիս Խաչենաձորոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, սուրբ սքանչելագործ Նշանիս [1]) Սուրբ Սարգսի և ի տէրութեան տեղւոյս պարոն Վէլիջանին, զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս յաւրինակէ տեառն Եփրեմի Խուրին Ասորոյ համարաւ և կիտիւ և բանիւ և նշանագրով… ի խնդրոյ արքեպիսկոպոսի, որ վառեալ ջահ է եկեղեցւոյ… Պարոն Տէր։ Թողութիւն արարէք եղանակիս, որ գրուեցաւ. անձրև խիստ և տեղիքս գէճ և հողս ջրքաշ և ես մենակ»։ Տարայարուած է յետոյ.

«Կազմեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Քարթմանկեցի (Գարդմանցի) Արիստակէս երիցու որդի Վաղան քահանային ՌՇԴԸ.»։ Ապա գրուած է ի միջի այլոց. «Ես Վերին չէնի տանուտէր Յարութիւնս առի (գնեցի) զայս Քրիստոսի սուրբ աւետարանս ի անօրինաց ձեռքէն, իբր թէ գերի անկեալ թափեցի»։ Ծուխ 91, ար. 524, իգ. 454։

## ՄԷԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

Գիւղումս բնակում է Բէկլար-բէկ Մէլիք-Շահնազարեանց Շահփուրեանցն, որի նախնիքն ևս Մեծ-Մազրա գիւղից փոխադրուած են Արցախ, նախ բնակութիւն հաստատած Աւետարանոց աւանում, ապա Շուշում, ապա Թիփլիզում և հուսկ յետոյ գիւղումս։ Մէլիք-Շահնազարեանների այս ճիւղի պատ-

[1]) Խաչենաձորիս վանքերն են Կոշիկ անապատն, որի մէջ գրուած է աւետարանս։

մութիւնն անյայտ մնացած է գրականութեան. վասն որոյ զետեղում եմ այստեղ հետեւեալ վաւերաթղթերը իբրեւ նիւթ ապագայ պատմութեան։

Ա. «Վկայական. 1860 ամի մայիսի 3-ին Առուստամ բէկ Բապայրբէկեան Մէլիք Շահնազարեանց Շահփուրեանց, որոյ նախնիքն եղեալ են բնակիչք Գեղարքունւոյ (այլ ազգ. Գեօգչայու) բնակելով ի Ղարաբաղ ի ժամանակի նախկին տիրապետող կողմանս խանաց [1]) շահեալ է ամենայն արտօնութեամբք և իրաւամբ յարգելի և մեծապատիւ բէկացն Ղարաբաղու՝ լինելով 'ի շարս մեծարգոյ Հայոց իշխանաց, ունեցեալ է ընդ տիրապետութեամբ իւրով զստրուկս բնակեալս ի գեղջն Մազրայ Գեօգչայ գաւառի Զարզբիլ [2]) մերձ Նախիջևանայ, ընծայեալ ծնողաց նորա 'ի Պարսից Շահացն, առ որ յիշեալ Առըստամ բէկն ունի գհրովարտակս 'ի Շահ Ապասէն յանուն հաւու հօրն իւրոյ Մէլիք Եաւրուն Մէլիք Շահնազար Շահփուրեաննին Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ազգն Առուստամբէկին և ի ներկայ ժամանակիս նոյն շահի յարդելի բէկական իրաւամբք և արտօնութեամբք. Առուստամ բէկն այժմ ևս գտանի ընդ որդւոց իւրոց ի շարս Ղարաբաղու բէկաց և ունի հրովարտակս ի Շահ Ապասէն շնորհեալ նախնեաց նորա և զվկայականս ի տիրապետող խանացն Ղարաբաղու և յարգելի ազալարաց վասն մեծապատիւ բէկական իրաւանց իւրոց և վասն ծագման նորա յազգէն Մէլիք Շահնազարայ Շափուրեանց Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ի ճշմարտութիւն վերագրելոյն տուեալ եղև այժմ ևս մեօք այս վկայութիւն որդւոց նորա մեծապատիւ Ասլան բէկին և Բէկլար բէկին Մէլիք Շահնազար Շահփուրեանց ի հետեւումն պահանջման նոցա»։

Ստորագրուած են Մուսայէլ Դօլուխանեանց, Սարգիս-բէկ Մուսայէլբէկեան Մէլիք-Շահնազարեանց,
Սարգիս Բաղրբէկեան ,, ,, ,
Օվանէս-բէկ Իսրայէլբէկեան ,, ,

---

1) Ծրա խաներն։

1) Գտնուում է Սոթի հարաւ արևելեան կողմում, որ և տարբեր է Ծար գաւառի Զարից և Զրիլից։

Digitized by Google

Բ. «Վկայական. Ըստ հրամանի Նորին Կայսերական մեծութեան ինքնակալին ամենայն Ռուսաց տուաւ այս ի Լուսաւորչական Հայոց կանսիստորիէս Ղարաբաղու համաձայն օրագրական սահմանադրութեան Նորին կայացելոյ յ3-դ աւուր փետրվարի 1861 ամի հիմնեցելոյ ի վերայ խնդրագործութեան բնակչի Շուշուայ գաւառի Ջրաբերդ գաւառակի Վերին չէն գեղջ Ասլան բէկի Ռուստամբէկեան Մէլիք-Շահնազար-Շահֆուրեանց վասն այն թէ արդէն երևի 'ի հաւաքեալ օրինաւոր եղանակաւ հաւաստութեանց՝ ազգապետ սերնդոց նորա է Մէլիք Շահնազար Շահֆուրն, յորմէ ծնեալ են Մէլիք Եավրին և Եաւրի աղայն, ի Մէլիք Եավրիէն ծնեալ է Մէլիք Աստուածատուր, յորմէ ծնեալ են Միր-Դաւիթ-խան և Բապայ բէկն, ի Եավրի աղայէն ծնեալ է Նաղոի բէկն, յորմէ և ծնեալ է Միանսար բէկն, ի Բապայ բէկէն ծնեալ են Ռուստամ բէկն և Առուշան բէկն, ի Ռուստամ բէկէն ծնեալ են Ասլան-բէկն և Բէկլար բէկն, յԱսլան բէկէն ծնեալ են Միրզաջան բէկր և Բալայ բէկե և ի Բէկլար [1]) բէկէն ծնեալ են Բալասան բէկն և Սերկէյ բէկն։ Ստուգութեան որոյ վկայէ Լուսաւորչական Հայոց վիճակային Կոնսիստորիայն Ղարաբաղու ստորագրութեամբ և դրոշմամբ արքունի կնքոյ, ի 19 Ապրիլի 1861 ամի 'ի Ք. Շուշի։

Անդամ Կանսիստորիայի Տէր Իսրայէլով.

№ 871 Քարտուղար Մէլիք Շահնազարեանց»։

Մի հաստ և հին թղթի վերայ վիմագրուած է Միր-Դաւիթ-խանի պատկերն՝ Պարսից Շահից շնորհուած տիտղոսի ժապաւէնով և պարսկական աստղանիշ շքանշանով. Պատկերի տակ վիմագրուած է. «Միր Դաւիթ խան Տատուրեան ի տանէ Մէլիք Շահնազարեանց Մազրայի. ասպէտ առաջին աստիճանի կարգացն Արեգական առիւծոյ Պարսից Արքային, ևն. երբեմն դեսպան 'ի կողմանէ նոյն արքայէ առ Թագաւոր Փռանցիոյ 1816 Թուին»։ Տպուած է նաև նոյնի Գաղ-

[1]) Բէկլար-բէկից ծնուած են (բացի Բալասան և Սերկէյ բէկերից) Ջաւատ-բէկ, Նազար-բէկ և Առուստամ-բէկ։ Իսկ Ասլան-բէկից ծնուած են Գալի-բէկ և Ջիմշիտ-բէկ։

Digitized by Google

փոխադրուած են Մեծ-Սիւնեաց Տեղ աւանից այստեղ։ Հողն արքունի, լեռնոտ և յարմար անասնապահութեան, տեղական բերքերն նոյն, (առատ է ոչխար, տաւար, չ'կայ այգի, պարտէզ և մեղուք), գերազանց օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Սուրբ Աստուածածին քարուկիր, կառուցեալ մի կամարի վերայ և հին, երկարութիւնն 12 մետր 5 սանթիմ, լայնութիւն 7 մետր 50 սանթիմ. քահանան գալիս է Կիւլստանից։ Տաճարիս մօտ կայ հնուց մնացեալ մեծ հանգստարան, որի մէջ գիր ունեցող գտանք միայն. «Այս է տապան Մխիթարի որդի Մէժլում քոխային թվ. ՌՃՂԹ»։ Ինչպէս երևում է հին աւերակներից, աւելի շատ եղած է Եղակերիս նախկին բնակչաց ծխաթիւն։ Այժմ ծուխ 35. ար. 100. իգ. 85։

*Մռաւի սարը.*

Արցախեան նահանգի ամենաբարձր լեռներից մին է Մռաւ սարն, որ ընկած է Ծար, Ըռստակ, Ջրաբերդ, Կիւլստան և Գարդման գաւառների մէջ։ Արդէն գիտենք որ սարիս հարաւային կողմն ընկած են Ծար և Ըռստակ գաւառն, արևելեան կողմն՝ Ջրաբերդ. իսկ հիւսիսային կողմն ընկած են Կիւլստան և Գարդման գաւառներն։ Մռաւիս այս ամենաբարձր գագաթն, որ սահմանագլուխ է Ջրաբերդ և Կիւլստան գաւառների, բազմած է սարիս վերայ իբրև քարաժայռ և ցից բլուր։ Երկու դժուարատար, երկիւղալի և վտանգաւոր կածան կայ քարաբլրիս կատարն բարձրանալու համար, մին արևելքից՝ որ է Կիւլստանի մուտքն և միւսն արևմտեան կողմից՝ որ է Ջրաբերդի մուտքն։ Քարաբլրիս գագաթի մակերևոյթն մի մեծ կալաչափ հարթակ է, որի եզերքներովն շարուած են ահագին վէմ քարեր [1]) ինչպէս պարիսպ, որպէս զի մարդ չընկնի գագաթիցն, նոյնպէս և տեղ տեղ մուտքերի երկու կողմերում։ Ահա գագաթիս վերայ կայ մի սպիտակ, փոքր խաչքար, որի տակ աւանդաբար ասում են, թէ կայ նահատակի գերեզման, որ է *ուխտատեղի*։ Արևելեան մուտքի մօտ կայ մի թոնրաչափ սառցատուն, որի միջից անպա-

[1]) Զարմանում է մարդ թէ ինչպէս բարձրացրած են այս լեռնանման մեծ մեծ քարերը այստեղ։

ձկաս է ամրան եղանակներում ջուր և սառն։ Սրբավայր գագաթիս բարձ. է 11219 ոտք։

Քանի՜ սքանչելի է տեղիս տեսարանն, քանի՜ ուշագրաւ է բնութեան գեղեցկութիւնն, մանաւանդ երբ բոլորովին պարզ է երկինքն։ Հարաւային կողմերում երևում են ի բացուստ Արցախեան բարձր լեռնաշղթան, որոց վերայ արձանացած են Ծար, Խաչէն, Վարանդայ և Դիզակ գաւառների բարձր գագաթներն. Պարսկաստանի Սաւալան սարն և Երասխըն։ Արևելեան կողմերում երևում են ամբողջ Արցախի և Աղուանից դաշտերն, Կասպից ծովի հարաւային մասն, հիւսիսային կողմում Կովկասեան լեռնաշղթան, Շահ-դաղն իւր ընկերներով և Կազբէկն. իւր. արևմտեան կողմում Կայենի լեռներն։ Բայց մօտուստ պատկերացած են բոլոր դաշտային և լեռնային գաւառներն, տեղ տեղ բազմաճղի աղխաղխեալ լեռնագօտիներ, միայնակ կամ ճիւղաւորուած լեռնաբազուկներ, սարաւանդներ, օձաձև գալարուած, նաւաձև, նաւակաձև ձգձգուած ձորեր և ձորակներ, վիմահերձ լեռնաճակատներ, խոտադէզերի նման լեռնագլուխներ, բլուրներ և բլրակներ և միանգամայն լերկ, գալարագեղ, անտառապատ և մացառուտ սարալանջեր, սեռեր և սրածայր բլուրներ։

## ՋՐԱԲԵՐԴ ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Երկու են գաւառիս գլխաւոր բերդերն—Քաղաքատեղի կամ մայրաքաղաք և Ջրաբերդ։ Արդէն խօսած ենք ինչպէս առաջնոյն մասին, նոյնպէս և Ինն-Մասի բերդանման ապարանի մասին, ուրեմն խօսինք վերջնոյս Ջրաբերդիս [1]) մասին»

Ամրոցս գտնուում է Մայրաքաղաքի ուղղութեամբ Թարթառի խոր ձորումն գետի ձախ ափի վերայ։ Համարեա՛ թէ ջրով շրջապատուած է բերդավայրս. որի արևմտեան ստորոտով սրընթաց խոխոջում է Թրղին կամ Թորաղա գետակն և միանում Թարթառին. ապա միացեալ ջրերս պատելով բերդին

[1]) Կոչուած է նաև Չարաբերդ, Չրաբերդ, Ջերմուկի բերդ, ղալա։ Բերդս խիստ հին է. տես. Մով. Կաղ. եր 124 «հանդիպեցան յամրոցին Չարաբերդոյ»։

հարաւից և արևելքից՝ դառնում են դէպի հիւսիս և ապա հեռանում վշվշալով։ Ահա այսպէս Թերակղզի ձևացած է բերդատեղիս։ Սակայն Թրղին և Թարթառն բազմադարեան ժամանակամիջոցում քանդած, տարած և խոր խոր ձորեր ձևացրած են իւրեանց յատակը, այնպէս որ այժմ անմատչելի, ահարկու և բարձր վիմահերձ ժայռեր են բերդիս երեք կողմերն. իսկ լեռնակողմն վիմահերձից վիմահերձ պարսպուած է ամուր պատով։ Ունի միայն մի մուտք պարսպի պատով։ Բաւական տարածութիւն ունի բերդիս մակերևոյթն, որի վերայ կան բաւական քարուկիր շինութիւններ, կան՝ որ բոլորովին անվնաս մնացած են։ Սակայն բուսած են բերդումս ծառեր, որոց հաստաբուն արմատներն հետզհետէ փորձ են փորձում քանդել շինութեանց հիմքերը։ Բայց որովհետև բերդումս չկայ ջուր, վասն որոյ բերդիս միջից դէպի Թարթառ գետն կտրած են վիմափոր ականներ, որոց միջի սանդղաձև աստիճաններով երթևեկելով ջուր մատակարարած են բերդիս պաշարման ժամանակ։ Թարթառն գործ դնելով իւր մշտագործ գործիները վերստին փորած և իջեցրած է բաւականին իւր յատակը. այս պատճառաւ ականների արտաքին բերաններն բարձր մնացած են գետի երեսից [1])։

Ինչպէս տեսանք գաւառների սահմանների բաժանմանց շարքում, հնուց մի և անբաժան եղած են Ջրաբերդ և Կիւլըստան գաւառներս։ Բայց որովհետև մէլիքութեան ժամանակ բաժանուած են իրարից գաւառս, որպէս գծուեցաւ սահմանն, վասն որոյ առանձին ենք դասաւորում գաւառիս գիւղերը, ծխաթուերը և հնութիւնները։ Նշանաւոր են Կիւլստանիս տանձն, խնձորն և ցորենն։

Ա. ԿԻՒԼՍՏԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Մռաւ սարի հիւսիսային կողմում Ինջա գետակի ձախ ափի վերայ։ Լեռներով շրջապատուած է գիւղս, վասն որոյ գտնուում է այն մի փոսանման ձորի մէջ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, բարեբեր, մեծ մասամբ անջրդի, անվնաս օդն, կլիման և ջուրն,

---

[1]) Բերդիս հանդէպ Թարթառ և Թրղի գետախառնուրդի մէջ է Անապատն, որ ունի և մի քանի խուցեր։

երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հօ-
յակապ չորս սիւների վերայ (երկու փոքր խորանների վերայ կան երկու խորաններ ևս), երկարութիւն 22 մետր 80 սանթիմ լայնութիւն 15 մետր 67 սանթիմ, քահանայ մի։ Ծուխ 56, ար. 200, իգ. 175։

*Ծեր-աւետարան*. երկէջ, մեծադիր, թղթեայ, որ կայ եկեղեցումս և ունի չորս աւետարանչաց անճաշակ պատկերները։ Աւետարանիս գրողն է. «ԶԳրիգոր մեղապարտ գրիչ յիշեա ի Քրիստոս»։ Գողացած են յիշատակարանը մի քանի թերթերով միասին, վասն որոյ անյայտ է աւետարանիս գրութեան թուականն և գրուած տեղն։ Տաճարիս դուրսն, արևմտեան որմի մօտ մի քարի վերայ. «Այս է տապան Օհանէսին, որ էր որդի Օսէփ բէկին և թոռն Մելիք Ստեփանին [1]) ՌՄՁԳ.»։

Գիւղիս հիւսիսային ծայրում կայ մի *հնաշէն* եկեղեցու աւերակ, որ շինուած է եղել ամբողջ սրբատաշ քարով և կոչւում է այժմ սուրբ Մինաս, որի հիւսիսային որմի վերայ. «Կամաւն Աստուծոյ շինեցինք խորանս տանուտէրն Ուլուխան, աշխատողք երկու տէր Դաւիթն, Սպարապետն, պտղն (պտղաբերողքն) առ հասարակ ժողովուրդքն թվ. ՌԾԸ.»։

Գիւղումս կայ մի քարուկիր և կամարակապ ապարան, որ ունի սոյն արձանագրութիւնը. «Շնորհիւն Աստուծոյ շինեցաւ ապարանս ի թվ. ՌՄԱ. ես Յակոբոս ծառայ Աստուծոյ իշխող գեղոյս որդի Աբրահամ Ըսպարապետին [2])»։ Բնակարանիս տէրն, որ այն սոյն սպարապետիս յետագայ ժառանգն է, ունի մի պաշտօնագիր, որով «Տանուտէրանց Ջանի որդի Յարութիւնն» վաճառում է Ամենափրկիչ վանքի մօտ եղած իւր գետինը Աբրահամ—իւզբաշու որդի Յակովբջան իւզբաշուն 10,000 թումանի։ Առուծախիս վկայ գրուած են «Հիւբեկայ առաջնորդ տէր Պետրոս. Ներսէս ճգնազգեաց վարդա-

[1]) Մելիք-Բէկլարեանների ցեղիցն չէ մելիքս՝ որպէս հաստատում են, մելիքութիւնն սկսուած է իւրով Մելիք-Ստեփանով և մեռած իւր հետ։ Բայց ինչպէս կարծում եմ, ամփոփեալս լինելու է Մեծ-Սիւնեաց Մելիք-Ստեփանեանների ցեղիցն։

[2]) Երևի թէ Սպարապետս եղած է Մելիք-Բէկլարեանների զօրապետն, բայց չկայ գրաւոր և ոչինչ։

Digitized by Google

պետ, Քաջամարդիկ Մէլիք-Յուսէփ, Քաշալ Հրապետ, Կոսունց Եաւրի. Զովղուն [1]) Յարութիւն, Ուստա Բալաս» են. Հուսկ ուրեմն գրած է գրագիրն. «ՌՄԻԳ. մայիսի Չ. գրեցաւ Գիւլըստանին գլխին կալին Քարագլխին»։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ ԿԻԼՍՏԱՆԻ

Վանքս գտնուում է Սռնուորայ (սառնագին) վտակի ձախ ափի մօտ։ Ինչա գետակի օժանդակն է Սռնաւոր վտակն որ իւր սկիզբը առած է Մռաւի սրբասարի արեւելեան կողմից։ Մենաստանս, որ գիւղից մօտ կէս մղոն հեռի է դէպի Հարաւ, կառուցեալ է անտաշ քարով չորս միապաղաղ սիւների վերայ, ունի մի դուռն Հարաւային կողմից, մի մեծ, երկու փոքր խորաններ, երկու խորհրդարան և երկու նեղ լուսամուտ։ Վանքս, որ ունի 23 մետր 50 սանթիմ երկարութիւն, 10 մետր 10 սանթիմ լայնութիւն, տակաւին կանգուն է, միայն ճաքուած է արևելեան պատն գագաթից մինչև գետինն և ծակուած է աւագանի եաևից, որի մօտ քանդակուած է. ՌՂ. թվ.»։ Չունի ուրիշ արձանագրութիւն։ Հարաւային կողմում կան ամփոփեալներ։

Մենաստանս իւր արևմտեան կողմում (խիստ մօտ) ունի երկու թաղակապ սենեակ, մէկի մուտքի սեմին վերայ. «թիւ ՌՃԿԳ. յիշատակ է այս օթաղս Եղիա վարդապետին»։ Միաբանութեան սենեակներն, որ գտնուում են հիւսիս արևելեան կողմում (մի քանի քայլ հեռի) արդէն կիսաւեր են։

*Ամենափրկիչ մատուռ*. որ մօտ է վանքիս և շինուած քարուկիր, աւագանի արևելեան խաչի վերայ. «Խաչս Հիւրիա պաշտպանողին»։ Սորա դրան առաջ. «Այս է հանգիստ Հիւրեղ տատին, աղաչեցէք. թվ. ՌԿԲ.»։

*Կարմիր եղցի* գտնուում է գիւղից վերև Ինջայի ձախ կողմի լանջի վերայ աւերակ եկեղեցի, որ շինուած է եղել

[1]) Փոխաբերական մականուն, որ նշանակում է՝ բանականները և անասունները կտորող կարկտաբեր կամ բքաբեր ամենասաստիկ քամի. իսկ իմաստն է քաջամարտիկ, այսպիսի մականուններ շատ կայ Գաղտնիք Ղարաբաղի մէջ։

երկյարկ, այժմ մնում է միայն գետնայարկն, որ ծառայած է լանջը հարթելու։ Աւերակիս մօտ կայ գիւղատեղի և հանգստարան, որի մէջ մի մամռապատ քարի վերայ. «Այս է տապան Առուսի որդի ՌԱ. (թուին)»։

## ԴԱՏԻ-ԲԷԿԱՆՑ ՎԱՆՔ.

Կիսաւեր վանքս գտնուում է Կիւլստան գիւղից ներքև Ինջա գետի աջ կողմում։ Մենաստանիս մօտ կայ միաբանից սենեակներ և հանգստարան։

*Ջաքին Նհատակ*. Աւերակ վանքիս հիւսիսային կողմում, Պարանպատ անուն անտառում, Ինջայի ձախ կողմում կայ գիւղատեղի, հանգստարան և կիսակործան մի փոքր եկեղեցի *Ջաքին Նահատակ* անուն։

Հին-Խրխափոր գիւղ. հիմնուած է Կիւլստան և Նոր-Խրխափոր գիւղերի միջև մի հովտում. ուր այժմ երևում են գիւղի աւերակն, թթենի, ծիրանի, տանձի և խնձորի ծառերն և պարտէզներն. իսկ ձորի արևելեան կողմում փոքր եկեղեցին և հանգստարանն։

Բ. ՆՈՐ-ԽՐԽԱՓՈՐ. Հիմնուած է Սև-գետ—գետակի (ղարաչայ) աջ կողմում, Գեօրգին սարի ստորոտում, մի գեղեցիկ դաշտակի հարաւային ծայրում. բնակիչք մի քանի տարի առաջ տեղափոխուած են Հին-Խորխափորից. հողն բէկական, (մելիքապատկան) ջրարբի և բազմարդիւն, բացի սովորական բերքերից ընտիր տանձ, խնձոր, մետաքս և բամբակ. օդն և կլիման փոքր ինչ տաք ամրան, ջուրն պատուական. եկեղեցին նորաշէն, կիսատ, կառուցեալ չորս սիւների վերայ. որ ունի երկու դուռն հարաւային և արևմտեան, վեց լուսամուտ, 16 մետր 56 սանթիմ երկարութիւն և 11 մետր լայնութիւն։ Շինուում է Մէլիք-Բէկլարեանց Թալիշ-բէկի ծախքով և բնակչաց աշխատութեամբ. քահանայ մի։

Եկեղեցիս ունի մի պատկերազարդ գրչագիր, փոքրադիր աւետարան, գրուած թղթի վերայ, գողացած են յիշատակարանը, վասնորոյ անյայտ է գրողն, թուականն և տեղն. մի-

Digitized by Google

այն գրուած է Մատթէոսի վերջումն. «Ստացող սուրբ աւետարանիս Նիրվանայ Հինդարցի Մելքումն և եղբարք Ալբիսն, Փիրպուտաղն»։ Իսկ Մարկոսի վերջում յիշուած են նոյն Մելքումի բոլոր ազգակիցների անուններն յականէ յանուանէ։ Ծուխ 21, ար. 88, իգ. 88։

*Աղբիւր*. Որովհետև եղած չէ գիւղումս աղբիւր կամ պատուական ջուր, այս պատճառաւ աւագ—սարկաւագուհին Համեստափայլ Փեփրոնէ կոյս Խուբեանց Մելիք-Բէկլարեանցն՝ իւր սեփական ծախքով վերի սարիցն խեցեղէն խողովակներով չէնս բերել տուած է պատուական ջուր, որը և երկու բաժին անելով՝ մի մասը հանած է եկեղեցուս մօտ հասարակութեան համար և միւս մասը՝ մեծ. Թալիշ-բէկ Մելիք-Բէկլարեանցի բակն։ Եկեղեցու մասին աղբիւրի շինութեան վերայ փորագրուած է. «Ես կոյս աւագ սարկաւագուհի Փեփրոնիայ Խուբեանցս Մելիք-Բէկլարեանց Խարխափուլթ (Խրխափոր) գեղջ աղբիւրն կառուցի իմով արդեամբ ի յիշատակ իմ և հանգուցեալ ծնողացս և քերց և եղբարց իմոց 1-ն մարտի 1893 թ.»։

*Երկու արձաններ*. Կիւլստանից մինչև Նոր-Խրխափոր քարեպաշտ ոմն հարթելով պատրաստած է կառքի ճանապարհ։ Մի արձան կանգնած է Խաչ-կեաղուկի [1]) մօտ և միւսն Հին և Նոր-Խրխափորի միջև։ Վերջին արձանագրութիւնը. «1890 ամի ի 1-ն մայիսի ճանապարհս շինեց Գրիգոր Մելիք-Բէկլարեան իւր հօր Բէկլար Ֆրիդոնեան Մելիք-Բէկլարեանցի յիշատակին։ Այս յիշատակի յարգողը թող ապագայում նորոգի գիրս»։

*Աւերակ վանք.*

Կողեր անուանեալ տեղում կայ մի աւերակ վանք, որից մնացած է միայն արևմտեան պատն և հիմքերն, այստեղ կայ և հին հանգստարան։

Գ. ՂԱՐԱ-ՉԻՆԱՐ կամ Աղջա-Ղալա. Հիմնուած է Սև գետակի աջ կողմում. բնակիչք բնիկ, հողն բէկական, ամե-

[1]) Խաչ-կեաղուկումս, կայ երկու քարեայ հին խաչարձան ճանապարհի աջ ու ձախ եզերքներում, բայց գիր չունին։

Digitized by Google

նայն ինչ նոյն, երկար կեանք 65—70․ եկեղեցին Սուրբ Յով-հաննէս, նորաշէն, կառուցեալ չորս սիւների վերայ. քահանայ մի, կայ արքունի ուսումնարան։ Ծուխ 120, ար․ 405, իգ․ 400։

Դ․ ՆՈՐԱՇԷՆ ԳԻՒՂ․ Հիմնեալ նոյն գետակի աջ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Մինաս, ձեղունն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 38, ար․ 223, իգ․ 200։

Ե․ ՂԱՀՏՈՒԹ կամ ՋԷՅՈՒԱ ԳԻՒՂ․ Հիմնուած նոյն գետակի ձախ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, չունին եկեղեցի, գի խիստ մօտ է Ղարա-Ջինարին. քահանան գալիս է Նորաշէնից։ Ծուխ 11, ար․ 45, իգ․ 42։

Զ․ ՆԵՐՔԻՆ-ՇԷՆ․ Հիմնուած է նոյն դաշտակի վերի ծայրումն և նոյն գետակի ձախ ափի վերայ մի սարի ստորոտում․ բնակիչք բնիկ, հողն բէկական [1]), կիսով չափ ջրարբի, ամենայն ինչ նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, բայց սագաշէն և ցած, խորանի հիւսիսային կամարի վերայ․ «Եկեղեցիս անուանեցաւ Սուրբ Աստուածածին Թվ․ ՌՃԽԶ․»։ Երկարութիւնն 20 մետր, լայնութիւն 9 մետր 5 սանթիմ, ճաքած է արևելեան պատն։

Եկեղեցուս դրան ճակատակալ քարի վերայ.

«Աստուած ողորմի Գորեցի Գորգինի որդի Տաւթին, որ պատճառ եղև»։ «Կամաւն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ձեռամբ տէր Եղիային յիշատակ իւր և ծնողացն հօրն Աթին և մօրն Հոռոմին և կողակցին և որդոցն տէր Դաւթին, Կոսդանտին, Ետկարին ․ ․ ․ տացութեամբ Շիրմազանի որդի Մելքումին ․ ․ ․»։ Քահանայ երեք։

Եկեղեցումս կայ երկու գրչագիր աւետարան.

Ա․ աւետարան փոքրադիր, անճաշակ նախշերով, գրուած թղթի վերայ․ գողացած են յիշատակարանը, վասն որոյ ան-

[1]) Թալիշից սկսեալ մինչև այստեղ բոլոր հողերն պատկանում է Մէլիք-Բէկլարեանց ժառանգներին․ իսկ գիւղինս Թուրք բէկին։

յայտ է գրողն, թուականն և տեղն։ Մարկոսի վերջում միայն յայտնի է նախ՝ որ Յովհաննէս անուն միայնակեաց ստացած է աւետարանս իւր Յովասափ հարազատ եղբօր հետ։ Երկրորդ անգամ ստացած են նոյն աւետարանը այլ հարազատ եղբարք Յունան և Դաւիթ թվ. ՌՁԷ.—ին։

Բ. աւետարան. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Որոտան, ի գիւղն՝ որ կոչի Լոր ձեռամբ անիմաստ և անարժան Աբրահամ գրչի ՌԾԻԷ. ամի.»։ Աւետարանս չունի ոչ պատկեր և ոչ յիշատակարան։ Ծուխ 105, ար. 481, իգ. 372։

*Իրեք մանկունք.* Աւերակ վանքս, որի միայն կանգուն են արևմտեան և հիւսիսային պատերն, գտնուում է գիւղիս հարաւային կողմում, նոյն գետակի աջ կողմում շինուած մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Չունի արձանագրութիւն, միայն աւանդութեամբ են ասում Իրեք (երեք) մանկունք։ Վանքիցս վար, ձորի մօտ կայ Լիտր անուն հին գիւղատեղի, հանգստարան և երեք քարեայ խաչեր։

*Անջուր կամուրջ.*

Ներքի և Վերի շէներքի միջև կայ մի հնաշէն և քարուկիր կամուրջ Սև գետակի վերայ։ Գետակն փոխած է իւր ընթացքը դէպի հիւսիս և անջուր մնացած է կամուրջն։

Է. ՎԵՐԻ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն հովտի վերայ միևնոյն գետակի ձախ ափումն. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի, հացաբեր. տեղական բերքերն նոյն. գիւղն շրջապատուած լեռներով, անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւնն 19 մետր 50 սանթիմ, լայնութիւն 10 մետր 80 սանթիմ։ Հիւսիսային խորանի գլխին կայ գաղտնի պահարան։ Քահանան գալիս է Ներքին-շէնից։

Եկեղեցումս կայ մի գրչագիր, մագաղաթեայ աւետարան, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ և փոքր դիրք։ Գեղեցիկ են փոքր գրերն, բայց անճաշակ և անոճ բոլոր գլխագրերն, նախշերն, ծաղիկներն և նոյն իսկ պատկեր-

Digitized by Google

ներն. գրողն է Սարգիս անուն ոմն։ *Յիշատակարանից*. «Ի ժամանակիս յայսմիկ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ի վտանգի կայր ազգն քրիստոնէից ի ազգէն անօրինաց և էր թուականն Հայոց ՋԽԲ. և ողիմբիաթն, որ է նահանջ՝ ՄԼ. և զանութիւն Հասան բէկին, որ գնաց յաշխարհն Հոռոմոց և աղգի ազգի չարութիւն հասոյց ի հետ ազգին տաճկաց և ի կաթուղիկոսութեան Հայոց տէր Ռաստակեսի (Գ-ի) և հայրապետութեան սուրբ ուխտին գետամիջոյ տէր Սարգսի և փակակալութեան տեղւոյն Յովհաննէս կոյսակրաւն աբեղայի։ Բայց արդ գրեցաւ ոուրբ աւետարանս ի գաւառիս Խաչենաձորոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, սուրբ սքանչելագործ Նշանիս [1]) Սուրբ Սարգսի և ի տէրութեան տեղւոյս պարոն Վէլիջանին, զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս յաւրինակէ տեառն Եփրեմի Խուրին Ասորոյ համարաւ և կիտիւ և բանիւ և նշանագրով... ի խնդրոյ արքեպիսկոպոսի, որ վառեալ ջահ է եկեղեցւոյ... Պարոն Տէր։ Թողութիւն արարէք եղանակիս, որ գրուեցաւ. անձրև խիստ և տեղիքս գէճ և հողս ջրքաշ և ես մենակ»։ Տարայարուած է յետոյ.

«Կազմեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Քարթմանկեցի (Գարդմանցի) Արիստակէս երիցու որդի Վաղան քահանային ՌՃԴԸ.»։ Ապա գրուած է ի միջի այլոց. «Ես Վերին չէնի տանուտէր Յարութիւնս առի (գնեցի) զայս Քրիստոսի սուրբ աւետարանս ի անօրինաց ձեռքէն, իբր թէ գերի անկեալ թափեցի»։ Ծուխ 91, ար. 524, իգ. 454։

## ՄԷԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

Գիւղումս բնակւում է Բէկլար-բէկ Մէլիք-Շահնազարեանց Շահփուլեանցն, որի նախնիքն ևս Մեծ-Մազրա գիւղից փոխադրուած են Արցախ, նախ բնակութիւն հաստատած Աւետարանոց աւանում, ապա Շուշում, ապա Թիփլիզում և Հուսկ յետոյ գիւղումս։ Մէլիք-Շահնազարեանների այս ճիւղի պատ-

[1]) Խաչենաձորիս վանքերն են Կոշիկ անապատն, որի մէջ գրուած է աւետարանս։

մութիւնն անյայտ մնացած է գրականութեան. վասն որոյ զետեղում եմ այստեղ հետեւեալ վաւերաթղթերը իբրեւ նիւթ ապագայ պատմութեան։

Ա. «Վկայական. 1860 ամի մայիսի 3-ին Առուստամ բէկ Բապայբէկեան Մէլիք Շահնազարեանց Շահփուրեանց, որոյ նախնիքն եղեալ են բնակիչք Գեղարքունւոյ (այլ ազգ. Գեօգչայու) բնակելով ի Ղարաբաղ ի ժամանակի նախկին տիրապետող կողմանս խանաց [1]) շահեալ է ամենայն արտօնութեամբք և իրաւամբք յարգելի և մեծապատիւ բէկացն Ղարաբաղու՝ լինելով 'ի շարս մեծարգոյ Հայոց իշխանաց, ունեցեալ է ընդ տիրապետութեամբ իւրով զստրուկս բնակեալս ի գեղջն Մագրայ Գեօգչայ գաւառի Զարզըլ [2]) մերձ Նախիջևանայ, ընծայեալ ծնողաց նորա 'ի Պարսից Շահացն, առ որ յիշեալ Առըստամ բէկն ունի զհրովարտակս 'ի Շահ Ապասէն յանուն հաւուհօրն իւրոյ Մէլիք Եաւրուն Մէլիք Շահնազար Շահփուրեաննին Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ազգն Առուստամբէկին և ի ներկայ ժամանակիս նոյն շահի յարգելի բէկական իրաւամբք և արտօնութեամբք. Առուստամ բէկն այժմ ևս գտանի ընդ որդւոց իւրոց ի շարս Ղարաբաղու բէկաց և ունի հրովարտակս ի Շահ Ապասէն շնորհեալ նախնեաց նորա և զվկայականս ի տիրապետող խանացն Ղարաբաղու և յարգելի ազալարաց վասն մեծապատիւ բէկական իրաւանց իւրոց և վասն ծագման նորա յազգէն Մէլիք Շահնազարայ Շափուրեանց Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ի ճշմարտութիւն վերագրելոյն տուեալ եղև այժմ ևս մեզ այս վկայութիւն որդւոց նորա մեծապատիւ Ասլան բէկին և Բէկլար բէկին Մէլիք Շահնազար Շահփուրեանց ի հետեւումն պահանջման նոցա» ։

Ստորագրուած են Մուսայէլ Դօլուխանեանց, Սարգիս-բէկ Մուսայէլբէկեան Մէլիք-Շահնազարեանց,
Սարգիս Բաղրբէկեան ,, ,, ,
Օվանէս-բէկ Իսրայէլբէկեան ,, ,

[1]) Ծըռ խաներին։

[1]) Գտնուում է Սոթի հարաւ արևելեան կողմում, որ և տարբեր է Տար գաւառի Զարից և Զրիլից։

Digitized by Google

Բ. «Վկայական. Ըստ հրամանի Նորին Կայսերական մեծութեան ինքնակալին ամենայն Ռուսաց տուաւ այս ի Լուսաւորչական Հայոց կանսիստորիէս Ղարաբաղու համաձայն օրագրական սահմանադրութեան Նորին կայացելոյ յ3-դ աւուր փետրվարի 1861 ամի հիմնեցելոյ ի վերայ խնդրագործութեան բնակչի Շուշուայ գաւառի Ջրաբերդ գաւառակի Վերին չէն գեղջ Ասլան բէկի Ռուստամբէկեան Մէլիք-Շահնազար-Շահֆուրեանց վասն այն թէ արդէն երևի 'ի հաւաքեալ օրինաւոր եղանակաւ հաւաստութեանց՝ ազգապետ սերնդոց նորա է Մէլիք Շահնազար Շահֆուրն, յորմէ ծնեալ են Մէլիք Եավրին և Եաւրի աղայն, ի Մէլիք Եավրիէն ծնեալ է Մէլիք Աստուածատուր, յորմէ ծնեալ են Միր-Դաւիթ-խան և Բապայ բէկն, ի Եավրի աղայէն ծնեալ է Նաղտի բէկն, յորմէ և ծնեալ է Միանսար բէկն, ի Բապայ բէկէն ծնեալ են Ռուստամ բէկն և Առուշան բէկն, ի Ռուստամ բէկէն ծնեալ են Ասլան-բէկն և Բէկլար բէկն, յԱսլան բէկէն ծնեալ են Միրզաջան բէկը և Բալայ բէկե և ի Բէկլար [1]) բէկէն ծնեալ են Բալասան բէկն և Սերկէյ բէկն։ Ստուգութեան որոյ վկայէ Լուսաւորչական Հայոց վիճակային Կոնսիստորիայն Ղարաբաղու ստորագրութեամբ և դրոշմամբ արքունի կնքոյ, ի 19 Ապրիլի 1861 ամի 'ի Ք. Շուշի։

Անդամ Կանսիստորիայի Տէր Իսրայէլով.

№ 871 Քարտուղար Մէլիք Շահնազարեանց»։

Մի հաստ և հին թղթի վերայ վիմագրուած է Միր-Դաւիթ-խանի պատկերն՝ Պարսից Շահից շնորհուած տիտղոսի ժապաւէնով և պարսկական աստղանիշ շքանշանով. Պատկերի տակ վիմագրուած է. «Միր Դաւիթ խան Ծատուրեան ի տանէ Մէլիք Շահնազարեանց Մաղրայի. ապէտ առաջին աստիճանի կարգացն Արեգական առիւծոյ Պարսից Արքային, ևն. երբեմն դեսպան 'ի կողմանէ նոյն արքայէ առ Թագաւոր Փռանցիու 1816 Թուին»։ Տպուած է նաև նոյնի Գաղ-

[1]) Բէկլար-բէկից ծնուած են (բացի Բալասան և Սերկէյ բէկերից) Ջաւատ-բէկ, Նազար-բէկ և Առուստամ-բէկ։ Իսկ Ասլան-բէկից ծնուած են Գալի-բէկ և Ջիմշիտ-բէկ։

Digitized by Google

փոխադրուած են Մեծ-Սիւնեաց Տեղ աւանից այստեղ։ Հողն արքունի, լեռնոտ և յարմար անասնապահութեան, տեղական բերքերն նոյն, (առատ է ոչխար, տաւար, չ'կայ այգի, պարտէզ և մեղուք), գերազանց օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Սուրբ Աստուածածին քարուկիր, կառուցեալ մի կամարի վերայ և հին, երկարութիւնն 12 մետր 5 սանթիմ, լայնութիւն 7 մետր 50 սանթիմ. քահանան գալիս է Կիւլստանից։ Տաճարիս մօտ կայ հնուց մնացեալ մեծ հանգստարան, որի մէջ գիր ունեցող գտանք միայն. «Այս է տապան Մխիթարի որդի Մեժլում քոխային թվ. ՌՃՂԹ»։ Ինչպէս երևում է հին աւերակներից, աւելի շատ եղած է Եղակերիս նախկին բնակչաց ծխաթիւն։ Այժմ ծուխ 35. ար. 100. իգ. 85։

*Մռաւի սարը.*

Արցախեան նահանգի ամենաբարձր լեռներից մին է Մռաւ սարն, որ ընկած է Ծար, Ըռստակ, Ջրաբերդ, Կիւլստան և Գարդման գաւառների մէջ։ Արդէն գիտենք որ սարիս հարաւային կողմն ընկած են Ծար և Ըռստակ գաւառն, արևելեան կողմն՝ Ջրաբերդ. իսկ հիւսիսային կողմն ընկած են Կիւլստան և Գարդման գաւառներն։ Մռաւիս այս ամենաբարձր գագաթն, որ սահմանագլուխ է Ջրաբերդ և Կիւլստան գաւառների, բազմած է սարիս վերայ իբրև քարաժայռ և ցից բլուր։ Երկու դժուարատար, երկիւղալի և վտանգաւոր կածան կայ քարաբլրիս կատարն բարձրանալու համար, մին արևելքից՝ որ է Կիւլստանի մուտքն և միւսն արևմտեան կողմից՝ որ է Ջրաբերդի մուտքն։ Քարաբլրիս գագաթի մակերևոյթն մի մեծ կալաչափ հարթակ է, որի եզերքներումն շարուած են ահագին վէմ քարեր [1]) ինչպէս պարիսպ, որպէս զի մարդ չընկնի գագաթիցն, նոյնպէս և տեղ տեղ մուտքերի երկու կողմերում։ Ահա գագաթիս վերայ կայ մի սպիտակ, փոքր խաչքար, որի տակ աւանդաբար ասում են, թէ կայ նահատակի գերեզման, որ է ուխտատեղի։ Արևելեան մուտքի մօտ կայ մի թոնրաչափ սառցատուն, որի միջից անպա-

[1]) Զարմանում է մարդ թէ ինչպէս բարձրացրած են այս լեռնանման մեծ մեծ քարերը այստեղ։

կաս է ամռան եղանակներում ջուր և սառն։ Սրբավայր գագաթիս բարձ. է 11219 ոտք։

Քանի՜ սքանչելի է տեղիս տեսարանն, քանի՜ ուշագրաւ է բնութեան գեղեցկութիւնն, մանաւանդ երբ բոլորովին պարզ է երկինքն։ Հարաւային կողմերում երևում են ի բացուստ Արցախեան բարձր լեռնաշղթան, որոց վերայ արձանացած են Ծար, Խաչեն, Վարանդայ և Դիզակ գաւառների բարձր գագաթներն. Պարսկաստանի Սաւալան սարն և Երասխըն։ Արևելեան կողմերում երևում են ամբողջ Արցախի և Աղուանից դաշտերն, Կասպից ծովի հարաւային մասն, հիւսիսային կողմում Կովկասեան լեռնաշղթան, Շահ-դաղն իւր ընկերներով և Կապըէկն. իւր. արևմտեան կողմում Կայենի լեռներն։ Բայց մօտուստ պատկերացած են բոլոր դաշտային և լեռնային գաւառներն, տեղ տեղ բազմաճղի աղխաղխեալ լեռնագօտիներ, միայնակ կամ ճիւղաւորուած լեռնաբազուկներ, սարաւանդներ, օձաձև գալարուած, նաւաձև, նաւակաձև ձգձգուած ձորեր և ձորակներ, վիմահերձ լեռնաճակատներ, խոտադէզերի նման լեռնագլուխներ, բլուրներ և բլրակներ և միանգամայն լերկ, դալարագեղ, անտառապատ և մացառուտ սարալանջեր, սեռեր և սրածայր բլուրներ։

## ՋՐԱԲԵՐԴ ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Երկու են գաւառիս գլխաւոր բերդերն—*Քաղաքատեղի* կամ մայրաքաղաք և Ջրաբերդ։ Արդէն խօսած ենք ինչպէս առաջնոյն մասին, նոյնպէս և Ինն-Մասի բերդանման ապարանի մասին, ուրեմն խօսինք վերջնոյս Ջրաբերդիս [1]) մասին»

Ամրոցս գտնուում է Մայրաքաղաքի ուղղութեամբ Թարթառի խոր ձորումն գետի ձախ ափի վերայ։ Համարեա՛ թէ ջրով շրջապատուած է բերդավայրս. որի արևմտեան ստորոտով սրընթաց խոխոջում է Թըղին կամ Թորաղա գետակն և միանում Թարթառին. ապա միացեալ ջրերս պատելով բերդին

[1]) Կոչուած է Նաև Չարաբերդ, Չրաբերդ, Ջերմուկի բերդ, ղալա։ Բերդս խիստ հին է. տես. Մով. Կաղ. եր 124 «հանդիպեցան չամրոցին Չարաբերդոյ»։

Հարաւից և արևելքից՝ դառնում են դէպի հիւսիս և ապա հեռանում վշվշալով։ Ահա այսպէս Թերակղզի ձևացած է բերդատեղիս։ Սակայն Թրղին և Թարթառն բազմադարեան ժամանակամիջոցում քանդած, տարած և խոր խոր ձորեր ձևացրած են իւրեանց յատակը, այնպէս որ այժմ անմատչելի, ահարկու և բարձր վիմահերձ ժայռեր են բերդիս երեք կողմերն. իսկ լեռնակողմն վիմահերձից վիմահերձ պարսպուած է ամուր պատով։ Ունի միայն մի մուտք պարսպի պատով։ Բաւական տարածութիւն ունի բերդիս մակերևոյթն, որի վերայ կան բաւական քարուկիր շինութիւններ, կան՛ որ բոլորովին անվնաս մնացած են։ Սակայն բուսած են բերդումս ծառեր, որոց հաստաբուն արմատներն հետզհետէ փորձ են փորձում քանդել շինութեանց հիմքերը։ Բայց որովհետև բերդումս չկայ ջուր, վասն որոյ բերդիս միջից դէպի Թարթառ գետն կտրած են վիմափոր ականներ, որոց միջի սանդղաձև աստիճաններով երթևեկելով ջուր մատակարարած են բերդիս պաշարման ժամանակ։ Թարթառն գործ դնելով իւր մշտագործ գործիները վերստին փորած և իջեցրած է բաւականին իւր յատակը. այս պատճառաւ ականների արտաքին բերաններն բարձր մնացած են գետի երեսից [1]։

Ինչպէս տեսանք գաւառների սահմանների բաժանմանց շարքում, հնուց մի և անբաժան եղած են Ջրաբերդ և Կիւլըստան գաւառներս։ Բայց որովհետև մէլիքութեան ժամանակ բաժանուած են իրարից գաւառս, որպէս գծուեցաւ սահմանն, վասն որոյ առանձին ենք դասաւորում գաւառիս գիւղերը, ծխաթուերը և հնութիւնները։ Նշանաւոր են Կիւլստանիս տանձն, խնձորն և ցորենն։

Ա. ԿԻՒԼՍՏԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Մռաւ սարի հիւսիսային կողմում Ինջա գետակի ձախ ափի վերայ։ Լեռներով շրջապատուած է գիւղս, վասն որոյ գտնուում է այն մի փոսանման ձորի մէջ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, բարեբեր, մեծ մասամբ անջրդի, անվնաս օդն, կլիման և ջուրն,

[1]) Բերդիս հանդէպ Թարթառ և Թրղի դետախառնուրդի մէջ է Անապատն, որ ունի և մի քանի խուցեր։

երկար կեանք 80—85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հօ-յակապ չորս սիւների վերայ (երկու փոքր խորանների վերայ կան երկու խորաններ ևս), երկարութիւն 22 մետր 80 սան-թիմ լայնութիւն 15 մետր 67 սանթիմ, քահանայ մի։ Ծուխ 56, ար. 200, իգ. 175։

*Ծեր-աւետարան*. երկէջ, մեծագիր, թղթեայ, որ կայ եկեղեցումս և ունի չորս աւետարանչաց անճաշակ պատկեր-ները։ Աւետարանիս գրողն է. «ԶԳրիգոր մեղապարտ գրիչ յիշեա ի Քրիստոս»։ Գողացած են յիշատակարանը մի քանի թերթերով միասին, վասն որոյ անյայտ է աւետարանիս գրու-թեան թուականն և գրուած տեղն։ Տաճարիս դուրսն, արև-մտեան որմի մօտ մի քարի վերայ. «Այս է տապան Օհանէսին, որ էր որդի Ոսէփ բէկին և թոռն Մելիք Ստեփանին [1]) ՌՄՁԴ.»։

Գիւղիս հիւսիսային ծայրում կայ մի *հնաշէն* եկեղեցու աւերակ, որ շինուած է եղել ամբողջ սրբատաշ քարով և կո-չուում է այժմ սուրբ Մինաս, որի հիւսիսային որմի վերայ. «Կամաւն Աստուծոյ շինեցինք խորանս տանուտէրն Ուլուխան, աշխատողք երկու տէր Դաւիթն, Սպարապետն, պողն (պողա-քիրողքն) առ հասարակ ժողովուրդքն թվ. ՌԾԸ.»։

Գիւղումս կայ մի քարուկիր և կամարակապ ապարան, որ ունի սոյն արձանագրութիւնը. «Շնորհիւն Աստուծոյ շինե-ցաւ ապարանս ի թվ. ՌՄԱ. ես Յակոբոս ծառայ Աստուծոյ իշխող գեղոյս որդի Աբրահամ Ըսպարապետին [2])»։ Բնակարա-նիս տէրն, որ այն սոյն սպարապետիս յետագայ ժառանգն է, ունի մի ապահովագիր, որով «Տանուտէրանց Ջանի որդի Յարութիւնն» վաճառում է Ամենափրկիչ վանքի մօտ եղած իւր գետինը Աբրահամ—իւզբաշու որդի Յակովբջան իւզբա-շուն 10,000 թումանի։ Առուծախիս վկայ գրուած են «Հիւ-րեկայ առաջնորդ տէր Պետրոս. Ներսէս ճգնազգեաց վարդա-

---

[1]) Մէլիք-Բէկլարեանների ցեղից չէ մէլիքս։ որպէս հաստատում են, մէլիքութիւնն սկսուած է իւրով Մէլիք-Ստեփանով և մեռած իւր հետ։ Բայց ինչպէս կարծում եմ, ամփոփեալս լինելու է Մեծ-Սիւնեաց Մէլիք-Ստեփան-եանների ցեղից։

[2]) Երևի թէ Սպարապետս եղած է Մէլիք-Բէկլարեանների զօրապետն, բայց չկայ գրաւոր և ոչինչ։

պետ, Քաջամարդիկ Մէլիք-Յուսէփ, Քաչալ Հրապետ, Կոսունց Եաւրի. Զովղուն [1]) Յարութիւն, Ուստա Բալաս» են. Հուսկ ուրեմն գրած է գրագիրն. «ՌՄԻԳ. մայիսի Զ. գրեցաւ Գիւլըստանին գլխին կալին Քարագլխին»։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ ԿԻՒԼՍՏԱՆԻ

Վանքս գտնւում է Սռնւորայ (սառնագին) վտակի ձախ ափի մօտ։ Ինչա գետակի օժանդակն է Սռնաւոր վտակն որ իւր սկիզբը առած է Մռաւի սրբասարի արևելեան կողմից։ Մենաստանս, որ գիւղիցն մօտ կէս մղոն հեռի է դէպի Հարաւ, կառուցեալ է անտաշ քարով չորս միապաղաղ սիւների վերայ, ունի մի դուռն հարաւային կողմից, մի մեծ, երկու փոքր խորաններ, երկու խորհրդարան և երկու նեղ լուսամուտ։ Վանքս, որ ունի 23 մետր 50 սանթիմ երկարութիւն, 10 մետր 10 սանթիմ լայնութիւն, տակաւին կանգուն է, միայն ճաքուած է արևելեան պատն գագաթից մինչև գետինն և ծակուած է աւազանի ետևից, որի մօտ քանդակուած է. ՌՂ. թվ.»։ Զունի ուրիշ արձանագրութիւն։ Հարաւային կողմում կան ամփոփեալներ։

Մենաստանս իւր արևմտեան կողմում (խիստ մօտ) ունի երկու թաղակապ սենեակ, մէկի մուտքի սեմին վերայ. «Թիւ ՌՃԿԴ. յիշատակ է այս օթաղս Եղիա վարդապետին»։ Միաբանութեան սենեակներն, որ գտնւում են հիւսիս արևելեան կողմում (մի քանի քայլ հեռի) արդէն կիսաւեր են։

*Ամենափրկիչ մատուռ*. որ մօտ է վանքիս և շինուած քարուկիր, աւազանի արևելեան խաչի վերայ. «Խաչս Հիւրիա պաշտպանողին»։ Սորա դրան առաջ. «Այս է հանգիստ Հիւրեղ տատին, աղաչեցէք. թվ. ՌԿԲ.»։

*Կարմիր եղցի* գտնւում է գիւղից վերև Ինչայի ձախ կողմի լանջի վերայ աւերակ եկեղեցի, որ շինուած է եղել

[1]) Փոխաբերական մականուն, որ նշանակում է՝ բանականները և անասունները կտորող կարկտաբեր կամ բքաբեր ամենասաստիկ քամի. իսկ իմաստն է քաջամարտիկ, այսպիսի մականուններ շատ կայ Գաղտնիք Ղարաբաղի մէջ։

Digitized by Google

երկյարկ, այժմ մնում է միայն գետնայարկն, որ ծառայած է լանջը հարթելու։ Աւերակիս մօտ կայ գիւղատեղի և հանգստարան, որի մէջ մի մամռապատ քարի վերայ. «Այս է տապան Առուսի որդի ՌԱ. (թուին)»։

## ԴԱՏԻ-ԲԷԿԱՆՑ ՎԱՆՔ.

Կիսաւեր վանքս գտնուում է Կիւլստան գիւղից ներքև Ինջա գետի աջ կողմում։ Մենաստանիս մօտ կայ միաբանից սենեակներ և հանգստարան։

*Ջաքին Նհատակ*. Աւերակ վանքիս հիւսիսային կողմում, Պարանպատ անուն անտառում, Ինջայի ձախ կողմում կայ գիւղատեղի, հանգստարան և կիսակործան մի փոքր եկեղեցի Ջաքին նահատակ անուն։

*Հին-Խրխափոր գիւղ*. հիմնուած է Կիւլստան և Նոր-Խրխափոր գիւղերի միջև մի հովտում. ուր այժմ երևում են գիւղի աւերակն, թթենի, ծիրանի, տանձի և խնձորի ծառերն և պարտէզներն. իսկ ձորի արևելեան կողմում փոքր եկեղեցին և հանգստարանն։

Բ. ՆՈՐ-ԽՐԽԱՓՈՐ. Հիմնուած է Սև-գետ—գետակի (ղարաչայ) աջ կողմում, Գեօրգին սարի ստորոտում, մի գեղեցիկ դաշտակի հարաւային ծայրում. բնակիչք մի քանի տարի առաջ տեղափոխուած են Հին-Խորխափորից. հողն բէկական, (մելիքապատկան) ջրարբի և բազմարդիւն, բացի սովորական բերքերից ընտիր տանձ, խնձոր, մետաքս և բամբակ. օդն և կլիման փոքր ինչ տաք ամրան, ջուրն պատուական. եկեղեցին նորաշէն, կիսատ, կառուցեալ չորս սիւների վերայ. որ ունի երկու դուռն հարաւային և արևմտեան, վեց լուսամուտ, 16 մետր 56 սանթիմ երկարութիւն և 11 մետր լայնութիւն։ Շինուում է Մէլիք-Բէկլարեանց Թալիշ-բէկի ծախքով և բնակչաց աշխատութեամբ. քահանայ մի։

Եկեղեցիս ունի մի պատկերազարդ գրչագիր, փոքրադիր աւետարան, գրուած թղթի վերայ, գողացած են յիշատակարանը, վասնորոյ անյայտ է գրողն, թուականն և տեղն. մի-

Digitized by Google

ոյն գրուած է Մատթէոսի վերջումն. «Ստացող սուրբ աւետարանիս Շիրվանայ Հինդարցի Միլքումն և եղբարք Ապրիմ, Փիրպուտողն»։ Իսկ Մարկոսի վերջում յիշուած են նոյն Մելքումի բոլոր ազգակիցների անուններն յականէ յանուանէ։ Ծուխ 21, տր. 88, իգ. 88։

*Աղբիւր.* Որովհետև եղած չէ գիւղումս աղբիւր կամ պատուական ջուր, այս պատճառաւ աւագ—սարկաւագուհին Համեստափայլ Փեփրոնէ կոյս Խուբեանց Մէլիք-Բէկլարեանցն՝ իւր սեփական ծախքով վերի սարեցն խեցեղէն խողովակներով չէնս բերել տուած է պատուական ջուր, որը և երկու բաժին անելով՝ մի մասը հանած է եկեղեցուս մօտ հասարակութեան համար և միւս մասը՝ մեծ. Թալիշ-բէկ Մէլիք-Բէկլարեանցի բակն։ Եկեղեցու մասին աղբիւրի շինութեան վերայ փորագրուած է. «Ես կոյս աւագ սարկաւագուհի Փեփրոնեայ Խուբեանցս Մէլիք-Բէկլարեանց Խարխափուժ (Խրխափոր) գեղջ աղբիւրն կառուցի իմով արդեամբ ի յիշատակ իմ և հանգուցեալ ծնողացս և քերց և եղբարց իմոց 1-ն մարտի 1893 թ.»։

*Երկու արձաններ.* Կիւլստանից մինչև Նոր-Խրխափոր քարեպաշտ ոմն հարթելով պատրաստած է կառքի ճանապարհ։ Մի արձան կանգնած է Խաչ-կեաղուկի [1]) մօտ և միւսն Հին և Նոր-Խրխափորի միջև։ Վերջին արձանագրութիւնը. «1890 ամի ի 1-ն մայիսի ճանապարհս շինեց Գրիգոր Մէլիք-Բէկլարեան իւր հօր Բէկլար Ֆրիդօնեան Մէլիք-Բէկլարեանցի յիշատակին։ Այս յիշատակի յարգողը թող ապագայում Նորոգի գիրս»։

*Աւերակ վանք.*

Կողեր անուանեալ տեղում կայ մի աւերակ վանք, որից մնացած է միայն արևմտեան պատն և հիմքերն, այստեղ կայ և հին հանգստարան։

Գ. ՂԱՐԱ-ՉԻՆԱՐ կամ Աղջա-Ղալա. Հիմնուած է Սև գետակի աջ կողմում. բնակիչք բնիկ, հողն բէկական, ամե-

[1]) Խաչ-կեաղուկումս, կայ երկու քարեայ հին խաչարձան ճանապարհի աջ ու ձախ եզերքներում, բայց գիր չունին։

նայն ինչ նոյն, երկար կեանք 65—70. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, նորաշէն, կառուցեալ չորս սիւների վերայ. քահանայ մի, կայ արքունի ուսումնարան։ Ծուխ 120, ար. 405, իգ. 400։

Դ. ՆՈՐԱՇԷՆ ԳԻՒՂ. Հիմնեալ նոյն գետակի աջ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Մինաս, ձեղունն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 38, ար. 223, իգ. 200։

Ե. ՂԱՀՏՈՒԹ կամ ՉԷՅՈՒԽ ԳԻՒՂ. Հիմնուած նոյն գետակի ձախ կողմում, բնակիչք բնիկ, հողն բէկական, ամենայն ինչ նոյն, չունին եկեղեցի, զի խիստ մօտ է Ղարա-Չինարին. քահանան գալիս է Նորաշէնից։ Ծուխ 11, ար. 45, իգ. 42։

Զ. ՆԵՐՔԻՆ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն դաշտակի վերի ծայրումն և նոյն գետակի ձախ ափի վերայ մի սարի ստորոտում. բնակիչք բնիկ, հողն բէկական [1]), կիսով չափ ջրարբի, ամենայն ինչ նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, բայց սագաշէն և ցած, խորանի հիւսիսային կամարի վերայ. «Եկեղեցիս անուանեցաւ Սուրբ Աստուածածին թվ. ՌՃԽԶ.»։ Երկարութիւնն 20 մետր, լայնութիւն 9 մետր 5 սանթիմ, ճաքած է արևելեան պատն։

Եկեղեցւոյս դրան ճակատակալ քարի վերայ.

«Աստուած ողորմի Գօրեցի Գօրգինի որդի Տաւթին, որ պատճառ եղև»։ «Կամաւն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ձեռամբ տէր Եղիային յիշատակ իւր և ծնողացն հօրն Աթին և մօրն Հառամին և կողակցին և որդոցն տէր Դաւթին, Կոսդանտին, Եսկարին . . . տացութեամբ Շիրմազանի որդի Մելքումին . . .»։ Քահանայ երեք։

Եկեղեցումս կայ երկու գրչագիր աւետարան.

Ա. աւետարան փոքրադիր, անճաշակ նախշերով, գրուած թղթի վերայ. գողացած են յիշատակարանը, վասն որոյ ան-

[1]) Թալիշից սկսեալ մինչև այստեղ բոլոր հողերն պատկանում է Մէլիք-Բէկլարեանց ժառանգներին. իսկ գիւղիս Թուրք բէկի։

յայտ է գրողն, թուականն և տեղն։ Մարկոսի վերջում միայն յայտնի է նախ՝ որ Յովհաննէս անուն միայնակեաց ստացած է աւետարանս իւր Յովասափ հարազատ եղբօր հետ։ Երկրորդ անգամ ստացած են նոյն աւետարանը այլ հարազատ եղբարք Ցունան և Դաւիթ թվ. ՌՁԷ.—ին։

Բ. աւետարան. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Որոտան, ի գիւղն՝ որ կոչի Նոր ձեռամբ անիմաստ և անարժան Աբրահամ գրչի ՌԾԻԷ. ամի.»․ Աւետարանս չունի ո՛չ պատկեր և ոչ յիշատակարան։ Ծուխ 105, ար. 481, իգ. 372։

*Իրեք մանկունք*. Աւերակ վանքս, որի միայն կանգուն են արևմտեան և հիւսիսային պատերն, գտնուում է գիւղիս հարաւային կողմում, նոյն գետակի աջ կողմում շինուած մի սեռի վերայ, որի երկու կողմերն ձորեր են։ Չունի արձանագրութիւն, միայն աւանդութեամբ են ասում Իրեք (երեք) մանկունք։ Վանքիցս վար, ձորի մօտ կայ Լէտր անուն հին գիւղատեղի, հանգստարան և երեք քարեայ խաչեր։

*Անջուր կամուրջ*.

Ներքի և Վերի շէների միջև կայ մի հնաշէն և քարուկիր կամուրջ Սև գետակի վերայ։ Գետակն փոխած է իւր ընթացքը դէպի հիւսիս և անջուր մնացած է կամուրջն։

Է. ՎԵՐԻ-ՇԷՆ. Հիմնուած է նոյն հովտի վերայ միևնոյն գետակի ձախ ափումն. բնակիչք բնիկ, հողն բէկական, լեռնային, անջրդի, հացաբեր. տեղական բերքերն նոյն. գիւղն շրջապատուած լեռներով, անվնաս օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Աստուածածին, քարուկիր, կառուցեալ երեք կամարների վերայ. երկարութիւնն 19 մետր 50 սանթիմ, լայնութիւն 10 մետր 80 սանթիմ։ Հիւսիսային խորանի գլխին կայ գաղտնի պահարան։ Քահանան գալիս է Ներքին-շէնից։

Եկեղեցումս կայ մի գրչագիր, մագաղաթեայ աւետարան, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ և փոքր դիրք։ Գեղեցիկ են փոքր գրերն, բայց անճաշակ և անոճ բոլոր գլխագրերն, նախշերն, ծաղիկներն և նոյն իսկ պատկեր-

Digitized by Google

ներն. գրողն է Սարգիս անուն ումն։ *Ցիշատակարանից*. «Ի ժամանակիս յայսմիկ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ի վտանգի կայր ազգն քրիստոնէից ի ազգէն անօրինաց և էր թուականն Հայոց ՋԽԲ. և ողիմպիաթն, որ է Նահանջ՝ ՄԼ. և ղանութիւն Հասան բէկին, որ գնաց յաշխարհն Հոռոմոց և ազգի ազգի չարութիւն հասոյց ի հետ ազգին տաճկաց և ի կաթուղիկոսութեան Հայոց տէր Ռստակեսի (Գ-ի) և հայրապետութեան սուրբ ուխտին գետամիջոյ տէր Սարգսի և փակակալութեան տեղւոյն Յովհաննէս կրօսակրաւն աբեղայի։ Բայց արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի դաւառիս Խաչենաձորոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, սուրբ սքանչելագործ Նշանիս [1]) Սուրբ Սարգսի և ի տէրութեան տեղւոյս պարոն Վէլիջանին, զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս յաւրինակէ տեառն Եփրեմի Խուրին Ասորոյ համարաւ և կիտիւ և բանիւ և նշանագրով... ի խնդրոյ արքեպիսկոպոսի, որ վառեալ ջահ է եկեղեցւոյ... Պարոն Տէր։ Թողութիւն արարէք եղանակիս, որ գրուեցաւ. անձրև խիստ և տեղիքս դէճ և հողս ջրքաշ և ես մենակ»։ Շարայարուած է յետոյ.

«Կազմեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Քարթմանկեցի (Գարդմանցի) Արիստակէս երիցու որդի Վաղան քահանային ՌՃՂԸ.»։ Ապա գրուած է ի միջի այլոց. «Ես Վերին չէնի տանուտէր Յարութիւնս առի (գնեցի) զայս Քրիստոսի սուրբ աւետարանս ի անօրինաց ձեռքէն, իբր թէ գերի անկեալ թափեցի»։ Ծուխ 91, ար. 524, իգ. 454։

## ՄԷԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ.

Գիւղումս բնակւում է Բէկլար-բէկ Մէլիք-Շահնազարեանց Շահփուլեանցն, որի նախնիքն և ս Մեծ-Մազրա գիւղից փոխադրուած են Արցախ, նախ բնակութիւն հաստատած Աւետարանոց աւանում, ապա Շուշում, ապա Թիֆլիզում և հուսկ յետոյ գիւղումս։ Մէլիք-Շահնազարեաններն այս ճիւղի պատ-

[1]) Խաչենաձորիս վանքերն են Կ ո շ ի կ  ա ն ա պ ա տ ն, որի մէջ գրուած է աւետարանս։

մութիւնն անյայտ մնացած է գրականութեան. վասն որոյ զետեղում եմ այստեղ հետեւեալ վաւերաթղթերը թերև նիւթ ապագայ պատմութեան։

Ա. «Վկայական. 1860 ամի մայիսի 3-ին Առուստամ բէկ Բապայրբէկեան Մէլիք Շահնազարեանց Շահփուրեանց, որոյ նախնիքն եղեալ են բնակիչք Գեղարքունւոյ (այլ ազգ. Գեօգչայու) բնակելով ի Ղարաբաղ ի ժամանակի նախկին տիրապետող կողմանս խանաց [1]) շահեալ է ամենայն արտօնութեամբք և իրաւամբ յարգելի և մեծապատիւ բէկացն Ղարաբաղու՝ լինելով 'ի շարս մեծարգոյ Հայոց իշխանաց, ունեցեալ է ընդ տիրապետութեամբ իւրով զստրուկս բնակեալս ի գեղջն Մազրայ Գեօգչայ գաւառի Զարզբիլ [2]) մերձ Նախիջևանայ, ընծայեալ ծնողաց նորա 'ի Պարսից Շահացն, առ որ յիշեալ Առուստամ բէկն ունի զհրովարտակս 'ի Շահ Ապասէն յանուն հաւու հօրն իւրոյ Մէլիք Եաւրում Մէլիք Շահնազար Շահփուրեանին Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ազգն Առուստամբէկին և ի ներկայ ժամանակիս նոյն շահի յարգելի բէկական իրաւամբք և արտօնութեամբք. Առուստամ բէկն այժմ ևս գտանի ընդ որդւոց իւրոց ի շարս Ղարաբաղու բէկաց և ունի հրովարտակս ի Շահ Ապասէն շնորհեալ նախնեաց նորա և զվկայականս ի տիրապետող խանացն Ղարաբաղու և յարգելի աղալարաց վասն մեծապատիւ բէկական իրաւանց իւրոց և վասն ծագման նորա յազգէն Մէլիք Շահնազարայ Շափուրեանց Գեղարքունւոյ (Գեօգչայու)։ Ի ճշմարտութիւն վերագրելոյն տուեալ եղև այժմ ևս մեօք այս վկայութիւն որդւոց նորա մեծապատիւ Ասլան բէկին և Բէկլար բէկին Մէլիք Շահնազար Շահփուրեանց ի հետևումն պահանջման նոցա»։

Ստորագրուած են Մուսայէլ Դօլուխանեանց, Սարգիս-բէկ Մուսայէլբէկեան Մէլիք-Շահնազարեանց,
Սարգիս Բաղրբէկեան ,, ,, ,
Օվանէս-բէկ Իսրայէլբէկեան ,, ,

[1]) Ծրա խաներին։

[1]) Գտնուում է Սոթի հարաւ արևելեան կողմում, որ և տարբեր է Ծար գաւառի Զարից և Զրիլից։

Բ. «Վկայական. Ըստ հրամանի Նորին Կայսերական մեծութեան ինքնակալին ամենայն Ռուսաց տուաւ այս ի Լուսաւորչական Հայոց կանսիստորիէս Ղարաբաղու համաձայն օրագրական սահմանադրութեան Նորին կայացելոյ յ3-դ աւուր փետրվարի 1861 ամի հիմնեցելոյ ի վերայ խնդրագործութեան բնակչի Շուշուայ գաւառի Ջրաբերդ գաւառակի Վերին չէն գեղջ Ասլան բէկի Ռուստամբէկեան Մէլիք-Շահնազար-Շահֆուրեանց վասն այն թէ արդէն երևի 'ի հաւաքեալ օրինաւոր եղանակաւ հաւաստութեանց՝ աղգապետ սերնդոց նորա է Մէլիք Շահնազար Շահֆուրն, յորմէ ծնեալ են Մէլիք Եավրին և Եաւրի աղայն, ի Մէլիք Եավրիէն ծնեալ է Մէլիք Աստուածատուր, յորմէ ծնեալ են Միր-Դաւիթ-խան և Բապայ բէկն, ի Եավրի աղայէն ծնեալ է Նաղոի բէկն, յորմէ և ծնեալ է Միանսար բէկն, ի Բապայ բէկէն ծնեալ են Ռուստամ բէկն և Առուշան բէկն, ի Ռուստամ բէկէն ծնեալ են Ասլան-բէկն և Բէկլար բէկն, յԱսլան բէկէն ծնեալ են Միրզաջան բէկը և Բալայ բէկե և ի Բէկլար [1]) բէկէն ծնեալ են Բալասան բէկն և Սերկէյ բէկն։ Ստուգութեան որոյ վկայէ Լուսաւորչական Հայոց վիճակային Կոնսիստորիայն Ղարաբաղու ստորագրութեամբ և դրոշմամբ արքունի կնքոյ, ի 19 Ապրիլի 1861 ամի 'ի Ք. Շուշի։

Անդամ Կանսիստորիայի Տէր Իսրայէլով.

№ 871 Քարտուղար Մէլիք Շահնազարեանց»։

Մի հաստ և հին թղթի վերայ վիմագրուած է Միր-Դաւիթ-խանի պատկերն՝ Պարսից Շահիցն շնորհուած տիտղոսի ժապաւէնով և պարսկական ատաղանիշ շքանշանով. Պատկերի տակ վիմագրուած է. «Միր Դաւիթ խան Ծատուրեան ի տանէ Մէլիք Շահնազարեանց Մաղրայի. ասպետ առաջին աստիճանի կարգացն Արեգական առիւծոյ Պարսից Արքային, են. երբեմն դեսպան 'ի կողմանէ նոյն արքայէ առ Լթագաւոր Փռանցիու 1816 [թուին]»։ Տպուած է նաև նոյնի Գաղ-

[1]) Բէկլար-բէկից ծնուած են (բացի Բալասան և Սերկէյ բէկերից) Ջաւատ-բէկ, Նազար-բէկ և Առուստամ-բէկ։ Իսկ Ասլան-բէկից ծնուած են Գալի-բէկ և Ջիմշիտ-բէկ։

Digitized by Google

ղիերէն թարգմանածն։

Քարահունջ աւերակ կամ Բալլու ղալա կոչուած տեղում, որ գիւղիցս վերև է, կայ գիւղատեղի, հանգստարան և մի փոքր եկեղեցու աւերակ, որից մնում են տակաւին չորս պատերն և խորանի թաղն։

Հին-Պարիս աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որ գտնուում են այն սարի գլխին, որ արձանացած է Ներքին և Վերին շէներքի և Նոր-Պարիս գիւղի մէջ և կոչուում է Ծամփրապտուկ. Այժմ աւերակ գիւղումս բնակում են մալականներ։

Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի, որը անուանում են Նահատակ։

Ը. ՆՈՐ-ՊԱՐԻՍ գիւղն շատ հեռի չէ մալականներից, բնակիչք տեղափոխուած են Հին-Պարիսից, հողն բէկական, ջրարբի և արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, տակաւին չունին եկեղեցի. քահանայ մի։ Տուն 38, ար. 191, իգ. 165։

Թ. ԷՐՔԱՋ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր և հօրիզօնն նեղ ձորի մէջ, որի արևելեան, հարաւային և հիւսիսային կողմերն բարձր լեռներ են, բնակիչք բնիկ, որք մէլիքների հետ գնացած են բնակելու Բօլնիս և յետոյ վերադարձած այս տեղ. հողն բէկական, կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց, երկար կեանք 115 տարի. եկեղեցին Սուրբ Սարգիս, հօյակապ, բարձրաշէն, կառուցեալ վեց սիւների վերայ (երկուսն միապաղաղ) երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ, լայնութիւն 14 մետր 60 սանթիմ. դրան ճակատակալ քարի վերայ. «. . . մէ յիշատակ թվն ՌՃԿԵ.»։ Աւագանին կողմին մօտ փոքր խորանի ճակատին մի նրբագործ խաչքարի վերայ. «Թվ. ՋԹ. ես Ակոբ կանգնեցի գխաչս Սարգիսա և կամ ամեն ծնողաց մերոց, Աստուած ողորմի»։ Եկեղեցուս արևմտեան պատին մօտ արտաքուստ. մի տապանաքարի վերայ «Թվ. ՌՄԿՋ. որ է Պօլնուսու գալն (վերադարձն) մայիսի Ի. (20) Քրիստոսի ծառայ տէր

Digitized by Google

Դանիէլ»։ Քահանայ երկու։

Գիւղիս արևմտեան ստորոտի խոր ձորով հոսում է *Փոքր-Կուրակ* անուն վտակն, որ է օժանդակ [1]) Կուրակ գետակին։ Գիւղիս բարեկ. Սարգիս քահանայ Տէր-Սարգսեանցի մօտ կայ.

Ա. Մի օրինակ գրչագիր, փոքրագիր, ընդհանրական գրուած թղթի վերայ, որի մէջ է Յակոբոսի, Յովհաննու և Յուդայի առաքելոց թղթերն. (անյայտացած է յիշատակարանն)։

Բ. Բացատրութիւն Հայոց ամիսների, որպէս են Նաւասարդ, Հոռի, ևն.։

Գ. Մարմնախաղութիւն և երազահան։

Դ. Բացատրութիւն յատուկ և հասարակ անուանց։

Ե. «Թարգմանութիւն ի Պարսիկ բառից» և ընդօրինակութիւն «ի գրոցն Վարդանայ աշխարհագրի»։

Զ. Խրատ Պլուտարքոսի, անյայտ է գրողների անուններն։

Հարկ է յայտնել որ «Պայդասար» անուն ումն հեղինակից գովասանական ոտանաւորներ են պարունակում Ս. Լուսաւորչի, Հռիփսիմեանց և Տրդատ թագաւորի մասին Բ. ձեռագրումն։ Տուփ 78, ար. 384, իգ. 364։

Ժ. ԲՕՂԼՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Երքաջից վերև Կուրակի նոյն օժանդակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական և անջրդի, բայց հացատու. տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի), եկեղեցին Սուրբ Մինաս, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Նոր-Պարիսից։ Տուփ 15, ար. 80, իգ. 70։

*Սուրբ Մինաս.* ուխտատեղի. գիւղիցս վերև նոյն, օժանդակի աջ կողմում, մի հին քարուկիր փոքր եկեղեցի է սուրբ Մինաս անուն, որի մօտ կան աւերակ գիւղ և հանգստարան։

ԺԱ. ՄԱՆԱՇԻԹ կամ Մանուշ շէն. Հիմնուած է Բօղլուխից ներքև նոյն օժանդակի ձախ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, սա-

---

[1]) Իւր ակիզբը առած է Գոմէշ (Նոյն Մռաւ) սարի հիւսիսային կողմից։

Digitized by Google

կայն արդիւնաւէտ, տեսարանն գովելի, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 110. եկեղեցին նոր են սկսում շինել. քահանան նոյն։ Տուխ 35, ար. 218, իգ. 141։

*Նահատակ*. Գիւղիս արևելեան կողմում ընկուզի ծառերի տակ մի մատուռ է Նահատակ անուն, որի մէջ կայ մի գերեզման, բայց տապանաքարի վերայ չ'կայ արձանագրութիւն։

*Թեօղան աւերակ*, գիւղատեղի է որ գտնուում է Ղարա-Բուլաղ գիւղն տանող ճանապարհի վերայ, մի ձորակի հիւսիսահայեաց լանջի վերայ։ Քարուկիր և սրբատաշ քարով շինուած է եկեղեցին, որի գլուխն խոնարհուած է։ Հարաւային կողմի փոքր խորանի վերայ. «Ժամանակս Շահ Սեփին, խանութիւն Մուրթուզա Ղուլի խանին Թահուրդ, կաթուղիկոս Գանձասարայ տէր Գրիգորին թվ. Ռ.»։

*Այլ քարի վերայ*. «Կամաւն Աստուծոյ ես տէր Եղիշէս շինեցի սուրբ եկեղեցիս յիշատակ հոգւոյ իմոյ, կողակցին, Եկաղին, որդիքն Ատի բէկին, Նկեղ»։

*Թեօղանի մատուռ*, աւերակից փոքր ինչ վերև մի քարուկիր հին մատուռ, որ ունի 5 մետր 18 սանթիմ երկարութիւն և 4 մետր 5 սանթիմ լայնութիւն, սակայն չունի արձանագրութիւն։ Արտաքուստ դրան հիւսիսային կողմում պատին յենած է քարեայ մի հին խաչ, որի երկարութիւնն է 2 մետր 35 սանթիմ, և լայնութիւնն 1 մետր 5 սանթիմ. և որիստորոտում քանդակուած է. «Ի թուին ՉԾԷ. (1308) ես Գրիգոր ու Պապաք կանգնեցաք զխաչս ի բարեխաւսութիւն ծնողաց մերոց ԷՂոր...»։ Մատուռս նորոգած են Մանաւշեցիք. «Սուրբ եկեղեցիս Մանուչեցի շինողք են Ղևոնդ, Աւետիս, Սահակ, Գրիգոր, Դանիէլ, Սարգիս Ալիքսանեանց 1890 ամի»։ Ուխտատեղի է մատուռս, որի շրջապատն մեծ հանգստարան է, սակայն անարձանագիր են քարերն։

**ԺԲ. ՀԻՆ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ.** Հիմնուած է մի հիւսիսահայեաց լանջի վերայ, որի ստորոտով հոսում է Կուրակ գետակի աջ կողմի երկրորդ օժանդակն և փոքր ինչ յետոյ

միանում նոյն գետակի հետ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 25 սանթիմ, լայնութիւն 12 մետր 36 սանթիմ. քահանայ մի։

Արեւմտեան դրան ճակատակալ քարի վերայ.

«Տնօրհնօք ամենակալին մեք Ղարաբուլաղի ժողովուրդս մեծ և փոքր շինեցինք սուրբ եկեղեցիս յիշատակ հոգոց մերոց և ամենայն ննջեցելոց ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Աղաւանից), ի թագաւորութեան Պարսից Շահ Սիւլէյմանի խանութեան երկրիս Ուղուրլու խանին և պարոնութեան գեղիս Փարզալի բէկին, տարուղէն (հարկահան) Մուրթուզա Ղուլին, տանուտէր տէր Սիմէօն, տէր Յակոբ, տէր Ազարիէն, տէր Դաւիթ, Գրիգոր, Ազարիա, Շահնազար, Սարուխան, որ ջերմեռանդ սիրով աշխատեցին. ես Մեղիգիւթ էրեցս [1]) դրեցի թուին ՌՃԻԵ. որ կարգաք, մէկ բերան ողորմի ասէք ամէն»։

Արձանագրութեանս աջ ու ձախ կողմերում.

«Սուրբ խաչս բարեխօս Շահնազարին»։ «Ես Խօճա Անտոնս սակաւ օգնական եղէ սուրբ եկեղեցուս վարձուն յիշատակ ինձ և կողակցին Մարիանին և որդոցն Գասպարին, Մելքումին»։ «Ես Սիմէօն անարժան էրեցս կանգնեցի զսուրբ խաչս և սակաւ աշխատեցի ի վերայ սուրբ եկեղեցոյս...»։ Տուխ 36, ար. 149, իգ. 147։

Կրակի դիմացող քարահանք—огнеупорная глина գտնուում է գիւղիս արեւելեան կողմում խիստ մօտիկ։ Հանքիցս հանուած և Բագու տարուած քարերն գործադրուում են կրակով գործող մեքենաների վառարանների համար։

Հին եկեղեցի քարուկիր, միջակ մեծութեամբ, որ գտնուում է գիւղիս վերի ծայրում ընկուզենի ծառոց հարթակի վերայ, ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և

[1]) Եկեղեցուս մեծութիւնն, ութ քահանայից քանակութիւնն և գիւղիս շատ աւերակ տնաբակերն ապացուցանում են թէ գիւղս մօտաւորապէս 700 ծուխ եղած լինելու է, մինչդեռ այժմ 36 ծուխ և մի քահանայ մնացած է։

մի աւագ խորան։

*Անապատ*. այսպէս է անուանում ժողովուրդն այն քարուկիր մատուռը, որ կայ հին եկեղեցու հիւսիսային կողմում խիստ մօտ։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ որի տապանաքարն չունի արձանագրութիւն. հետեւապէս անյայտ է մեզ ամփոփեալս։ Մատրանս և հին եկեղեցու միջավայրն ամբողջապէս հին ամփոփեալներ են։

Բրտի շինի եղցին. Գիւղիս արեւմտեան հանդէպ վտակի ձախ ափի բարձրութեան վերայ կայ աւերակ գիւղատեղի և մի միջակ եկեղեցի։ Այժմ ոչ ոք չէ բնակուում այստեղ. բայց կանգուն մնացած է եկեղեցին։

*Միջի վանք.*

Այսպէս է կոչուում այն եկեղեցին, որ շինուած է հին-Ղարաբուլաղից վերև նոյն օժանդակի աջ կողմում։ Եկեղեցիս շինուած է միայն մի կամարի վերայ, որի վերնամասն քանդուած և եկեղեցին ճաքած է արեւելքից արեւմուտք ուղղութեամբ. խախտուած է և բեմն։ Շատ ջանացինք գտնել արձանագրութիւն, սակայն չ'գտանք, միայն գտանք մի խաչքարի վերայ. «Այս խաչս է Կոսին» և այլ կիսատ խաչքարի վերայ. «Այս սուրբ խաչս է տէր Առաքելին Աստուծոյ»։ Եկեղեցուս մօտ կայ ընդարձակ գիւղատեղի և սրբատաշ տապանաքարերով և նրբագործ խաչարձաններով նշանաւոր հանգստարան, որի մէջ ամփոփուած են եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ և ժողովուրդ։ Զմայլում է մարդ գեղեցկաքանդակ շիրմաքարերը տեսնելով։

*Ըրի վանք* (վերին վանք)

Միջի վանքից բաւական վերև վտակի ձախ ափում կառուցեալ է երկու կամարների վերայ մի քարուկիր տաճար, որ ունի մեծ և փոքր խորաններ, աւազան, լուսամուտներ և մի դուռն հարաւային կողմից։ Երկարութիւն 17 մետր 35 սանթիմ լայնութիւն 8 մետր։ *Հիւսիսային որմի վերջին կամարի տակ*. «Թվ. ՉԻ. Ես Տաւտար Որդի Ջանասի կանգնեցի զխաչս ինձ և եղբաւր իմոյ»։ Տաճարիս մէջ տեղում

Digitized by Google

ամփոփուած է մի պատուաւոր ննջեցեալ, որի տապանաքարի վերայ փորագրուած է. «Այս է հանգիստ Սուրբ Գրիգորոյ Գանձակայ եպիսկոպոսին»։ Անվնաս մնում է տաճարս, միայն թէ գլխին բուսած են ծառեր, որք կարող են վնասել հետզհետէ մեծանալով։ Այստեղ կայ եւ գիւղատեղի վտակի ձախ հովտի վերայ և փոքր ինչ վերև հանգստարան։

## ԱԼՀԱՐԱԿ ԼՃԱԿ (38)

Մղոնաչափ է Երի-վանքից մինչև լճակս, որ տաճկերէն կոչուում է Գեօգ-գեօլ և որ շրջապատուած է անտառախիտ լեռներով։ Նրանց մէջ ամենաբարձրն է Կեփաս [1]) (ըստ Տաճկ. Քեափազ) անուանած ապառաժ սարն, որ հպարտօրէն արձանացած է լճակի արևելեան հարաւային կողմում։ Սարիս լանջերի դժուարատար տեղերում հօրաններով ճարակում են քօշեր։ Լճակս բաժանուած է երկու մասի, վերնամասն կոչուում է «Ըստծու ծով» (Աստուծոյ ծով)։ Լճակիս մակերևութի խորանարդ տարածութիւնն է 54 օրավարաչափ (դեսեատին)։

Լճակիցս, որի շրջապատում տեղ տեղ դիզուած են ահագին քարեր, ելնում են ընդհանրապէս երեք տեսակ ձկներ.

Ա. տեսակն, որ ազնիւ է միւսերից, որոշուում է իւր սպիտակութեամբ և կարմիր ու սև բծերով։

Բ. տեսակն եւս ունի սպիտակ գոյն, բայց ունի միայն սև բծեր։

Գ. տեսակն ունի սև գոյն և միայն սև ու մեծ մեծ բծեր։ Բացի հիւսիսային կողմից ելած ձկներից ազնիւ և համեղ են միւս բոլոր կողմերից հանուած ձկներն։

*Կոսի կալ*

Միջի վանքի արևմտեան հանդէպ վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ մի գեղեցիկ սարահարթում կայ գիւղա-

---

[1]) Սարիս գլխին կայ մի գերեզման, որի տապանաքարի վերայ գրուած է թէ Կեփաս ճգնաւորի գերեզմանն է։ Հաւանական է թուում մեզ, որ Ալհարակ լեռ անուն տեղի տուած է Կեփաս անուան, որը մահմետականներն չկարողանալով ուղիղ հնչել Քեափազ են հնչում։

*տեղի, հանգստարան և փոքր եկեղեցի։ Խորանի հարաւային կողմի կամարի վերայ մի խաչքարի ստորոտում. «Թվն. ՌՀԹ. է. . . . [1]) Աստուած ողորմի Սարգսին»։ Եկեղեցուս հարաւային կողմում հանգստարանի մէջ. «Ամփերին Մելիցքու Բուրխտ[?]ժիլին Ռ.»։ Բոլոր հին եկեղեցիներս խոզանոց արած են Գետաշէնի խոզարածներն։ Պատիւ է բերում Գետաշէնցւոց…։*

ԺԳ. ՆՈՐ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ՇԷՆ. *հիմնուած է շէնս Հին-Ղարա-Բուլաղից փոքր ինչ ներքև նոյն օժանդակի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Խաչակապ, Բանանց և Փիբ գիւղերից, որք նախ գնած են Պալլի-խան հայ բէկից շինատեղի և անդի հողերը, շինած բնակարաններ և ապա բնակած այստեղ։ Տակաւին չունին եկեղեցի։ Ծուխ 25, ար. 60, իգ. 55։*

*Նորաշէն կամ Ենիջայ աւերակ գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, որ գտնուում է շինիցս ներքև։*

## ԲԵՐԴ ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ.

*Չորս կողմերից առանձնացած, վիմահերձ սեպաձև բարձրացած և դէպի արևելք երկարած մի բարձրագոյն սար է, որ գտնուում է Կիւլստան գիւղից վերև։ Ինջա գետակն նախ հոսում է բերդիս արևմտեան կողմով, ապա հիւսիսային ստորոտով և ապա դառնում դէպի արևելք, վասնորոյ գրեթէ թերակղզի ձևացած է բերդասարս, որի գլուխն բարձրանալու համար կայ մի դժուարատար և ոլոր մոլոր կածան, որ խիստ զառիվեր է։ Բերդս ունի կրկնապարիսպ, արտաքինն՝ սարի կիսով՝ արևելքից արևմուտք. իսկ երկրորդն՝ սարի գագաթի եզերքներով, որ աւելի բրգաշատ է և անմատչելի, կարող ենք ասել, և անառիկ։ Բերդիս երկարութիւնն է 230 մետր, լայնութիւնն 20 մ., պարսպի հաստութիւնն 80 սանթիմետրից մինչև 1$^1/_2$ մետր։ Բերդիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի և շատ աւերակ տնատեղեր։ Բայց տակաւին կանգուն մնում են Մէլիք-Յովսէփի ապարանն, որ հիմնուած է բերդի հարաւային կողմում մուտքի աջ ու ձախ*

---

[1]) *Անընթեռնլի են կէտադրեալ բառերն։*

անկիւններում։ Բերդս ունի երկու դուռն, որից մեծն հարաւային կողմից, իսկ փոքրն հիւսիսային կողմից որ անգործածելի է։ Ապարանն բաղկացած է երկու մասից, արևելեան և արևմտեան, խոնարհուած են երկոցունց ծածքերն ևս, բայց տակաւին մնում են պաշտելի հնութիւններն։

Բայց որովհետև խմելու ջուր չկայ բերդումս, վասն որոյ բերդի վերի կողմին մօտ արևմտեան հիւսիսային կողմից մինչև գետակն շինուած է մի նշանաւոր, թաղակապ, քարուկիր և ստորերկրեայ ական իբրև ջրի ճանապարհ, որով ջուր փոխադրած են բերդիս ջրամբարներն, որք գտնուում են ամրոցի վերի կողմին մօտ, հիւսիսային պարսպի մէջ։ Այժմ գետակն քանդելով խորացրած է իւր յատակը և բարձր մնացած է ականի բերանն։

Ղալաչա

Բերդիս հարաւային հանդէպ հարթակի վերայ կայ մի դղեակ, որը տեղական անուամբ կոչուում է Ղալաչա։ Դղեակս ամուր է և քառակուսի. չորս անկիւններում ունի չորս հաստատուն աշտարակ. իսկ հիւսիսային կողմից մի դուռն և ամեն կողմերից հրացան արձակելու ծակեր, $7^{1}/_{2}$ մետր երկարութիւն, 7 մետր լայնութիւն, $4^{1}/_{2}$ մ. բարձրութիւն և 1 մ. 28 ս. պարսպի հաստութիւն։ Այս ևս պատկանում է Մելիք-Բէկլարեաններին.

Դղեկիս շուրջն ընդարձակ, բայց աւերակ գիւղատեղի է, որն կարծես թէ, քաղաք եղած լինի, տակաւին պարզ երեւում են քարուկիր և խիտ առ խիտ շինուած շատ տնաբակեր, փոքր ինչ հեռուն ընդարձակ հանգստարան, բայց անարձանագիր։ Դղեկիս հարթակի ստորոտում շինուած են եղել նշանաւոր բաղանիսներ. որք կիսաւեր դրութեան մէջ են։

## ՋԱՓԱՐԻ ՂԱԼԱ.

Մռաւ սարից դէպի արևելք կախուած մի դալարագեղ լանջի վերայ կայ հողաբերդ, որի արևելեան կողմից հոսում է Ինջա գետակի աջ օժանդակն, որ և միանում է Ամենափրկիչ վանքից ներքև՝ Ինջային։ Բերդիս, որի շրջապատն պա-

Digitized by Google

*տած է թանձրախիտ անտառներով, ասում են, բազմիցս ապաւինած է 'ի հնումն Կիւլստանի հայ ժողովուրդն, մանաւանդ պատերազմների ժամանակ և ազատ մնացած թշնամուց։*

ԺՁ. ԳԱՐԴՄԱՆ ԳԱՒԱՌ, *որ ընկած է Կուրակ և Ծամքոր Գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի մէջ։ Ամենամեծ մասամբ անհարթ է գաւառիս մակերևոյթն։ Սարսափելի խոր խոր ձորեր, մութ մութ կիրճեր, օձապտոյտ խոխոմներ, բարձրագագաթ սարեր և բլուրներ և թանձրախիտ անտառներ գրաւած են գաւառիս մակերևոյթը։ Իսկ վերնամասն խիստ զուարճալի է լեռնահարթեր, ծաղկալի հովիտներ, մարգալի արօտներ, դալարագեղ լեռնալանջեր են գաւառիս Մռաւ և Արութիւն սարի կողմերն։*

Ա. ԳԵՏԱՇԷՆ ԱՒԱՆ. *Հիմնուած է Կուրակ [1]) գետակի ձախ ափի վերայ, խոր է գիւղատեղի ձորն և նեղ հորիզոնն. բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած են Ըռստակ և Ջրաբերդ գաւառից. բնիկ է միայն ամենափոքր մասն. հողն արքունի, մեծ մասամբ անջրեի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, կտաւհատ, գետնախնձոր, տանձ, խնձոր, դամոն, դեղձ, խաղող, ընկուզ, կեռաս, թութ, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք* 100. *եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ վեց սիւների վերայ համակ սրբատաշ տորոնագոյն քարով, երկու փոքր խորանների վերայ կայ այլ ևս երկու խորան. երկարութիւն* 23 *մետր* 40 *սանթիմ, լայնութիւն* 14 *մետր* 30 *սանթիմ։ Եկեղեցիս, որի միջից բղխում է բարեհամ ջուր, չունի արձանագրութիւն, բայց երևում է որ նորոգուած է. քահանայ* 2։ *Աւանումս ծաղկած է հիւսնութեան, դարբնութեան, ոսկերչութեան, դերձակութեան, թամբագործութեան,*

---

[1]) *Գետակս է սահմանագլուխ Արցախի և Թիֆլիսի հոգևոր կառավարութեանց թեմերին կամ Ղարաբաղի և Գանձակի։ Գետաշէնցիքս տեղափոխուած են Ըռստակի գաւառի Խոտորաշէն գիւղից, որ այժմ աւերակ է։ Գետակս իւր սկիզբը առած է Մռաւի միջնագագաթի—Բաղրկեանի—հիւսիսային լանջերից։*

Digitized by Google

*սալլագործութեան, քարտաշութեան, ոստայնագործութեան և ատաղձագործութեան, և այլն արուեստներն։*

*Տուն* 434, *արական* 920, *իգական* 782. *արական ծընունդ* 51, *իգական ծնունդ* 32, *պսակ* 31. *ար. ննջեցեալ* 18, *իգ.* 11։

## ԱԻԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.

*Աւանիս վարի ծայրին մօտ շինուած է մի քարուկիր մատուռ, որ ունի միջակ մեծութիւն, ցած դուռն,* 7 *մետր* 90 *սանթիմ երկարութիւն,* 5 *մետր* 45 *սանթիմ լայնութիւն՝ Նահատակ անուն։ Դասամիջի ուղղութեամբ խորանի տակ կայ մի փոս, որի մուտքն բացուած է բեմի ժողովրդահայեաց երեսից, որի մասին ասում են նահատակի գերեզման. բայց անծանօթ է անունն։*

*Ներքուստ հիւսիսային որմում մի քարեայ խաչի վերայ.*

*«Սուրբ խաչս բարեխաւս Թանգրղուլին»։*

*Իսկ մատրանս դռնագլուխ քարի վերայ.*

*«Թվ. ՌՃԻՋ. կամաւ ամենակալին Աստուծոյ շինեցաւ սուրբ Նահատակս ձեռամբ Սի.է.նի (գուցէ Սիմէօնի) և որդուն Քամալ բէկին, օգնականութեան (թեամբ) գիւղիս, թագաւորութեան Պարսից Շահ Սուլէման....»։ Մատրանս մէջ, որ և ուխտատեղի է, կան հետևեալ գրչագրերն և մասունքներն.*

*Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ մեծութեամբ, արծաթապատ, ոսկեզօծեալ կողակալներով, որի մէջ կայ չորս աւետարանչաց և Յիսուսի Քրիստոսի բոլոր հրաշագործութեանց և բժշկութեանց պատկերներն։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ թռչնագրերն, սքանչելի ծաղիկներն, հիանալի նախշերն, ուշագրաւ նկարներն, թանկագին ներկերն, ազնիւ ոսկեզօծն և զմայլելի գեղարուեստի նրբագործութիւնն։ Մարկոսի և Ղուկասի վերջում գրուած է.*

*«Յիշատակ է աւետարանս Մահտեսի Ջանղուլուն* [1]*) և ծնողացն Վէլիջանին, Համանին և կողակցուն իւրոյ Փարուն և*

---

[1]) *Յետոյ աւելացրած է ուրիշ գրող. «որ եղև քահանայ և եդին ղանուն Նորա տէր Գրիգոր»։*

եղբարց Պապին և Ետկարին և հանգուցեալ եղբարցն Միրաքին, Շահիջանին և ամենայն ազգականաց ամէն։ Ծրեցաւ սակաւ յիշատակարանս ձեռամբ Ալեքսան գրչի թվին ՌՃԺ, և եօթի և ըստ իմում չափու, ասէք ողորմի»։

*Յիշատակարանից*. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Նուաստ և յետին գրչի Նկոս (Նիկողայոսի) մեղապարտի, ունայնագործ մելանաւորի ի թուաբերութեանս Ասքանազեան և Աբեթական տումարի ՌՃԺՉ. և ըստ նորում շրջանի՝ ՂԴ. և գալստենէն Կենարարին ՌՈՀԲ. [1]) ի յստոյգ և ընտիր աւրինակէ նս առաւել համաքայիցն, զի կաղափար սորին էր ի դրանէ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ի աշխարս Հոնաց.. աստուածապահ քաղաքն ի Կաֆայ առ ոտս Սրբոյն Սարգսի զաւրավարին ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ և առաջնորդութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Մարտիրոս քաջ բաբունապետի և ի տեղապահութեան Յակովբ վարդապետի... ի թագաւորութեան Պարսից Շահ Սափին, և Նախիջևանայ խանին Ալուղուլի..... Արդ այժմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս ցանկացող եղեալ աստուածարեալ և պատուական այրս մահտեսի Ճանդուլին ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ.... զՄէլիք Նարնպէկն... դարձեալ յիշեսջիք զՄահտեսի տէր Վարդանն, որ զաւետարանիս զմագաղաթն շնորհեաց... Դարձեալ յիշեսջիք զՂրիմեցի զԼուսպարոնն և զորդեակն իւր զԴաւիթն, որ մեզ տեղ շնորհեցին, որ աւարտեցաք զսուրբ գիրքս, զի դառն մահտարաժամ եղև ի քաղաքն Կափայ և մեր տեսեալ զդառնութիւն և զաղէտ մարցն, կամաւորութեամբն Աստուծոյ և հրամանաւ Նորին բնակեցաք ի Ղրիմ ժամանակ ինչ և աւարտն հասուցաք ըստ մեր տկար բնութեան և ծաղկազարդեցաք ոսկով և բազում գունզգուն որակօք.... Յիշատակ է սա ի յեկեղեցին Ամենափրկչին ի յերկիրն Նախիջևան ի գաւառն Երնջակ ի դէմս Սուրբ Կարապետին ի գեաւղն Շահկերտ, որ այժմ կոչեն Ղազանչիլար ի

[1]) Կամ ՌՃԺՉ.-ն սխալ է և կամ ՌՈՀԲ.-ն վասն զի Կենարարին ՌՈՀԲ. թիւն հաւասար է Հայոց ՌՃԻԱ.-ի. իսկ ՌՃԺՉ.-ն հաւասար է Փրկչ. ՌՈԿԷ. թուին։

Digitized by Google

յառաջնորդութեան յայսմ նահանգիս յԵսայեայ և Առաքել քաջ րաբունապետաց . . .»։

Մեղաց գրութիւնից ազատարար Յիսուսի Քրիստոսի սոյն աւետարանն գերի է ընկնում այլազգեաց ձեռքն, որը գնում է Ջրաբերդի Մէլիք-Ադամ Ա. «որ գնեաց զսա ի հալալ ընչիւք խւրովք 'ի ձեռաց այլազգեաց . . . Նաև մաքուր արծաթօք պատեալ զարդարեաց և ընդելուզեաց ոսկով պատուականօք և յետ (եդ) զսա յիշատակ 'ի սուրբ աթոռն Եղիշէի առաքելոյն (Ջրվըշտիկ) և սուրբ լուսաւորչին Ադուանից ձեռամբ գերիմաստ և յոգնահանճար Աւագ քաջաջան վարդապետին [1]) . . . Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՄէլիք Հաթամն և հայր իւր Մէլիք Իսրայէլն և զպապն իւր Մէլիք Եսային և սորա որդոցն Ովսէփին, Մէժլումին, Իսրայէլին ևս առաւել որդւոց սոցին Սէյրաբին, Ալլահղուլին, Ալլահվերտին և մօրն Հերիքնազին և որդոցն ծաղկելոց Նորափթթիցն Իսրայէլին և Մէժլումին և ամենայն արեանառու Ննջեցելոց . . . գրեցաւ թվին ՌՄ. երկուսին, որ ըստ փրկչականին 1753»։

Բ. Աւետարան մեծադիր, հաստ, գրուած թղթի վերայ, որի սկզբում կայ ոտնալուայի, Յուդայի մատնութեան, Ղազարոսի յարութեան, Ծաղկազարդի, Քրիստոսի խաչելութեան, պատանքուելուն, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, աւետման, ծննդեան և չորս աւետարանչաց պատկերներն, բայց բոլորովին անճաշակ և զուրկ գեղարուեստի շնորհքից և ընտիր ներկերից։ Գողացած են և սորա յիշատակարանը, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն։ Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս երէց Պետանց աբեղայս ու Բրտանց Սարգիս մեր սրտի հաւժարութեամբ աւետարանս ծախեցաք Վարգանայ և առաք ի նրանէ ա. կով, բ. կապիճ հաց, աւետարանին . . . Ծարեցի Զարմանին որդին Խատապայ վկայ . . . Նաճպատինայ որդին Վահրավայ վկայութեամբ, իմ Յոյսիկ Իրիցոյ վկայութեամբ, որ զգիրս գրեցի թվ. ՊԵ. քաղոց Գ. գրեցաւ»։

[1]) Սա ինքն է Դալի մահրասան։



Digitized by Google

ղիերէն թարգմանածն։

*Քարահունջ* աւերակ կամ Բալլու ղալա կոչուած տեղում, որ գիւղից վերև է, կայ գիւղատեղի, հանգստարան և մի փոքր եկեղեցու աւերակ, որից մնում են տակաւին չորս պատերն և խորանի թաղն։

*Հին-Պարիս* աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որ գտնուում են այն սարի գլխին, որ արձանացած է Ներքին և Վերին շէներքի և Նոր-Պարիս գիւղի մէջ և կոչուում է Ծամփրապտուկ. Այժմ աւերակ գիւղումս բնակում են մալականներ։

Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի, որը անուանում են *Նահատակ*:

Ը. ՆՈՐ-ՊԱՐԻՍ գիւղն շատ հեռի չէ մալականներից, բնակիչք տեղափոխուած են Հին-Պարիսից, հողն բէհկական, ջրարբի և արգիւնաբեր, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, տակաւին չունին եկեղեցի. քահանայ մի։ Ծուխ 38, ար. 191, իգ. 165։

Թ. ԷՐՔԱՋ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր և հօրիզօնն նեղ ձորի մէջ, որի արևելեան, հարաւային և հիւսիսային կողմերն բարձր լեռներ են, բնակիչք բնիկ, որք մէլիքների հետ գնացած են բնակելու Բօլնիս և յետոյ վերադարձած այս տեղ. Հողն բէհկական, կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց, երկար կեանք 115 տարի. եկեղեցին Սուրբ Սարգիս, հօյակապ, բարձրաշէն, կառուցեալ վեց սիւների վերայ (երկուսն միապաղաղ) երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ, լայնութիւն 14 մետր 60 սանթիմ. դրան ճակատակալ քարի վերայ. «. . . մէ յիշատակ թվին ՌՃԿԵ.»։ Աւագանին կողմին մօտ փոքր խորանի ճակատին մի նրբագործ խաչքարի վերայ. «Թվ. ՉԹ. ես Ակոբ կանգնեցի զխաչս Սարգիսա և կամ ամեն ծնողաց մերոց, Աստուած ողորմի»։ Եկեղեցուս արևմտեան պատին մօտ արտաքուստ. մի տապանաքարի վերայ «Թվ. ՌՄԿՋ. որ է Պօլնուսու գայն (վերադարձն) մայիսի Ի. (20) Քրիստոսի ծառայ տէր

Դանիէլ»: Քահանայ երկու:

Գիւղիս արեւմտեան ստորոտի խոր ձորով հոսում է *Փոքր-Կուրակ* անուն վտակն, որ է օժանդակ [1]) Կուրակ գետակին: Գիւղիս բարեկ. Սարգիս քահանայ Տէր-Սարգսեանցի մօտ կայ.

Ա. Մի օրինակ գրչագիր, փոքրագիր, ընդհանրական գրուած թղթի վերայ, որի մէջ է Յակոբոսի, Յովհաննու և Յուդայի առաքելոց թղթերն. (անյայտացած է յիշատակարանն):

Բ. Բացատրութիւն Հայոց ամիսների, որպէս են Նաւասարդ, հոռի, ևն.:

Գ. Մարմնախաղութիւն և երազահան:

Դ. Բացատրութիւն յատուկ և հասարակ անուանց:

Ե. «Թարգմանութիւն ի Պարսիկ բառից» և ընդօրինակութիւն «ի գրոցն Վարդանայ աշխարհագրի»:

Զ. Խրատ Պլուտարքոսի, անյայտ է գրողների անուններն:

Հարկ է յայտնել որ «Պաղդասար» անուն ումն հեղինակից գովասանական ոտանաւորներ են պարունակում Ս. Լուսաւորչի, Հռիփսիմեանց և Տրդատ թագաւորի մասին Բ. ձեռագրումն: Ծուխ 78, ար. 384, իգ. 364:

Ժ. ԲՕԶԼՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Երքաջից վերև Կուրակի նոյն օժանդակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական և անջրդի, բայց հացատու. տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի), եկեղեցին Սուրբ Մինաս, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Նոր-Պարիսից: Ծուխ 15, ար. 80, իգ. 70:

*Սուրբ Մինաս*. ուխտատեղի. գիւղիցս վերև նոյն, օժանդակի աջ կողմում, մի հին քարուկիր փոքր եկեղեցի է սուրբ Մինաս անուն, որի մօտ կան աւերակ գիւղ և հանգստարան:

ԺԱ. ՄԱՆԱՇԻԹ կամ Մանուշ շէն. Հիմնուած է Բօզլուխից ներքև նոյն օժանդակի ձախ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, սա-

[1]) Իւր սկիզբը առած է Գոմէշ (Նոյն Մռաւ) սարի հիւսիսային կողմից:

կայն արդիւնաւէտ, անտառանն գովելի, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 110. եկեղեցին նոր են սկսում շինել. քահանան նոյն: Ծուխ 35, ար. 218, իգ. 141:

*Նահատակ*. Գիւղիս արևելեան կողմում ընկուզի ծառերի տակ մի մատուռ է Նահատակ անուն, որի մէջ կայ մի գերեզման, բայց տապանաքարի վերայ չ'կայ արձանագրութիւն:

*Թեօղան աւերակ*, գիւղատեղի է որ գտնուում է Ղարա-Բուլաղ գիւղն տանող ճանապարհի վերայ, մի ձորակի հիւսիսահայեաց լանջի վերայ: Քարուկիր և սրբատաշ քարով շինուած է եկեղեցին, որի գլուխն խոնարհուած է: Հարաւային կողմի փոքր խորանի վերայ. «Ժամանակս Շահ Սեֆին, խանութիւն Մուրթուզա Ղուլի խանին Թահուլդ, կաթուղիկոս Գանձասարայ տէր Գրիգորին թվ. Ռ.»:

*Այլ քարի վերայ*. «Կամաւն Աստուծոյ ես տէր Եղիշէս շինեցի սուրբ եկեղեցիս յիշատակ հոգւոյ իմոյ, կողակցին, Եկաղին, որդիքն Ատի բէկին, Նկեղ»:

*Թեօղանի մատուռ*, աւերակից փոքր ինչ վերև մի քարուկիր հին մատուռ, որ ունի 5 մետր 18 սանթիմ երկարութիւն և 4 մետր 5 սանթիմ լայնութիւն, սակայն չունի արձանագրութիւն: Արտաքուստ դրան հիւսիսային կողմում պատին յենած է քարեայ մի հին խաչ, որի երկարութիւնն է 2 մետր 35 սանթիմ, և լայնութիւնն 1 մետր 5 սանթիմ. և որի ստորոտում քանդակուած է. «Ի թուին ՉԾԷ. (1308) ես Գրիգոր ու Պապաք կանգնեցաք զխաչս ի բարեխաւսութիւն ծնողաց մերոց ԷՂոր . . .»: Մատուռս նորոգած են Մանաւչեցիք. «Սուրբ եկեղեցիս Մանուչեցի շինողք են Ղևոնդ, Աւետիս, Սահակ, Գրիգոր, Դանիէլ, Սարգիս Ալիքսանեանց 1890 ամի»: Ուխտատեղի է մատուռս, որի շրջապատն մեծ հանգստարան է, սակայն անարձանագիր են քարերն:

ԺԲ. ՀԻՆ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ. Հիմնուած է մի հիւսիսահայեաց լանջի վերայ, որի ստորոտով հոսում է Կուրակ գետակի աջ կողմի երկրորդ օժանդակն և փոքր ինչ յետոյ

Digitized by Google

միանում նոյն գետակի հետ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 25 սանթիմ, լայնութիւն 12 մետր 36 սանթիմ. քահանայ մի։

*Արեւմտեան դրան ճակատակալ քարի վերայ*.

«Տնօրհօք ամենակալին մեք Ղարաբուլաղի ժողովուրդս մեծ և փոքր շինեցինք սուրբ եկեղեցիս յիշատակ հոգոց մերոց և ամենայն ննջեցելոց ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Աղուանից), ի թագաւորութեան Պարսից Շահ Սիւլէմանի խանութեան երկրիս Ուղուրլու խանին և պարոնութեան գեղիս Ֆարզալի բէկին, տարուղէն (հարկահան) Մուրթուզա Ղուլին, տանուտէր տէր Սիմէօն, տէր Յակոբ, տէր Ազարիէն, տէր Դաւիթ, Գրիգոր, Ազարիա, Շահնազար, Սարուխ Աւան, որ ջերմեռանդ սիրով աշխատեցին. ևս Մեղիքիթ էրեցս [1]) գրեցի թուին ՌճԻԵ. որ կարդաք, մէկ բերան ողորմի ասէք ամէն»։

Արձանագրութեանս աջ ու ձախ կողմերում.

«Սուրբ խաչս բարեխօս Շահնազարին»։ «Ես Խօճա Անտոնս սակաւ օգնական եղէ սուրբ եկեղեցուս վարձուն յիշատակ ինձ և կողակցին Մարիանին և որդոցն Գասպարին, Մելքումին»։ «Ես Սիմէօն անարժան էրեցս կանգնեցի զսուրբ խաչս և սակաւ աշխատեցի ի վերայ սուրբ եկեղեցոյս...»։ Տուփ 36, ար. 149, իգ. 147։

Կրակի դիմացող քարահանք—огнеупорная глина գտնուում է գիւղիս արեւելեան կողմում խիստ մօտիկ։ Հանքիցս հանուած և Բագու տարուած քարերն գործադրուում են կրակով գործող մեքենաների վառարանների համար։

*Հին եկեղեցի* քարուկիր, միջակ մեծութեամբ, որ գտնուում է գիւղիս վերի ծայրում ընկուզենի ծառոց հարթակի վերայ, ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և

[1]) Եկեղեցուս մեծութիւնն, ութ քահանայից քանակութիւնն և գիւղիս շատ աւերակ տներակերն ապացուցանում են թէ գիւղս մօտաւորապէս 700 ծուխ եղած լինելու է, մինչդեռ այժմ 36 ծուխ և մի քահանայ մնացած է։

մի աւագ խորան։

*Անապատ*. այսպէս է անուանում ժողովուրդն այն քառակուսի մատուռը, որ կայ Հին եկեղեցու հիւսիսային կողմում խիստ մօտ։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ որի տապանաքարն չունի արձանագրութիւն. հետևապէս անյայտ է մեզ ամփոփեալս։ Մատրանս և Հին եկեղեցու միջավայրն ամբողջապէս հին ամփոփեալներ են։

Բրուի շինի եղցին. Գիւղիս արևմտեան հանդէպ վտակի ձախ ափի բարձրութեան վերայ կայ աւերակ գիւղատեղի և մի միջակ եկեղեցի։ Այժմ ոչ ոք չէ բնակուում այստեղ. բայց կանգուն մնացած է եկեղեցին։

*Միջի վանք*.

Այսպէս է կոչուում այն եկեղեցին, որ շինուած է Հին-Ղարաբուլաղից վերև նոյն օժանդակի աջ կողմում։ Եկեղեցիս շինուած է միայն մի կամարի վերայ, որի վերնամասն քանդուած և եկեղեցին ճաքած է արևելքից արևմուտք ուղղութեամբ. խախտուած է և բեմն։ Շատ ջանացինք գտնել արձանագրութիւն, սակայն չ՚գտանք, միայն գտանք մի խաչքարի վերայ. «Այս խաչս է Կոսին» և այլ կիսատ խաչքարի վերայ. «Այս սուրբ խաչս է տէր Առաքելին Աստուծոյ»։ Եկեղեցուս մօտ կայ ընդարձակ գիւղատեղի և սրբատաշ տապանաքարերով և նրբագործ խաչարձաններով նշանաւոր հանգստարան, որի մէջ ամփոփուած են եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ և ժողովուրդ։ Զմայլում է մարդ գեղեցկաքանդակ շիրմաքարերը տեսնելով։

*Նրի վանք* (վերին վանք)

Միջի վանքից բաւական վերև վտակի ձախ ափում կառուցեալ է՝երկու կամարների վերայ մի քառակուսի տաճար, որ ունի մեծ և փոքր խորաններ, աւազան, լուսամուտներ և մի դուռն հարաւային կողմից։ Երկարութիւն 17 մետր 35 սանթիմ լայնութիւն 8 մետր։ *Հիւսիսային որմի վերջին կամարի տակ*. «Թվ. ՉԻ. Ես Տատար Որդի Զանասի կանգնեցի զխաչս ինձ և եղբաւր իմոյ»։ Տաճարիս մէջ տեղում

Digitized by Google

ամփոփուած է մի պատուաւոր ննջեցեալ, որի տապանաքարի վերայ փորագրուած է. «Այս է հանգիստ Սուրբ Գրիգորոյ Գանձակայ եպիսկոպոսին»։ Անվնաս մնում է տաճարս, միայն թէ գլխին բուսած են ծառեր, որք կարող են վնասել հետզհետէ մեծանալով։ Այստեղ կայ եւ գիւղատեղի վտակի ձախ հովտի վերայ և փոքր ինչ վերև հանգստարան։

## ԱԼՀԱՐԱԿ ԼՃԱԿ (38)

Մղոնաչափ է Երի-վանքից մինչև լճակս, որ տաճկերէն կոչուում է Գեօզ-գեօլ և որ շրջապատուած է անտառախիտ լեռներով։ Նրանց մէջ ամենաբարձրն է Կեփաս [1]) (ըստ Տաճկ. Քեափազ) անուանած ապառաժ սարն, որ հպարտօրէն արձանացած է լճակի արևելեան հարաւային կողմում։ Սարիս լանջերի դժուարատար տեղերում հօրաններով ճարակում են քօշեր։ Լճակս բաժանուած է երկու մասի, վերնամասն կոչուում է «Ըստծու ծով» (Աստուծոյ ծով)։ Լճակիս մակերևոյթի խորանարդ տարածութիւնն է 54 օրավարաչափ (դեսեատին)։

Լճակիցս, որի շրջապատում տեղ տեղ դիզուած են աճագին քարեր, ելնում են ընդհանրապէս երեք տեսակ ձկներ.

Ա. տեսակն, որ ազնիւ է միւսերից, որոշուում է իւր սպիտակութեամբ և կարմիր ու սև բծերով։

Բ. տեսակն եւս ունի սպիտակ գոյն, բայց ունի միայն սև բծեր։

Գ. տեսակն ունի սև գոյն և միայն սև ու մեծ մեծ բծեր։ Բացի հիւսիսային կողմից ելած ձկներից ազնիւ և համեղ են միւս բոլոր կողմերից հանուած ձկներն։

*Կոսի կալ*

Միջի վանքի արևմտեան հանդէպ վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ մի գեղեցիկ սարահարթում կայ գիւղա-

[1]) Սարիս գլխին կայ մի գերեզման, որի տապանաքարի վերայ գրուած է թէ Կեփաս ճգնաւորի գերեզմանն է։ Հաւանական է թուում մեզ, որ Ալհարակ լեռ անուն տեղի տուած է Կեփաս անուան, որը մահմետականներն չկարողանալով ուղիղ հնչել Քեափազ են հնչում։

տեղի, հանգստարան և փոքր եկեղեցի։ Խորանի հարաւային կողմի կամարի վերայ մի խաչքարի ստորոտում. «Թվն. ՌՀԹ. է.... [1]) Աստուած ողորմի Սարգսին»։ Եկեղեցուս հարաւային կողմում հանգստարանի մէջ. «Ամիրին Մելիցքու Բուրխաթ[ի]լին Ռ.»։ Բոլոր հին եկեղեցիներս խոզանոց արած են Գետաշէնի խոզարածներն։ Պատիւ է բերում Գետաշէնցւոց...։

ԺԳ. ՆՈՐ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ՇԷՆ. Հիմնուած է շէնս Հին-Ղարա-Բուլաղից փոքր ինչ ներքև նոյն օժանդակի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Խաչակապ, Բանանց և Փիբ գիւղերից, որք նախ գնած են Պալլի-խան հայ բէկից շինատեղի և անդի հողերը, շինած բնակարաններ և ապա բնակած այստեղ։ Տակաւին չունին եկեղեցի։ Ծուխ 25, ար. 60, իգ. 55։

Նորաշէն կամ Ենիջայ աւերակ գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, որ գտնուում է շինիցս ներքև։

## ԲԵՐԴ ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ.

Չորս կողմերից առանձնացած, վիմահերձ սեպաձև բարձրացած և դէպի արևելք երկարած մի բարձրագոյն սար է, որ գտնուում է Կիւլստան գիւղից վերև։ Ինջա գետակն նախ հոսում է բերդիս արևմտեան կողմով, ապա հիւսիսային ստորոտով և ապա դառնում դէպի արևելք, վասնորոյ գրեթէ թերակղզի ձևացած է բերդասարս, որի գլուխն բարձրանալու համար կայ մի դժուարատար և ոլոր մոլոր կածան, որ խիստ զառիվեր է։ Բերդս ունի կրկնապարիսպ, արտաքինն՝ սարի կիսով՝ արևելքից արևմուտք. իսկ երկրորդն՝ սարի գագաթի եզերքներով, որ աւելի բրգաշատ է և անմատչելի, կարող ենք ասել, և անառիկ։ Բերդիս երկարութիւնն է 230 մետր, լայնութիւնն 20 մ., պարսպի հաստութիւնն 80 սանթիմետրից մինչև $1^1/_2$ մետր։ Բերդիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի և շատ աւերակ տնատեղեր։ Բայց տակաւին կանգուն մնում են Մէլիք-Յովսէփի ապարանն, որ հիմնուած է բերդի հարաւային կողմում մուտքի աջ ու ձախ

[1]) Անընթեռնլի են կէտադրեալ բառերն։

անկիւններում։ Բերդս ունի երկու դուռն, որից մեծն հարաւային կողմից, իսկ փոքրն հիւսիսային կողմից որ անգործածելի է։ Ապարանն բաղկացած է երկու մասից, արևելեան և արևմտեան, խոնարհուած են երկոցունց ծածքերն ևս, բայց տակաւին մնում են պաշտելի հնութիւններն։

Բայց որովհետև խմելու ջուր չկայ բերդումս, վասն որոյ բերդի վերի կողմին մօտ արևմտեան հիւսիսային կողմից մինչև գետակն շինուած է մի նշանաւոր, թաղակապ, քարուկիր և ստորերկրեայ ական իբրև ջրի ճանապարհ, որով ջուր փոխադրած են բերդիս ջրամբարներն, որք գտնուում են ամրոցի վերի կողմին մօտ, հիւսիսային պարսպի մէջ։ Այժմ գետակն քանդելով խորացրած է իւր յատակը և բարձր մնացած է ականի բերանն։

Ղալաչա

Բերդիս հարաւային հանդէպ հարթակի վերայ կայ մի գղեակ, որը տեղական անուամբ կոչուում է Ղալաչա։ Դղեակս ամուր է և քառակուսի. չորս անկիւններում ունի չորս հաստատուն աշտարակ. իսկ հիւսիսային կողմից մի դուռն և ամեն կողմերից հրացան արձակելու ծակեր, $7^{1}/_{2}$ մետր երկարութիւն, 7 մետր լայնութիւն, $4^{1}/_{2}$ մ. բարձրութիւն և 1 մ. 28 ս. պարսպի հաստութիւն։ Այս ևս պատկանում է Մէլիք-Բէգլարեաններին.

Դղեկիս շուրջն ընդարձակ, բայց աւերակ գիւղատեղի է, որն կարծես թէ, քաղաք եղած լինի, տակաւին պարզ երեւում են քարուկիր և խիտ առ խիտ շինուած շատ տնաքակեր, փոքր ինչ հեռուն ընդարձակ հանգստարան, բայց անարձանագիր։ Դղեկիս հարթակի ստորոտում շինուած են եղել նշանաւոր բաղանիսներ. որք կիսաւեր դրութեան մէջ են։

## ՋԱՓԱՐԻ ՂԱԼԱ.

Մռաւ սարից դէպի արևելք կախուած մի գալարագեղ լանջի վերայ կայ հողաբերդ, որի արևելեան կողմից հոսում է Ինջա գետակի աջ օժանդակն, որ և միանում է Ամենափրկիչ վանքից ներքև՝ Ինջային։ Բերդիս, որի շրջապատն պա-

Digitized by Google

տած է թանձրախիտ անտառներով, ասում են, բազմիցս ապաւինած է 'ի հնումն Կիւլստանի հայ ժողովուրդն, մանաւանդ պատերազմների ժամանակ և ազատ մնացած թշնամուց։

ԺԶ. ԳԱՐԴՄԱՆ ԳԱՒԱՌ, որ ընկած է Կուրակ և Շամքոր Գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի մէջ։ Ամենամեծ մասամբ անհարթ է գաւառիս մակերևոյթն։ Սարսափելի խոր խոր ձորեր, մութ մութ կիրճեր, օձապտոյտ խոխոմներ, բարձրագագաթ սարեր և բլուրներ և թանձրախիտ անտառներ գրաւած են գաւառիս մակերևոյթը։ Իսկ վերնամասն խիստ զուարճալի է լեռնահարթեր, ծաղկալի հովիտներ, մարգալի արօտներ, դալարագեղ լեռնալանջեր են գաւառիս Մռաւ և Արութիւն սարի կողմերն։

Ա. ԳԵՏԱՇԷՆ ԱՒԱՆ. Հիմնուած է Կուրակ [1]) գետակի ձախ ափի վերայ, խոր է գիւղատեղի ձորն և նեղ հորիզոնն. բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած են Ղռստակ և Ջրաբերդ գաւառից. բնիկ է միայն ամենափոքր մասն. հողն արքունի, մեծ մասամբ անջրեի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, կտաւհատ, գետնախնձոր, տանձ, խնձոր, դամոն, դեղձ, խաղող, ընկուզ, կեռաս, թութ, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ վեց սիւների վերայ համակ սրբատաշ տորոնագոյն քարով, երկու փոքր խորանների վերայ կայ այլ ևս երկու խորան. երկարութիւն 23 մետր 40 սանթիմ, լայնութիւն 14 մետր 30 սանթիմ։ Եկեղեցիս, որի միջից բղխում է բարեհամ ջուր, չունի արձանագրութիւն, բայց երևում է որ նորոգուած է. քահանայ 2։ Աւանումս ծաղկած է հիւսնութեան, դարբնութեան, ոսկերչութեան, դերձակութեան, թամբագործութեան,

[1]) Գետակս է սահմանագլուխ Արցախի և Թիփլիսի հոգևոր կառավարութեանց թեմերին կամ Ղարաբաղի և Գանձակի։ Գետաշէնցիքս տեղափոխուած են Ղռստակի գաւառի Խոտորաշէն գիւղից, որ այժմ աւերակ է։ Գետակս իւր սկիզբը առած է Մռաւի միջնագագաթի—Բաղրկեանի—հիւսիսային լանջերից։

սայլագործութեան, քարտաշութեան, ոստայնագործութեան և ատաղձագործութեան, և այլն արուեստներն։

Տուխ 434, արական 920, իգական 782. արական ծընունդ 51, իգական ծնունդ 32, պսակ 31. ար. ննջեցեալ 18, իգ. 11։

## ԱԻԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.

Աւանիս վարի ծայրին մօտ շինուած է մի քարուկիր մատուռ, որ ունի միջակ մեծութիւն, ցած դուռն, 7 մետր 90 սանթիմ երկարութիւն, 5 մետր 45 սանթիմ լայնութիւն՝ Նահատակ անուն։ Դասամիջի ուղղութեամբ խորանի տակ կայ մի փոս, որի մուտքն բացուած է բեմի ժողովրդահայեաց երեսից, որի մասին ասում են նահատակի գերեզման. բայց անծանօթ է անունն։

Ներքուստ հիւսիսային որմում մի քարեայ խաչի վերայ.

«Սուրբ խաչս բարեխաւս Թանկրղուլին»։

Իսկ մատրանս դռնագլուխ քարի վերայ.

«Թվ. ՌԾԻՉ. կամաւ ամենակալին Աստուծոյ շինեցաւ սուրբ Նահատակս ձեռամբ Սի.է.նի (գուցէ Սիմէօնի) և որդուն Քամալ բէկին, օգնականութեան (թեամբ) գիւղիս, թագաւորութեան Պարսից Շահ Սուլէման....»։ Մատրանս մէջ, որ և ուխտատեղի է, կան հետևեալ գրչագրերն և մասունքներն.

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ մեծութեամբ, արծաթապատ, ոսկեզօծեալ կողակալներով, որի մէջ կայ չորս աւետարանչաց և Յիսուսի Քրիստոսի բոլոր հրաշագործութեանց և բժշկութեանց պատկերներն։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ թռչնագրերն, սքանչելի ծաղիկներն, հիանալի նախշերն, ուշագրաւ նկարներն, թանկագին ներկերն, ազնիւ ոսկեզօծն և զմայլելի գեղարուեստի նրբագործութիւնն։ Մարկոսի և Ղուկասի վերջում գրուած է.

«Յիշատակ է աւետարանս Մահտեսի Ջանդուլուն [1]) և ծնողացն Վէլիջանին, Համանին և կողակցուն իւրոյ Փարուն և

[1]) Յետոյ աւելացրած է ուրիշ գրող. «որ եղև քահանայ և եդին զանուն նորա տէր Գրիգոր»։

եղբարց Պալին և Ետկարին և հանգուցեալ եղբարցն Միրաքին, Շահիջանին և ամենայն ազգականաց ամէն։ Ծրեցաւ սակաւ յիշատակարանս ձեռամբ Ալեքսան գրչի [Թ]վին ՌՇԺ, և եօթի և ըստ իմում չափու, աւէք ողորմի»։

*Յիշատակարանից*. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Նուաստ և յետին գրչի Նկղս (Նիկողայոսի) մեղապարտի, ունայնագործ մելանաւորի ի [Թ]ուաբերութեանս Ասքանազեան և Աբեթական տումարի ՌՇԺԶ. և ըստ Նորում շրջանի՝ ԴԴ. և զալստենէն Կենարարին ՌՈՀԲ. [1]) ի յստոյգ և ընտիր աւրինակէ ևս առաւել համաքայից, զի գաղափար սորին էր ի դրանէ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ի աշխարս Հոնաց.. աստուածապահ քաղաքն ի Կաֆայ առ ոտս Սրբոյն Սարգսի զաւրավարին ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ և առաջնորդութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Մարտիրոս քաջ բաբունապետի և ի տեղապահութեան Յակովբ վարդապետի... ի թագաւորութեան Պարսից Շահ Սափին, և Նախիջևանայ խանին Ալուղուլի..... Արդ այժմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս ցանկացող եղեալ աստուածարեալ և պատուական այրս մահտեսի Ծանդուլին եւ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ.... զՄէլիք Նարնպէկն... դարձեալ յիշեսջիք զՄահտեսի տէր Վարդանն, որ զաւետարանիս զմագաղաթն շնորհեաց... Դարձեալ յիշեսջիք զԴրիմեցի զլուսարոնն և զորդեակն իւր զԴաւիթն, որ մեզ տեղ շնորհեցին, որ աւարտեցաք զսուրբ գիրքս, զի դառն մահտարաժամ եղև ի քաղաքն Կափայ և մեր տեսեալ զդառնութիւն և զաղէտ մարցն, կամաւորութեամբն Աստուծոյ և հրամանաւ Նորին բնակեցաք ի Դրիմ ժամանակ ինչ և աւարտն հասուցաք ըստ մեր տկար բնութեան և ծաղկազարդեցաք ոսկով և բազում գունգգունորակօք.... Յիշատակ է սա ի յեկեղեցին Ամենափրկչին ի յերկիրն Նախիջևան ի գաւառն Երնջակ ի դէմս Սուրբ Կարապետին ի գեաւղն Շահկերտ, որ այժմ կոչեն Ղազանչիլար ի

[1]) Կամ ՌՃԺԶ.-ն սխալ է և կամ ՌՈՀԲ.-ն վասն զի Կենարարին ՌՈՀԲ. թիւն հաւասար է Հայոց ՌՃԻԱ.-ի. իսկ ՌՃԺԶ.-ն հաւասար է Քրիս. ՌՈԿԷ. թուին։

յառաջնորդութեան յայսմ նահանգիս յԵսայեայ և Առաքել քաջ րաբունապետայ . . .»։

Մեղաց գրութիւնից ազատարար Յիսուսի Քրիստոսի սոյն աւետարանն գերի է ընկնում այլազգեաց ձեռքն, որը գնում է Ջրաբերդի Մէլիք-Ադամ Ա. «որ գնեաց զսա ի հալալ ընչիւք իւրովք 'ի ձեռաց այլազգեաց . . . Նաև մաքուր արծաթօք պատեալ զարդարեաց և ընդելուզեաց ոսկով պատուականօք և յետ (եդ) զսա յիշատակ 'ի սուրբ աթոռն Եղիշէի առաքելոյն (Ջրվըշտիկ) և սուրբ լուսաւորչին Ալուանից ձեռամբ գերիմաստ և յոգնահանճար Աւագ քաջաջան վարդապետին [1]) . . . Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՄէլիք Հաթամն և հայր իւր Մէլիք Իսրայէլն և զպապն իւր Մէլիք Եսային և սորա որդոցն Ովսէփին, Մէժլումին, Իսրայէլին ևս առաւել որդւոց սոցին Սէյրաբին, Ալահղուլին, Ալահվերտին և մօրն Հերիքնազին և որդոցն ծաղկելոց նորափթթիցն Իսրայէլին և Մէժլումին և ամենայն արեանառու ննջեցելոց . . . գրեցաւ թվին ՌՄ. երկուսին, որ ըստ փրկչականին 1753»։

Բ. Աւետարան մեծադիր, հաստ, գրուած թղթի վերայ, որի սկզբում կայ ոտնալուայի, Յուդայի մատնութեան, Ղազարոսի յարութեան, Ծաղկազարդի, Քրիստոսի խաչելութեան, պատանքուելուն, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, աւետման, ծննդեան և չորս աւետարանչաց պատկերներն, բայց բոլորովին անճաշակ և զուրկ գեղարուեստի շնորհքից և ընտիր ներկերից։ Գողացած են և սորա յիշատակարանը, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն։ Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս երէց Պետանց աբեղայս ու Բրտանց Սարգիս մեր սրտի հաւժարութեամբ աւետարանս ծախեցաք Վարդանայ և առաք ի նրանէ ա. կով, բ. կապիճ հաց, աւետարանին . . . Ծարեցի Զարմանին որդին Խատապայ վկայ . . . Նաճպատինայ որդին Վահրավայ վկայութեամբ, իմ Յոսիկ Իրիցոյ վկայութեամբ, որ զգիրս գրեցի թվ. ՊԵ. քաղոց Գ. գրեցաւ»։

---

[1]) Սա ինքն է Դալի մահրասան։



Digitized by Google

ղիերէն թարգմանածն։

*Քարաճունչ* աւերակ կամ Բալլու ղալա կոչուած տեղում, որ գիւղիցս վերև է, կայ գիւղատեղի, հանգստարան և մի փոքր եկեղեցու աւերակ, որից մնում են տակաւին չորս պատերն և խորանի թաղն։

*Հին-Պարիս* աւերակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որ գտնուում են այն սարի գլխին, որ արձանացած է Ներքին և Վերին շէներքի և Նոր-Պարիս գիւղի մէջ և կոչուում է Տամփրապատուկ. Այժմ աւերակ գիւղումս բնակում են մալականներ։

Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի, որը անուանում են *Նահատակ*:

Ը. ՆՈՐ-ՊԱՐԻՍ գիւղն շատ հեռի չէ մալականներից, բնակիչք տեղափոխուած են Հին-Պարիսից, հողն բէկական, ջրարբի և արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, տակաւին չունին եկեղեցի. քահանայ մի։ Ծուխ 38, ար. 191, իգ. 165։

Թ. ԷՐՔԱՋ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր և հօրիզօնն նեղ ձորի մէջ, որի արևելեան, հարաւային և հիւսիսային կողմերն բարձր լեռներ են, բնակիչք բնիկ, որք մելիքների հետ գնացած են բնակելու Բօլնիս և յետոյ վերադարձած այս տեղ. հողն բէկական, կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գերազանց, երկար կեանք 115 տարի. եկեղեցին Սուրբ Սարգիս, հօյակապ, բարձրաշէն, կառուցեալ վեց սիւների վերայ (երկուսն միապաղաղ) երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ, լայնութիւն 14 մետր 60 սանթիմ. դրան ճակատակալ քարի վերայ. «....մէ յիշատակ թվն ՌՃԿԵ.»։ Աւագանին կողմին մօտ փոքր խորանի ճակատին մի նրբագործ խաչքարի վերայ. «Թվ. ՉԹ. ես Ակոբ կանդնեցի զխաչս Սարգիսա և կամ ամեն ծնողաց մերոց, Աստուած ողորմի»։ Եկեղեցուս արևմտեան պատին մօտ արտաքուստ. մի տապանաքարի վերայ «Թվ. ՌՄԿՁ. որ է Պօլնուսու կալն (վերադարձն) մայիսի Ի. (20) Քրիստոսի ծառայ տէր

Digitized by Google

Դանիէլ» ։ Քահանայ երկու։

Գիւղիս արեւմտեան ստորոտի խոր ձորով հոսում է *Փոքր-Կուրակ* անուն վտակն, որ է օժանդակ [1]) Կուրակ գետակին։ Գիւղիս բարեկ. Սարգիս քահանայ Տէր-Սարգսեանցի մօտ կայ.

Ա. Մի օրինակ գրչագիր, փոքրագիր, ընդհանրական գրուած թղթի վերայ, որի մէջ է Յակոբոսի, Յովհաննու և Յուդայի առաքելոց թղթերն. (անյայտացած է յիշատակարանն)։

Բ. Բացատրութիւն Հայոց ամիսների, որպէս են Նաւասարդ, Հոռի, ևն.։

Գ. Մարմնախաղութիւն և երազահան։

Դ. Բացատրութիւն յատուկ և հասարակ անուանց։

Ե. «Թարգմանութիւն ի Պարսիկ բառից» և ընդօրինակութիւն «ի գրոցն Վարդանայ աշխարհագրի» ։

Զ. Խրատ Պլուտարքոսի, անյայտ է գրողների անուններն։

Հարկ է յայտնել որ «Պայդասար» անուն ոմն հեղինակից գովասանական ոտանաւորներ են պարունակում Ս. Լուսաւորչի, Հռիփսիմեանց և Տրդատ թագաւորի մասին Բ. ձեռագրումն։ Ծուխ 78, ար. 384, իգ. 364։

Ժ. ԲՕԶԼՈՒ ՇԷՆ. Հիմնուած է Երքաջից վերև Կուրակի նոյն օժանդակի ձախ ափի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն բէկական և անջրդի, բայց հացառատ. տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի), եկեղեցին Սուրբ Մինաս, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Նոր-Պարիսից։ Ծուխ 15, ար. 80, իգ. 70։

*Սուրբ Մինաս.* ուխտատեղի. գիւղիցս վերև նոյն, օժանդակի աջ կողմում, մի հին քարուկիր փոքր եկեղեցի է սուրբ Մինաս անուն, որի մօտ կան աւերակ գիւղ և հանգստարան։

ԺԱ. ՄԱՆԱՇԻԹ կամ Մանուշ շէն. Հիմնուած է Բօզլուխից ներքև նոյն օժանդակի ձախ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, սա-

[1]) Իւր սկիզբը առած է Գոմէշ (Նոյն Մռաւ) սարի հիւսիսային կողմից։

Digitized by Google

կայն արդիւնաւէտ, տեսարանն գովելի, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 110. եկեղեցին նոր են սկսում շինել. քահանան նոյն։ Ծուխ 35, ար. 218, իգ. 141։

*Նահատակ.* Գիւղիս արևելեան կողմում ընկուզի ծառերի տակ մի մատուռ է Նահատակ անուն, որի մէջ կայ մի գերեզման, բայց տապանաքարի վերայ չ'կայ արձանագրութիւն։

*Թեօղան աւերակ,* գիւղատեղի է որ գտնուում է Ղարա-Բուլաղ գիւղն տանող ճանապարհի վերայ, մի ձորակի հիւսիսահայեաց լանջի վերայ։ Քարուկիր և սրբատաշ քարով շինուած է եկեղեցին, որի գլուխն խոնարհուած է։ Հարաւային կողմի փոքր խորանի վերայ. «Ժամանակս Շահ Սեփին, խանութիւն Մուրթուզա Ղուլի խանին Թահուլդ, կաթուղիկոս Գանձասարայ տէր Գրիգորին ԹՎ. Ռ.»։

*Այլ քարի վերայ.* «Կամաւն Աստուծոյ ես տէր Եղիշէս շինեցի սուրբ եկեղեցիս յիշատակ հոգւոյ իմոյ, կողակցին, Եկաղին, որդիքն Ատի բէկին, Նկեսլ»։

*Թեօղանի մատուռ,* աւերակիցս փոքր ինչ վերև մի քարուկիր հին մատուռ, որ ունի 5 մետր 18 սանթիմ երկարութիւն և 4 մետր 5 սանթիմ լայնութիւն, սակայն չունի արձանագրութիւն։ Արտաքուստ դրան հիւսիսային կողմում պատին յենած է քարեայ մի հին խաչ, որի երկարութիւնն է 2 մետր 35 սանթիմ, և լայնութիւնն 1 մետր 5 սանթիմ. և որի ստորոտում քանդակուած է. «Ի թուին ՉԾԷ. (1308) ես Գրիգոր ու Պապաք կանգնեցաք զխաչս ի բարեխաւսութիւն ծնողաց մերոց ԷՂոր...»։ Մատուռս նորոգած են Մանաւշեցիք. «Սուրբ եկեղեցիս Մանուշեցի շինողք են Ղևոնդ, Աւետիս, Սահակ, Գրիգոր, Դանիէլ, Սարգիս Ալիքսանեանց 1890 ամի»։ Ուխտատեղի է մատուռս, որի շրջապատն մեծ հանգստարան է, սակայն անարձանագիր են քարերն։

ԺԲ. ՀԻՆ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂ. Հիմնուած է մի հիւսիսահայեաց լանջի վերայ, որի ստորոտով հոսում է Կուրակ գետակի աջ կողմի երկրորդ օժանդակն և փոքր ինչ յետոյ

Digitized by Google

միանում նոյն գետակի հետ։ Բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն. պտուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100, եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 25 սանթիմ, լայնութիւն 12 մետր 36 սանթիմ. քահանայ մի։

*Արեւմտեան դրան ճակատակալ քարի վերայ.*

«Տնօրհօք ամենակալին մեր Ղարաբուլաղի ժողովուրդս մեծ և փոքր շինեցինք սուրբ եկեղեցիս յիշատակ հոգոց մերոց և ամենայն ննջեցելոց ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Աղուանից), ի թագաւորութեան Պարսից Շահ Սիւլէմանի խանութեան երկրիս Ուղուրլու խանին և պարոնութեան գեղիս Փարզալի բէկին, տարուղէն (հարկահան) Մուրթուզա Ղուլին, տանուտէր տէր Սիմէօն, տէր Յակոբ, տէր Ազարիէն, տէր Դաւիթ, Գրիգոր, Ազարիա, Շահնազար, Սարուխ Աւան, որ ջերմեռանդ սիրով աշխատեցին. ես Մեղիդիւթ էրեցս [1]) դրեցի թուին ՌՃԻԵ. որ կարդաք, մէկ բերան ողորմի ասէք ամէն»։

Արձանագրութեանս աջ ու ձախ կողմերում.

«Սուրբ խաչս բարեխօս Շահնազարին»։ «Ես Խօճա Անտոնս սակաւ օգնական եղէ սուրբ եկեղեցուս վարձուն յիշատակ ինձ և կողակցին Մարիանին և որդոցն Գասպարին, Մելքումին»։ «Ես Սիմէօն անարժան էրեցս կանգնեցի զսուրբ խաչս և սակաւ աշխատեցի ի վերայ սուրբ եկեղեցոյս . . .»։ Ծուխ 36, ար. 149, իգ. 147։

Կրակի դիմացող քարահանք—огнеупорная глина գտնուում է գիւղիս արևելեան կողմում խիստ մօտիկ։ Հանքից հանուած և Բագու տարուած քարերն գործադրուում են կրակով գործող մեքենաների վառարանների համար։

*Հին եկեղեցի* քարուկիր, միջակ մեծութեամբ, որ գտնուում է գիւղիս վերի ծայրում ընկուզենի ծառոց հարթակի վերայ, ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և

[1]) Եկեղեցւոյ մեծութիւնն, ութ քահանայից քանակութիւնն և գիւղիս շատ աւերակ տնաբակերն ապացուցանում են թէ գիւղս մօտաւորապէս 700 ծուխ եղած լինելու է, մինչդեռ այժմ 36 ծուխ և մի քահանայ մնացած է։

Digitized by Google

մի աւագ խորան։

*Անապատ*. այսպէս է անուանում ժողովուրդն այն քարուկիր մատուռը, որ կայ Հին եկեղեցու հիւսիսային կողմում խիստ մօտ։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ որի տապանաքարն չունի արձանագրութիւն. հետեւապէս անյայտ է մեզ ամփոփեալս։ Մատրանս և Հին եկեղեցու միջավայրն ամբողջապէս հին ամփոփեալներ են։

Բրտի շինի եղցին. Գիւղիս արեւմտեան հանդէպ վտակի ձախ ափի բարձրութեան վերայ կայ աւերակ գիւղատեղի և մի միջակ եկեղեցի։ Այժմ ոչ ոք չէ բնակուում այստեղ. բայց կանգուն մնացած է եկեղեցին։

*Միջի վանք*.

Այսպէս է կոչուում այն եկեղեցին, որ շինուած է Հին-Ղարաբուլաղից վերև նոյն օժանդակի աջ կողմում։ Եկեղեցիս շինուած է միայն մի կամարի վերայ, որի վերնամասն քանդուած և եկեղեցին ճաքած է արեւելքից արեւմուտք ուղղութեամբ. խախտուած է և բեմն։ Շատ ջանացինք գտնել արձանագրութիւն, սակայն չ'գտանք, միայն գտանք մի խաչքարի վերայ. «Այս խաչս է Կոսին» և այլ կիսատ խաչքարի վերայ. «Այս սուրբ խաչս է տէր Առաքելին Աստուծոյ»։ Եկեղեցուս մօտ կայ ընդարձակ գիւղատեղի և սրբատաշ տապանաքարերով և նրբագործ խաչարձաններով նշանաւոր հանգստարան, որի մէջ ամփոփուած են եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ և ժողովուրդ։ Զմայլում է մարդ գեղեցկաքանդակ շիրմաքարերը տեսնելով։

*Նրի վանք* (վերին վանք)

Միջի վանքից բաւական վերև վտակի ձախ ափում կառուցեալ է երկու կամարների վերայ մի քարուկիր տաճար, որ ունի մեծ և փոքր խորաններ, աւազան, լուսամուտներ և մի դուռն հարաւային կողմից։ Երկարութիւն 17 մետր 35 սանթիմ լայնութիւն 8 մետր։ *Հիւսիսային որմի վերջին կամարի տակ*. «Թվ. ՉԻ. Ես Տատար Որդի Զանասի կանգնեցի զխաչս ինձ և եղբաւր իմոյ»։ Տաճարիս մէջ տեղում

Digitized by Google

ամփոփուած է մի պատուաւոր ննջեցեալ, որի տապանաքարի վերայ փորագրուած է. «Այս է հանգիստ Սուրբ Գրիգորոյ Գանձակայ եպիսկոպոսին»։ Անվնաս մնում է տաճարս, միայն թէ գլխին բուսած են ծառեր, որք կարող են վնասել հետզհետէ մեծանալով։ Այստեղ կայ եւ գիւղատեղի վտակի ձախ հովտի վերայ և փոքր ինչ վերև հանգստարան։

## ԱԼՀԱՐԱԿ ԼՃԱԿ (38)

Մղոնաչափ է Երի-վանքից մինչև լճակս, որ տաճկերէն կոչուում է Գեօզ-գեօլ և որ շրջապատուած է անտառախիտ լեռներով։ Նրանց մէջ ամենաբարձրն է Կեփաս [1] (ըստ Տաճկ. Քեափազ) անուանած ապառաժ սարն, որ հպարտօրէն արձանացած է լճակի արևելեան հարաւային կողմում։ Սարիս լանջերի դժուարատար տեղերում հօրաններով ճարակում են քօշեր։ Լճակս բաժանուած է երկու մասի, վերնամասն կոչուում է «Ըստծու ծով» (Աստուծոյ ծով)։ Լճակիս մակերևութի խորանարդ տարածութիւնն է 54 օրավարաչափ (դեսեատին)։

Լճակիցս, որի շրջապատում տեղ տեղ դիզուած են ահագին քարեր, ելնում են ընդհանրապէս երեք տեսակ ձկներ.

Ա. տեսակն, որ ազնիւ է միւսերից, որոշուում է իւր սպիտակութեամբ և կարմիր ու սև բծերով։

Բ. տեսակն եւս ունի սպիտակ գոյն, բայց ունի միայն սև բծեր։

Գ. տեսակն ունի սև գոյն և միայն սև ու մեծ մեծ բծեր։ Բացի հիւսիսային կողմից ելած ձկներից ազնիւ և համեղ են միւս բոլոր կողմերից հանուած ձկներն։

*Կոսի կալ*

Միջի վանքի արևմտեան հանդէպ վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ մի գեղեցիկ սարահարթում կայ գիւղա-

[1]) Սարիս գլխին կայ մի գերեզման, որի տապանաքարի վերայ գրուած է թէ Կեփաս ճգնաւորի գերեզմանն է։ Հաւանական է թուում մեզ, որ Ալհարակ լեռ անուն տեղի տուած է Կեփաս անուան, որը մահմետականներն չկարողանալով ուղիղ հնչել Քեափազ են հնչում։

տեղի, հանգստարան և փոքր եկեղեցի։ Խորանի հարաւային կողմի կամարի վերայ մի խաչքարի ստորոտում. «Թվն. ՈՀԹ. է.... [1]) Աստուած ողորմի Սարգսին»։ Եկեղեցուս հարաւային կողմում հանգստարանի մէջ. «Ամիերին Մելիցքու Բուրխտ Թվին Ռ.»։ Բոլոր հին եկեղեցիներս խոզանոց արած են Գետաշէնի խոզարածներն։ Պատիւ է բերում Գետաշէնցւոց...։

ԺԳ. ՆՈՐ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ՇԷՆ. Հիմնուած է շէնս Հին-Ղարա-Բուլաղից փոքր ինչ ներքև նոյն օժանդակի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Խաչակապ, Բանանց և Փիբ գիւղերից, որք նախ գնած են Պալլի-խան հայ բէկից շինատեղի և անդի հողերը, շինած բնակարաններ և ապա բնակած այստեղ։ Տակաւին չունին եկեղեցի։ Ծուխ 25, ար. 60, իգ. 55։

Նորաշէն կամ Ենիջայ աւերակ գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, որ գտնուում է շինիցս ներքև։

## ԲԵՐԴ ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ.

Չորս կողմերից առանձնացած, վիմահերձ սեպաձև բարձրացած և դէպի արևելք երկարած մի բարձրագոյն սար է, որ գտնուում է Կիւլստան գիւղից վերև։ Ինջա գետակն նախ հոսում է բերդիս արևմտեան կողմով, ապա հիւսիսային ստորոտով և ապա դառնում դէպի արևելք, վասնորոյ գրեթէ թերակղզի ձևացած է բերդասարս, որի գլուխն բարձրանալու համար կայ մի դժուարատար և ոլոր մոլոր կածան, որ խիստ զառիվեր է։ Բերդս ունի կրկնապարիսպ, արտաքինն՝ սարի կիսով՝ արևելքից արևմուտք. իսկ երկրորդն՝ սարի գագաթի եզերքներով, որ աւելի բրգաշատ է և անմատչելի, կարող ենք ասել, և անառիկ։ Բերդիս երկարութիւնն է 230 մետր, լայնութիւնն 20 մ., պարսպի հաստութիւնն 80 սանթիմետրից մինչև $1^1/_2$ մետր։ Բերդիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի և շատ աւերակ տնատեղեր։ Բայց տակաւին կանգուն մնում են Մէլիք-Յովսէփի ապարանն, որ հիմնուած է բերդի հարաւային կողմում մուտքի աջ ու ձախ

[1]) Անընթեռնլի են կէտադրեալ բառերն։

Digitized by Google

*անկիւններում։ Բերդս ունի երկու դուռն, որից մեծն հարաւային կողմից, իսկ փոքրն հիւսիսային կողմից որ անգործածելի է։ Ապարանն բաղկացած է երկու մասից, արեւելեան և արեւմտեան, խոնարհուած են երկոցունց ծածքերն ևս, բայց տակաւին մնում են պաշտելի հնութիւններն։*

*Բայց որովհետև խմելու ջուր չկայ բերդումս, վասն որոյ բերդի վերի կողմին մօտ արեւմտեան հիւսիսային կողմից մինչև գետակն շինուած է մի նշանաւոր, թաղակապ, քարուկիր և ստորերկրեայ ական իբրև ջրի ճանապարհ, որով ջուր փոխադրած են բերդիս ջրամբարներն, որք գտնուում են ամրոցի վերի կողմին մօտ, հիւսիսային պարսպի մէջ։ Այժմ գետակն քանդելով խորացրած է իւր յատակը և բարձր մնացած է ականի բերանն։*

*Ղալաչա*

*Բերդիս հարաւային հանդէպ հարթակի վերայ կայ մի դղեակ, որը տեղական անուամբ կոչուում է Ղալաչա։ Դղեակս ամուր է և քառակուսի. չորս անկիւններում ունի չորս հաստատուն աշտարակ. իսկ հիւսիսային կողմից մի դուռն և ամեն կողմերից հրացան արձակելու ծակեր, $7^{1}/_{2}$ մետր երկարութիւն, 7 մետր լայնութիւն, $4^{1}/_{2}$ մ. բարձրութիւն և 1 մ. 28 ս. պարսպի հաստութիւն։ Այս ևս պատկանում է Մելիք-Բէկլարեաններին.*

*Դղեկիս շուրջն ընդարձակ, բայց աւերակ գիւղատեղի է, որն կարծես թէ, քաղաք եղած լինի, տակաւին պարզ երեւում են քարուկիր և խիտ առ խիտ շինուած շատ տնաբակեր, փոքր ինչ հեռուն ընդարձակ հանգստարան, բայց անարձանագիր։ Դղեկիս հարթակի ստորոտում շինուած են եղել նշանաւոր բաղնիսներ. որք կիսաւեր դրութեան մէջ են։*

## ՋԱՓԱՐԻ ՂԱԼԱ.

*Մռաւ սարից դէպի արեւելք կախուած մի դալարագեղ լանջի վերայ կայ հողաբերդ, որի արեւելեան կողմից հոսում է Ինջա գետակի աջ օժանդակն, որ և միանում է Ամենափրկիչ վանքից ներքև՝ Ինջային։ Բերդիս, որի շրջապատն պա-*

Digitized by Google

*տած է թանձրախիտ անտառներով, ասում են, բազմիցս ապաւինած է 'ի հնումն Կիւլստանի հայ ժողովուրդն, մանաւանդ պատերազմների ժամանակ և ազատ մնացած թշնամուց։*

ԺՋ. ԳԱՐԴՄԱՆ ԳԱՒԱՌ, *որ ընկած է Կուրակ և Տամքոր Գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի մէջ։ Ամենամեծ մասամբ անհարթ է գաւառիս մակերևոյթն։ Սարսափելի խոր խոր ձորեր, մութ մութ կիրճեր, օձապտոյտ խոխոմներ, բարձրագագաթ սարեր և բլուրներ և թանձրախիտ անտառներ գրաւած են գաւառիս մակերևոյթը։ Իսկ վերնամասն խիստ զուարճալի է լեռնահարթեր, ծաղկալի հովիտներ, մարգալի արօտներ, դալարագեղ լեռնալանջեր են գաւառիս Մռաւ և Արութիւն սարի կողմերն։*

Ա. ԳԵՏԱՇԷՆ ԱՒԱՆ. *Հիմնուած է Կուրակ* [1]) *գետակի ձախ ափի վերայ, խոր է գիւղատեղի ձորն և նեղ հորիզոնն. բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած են Ղաստակ և Ջրաբերդ գաւառից. բնիկ է միայն ամենափոքր մասն. հողն արքունի, մեծ մասամբ անջրեի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, կտաւհատ, գետնախնձոր, տանձ, խնձոր, դամոն, դեղձ, խաղող, ընկույզ, կեռաս, թութ, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք* 100. *եկեղեցին Սուրբ Աստուածածին, հօյակապ կառուցեալ վեց սիւների վերայ համակ սրբատաշ տորոնագոյն քարով, երկու փոքր խորանների վերայ կայ այլ ևս երկու խորան. երկարութիւն* 23 *մետր* 40 *սանթիմ, լայնութիւն* 14 *մետր* 30 *սանթիմ։ Եկեղեցիս, որի միջից բղխում է բարեհամ ջուր, չունի արձանագրութիւն, բայց երևում է որ նորոգուած է. քահանայ* 2։ *Աւանումս ծաղկած է հիւսնութեան, դարբնութեան, ոսկերչութեան, դերձակութեան, թամբագործութեան,*

---

[1]) *Գետակս է սահմանագլուխ Արցախի և Թիֆլիսի հոգևոր կառավարութեանց թեմերին կամ Ղարաբաղի և Գանձակի։ Գետաշէնցիքս տեղափոխուած են Ղաստակի գաւառի Խոտորաշէն գիւղից, որ այժմ աւերակ է։ Գետակս իւր ակիզբը առած է Մռաւի միջնագագաթի—Բաղրկեանի—հիւսիսային լանջերից։*

Digitized by Google

սայլագործութեան, քարտաշութեան, ոստայնագործութեան և ատաղձագործութեան, և այլն արուեստներն։

Ծուխ 434, արական 920, իգական 782. արական ծընունդ 51, իգական ծնունդ 32, պսակ 31. ար. ննջեցեալ 18, իգ. 11։

## ԱԻԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.

Աւանիս վարի ծայրին մօտ շինուած է մի քարուկիր մատուռ, որ ունի միջակ մեծութիւն, ցած դուռն, 7 մետր 90 սանթիմ երկարութիւն, 5 մետր 45 սանթիմ լայնութիւն՝ Նահատակ անուն։ Դասամիջի ուղղութեամբ խորանի տակ կայ մի փոս, որի մուտքն բացուած է բեմի ժողովրդահայեաց երեսից, որի մասին ասում են նահատակի գերեզման. բայց անծանօթ է անունն։

Ներքուստ հիւսիսային որմում մի քարեայ խաչի վերայ.

«Սուրբ խաչս բարեխաւս Թանկրղուլին»։

Իսկ մատրանս դռնագլուխ քարի վերայ.

«Թվ. ՌԾԻՋ. կամաւ ամենակալին Աստուծոյ շինեցաւ սուրբ Նահատակս ձեռամբ Սի.է.նի (կուցէ Սիմէօնի) և որդուն Քամալ բէկին, օգնականութեան (թեամբ) գիւղիս, թագաւորութեան Պարսից Շահ Սուլէման....»։ Մատրանս մէջ, որ և ուխտատեղի է, կան հետևեալ գրչագրերն և մասունքներն.

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ մեծութեամբ, արծաթապատ, ոսկեզօծեալ կողակալներով, որի մէջ կայ չորս աւետարանչաց և Յիսուսի Քրիստոսի բոլոր հրաշագործութեանց և բժշկութեանց պատկերններն։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ թռչնագրերն, սքանչելի ծաղիկներն, հիանալի նախշերն, ուշագրաւ նկարներն, թանկագին ներկերն, ազնիւ ոսկեզօծն և զմայլելի գեղարուեստի նրբագործութիւնն։ Մարկոսի և Ղուկասի վերջում գրուած է.

«Յիշատակ է աւետարանս Մահտեսի Ջանդուլուն [1]) և ծնողացն Վէլիջանին, Համանին և կողակցուն իւրոյ Փարուն և

[1]) Ցետոյ աւելացրած է ուրիշ գրող. «որ եղև քահանայ և եղին զանուն նորա տէր Գրիգոր»։

եղբարց Պապին և Եոկարին և հանգուցեալ եղբարցն Միրաքին, Շահիջանին և ամենայն ազգականաց ամէն։ Ծրեցաւ սակաւ յիշատակարանս ձեռամբ Ալեքսան գրչի Թվին ՌՃԺ, և եօթի և ըստ իմում չափու, ասէք ողորմի»։

*Յիշատակարանից*. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Նուաստ և յետին գրչի Նկղս (Նիկողայոսի) մեղապարտի, ունայնազործ մելանաւորի ի թուաբերութեանս Ազքանազեան և Աբեթական տումարի ՌՃԺՁ. և ըստ Նորում շրջանի՝ ԴԴ. և զալստենէն Կենարարին ՌՈՀԲ. [1]) ի յստոյգ և ընտիր աւրինակէ ևս առաւել համաբայիցն, զի գաղափար սորին էր ի դրանէ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ի աշխարս Հոնաց.. աստուածապահ քաղաքն ի Կաֆայ առ ոտս Սրբոյն Սարգսի գաւրավարին ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ և առաջնորդութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Մարտիրոս քաջ րաբունապետի և ի տեղապահութեան Յակովբ վարդապետի... ի թագաւորութեան Պարսից Շահ Սափին, և Նախիջևանայ խանին Ալուղուլի..... Արդ այժմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս ցանկացող եղեալ աստուածարեալ և պատուական այրս մահտեսի Ճանդուրին եւ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ.... զՄէլիք Նարնպէկն... դարձեալ յիշեսջիք զՄահտեսի տէր Վարդանն, որ զաւետարանիս զմագաղաթն շնորհեաց... Դարձեալ յիշեսջիք զՂրիմեցի զլուսարոնն և զորդեակն իւր զԴաւիթն, որ մեզ տեղ շնորհեցին, որ աւարտեցաք զսուրբ գիրքս, զի դառն մահտարաժամ եղև ի քաղաքն Կափայ և մեր տեսեալ զդառնութիւն և զաղէտ մարցն, կամաւորութեամբն Աստուծոյ և հրամանաւ Նորին բնակեցաք ի Ղրիմ ժամանակ ինչ և աւարտն հասուցաք ըստ մեր տկար բնութեան և ծաղկազարդեցաք ոսկով և բազում դունգզունորակօք.... Յիշատակ է սա ի յեկեղեցին Ամենափրկչին ի յերկիրն Նախիջևան ի գաւառն Երնջակ ի դէմս Սուրբ Կարապետին ի գեաւղն Շահկերտ, որ այժմ կոչեն Ղազանչիլար ի

---

[1]) Կամ ՌՃԺՁ.-Ն սխալ է և կամ ՌՈՀԲ.-Ն վասն զի Կենարարին ՌՈՀԲ. թուն հաւասար է Հայոց ՌՃԻԱ.-ի. իսկ ՌՃԺՁ.-Ն հաւասար է Քրիչ. ՌՈԿԷ. թուին։

Digitized by Google

յառաջնորդութեան յայսմ նահանգիս յԵսայեայ և Առաքել քաջ լաբունապետաց ...»:

Մեղաց գրութիւնից ազատարար Յիսուսի Քրիստոսի սոյն աւետարանն գերի է ընկնում այլազգեաց ձեռքն, որը գնում է Ջրաբերդի Մէլիք-Ադամ Ա. «որ գնեաց զսա ի հալալ ընչից խուրովք 'ի ձեռաց այլազգեաց... նաև մաքուր արծաթօք պատեալ զարդարեաց և ընդելուզեաց ոսկով պատուականօք և յետ (եդ) զսա յիշատակ 'ի սուրբ աթոռն Եղիշէի առաքելոյն (Ջրվըշտիկ) և սուրբ լուսաւորչին Աղուանից ձեռամբ վերիմաստ և յոգնահանճար Աւագ քաջաջան վարդապետին ¹)... Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՄէլիք Հաթամն և հայր իւր Մէլիք Իսրայէլն և զպապն իւր Մէլիք Եսային և սորա որդոցն Ովսէփին, Մէժլումին, Իսրայէլին ևս առաւել որդւոց սոցին Սէյրաքին, Ալլահղուլին, Ալլահվերտին և մօրն Հերիքնազին և որդոցն ծաղկելոց նորափթթիցն Իսրայէլին և Մէժլումին և ամենայն արեանառու ննջեցելոց... գրեցաւ թվին ՌՄ. նրկուսին, որ ըստ փրկչականին 1753»:

Բ. Աւետարան մեծադիր, հաստ, գրուած թղթի վերայ, որի սկզբում կայ ոտնալուայի, Յուդայի մատնութեան, Ղազարոսի յարութեան, Ծաղկազարդի, Քրիստոսի խաչելութեան, պատանքուելուն, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, աւետման, ծննդեան և չորս աւետարանչաց պատկերներն, բայց բոլորովին անճաշակ և զուրկ գեղարուեստի շնորհքից և ընտիր ներկերից: Գողացած են և սորա յիշատակարանը, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն: Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս երէց Պետանց աբեղայս ու Բրտանց Սարգիս մեր սրտի հաւժարութեամբ աւետարանս ծախեցաք Վարդանայ և առաք ի նրանէ ա. կով, բ. կայլին հաց, աւետարանին... Ծարեցի Զարմանին որդին Խատապայ վկայ... Նաճպատինայ որդին Վահրավայ վկայութեամբ, իմ Յոյսիկ Իրիցոյ վկայութեամբ, որ զգիրս գրեցի թվ. ՊԵ. քաղոց Գ. գրեցաւ»:

---

¹) Սա ինքն է Դալի մահրասան:



Digitized by Google

Իսկ միւս թերթի առաջին երեսում գրող Կարապետ աբեղան յայտնում է թէ կազմել տուած է աւետարանս թուին «ՊԻԱ.»։ «Զաւետարանս թագւորնայ բերուց (բերաւ) գինն առաւ, ու տարաւ»։

Գ. Աւետարան մեծադիր, մագաղաթեայ, ամբողջապէս գրուած գլխագրերով, որ ունի միայն ծաղկազարդի և չորս աւետարանչաց պատկերներ, Քրիստոսի պատկերը որ ձախ ձեռնով բռնած է աւետարանը և աջ ձեռնով օրհնում է մի վեղարաւոր և մի գլխաբաց մարդ։ Վեղարաւորի գլխից վերև գրուած է. «Քրիստոս որդի Աստուծոյ, ընկալ զբանաւոր զաւետարանս մեղապարտիս Սահակայ իբրև զՏէր և ողորմեա»։ Իսկ գլխաբաց մարդից վերև, «Առաքել ծառայ Աստուծոյ»։ Աւետարանիս սկզբի նախշերի գլուխներին և տակերին գրուած են սպիտակ ներկով. «Տէր Աստուած, ողորմեա Առաքելին... Տէր Աստուած դթայ ի հոգի Ռեմանոսի ծառային քո. ամէն. Աստուած իմ Յիսուս ողորմեա մեղուցեալ ոգւոյս, ամէն [1])»։ Հարկ է յայտնել թէ միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նկարներն, ծաղիկներն և ոսկեզօծն։ Համարեա թէ երեք յիշատակարան ունի աւետարանս, առաջին յիշատակարանի վերջում գրուած է. «Տէր Աստուած ամենակալ, նորոգեա 'ի կեանս անծերանալիս զՍահակ ստացող սուրբ աւետարանիս ԛԻСН ամէն»։ Նոյն իսկ աւետարանս գրողի գրչով գրուած է և յիշատակարանս և յունարէն տառերս։ Երկրորդ Յիշատակարանովս յայտնում է գրողն թէ աւետարանս ստացած է Սահակ կրօնաւորն, որ եղած էր Անեցի և աշակերտ Հաղբատայ. յիշում է նաև, թէ Սարգիս կրօնաւորն միաբան Հաղբատի, «իբրև զիմաստուն վաճառական խնդրող եղեալ պատուական մարգարտին և «գտեալ զսա (զաւետարանս) ի գաւառի անդ Անւոյ, մեծածախ, ոսկեգիր և ոսկեճաճանչ ծաղկաւք զարդարեալ, ստացաւ զսա 'ի հալալ ընչից իւրոց... և ընծայեաց զսա մեծ կոյմանց եպիսկոպոսարանիս, որ է իւր տեղի սննդեան և 'ի տարւոջն Բ. աւր ժամ.... ընծայեցաւ կենաց

[1]) Գրուած է Մատթէոսի վերջում նոյն իսկ աւետարանս գրողի գրչով. «Տէր Աստուած ողորմեա Սարգսի կուսակրաւն քահանայի....»։

աւետարանս Սուրբ Գրիգորիս 'ի թուականութեանս ՈՀԲ. (1223) 'ի յիշխանութիւնս հզաւրին Հասանայ որդւոյ Վախթանգայ և ի հայրապետութեանս (Աղուանից) տեառն Յովհաննիսի։ Եւ արդ գրեցաւ սա և ծաղկեալ կազմեցաւ յամի, յորում էր թիւ համարոյ թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից և նոյնքանեաց տասանց, իսկ նորայս շրջանի միոյ հարիւրոյ քսան և ութեակ [1]) թուոյ ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակոբայ, յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեանն Հայոց արևմտայինն կողման Լևոնի քրիստոսասէր և յաղթող թագաւորի և մերոյ կողմանցս և Վրաց Գէորգեայ թագաւորի և 'ի սպարապետութեան Զաքարիա Շահանշահի . . . . զբովանդակ գոյք ծնողաց մերոց և եղբարց ծախեցաք և շինեցաք զաստուածաբնակ սուրբ եկեղեցիքս և անդ եդաք զսուրբ աւետարանս Աստուծոյ, որ շինեցաւ 'ի մէնջ ի Վանիս Արջուառճի . . . . »։

Յետոյ կազմուած է աւետարանս նախ Հոռոմոսի վանքում (Օձուն գիւղի կողմերում) «հրամանաւ հաւրն Մխիթարայ»։ Սորանից ներքև գրուած է. «Ի թվ. ՉՀԴ. կամաւ ամենակալին Աստուծոյ ես տէր Վանական գտի հնացեալ և աւերեալ զսուրբ աւետարանս և ետու վերստին նորոգել . . . »։ Շարայարած է երրորդ անգամ կազմողն. «ՊԼԲ. էր, մեհեկի ամսի ԻԶ. էր, որ կազմեցաւ, որ է սուրբ աւետարանս Մեծ Կողմանց Խաչենոյ Եպիսկոպոսարանէն Մայրաքաղաքէնս [2]), իշխանութեան պարոն Ջալալին, եպիսկոպոսութեան տէր Գրիգորին Գեռաքարեցին (սոյն) . . . »։ Կցած է չորրորդ անգամ կազմել տուողն գրելով Մարկոսի վերջում 'ի միջի այլոց. «Ուլախաթուն . . . զի յոյժ հնացեալ էր սուրբ աւետարանս, ետ նորոգել զսա ի ժամանակիս, որ է Մատխան (՞) եկն Թաւրէզ թվ. ՋԽԶ . . . »։

Դ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ,

---

[1]) Կոչուում է այս փոքր թուական Հայոց որ շինուած է Փառիսոսցի Սարկաւագ Յով. վարդապետն փրկչական 1116։

[2]) Հաւանական է որ այդ ժամանակներում եպիսկոպոսանիստ աթոռն եղած լինի մեզ ծանօթ Մայրաքաղաքին մէջ։

որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ, բայց անճաշակ են նոյն պատկերներն, ծաղիկներն և թռչնագրերն, միայն գեղեցիկ են փոքր տառերն։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ աւետարանս այս ՚ի գիւղս որ կոչի Դաստիգիւր (Դաստակիւլ) ձեռամբ Սարգիս երիցու ի Թուականիս ՌՃԻԲ.»։ Երեք աւետարանների (բացի Յովհաննիսից) վերջերում գրուած է. «Յիշատակ է Սուրբ աւետարանս Եարամիշին և իւր որդի Ամիրխոճին, Թումանին . . . թվ. ՌՃԻԶ.»։

*Մասունքներ*

Ա. Մասն *կենաց փայտէն* զետեղուած մի արծաթեայ փոքր խաչում.

Բ. Մասն *բազկին Եղիշ առաքեալի*, որ կայ մի արծաթեայ, ոսկեզօծեալ աջում, որի վերայ գրուած է. «Այս է աջ սրբոյն Եղիշէի առաքելոյն, աշխատողքս՝ որ այ (է) Իգնատիոս եպիսկոպոս, որ եբեր սուրբ նշխարս ի Կաֆայու (է) յիշատակ սորա, տէր Ոսկան եպիսկոպոս»։ «Կամաւն Աստուծոյ Կարապետ եպիսկոպոս եւոյ նորոգեցի, Աստուած ողորմի ասացէք»։ Աջիս բազկի ՚տակի կողմի վերայ. «Կամաւն Աստուծոյ Մուրատս որդի Նիազի շինեցի սուրբ աջս, Աստուած ողորմի ասացէք. առաջնորդութեան Ոսկան եպիսկոպոսին, թվն. ՌԿԸ. էր»։

Գ. Մասն անյայտ սրբի, զետեղուած մի ականազարդ խաչում։

Աւելորդ է յայտնել թէ աւետարաններս և մասունքներս բերած են իւրեանց հետ Ջրաբերդից՝ ժողովրդեան հետ տեղափոխուող քահանայք։

*Անապատ*

Մի փոքր եկեղեցի է շինուած աւանիս վերի ծայրում գետակի ձախ ափում, քարուկիր կառուցեալ մի կամարի վերայ. որ ունի միայն մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, մի մեծ և մի փոքր խորան հիւսիսային կողմում. 12 մետր 14 սանթիմ երկարութիւն 7 մետր 15 սանթիմ լայնութիւն։ Դռնագլխի քարի վերայ. «Այս է Մէլիք Թամրազին (կիւլ. Մէլիք) որդի Սարուխանին եսպար Եաւրին.

Քապաճին Ապովի որդի, որ 1-ի Մէլիք Օսեփին Վէլուխոյ Պէհէզ Սարգսին, Պէհէզ»։ Անհասկանալի է արձանագրութեանս վերջին բառի իմաստն։ Գուցէ «Որ 1-ի»—Ա. Մէլիք-Յովսէփին։

Ներսում միջնակամարի հարաւային կողմի կիսապատուանդանի քարին վերայ. «Ես Աքոլեցի Գրիգորի որդի Պօղոսին մար (մայր), Եփրեմին քոր (քոյր) Թագուհին [1])»։

Շինութեան թուականն է սորանից վերև խոյակի վերայ. «Թվ. ՌՃԴՐ.»։

Անապատիս արևելեան և արևմտեան կողմերում եղած են խուցեր, դեռ մի քանիսն կանգուն են այժմ։ Հաստատում են թէ Կուսանոց եղած է այս, երկար ժամանակ նըստած են այստեղ կուսանք, որոց մէջ եղած է և մի կոյս Մէլիք-Բէկլարեանների տոհմից, որի պատճառաւ Մէլիք-Թամբազին որդին նորոգել տուած է անապատս։

Անապատիս արևմտեան կողմին խիստ մօտ է Հայոց Ուսումնարանի շէնքն, որ դեռ կիսատ է և ունի 34 մետր 45 սանթիմ երկարութիւն և (պատշգամով միասին) 11 մետր լայնութիւն։

## ԵՂՆԱՍԱՐ ՎԱՆՔ.

Հիմնուած է գետաշէնիս հարաւային հանդէպ եղած լեռնաբազկի սարահարթի վերայ՝ յանուն Եղիշէի առաքելոյն։ Վանքս կառուցեալ է երկու սիւների վերայ համակ սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 12 մետր 43 սանթիմ, լայնութիւն 10 մետր 33 սանթիմ։ Դրան հարաւային սեմի վերայ. «Թ. ՌՃԼԵ. ես Նա..ո..ա Մովսէս էրից»։

Հիւսիսային սեմի վերայ.

«Ի հոպեկեանէ Ազատարարէ Գ. թուահամարէ մետասան տարեկ վեր տար (1311). ես անարժան տէր Ղազարս գրեցի»։ Երևում է որ վանքս նորոգուած է երբեմն երբեմն։ Վանքս ունեցած է շրջապարիսպ և թաղակապ, գեղեցիկ սենեակներ, յորոց այժմ եօթն կանգուն և եօթն կիսակործան են։ Նմա-

[1]) Իմաստն է. Ես եմ Աքուլեցի Գրիգորի որդի Պօղոսին մայրն և Եփրեմի քոյր Թագուհին։

Digitized by Google

նապէս կործանուած են շրջապարսպի արևելեան և արևմտեան պատերն և վանքիս հիւսիսային որմի արտաքին երեսն։

*Հին հանգստարան*. Գետաշէն աւանիս հանգստարանի հին մասումն կան շատ հին գերեզմաններ, որոց գլխաւոր խաչարձաններն զարդարուած են հիանալի նախշերով և քանդակներով։ Այնքան գեղեցիկ են փորուածքներն, մինչև անգամ այցելուն զմայլում է ժամանակին քանդակագործութեան գեղարուեստի նուրբ ճաշակին և ընտիր ոճին վերայ։ Խաչարձաններիցս մէկի վերայ փորագրուած է. «Խաչս յիշատակ հաւրն իմոյ Խունին և մաւրն իմոյ Գուլին Թվ. ՃՂԱ.»։ Կից սրան. «Ես Ետկար աղէս կանգնեցուցի. ես մեղաւորս Ազարիա»։

Այլ խաչարձանի վերայ քանդակագործուած է մի ձիաւոր մարդ, որ վահանը կապած իւր ձախ բազկի վերայ գեղարդը խրած է մի այլ փախչող ձիաւորի սնակուշտն, որ ուժասպառ եղած է։ Առաջնոյն թիկնապահն, վեր առած վահան և նետեր, վազում է իւր տիրոջ ետևից։ Փորագրուած է քաջի ստորոտում. «Թվ. ՋՂԹ. Տէէն Ազարի էչ (էջ) իւր Բ. թաւրովն (թորով, թրով), ողորմի ասացէք»։ Հանգստարանումս կան և մելիքազուններև գերեզման, որք են Մէլիք-Մնացականեաններւ ցեղից։

## Մրցունիս

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան աւանիս արևմտեան կողմում գետակին ձախ կողմի բարձր լանջի վերայ։ Արդէն գոմանոց փոխած են գիւղիս աւերակը Գետաշէնցիք, բայց քարուկիր եկեղեցին կանգուն մնում է փոքր ինչ վերև աղբիւրի մօտ, որ շինուած է մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան, մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, 12 մետր երկարութիւն, 6 մետր 95 սանթիմ լայնութիւն։ Խորանի վէմ քարն ունի հիանալի նախշուն քանդակներ, բայց չունի գիր։ Դրան մօտ մի խաչքարի վերայ.

«Յովհանէսի մորն Նուրացիանին»։ Նոյն արևմտեան ար-

տաքին ճակատում. «Թիւ ՉԷ. Ես Եղաճ անշաճ կանգնեցի զսուրբ Սարգիսս ինձ և եղբաւր իմոյ Վարդանայ»։ Մի կարականաձև տաշուած քարի վերայ, որ գռնագլուխ եղած է, այժմ ընկած է դրան հիւսիսային կողմում արտաքուստ. «Թվ. ՉԼԴ. կամաւն Աստուծոյ և հրամանաւ սուրբ հայրապետին Ըստեփանոսի, եպիսկոպոսութեան տէր Գրիգորի.. Սոմաճին, ես Յովակիմս . . . ի բարեխաւսութիւն հոգոյ իմոյ»։ Այս տեղ, դրանս առաջ մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ փորագրուած է. «Վասն Մկրտիչ եպիսկոպոսի հոգւոյն փրկութեան»։

Բ. ԱԲԼԱՀ ԳԻՒՂ. *Հիմնուած է Գետաշէնի հիւսիսային* կողմում մի ձորի մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, փոքր մասն տեղափոխուած Հաթերքից և այլ տեղերից, հողն արքունի, մեծ մասամբ ջրարբի և արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և քաղցրահամ ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Մինաս, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, - երկարութիւն 18 մետր 85 սանթիմ, լայնութիւն 10 մետր 30 սանթիմ։ *Արձանագրութիւն*. «Թվ. ՌՃՁԱ. յիշատակ է Պետրոսին, Յակոբին, Մրզին տրոպ (տրոպ) տէր Պօղոսին, որ էինք որդիք Աւետիսի՝ ազգէն Հասանայ, որ էր ժամանակն Վալի Նամատին (Նատր Շահին), որ կոչի Թահմազ, որ թագաւորեցաւ, ի երկրին Բարսից բազում գաւառս աւերեաց»։ Քահանան գալիս է Սուլուկ գիւղից։ Ծուխ 34, ար. 91, իգ. 66, ար. ծնունդ 8, իգ. 5, պսակ 3, ար. ննջ. 3, իգ. 2։

Տաճարումս կայ Գ. գրչագիր.

Ա. Աւետարան պատկերազարդ, գրուած թղթի վերայ, միջակ դիրքով, միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նախշերն, թռչնագրերն և ծաղիկներն։ *Յիշատակարանից*. «Եւ արդ ես մեղապարտ գծողս Նիկոլայոս . . գրեցի զաւետարանս ի քաղաքս, որ կոչի Վան ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան զաւրավարիս ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս Վարակայ տէր Յովհաննիսի և 'ի թագաւորութեան Ջհան Շահի Միրզին»։

Digitized by Google

Յեսայ գրուած է. «Ես Փիլիպպոս կաթուղիկոս դայս աւետարանս ետու Սաթեցի Յակոբին, որ իւրն յիշատակ դնէ»։ Մարկոսի վերջում և յիշատակարանի նման «Ես Մարտիրոս եպիսկոպոս Էջմիածնայ Պօղուէն գնեցի աւետարանս ու Գ. չարականաց և գրի ի գաւառն սուրբ Էջմիածնայ»։ Դժուարին է իմանալ թէ ինչ տարթի. ընկած է այստեղ աւետարանս։

Բ. Աւետարան մեծադիր, գրուած հաստ թղթի վերայ, առանց պատկերի, անյայտ է գրողի անունն և տեղն, գրուած է միայն յիշատակարանի տեղ. «Թվին. ՌճՁԳ. էր». իսկ Մարկոսի վերջում. «Ի թվականիս ՌճՂԱ. էր ես Ամիր Վա՞սաղ և Սուգի Վարքել իշխանս չինեցի եկեղեցիս, և գաւառանս, առուն հանեցի Կիննեվանուց ձորերէն ու սարերէն. ընակիչք գիւղիս խստացան տալէնք Գ. ժամ կատարոցն Աստուծոյ ուրո՞նի։ Դարձեալ կամուրջն չինեցի, ու կաղն կապեցի. Թձ. (900) անծին յերինջ (չծնուած երինջ) մորթեցի, ոչխարաց, ղոչից, գառնից սուս[1]). այս եղաւ դարձեալ Բուխանի (սաւնասան) մուլքն իմն էր, ջուր չունէր, շաղաէնն տ. ուր ծակ քարով ջուր տվի իմ մլքի խաթրին համար»։

Աւետարանիս սկզբում. «Տա՛ Աստուած փառ (որ) երեկ, Ղարապաղս կայալ, պարոն տէր Ո՛հանն Գանձոյ քաղաքէն շատ գերի ազատեց, շատ գիրանք ա. չարականներ Նրեա Սուրբ Եղիշեայ առաքեալին վանքն. դ. մաշտոց, ա. աւետարան, ա. սաղմոսարան, ա. աղթարք, ա. խրատագիրք տուի տէր Մելքիսեթին...։ Տէր Ո՛հանէս Ղալաչեկ[2]) ես այս գիրանքս ազատեցինք անաւրինաց ձեռաքէն, տվինք մեր հոգիս ա. աւետարան տվի Ոսկեան, ա. չարականաց տվի Աւանէս էրէցն Տաշվացի. թիւն ՌՃՁ. էր»։

Գ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, առանց յիշատակարանի, միայն Ղուկասի վերջում գրուած է. «Յանուն Աստուծոյ ես Մուրադչէս ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ Խաչատուր Իրիցիդ.. ի գօռաէն (գաւառէն) Եղի-

[1]) Բացի ոչխարից-խոյից և գառներից։

[2]) Թերևս մտահան արած չէ ընթերցողն Հաթերքեցի Տէր-Յովհաննէս Ղալաբէկը։ Երևում է որ աւետարանս բերուած է Հաթերքից։

չէի առաքելոյն 'ի յաժմուոյն Ջրվշտկայ [1])... և սպասաւորին սուրբ ուխտին Հախպատայ.. 'ի Թվ. ՊՂԷ. 'ի տրէ ամսոյ 'ի ԻԵ. Աստուած շնորհաւոր անէ. ամէն»։

*Ս. Յովհաննէս ուխտատեղի*. Գիւղիս հիւսիսային կողմում բարձր սարի գլխին մի փոքր խաչարձան է, որի մօտ կան մեծ մեծ հացի և կաղնի ծառեր։ Խաչիս վերայ եղած է մատուռ, որ վաղուց արդէն փլած է։

Գ. ԲԱԽՇԻ կամ ՀԱՃԻ ԳԻՒՂ. Շինուած է Աբլահի հարաւ արևմտեան կողմում, մի ձորակի ձախ լանջի վերայ. բնակիչք 1870 Թուին տեղափոխուած են այստեղ Հաճի-քեանդ ամարանոցից մարմնաւոր կառավարութեան հրամանաւ, հողն արգաւանդ, լեռնային, անջրդի, միջակ արդիւնաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 29 սանթիմ, լայնութիւն 8 մետր 29 սանթիմ։ Եկեղեցուս դրան մէջ, ներքուստ արևմտեան որմի վերայ. «Սուրբ խաչս էտղար (յիշատակ) Եղիսաբէթ Թվ. ՌՀԹ.»։ Յայտնի է որ եկեղեցիս հնաշէն է, գիւղս արդէն աւերակ եղած է, նոր բնակչաց եկած ժամանակ. խիստ մեծ է հին հանգստարանն ծաւալն։ Ծուխ 36, ար. 127, իգ. 93, ար. ծն. 5, իգ. 3, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

Դ. ՍՈՒԼՈՒԿ ԳԻՒՂ. Շատ հեռի չէ Բախշի գիւղից Սուլուկ կամ Ազատ գիւղն, որ հիմնուած է Պանդ անուն սարի արևելահարաւային լանջին վերայ. բնակիչներից բնիկ 15 գերդաստան, Խոյից գաղթած 20, Բօզլուխից եկած 7, իսկ Բախշի գիւղից տեղափոխուած 8 ծուխ։ Հողն արգաւանդ, լեռնային անջրդի և սակաւ արդիւնաւէտ, գերազանց օդն, կլիման և ջուրն և տեսարանն երկար կեանք 100 տարի եկեղեցին Ս. Յովհաննէս Մկրտիչ [2]) քարուկիր, կառուցեալ չորս սիւների

[1]) Կարծում ենք որ Ողտի-Մատուռ աւերակ գիւղացի է (գտնուում է Ջրվշտիկ վանքի մօտ) աւետարանիս ծախողն։

[2]) Տաճարիս հիւսիսային կողմում, դրան վերայ բարեպաշտ ոմն շինած է երկյարկ զանգատուն. «Սուրբ Աստուածածին (սխալմամբ գրուած է) եկեղեցւոյ զանկագատունս շինեցի արդեամբ Մակի Պետրոսեան Աւալեանցի ի յիշատակ հանգուցեալ որդւոյ իւրոյ Խաչատուրի 1890 յամի մայիսի 10 օրն»։

Digitized by Google

վերայ, երկարութիւն 16 մետր 80 սանթիմ լայնութիւն 10 մետր 40 սանթիմ։ *Արձանագրութիւն*.

«Շնորհօք Ամենակալին ես Մէլքէմ դամաւս շինեցի եկեղեցիս յիշատակ ինձ և նախնեացս իմոց պարոն Աղային, Մէլիք Ետկեարին, Մէլիք Աղապէկին, Ղամար-Սուլթանին և իւր ծնողին Մէլիք Պաղուն, Աւար խաթունին, կողակցին Սավոյինային և եղբօրն. Պատօ պէկին, Աղասի պէկին. թվ. Ռ...»։ Քահանայ մի։ Ծուխ 50, ար. 192, իգ. 181, ար. ծն. 7, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

*Վանք* (աւանդութեամբ Երմողեայ քահանային)

Գտնուում է Սուլուկից քառորդ մղոնաչափ վերև մի սեռի բլրակի վերայ, որ կախուած է երկու առուակների մէջ։ Մատրանս, որ շինուած է հնուց անտաշ քարերով, խոնարհուած է գլուխն, մնում են այժմ միայն չորս պատերն։ *Դռնագլուխ քարի վերայ*.

«Թուին ՉԻԸ. ես Մխիթար ու Տիրածէր շինեցաք զեկեղեցիս ի հայրապետութեան տէր Ըստեփաննոսի Աղուանից կաթուղիկոսի»։ *Փոքր ինչ վերեւ դռնագլխից*. «Ապաղայ Ելչ խանին ու Խարայնախին Աւառս լեղով շինեցի զեկեղեցիս»։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ, որի շիրմաքարն կոտրուած է միջից, կտորները միմեանց մօտ բերելով՝ կարդացինք հետևեալը. «Այս է հանգիստս Սայի որդի Հասանայ փեսայիս»։ Դարձեալ ներսում մի կոտրած խաչարձանի վերայ. «Թվ. ՌԻԳ. է....»։ Այլ տապանաքարի վերայ դրսում. «Այս է հանգիստ Միսայէլայ Սասնի որդի, որք կարդէք, յաղաւթս յիշեցէք թվ. Չ.»։ Մեծ հանգստարան տարածուած է մատրանս շուրջն, յորոց շատերն ունին նշանաւոր տապանաքարեր և գեղեցկաքանդակ խաչարձաններ։ *Մի մեծ խաչարձանի վերայ*. «Կամաւն Աստուծոյ կանգնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն Մալսուկին և ծնողաց իւրոց և եղբարց իւրոց Արթուշին, Խաչին, Շահմէլիք խաթունին թվ. ՊՂՉ.»։ Մատրանս հիւսիսային կողմում. «Այս է հանգիստ Ջևանայ որդի Հասանայ'ի թվ. ՉԿԴ։»։

Digitized by Google

Մատրանս արևմտեան կողմում կայ գիւղատեղի։ Հետքերից երևում է, որ նշանաւոր գիւղ եղած է այս։

## ՊԱՆԴԱԼԻՈՆ ՎԱՆՔ (39)

Վանքս հիմնուած է նոյնանուն սարի բարձր գագաթին վերայ։ Մատուռից մինչև սարիս գլուխն շարունակ զառիվեր է, բարձրանում է մարդ երկու ժամում և իջնում երեք քառորդ ժամում։ Զուաձև բարձրացած է վանքաբարձ սարն [1]) և բոլորովին առանձնացած իւր շրջապատի բոլոր լեռներից։ Երկու մեծ կալատեղի չափ տափարակ է վանքասարիս կատարն, որի վերայ վաղուց եղած է մեծ վանք, շատ սենեակներն և միաբանութիւն։ Բայց այժմ մի մատուռ է շինուած հին վանքի տեղում, որն վաղուց փլած է արդէն։ Բարեպաշտ ոմն Գանձակեցի բարեկ. Սարգիս քահանայ Ազարեանց ի հիմանէ նորոգած է մատուռս ի յիշատակ վախճանեալ իւր Յովհաննէս որդուն։ Իսկ մատրանս երկաթեայ դուռն յիշատակ է նոյնպէս Գանձակեցի Պ. Մկրտիչ Յովհաննիսեանին։ Մեծ ուխտատեղի է մատուռս, որի ուխտի օրն է Ս. Աստուածածնայ տօնն։

## ՀԱՃԻ ՔԵԱՆԴ.

Գտնուում է Սուլուկի հիւսիսային կողմում մի անտառապատ և բարձր սարահարթի վերայ։ Ինչպէս կանխաւ իմացանք բնակում էին այստեղ Բախշի կամ Հաճի-քեանդի բնակիչներն։ Բայց 1870 թուին կառավարութեան հրամանաւ այս տեղն փոխուեցաւ *ամառանոց* Գանձակ քաղաքի՝ միևնոյն Հաճի-քեանդ անուամբ։ Այժմ շինած են գեղեցիկ բնակարաններ, որք ներկայացնում են իբր մի կատարեալ փոքրիկ քաղաք, որի մէջ ամրան ամիսներում լինում են՝ հեռագրա-

[1]) Վանքիս անուամբ ամբողջ սարս կոչուում է Պանդալիոնի սար, որը, կրճատելով ըստ տեղական սովորութեան, Պ ա ն դ ա յ վ ա ն ք, Պ ա ն դ ա յ ս ա ր են անուանում։ «Աղուան. եր. և Դր.» դրքի 208 երեսում գրուած է. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ... Աբեթէի 'ի գեօղս Անուղ Հաւատուն Հինգուղակ 'ի գաւռն.. Պանդալիոնի բժշկի, են.»։ Կարծում ենք, որ վերևի մատրան գիւղատեղին է Անուղ—Հաւատուն—Հինգուղակ գիւղն։

տուն, փոշտ և դատարան։ Հայոց եկեղեցին այժմ փոխուած է Ռուսաց եկեղեցու։

*Գիւղատեղիներ եւ հանգստարաններ.*

Հայոց գիւղատեղի և հանգստարան կայ

Ա. Հաճի-քեանդումս։

Բ. Սարանից ներքև արևելեան ձորի մօտ։

Գ. Նշանաւոր խաչարձան Հաճի քեանդից վերև անտառի մէջ։

Դ. Դեղին Սար կամ Սարու եալ կոչուած լանջի վերայ։

Ե. Հաճի քեանդի և Մասութ գիւղի միջև անտառախիտ ճանապարհի վերայ ծմակի մէջ կայ մի աւերակ մատուռ Քեօշք անուն, որի արձանագրութեան քարն կոտրուած է. կէս մասին վերայ. «Ի թիւ Հայոց ՉԶ. կամաւն Աստուծոյ և ողորմութեամբ Քրիստոսի Ամենակալին շինեցի զեկեղեցիս......»։ Մատուռից փոքր ինչ հեռի կայ և գիւղի աւերակ։

Ե. ՄՌՈՒԹ ԳԻՒՂ. Հիմնուած է Գանձակեան սարի հիւսիսահայեաց լանջի վերայ անտառի մէջ. բնակիչք բնիկ, հողն արգաւանդ, լեռնային և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն շրջանին պարտէզ և այգի պտղաւական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի. եկեղեցին Սուրբ Աստուածածին, փոքր և նորոգեալ ի հիմանէ, որ ունի մի քահանայ. և նոյն արձանագրութիւնը.

«Ես Գանձակ քաղաքացի Մանասի Քերովբէ Տէր-Մարտիրոսեան կառուցի իմով ծախսերովս եկեղեցիս Մռութ գեղջ ի յիշատակ պապին իմոյ Տէր-Մարտիրոս աւագ քահանայի և ծնողաց իմոց Միրզոյի և Հռիփսիմի և կենաց իմոց Խանումի վախճանեալ՝ և Սեփանի ամի Տեառն 1881»։ Փորագրուած է արձանագրութեանս տակ. «Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռնեալք և ես հանգուցից զձեզ». Տուն 30, ար. 135, իգ. 131, ար. ծծ. 15, իգ. 14, պսակ 6, ար. ննջ. 2, իգ. 2։

Զ. ՈՍԿԱՆԱՊԱՏ (40) ԳԻՒՂ. Հիմնուած է Մհակ սարի ստորոտում. Գանձակ գետակի[1] ձախ ափի բարձրութեան

[1] Կոչւում է և Ոսկանապատի (Հասանսուգի) գետ.

վերայ, խոր ձորի մէջ, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային անջրդի և սակաւ արդիւնաբեր․․ տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, զովելի ջուրն, 90 տարի երկար կեանքն. Սուրբ Յակովբ եկեղեցին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 25 մետր 55 սանթիմ, լայնութիւն 11 մետր։ Տաճարս ունի նաև հարաւային և հիւսիսային պատերում առանձնապէս կամարներ և ոտներ, -ինն լուսամուտ, երկու փոքր և մի աւագ խորան և մի դուռն։ *Աւազանի մօտ հիւսիսային խոյակի վերայ.* «Ես Օվանէս, Գրիքոր կամարս բերի Գուդկան, դվիմ իմ մեր (մօր) Ուռումի (Հռիփսիմէի) հոգին համար»։ *Արտաքուստ արեւմտեան ճակատին.* «Սուրբ խաչս աւգնական Տէր Օվանէսին Թվ. ՈԴ.»։ Քահանայ մի։ Տուն 89, ար. 321, իգ. 275, ար. ծն. 7, իգ։ 6, պսակ 4. ար. ննջ. 2, իգ. 2։

Տաճարումս կայ *երկու գրչագիր.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ։ Ընտիր են պատկերներն, նախշերն ծաղիկներն, թռչնագրերն, ոսկեզօծն և գոյներն։

*Յիշատակարանից.* «Ի ձեռն ուրումն երեր յաշխարհէն Հայոց գրեալ ոսկեզաւծ որակաւք ի Դրազարկն ձեռամբ Թորոսի փիլիսոփային, զոր տեսեալ տեառն Ստեփանոսի Տարսայիճ հզաւր և իմաստուն գիտնականի վարժեալ ի վարժարանի վարժապետին Եսայոյ տիեզերաքարոզ լուսաւորչին, որդի իշխանաց իշխանին քաջ սպառազէն մենամարտիկ զինաւորի Ջալալին, թոռն մեծ Աթաբակին Հայոց և Վրաց Վահ Տարսայիճին, Տէր և Վերատեսուչ գահերէց և գլուխ արհի երից աթոռոցս Սիւնեաց Տաթևոյ և Նորավանից և Ցախաց քարոյ, պետ երկոտասան գաւառաց, ուրախ եղև իբրև ընծայ ի վերուստ առաքեալ։ Եւ յաղագս եղբաւր իւրոյ պարոն Ճահնշահի, որ կիսաւրեայ մահուամբ, տղայ տիաւք, յանկալի տեսողաց, գեղեցիկ հասակաւ, և քաղցր բարուք, աներկեան հաւատով և հաստատուն յուսով՝ ի բազմավրդով կենցաղոյս խրախոյս տուեալ առաջնոր-

Digitized by Google

դեաց խաղաղական և բարի հրեշտակաւք առ յոյսն ամենայնի և յԱստուած բոլորից, որ հանգուցանողն է ամենայն հոգւոց բարեաց, հանգուսցէ ի գոգն Աբրահամեան նովին հաւատով լցեալ։ Ստացաւ հանդերձ հոգևոր հարբ իւրով Կիրակոս վարդապետովն ի հալալ արդեանց իւրոց և ընդելուզել ոսկւով և արծաթով և ակամբք պատուականաւք յիշատակ վերասացեալ եղբաւր իւրոյ։ Եւ արդ ես Նուաստ, եղկելի, Թշուառացեալս Ստեփաննոս խոց լերթոց և թախիծ կսկծալի սրտիւ, հողամած դիմաւք զդաւդ սրբազանից զպատահեալսդ տխեզերաքարոզ աւետարանիս սրտի մտաւք յիշել զգեղաղէշ և զարեգակնափայլ եղբայրն իմ զպարոն Շահանշահ առաջի զենման Քրիստոսի... յիշել զծնողսն իմ զհայր իմ զՋալալն և զմայր իմ զամենաւրհնեալ Գոնցա և յերկար կենդանութիւն խնդրել երկուց եղբարց իմոց պարոն Էլիկիւմի և Աղբուղային։ Եղև մեզ այս բաւթ տրտմագին 'ի ռաւնի զատկին 'ի ՉԶ. Թուականի Հայոց 'ի տրէ Գ.»։ Մատթէոսի սկզբում գրուած է ի միջի այլոց. «Ես Յովհաննէսս Ոսկանապատոյ ձեռնաւորս գնեցի զաւետարանս իմ հալալ արդեամբս յիշատակ ինձ և իմ ծնողաց»։

Բ. Աւետարան, թղթեայ, միջակ դիրքով, պատկերազարդ, բայց ո՛չ այնքան ճաշակով գծուած, Ցիշատակարանից. «Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի, զմեղուցեալ գրիչս Իսրայէլ յիշեցէք.... Արդ գրեցաւ սա յարքունական երկիրն Մոկաց ի տեղիս Անապատ, որ Փասավանք կոչի; ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս.. ձեռամբ յոգնամեղ և անարուեստ գրչի Իսրայէլ... 'ի Թուականիս Հայոց ՋԺԲ. ամեն. 'ի խնդրոյ.. Մահդասոյն Պաւղոսի յիշատակ հոգւոյն իւրոյ»։ Ցետոյ գրուած է. «Նորոգեցաւ սուրբ աւետարանս ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ Նշանիս Վարագայ ձեռամբ Սահակ անարժան աբեղայի ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Կիրակոս վարդապետի, որ բազում ջանիւ զվանքս կրկին անգամ նորոգեաց զեկեղեցիք, զդարպաս, զտներ, զոր ի շարժմանէ ապականեալ էր, ի Թուականիս ՌՂԸ. ի խնդրոյ Յոհան անուն անկեալ երիցին, որ ստացաւ զսա 'ի հալալ ըն-

չից իւրոց և ետ նորոգել»։ Դժուարին է իմանալ թէ ինչ դիպուածով ընկած է Ոսկանպատ գիւղիս մէջ։

*Սուրբ Աստուածածնայ վանք.*

Հիմնուած է գիւղիս վերի ծայրում գետակին ձախ ափի վերայ, կառուցեալ երկու կամարների վերայ, որ ունի մի դուռն հարաւային կողմից և երկու նեղ լուսամուտ արևելեան և արևմտեան կողմերից և միւս ևս հարաւից։ Երկայնութիւն 12 մետր 75 սանթիմ, լայնութիւն 6 մետր 75 սանթիմ։ Ունի եկեղեցու ձև և ոչ վանքի, սակայն ունեցած է միաբանից խուցեր տաճարս իւր արևմտեան կողմում, որպէս վկայում են տեսողք. բայց յորդ անձրևի հեղեղներն քանդած և տարած են սոյն սենեակները և կոյտ կոյտ խիճեր դիզած խուցերի տեղերում։ Տաճարիս հարաւային որմի մօտ արտաքուստ. «Այս է տապան Ցարութիւն պապին, որ վերստին նորոգեաց սուրբ եկեղեցիս թվ. ՌՄՀ.»։

*Սուրբ Սարգսի վանք.*

Ս. Աստուածածնայ վանքիս հանդէպ գետակի աջ ափի վերայ, շինուած երկու կամարների վերայ, մնասուած գագաթնագծի ուղղութեամբ մինչև գետինն։ Վէմ խաչքարի ստորոտում. «Սուրբ խաչս աւգնական....»։ Աւերակ դրութեան մէջ են միաբանից խուցերն և շրջապարիսպն։

Գիւղիցս բաւական վերև, գետակիս ձախ կողմում կան հետևեալ հնութիւններն, որք շինուած են իրարից զանազան հեռաւորութեան վերայ։

*Ա. Դաստափոր* աւերակ գիւղ Հայոց, այժմ թրքաբնակ, բայց մնում են հանգստարանն և վեց սիւների վերայ շինուած հոյակապ եկեղեցին։

*Բ. Ցնծահալ*, որ նոյնպէս թրքաբնակ է, որ ունի ընդարձակ հանգստարան և մեծ քարուկիր եկեղեցի, որի գլուխն խոնարհուած է։

*Գ. Գետամիջ* (Գետամէջ) գիւղ. որ ունի հանգստարան և մի անսիւն միջակ մեծութեամբ եկեղեցի։ Թրքաբնակ է և աւերակ։

Digitized by Google

Դ. Պալլուջա աւերակ գիւղ։

Ի. ՄԻՐԶԻԿ ԳԻՒՂ. Հիմնուած է Ոսկանապատի հիւսիսարեւմտեան կողմում մի տափարանաւոր եւ արեւելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի եւ լեռնային, տեղական բերքերն նոյն (առատ է տանձ, խնձոր, ոչխար) գովելի օդն, կլիման եւ ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Գաբրիէլ, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ եւ խաչազարդեալ վաղեմի խաչքարերով. երկարութիւն 16 մետր 95 սանթիմ, լայնութիւն 12 մետր 10 սանթիմ։ Դռնագլուխ քարի վերայ. «Արդեամբ Միրզիկայ սուրբ Գաբրիէլ եկեղեցիս շինեցաւ 1674 ամի»։ Հարաւային փոքր խորանի սեմին վերայ. «Կանգնեցի Սարուխանս սուրբ խաչս (բերուած է հանգստարանից) բարեխաւս Ոսկի հոգուն Թվ. ՌՀԶ.»։ Եկեղեցիս ունի եւ փոքր զանգակատուն եւ մի քահանայ։ Ծուխ 60, ար. 320, իգ. 277, ար. ծն. 17, իգ. 12, պսակ 7, ար. ննջ. 2, իգ. 2։

*Ովասափ մատուռ.* գտնուում է գիւղիս հարաւային կողմում, մի բարձր սեռի վերայ ուղղու տակին։ Այժմ կիսաւեր է, շինուած է եղել անտաշ քարով, բուսած է խորանում մի մեծ կաղնի ծառ։

## ՔԵԱՐԽԱՆԱՑ ՎԱՆՔ.

Հիմնուած է մատուռիցն վերեւ մի գեղեցիկ լեռնահովտի հարաւային ծայրում։ Բարձր սարեր պատած են վանքիս հիւսիսային, արեւմտեան եւ հարաւային կողմերը (վանքիս այս կողմն ձոր է, խորանդունդ ձոր, որից հոսում է մի առուակ եւ միանում ստորեւ Գանձ. գետակին)։ Վանքս շինուած է մի կամարի վերայ տորոնագոյն տաշուած քարով, եւ ունի երկու փոքր եւ մի աւագ խորան, վեց նեղ լուսամուտ եւ մի դուռն արեւմտեան կողմից, 12 մետր երկարութիւն, 7 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Բեմի ճակատին մի խաչքարի վերայ. «Թվ. ՌԿԴ.»։

Վանքս ունի եւ գաւիթ, որ շինուած է հասարակ քա-

Digitized by Google

քով 7 մետր 30 սանթիմ երկարութեամբ և 7 մետր լայնութեամբ, որի մէջ ամփոփուած են.

«Հանգիստ հողապատեան տեառն Եղիազարու յաւէտ հանգիստ է անվշտակիր նշխար սորին, որ աստ կան, հոգին գոլով միջնորդ առ Տէր ժտական վասն իւր որդեկացս, որ եմք տատանման փորձանաց գաղտնի, որ օգտել փութան զմիաբանութիւն հոգևորական, փրկել ի փորձանաց այժմ և յապագայն, հանգեաւ սուրբ հայրն մեր թուին Հայկազնւոյ ՌՃԿԲ.»:

«Այս է հանգիստ Զարեքու անապատի Մկրտիչ վարդապետին թվ. ՌՂԵ.»:

«Այս է տապան տանս սպասաւոր Մահտեսի վերաձայնի, Նաւասարդ աղա անուանի, եղբայր Թամրազ Քալանթարու Զակամ Մեծ Սահակ 'ի Ղարամուրատ գեղջէ, կոչի Արամի, մահն դիպէ վաթսուն Բ. ամի ՌՃՂ. թուի և շամդրեա [1]) մարմին է ՂԳ. ամի»:

Վանքս ունի և կիսաւեր շրջապարիսպ և մի քանի խուցեր միաբանից համար, որք արդէն քայքայւում են հետզհետէ և մի քանի օրավար պատուական հողեր: Վանքիս արևելեան կողմում է Քեանդակիրմազ մականուանեալ Սարգիս վարդապետի գերեզմանն:

«Այս է տապան Սարգիս վարդապետի Ազարեանց Տփխիսեցւոյ Քեանդակիրմազ մականուանեալ, որ յայտնապէս անբասութեամբ (անբասիր) վարեաց զկարգ կրօնաւորութեան ի զանազան վանորայս Գանձակայ գաւառի աւելի քան 70 տարի և վախճանեցաւ ի հասակի 96 ամաց ի Միրզիկ գեղջ 1877 ամի»:

Վանքիս մօտ կայ վանքապատկան պարտէզ, թթենի և տանձի ծառեր, և հանգստարան և գիւղատեղի:

*Աստուածածին աւերակ մատուռ*, որ գտնուում է Միրզիկ գիւղիցս վերև այն սեռի վերայ, որ կախուած է գիւղիս վերայ, իսկ երեք քարեայ խաչարձաններ մատուռիցս վերև:

Ը. ԲՐԱՋՈՒՐ (Աղբրաջուր) ԳԻՒՂ. Հիմնուած է Միրզիկի

[1]) Գուցէ շատտամեայ:



Digitized by Google

նապէս կործանուած են շրջապարսպի արևելեան և արևմտեան պատերն և վանքիս հիւսիսային որմի արտաքին երեսն։

*Հին Հանգստարան.* Գետաշէն աւանիս Հանգստարանի հին մասումն կան շատ հին գերեզմաններ, որոց գլխակալ խաչարձաններն զարդարուած են հիանալի նախշերով և քանդակներով։ Այնքան գեղեցիկ են փորուածքներն, մինչև անգամ այցելուն զմայլում է ժամանակին քանդակագործութեան գեղարուեստի նուրբ ճաշակին և ընտիր ոճին վերայ։ Խաչարձաններից մէկի վերայ փորագրուած է. «Խաչս յիշատակ հաւրն իմոյ Խունին և մաւրն իմոյ Գուլին Թվ. ՃՂԱ.»։ Կից նրան. «Ես Ետկար աղէս կանգնեցուցի. ես մեղաւորս Ազարիա»։

Այլ խաչարձանի վերայ քանդակագործուած է մի ձիաւոր մարդ, որ վահանը կապած իւր ձախ բազկի վերայ գեղարդը խրած է մի այլ փախչող ձիաւորի սնակուշտն, որ ուժասպառ եղած է։ Առաջնոյն թիկնապահն, վեր առած վահան և նետեր, վազում է իւր տիրոջ ետևից։ Փորագրուած է քաջի ստորոտում. «Թվ. ՋՂԹ. Տաէն Ազարի էչ (էջ) իւր Բ. թաւրովն (թորով, թրով), ողորմի ասացէք»։ Հանգստարանումս կան և մելիքազունների գերեզման, որք են Մէլիք-Մնացականեանների ցեղից։

## Մրցունիս

Գիւղատեղի, Հանգստարան և եկեղեցի, որք կան աւանիս արևմտեան կողմում գետակին ձախ կողմի բարձր լանջի վերայ։ Արդէն գոմանոց փոխած են գիւղիս աւերակը Գետաշէնցիք, բայց քարուկիր եկեղեցին կանգուն մնում է փոքր ինչ վերև աղբիւրի մօտ, որ շինուած է մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան, մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, 12 մետր երկարութիւն, 6 մետր 95 սանթիմ լայնութիւն։ Խորանի վէմ քարն ունի հիանալի նախշուն քանդակներ, բայց չունի գիր։ Դրան մօտ մի խաչքարի վերայ.

«Յովհանէսի մորն Նուրացիանին»։ Նոյն արևմտեան ար-

Digitized by Google

տաքին ճակատում. «Թիւ ՉԷ. Ես Եղան անշան կանգնեցի զսուրբ Սարգիս ինձ և եղբաւր իմոյ Վարդանայ»: Մի կարակնաձև տաշուած քարի վերայ, որ դռնագլուխ եղած է, այժմ ընկած է դրան հիւսիսային կողմում արտաքուստ. «Թվ. ՉԼԴ. կամաւն Աստուծոյ և հրամանաւ սուրբ հայրապետին Ստեփանոսի, եպիսկոպոսութեան տէր Գրիգորի.. Սոմաճին, ես Յովակիմս... ի բարեխաւսութիւն հոգոյ իմոյ»: Այս տեղ, դրանս առաջ մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ փորագրուած է. «Վասն Մկրտիչ եպիսկոպոսի հոգւոյն փրկութեան»:

Բ. ԱԲԼԱՀ ԳԻԻՂ. Հիմնուած է Գետաշէնի հիւսիսային կողմում մի ձորի մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, փոքր մասն տեղափոխուած Հաթերքից և այլ տեղերից, հողն արքունի, մեծ մասամբ ջրարբի և արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և քաղցրահամ ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Մինաս, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, - երկարութիւն 18 մետր 85 սանթիմ, լայնութիւն 10 մետր 30 սանթիմ: *Արձանագրութիւն*. «Թվ. ՌՃՁԱ. յիշատակ է Պետրոսին, Յակոբին, Մրզին տրօպ (տլօպ) տէր Պօղոսին, որ էինք որդիք Աւետիսի՝ ազգէն Հասանայ, որ էր ժամանակն Վալի Նամատին (Նատր Շահին), որ կոչի Թահմազ, որ թագաւորեցաւ, ի երկրին Բարսից բազում գաւառս աւերեաց»: Քահանան գալիս է Սուլուկ գիւղից: Ծուխ 34, ար. 91, իգ. 66, ար. ծնունդ 8, իգ. 5, պսակ 3, ար. ննջ. 3, իգ. 2:

Տաճարումս կայ Գ. գրչագիր.

Ա. Աւետարան պատկերազարդ, գրուած թղթի վերայ, միջակ դիրքով, միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նախշերն, թռչնագրերն և ծաղիկներն: *Յիշատակարանից*. «Եւ արդ ես մեղապարտ գծողս Նիկոլայոս.. գրեցի զաւետարանս ի քաղաքս, որ կոչի Վան ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան զաւրավարիս ի թուականութեանս Հայոց ՋՃԲ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս Վարակայ տէր Յովհաննիսի և ՚ի թագաւորութեան Ջհան Շահի Միրզին»:

Digitized by Google

տեղի, հանգստարան և փոքր եկեղեցի։ Խորանի հարաւային կողմի կամարի վերայ մի խաչքարի ստորոտում. «Թվն. ՈՀԹ. է.... [1]) Աստուած ողորմի Սարգսին»։ Եկեղեցուս հարաւային կողմում հանգստարանի մէջ. «Ամփերին Մելիցքու Բուրխտ Թիլլին Ռ.»։ Բոլոր հին եկեղեցիներս խողանոց արած են Գետաշէնի խոզարածներն։ Պատիւ է բերում Գետաշէնցւոց...։

ԺԳ. ՆՈՐ-ՂԱՐԱ-ԲՈՒԼԱՂ ՇԷՆ. Հիմնուած է շէնս Հին-Ղարա-Բուլաղից փոքր ինչ ներքև նոյն օժանդակի աջ կողմում. բնակիչք տեղափոխուած են Խաչակապ, Բանանց և Փիբ գիւղերից, որք նախ գնած են Պալլի-խան հայ բէկից շինատեղի և անդի հողերը, շինած բնակարաններ և ապա բնակած այստեղ։ Տակաւին չունին եկեղեցի։ Ծուխ 25, ար. 60, իգ. 55։

Նորաշէն կամ Ենիջայ աւերակ գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, որ գտնուում է շինիցս ներքև։

## ԲԵՐԴ ՄԷԼԻՔ-ԲԷԿԼԱՐԵԱՆՆԵՐԻ.

Չորս կողմերից առանձնացած, վիմահերձ սեպաձև բարձրացած և դէպի արևելք երկարած մի բարձրագոյն սար է, որ գտնուում է Կիւլստան գիւղից վերև։ Ինջա գետակն նախ հոսում է բերդիս արևմտեան կողմով, ապա հիւսիսային ստորոտով և ապա դառնում դէպի արևելք, վասնորոյ գրեթէ թերակղզի ձևացած է բերդասարս, որի գլուխն բարձրանալու համար կայ մի դժուարատար և ոլոր մոլոր կածան, որ խիստ զառիվեր է։ Բերդս ունի կրկնապարիսպ, արտաքինն՝ սարի կիսով՝ արևելքից արևմուտք. իսկ երկրորդն՝ սարի գագաթի եզերքներով, որ աւելի բրգաշատ է և անմատչելի, կարող ենք ասել, և անառիկ։ Բերդիս երկարութիւնն է 230 մետր, լայնութիւնն 20 մ., պարսպի հաստութիւնն 80 սանթիմետրից մինչև $1^1/_2$ մետր։ Բերդիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի և շատ աւերակ տնատեղեր։ Բայց տակաւին կանգուն մնում են Մէլիք-Յովսէփի ապարանն, որ հիմնուած է բերդի հարաւային կողմում մուտքի աջ ու ձախ

[1]) Անընթեռնլի են կէտադրեալ բառերն։

Digitized by Google

անկիւններում։ Բերդս ունի երկու դուռն, որից մեծն հարաւային կողմից, իսկ փոքրն հիւսիսային կողմից որ անգործածելի է։ Ապարանն բաղկացած է երկու մասից, արևելեան և արևմտեան, խոնարհուած են երկոցունց ծածքերն ևս, բայց տակաւին մնում են պաշտելի հնութիւններն։

Բայց որովհետև խմելու ջուր չկայ բերդումս, վասն որոյ բերդի վերի կողմին մօտ արևմտեան հիւսիսային կողմից մինչև գետակն շինուած է մի նշանաւոր, թաղակապ, քարուկիր և ստորերկրեայ ական իբրև ջրի ճանապարհ, որով ջուր փոխադրած են բերդիս ջրամբարներն, որք գտնուում են ամրոցի վերի կողմին մօտ, հիւսիսային պարսպի մէջ։ Այժմ գետակն քանդելով խորացրած է իւր յատակը և բարձր մնացած է ականի բերանն։

*Ղալաչա*

Բերդիս հարաւային հանդէպ հարթակի վերայ կայ մի դղեակ, որը տեղական անուամբ կոչուում է Ղալաչա։ Դղեակս ամուր է և քառակուսի. չորս անկիւններում ունի չորս հաստատուն աշտարակ. իսկ հիւսիսային կողմից մի դուռն և ամեն կողմերից հրացան արձակելու ծակեր, $7^1/_2$ մետր երկարութիւն, 7 մետր լայնութիւն, $4^1/_2$ մ. բարձրութիւն և 1 մ. 28 ս. պարսպի հաստութիւն։ Այս ևս պատկանում է Մելիք-Բէկլարեաններին.

Դղեկիս շուրջն ընդարձակ, բայց աւերակ գիւղատեղի է, որն կարծես թէ, քաղաք եղած լինի, տակաւին պարզ երեւում են քարուկիր և խիտ առ խիտ շինուած շատ տնաքակեր, փոքր ինչ հեռուն ընդարձակ հանգստարան, բայց անարձանագիր։ Դղեկիս հարթակի ստորոտում շինուած են եղել նշանաւոր բաղանիսներ. որք կիսաւեր դրութեան մէջ են։

## ՋԱՓԱՐԻ ՂԱԼԱ.

Մռաւ սարից դէպի արևելք կախուած մի դալարագեղ լանջի վերայ կայ հողաբերդ, որի արևելեան կողմից հոսում է Ինջա գետակի աջ օժանդակն, որ և միանում է Ամենափրկիչ վանքից ներքև՝ Ինջային։ Բերդիս, որի շրջապատն պա-

Digitized by Google

տած է թանձրախիտ անտառներով, ասում են, բազմիցս ապաւինած է 'ի հնումն Կիւլստանի հայ ժողովուրդն, մանաւանդ պատերազմների ժամանակ և ազատ մնացած թշնամուց։

ԺԶ. ԳԱՐԴՄԱՆ ԳԱՒԱՌ, որ ընկած է Կուրակ և Շամքոր Գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի մէջ։ Ամենամեծ մասամբ անհարթ է գաւառիս մակերևոյթն։ Սարսափելի խոր խոր ձորեր, մութ մութ կիրճեր, օձապտոյտ խոխոմներ, բարձրագագաթ սարեր և բլուրներ և թանձրախիտ անտառներ գրաւած են գաւառիս մակերևոյթը։ Իսկ վերնամասն խիստ զուարճալի է լեռնահարթեր, ծաղկալի հովիտներ, մարգալի արօտներ, դալարագեղ լեռնալանջեր են գաւառիս Մռաւ և Արութիւն սարի կողմերն։

Ա. ԳԵՏԱՇԷՆ ԱՒԱՆ. Հիմնուած է Կուրակ [1]) գետակի ձախ ափի վերայ, խոր է գիւղատեղի ձորն և նեղ հորիզոնն. բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած են Ռստակ և Ջրաբերդ գաւառից. բնիկ է միայն ամենափոքր մասն. հողն արքունի, մեծ մասամբ անջրեի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, կտաւհատ, գետնախնձոր, տանձ, խնձոր, դամոն, դեղձ, խաղող, ընկոյզ, կեռաս, թութ, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ վեց սիւների վերայ համակ սրբատաշ տորոնագոյն քարով, երկու փոքր խորանների վերայ կայ այլ ևս երկու խորան. երկարութիւն 23 մետր 40 սանթիմ, լայնութիւն 14 մետր 30 սանթիմ։ Եկեղեցիս, որի միջից բղխում է բարեհամ ջուր, չունի արձանագրութիւն, բայց երևում է որ նորոգուած է. քահանայ 2։ Աւանումս ծաղկած է հիւսնութեան, դարբնութեան, ոսկերչութեան, դերձակութեան, թամբագործութեան,

[1]) Գետակս է սահմանագլուխ Արցախի և Թիփլիսի հոգևոր կառավարութեանց թեմերին կամ Ղարաբաղի և Գանձակի։ Գետաշէնցիքս տեղափոխուած են Ռստակի գաւառի Խոտորաշէն գիւղից, որ այժմ աւերակ է։ Գետակս իւր սկիզբը առած է Մռաւի միջնագաղաթի—Բաղրկեանի—հիւսիսային լանջերից։

սալլագործութեան, քարտաշութեան, ոստայնագործութեան և ատաղձագործութեան, և այլն արուեստներն։

Տուն 434, արական 920, իգական 782. արական ծընունդ 51, իգական ծնունդ 32, պսակ 31. ար. ննջեցեալ 18, իգ. 11։

## ԱՒԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.

Աւանիս վարի ծայրին մօտ շինուած է մի քարուկիր մատուռ, որ ունի միջակ մեծութիւն, ցած դուռն, 7 մետր 90 սանթիմ երկարութիւն, 5 մետր 45 սանթիմ լայնութիւն՝ Նահատակ անուն։ Դասամիջի ուղղութեամբ խորանի տակ կայ մի փոս, որի մուտքն բացուած է բեմի ժողովրդահայեաց երեսից, որի մասին ասում են նահատակի գերեզման. բայց անծանօթ է անունն։

Ներքուստ հիւսիսային որմում մի քարեայ խաչի վերայ.

«Սուրբ խաչս բարեխաւս Թանկրղուլին»։

Իսկ մատրանս դռնագլուխ քարի վերայ.

«Թվ. ՌՃԻՁ. կամաւ ամենակալին Աստուծոյ շինեցաւ սուրբ Նահատակս ձեռամբ Սի.է.նի (գուցէ Սիմէօնի) և որդուն Քամալ բէկին, օգնականութեան (թեամբ) գիւղիս, թագաւորութեան Պարսից Շահ Սուլէման....»։ Մատրանս մէջ, որ և ուխտատեղի է, կան հետևեալ գրչագրերն և մասունքներն.

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ մեծութեամբ, արծաթապատ, ոսկեզօծեալ կողակալներով, որի մէջ կայ չորս աւետարանչաց և Յիսուսի Քրիստոսի բոլոր հրաշագործութեանց և բժշկութեանց պատկերներն։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ թռչնագրերն, սքանչելի ծաղիկներն, հիանալի նախշերն, ուշագրաւ նկարներն, թանկագին ներկերն, ագնիւ ոսկեզօծն և զմայլելի գեղարուեստի նրբագործութիւնն։ Մարկոսի և Ղուկասի վերջում գրուած է.

«Յիշատակ է աւետարանս Մահտեսի Ջանղուլուն [1]) և ծնողացն Վէլիջանին, Համանին և կողակցուն իւրոյ Փարուն և

[1]) Ցետոյ աւելացրած է ուրիշ գրող. «որ եղև քահանայ և եդին զանուն նորա տէր Գրիգոր»։

Digitized by Google

եղբարց Գալին և Եակոբին և հանգուցեալ եղբարցն Միրաքին, Շահիջանին և ամենայն ազգականաց ամէն։ Գրեցաւ սակաւ յիշատակարանս ձեռամբ Ալեքսան գրչի Թվին ՌՃԺ, և եօթի և ըստ իմում չափու, տուէք ողորմի։

*Յիշատակարանից.* «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Նուաստ և յետին գրչի Նկոս (Նիկողայոսի մեղապարտի, ունայնագործ մելանաւորի ի Թուաբերութեանս Աղբանոզեան և Արեւթական թուականի ՌՃԺԶ. և ըստ նորում շրջանի՝ ՂԳ. և զոլատենէն Կենարարին ՌՈՀԲ.[1]) ի յստոյգ և ընտիր աւրինակէ եւ տասւել համարեայից, զի գաղափար օրին էր ի դրանէ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ի աշխարս Հանաց․․ աստուածապահ քաղաքն ի Կաֆայ առ ստո Սրբոյն Սարգսի դաւրավարին ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ և առաջնորդութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Մարտիրոս քաջ բաբունապետի և ի ռեսպահութեան Յակովբ վարդապետի... ի թագաւորութեան Պարսից Շահ Սափին, և Նախիջեւանայ խանին Ալուղուլի..... Արդ այժմ աստուածապատում և քրիստոսասէր տառիս ցանկացող եղեալ աստուածորեալ և պատուական այրս մահտեսի Ճանդուբին եւ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ.... զՄէլիք Նարնպէկն... դարձեալ յիշեսջիք զՄահտեսի տէր Վարդանն, որ զաւետարանիս զմագաղաթն շնորհեաց... Դարձեալ յիշեսջիք զԴրիմեցի զլուսարարն և զորդեակն իւր զԴաւիթն, որ մեզ տեղ շնորհեցին, որ աւարտեցաք զսուրբ գիրքս, զի դառն ժամանակ եղև ի քաղաքն Կափայ և մեր տեսեալ զդառնութիւն և զայլէտ մարցն, կամաւորութեամբն Աստուծոյ և հրամանաւ Նորին ընտիեցաք ի Ղրիմ ժամանակ ինչ և աւարտն հասուցաք ըստ մեր տկար բնութեան և ծաղկազարդեցաք ոսկով և բազում գունզգուն որակօք.... Յիշատակ է սա ի յեկեղեցին Ամենափրկչին ի յերկիրն Նախիջևան ի գաւառն Երնջակ ի դէմս Սուրբ Կարապետին ի գեաւղն Շահկերտ, որ այժմ կոչեն Ղազանչիլար ի

[1]) Կամ ՌՃԺԶ.-ն սխալ է և կամ ՌՈՀԲ.-ն վասն զի Կենարարին ՌՈՀԲ. թիւն հաւասար է Հայոց ՌՃԻԱ.-ի. իսկ ՌՃԺԶ.-ն հաւասար է Փրկչ. ՌՈԿԵ. Թուին։

յառաջնորդութեան յայսմ նահանգիս յԵսայեայ և Առաքել քաջ րաբունապետաց . . .»։

Մեղաց գրութիւնից ազատարար Յիսուսի Քրիստոսի սոյն աւետարանն գերի է ընկնում այլազգեաց ձեռքն, որը գնում է Ջրաբերդի Մէլիք-Ադամ Ա. «որ գնեաց զսա ի հալալ ընչիւք իւրովք 'ի ձեռաց այլազգեաց . . . Նաև մաքուր արծաթօք պատեալ զարդարեաց և ընդելուզեաց ոսկով պատուականօք և յետ (եդ) զսա յիշատակ 'ի սուրբ աթոռն Եղիշէի առաքելոյն (Ջրվըշտիկ) և սուրբ լուսաւորչին Ագուանից ձեռամբ գերիմաստ և յոգնահանճար Աւագ քաջաջան վարդապետին [1]) . . . Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՄէլիք Հաթամն և հայր իւր Մէլիք Իսրայէլն և զպապն իւր Մէլիք Եսային և սորա որդոցն Ովսէփին, Մէժլումին, Իսրայէլին եւ առաւել որդւոց սոցին Սէյրաբին, Ալլահղուլին, Ալլահվերտին և մօրն Հերիքնազին և որդոցն ծաղկելոց նորափթթիցն Իսրայէլին և Մէժլումին և ամենայն արեանառու ննջեցելոց . . . գրեցաւ թվին ՌՄ. երկուսին, որ ըստ փրկչականին 1753»։

Բ. Աւետարան մեծադիր, հաստ, գրուած թղթի վերայ, որի սկզբում կայ ոտնալուայի, Յուդայի մատնութեան, Ղազարոսի յարութեան, Ծաղկազարդի, Քրիստոսի խաչելութեան, պատանքուելուն, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, աւետման, ծննդեան և չորս աւետարանչաց պատկերներն, բայց բոլորովին անճաշակ և զուրկ գեղարուեստի շնորհքից և ընտիր ներկերից։ Գողացած են և սորա յիշատակարանը, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն։ Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս երէց Պետանց աբեղայս ու Բրտանց Սարգիս մեր սրտի հաւժարութեամբ աւետարանս ծախեցաք Վարդանայ և առաք ի նրանէ ա. կով, բ. կապիճ հաց, աւետարանին . . . Ծարեցի Զարմանին որդին Խատապայ վկայ . . . Նաճպատինայ որդին Վահրավայ վկայութեամբ, իմ Յոսիկ Իրիցոյ վկայութեամբ, որ զգիրս գրեցի թվ. ՊԵ. քաղոց Գ. գրեցաւ»։

---

[1]) Սա իւրն է Դալի մահրասան։

Իսկ միւս թերթի առաջին երեսում գրող Կարապետ աբեղան յայտնում է թէ կազմել տուած է աւետարանս թուին «ՊԻԱ.»։ «Զաւետարանս թագւորնայ բերուց (բերաւ) գինն առաւ, ու տարաւ»։

Գ. Աւետարան մեծադիր, մագաղաթեայ, ամբողջապէս գրուած գլխագրերով, որ ունի միայն ծաղկազարդի և չորս աւետարանչաց պատկերներ, Քրիստոսի պատկերը որ ձախ ձեռնով բռնած է աւետարանը և աջ ձեռնով օրհնում է մի վեղարաւոր և մի գլխաբաց մարդ։ Վեղարաւորի գլխից վերև գրուած է. «Քրիստոս որդի Աստուծոյ, ընկալ զբանաւոր զաւետարանս մեղապարտիս Սահակայ իբրև զՏէր և ողորմեա»։ Իսկ գլխաբաց մարդից վերև, «Առաքել ծառայ Աստուծոյ»։ Աւետարանիս սկզբի նախշերի գլուխներին և տակերին գրուած են սպիտակ ներկով. «Տէր Աստուած, ողորմեա Առաքելին... Տէր Աստուած դլթայ ի հոգի Ռեմանոսի ծառային քո. ամէն. Աստուած իմ Յիսուս ողորմեա մեղուցեալ ոգոյս, ամէն [1])»։ Հարկ է յայտնել թէ միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նկարներն, ծաղիկներն և ոսկեզօծն։ Համարեա թէ երեք յիշատակարան ունի աւետարանս, առաջին յիշատակարանի վերջում գրուած է. «Տէր Աստուած ամենակալ, Նորոգեա 'ի կեանս անծերանալիս զՍահակ ստացող սուրբ աւետարանիս ΛИСН ամէն»։ Նոյն իսկ աւետարանս գրողի գրչով գրուած է և յիշատակարանս և յունարէն տառերս։ Երկրորդ Ցիշատակարանովս յայտնում է գրողն թէ աւետարանս ստացած է Սահակ կրօնաւորն, որ եղած էր Անեցի և աշակերտ Հաղբատայ. յիշում է նաև, թէ Սարգիս կրօնաւորն միաբան Հաղբատի, «իբրև զիմաստուն վաճառական խնդրող եղեալ պատուական մարգարտին և «գտեալ զսա (զաւետարանս) ի գաւառի անդ Անւոյ, մեծածախ, ոսկեգիր և ոսկենաճանչ ծաղկաւք զարդարեալ, ստացաւ զսա 'ի հալալ ընչից իւրոց... և ընծայեաց զսա մեծ կողմանց եպիսկոպոսարանիս, որ է իւր տեղի սննդեան և 'ի տարւոջն Բ. աւր ժամ.... ընծայեցաւ կենաց

[1]) Գրուած է Մատթէոսի վերջում նոյն իսկ աւետարանս գրողի գրչով. «Տէր Աստուած ողորմեա Սարգսի կուսակրաւն քահանայի....»։

Digitized by Google

աւետարանս Սուրբ Գրիգորիս 'ի թուականութեանս ՈՀԲ. (1223) 'ի յիշխանութիւնս հզաւրին Հասանայ որդւոյ Վախթանգայ և ի հայրապետութեանս (Աղուանից) տեառն Յովհաննիսի։ Եւ արդ գրեցաւ սա և ծաղկեալ կազմեցաւ յամի, յորում էր թիւ համարոյ թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից և նոյնքանեաց տասանց, իսկ նորոյս շրջանի միոյ հարիւրոյ քսան և ութեակ [1]) թուոյ ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակոբայ, յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեանն Հայոց արևմտայինն կողման Լևոնի քրիստոսասէր և յաղթող թագաւորի և մերոյ կողմանցս և Վրաց Գէորգեայ թագաւորի և 'ի սպարապետութեան Զաքարիա Շահանշահի.... զրօվանգակ գոյք ծնողաց մերոց և եղբարց ծախեցաք և շինեցաք զաստուածաբնակ սուրբ եկեղեցիքս և անդ եդաք զսուրբ աւետարանս Աստուծոյ, որ շինեցաւ 'ի մէնջ ի Վանս Արջուառճի....»։

Յետոյ կազմուած է աւետարանս նախ Հոռոմոսի վանքում (Օձուն գիւղի կողմերում) «հրամանաւ հաւրն Մխիթարայ»։ Սորանից ներքև գրուած է. «Ի թվ. ՋՀԴ. կամաւ ամենակալին Աստուծոյ ես տէր Վանական գտի հնացեալ և աւերեալ զսուրբ աւետարանս և ետու վերստին նորոգել...»։ Շարայարած է *երրորդ* անգամ կազմողն. «ՊԼԲ. էր, մեհեկի ամսի ԻԶ. էր, որ կազմեցաւ, որ է սուրբ աւետարանս Մեծ Կողմանց Խաչենոյ Եպիսկոպոսարանէն Մայրաքաղաքէնս [2]), իշխանութեան պարոն Ջալալին, եպիսկոպոսութեան տէր Գրիգորին Գեռաքարեցին (լոյն)...»։ Կցած է *չորրորդ* անգամ կազմել տուողն գրելով Մարկոսի վերջում 'ի միջի այլոց. «Ուլախաթուն... զի յոյժ հնացեալ էր սուրբ աւետարանս, ետ նորոգել զսա ի ժամանակիս, որ է Մատխան (°) եկն Թաւրէզ թվ. ՋԽԶ...»։

Դ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ,

---

[1]) Կոչուում է այս փոքր թուական Հայոց որ շինուած է Փառիսոսցի Սարկաւագ Յով. վարդապետոն փրկչական 1116։

[2]) Հաւանական է որ այդ ժամանակներում եպիսկոպոսանիստ աթոռն եղած լինի մեզ ծանօթ Մայրաքաղաքին մէջ։

Digitized by Google

որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ, բայց անճաշակ են նոյն պատկերներն, ծաղիկներն և թռչնագրերն, միայն գեղեցիկ են փոքր տառերն։ Յիշատակարանից. «Արդ գրեցաւ աւետարանս այս ՚ի գիւղս որ կոչի Դաստիգիւր (Դաստակիւլ) ձեռամբ Սարգիս երիցու ի թուականիս ՌձԻԲ.»։ Երեք աւետարանների (բացի Յովհաննիսից) վերջերում գրուած է. «Յիշատակ է Սուրբ աւետարանիս Եարամիշին և իւր որդի Ամիրխոճին, Թումանին ... թվ. ՌձԻԶ.»։

*Մասունքներ*

Ա. Մասն *կենաց փայտէն* զետեղուած մի արծաթեայ փոքր խաչում.

Բ. Մասն *բազկին Եղիշ առաքեալի*, որ կայ մի արծաթեայ, ոսկեզօծեալ աջում, որի վերայ գրուած է. «Այս է աջ սրբոյն Եղիշէի առաքելոյն, աշխատողքս՝ որ այ (է) Իգնատիոս եպիսկոպոս, որ երեր սուրբ նշխարս ի Կաֆայու (է) յիշատակ սորա, տէր Ոսկան եպիսկոպոս»։ «Կամաւն Աստուծոյ Կարապետ եպիսկոպոս եւոյ Նորոգեցի, Աստուած ողորմի ասացէք»։ Աջիս բազկի ՚տակի կողմի վերայ. «Կամաւն Աստուծոյ Մուրատս որդի Նիազի շինեցի սուրբ աջս, Աստուած ողորմի ասացէք. առաջնորդութեան Ոսկան եպիսկոպոսին, թվն. ՌԿԸ. էր»։

Գ. Մասն անյայտ սրբի, զետեղուած մի ականազարդ խաչում։

Աւելորդ է յայտնել թէ աւետարաններս և մասունքներս բերած են իւրեանց հետ Ջրաբերդից՝ ժողովրդեան հետ տեղափոխուող քահանայք։

*Անապատ*

Մի փոքր եկեղեցի է շինուած աւանիս վերի ծայրում գետակի ձախ ափում, քարուկիր կառուցեալ մի կամարի վերայ. որ ունի միայն մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, մի մեծ և մի փոքր խորան հիւսիսային կողմում. 12 մետր 14 սանթիմ երկարութիւն 7 մետր 15 սանթիմ լայնութիւն։ Դռնագլխի քարի վերայ. «Այս է Մէլիք Թամրազին (կիւլ. Մէլիք) որդի Սարուխանին եսպար Եաւրին.

Քապանին Ապովի որդի, որ 1-ի Մէլիք Օսեփին Վէլուխոյ Պէհէզ Սարգսին, Պէհէզ»։ Անհասկանալի է արձանագրութեանս վերջին բառի իմաստն։ Գուցէ «Որ 1-ի»—Ա. Մէլիք-Յովսէփին։

Ներսում միջնակամարի հարաւային կողմի կիսապատուանդանի քարին վերայ. «Ես Աքոլեցի Գրիգորի որդի Պօղոսին մար (մայր), Եփրեմին քոր (քոյր) Թագուհին [1]»։

Շինութեան թուականն է սրանից վերև խոյակի վերայ. «Թվ. ՌձԳՐ.»։

Անապատիս արևելեան և արևմտեան կողմերում եղած են խուցեր, դեռ մի քանիսն կանգուն են այժմ։ Հաստատում են թէ Կուսանոց եղած է այս, երկար ժամանակ նըստած են այստեղ կուսանք, որոց մէջ եղած է և մի կոյս Մէլիք-Բէկլարեանների տոհմից, որի պատճառաւ Մէլիք-Թամրազին որդին նորոգել տուած է անապատս։

Անապատիս արևմտեան կողմին խիստ մօտ է Հայոց Ուսումնարանի շէնքն, որ դեռ կիսատ է և ունի 34 մետր 45 սանթիմ երկարութիւն և (պատշգամով միասին) 11 մետր լայնութիւն։

ւ.

## ԵՂՆԱՍԱՐ ՎԱՆՔ.

Հիմնուած է գետաշէնիս հարաւային հանդէպ եղած լեռնաբազկի սարահարթի վերայ՝ յանուն Եղիշէի առաքելոյն։ Վանքս կառուցեալ է երկու սիւների վերայ համակ սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 12 մետր 43 սանթիմ, լայնութիւն 10 մետր 33 սանթիմ։ Դրան հարաւային սեմի վերայ. «Թ. ՌձԼԵ. ես Նա . . ո . . ա Մովսէս էրից»։

Հիւսիսային սեմի վերայ.

«Ի հոպեկիանէ Ազատարարէ Գ. թուահամարէ մետասան տարեկ վեր տար (1311). ես անարժան տէր Ղազարս գրեցի»։ Երևում է որ վանքս նորոգուած է երբեմն երբեմն։ Վանքս ունեցած է շրջապարիսպ և թաղակապ, գեղեցիկ սենեակներ, յորոց այժմ եօթն կանգուն և եօթն կիսակործան են։ Նմա-

---

[1]) Իմաստն է. Ես եմ Աքուլեցի Գրիգորի որդի Պօղոսին մայրն և Եփրեմի քոյր Թագուհին։

նապէս կործանուած են շրջապարսպի արեւելեան և արևմտեան պատերն և վանքիս հիւսիսային որմի արտաքին երեսն։

*Հին հանգստարան.* Գետաշէն աւանիս հանգստարանի հին մասումն կան շատ հին գերեզմաններ, որոց գլխակալ խաչարձաններն զարդարուած են հիանալի նախշերով և քանդակներով։ Այնքան գեղեցիկ են փորուածքներն, մինչև անգամ այցելուն զմայլում է ժամանակին քանդակագործութեան գեղարուեստի նուրբ ճաշակին և ընտիր ոճին վերայ։ Խաչարձաններից մէկի վերայ փորագրուած է. «Խաչս յիշատակ հաւրն իմոյ Խունին և մաւրն իմոյ Գուլին Թվ. ԾՂԱ.»։ Կից սրան. «Ես Ետկար աղէս կանգնեցուցի. եռ մեղաւորս Ազարիա»։

Այլ խաչարձանի վերայ քանդակագործուած է մի ձիաւոր մարդ, որ վահանը կապած իւր ձախ բազկի վերայ գեղարդը խրած է մի այլ փախչող ձիաւորի սնակուշտն, որ ուժասպառ եղած է։ Առաջնոյն թիկնապահն, վեր առած վահան և նետեր, վազում է իւր տիրոջ ետևից։ Փորագրուած է քաջի ստորոտում. «Թվ. ՋՂԹ. Տաէն Ազարի էչ (էջ) իւր Բ. թաւրովն (թորով, թրով), ողորմի ասացէք»։ Հանգստարանումս կան և մելիքազուններրի գերեզման, որք են Մելիք-Մնացականեաններրի ցեղից։

*Մրցունիս*

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան աւանիս արևմտեան կողմում գետակին ձախ կողմի բարձր լանջի վերայ։ Արդէն գոմանոց փոխած են գիւղիս աւերակը Գետաշէնցիք, բայց քարուկիր եկեղեցին կանգուն մնում է փոքր ինչ վերև աղբիւրի մօտ, որ շինուած է մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան, մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, 12 մետր երկարութիւն, 6 մետր 95 սանթիմ լայնութիւն։ Խորանի վէմ քարն ունի հիանալի նախշուն քանդակներ, բայց չունի գիր։ Դրան մօտ մի խաչքարի վերայ.

«Յովհանէսի մորն Նուրացիանին»։ Նոյն արևմտեան ար-

Digitized by Google

տաքին ճակատում. «Թիւ ՉԷ. Ես Եղան անշան կանգնեցի զսուրբ Սարգիսս ինձ և եղբաւր իմոյ Վարգանայ»։ Մի կարակ-նաձև տաշուած քարի վերայ, որ գանագլուխ եղած է, այժմ ընկած է դրան հիւսիսային կողմում արտաքուստ. «Թվ. ՋԼԴ. կամաւն Աստուծոյ և հրամանաւ սուրբ հայրապետին Ստեփա-նոսի, եպիսկոպոսութեան տէր Գրիգորի.. Սոմաճին, ես Յովա-կիմս . . . ի բարեխաւսութիւն հոգոյ իմոյ»։ Այս տեղ, դրանս առաջ մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ փորագրուած է. «Վասն Մկրտիչ եպիսկոպոսի հոգւոյն փրկութեան»։

Բ. ԱՐԼԱՀ ԳԻՒՂ. Հիմնուած է Գետաշէնի հիւսիսային կողմում մի ձորի մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, փոքր մասն տեղափոխուած Հաթերքից և այլ տեղերից, հողն արքունի, մեծ մասամբ ջրարբի և արգիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և քաղցրահամ ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Մինաս, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, - երկարութիւն 18 մետր 85 սանթիմ, լայնութիւն 10 մետր 30 սանթիմ։ *Արձանագրութիւն.* «Թվ. ՌՃՁԱ. յիշատակ է Պետրոսին, Յակոբին, Մրգին տրոպ (տրոպ) տէր Պօղոսին, որ էինք որդիք Աւետիսի՝ ազգէն Հասանայ, որ էր ժամանակն Վալի Նամատին (Նատր Շահին), որ կոչի Թահ-մազ, որ թագաւորեցաւ, ի երկրին Բարսից բազում գաւառս աւերեաց»։ Քահանան գալիս է Սուլուկ գիւղից։ Տուն 34, ար. 91, իգ. 66, ար. ծնունդ 8, իգ. 5, պսակ 3, ար. ննջ. 3, իգ. 2։

Տաճարումս կայ Գ. գրչագիր.

Ա. Աւետարան պատկերազարդ, գրուած թղթի վերայ, միջակ գիրքով, միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նախշերն, թռչնագրերն և ծաղիկներն։ *Յիշատակարանից.* «Եւ արդ ես մեղապարտ գծողս Նիկոլայոս.. գրեցի զաւետա-րանս ի քաղաքս, որ կոչի Վան ընդ հովանեաւ Սուրբ Աստուա-ծածնին և սուրբ Վարդան զաւրավարիս ի թուականութեանս Հայոց ՉՃԲ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս Վարակայ տէր Յովհաննիսի և 'ի թագաւորութեան Ջհան Շահի Միրզին»։

Digitized by Google

Ցետոյ գրուած է. «Ես Փիլիպպոս կաթուղիկոս զայս աւետարանս ետու Սոթեցի Յակոբին, որ խւրն յիշատակ դնէ»։ Մարկոսի վերջում և յիշատակարանի ետև «Ես Մարտիրոս եպիսկոպոս Էջմիածնայ Պազուխէն գնեցի զաւետարանս ու Գ. շարականոց և դրի ի դուռն սուրբ Էջմիածնայ»։ Դժուարին է իմանալ թէ ինչ առթիւ ընկած է այստեղ աւետարանս։

Բ. Աւետարան մեծադիր, գրուած հաստ թղթի վերայ, առանց պատկերի, անյայտ է գրողի անունն և տեղն, գրուած է միայն յիշատակարանի տեղ. «թվկս. ՌՃՁԳ. ին». իսկ Մարկոսի վերջում. «Ի թվականիս ՌՃՂԱ. ին ես Ամիր Վահապ և Սուղի Վասիլ իշխանս շինեցի եկեղեցիս, և գաւառանս, առուն հանեցի Կինեվանուց ձորիւէն ու սարերէն. բնակիչք գիւղիս խոստացան տարէնը Գ. ժամ կատարոյն Աստուծոյ աւրհնի։ Դարձեալ կամուրջն շինեցի, ու կապն կապեցի. Թճ. (900) անծեն յերինջ (չծնուած երինջ) մորթեցի, ոչխարաց, դոշից, գառնից սաւա [1]). այս եղաւ դարձեալ Բուսխանի (սառնատան) մուլքն իմն էր, ջուր չունէր, շապտէնին ա. աւր ծակ քարով ջուր տվի իմ մլքի խաթրին համար»։

Աւետարանիս սկզբումն. «Շահ Ապազն վար (որ) եւեկ, Ղարապաղս կալաւ, պարոն տէր Ոհանն Գանձոյ քաղաքէն շատ գերի ազատեց, շատ գիրանք ա. շարականոց Նրես Սուրբ Եղիշեայ առաքեալին վանքն. դ. մաշտոց, ա. աւետարան, ա. սաղմոսարան, ա. այլթարք, ա. խրատագիրք տուի տէր Մելքիսեթին...։ Տէր Ոհանէսս Ղալապեկ [2]) ես այս գիրանքս ազատեցինք անաւրինաց ձեռքէն, տվինք մեր հոգիս ա. աւետարան տվի Ոսկեան, ա. շարականաց տվի Աւանէս էրէցն Շաշվացի. թիւն ՌԾԶ. էր»։

Գ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, առանց յիշատակարանի, միայն Ղուկասի վերջում գրուած է. «Յանուն Աստուծոյ ես Մուրադչէս ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ Խաչատուր Իրիցիդ.. ի գօառէն (գաւառէն) Եղի-

[1]) Բացի ոչխարից-խոյից և գառներից։

[2]) Թերևս մտահան արած չէ ընթերցողն Հաթերքեցի Տէր-Յովհաննէս Ղալաբէկը։ Երևում է որ աւետարանս բերուած է Հաթերքից։

չէի առաքելոյն 'ի յաթոռոյն Ջրվշտկայ [1]... և սպասաւորին սուրբ ուխտին Հախբատայ.. 'ի թվ. ՊՂԷ. 'ի տրէ ամսոյ 'ի ԻԵ. Աստուած շնորհաւոր անէ. ամէն»։

*Ս. Յովհաննէս ուխտատեղի*. Գիւղիս հիւսիսային կողմում բարձր սարի գլխին մի փոքր խաչարձան է, որի մօտ կան մեծ մեծ հացի և կաղնի ծառեր։ Խաչիս վերայ եղած է մատուռ, որ վաղուց արդէն փլած է։

Գ. ԲԱԽՇԻ կամ ՀԱՃԻ ԳԻՒՂ. Շինուած է Աբլահի հարաւ արևմտեան կողմում, մի ձորակի ձախ լանջի վերայ. բնակիչք 1870 թուին տեղափոխուած են այստեղ Հաճի-քեանդ ամարանոցից մարմնաւոր կառավարութեան հրամանաւ, հողն արքունի, լեռնային, անջրդի, միջակ արդիւնաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 29 սանթիմ, լայնութիւն 8 մետր 29 սանթիմ։ Եկեղեցուս դրան մէջ, ներքուստ արևմտեան որմի վերայ. «Սուրբ խաչս էտգար (յիշատակ) Եղիսաբէթ թվ. ՌՀԹ.»։ Յայտնի է որ եկեղեցիս հնաշէն է, գիւղս արդէն աւերակ եղած է, նոր բնակչաց եկած ժամանակ. խիստ մեծ է հին հանգստարանի ծաւալն։ Ծուխ 36, ար. 127, իգ. 93, ար. ծն. 5, իգ. 3, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

Դ. ՍՈՒԼՈՒԿ ԳԻՒՂ. Շատ հեռի չէ Բախշի գիւղից Սուլուկ կամ Ազատ գիւղն, որ հիմնուած է Պանդ անուն սարի արևելահարաւյեաց լանջին վերայ. բնակիչներից բնիկ 15 գերդաստան, Խոյից գաղթած 20, Բօզլուխից եկած 7, իսկ Բախշի գիւղից տեղափոխուած 8 ծուխ։ Հողն արքունի, լեռնային անջրդի և սակաւ արդիւնաւէտ, գերազանց օդն, կլիման և ջուրն և տեսարանն երկար կեանք 100 տարի եկեղեցին Ս. Յովհաննէս Մկրտիչ [2]) քարուկիր, կառուցեալ չորս սիւների

[1]) Կարծում ենք որ Ողտի-Մատուռ աւերակ գիւղացի է (գտնուում է Ջրվշտիկ վանքի մօտ) աւետարանիս ծախողն։

[2]) Տաճարիս հիւսիսային կողմում, դրան վերայ բարեպաշտ ոմն շինած է երկյարկ զանգատուն. «Սուրբ Աստուածածին (սխալմամբ գրուած է) եկեղեցւոյ զանկագատունս շինեցի արդեամբ Մակի Պետրոսեան Աւալեանցի ի յիշատակ հանգուցեալ որդոյ իւրոյ Խաչատուրի 1890 յամի մայիսի 10 օրն»։

տած է թանձրախիտ անտառներով, ասում են, բազմիցս ապաւինած է 'ի հնումն Կիւլստանի հայ ժողովուրդն, մանաւանդ պատերազմների ժամանակ և ազատ մնացած թշնամուց։

ԺԶ. ԳԱՐԴՄԱՆ ԳԱՒԱՌ, որ ընկած է Կուրակ և Շամքոր Գետակների, դաշտաբերանի և Մռաւեան լեռնաշղթայի գագաթնագծի մէջ։ Ամենամեծ մասամբ անհարթ է գաւառիս մակերևոյթն։ Սարսափելի խոր խոր ձորեր, մութ մութ կիրճեր, օձապտոյտ խոխոմներ, բարձրագագաթ սարեր և բլուրներ և թանձրախիտ անտառներ գրաւած են գաւառիս մակերևոյթը։ Իսկ վերնամասն խիստ զուարճալի է լեռնահարթեր, ծաղկալի հովիտներ, մարգալի արօտներ, դալարագեղ լեռնալանջեր են գաւառիս Մռաւ և Արութիւն սարի կողմերն։

Ա. ԳԵՏԱՇԷՆ ԱՒԱՆ. Հիմնուած է Կուրակ [1]) գետակի ձախ ափի վերայ, խոր է գիւղատեղի ձորն և նեղ հորիզոնն. բնակիչք ամենամեծ մասամբ տեղափոխուած են Ըռստակ և Ջրաբերդ գաւառից. բնիկ է միայն ամենափոքր մասն. հողն արքունի, մեծ մասամբ անջրեւի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն ցորեն, գարի, կորեկ, կտաւհատ, գետնախնձոր, տանձ, խնձոր, դամոն, դեղձ, խաղող, ընկոյզ, կեռաս, թութ, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ կառուցեալ վեց սիւների վերայ համակ սրբատաշ տորոնագոյն քարով, երկու փոքր խորանների վերայ կայ այլ ևս երկու խորան. երկարութիւն 23 մետր 40 սանթիմ, լայնութիւն 14 մետր 30 սանթիմ։ Եկեղեցիս, որի միջից բղխում է բարեհամ ջուր, չունի արձանագրութիւն, բայց երևում է որ նորոգուած է. քահանայ 2։ Աւանումս ծաղկած է հիւսնութեան, դարբնութեան, ոսկերչութեան, դերձակութեան, թամբագործութեան,

[1]) Գետակս է սահմանագլուխ Արցախի և Թիփլիսի հոգևոր կառավարութեանց թեմերին կամ Ղարաբաղի և Գանձակի։ Գետաշէնցիքս տեղափոխուած են Ըռստակի գաւառի Խոտորաշէն գիւղից, որ այժմ աւերակ է։ Գետակս իւր սկիզբը առած է Մռաւի միջնագագաթի—Բաղրկեանի—հիւսիսային լանջերից։

*սայլագործութեան, քարտաշութեան, ոստայնագործութեան և ատաղձագործութեան, և այլն արուեստներն։*

*Ծուխ* 434, *արական* 920, *իգական* 782. *արական ծնունդ* 51, *իգական ծնունդ* 32, *պսակ* 31. *ար. ննջեցեալ* 18, *իգ.* 11։

## ԱՒԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.

*Աւանիս վարի ծայրին մօտ շինուած է մի քարուկիր մատուռ, որ ունի միջակ մեծութիւն, ցած դուռն, 7 մետր 90 սանթիմ երկարութիւն, 5 մետր 45 սանթիմ լայնութիւն՝ Նահատակ անուն։ Դասամիջի ուղղութեամբ խորանի տակ կայ մի փոս, որի մուտքն բացուած է բեմի ժողովրդահայեաց երեսից, որի մասին ասում են Նահատակի գերեզման. բայց անծանօթ է անունն։*

*Ներքուստ հիւսիսային որմում մի քարեայ խաչի վերայ.*

*«Սուրբ խաչս բարեխաւս Թանգրղուլին»։*

*Իսկ մատրանս դռնագլուխ քարէ վերայ.*

*«Թվ. ՌՃԻՉ. կամաւ ամենակալին Աստուծոյ շինեցաւ սուրբ Նահատակս ձեռամբ Սի.է.նի (գուցէ Սիմէօնի) և որդուն Քամալ բէկին, օգնականութեան (թեամբ) գիւղիս, թագաւորութեան Պարսից Շահ Սուլէման....»։ Մատրանս մէջ, որ և ուխտատեղի է, կան հետևեալ գրչագրերն և մասունքներն.*

*Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ մեծութեամբ, արծաթապատ, ոսկեզօծեալ կողակալներով, որի մէջ կայ չորս աւետարանչաց և Յիսուսի Քրիստոսի բոլոր հրաշագործութեանց և բժշկութեանց պատկերներն։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ թռչնագրերն, սքանչելի ծաղիկներն, հիանալի նախշերն, ուշագրաւ նկարներն, թանկագին ներկերն, ազնիւ ոսկեզօծն և զմայլելի գեղարուեստի նրբագործութիւնն։ Մարկոսի և Ղուկասի վերջում գրուած է.*

*«Յիշատակ է աւետարանս Մահտեսի Ջանղուլուն* [1]) *և ծնողացն Վէլիջանին, Համանին և կողակցուն իւրոյ Փարուն և*

---

[1]) *Յետոյ աւելացրած է ուրիշ գրող. «որ եղև քահանայ և եգին զանուն նորա տէր Գրիգոր»։*

եղբարց Պալին և Եոկարին և հանգուցեալ եղբարցն Միրաքին, Շահիջանին և ամենայն ազգականաց ամէն։ Ծրեցաւ սակաւ յիշատակարանս ձեռամբ Ալեքսան դրչի Թվին ՌՃԺ, և եօթի և ըստ իմում չափու, ասէք ողորմի»։

*Յիշատակարանից*. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Նուաստ և յետին գրչի Նկղս (Նիկողայոսի) մեղապարտի, ունայնազործ մելանաւորի ի Թուաբերութեանս Ազքանազեան և Աբեթական տումարի ՌՃԺԶ. և ըստ Նորում շրջանի՝ ԴԴ. և զալստենէն Կենարարին ՌՈՀԲ. [1]) ի յստոյգ և ընտիր աւրինակէ ևս առաւել համաբայիցն, զի պաղափար սորին էր ի դրանէ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ի աշխարս Հռնաց.. աստուածապահ քաղաքն ի Կաֆայ առ ոտս Սրբոյն Սարգսի զաւրավարին ի հայրապետութեան Հայոց տեառն Յակովբայ և առաջնորդութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Մարտիրոս քաջ բաբունապետի և ի տեղապահութեան Յակովբ վարդապետի... ի Թագաւորութեան Պարսից Շահ Սափին, և Նախիջևանայ խանին Ալուղուլի..... Արդ այժմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս ցանկացող եղեալ աստուածարեալ և պատուական այրս մահտեսի Ծանդուլին ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ.... զՄէլիք Նարնպէկն... դարձեալ յիշեսջիք զՄահտեսի աէր Վարդանն, որ զաւետարանիս զմագաղաթն շնորհեաց... Դարձեալ յիշեսջիք զՂրիմեցի զլուսպարոնն և զորդեակն իւր զԴաւիթն, որ մեզ տեղ շնորհեցին, որ աւարտեցաք զսուրբ գիրքս, զի գառն մահտարաժամ եղև ի քաղաքն Կափայ և մեր տեսեալ զդառնութիւն և զայէտ մարցն, կամաւորութեամբն Աստուծոյ և հրամանաւ Նորին բնակեցաք ի Ղրիմ ժամանակ ինչ և աւարտն հասուցաք ըստ մեր տկար բնութեան և ծաղկազարդեցաք ոսկով և բազում դունզգունորակօք.... Յիշատակ է սա ի յեկեղեցին Ամենափրկչին ի յերկիրն Նախիջևան ի գաւառն Երնջակ ի դէմս Սուրբ Կարապետին ի գեաւղն Շահկերտ, որ այժմ կոչեն Ղազանչիլար ի

[1]) Կամ ՌՃԺԶ.-Ն սխալ է և կամ ՌՈՀԲ.-Ն վասն զի Կենարարին ՌՈՀԲ. թիւն հաւասար է Հայոց ՌՃԻԱ.-ի. իսկ ՌՃԺԶ.-Ն հաւասար է Քրիս. ՌՈԿԵ. թուին։

յառաջնորդութեան յայսմ նահանգիս յԵսայեայ և Առաքել քաջ րաբունապետաց . . . » ։

Մեղաց գրութիւնից ազատարար Յիսուսի Քրիստոսի սոյն աւետարանն գերի է ընկնում այլազգեաց ձեռքն, որը գնում է Ջրաբերդի Մէլիք-Ադամ Ա. «որ գնեաց զսա ի հալալ ընչիւք ժւրովք 'ի ձեռաց այլազգեաց . . . նաև մաքուր արծաթօք սպառեալ զարդարեաց և ընդելուզեաց ոսկով պատուականօք և յետ (եղ) զսա յիշատակ 'ի սուրբ աթոռն Եղիշէի առաքելոյն (Ջրվըշտիկ) և սուրբ լուսաւորչի Ազուանից ձեռամբ գերիմաստ և յոգնահանճար Աւագ քաջաջան վարդապետին [1]) . . . Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՄէլիք Հաթամն և հայր իւր Մէլիք Իսրայէլն և զպապն իւր Մէլիք Եսային և սորա որդոցն Ոսխէփին, Մէժլումին, Իսրայէլին եւ առաւել որդւոց սոցին Սէյրաբին, Ալլահղուլին, Ալլահվերտին և մօրն Հերիքնազին և որդոցն ծաղկելոց նորափթթիցն Իսրայէլին և Մէժլումին և ամենայն արեանառու ննջեցելոց . . . գրեցաւ թվին ՌՄ. երկուսին, որ լստ փրկչականին 1753»։

Բ. Աւետարան մեծադիր, հաստ, գրուած թղթի վերայ, որի սկզբում կայ ոտնալուայի, Յուդայի մատնութեան, Ղազարոսի յարութեան, Ծաղկազարդի, Քրիստոսի խաչելութեան, պատանքաւելուն, քառասնօրեայ գալստեան, մկրտութեան, աւետման, ծննդեան և չորս աւետարանչաց պատկերներն, բայց բոլորովին անճաշակ և զուրկ գեղարուեստի շնորհքից և ընտիր ներկերից։ Գողացած են և սորա յիշատակարանը, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն։ Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Յանուն Աստուծոյ ես Յովհաննէս երէց Պետանց աբեղայս ու Բրտանց Սարգիս մեր սրտի հաւժարութեամբ աւետարանս ծախեցաք Վարդանայ և առաք ի նրանէ ա. կով, բ. կապիճ հաց, աւետարանին . . . Ծարեցի Զարմանին որդին Խատապայ վկայ . . . Նաճպատինայ որդին Վահրավայ վկայութեամբ, իմ Յոսիկ Իրիցոյ վկայութեամբ, որ զգիրս գրեցի [illegible] Պե. քաղոց Գ. գրեցաւ»։

---

[1]) Սա նոյն է Դոփի մահրասան։



Digitized by Google

Իսկ միւս թերթի առաջին երեսում գրող Կարապետ աբեղան յայտնում է թէ կազմել տուած է աւետարանս թուին «ՊԻԱ.»: «Զաւետարանս թագւորնայ բերուց (բերաւ) գինն առաւ, ու տարաւ»:

Գ. Աւետարան մեծագիր, մագաղաթեայ, ամբողջապէս գրուած գլխագրերով, որ ունի միայն ծաղկազարդի և չորս աւետարանչաց պատկերներ, Քրիստոսի պատկերը որ ձախ ձեռնով բռնած է աւետարանը և աջ ձեռնով օրհնում է մի վեղարաւոր և մի գլխաբաց մարդ: Վեղարաւորի գլխից վերև գրուած է. «Քրիստոս որդի Աստուծոյ, ընկալ զբանաւոր զաւետարանս մեղապարտիս Սահակայ իբրև զՏէր և ողորմեա»: Իսկ գլխաբաց մարդից վերև, «Առաքել ծառայ Աստուծոյ»: Աւետարանիս սկզբի նախշերի գլուխներին և տակերին գրուած են սպիտակ ներկով. «Տէր Աստուած, ողորմեա Առաքելին... Տէր Աստուած գթայ ի հոգի Ռեմանոսի ծառային քո. ամէն. Աստուած իմ Յիսուս ողորմեա մեղուցեալ ոգոյս, ամէն [1])»: Հարկ է յայտնել թէ միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նկարներն, ծաղիկներն և ոսկեզօծն: Համարեա թէ երեք յիշատակարան ունի աւետարանս, առաջին յիշատակարանի վերջում գրուած է. «Տէր Աստուած ամենակալ, նորոգեա 'ի կեանս անծերանալիս զՍահակ ստացող սուրբ աւետարանիս ЛИСН ամէն»: Նոյն իսկ աւետարանս գրողի գրչով գրուած է և յիշատակարանս և յունարէն տառերս: Երկրորդ Յիշատակարանովս յայտնում է գրողն թէ աւետարանս ստացած է Սահակ կրօնաւորն, որ եղած էր Անեցի և աշակերտ Հաղբատայ. յիշում է նաև, թէ Սարգիս կրօնաւորն միաբան Հաղբատի, «իբրև զիմաստուն վաճառական խնդրող եղեալ պատուական մարգարտին և «գտեալ զսա (զաւետարանս) ի գաւառի անդ Անւոյ, մեծածախ, ոսկեգիր և ոսկենկարանչ ծաղկաւք զարդարեալ, ստացաւ զսա 'ի հալալ ընչից իւրոց... և ընծայեաց զսա մեծ կոյմանց եպիսկոպոսարանիս, որ է իւր տեղի սնունդեան և 'ի տարւոջն Բ. աւր ժամ.... ընծայեցաւ կենաց

[1]) Գրուած է Մատթէոսի վերջում նոյն իսկ աւետարանս գրողի գրչով. «Տէր Աստուած ողորմեա Սարգսի կուսակրաւն քահանայի....»:

Digitized by Google

աւետարանս Սուրբ Գրիգորիս 'ի թուականութեանս ՈՀԲ. (1223) 'ի յիշխանութիւնս հզաւրին Հասանայ որդւոյ Վախթանգայ և ի հայրապետութեանս (Աղուանից) տեառն Յովհաննիսի։ Եւ արդ գրեցաւ սա և ծաղկեալ կազմեցաւ յամի, յորում էր թիւ համարոյ թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից և նոյնքանեայ տասանց, իսկ նորայս շրջանի միոյ հարիւրոյ քսան և ութեակ [1]) թուոյ ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակոբայ, յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեանն Հայոց արևմտայինն կողման Լևոնի քրիստոսասէր և յաղթող թագաւորի և մերոյ կողմանցս և Վրաց Գէորգեայ թագաւորի և 'ի սպարապետութեան Զաքարիա Շահանշահի.... զբովանդակ դոյք ծնողաց մերոց և եղբարց ծախեցաք և շինեցաք զաստուածաբնակ սուրբ եկեղեցիքս և անդ եդաք զսուրբ աւետարանս Աստուծոյ, որ շինեցաւ 'ի մէնջ ի Վանս Արջուառճի....»։

Յետոյ կազմուած է աւետարանս նախ Հոռոմոսի վանքում (Օձուն գիւղի կողմերում) «հրամանաւ հաւրն Մխիթարայ»։ Սորանից ներքև գրուած է. «Ի թվ. ՉՀԴ. կամաւ ամենակալին Աստուծոյ ես տէր Վանական գտի հնացեալ և աւերեալ զսուրբ աւետարանս և ետու վերստին նորոգել...»։ Շարայարած է երրորդ անգամ կազմողն. «ՊԼԲ. էր, մեհեկի ամսի ԻՁ. էր, որ կազմեցաւ, որ է սուրբ աւետարանս Մեծ Կողմանց Խաչենոյ Եպիսկոպոսարանէն Մայրաքաղաքէնս [2]), իշխանութեան պարոն Ջալալին, եպիսկոպոսութեան տէր Գրիգորին Գեռաքարեցին (սոյն)...»։ Կցած է չորրորդ անգամ կազմել տուողն գրելով Մարկոսի վերջում 'ի միջի այլոց. «Ուլախաթուն... զի յոյժ հնացեալ էր սուրբ աւետարանս, ետ նորոգել զսա ի ժամանակիս, որ է Մատխան (°) եկն Թաւրէզ թվ. ՋԽԶ...»։

Դ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ,

---

[1]) Կոչուում է այս փոքր թուական Հայոց որ շինուած է Փառիսոսցի Սարկաւագ Յով. վարդապետն փրկչական 1116։

[2]) Հաւանական է որ այդ ժամանակներում եպիսկոպոսանիստ աթոռն եղած լինի մեզ ծանօթ Մայրաքաղաքին մէջ։

Քապաճին Ապովի որդի, որ 1-ի Մէլիք Օսեփին Վէլուխոյ Պէհէզ Սարգսին, Պէհէզ»։ Անհասկանալի է արձանագրութեանս վերջին բառի իմաստն։ Տուցէ «Որ 1-ի»—Ա. Մէլիք-Յովսէփին։

Ներսում միջնակամարի հարաւային կողմի կիսապատուանդանի քարին վերայ. «Ես Աքուլեցի Գրիգորի որդի Պօղոսին մար (մայր), Եփրեմին քոր (քոյր) Թագուհին [1])»։

Շինութեան թուականն է սորանից վերև խոյակի վերայ. «Թվ. ՌՃԴՐ.»։

Անապատիս արևելեան և արևմտեան կողմերում եղած են խուցեր, դեռ մի քանիսն կանգուն են այժմ։ Հաստատում են թէ Կուսանոց եղած է այս, երկար ժամանակ նըստած են այստեղ կուսանք, որոց մէջ եղած է և մի կոյս Մէլիք-Բէկլարեանների տոհմից, որի պատճառաւ Մէլիք-Թամրազին որդին նորոգել տուած է անապատս։

Անապատիս արևմտեան կողմին խիստ մօտ է Հայոց *Ուսումնարանի* շէնքն, որ դեռ կիսատ է և ունի 34 մետր 45 սանթիմ երկարութիւն և (պատշգամով միասին) 11 մետր լայնութիւն։

## ԵՂՆԱՍԱՐ ՎԱՆՔ.

Հիմնուած է գետաշէնիս հարաւային հանդէպ եղած լեռնաբազկի սարահարթի վերայ՝ յանուն Եղիշէի առաքելոյն։ Վանքս կառուցեալ է երկու սիւների վերայ համակ սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 12 մետր 43 սանթիմ, լայնութիւն 10 մետր 33 սանթիմ։ *Դրան հարաւային սեմի վերայ.* «Թ. ՌՃԼԵ. ես Նա . . ո . . ա Մովսէս էրից»։

*Հիւսիսային սեմի վերայ.*

«Ի հոպելեանէ Ազատարարէ Գ. թուահամարէ մետասան տարեկ վեր տար (1311). ես անարժան տէր Ղազարս գրեցի»։ Երևում է որ վանքս նորոգուած է երբեմն երբեմն։ Վանքս ունեցած է շրջապարիսպ և թաղակապ, գեղեցիկ սենեակներ, յորոց այժմ եօթն կանգուն և եօթն կիսակործան են։ Նմա-

[1]) Իմաստն է. Ես եմ Աքուլեցի Գրիգորի որդի Պօղոսին մայրն և Եփրեմի քոյր Թագուհին։

նապէս կործանուած են շրջապարսպի արեւելեան եւ արեւմտեան պատերն եւ վանքիս հիւսիսային որմի արտաքին երեսն։

*Հին հանգստարան*. Գետաշէն աւանիս հանգստարանի հին մասումն կան շատ հին գերեզմաններ, որոց գլխաւոր խաչարձաններն զարդարուած են հիանալի նախշերով եւ քանդակներով։ Այնքան գեղեցիկ են փորուածքներն, մինչեւ անգամ այցելուն զմայլում է ժամանակին քանդակագործութեան գեղարուեստի նուրբ ճաշակին եւ ընտիր ոճին վերայ։ Խաչարձաններից մէկի վերայ փորագրուած է. «Խաչս յիշատակ հայրն իմոյ Խունին և մայրն իմոյ Գուլին Թվ. ԾՂԱ.»։ Կից սրան. «Ես Ետկար աղէս կանգնեցուցի. ես մեղաւորս Ազարիա»։

Այլ խաչարձանի վերայ քանդակագործուած է մի ձիաւոր մարդ, որ վահանը կապած իւր ձախ բազկի վերայ գեղարդը խրած է մի այլ փախչող ձիաւորի սնակուշտն, որ ուժասպառ եղած է։ Առաջնոյն թիկնապահն, վեր առած վահան և նետեր, վազում է իւր տիրոջ ետեւից։ Փորագրուած է քաջի ստորոտում. «Թվ. ՋՂԹ. Տոէն Ազարի էչ (էջ) իւր Բ. Թաւրովն (Թորով, Թրով), ողորմի ասացէք»։ Հանգստարանումս կան և մելիքազունների գերեզման, որք են Մելիք-Մնացականեանների ցեղից։

*Մըցունիս*

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան աւանիս արեւմտեան կողմում գետակին ձախ կողմի բարձր լանջի վերայ։ Արդէն դոմանոց փոխած են գիւղիս աւերակը Գետաշէնցիք, բայց քարուկիր եկեղեցին կանգուն մնում է փոքր ինչ վերեւ աղբիւրի մօտ, որ շինուած է մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան, մի դուռն արեւմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, 12 մետր երկարութիւն, 6 մետր 95 սանթիմ լայնութիւն։ Խորանի վէմ քարն ունի հիանալի նախշուն քանդակներ, բայց չունի գիր։ Դրան մօտ մի խաչքարի վերայ.

«Յովհանէսի մօրն Նուրացիանին»։ Նոյն արեւմտեան ար-

տաքին ճակատում. «Թիւ ՉԷ. Ես Եղահ անշահ կանգնեցի զսուրբ Սարգիսս ինձ և եղբաւր իմոյ Վարգանայ»: Մի կարակ-նաձև տաշուած քարի վերայ, որ դռնագլուխ եղած է, այժմ ընկած է դրան հիւսիսային կողմում արտաքուստ. «Թվ. ՉԼԴ. կամաւն Աստուծոյ և հրամանաւ սուրբ հայրապետին Ըստեփա-նոսի, եպիսկոպոսութեան տէր Գրիգորի.. Սոմաճին, ես Ցովա-կիմս... ի բարեխաւսութիւն հոգոյ իմոյ»: Այս տեղ, դրանս առաջ մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ փորագրուած է. «Վասն Մկրտիչ եպիսկոպոսի հոգւոյն փրկութեան»:

Բ. ԱԲԼԱՀ ԳԻՒՂ. Հիմնուած է Գետաշէնի հիւսիսային կողմում մի ձորի մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, փոքր մասն տեղափոխուած Հաթերքից և այլ տեղերից, հողն արքունի, մեծ մասամբ ջրարբի և արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և քաղցրահամ ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Մինաս, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, -երկարութիւն 18 մետր 85 սանթիմ, լայնութիւն 10 մետր 30 սանթիմ: *Արձանագրութիւն.* «Թվ. ՌՃՁԱ. յիշատակ է Պետրոսին, Ցակոբին, Մրգին տրոպ (տրոպ) տէր Պօղոսին, որ էինք որդիք Աւետիսի՝ ազգէն Հասանայ, որ էր ժամանակն Վալի Նամատին (Նատր Շահին), որ կոչի Թահ-մազ, որ թագաւորեցաւ, ի երկրին Բարսից բազում գաւառս աւերեաց»: Քահանան գալիս է Սուլուկ գիւղից: Ծուխ 34, ար. 91, իգ. 66, ար. ծնունդ 8, իգ. 5, պսակ 3, ար. ննջ. 3, իգ. 2:

Տաճարումս կայ Գ. գրչագիր.

Ա. Աւետարան պատկերազարդ, գրուած թղթի վերայ, միջակ դիրքով, միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նախշերն, թռչնագրերն և ծաղիկներն: *Ցիշատակարանից.* «Եւ արդ ես մեղապարտ գծողս Նիկոլայոս.. գրեցի զաւետա-րանս ի քաղաքս, որ կոչի Վան ընդ հովանեաւ Սուրբ Աստուա-ծածնին և սուրբ Վարդան զաւրավարիս ի թուականութեանս Հայոց ՋԺԲ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս Վարակայ տէր Ցովհաննիսի և 'ի թագաւորութեան Ջհան Շահի Միրզին»:

Digitized by Google

Յետոյ գրուած է. «Ես Փիլիպպոս կաթուղիկոս զայս աւետարանս նոու Սոթեցի Յակոբին, որ իւրն յիշատակ դնէ»։ Մարկոսի վերջում և յիշատակարանի ետև «Ես Մարտիրոս եպիսկոպոս Էջմիածնայ Պաղուլխէն գնեցի ղաւետարանս ու Գ. շարականոց և դրի ի դուռն սուրբ Էջմիածնայ»։ Դժուարին է իմանալ թէ ինչ առթիւ ընկած է այստեղ աւետարանս։

Բ. Աւետարան մեծադիր, գրուած հաստ թղթի վերայ, առանց պատկերի, անյայտ է գրողի անունն և տեղն, գրուած է միայն յիշատակարանի տեղ. «Թվկս. ԲՃՁԳ. ին». իսկ Մարկոսի վերջում. «Ի թվականիս ԲՃՂԱ. ին ես Ամիր Վահապ և Սուղի Վասիլ իշխանս շինեցի եկեղեցիս, և գաւառանս, առուն հանեցի Կինեվանուց ձորերէն ու սարերէն. բնակիչք գիւղիս խոստացան տարէնը Գ. ժամ կատարոյն Աստուծոյ աւրհնի։ Դարձեալ կամուրջն շինեցի, ու կապն կապեցի. Թճ. (900) անծեն յերինջ (չծնուած երինջ) մորթեցի, ոչխարաց, ղոչից, գառնից սաւա[1]). այս եղաւ դարձեալ Բուսխանի (սառնատան) մուլքն իմն էր, ջուր չունէր, շապտէնն ա. աւր ծակ քարով ջուր տվի իմ մլքի խաթրին համար»։

Աւետարանիս սկզբումն. «Շահ Ապաղն վար (որ) երեկ, Ղարապաղս կալաւ, պարոն տէր Ոհանն Գանձոյ քաղաքէն շատ գերի աղատեց, շատ գիրանք ա. շարականոց Նրետ Սուրբ Եղիշեայ առաքեալին վանքն. դ. մաշտոց, ա. աւետարան, ա. սաղմոսարան, ա. պղթարք, ա. խրատագիրք տուի տէր Մելքիսեթն...։ Տէր Ոհանէսս Ղալապեկ[2]) ես այս գիրանքս ազատեցինք անաւրինաց ձեռքէն, տվինք մեր հոգիս ա. աւետարան տվի Ոսկեան, ա. շարականաց տվի Աւանէս էրէցն Շաշվացի. թիւն ՌԾՁ. էր»։

Գ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, առանց յիշատակարանի, միայն Ղուկասի վերջում գրուած է. «Յանուն Աստուծոյ ես Մուրադչէս ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ Խաչատուր Իրիցիդ.. ի գօառէն (գաւառէն) Եղի-

[1]) Բացի ոչխարից-խոյից և գառներից։

[2]) Թերևս մտահան արած չէ ընթերցողն Հաթերքեցի Տէր-Յովհաննէս Ղալաբէկը։ Երևում է որ աւետարանս բերուած է Հաթերքից։

Digitized by Google

չէի առաքեւյն 'ի յաճոռոյն Ջրվշտկայ [1])... և սպասաւորին սուրբ ուխտին Հախբատայ.. 'ի թվ. ՊԳԷ. 'ի տրէ ամսոյ 'ի ԻԵ. Աստուած շնորհաւոր անէ. ամէն»։

*Ս. Յովհաննէս ուխտատեղի*. Գիւղիս հիւսիսային կողմում բարձր սարի գլխին մի փոքր խաչարձան է, որի մօտ կան մեծ մեծ հացի և կաղնի ծառեր։ Խաչիս վերայ եղած է մատուռ, որ վաղուց արդէն փլած է։

Գ. ԲԱԽՇԻ կամ ՀԱՃԻ ԳԻՒՂ. Շինուած է Աբլահի հարաւ արևմտեան կողմում, մի ձորակի ձախ լանջի վերայ. բնակիչք 1870 թուին տեղափոխուած են այստեղ Հաճի-քեանդ ամարանոցից մարմնաւոր կառավարութեան հրամանաւ, հողն արքունի, լեռնային, անջրդի, միջակ արդիւնաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 29 սանթիմ, լայնութիւն 8 մետր 29 սանթիմ։ Եկեղեցուս դրան մէջ, ներքուստ արևմտեան որմի վերայ. «Սուրբ խաչս էտզար (յիշատակ) Եղիսաբէթ թվ. ՌՀԹ.»։ Յայտնի է որ եկեղեցիս հնաշէն է, գիւղս արդէն աւերակ եղած է, նոր բնակչաց եկած ժամանակ. խիստ մեծ է հին հանգստարանի ծաւալն։ Տուն 36, ար. 127, իգ. 93, ար. ծն. 5, իգ. 3, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

Դ. ՍՈՒԼՈՒԿ ԳԻՒՂ. Շատ հեռի չէ Բախշի գիւղից Սուլուկ կամ Ազատ գիւղն, որ հիմնուած է Պանդ անուն սարի արևելահայեաց լանջին վերայ. բնակիչներից բնիկ 15 գերդաստան, Խոյից գաղթած 20, Բօզլուխից եկած 7, իսկ Բախշի գիւղից տեղափոխուած 8 տուն։ Հողն արքունի, լեռնային անջրդի և սակաւ արդիւնաւէտ, գերազանց օդն, կլիման և ջուրն և տեսարանն երկար կեանք 100 տարի եկեղեցին Ս. Յովհաննէս Մկրտիչ [2]) քարուկիր, կառուցեալ չորս սիւների

[1]) Կարծում ենք որ Ողտի-Մատուռ աւերակ գիւղացի է (գտնւում է Ջրվշտիկ վանքի մօտ) աւետարանիս ծախողն։

[2]) Տաճարիս հիւսիսային կողմում, դրան վերայ բարեպաշտ ոմն շինած է երկյարկ զանգատուն. «Սուրբ Աստուածածին (սխալմամբ գրուած է) եկեղեցւոյ զանկագատունս շինեցի արդեամբ Մակի Պետրոսեան Աւալեանցի ի յիշատակ հանգուցեալ որդոյ իւրոյ Խաչատուրի 1890 յամի մայիսի 10 օրն»։

վերայ, երկարութիւն 16 մետր 80 սանթիմ լայնութիւն 10 մետր 40 սանթիմ։ *Արձանագրութիւն*.

«Տնորհօք Ամենակալին ես Մէլքէմ գամաւս շինեցի եկեղեցիս յիշատակ ինձ և Նախնեացս իմոց պարոն Աղային, Մէլիք Եօկեարին, Մէլիք Աղասլէկին, Ղամար-Սուլթանին և իւր ծնողին Մէլիք Պաղուն, Աւար խաթունին, կողակցին Սամոյինային և եղբօրն. Պատօ պէկին, Աղասի պէկին. Թվ. Ռ...»։ Քահանայ մի։ Ծուխ 50, ար. 192, իգ. 181, ար. ծն. 7, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

*Վանք* (աւանդութեամբ Երմողեայ քահանայի)

Գտնուում է Սուլուկից քառորդ մղոնաչափ վերև մի սեւի բլրակի վերայ, որ կախուած է երկու առուակների մէջ։ Մատրանս, որ շինուած է հնուց անտաշ քարերով, խոնարհուած է գլուխն, մնում են այժմ միայն չորս պատերն։ *Դռնագլուխ քարի վերայ*.

«Թւին ՉԻԸ. ես Մխիթար ու Տիրածէր շինեցաք զեկեղեցիս ի հայրապետութեան տէր Ըստեփաննոսի Ագուանից կաթուղիկոսի»։ *Փոքր ինչ վերեւ դռնագլխից*. «Ապաղայ Ելչ խանին ու Խարայնախին Աւառս լեզով շինեցի զեկեղեցիս»։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ, որի շիրմաքարն կոտրուած է միջից, կտորները միմեանց մօտ բերելով կարդացինք հետեւեալը. «Այս է հանգիստս Սայի որդի Հասանայ փեսայիս»։ Դարձեալ ներսում մի կոտրած խաչարձանի վերայ. «Թվ. ՌԻԳ. է....»։ Այլ տապանաքարի վերայ գրուում. «Այս է հանգիստ Միսայէլայ Սամնի որդի, որք կարդէք, յաղաւթս յիշեցէք Թվ. Ձ.»։ Մեծ հանգստարան տարածուած է մատրանս շուրջն, յորոց շատերն ունին նշանաւոր տապանաքարեր և գեղեցկաքանդակ խաչարձաններ։ *Մի մեծ խաչարձանի վերայ*. «Կամաւն Աստուծոյ կանգնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն Մալումին և ծնողաց իւրոց և եղբարց իւրոց Արթուշին, Խաչին, Տահմէլիք խաթունին Թվ. ՊՂՁ.»։ Մատրանս հիւսիսային կողմում. «Այս է հանգիստ Ջեանայ որդի Հասանայ'ի Թվ. ՉԿԴ։»։

Digitized by Google

Մատրանս արեւմտեան կողմում կայ գիւղատեղի։ Հետքերից երեւում է, որ նշանաւոր գիւղ եղած է այս։

## ՊԱՆԴԱԼԻՈՆ ՎԱՆՔ (39)

Վանքս հիմնուած է նոյնանուն սարի բարձր գագաթին վերայ։ Մատուռից մինչեւ սարիս գլուխն շարունակ զառիվեր է, բարձրանում է մարդ երկու ժամում եւ իջնում երեք քառորդ ժամում։ Զուաձեւ բարձրացած է վանքաբարձ սարն [1]) եւ բոլորովին առանձնացած իւր շրջապատի բոլոր լեռներից։ Երկու մեծ կալատեղի չափ տափարակ է վանքասարիս կատարն, որի վերայ վաղուց եղած է մեծ վանք, շատ սենեակներն եւ միաբանութիւն։ Բայց այժմ մի մատուռ է շինուած հին վանքի տեղում, որն վաղուց փլած է արդէն։ Բարեպաշտ ոմն Գանձակեցի բարեկ․ Սարգիս քահանայ Ազարեանց ի հիմանէ նորոգած է մատուռս ի յիշատակ վախճանեալ իւր Յովհաննէս որդուն։ Իսկ մատրանս երկաթեայ դուռն յիշատակ է նոյնպէս Գանձակեցի Պ. Մկրտիչ Յովհաննիսեանին։ Մեծ ուխտատեղի է մատուռս, որի ուխտի օրն է Ս. Աստուածածնայ տօնն։

## ՀԱՃԻ ՔԵԱՆԴ.

Գտնուում է Սուլուկի հիւսիսային կողմում մի անտառապատ եւ բարձր սարահարթի վերայ։ Ինչպէս կանխաւ իմացանք բնակում էին այստեղ Բախշի կամ Հաճի-քեանդի բնակիչներն։ Բայց 1870 թուին կառավարութեան հրամանաւ այս տեղն փոխուեցաւ *ամառանոց* Գանձակ քաղաքի՝ միեւնոյն Հաճի-քեանդ անուամբ։ Այժմ շինած են գեղեցիկ բնակարաններ, որք ներկայացնում են իբր մի կատարեալ փոքրիկ քաղաք, որի մէջ ամրան ամիսներում լինում են՝ հեռագրա-

[1]) Վանքիս անուամբ ամբողջ սարս կոչուում է Պանդալիոնի սար, որը, կրճատելով ըստ տեղական սովորութեան, Պ ա ն դ ա յ  վ ա ն ք, Պ ա ն- դ ա յ  ս ա ր են անուանում։ «Աղուան. եր. եւ Դր.» գրքի 208 երեսում գրուած է. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ . . . Աբեթէի 'ի գեօղս Անուզ Հաւատուն Հինգուզակ 'ի դուռն . . Պանդալիոնի բժշկի, են.»։ Կարծում ենք, որ վերեւի մատրան գիւղատեղին է Անուզ—Հաւատուն—Հինգուզակ գիւղն։

Digitized by Google

տուն, փոշտ և դատարան։ Հայոց եկեղեցին այժմ փոխուած է Ռուսաց եկեղեցու։

*Գիւղատեղիներ եւ հանգստարաններ.*

Հայոց գիւղատեղի և հանգստարան կայ

Ա. Հաճի-քեանդումս։

Բ. Սորանից ներքև արևելեան ձորի մօտ։

Գ. Նշանաւոր խաչարձան Հաճի քեանդից վերև անտառի մէջ։

Դ. Դեղին Սար կամ Սարու եալ կոչուած լանջի վերայ։

Ե. Հաճի քեանդի և Մռութ գիւղի միջև անտառախիտ ճանապարհի վերայ ծմակի մէջ կայ մի աւերակ մատուռ Քեօշք անուն, որի արձանագրութեան քարն կոտրուած է. կէս մասին վերայ. «'Ի թիւ Հայոց ՉՉ. կամաւն Աստուծոյ և ողորմութեամբ Քրիստոսի Ամենակալին շինեցի զեկեղեցիս......»։ Մատուռիցս փոքր ինչ հեռի կայ և գիւղի աւերակ։

Ե. ՄՌՈՒԹ ԳԻՒՂ. Հիմնուած է Պանդալիոն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ անտառի մէջ. բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, փոքր և նորոգեալ ի հիմանէ, որ ունի մի քահանայ. և սոյն արձանագրութիւնը.

'«Ես Գանձակ քաղաքացի Մահտեսի Քերովբէ Տէր-Մարտիրոսեան կառուցի իմով արդեամբք եկեղեցիս Մռուտ գեղջ ի յիշատակ պապին իմոյ Տէր-Մարտիրոս աւագ քահանայի և ծնողաց իմոց Մկրտումի և Հռիփսիմի և կանանց իմոց Խանումի (վախճանեալ) և Սեհարի ամի Տեառն 1881»։ Փորագրուած է արձանագրութեանս տակ. «Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռնեալք և ես հանգուցից զձեզ». Տուխ 30, ար. 135, իգ. 131, ար. ծն. 15, իգ. 14, պսակ 6. ար. ննջ. 2, իգ. 2։

Զ. ՈՍԿԱՆԱՊԱՏ (40) ԳԻՒՂ. Հիմնուած է Մհակ սարի ստորոտում, Գանձակ գետակի [1]) ձախ ափի բարձրութեան

[1]) Կոչուում է և Ոսկանապատի (Զուռնաբադի) գետ,

Digitized by Google

վերայ, խոր ձորի մէջ, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային անշրդի և սակաւ արդիւնաբեր․․ տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, գովելի ջուրն, 90 տարի երկար կեանքն. Սուրբ Յակովբ եկեղեցին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 25 մետր 55 սանթիմ, լայնութիւն 11 մետր: Տաճարս ունի նաև հարաւային և հիւսիսային պատերում առանձնապէս կամարներ և ոտներ, ․ինն լուսամուտ, երկու փոքր և մի աւագ խորան և մի դուռն: *Աւագանի մօտ հիւսիսային խոյակի վերայ.* «Ես Ովանէս, Գրիգոր կամարս բերի Գուդկան, դվիմ իմ մեր (մօր) Ուռումի (Հռիփսիմէի) հոգին համար»: *Արտաքուստ արեւմտեան ճակատին.* «Սուրբ խաչս ազնական Տէր Ովանէսին թվ. ՈԳ.»: Քահանայ մի: Ծուխ 89, ար. 321, իգ. 275, ար. ծն. 7, իգ: 6, պսակ 4. ար. ննջ. 2, իգ. 2:

Տաճարումս կայ *երկու գրչագիր.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ: Ընտիր են պատկերներն, նախշերն ծաղիկներն, թռչնագրերն, ոսկեզօծն և գոյներն:

*Յիշատակարանից.* «Ի ձեռն ուրումն երեր յաշխարհէն Հայոց գրեալ ոսկեզաւծ որակաւք ի Դրազարկն ձեռամբ Թորոսի փիլիսոփային, զոր տեսեալ տեառն Ստեփանոսի Տարսայիճ հզաւր և իմաստուն գիտնականի վարժեալ ի վարժարանի վարժապետին Եսայոյ տիեզերաքարոզ լուսաւորչին, որդի իշխանաց իշխանին քաջ ազառազէն միենամարտիկ զինաւորի Ջալալին, թոռն մեծ Աթաբակին Հայոց և Վրաց Վահ Տարսայիճին, Տէր և Վերատեսուչ գահերէց և գլուխ արհի երից աթոռոցս Սիւնեաց Տաթևոյ և Նորավանից և Յախաց քարոյ, պետ երկոտասան գաւառաց, ուրախ եղև իբրև ընծայ ի վերուստ առաքեալ: Եւ յաղագս եղբաւր իւրոյ պարոն Տահնչահի, որ կիսաւրեալ մահուամբ, տղա տիաւք, ցանկալի տեսողաց, գեղեցիկ հասակաւ, և քաղցր բարուք, աներկեան հաւատով և հաստատուն յուսով ի բազմավրդով կենցաղոյս խոլախոյս տուեալ առաջնոր-

Իսկ միւս թերթի առաջին երեսում գրող Կարապետ աբեղան յայտնում է թէ կազմել տուած է աւետարանս թուին «ՊԻԱ.»։ «Զաւետարանս թագւորնայ բերուց (բերաւ) գինն առաւ, ու տարաւ»։

Գ. Աւետարան մեծադիր, մագաղաթեայ, ամբողջապէս գրուած գլխագրերով, որ ունի միայն ծաղկազարդի և չորս աւետարանչաց պատկերներ, Քրիստոսի պատկերը որ ձախ ձեռնով բռնած է աւետարանը և աջ ձեռնով օրհնում է մի վեղարաւոր և մի գլխաբաց մարդ։ Վեղարաւորի գլխից վերև գրուած է. «Քրիստոս որդի Աստուծոյ, ընկալ զբանաւոր զաւետարանս մեղապարտիս Սահակայ իբրև զՏէր և ողորմեա»։ Իսկ գլխաբաց մարդից վերև, «Առաքել ծառայ Աստուծոյ»։ Աւետարանիս սկզբի նախշերի գլուխներին և տակերին գրուած են սպիտակ ներկով. «Տէր Աստուած, ողորմեա Առաքելին... Տէր Աստուած գթայ ի հոգի Ոսկանոսի ծառային քո. ամէն. Աստուած իմ Յիսուս ողորմեա մեղուցեալ ոգոյս, ամէն [1])»։ Հարկ է յայտնել թէ միջակ գեղեցկութիւն ունին պատկերները, նկարները, ծաղիկներն և ոսկեզօծն։ Համարեա թէ երեք յիշատակարան ունի աւետարանս, առաջին յիշատակարանի վերջում գրուած է. «Տէր Աստուած ամենակալ, նորոգեա 'ի կեանս անծերանալիս զՍահակ ստացող սուրբ աւետարանիս ΛИCH ամէն»։ Նոյն իսկ աւետարանս գրողի գրչով գրուած է և յիշատակարանս և յունարէն տառերս։ Երկրորդ Յիշատակարանովս յայտնում է գրողն թէ աւետարանս ստացած է Սահակ կրօնաւորն, որ եղած էր Անեցի և աշակերտ Հաղբատայ. յիշում է նաև, թէ Սարգիս կրօնաւորն միաբան Հաղբատի, «իբրև զիմաստուն վաճառական խնդրող եղեալ պատուական մարգարտին և «գտեալ զսա (զաւետարանս) ի գաւառի անդ Անւոյ, մեծածախ, ոսկեգիր և ոսկեճաճանչ ծաղկաւք զարդարեալ, ստացաւ զսա 'ի հալալ ընչից իւրոց... և ընծայեաց զսա մեծ կողմանց եպիսկոպոսարանիս, որ է իւր տեղի սննդեան և 'ի տարւոջն Բ. աւր ժամ.... ընծայեցաւ կենաց

[1]) Գրուած է Մատթէոսի վերջում նոյն իսկ աւետարանս գրողի գրչով. «Տէր Աստուած ողորմեա Սարգսի կուսակրաւն քահանայի....»։

Digitized by Google

աւետարանս Սուրբ Գրիգորիս 'ի Թուականութեանս ՈՀԲ. (1223) 'ի յիշխանութիւնս հզաւրին Հասանայ որդւոյ Վախթանգայ և ի հայրապետութեանս (Աղուանից) տեառն Յովհաննիսի։ Եւ արդ գրեցաւ սա և ծաղկեալ կազմեցաւ յամի, յորում էր թիւ համարոյ Թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից և նոյնքանեաց տասանց, իսկ նորայս շրջանի միոյ հարիւրոյ քսան և ութեակ [1]) թուոյ ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակոբայ, յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեանն Հայոց արևմտայինն կողման Լեռնի քրիստոսասէր և յաղթող թագաւորի և մերոյ կողմանցս և Վրաց Գէորգեայ թագաւորի և 'ի սպարապետութեան Զաքարիա Շահանշահի.... զրովանդակ գոյք ծնողաց մերոց և եղբարց ծախեցաք և շինեցաք զաստուածաքնակ սուրբ եկեղեցիքս և անդ եդաք զսուրբ աւետարանս Աստուծոյ, որ շինեցաւ 'ի մէնջ ի Վանս Արջուառճի....»։

Յետոյ կազմուած է աւետարանս նախ Հոռոմոսի վանքում (Օձուն գիւղի կողմերում) «հրամանաւ հաւրն Մխիթարայ»։ Սորանից ներքև գրուած է. «Ի թվ. ՉՀԳ. կամաւ ամենակալին Աստուծոյ ես տէր Վանական գտի հնացեալ և աւերեալ զսուրբ աւետարանս և ետու վերստին նորոգել...»։ Տարայարած է *երրորդ* անգամ կազմողն. «ՊԼԲ. էր, մեհեկի ամսի ԻԶ. էր, որ կազմեցաւ, որ է սուրբ աւետարանս Մեծ Կողմանց Խաչենոյ Եպիսկոպոսարանէն Մայրաքաղաքէնս [2]), իշխանութեան պարոն Ջալալին, եպիսկոպոսութեան տէր Գրիգորին Գեռաքարեցին (ւոյն)...»։ Կցած է *չորրորդ* անգամ կազմել տուողն գրելով Մարկոսի վերջում 'ի մէջի այլոց. «Ուլախաթուն... զի յոյժ հնացեալ էր սուրբ աւետարանս, ետ նորոգել զսա ի ժամանակիս, որ է Մատխան (°) եկն Թաւրէզ թվ. ՋԽԶ....»։

Դ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ,

---

[1]) Կոչուում է այս փոքր Թուական Հայոց որ շինուած է Փառխասցի Սարկաւագ Յով. վարդապետն փրկչական 1116։

[2]) Հաւանական է որ այդ ժամանակներում եպիսկոպոսանիստ աթոռն եղած լինի մեզ ծանօթ Մայրաքաղաքին մէջ։

Digitized by Google

որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ, բայց անճաշակ են նոյն պատկերներն, ծաղիկներն և թռչնագրերն, միայն գեղեցիկ են փոքր տառերն։ Յիշատակարանից. «Արդ գրեցաւ աւետարանս այս՝ ի գիւղս որ կոչի Դաստիգիւր (Դաստակիւլ) ձեռամբ Սարգիս երիցու ի թուականիս ՌՃԻԲ.»։ Երեք աւետարանների (բացի Յովհաննիսից) վերջերում գրուած է. «Յիշատակ է Սուրբ աւետարանս Եարամիշին և իւր որդի Ամիրխոճին, Թումանին . . . թվ. ՌՃԻՉ.»։

*Մասունքներ*

Ա. Մասն *կենաց փայտէն* զետեղուած մի արծաթեայ փոքր խաչում.

Բ. Մասն *բազկին Եղիշ առաքեալի*, որ կայ մի արծաթեայ, ոսկեզօծեալ աջում, որի վերայ գրուած է. «Այս է աջ սրբոյն Եղիշէի առաքելոյն, աշխատողքս՝ որ այ (է) Իգնատիոս եպիսկոպոս, որ եբեր սուրբ նշխարս ի Կաֆայու (է) յիշատակ սորա, տէր Ոսկան եպիսկոպոս»։ «Կամաւն Աստուծոյ Կարապետ եպիսկոպոս հօրոյ Նորգիեցի, Աստուած ողորմի ասացէք»։ Աջիս բազկի՝ տակի կողմի վերայ. «Կամաւն Աստուծոյ Մուրատս որդի Նիազի շինեցի սուրբ աջս, Աստուած ողորմի ասացէք. առաջնորդութեան Ոսկան եպիսկոպոսին, թվն. ՌԿՂ. էր»։

Գ. Մասն անյայտ սրբի, զետեղուած մի ականազարդ խաչում։

Աւելորդ է յայտնել թէ աւետարաններս և մասունքներս բերած են իւրեանց հետ Ջրաբերդից՝ ժողովրդեան հետ տեղափոխուող քահանայք։

*Անապատ*

Մի փոքր եկեղեցի է շինուած աւանիս վերի ծայրում գետակի ձախ ափում, քարուկիր կառուցեալ մի կամարի վերայ. որ ունի միայն մի դուռն արևմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, մի մեծ և մի փոքր խորան հիւսիսային կողմում. 12 մետր 14 սանթիմ երկարութիւն 7 մետր 15 սանթիմ լայնութիւն։ Դռնագլխի քարի վերայ. «Այս է Մելիք Թամրազին (Կիւլ. Մէլիք) որդի Սարուխանին եխպար Եաւրին.

Digitized by Google

Քապանճին Ապովի որդի, որ 1-ի Մէլիք Օսեփին Վէլուխոյ Պէհէզ Սարգսին, Պէհէզ»։ Անհասկանալի է արձանագրութեանս վերջին բառի իմաստն։ Թուցէ «Որ 1-ի»—Ա. Մէլիք-Յովսէփին։

Ներսում միջնակամարի հարաւային կողմի կիսապատուանդանի քարին վերայ. «Ես Աքոլլեցի Գրիգորի որդի Պօղոսին մար (մայր), Եփրեմին քար (քոյր) Թագուհին [1])»։

Շինութեան թուականն է սորանից վերև խոյակի վերայ. «Թվ. ՌԾԴՐ.»։

Անապատիս արևելեան և արևմտեան կողմերում եղած են խուցեր, դեռ մի քանիսն կանգուն են այժմ։ Հաստատում են թէ Կուսանոց եղած է այս, երկար ժամանակ նըստած են այստեղ կուսանք, որոց մէջ եղած է և մի կոյս Մէլիք-Բէկլարեանների տոհմից, որի պատճառաւ Մէլիք-Թամրազին որդին նորոգել տուած է անապատս։

Անապատիս արևմտեան կողմին խիստ մօտ է Հայոց *Ուսումնարանի* շէնքն, որ դեռ կիսատ է և ունի 34 մետր 45 սանթիմ երկարութիւն և (պատշգամով միասին) 11 մետր լայնութիւն։

## ԵՂՆԱՍԱՐ ՎԱՆՔ.

Հիմնուած է գետաշէնիս հարաւային հանդէպ եղած լեռնաբազկի սարահարթի վերայ՝ յանուն Եղիշէի առաքելոյն։ Վանքս կառուցեալ է երկու սիւների վերայ համակ սրբատաշ քարով, որի երկարութիւնն է 12 մետր 43 սանթիմ, լայնութիւն 10 մետր 33 սանթիմ։ *Դրան հարաւային սեմի վերայ.* «Թ. ՌՃԼԵ. ես Նա..ո..ա Մովսէս էրից»։

*Հիւսիսային սեմի վերայ.*

«Ի հոգեկիանէ Ագատարարէ Գ. Թուահամարէ մետասան տարեկ վեր տար (1311). ես անարժան տէր Ղազարս գրեցի»։ Երևում է որ վանքս նորոգուած է երբեմն երբեմն։ Վանքս ունեցած է շրջապարիսպ և Թաղակապ, գեղեցիկ սենեակներ, յորոց այժմ եօթն կանգուն և եօթն կիսակործան են։ Նմա-

[1]) Իմաստն է. Ես եմ Աքուլեցի Գրիգորի որդի Պօղոսին մայրն և Եփրեմի քոյր Թագուհին։

Digitized by Google

նապէս կործանուած են շրջապարսպի արեւելեան և արեւմտեան պատերն և վանքիս հիւսիսային որմի արտաքին երեսն։

*Հին հանգստարան*. Գետաշէն աւանիս հանգստարանի հին մասումն կան շատ հին գերեզմաններ, որոց գլխակալ խաչարձաններն զարդարուած են հիանալի նախշերով և քանդակներով։ Այնքան գեղեցիկ են փորուածքներն, մինչև անգամ այցելուն զմայլում է ժամանակին քանդակագործութեան գեղարուեստի նուրբ ճաշակին և ընտիր ոճին վերայ։ Խաչարձաններից մէկի վերայ փորագրուած է. «Խաչս յիշատակ հայրն իմոյ Խունին և մայրն իմոյ Գուլին Թվ. ձԴԱ.»։ Կից սրան. «Ես Ետկար աղէս կանգնեցուցի. ես մեղաւորս Ազարիա»։

Այլ խաչարձանի վերայ քանդակագործուած է մի ձիաւոր մարդ, որ վահանը կապած իւր ձախ բազկի վերայ գեղարդը խրած է մի այլ փախչող ձիաւորի սնակուշտն, որ ուժասպառ եղած է։ Առաջնոյն թիկնապահն, վեր առած վահան և նետեր, վազում է իւր տիրոջ ետևից։ Փորագրուած է քաջի ստորոտում. «Թվ. ՋԴԹ. Տոէն Ազարի էչ (էջ) իւր Բ. Թաւրովն (Թորով, Թրով), ողորմի ասացէք»։ Հանգստարանումս կան և մելիքազուններէ գերեզման, որք են Մելիք-Մնացականեաններէ ցեղից։

*Մրցունիս*

Գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան աւանիս արեւմտեան կողմում գետակին ձախ կողմի բարձր լանջի վերայ։ Արդէն գոմանոց փոխած են գիւղիս աւերակը Գետաշէնցիք, բայց քարուկիր եկեղեցին կանգուն մնում է փոքր ինչ վերև աղբիւրի մօտ, որ շինուած է մի կամարի վերայ, ունի միայն աւագ խորան, մի դուռն արեւմտեան կողմից, երկու նեղ լուսամուտ, 12 մետր երկարութիւն, 6 մետր 95 սանթիմ լայնութիւն։ Խորանի վէմ քարն ունի հիանալի նախշուն քանդակներ, բայց չունի գիր։ Դրան մօտ մի խաչքարի վերայ.

«Յովհաննէսի մօրն Նուրացիանին»։ Նոյն արեւմտեան ար-

Digitized by Google

տաքին ճակատում. «Թիւ ՉԷ. Ես Եղան անշան կանգնեցի զսուրբ Սարգիս ինձ և եղբաւր իմոյ Վարդանայ»: Մի կարակնաձև տաշուած քարի վերայ, որ գանագլուխ եղած է, այժմ ընկած է դրան հիւսիսային կողմում արտաքուստ. «Թվ. ՉԼԴ. կամաւն Աստուծոյ և հրամանաւ սուրբ հայրապետին Ըստեփանոսի, եպիսկոպոսութեան տէր Գրիգորի.. Սոմաճին, ես Յովակիմս ... ի բարեխաւսութիւն հոգոյ իմոյ»: Այս տեղ, դրանս առաջ մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ փորագրուած է. «Վասն Մկրտիչ եպիսկոպոսի հոգւոյն փրկութեան»:

Բ. ԱԲԼԱՀ ԳԻՒՂ. Հիմնուած է Գետաշէնի հիւսիսային կողմում մի ձորի մէջ. բնակչաց մեծ մասն ընիկ, փոքր մասն տեղափոխուած Հաթերքից և այլ տեղերից, հողն արքունի, մեծ մասամբ ջրարբի և արգիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և քաղցրահամ ջուրն, երկար կեանք 80, եկեղեցին Սուրբ Մինաս, հոյակապ, կառուցեալ վեց սիւների վերայ, - երկարութիւն 18 մետր 85 սանթիմ, լայնութիւն 10 մետր 30 սանթիմ: Արձանագրութիւն. «Թվ. ՌՃՁԱ. յիշատակ է Պետրոսին, Յակոբին, Մրգին տրոպ (տրոպ) տէր Պօղոսին, որ էինք որդիք Աւետիսի՝ ազգէն Հասանայ, որ էր ժամանակն Վալի Նամատին (Նատր Շահին), որ կոչի Թահմազ, որ թագաւորեցաւ, ի երկրին Բարսից բազում գաւառս աւերեաց»: Քահանան գալիս է Սուլուկ գիւղից: Ծուխ 34, ար. 91, իգ. 66, ար. ծնունդ 8, իգ. 5, պսակ 3, ար. ննջ. 3, իգ. 2:

Տաճարումս կայ Գ. գրչագիր.

Ա. Աւետարան պատկերազարդ, գրուած թղթի վերայ, միջակ դիրքով, միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, նախշերն, թռչնագրերն և ծաղիկներն: Յիշատակարանից. «Եւ արդ ես մեղապարտ գծողս Նիկոլայոս.. գրեցի զաւետարանս ի քաղաքս, որ կոչի Վան ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան զաւրավարիս ի թուականութեանս Հայոց ՋԾԲ. ի հայրապետութեան տեառն Զաքարիայի Հայոց կաթուղիկոսի և մերոյ ամենակալի սուրբ ուխտիս Վարակայ տէր Յովհաննիսի և 'ի թագաւորութեան Ջհան Շահի Միրզին»:

*Ցետոյ գրուած է. «Ես Փիլիպպոս կաթուղիկոս զայս աւետարանս նորոգեցի Յակոբին, որ իւրն յիշատակ դնէ»։ Մարկոսի վերջում և յիշատակարանի եւս «Ես Մարտիրոս եպիսկոպոս Էջմիածնայ Պազուխէն գնեցի զաւետարանս ու Գ. շարականոց և դրի ի դուռն սուրբ Էջմիածնայ»։ Դժուարին է իմանալ թէ ինչ առթիւ ընկած է այստեղ աւետարանս։*

*Բ. Աւետարան մեծադիր, գրուած հաստ թղթի վերայ, առանց պատկերի, անյայտ է գրողի անունն և տեղն, գրուած է միայն յիշատակարանի տեղ. «Թվկս. ԲՃՁԳ. ին». իսկ Մարկոսի վերջում. «Ի թվականիս ԲՃՂԱ. ին ես Ամիր Վահապ և Սուղի Վասիլ իշխանս շինեցի եկեղեցիս, և գաւառանս, առուն հանեցի Կինեվանուց ձորերէն ու սարերէն. բնակիչք գիւղիս խոստացան տարէնը Գ. ժամ կատարոյն Աստուծոյ աւրհնի։ Դարձեալ կամուրջն շինեցի, ու կապն կապեցի. Թճ. (900) անծեն յերինջ (չծնուած երինջ) մորթեցի, ոչխարաց, ղոչից, գառնից սաւա* [1]*). այս եղաւ դարձեալ Բուսխանի (սառնատան) մուլքն իմն էր, ջուր չունէր, շապտէնն ա. աւր ծակ քարով ջուր տվի իմ մլքի խաթրին համար»։*

*Աւետարանիս սկզբումն. «Շահ Ապազն վար (որ) եւեկ, Ղարապաղս կալաւ, պարոն տէր Ոհանն Գանձոյ քաղաքէն շատ գերի ազատեց, շատ գիրանք ա. շարականոց նրետ Սուրբ Եղիշեայ առաքեալին վանքն. դ. մաշտոց, ա. աւետարան, ա. սաղմոսարան, ա. պլթարք, ա. խրատագիրք տուի տէր Մելքիսեթն...։ Տէր Ոհանէսս Ղալապեկ* [2]*) ես այս գիրանքս ազատեցինք անաւրինաց ձեռքէն, տվինք մեր հոգիս ա. աւետարան տվի Ոսկեան, ա. շարականաց տվի Աւանէս էրէցն Շաշվացի. թիւն ՌԾՁ. էր»։*

*Գ. Աւետարան միջակ դիրքով, գրուած թղթի վերայ, առանց յիշատակարանի, միայն Ղուկասի վերջում գրուած է. «Յանուն Աստուծոյ ես Մուրադչէս ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ Խաչատուր Իրիցիդ.. ի գօառէն (ղաւառէն) Եղի-*

*[1]) Բացի ոչխարից-խոյից և գառներից։*

*[2]) Թերևս մտահան արած չէ ընթերցողն Հաթերքեցի Տէր-Յովհաննէս Ղալաբէկը։ Երևում է որ աւետարանս բերուած է Հաթերքից։*

շէր առաքելոյն 'ի յաճոոյն Ջրվշտկայ [1])... և սպասաւորին սուրբ ուխտին Հախբատայ.. 'ի Թվ. ՊԴԵ. 'ի տրէ ամսոյ 'ի ԻԵ. Աստուած շնորհաւոր անէ. ամէն»։

*Ս. Յովհաննէս ուխտատեղի*. Գիւղիս հիւսիսային կողմում բարձր սարի գլխին մի փոքր խաչարձան է, որի մօտ կան մեծ մեծ հացի և կաղնի ծառեր։ Խաչիս վերայ եղած է մատուռ, որ վաղուց արդէն փլած է։

Գ. ԲԱԽՇԻ կամ ՀԱՃԻ ԳԻՒՂ. Տինուած է Աբլահի հարաւ արևմտեան կողմում, մի ձորակի ձախ լանջի վերայ. բնակիչք 1870 թուին տեղափոխուած են այստեղ Հաճի-քենդ ամարանոցից մարմնաւոր կառավարութեան հրամանաւ, հողն արքունի, լեռնային, անջրդի, միջակ արդիւնաւէտ, պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին Ամենափրկիչ, քարուկիր կառուցեալ երկու կամարների վերայ, երկարութիւն 17 մետր 29 սանթիմ, լայնութիւն 8 մետր 29 սանթիմ։ Եկեղեցուս դրան մէջ, ներքուստ արևմտեան որմի վերայ. «Սուրբ խաչս էտզար (յիշատակ) Եղիսաբէթ թվ. ՌՀԹ.»։ Յայտնի է որ եկեղեցիս հնաչէն է, գիւղս արդէն աւերակ եղած է, նոր բնակչաց եկած ժամանակ. խիստ մեծ է հին հանգստարանի ծաւալն։ Ծուխ 36, ար. 127, իգ. 93, ար. ծն. 5, իգ. 3, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

Դ. ՍՈՒԼՈՒԿ ԳԻՒՂ. Շատ հեռի չէ Բախշի գիւղից Սուլուկ կամ Ազատ գիւղն, որ հիմնուած է Պանդ անուն սարի արևելահայեաց լանջին վերայ. բնակիչներից ընիկ 15 գերդաստան, Խոյից գաղթած 20, Բօղլուխից եկած 7, իսկ Բախշի գիւղից տեղափոխուած 8 ծուխ։ Հողն արքունի, լեռնային, անջրդի և սակաւ արդիւնաւէտ, գերազանց օդն, կլիման և ջուրն և տեսարանն երկար կեանք 100 տարի եկեղեցին Ս. Յովհաննէս Մկրտիչ [2]) քարուկիր, կառուցեալ չորս սիւների

[1]) Կարծում ենք որ Ողտի-Մատուռ աւերակ գիւղացի է (գտնուում է Ջրվշտիկ վանքի մօտ) աւետարանիս ծախողն։

[2]) Տաճարիս հիւսիսային կողմում, դրան վերայ բարեպաշտ ոմն շինած է երկյարկ ղանգատուն. «Սուրբ Աստուածածին (սխալմամբ գրուած է) եկեղեցւոյ ղանկագատունս շինեցի արդեամբ Մակի Պետրոսեան Աւալեանցի ի յիշատակ հանգուցեալ որդւոյ իւրոյ Խաչատուրի 1890 յամի մայիսի 10 օրն»։

վերայ, երկարութիւն 16 մետր 80 սանթիմ լայնութիւն 10 մետր 40 սանթիմ։ *Արձանագրութիւն*.

«Շնորհօք Ամենակալին ես Մէլքէմ գամաւս շինեցի եկեղեցիս յիշատակ ինձ և նախնեացս իմոց պարոն Աղային, Մէլիք Եօկեարին, Մէլիք Աղապէկին, Ղամար-Սուլթանին և իւր ծնողին Մէլիք Պաղուն, Աւար խաթունին, կողակցին Սամոյինային և եղբօրն. Պատօ պէկին, Աղասի պէկին. թվ. Ռ...»։ Քահանայ մի։ Ծուխ 50, ար. 192, իգ. 181, ար. ծն. 7, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

*Վանք* (առանդութեամբ Երմողեայ քահանային)

Գտնուում է Սուլուկից քառորդ մղոնաչափ վերև մի սեւի բլրակի վերայ, որ կախուած է երկու առուակների մէջ։ Մատրանս, որ շինուած է հնուց անտաշ քարերով, խոնարհուած է գլուխն, մնում են այժմ միայն չորս պատերն։ *Դռնագլուխ քարի վերայ*.

«Թւին ՉԻԲ. ես Մխիթար ու Տիրածէր շինեցաք զեկեղեցիս ի հայրապետութեան տէր Ըստեփաննոսի Աղուանից կաթուղիկոսի»։ *Փոքր ինչ վերեւ դռնագլխից*. «Ապաղայ Ելչ խանին ու Խարայնախին Աւառս լեզով շինեցի զեկեղեցիս»։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ, որի շիրմաքարն կոտրուած է միջից, կտորները միմեանց մօտ բերելով կարդացինք հետեւեալը. «Այս է հանգիստս Սայի որդի Հասանայ փեսայիս»։ Գարձեալ ներսում մի կոտրած խաչարձանի վերայ. «Թվ. ՌԻԳ. է....»։ Այլ տապանաքարի վերայ դրսում. «Այս է հանգիստ Միսայէլայ Սասնի որդի, որք կարդէք, յաղաւթս յիշեցէք թվ. Չ.»։ Մեծ հանգստարան տարածուած է մատրանս շուրջն, յորոց շատերն ունին նշանաւոր տապանաքարեր և գեղեցկաքանդակ խաչարձաններ։ *Մի մեծ խաչարձանի վերայ*. «Կամաւն Աստուծոյ կանգնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն Մալուկին և ծնողաց իւրոց և եղբարց իւրոց Արթուչին, Խաչին, Շահմէլիք խաթունին թվ. ՊՂՉ.»։ Մատրանս հիւսիսային կողմում. «Այս է հանգիստ Ջևանայ որդի Հասանայ 'ի թվ. ՉԿԳ։»։

Մատրանս արևմտեան կողմում կայ գիւղատեղի։ Հետքերից երևում է, որ նշանաւոր գիւղ եղած է այս։

## ՊԱՆԴԱԼԻՈՆ ՎԱՆՔ (39)

Վանքս հիմնուած է նոյնանուն սարի բարձր գագաթին վերայ։ Մատուռից մինչև սարիս գլուխն շարունակ զառիվեր է, բարձրանում է մարդ երկու ժամում և իջնում երեք քառորդ ժամում։ Զուաձև բարձրացած է վանքաբարձ սարն [1]) և բոլորովին առանձնացած իւր շրջապատի բոլոր լեռներից։ Երկու մեծ կալատեղի չափ տափարակ է վանքասարիս կատարն, որի վերայ վաղուց եղած է մեծ վանք, շատ սենեակներն և միաբանութիւն։ Բայց այժմ մի մատուռ է շինուած հին վանքի տեղում, որն վաղուց փլած է արդէն։ Բարեպաշտ ոմն Գանձակեցի բարեկ. Սարգիս քահանայ Ազարեանց ի հիմանէ նորոգած է մատուռս ի յիշատակ վախճանեալ իւր Յովհաննէս որդուն։ Իսկ մատրանս երկաթեայ դուռն յիշատակ է նոյնպէս Գանձակեցի Պ. Մկրտիչ Յովհաննիսեանին։ Մեծ ուխտատեղի է մատուռս, որի ուխտի օրն է Ս. Աստուածածնայ տօնն։

## ՀԱՃԻ ՔԵԱՆԴ.

Գտնուում է Սուլուկի հիւսիսային կողմում մի անտառապատ և բարձր սարահարթի վերայ։ Ինչպէս կանխաւ իմացանք բնակում էին այստեղ Բախշի կամ Հաճի-քեանդի բնակիչներն։ Բայց 1870 թուին կառավարութեան հրամանաւ այս տեղն փոխուեցաւ *ամարանոց* Գանձակ քաղաքի՝ միևնոյն Հաճի-քեանդ անուամբ։ Այժմ շինած են գեղեցիկ բնակարաններ, որք ներկայացնում են իբր մի կատարեալ փոքրիկ քաղաք, որի մէջ ամրան ամիսներում լինում են՝ հեռագրա-

[1]) Վանքիս անուամբ ամբողջ սարս կոչւում է Պանդալիոնի սար, որը, կրճատելով ըստ տեղական սովորութեան, Պ ա ն դ ա յ վ ա ն ք, Պ ա ն-դ ա յ ս ա ր են անուանում։ «Աղուան. եր. և Դր.» գրքի 208 երեսում գրուած է. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ... Աբեթէի 'ի գեօղս Անուզ Հաւատուն Հինգուզակ 'ի դուռն.. Պանդալիոնի բժշկի, ևն.»։ Կարծում ենք, որ վերևի մատրան գիւղատեղին է Անուզ—Հաւատուն—Հինգուզակ գիւղն։

Digitized by Google

տուն, փոշտ և դատարան։ Հայոց եկեղեցին այժմ փոխուած է Ռուսաց եկեղեցու։

Գիւղատեղիներ եւ հանգստարաններ.

Հայոց գիւղատեղի և հանգստարան կայ

Ա. Հաճի-քեանդումս։

Բ. Սորանից ներքև արևելեան ձորի մօտ։

Գ. Նշանաւոր խաչարձան Հաճի քեանդից վերև անտառի մէջ։

Դ. Դեղին Սար կամ Սարու եալ կոչուած լանջի վերայ։

Ե. Հաճի քեանդի և Մռուլթ գիւղի միջև անտառախիտ ճանապարհի վերայ ծմակի մէջ կայ մի աւերակ մատուռ Քեօշք անուն, որի արձանագրութեան քարն կոտորուած է. կէս մասին վերայ. «Ի թիւ Հայոց ՋԶ. կամաւն Աստուծոյ և ողորմութեամբ Քրիստոսի Ամենակալին շինեցի զեկեղեցիս......»։ Մատուռիցս փոքր ինչ հեռի կայ և գիւղի աւերակ։

Ե. ՄՌՈՒԹ ԳԻՒՂ. Հիմնուած է Պանդալիոն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ անտառի մէջ. բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, փոքր և նորոգեալ ի հիմանէ, որ ունի մի քահանայ. և սոյն արձանագրութիւնը.

՝«Ես Գանձակ քաղաքացի Մահտեսի Քերովբէ Տէր-Մարտիրոսեան կառուցի իմով արդեամբք եկեղեցիս Մռուտ գեղջ ի յիշատակ պապին իմոյ Տէր-Մարտիրոս աւագ քահանայի և ծնողաց իմոց Մկրտումի և Հռիփսիմի և կանանց իմոց Խանումի (վախճանեալ) և Սեհարի ամի Տեառն 1881»։ Փորագրուած է արձանագրութեանս տակ. «Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռնեալք և ես հանգուցից զձեզ». Ծուխ 30, ար. 135, իգ. 131, ար. ծն. 15, իգ. 14, պսակ 6. ար. ննջ. 2, իգ. 2։

Զ. ՈՍԿԱՆԱՊԱՏ (40) ԳԻՒՂ. Հիմնուած է Մհակ սարի ստորոտում, Գանձակ գետակի [1]) ձախ ափի բարձրութեան

[1]) Կոչուում է և Ոսկանապատի (Զուռնաբադի) գետ,

վերայ, խոր ձորի մէջ, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային անջրդի և սակաւ արդիւնաբեր․․ տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, գովելի ջուրն, 90 տարի երկար կեանքն․ Սուրբ Յակոբ եկեղեցին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 25 մետր 55 սանտիմ, լայնութիւն 11 մետր։ Տաճարս ունի նաև հարաւային և հիւսիսային պատերում առանձնապէս կամարներ և ոտներ, ինն լուսամուտ, երկու փոքր և մի աւագ խորան և մի դուռն։ *Աւազանի մօտ հիւսիսային խոյակի վերայ*․ «Ես Ովանէս, Գրիգոր կամարս բերի Գուգկան, դվիմ իմ մեր (մօր) Ուռումի (Հռիփսիմէի) հոգին համար»։ *Արտաքուստ արեւմտեան ճակատին*․ «Սուրբ խաչս աւգնական Տէր Ովանէսին թվ․ ՈԴ․»։ Քահանայ մի։ Ծուխ 89, ար․ 321, իգ․ 275, ար․ ծն․ 7, իգ։ 6, պսակ 4․ ար․ ննջ․ 2, իգ․ 2։

Տաճարումս կայ *երկու գրչագիր*․

Ա․ Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ։ Ընտիր են պատկերներն, նախշերն ծաղիկներն, թռչնագրերն, ոսկեզօծն և գոյներն։

*Յիշատակարանից*․ «Ի ձեռն ուրումն երեք յաշխարհէն Հայոց գրեալ ոսկեզաւծ որակաւք ի Դրազարկն ձեռամբ Թորոսի փիլիսոփային, զոր տեսեալ տեառն Ստեփանոսի Տարսայիճ հզաւր և իմաստուն գիտնականի վարժեալ ի վարժարանի վարժապետին Եսայոյ տիեզերաքարոզ լուսաւորչին, որդի իշխանաց իշխանին քաջ ապառազէն մենամարտիկ զինաւորի Զալալին, թոռն մեծ Աթաբակին Հայոց և Վրաց Վահ Տարսայիճին, Տէր և Վերատեսուչ գահերէց և գլուխ արհի երից աթոռոցս Սիւնեաց Տաթևոյ և Նորավանից և Ցախաց քարոյ, պետ երկոտասան գաւառաց, ուրախ եղև իբրև ընծայ ի վերուստ առաքեալ։ Եւ յաղագս եղբաւր իւրոյ պարոն Շահնշահի, որ կիսաւրեայ մահուամբ, տղա տիաւք, ցանկալի տեսողաց, գեղեցիկ հասակաւ, և քաղցր բարուք, աներկեան հաւատով և հաստատուն յուսով՝ ի բազմավրդով կենցաղոյս խրախոյս տուեալ առաջնոր-

դեաց խաղաղական և բարի հրեշտակաւք առ յոյսն ամենայնի և յԱստուած բոլորից, որ հանգուցանողն է ամենայն հոգւոց բարեաց, հանգուցէ ի գոգն Աբրահամեան նովին հաւատով լցեալ։ Ստացաւ հանդերձ հոգևոր հարբ իւրով Կիրակոս վարդապետովն ի հալալ արդեանց իւրոց և ընդելուզել ոսկւով և արծաթով և ականբք պատուականաւք յիշատակ վերաստացեալ եղբաւր իւրոյ։ Եւ արդ ես նուաստ, եզկելի, թշուառացեալս Ստեփաննոս խոց լերթոց և թախիծ կսկծալի սրտիւ, հողամած դիմաւք զդառդ սրբազանից զպատահեալդ տիեզերաքարոզ աւետարանիս սրտի մտաւք յիշել զգեզաղէշ և զարեգակնափայլ եղբայրն իմ զպարոն Շահանշահ առաջի զենման Քրիստոսի… յիշել զծնողսն իմ զհայր իմ զՋալալն և զմայր իմ զամենաւրհնեալ Գոնցա և յերկար կենդանութիւն խնդրել երկուց եղբարց իմոց պարոն Էլիկիւմի և Աղբուղայլին։ Եղև մեզ այս բաւթ տրտմագին 'ի տաւնի զատկին 'ի ՉԶ. թուականի Հայոց 'ի տրէ Գ.»։ Մատթէոսի սկզբում գրուած է ի միջի այլոց. «Ես Յովհաննէսս Ոսկանապատոյ ձեռնաւորս գնեցի զաւետարանս իմ հալալ արդեամբս յիշատակ ինձ և իմ ծնողաց»։

Բ. Աւետարան, թղթեայ, միջակ դիրքով, պատկերազարդ, բայց ո՛չ այնքան ճաշակով գծուած, *Ցիշատակարանից*. «Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի, զմեղուցեալ գրիչս Խսրայէլ յիշեցէք . . . . Արդ գրեցաւ սա յարքունական երկիրն Մոկաց ի տեղիս Անապատ, որ Փասալանք կոչի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս . . ձեռամբ յոգնամեղ և անարուեստ գրչի Խսրայէլ . . . 'ի թուականիս Հայոց ՋԺԲ. ամեն. 'ի խնդրոյ . . Մահդասոյն Պաւղոսի յիշատակ հոգւոյն իւրոյ»։ Յետոյ գրուած է. «Նորոգեցաւ սուրբ աւետարանս ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ Նշանիս Վարագայ ձեռամբ Սահակ անարժան աբեղայի ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Կիրակոս վարդապետի, որ բազում ջանիւ զվանքս կրկին անգամ նորոգեաց զեկեղեցիք, զդարպաս, զտներ, զոր ի չարժմանէ ապականեալ էր, ի թուականիս ՌԴԸ. ի խնդրոյ Յոհան անուն անկեալ երիցին, որ ստացաւ զսա 'ի հալալ ըն-

չից խւրոց և իւր նորոգել»։ Դժուարին է իմանալ թէ ինչ դի-պուածով ընկած է Ոսկանապատ գիւղիս մէջ։

*Սուրբ Աստուածածնայ վանք.*

Հիմնուած է գիւղիս վերի ծայրում գետակին ձախ ափի վերայ, կառուցեալ երկու կամարների վերայ, որ ունի մի դուռն հարաւային կողմից և երկու նեղ լուսամուտ արևե-լեան և արևմտեան կողմերից և միւս ևս հարաւից։ Երկա-րութիւն 12 մետր 75 սանթիմ, լայնութիւն 6 մետր 75 սանթիմ։ Ունի եկեղեցու ձև և ոչ վանքի, սակայն ունեցած է միաբանից խուցեր տաճարս իւր արևմտեան կողմում, որ-պէս վկայում են տեսողք. բայց յորդ անձրևի հեղեղներն քանդած և տարած են սոյն սենեակները և կոյտ կոյտ խիճեր դիզած խուցերի տեղերում։ Տաճարիս հարաւային որ-մի մօտ արտաքուստ. «Այս է տապան Յարութիւն պապին, որ վերստին նորոգեաց սուրբ եկեղեցիս թվ. ՌՄՀ.»։

*Սուրբ Սարգսի վանք.*

Ս. Աստուածածնայ վանքիս հանդէպ գետակի աջ ափի վերայ, շինուած երկու կամարների վերայ, մնասուած գա-գաթնագծի ուղղութեամբ մինչև գետինն։ Վէմ խաչքարի ստորոտում. «Սուրբ խաչս ագնական....»։ Աւերակ դրու-թեան մէջ են միաբանից խուցերն և շրջապարիսպն։

Գիւղիցս բաւական վերև, գետակիս ձախ կողմում կան հետևեալ հնութիւններն, որք շինուած են իրարից զանա-զան հեռաւորութեան վերայ։

*Ա. Դաստափոր* աւերակ գիւղ Հայոց, այժմ թրքաբնակ, բայց մնում են հանգստարանն և վեց սիւների վերայ շի-նուած հոյակապ եկեղեցին։

*Բ. Ցնծահալ,* որ նոյնպէս թրքաբնակ է, որ ունի ըն-դարձակ հանգստարան և մեծ քարուկիր եկեղեցի, որի գլուխն խոնարհուած է։

*Գ. Գեաստամիշ* (Գետամէջ) գիւղ. որ ունի հանգստարան և մի անսիւն միջակ մեծութեամբ եկեղեցի։ Թրքաբնակ է և աւերակ։

Digitized by Google

Դ. Պալլուջա աւերակ գիւղ։

Ե. ՄԻՐԶԻԿ ԳԻՒՂ. Հիմնուած է Ոսկանապատի հիւսիսարևմտեան կողմում մի տեսարանաւոր և արևելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի և լեռնային, տեղական բերքերն նոյն (առատ է տանձ, խնձոր, ոչխար) գովելի օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Գաբրիէլ, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ և խաչազարդեալ վաղեմի խաչքարերով. երկարութիւն 16 մետր 95 սանթիմ, լայնութիւն 12 մետր 10 սանթիմ։ Դռնագլուխ քարի վերայ. «Արգեամբ Միրզիկայ սուրբ Գաբրիէլ եկեղեցիս շինեցաւ 1674 ամի»։ Հարաւային փոքր խորանի սեմին վերայ. «Կանգնեցի Սարուխանս սուրբ խաչս (բերուած է հանգստարանից) բարեխաւս Ոսկի հոգուն Թվ. ՌՀԶ.»։ Եկեղեցիս ունի և փոքր զանգակատուն և մի քահանայ։ Ծուխ 60, ար. 320, իգ. 277, ար. ծն. 17, իգ. 12, պսակ 7, ար. ննջ. 2, իգ. 2։

*Ովասափ մատուռ.* գտնուում է գիւղիս հարաւային կողմում, մի բարձր սեռի վերայ ուղղ. տակին։ Այժմ կիսաւեր է, շինուած է եղել անտաշ քարով, բուսած է խորանում մի մեծ կաղնի ծառ։

## ՔԵԱՐԽԱՆԱՅ ՎԱՆՔ.

Հիմնուած է մատուռիցն վերև մի գեղեցիկ լեռնահովտի հարաւային ծայրում։ Բարձր սարեր պատած են վանքիս հիւսիսային, արևմտեան և հարաւային կողմերը (վանքիս այս կողմն ձոր է, խորանդունդ ձոր, որից հոսում է մի առուակ և միանում ստորև Գանձ. գետակին)։ Վանքս շինուած է մի կամարի վերայ տորոնագոյն տաշուած քարով, և ունի երկու փոքր և մի աւագ խորան, վեց նեղ լուսամուտ և մի դուռն արևմտեան կողմից, 12 մետր երկարութիւն, 7 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Բեմի ճակատին մի խաչքարի վերայ. «Թվ. ՌԿԴ.»։

Վանքս ունի և գաւիթ, որ շինուած է հասարակ քա-

Digitized by Google

րով 7 մետր 30 սանթիմ երկարութեամբ և 7 մետր լայնութեամբ, որի մէջ ամփոփուած են.

«Հանգիստ հողապատեան տեառն Եղիազարու յաւէտ հանգիստ է անվշտակիր նշխար սորին, որ ասա կան, հոգին գոլով միջնորդ առ Տէր ժտական վասն իւր որդեկացս, որ եմք տառանման փորձանաց զաղտնի, որ օգտել փութան զմխաբանութիւն հոգևորական, փրկել ի փորձանաց այժմ և յապագայն, հանգեաւ սուրբ հայրն մեր թուլին Հայկազնւոյ ՉԾԿԲ.»։

«Այս է հանգիստ Զարեքու անապատի Մկրտիչ վարդապետին թվ. ՌՂԵ.»։

«Այս է տապան տանս սպասաւոր Մահտեսի վերաձայնի, Նաւասարդ աղա անուանի, եղբայր Թամրազ Քալանթարու Զակամ Մեծ Սահակ 'ի Ղարամուրատ գեղջէ, կոչի Արամի, մահն դիպէ վաթսուն Բ. ամի ՌԾԴ. թուի և չամդրեա [1]) մարմին է ԴԳ. ամի»։

Վանքս ունի և կիսաւեր շրջապարիսպ և մի քանի խուցեր միաբանից համար, որք արդէն քայքայուում են հետզհետէ և մի քանի օրավար պատուական հողեր։ Վանքիս արևելեան կողմում է Քեանդակիրմազ մականուանեալ Սարգիս վարդապետի գերեզմանն։

«Այս է տապան Սարգիս վարդապետի Ազարեանց Տփխիսեցւոյ Քեանդակիրմազ մականուանեալ, որ յայտնապէս անբասութեամբ (անբասիր) վարեաց զկարգ կրօնաւորութեան ի զանազան վանորայս Գանձակայ գաւառի աւելի քան 70 տարի և վախճանեցաւ ի հասակի 96 ամաց ի Միրզիկ գեղջ 1877 ամի»։

Վանքիս մօտ կայ վանքապատկան պարտէզ, թթենի և տանձի ծառեր, և հանգստարան և գիւղատեղի։

*Աստուածածին* աւերակ մատուռ, որ գտնուում է Միրզիկ գիւղիցս վերև այն սեռի վերայ, որ կախուած է գիւղիս վերայ, իսկ երեք քարեայ խաչարձաններ մատուռիցս վերև։

Ը. ԲՐԱՁՈՒՐ (Աղբրաջուր) ԳՒԻՂ. Հիմնուած է Միրզիկի

[1]) Գուցէ չաստամեայ։

Հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն և ամենայն ինչ նոյն, եկեղեցին Գաբրիէլ, քարուկիր. քահանան գալիս է Միրզիկից։ Ծուխ 33, ար. 191, իգ. 171, ար. ծն. 8, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 2, իգ. 1։

Գիւղիս հարաւային կողմում կայ կայծաքարի և սպիտակ քարի հանք։ Վերջինս նման է Հին-Ղարաբուլաղի քարահանքի քարերին, որը տանում են ծախում Բագու քաղաքում։

Թ. ՄԵԾ-ԲԱՆԱՆՑ ԳԻՒՂ. Հիմնուած է Արութիւն (Ղոչ-Ղարա) լեռակի ձախ կողմի վերայ, մի խոր և հորիզոնն նեղ ձորում (Բրաջրի արևմտեան կողմում) բնակիչք բնիկ, ամենամեծ մասամբ արուեստաւոր—արծաթագործ, ոսկերիչ, դերձակ, քարտաշ, որմահիւս, սայլագործ, վաճառական, ևն. հողն արքունի, չափազանց սակաւ, ապառաժ և անպէտք երկրագործութեան. տեղական բերքերն ցորեն, գարի, ոչխար, տաւար. անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Լուսաւորիչ, ընդարձակ, կառուցեալ վեց սիւների վերայ և ապառաժ սալ քարի վերայ 1863 թուին, երկարութիւն 28 մետր, լայնութիւն 13 մետր 35 սանթիմ։ Քահանայ երկու։ Ծուխ 263, ար. 1144, իգ. 1116. ար. ծն. 50, իգ. 44. պսակ 14, ար. ննջ. 10, իգ. 9։

Տաճարումս կան հետևեալ գրչագրերն.

Ա. Աւետարան մագաղաթեայ, մեծադիր, ամբողջապէս գրուած գլխագրերով և առանց պատկերի, որի սկզբից և վերջից թափուած են թերթեր, կամ գողացած են, վասնորոյ չունի յիշատակարան. միայն գրուած է բուն ընդօրինակողի գրով. «Շնորհիւն Աստուծոյ և ողորմութեամբ ամենասուրբ Հոգւոյն, պահպանութեամբ սրբոյ Խաչին և աղաւթիւք ամենայն սրբոց.... ժառանգեսցէ (ջնջուած)»։ Աւետարանս նախ նորոգած է Թադէոս անուն ոմն միայնակեաց, ապա Ալեքսանոս աբեղան ՋԲ. թվ.». ապա նորոգուած է ՋԿ. թուին. ուր և գրուած է. «Կամաւ Ամենակալին Աստուծոյ ես Կոչ որդի Սեթիկին, թոռն Թադէոսին, աւետարանս իմ պապեց գնուած էր. եկի, դաւի արարի, էլ բարիշեցաք և սաղեցաք. Բ. եղն

թնձ ծառայութիւն, ես էլ գիր տուի և զաւետարանիս դաւէն (կռուելէն) անցայ։ Ել ոչ ես և ոչ իմ որդին էլ դաւի չանէ. ՅԺԸ. հայրապետաց անիծած է.... Մուրատ փաշէն վկայ, Ջանդարն վկայ, Մուրատ բէկն վկայ»։ Հուսկ յետոյ գրուած է. «Զվերջին նորոգիլ տուող սուրբ զաստուածաշունչ ծեր աւետարանիս Պանանցայ.... ճամահաթն թվին ՌՀԴ. էր. Նորոգեցաւ ձեռամբ Շատախեցի Յովհաննէս երիցու... Ո՛չ հանդիպողք, խիստ դառն, նեղ ժամանակ այսմ տարոյս, Շահ Ապազն բազում խան ու իշխանք ուղարկեց Վրացտուն ի քաղաքն Տպղիս՝ ընդ ձեռամբ իշխանին անուն Մովրով, սպանեց հնարաւք Ղարչղա խանն, որ իշխանութեամբ ստրատելատ էր և այլ սիրելի խանն Յուսուբ սպանաւ ընդ նմա. մեծ դառնութիւն եղաւ ի մէջ Պարսիկ ազգին. վերջն Աստուած գիտի թէ ինչ կուլի»։

Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, որ ունի իւր սկզբում աւետման և չորս աւետարանչաց պատկերները, որք այնքան գեղեցիկ չեն։ Մատթէոսի վերջում. «Զստացող սուրբ աւետարանիս զներսէս սրբասէր քահանայ զծնողսն... և զամուսին իւր Մարմէլիք»։

Յիշատակարանից. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի Խաչատուր անպիտան քահանայի ի թուականութեանս Հայկազեան տումարի Չ. և Ժ. ի հայրապետութեան տեառն Գրիգորի և յաշխարհակալութեանն Ջահան Շահի, որ տիրեաց բազում աշխարհի և գաւառի բռնութեամբ... (գրեցաւ) ի գիւղաքաղաքն, որ կոչի Ուրծ. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփաննոս Նախավկային»։ Վերստին կազմուած է Հայոց ՌԻԹ. թուին։

Գ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ։ Հասարակ են պատկերներն, թռչնագրերն, ծաղիկներն և նախշերն. սակայն գեղեցիկ են փոքր գրերն։ Անյայտ է գրողի անունն, միայն յայտնի է ստացողն, որ է Պապճան անուն ոմն, որ գրած է. «Արդ.. Նախ և առաջ եկն ի վերայ մեզ խաչանց մահ, որ ա-

Digitized by Google

նասունքն կոտորեց վասն մեր ծովացեալ մեղացէս... եկաւ ի վերայ մեզ մեծ նեղութիւն, մուրեախն և թրթուռն Դիզակ և Վարանդ, Խաչեն, Ջրաբերդ, որ շատ ժամանակ շրջեց ի վերայ երկրիս... վա՜յ մեզ, եկեալ ի վերայ աշխարհիս սով սաստիկ ի վերայ երկրիս վասն մեր մեղացէս, վա՜յ մեզ, չիմացանք զի՞նչ գործենք կամ զի՞նչ աշխատեմք, մարմնով չարչարեցանք, հոգով հիւանդացանք, մտօք հեռացանք. վա՜յ մեզ, մենք ասէինք թէ պրծանք. այլ զի՞նչ կը տեսնունք. եկեալ ի վերայ մեզ մահտարաժամ, մեծ և սաստիկ և անո՜ւն, որ պովանդակ աշխարհն պատեալ էր, օր մի վաթսուն և եօթանասուն մեռանէին. վա՜յ մեղաւորաց, որ չմնաց քահանայ պատարագին, կամ աշխարհական իւր պսակին, հայր լաց իլաւ (լացաւ) իւր ո՜յ իմ որդին, մայր լալով կոծէր դստան (դուստր) ի վերայ գերեզմանին։ Վա՜յ ինձ, զի՞նչ էինք և զի՞նչ տեսաք. Տէր Աստուած Յիսուս Քրիստոս լի գեօղն, որ կոչի Պալուջա [1]) ի հայրապետութիւն տեառն Եսայի.. կաթուղիկոսի ամենայն աղուանից, գրեցաւ ՌՃԿԶ. թվ.»։ Յետոյ շարայարած է այլ գրիչ. «Արդ ի ժամանակս պռնակալութեան Գանձայու քաղաքիս Ուղուրլու խան, որ է որդի Քալպալի խանին և իշխանութեան ի Ոսկանապատու Ծորոյս Տէր Մէլիք Յովսէփին, որ է որդի Մէլիք Եաւրին ի Ոսկանապատ գեղջէն....»։ Աւետարանս յետոյ ստացած է Բանանցեցի Եսայի քահանան ՌՄԾԲ. թվին։

Դ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, առանց պատկերի, անճաշակ նախշերով, ծաղիկներով և գլխագրերով՝ որի գրողն է. «Փծուն գրիչ սուտանուն Յովսէփ ի թվին Ջ.»։

Ե. Աւետարան թղթեայ, փոքրադիր, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ, բոլորովին անճաշակ, գրուած է Մեծ-Սիւնեաց Տաթեւի վանքում ՌԼԴ. թուին Յովհաննէս եպիսկոպոսի ձեռնով։

Զ. Աւետարան թղթեայ, նմանապէս ամենայն ինչ անճաշակ։ Յիշատակարանից. «Գրեցաւ թվ. ՌՄԺԱ. 'ի բառնալ թագաւորութեան արեւելեան երկրիս Ելիմացւոցն այլազգեաց.... զի բազում քաղաքս և գեօղս քայքայեցին և աւար

[1]) Ոսկանապատից վերև Դաստափոր գիւղի մօտ, գետակի ձախ կողմում, այժմ Թրքաբնակ գիւղ։

տարրին յԱգուանս հայս, զի զօրք ելեալ յԱլանաց և յՇլիմաց ի Ճօղ քաղաքէ մինչ ի քաղաքն Գանձակ, որ է շահաստան, և ընդ այնմ մնացեալ հեծելազօրքն, զի իշխանքն Պարսից անօրինաց ոչ ուրեք հնազանդեալ և ոչ միաբանեալ կամաց իրարաց՝ սուր հանեալ ընդ ամենայն տեղիս ի տեառնէ»։

Է. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ամենայն ինչ հասարակ։ Յիշատակարանից. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ.. անարուեստ գրչի Գրիգորի աբեղայի ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս ի Հաղբատ ի թուականութեան Հայոց ՋԴ. ի կաթուղիկոսութեան տեառն Գրիգորի և յառաջնորդութեան տեղւոյս տէր Աստուածատրոյ արքեպիսկոպոսի ի Ղանութեան Տաճկաց (Պարսից) Ջիհան Շահի, 'ի դառն և 'ի նեղ ժամանակիս, որ ի խստութենէ այլազգաւան սեռի որ յահէ և յերկիւղէ նոցա մաշեալք և հալածական լինէաք, փախստեալք և մոլորեալք, գերեալք և տատանեալք։ 'Ի յառաւել խստութենէ հարկապահանջութեան և 'ի հոլովութենէ գերելոցն և ի չքաւորութենէ ընչից ոչ կարէր օգնել եղբայր եղբօր և ոչ ողորմէր ազգս ազգիս... Եւ ես անարժան և տառապեալ ծերունիս Գրիգոր՝ երերուն տատանեալ շրջեցայ... ուխտիս Հաղբատայ և տէր Աստուածատուր եպիսկոպոս սիրով ընկալաւ զմեզ»։ Բայց թէ ինչ դիպուածով ընկած է աւետարանս եկեղեցուս մէջ, անյայտ է մնում։

Ը. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ըստ ամենայնի Հասա՛րակ։ Յիշատակարանից. «Արդ գրեցաւ Սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՋՀԳ. ձեռամբ.. Ալեգսանոս աբեղայի ի սուրբ ուխտս Մաքենացւոց [1]) ի դուռն սուրբ տաճարիս Աստուածածնիս»։

Թ. Աւետարան թղթեայ, փոքրադիր և առանց պատկերի։ Յիշատակարանից «Շնորհօք և օժանդակութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի աւարտեցաւ նոր կտակարանս.. ձեռամբ.. Մխիթարի ի թուականութեան հայկական տումարի ամի հազարերորդի, հարիւրերորդի, քսաներորդի...

[1]) Գտնւում է Սևանայ լճակի հարաւային ափից մղոնաչափ հեռի—Բասար—Գեչարից ոչ այնքան հեռի։

Digitized by Google

վերայ, երկարութիւն 16 մետր 80 սանթիմ լայնութիւն 10 մետր 40 սանթիմ։ *Արձանագրութիւն*.

«Շնորհօք Ամենակալին ես Մէլքէմ գամաւս շինեցի եկեղեցիս յիշատակ ինձ և նախնեացս իմոց պարոն Աղային, Մէլիք Եռկեարին, Մէլիք Աղապէկին, Ղամար-Սուլթանին և իւր ծնողին Մէլիք Պաղուն, Աւար խաթունին, կողակցին Սամոյինային և եղբօրն. Պատօ պէկին, Աղասի պէկին. թվ. Ռ...»։ Քահանայ մի։ Ծուխ 50, ար. 192, իգ. 181, ար. ծն. 7, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 1, իգ. 1։

*Վանք* (աւանդութեամբ Երմողեայ քահանային)

Գտնուում է Սուլուկից քառորդ մղոնաչափ վերև մի սեռի բլրակի վերայ, որ կախուած է երկու առուակների մէջ։ Մատրանս, որ շինուած է հնուց անտաշ քարերով, խոնարհուած է գլուխն, մնում են այժմ միայն չորս պատերն։ *Դռնագլուխ քարի վերայ*.

«Թիւն ՉԻԸ. ես Մխիթար ու Տիրածէր շինեցաք զեկեղեցիս ի հայրապետութեան տէր Ըստեփաննոսի Աղուանից կաթուղիկոսի»։ *Փոքր ինչ վերեւ դռնագլխից*. «Ապաղայ Ելչ խանին ու Խարայնախին Աւառս լեզով շինեցի զեկեղեցիս»։ Մատրանս մէջ կայ մի հանգիստ, որի շիրմաքարն կոտրուած է միջից, կտորները միմեանց մօտ բերելով կարդացինք հետեւեալը. «Այս է հանգիստս Սայի որդի Հասանայ փեսայիս»։ Դարձեալ ներսում մի կոտրած խաչարձանի վերայ. «Թվ. ՌԻԳ. է....»։ Այլ տապանաքարի վերայ դրսում. «Այս է հանգիստ Միսայէլայ Սամնի որդի, որք կարդէք, յաղաւթս յիշեցէք թվ. Զ.»։ Մեծ հանգստարան տարածուած է մատրանս շուրջն, յորոց շատերն ունին նշանաւոր տապանաքարեր և գեղեցկաքանդակ խաչարձաններ։ *Մի մեծ խաչարձանի վերայ*. «Կամաւն Աստուծոյ կանգնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն Մալուկին և ծնողաց իւրոց և եղբարց իւրոց Արթուշին, Խաչջին, Շահմէլիք խաթունին թվ. ՊՂԶ.»։ Մատրանս հիւսիսային կողմում. «Այս է հանգիստ Զեանայ որդի Հասանայ 'ի թվ. ՉԿԳ։»։

Digitized by Google

Մատրանս արեւմտեան կողմում կայ գիւղատեղի։ Հետքերից երեւում է, որ նշանաւոր գիւղ եղած է այս։

## ՊԱՆԴԱԼԻՈՆ ՎԱՆՔ (39)

Վանքս հիմնուած է նոյնանուն սարի բարձր գագաթին վերայ։ Մատուռից մինչեւ սարիս գլուխն շարունակ զառիվեր է, բարձրանում է մարդ երկու ժամում եւ իջնում երեք քառորդ ժամում։ Ձուաձեւ բարձրացած է վանքաբարձ սարն [1]) եւ բոլորովին առանձնացած իւր շրջապատի բոլոր լեռներից։ Երկու մեծ կալատեղի չափ տափարակ է վանքասարիս կատարն, որի վերայ վաղուց եղած է մեծ վանք, շատ սենեակներն եւ միաբանութիւն։ Բայց այժմ մի մատուռ է շինուած հին վանքի տեղում, որն վաղուց փլած է արդէն։ Բարեպաշտ ոմն Գանձակեցի բարեկ. Սարգիս քահանայ Ազարեանց ի հիմանէ նորոգած է մատուռս ի յիշատակ վախճանեալ իւր Յովհաննէս որդուն։ Իսկ մատրանս երկաթեայ դուռն յիշատակ է նոյնպէս Գանձակեցի Պ. Մկրտիչ Յովհաննիսեանին։ Մեծ ուխտատեղի է մատուռս, որի ուխտի օրն է Ս. Աստուածածնայ տօնն։

## ՀԱՃԻ ՔԵԱՆԴ.

Գտնուում է Սուլուկի հիւսիսային կողմում մի անտառապատ եւ բարձր սարահարթի վերայ։ Ինչպէս կանխաւ իմացանք բնակում էին այստեղ Բախշի կամ Հաճի-քեանդի բնակիչներն։ Բայց 1870 թուին կառավարութեան հրամանաւ այս տեղն փոխուեցաւ ամարանոց Գանձակ քաղաքի՝ միեւնոյն Հաճի-քեանդ անուամբ։ Այժմ շինած են գեղեցիկ բնակարաններ, որք ներկայացնում են իբր մի կատարեալ փոքրիկ քաղաք, որի մէջ ամրան ամիսներում լինում են՝ հեռագրա-

[1]) Վանքիս անուամբ ամբողջ սարս կոչւում է Պանդալիոնի սար, որը, կրճատելով ըստ տեղական սովորութեան, Պ ա ն դ ա յ  վ ա ն ք, Պ ա ն դ ա յ  ս ա ր են անուանում։ «Աղուան. եր. եւ Դր.» գրքի 208 երեսում գրուած է. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ... Արեթէի 'ի գեօղս Անուզ Հաւատուն Հինգուզակ 'ի դուռն.. Պանդալիոնի բժշկի, եւն.»։ Կարծում ենք, որ վերեւի մատրան գիւղատեղին է Անուզ—Հաւատուն—Հինգուզակ գիւղն։

տուն, փոշտ և դատարան։ Հայոց եկեղեցին այժմ փոխուած է Ռուսաց եկեղեցու։

Գիւղատեղիներ եւ հանգստարաններ.

Հայոց գիւղատեղի և հանգստարան կայ

Ա. Հաճի-քեանդումս։

Բ. Սորանից ներքև արևելեան ձորի մօտ։

Գ. Նշանաւոր խաչարձան Հաճի քեանդից վերև անտառի մէջ։

Դ. Դեղին Սար կամ Սարու եալ կոչուած լանջի վերայ։

Ե. Հաճի քեանդի և Մուլթ գիւղի միջև անտառախիտ ճանապարհի վերայ ծմակի մէջ կայ մի աւերակ մատուռ Քեօշք անուն, որի արձանագրութեան քարն կոտրուած է. կէս մասին վերայ. «Ի թիւ Հայոց ՋՁ. կամաւն Աստուծոյ և ողորմութեամբ Քրիստոսի Ամենակալին շինեցի զեկեղեցիս......»։ Մատուռիցս փոքր ինչ հեռի կայ և գիւղի աւերակ։

Ե. ՄՌՈՒԹ ԳԻՒՂ. Հիմնուած է Պանդալիոն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ անտառի մէջ. բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն (չունին պարտէզ և այգի) պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի, եկեղեցին Սուրբ Աստուածածին, փոքր և նորոգեալ ի հիմանէ, որ ունի մի քահանայ. և սոյն արձանագրութիւնը.

'«Ես Գանձակ քաղաքացի Մահտեսի Քերովբէ Տէր-Մարտիրոսեան կառուցի իմով արդեամբք եկեղեցիս Մռուտ գեղջ ի յիշատակ պապին իմոյ Տէր-Մարտիրոս աւագ քահանայի և ծնողաց իմոց Մկրտումի և Հռիփսիմի և կանանց իմոց Խանումի (վախճանեալ) և Սեհարի ամի Տեառն 1881»։ Փորագրուած է արձանագրութեանս տակ. «Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռնեալք և ես հանգուցից զձեզ». Ծուխ 30, ար. 135, իգ. 131, ար. ծն. 15, իգ. 14, պսակ 6. ար. ննջ. 2, իգ. 2։

Զ. ՈՍԿԱՆԱՊԱՏ (40) ԳԻՒՂ. Հիմնուած է Մհակ սարի ստորոտում, Գանձակ գետակի [1]) ձախ ափի բարձրութեան

[1]) Կոչւում է և Ոսկանապատի (Զուռնաբաղի) գետ,

վերայ, խոր ձորի մէջ, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային անշրջելի և սակաւ արդիւնաբեր.. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, գովելի ջուրն, 90 տարի երկար կեանքն. Սուրբ Յակոբ եկեղեցին, հոյակապ կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւն 25 մետր 55 սանթիմ, լայնութիւն 11 մետր: Տաճարս ունի նաև հարաւային և հիւսիսային պատերում առանձնապէս կամարներ և ոտներ, ինն լուսամուտ, երկու փոքր և մի աւագ խորան և մի դուռն: *Աւազանի մօտ հիւսիսային խոյակի վերայ.* «Ես Ովանէս, Գրիգոր կամարս բերի Գուգկան. դվիմ իմ մեր (մօր) Ուռումի (Հռիփսիմէի) հոգին համար»: *Արտաքուստ արեւմտեան ճակատին.* «Սուրբ խաչս աւգնական Տէր Ովանէսին թվ. ՈԴ.»: Քահանայ մի: Ծուխ 89, ար. 321, իգ. 275, ար. ծն. 7, իգ: 6, պսակ 4. ար. ննջ. 2, իգ. 2:

Տաճարումս կայ *երկու գրչագիր.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ: Ընտիր են պատկերներն, նախշերն ծաղիկներն, թռչնագրերն, ոսկեզօծն և գոյներն:

*Յիշատակարանից.* «Ի ձեռն ուրումն երեր յաշխարհէն Հայոց գրեալ ոսկեզաւծ որակաւք ի Դրազարկն ձեռամբ Թորոսի փիլիսոփային, զոր տեսեալ տեառն Ստեփանոսի Տարսայիճ հզաւր և իմաստուն գիտնականի վարժեալ ի վարժարանի վարժապետին Եսայոյ տիեզերաքարոզ լուսաւորչին, որդի իշխանաց իշխանին քաջ սպառազէն մենամարտիկ զինաւորի Ջալալին, թոռն մեծ Աթաբակին Հայոց և Վրաց Վահ Տարսայիճին, Տէր և Վերատեսուչ գահերէց և գլուխ արհի երից աթոռոցս Սիւնեաց Տաթեւոյ և Նորավանից և Ցախաց քարոյ, պետ երկոտասան գաւառաց, ուրախ եղև իբրև ընծայ ի վերուստ առաքեալ: Եւ յաղագս եղբաւր իւրոյ պարոն Շահնշահի, որ կիսաւրեալ մահուամբ, տղայ տիաւք, ցանկալի տեսողաց, գեղեցիկ հասակաւ, և քաղցր բարուք, աներկեան հաւատով և հաստատուն յուսով՝ ի բազմավրդով կենցաղոյս խրախոյս տուեալ առաջնոր-

դեաց խաղաղական և բարի հրեշտակաւք առ յոյսն ամենայնի և յԱստուած բոլորից, որ հանգուցանողն է ամենայն հոգւոց բարեաց, հանգուսցէ ի գոգն Աբրահամեան նուլին հաւատով լցեալ։ Ստացաւ հանդերձ հոգևոր հարբ իւրով Կիրակոս վարդապետովն ի հալալ արդեանց իւրոց և ընդելուզել ոսկւով և արծաթով և ակամբք պատուականաւք յիշատակ վերաստացեալ եղբաւր իւրոյ։ Եւ արդ ես Նուաստ, եղկելի, թշուառացեալս Ստեփաննոս խոց լերթոց և թախիծ կսկծալի սրտիւ, հողամած դիմաւք զդառդ սրբազանից զպատահեալսդ տիեզերաքարոզ աւետարանիս սրտի մտաւք յիշել զգեղաղէշ և զարեգակնափայլ եղբայրն իմ զպարոն Շահանշահ առաջի զենման Քրիստոսի... յիշել զծնողսն իմ զհայր իմ զՋալալն և զմայր իմ զամենաւրհնեալ Գոնցա և յերկար կենդանութիւն խնդրել երկուց եղբարց իմոց պարոն Էլիկիւմի և Աղբուղային։ Եղև մեզ այս բաւթ տրտմագին 'ի տաւնի զատկին 'ի ՁԶ. թուականի Հայոց 'ի տրէ Գ.»։ Մատթէոսի սկզբում գրուած է ի միջի այլոց. «Ես Յովհաննէսս Ոսկանապատոյ ձեռնաւորս գնեցի զաւետարանս իմ հալալ արդեամբս յիշատակ ինձ և իմ ծնողաց»։

Բ. Աւետարան, թղթեայ, միջակ դիրքով, պատկերազարդ, բայց ոչ այնքան ճաշակով գծուած, Ցիշատակարանից. «Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի, զմեղուցեալ գրիչս Իսրայէլ յիշեցէք.... Արդ գրեցաւ սա յարքունական երկիրն Մոկաց ի տեղիս Անապատ, որ Փասալանք կոչի՛ ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս.. ձեռամբ յոգնամեղ և անարուեստ գրչի Իսրայէլ... 'ի թուականիս Հայոց ՋԺԲ. ամեն. 'ի խնդրոյ.. Մահդասոյն Պաւղոսի յիշատակ հոգւոյն իւրոյ»։ Յետոյ գրուած է. «Նորոգեցաւ սուրբ աւետարանս ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ Նշանիս Վարագայ ձեռամբ Սահակ անարժան աբեղայի ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Կիրակոս վարդապետի, որ բազում ջանիւ զվանքս կրկին անգամ նորոգեաց զեկեղեցիք, զդարպաս, զտներ, զոր ի շարժմանէ ապականեալ էր, ի թուականիս ՌՂԸ. ի խնդրոյ Յոհան անուն անկեալ երիցին, որ ստացաւ զսա 'ի հալալ ըն-

Digitized by Google

չից իւրոց և հա նորոգիլ»։ Դժուարին է իմանալ թէ ինչ դի-պուածով ընկած է Ոսկանապատ գիւղիս մէջ։

*Սուրբ Աստուածածնայ վանք.*

Հիմնուած է գիւղիս վերի ծայրում գետակին ձախ ափի վերայ, կառուցեալ երկու կամարների վերայ, որ ունի մի դուռն հարաւային կողմից և երկու նեղ լուսամուտ արևելեան և արևմտեան կողմերից և միւս ևս հարաւից։ Երկայնութիւն 12 մետր 75 սանթիմ, լայնութիւն 6 մետր 75 սանթիմ։ Ունի եկեղեցու ձև և ոչ վանքի, սակայն ունեցած է միաբանից խուցեր տաճարս իւր արևմտեան կողմում, որպէս վկայում են տեսողք. բայց յորդ անձրևի հեղեղներն քանդած և տարած են սոյն սենեակները և կոյտ կոյտ խիճեր դիզած խուցերի տեղերում։ Տաճարիս հարաւային որմի մօտ արտաքուստ. «Այս է տապան Յարութիւն պապին, որ վերստին նորոգեաց սուրբ եկեղեցիս թվ. ՌՄՀ.»։

*Սուրբ Սարգսի վանք.*

Ս. Աստուածածնայ վանքիս հանդէպ գետակի աջ ափի վերայ, շինուած երկու կամարների վերայ, մնասուած գագաթնագծի ուղղութեամբ մինչև գետինն։ Վէմ խաչքարի ստորոտում. «Սուրբ խաչս աւգնական....»։ Աւերակ դրութեան մէջ են միաբանից խուցերն և շրջապարիսպն։

Գիւղիցս բաւական վերև, գետակիս ձախ կողմում կան հետևեալ հնութիւններն, որք շինուած են իրարից զանազան հեռաւորութեան վերայ։

*Ա. Դաստափիր* աւերակ գիւղ Հայոց, այժմ թրքաբնակ, բայց մնում են հանգստարանն և վեց սիւների վերայ շինուած հոյակապ եկեղեցին։

*Բ. Ցնծահայ*, որ նոյնպէս թրքաբնակ է, որ ունի ընդարձակ հանգստարան և մեծ քարուկիր եկեղեցի, որի գլուխն խոնարհուած է։

*Գ. Գեատամիշ* (Գետամէջ) գիւղ. որ ունի հանգստարան և մի անսիւն միջակ մեծութեամբ եկեղեցի։ Թրքաբնակ է և աւերակ։

Digitized by Google

Դ. Պալլուջա աւերակ գիւղ։

Ե. ՄԻՐՋԻԿ ԳԻՒՂ. Հիմնուած է Ոսկանապատի հիւսիս-արեւմտեան կողմում մի տեսարանաւոր և արեւելահայեաց լանջի վերայ, բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի և լեռնային, տեղական բերքերն նոյն (առատ է տանձ, խնձոր, ոչխար) գովելի օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90, եկեղեցին Սուրբ Գաբրիէլ, քարուկիր, կառուցեալ չորս սիւների վերայ և խաչազարդեալ վաղեմի խաչքարերով. երկարութիւն 16 մետր 95 սանթիմ, լայնութիւն 12 մետր 10 սանթիմ։ Դռնագլուխ քարի վերայ. «Արդեամբ Միրզիկայ սուրբ Գաբրիէլ եկեղեցիս շինեցաւ 1674 ամի»։ Հարաւային փոքր խորանի սեմին վերայ. «Կանգնեցի Սարուխանս սուրբ խաչս (բերուած է հանգստարանից) բարեխաւս Ոսկի հոգուն Թվ. ՌՀՁ.»։ Եկեղեցիս ունի և փոքր զանգակատուն և մի քահանայ։ Ծուխ 60, ար. 320, իգ. 277, ար. ծն. 17, իգ. 12, պսակ 7, ար. ննջ. 2, իգ. 2։

*Ովասափ մատուռ.* գտնուում է գիւղիս հարաւային կողմում, մի բարձր սեռի վերայ ուղղու տակին։ Այժմ կիսաւեր է, շինուած է եղել անտաշ քարով, բուսած է խորանում մի մեծ կաղնի ծառ։

## ՔԵԱՐԽԱՆԱՅ ՎԱՆՔ.

Հիմնուած է մատուռից վերև մի գեղեցիկ լեռնահովտի հարաւային ծայրում։ Բարձր սարեր պատած են վանքիս հիւսիսային, արեւմտեան և հարաւային կողմերը (վանքիս այս կողմն ձոր է, խորանդունդ ձոր, որից հոսում է մի առուակ և միանում ստորև Գանձ. գետակին)։ Վանքս շինուած է մի կամարի վերայ տորոնագոյն տաշուած քարով, և ունի երկու փոքր և մի աւագ խորան, վեց նեղ լուսամուտ և մի դուռն արեւմտեան կողմից, 12 մետր երկարութիւն, 7 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Բեմի ճակատին մի խաչքարի վերայ. «Թվ. ՌԿԴ.»։

Վանքս ունի և գաւիթ, որ շինուած է հասարակ քա-

Digitized by Google

րով 7 մետր 30 սանթիմ երկարութեամբ և 7 մետր լայնութեամբ, որի մէջ ամփոփուած են.

«Հանգիստ հողապատեան տեառն Եղիազարու յաւէտ հանգիստ է անվշտակիր նշխար սորին, որ աստ կան, հոգին գոլով միջնորդ առ Տէր ժտական վասն իւր որդեկացս, որ եմք տատանման փորձանաց պաղտնի, որ օգտել փութան զմխարանութիւն հոգևորական, փրկել ի փորձանաց այժմ և յապագայն, հանգեաւ սուրբ հայրն մեր [թուին] Հայկազնեայ ՌՃԿԲ.»։

«Այս է հանգիստ Զարեքու անապատի Մկրտիչ վարդապետին թվ. ՌՂԵ.»։

«Այս է տապան տանս սպասաւոր Մահտեսի վերաձայնի, Նաւասարդ աղա անուանի, եղբայր Թամրազ Քալանթարու Զակամ Մեծ Սահակ 'ի Ղարամուրատ գեղջէ, կոչի Արամի, մահն դիպէ վաթսուն Բ. ամի ՌՃՂ. թուի և շամդրեա [1]) մարմին է ԴԳ. ամի»։

Վանքս ունի և կիսաւեր շրջապարիսպ և մի քանի խուցեր միաբանից համար, որք արդէն քայքայւում են հետզհետէ և մի քանի օրավար պատուական հողեր։ Վանքիս արևելեան կողմում է Քեանդակիրմազ մականուանեալ Սարգիս վարդապետի գերեզմանն։

«Այս է տապան Սարգիս վարդապետի Ազարեանց Տփխիսեցւոյ Քեանդակիրմազ մականուանեալ, որ յայտնապէս անքասութեամբ (անքասիր) վարեաց զկարգ կրօնաւորութեան ի զանազան վանորայս Գանձակայ գաւառի աւելի քան 70 տարի և վախճանեցաւ ի հասակի 96 ամաց ի Միրզիկ գեղջ 1877 ամի»։

Վանքիս մօտ կայ վանքապատկան պարտէզ, թթենի և տանձի ծառեր, և հանգստարան և գիւղատեղի։

*Աստուածածին աւերակ մատուռ*, որ գտնւում է Միրզիկ գիւղիցս վերև այն սեռի վերայ, որ կախուած է գիւղիս վերայ, իսկ երեք *քարեայ խաչարձաններ* մատուռիցս վերև։

Ը. ԲՐԱՋՈՒՐ (Աղբրաջուր) ԳԻՒՂ. Հիմնուած է Միրզիկի

[1]) Գուցէ շատամեայ։

հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն և ամենայն ինչ նոյն, եկեղեցին Գաբրիէլ, քարուկիր. քահանան գալիս է Միրզիկից։ Ծուխ 33, ար. 191, իգ. 171, ար. ծն. 8, իգ. 6, պսակ 2, ար. ննջ. 2, իգ. 1։

Գիւղիս հարաւային կողմում կայ կայծաքարի և սպիտակ քարի հանք։ Վերջինս նման է Հին-Ղարաբուլաղի քարահանքի քարերին, որը տանում են ծախում Բագու քաղաքում։

Թ. ՄԵԾ-ԲԱՆԱՆՑ ԳԻՒՂ. Հիմնուած է Արուլթիւն (Ղոչ-Ղարա) վտակի ձախ կողմի վերայ, մի խոր և հորիզոնն նեղ ձորում (Բրաջրի արևմտեան կողմում) բնակիչք բնիկ, ամենամեծ մասամբ արուեստաւոր—արծաթագործ, ոսկերիչ, դերձակ, քարտաշ, որմահիւս, սայլագործ, վաճառական, ևն. հողն արքունի, չափազանց սակաւ, ապառաժ և անպէտք երկրագործութեան. տեղական բերքերն ցորեն, գարի, ոչխար, տաւար. անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85, եկեղեցին Սուրբ Լուսաւորիչ, ընդարձակ, կառուցեալ վեց սիւների վերայ և ապառաժ սալ քարի վերայ 1863 թուին, երկարութիւն 28 մետր, լայնութիւն 13 մետր 35 սանթիմ։ Քահանայ երկու։ Ծուխ 263, ար. 1144, իգ. 1116. ար. ծն. 50, իգ. 44. պսակ 14, ար. ննջ. 10, իգ. 9։

Տաճարումս կան հետևեալ գրչագրերն.

Ա. Աւետարան մագաղաթեայ, մեծադիր, ամբողջապէս գրուած գլխագրերով և առանց պատկերի, որի սկզբից և վերջից թափուած են թերթեր, կամ գողացած են, վասնորոյ չունի յիշատակարան. միայն գրուած է բուն ընդօրինակողի գրով. «Շնորհիւն Աստուծոյ և ողորմութեամբ ամենասուրբ Հոգւոյն, պահպանութեամբ սրբոյ Խաչին և աղաւթիւք ամենայն սրբոց .... ժառանգեսցէ (ջնջուած)»։ Աւետարանս նախ նորոգած է Թադէոս անուն ումն միայնակեաց, ապա Ալեքսանոս աբեղան ՉԲ. թվ.». ապա նորոգուած է ՉԿ. թուին. ուր և գրուած է. «Կամաւ Ամենակալին Աստուծոյ ես Կոշ որդի Սեթիկին, թոռն Թադէոսին, աւետարանս իմ պապեց գնուած էր. եկի, գաւի արարի, էլ բարիշեցաք և սազեցաք. Բ. եղն

*քնձ ծառայութիւն, ես էլ գիր տուի և զաւետարանիս դաւէն (կռուիլէն) անցայ։ Էլ ոչ ես և ոչ իմ որդին էլ դաւի չանէ. ՅԺԸ. հայրապետաց անիծած է.... Մուրատ փաշէն վկայ, Ջանդարն վկայ, Մուրատ բէկն վկայ»։ Հուսկ յետոյ գրուած է. «Զվերջին նորոգիլ տուող սուրբ զաստուածաշունչ ծեր աւետարանիս Պանանցայ.... ճամահամն թվին ՌՀԴ. էր. Նորոգեցաւ ձեռամբ Շատախեցի Յովհաննէս երիցու... Ո՛չ հանդիպողք, խիստ դառն, նեղ ժամանակ այսմ տարոյս, Շահ Աբազն բազում խան ու իշխանք ուղարկեց Վրացտուն ի քաղաքն Տպղիս՝ ընդ ձեռամբ իշխանին անուն Մովրով, սպանեց հնարաւք Ղարչղա խանն, որ իշխանութեամբ ստրատելատ էր և այլ սիրելի խանն Յուսուբ սպանաւ ընդ նմա. մեծ դառնութիւն եղաւ ի մէջ Պարսիկ ազգին. վերջն Աստուած գիտի թէ ինչ կուլի»։*

*Բ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, որ ունի իւր սկզբում աւետման և չորս աւետարանչաց պատկերները, որք այնքան գեղեցիկ չեն։ Մատթէոսի վերջում. «Զստացող սուրբ աւետարանիս զՆերսէս սրբասէր քահանայ զծնողսն... և զամուսին իւր Մսրմէլիք»։*

Յիշատակարանից. *«Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի Խաչատուր անպիտան քահանայի ի թուականութեանս Հայկազեան տումարի Ջ. և Ժ. ի հայրապետութեան տեառն Գրիգորի և յաշխարհակալութեանն Ջահան Շահի, որ տիրեաց բազում աշխարհի և գաւառի բռնութեամբ... (գրեցաւ) ի գիւղաքաղաքն, որ կոչի Ուրծ. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփաննոս Նախավկային» ։ Վերստին կազմուած է Հայոց ՌԻԹ. թուին։*

*Գ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ։ Հասարակ են պատկերներն, թռչնագրերն, ծաղիկներն և նախշերն. սակայն գեղեցիկ են փոքր գրերն։ Անյայտ է գրողի անունն, միայն յայտնի է ստացողն, որ է Պապճան անուն ոմն, որ գրած է. «Արդ.. Նախ և առաջ եկն ի վերայ մեզ խաչանց մահ, որ ա-*

Digitized by Google

նասունքն կոտորեց վասն մեր ծովացեալ մեղացէս... եկաւ ի վերայ մեզ մեծ նեղութիւն, մուրեախն և խիրթուռն Դիզակ և Վարանդ, Խաչեն, Ջրաբերդ, որ շատ ժամանակ շրջեց ի վերայ երկրիս... վա՜յ մեզ, եկեալ ի վերայ աշխարհիս սով սաստիկ ի վերայ երկրիս վասն մեր մեղացէս, վա՜յ մեզ, չիմացանք զի՞նչ գործենք կամ զի՞նչ աշխատեմք, մարմնով չարչարեցանք, հոգով հիւանդացանք, մօք հեռացանք. վա՜յ մեզ, մենք ասէինք թէ ապրծանք. այլ զի՞նչ կը տեսնունք. եկեալ ի վերայ մեզ մահտարաժամ, մեծ և սաստիկ և անո՜ւն, որ պովանդակ աշխարհն պատեալ էր, օր մի վաթսուն և եօթանասուն մեռանէին։ վա՜յ մեղաւորաց, որ չմնաց քահանայ պատարագիլն, կամ աշխարհական իւր պսակլին, հայր լաց իլաւ (լացաւ) իւր ա՜յ իմ որդին, մայր լալով կոծէր դստան (դուստր) ի վերայ գերեզմանին։ Վա՜յ ինձ, զի՞նչ էինք և զի՞նչ տեսաք. Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ի գեօղն, որ կոչի Պալլուջա [1]) ի հայրապետութիւն տեառն Եսայի.. կաթուղիկոսի ամենայն աղուանից, գրեցաւ ՌՃԿԶ. թվ.»։ Յետոյ շարայարած է այլ գրիչ. «Արդ ի ժամանակս պռնակալութեան Գանձայու քաղաքիս Ուղուրլու խան, որ է որդի Քալպալի խանին և իշխանութեան ի Ոսկանապատու Ծորոյս Տէր Մէլիք Յովսէփին, որ է որդի Մէլիք Եաւրին ի Ոսկանապատ գեղջէն....»։ Աւետարանս յետոյ ստացած է Բանանցեցի Եսայի քահանան ՌՄԾԲ. թվին։

Դ. Աւետարան մագաղաթեայ, փոքրադիր, առանց պատկերի, անճաշակ նախշերով, ծաղիկներով և գլխագրերով որի գրողն է. «Փծուն գրիչ սուտանուն Յովսէփ ի թվին Ջ.»։

Ե. Աւետարան թղթեայ, փոքրադիր, որ ունի միայն չորս աւետարանչաց պատկերներ, բոլորովին անճաշակ, գրուած է Մեծ-Սիւնեաց Տաթևի վանքում ՌԼԴ. թուին Յովհաննէս եպիսկոպոսի ձեռնով։

Զ. Աւետարան թղթեայ, նմանապէս ամենայն ինչ անճաշակ։ Յիշատակարանից. «Գրեցաւ թվ. ՌՄԺԱ. 'ի բառնալ թագաւորութեան արևելեան երկրիս Ելիմացւոցն այլազգեաց.... զի բազում քաղաքս և գեօղս քակքայեցին և աւար

[1]) Ոսկանապատից վերև Դաստափոր գիւղի մօտ, գետակի ձախ կողմում, այժմ Թրքաբնակ գիւղ։

արարին յԱղուանս հայս, զի զօրք եկեալ յԱլանաց և յԵլիմաց ի Տօշ քաղաքէ մինչ ի քաղաքն Գանձակ, որ է շահաստան, և ընդ այնմ մնացեալ հեծելազօրօքն, զի իշխանքն Պարսից անօրինաց ոչ ուրեք հնազանդեալ և ոչ միաբանեալ կամաց իրարաց՝ սուր հատեալ ընդ ամենայն տեղիս ի տեառնէ»։

Է. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ամենայն ինչ հասարակ։ *Յիշատակարանից*. «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ.. անարուեստ գրչի Գրիգորի աբեղայի ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս ի Հաղբատ ի թուականութեան Հայոց ՋԴ. ի կաթուղիկոսութեան տեառն Գրիգորի և յառաջնորդութեան տեղւոյս տէր Աստուածատրոյ արքեպիսկոպոսի ի Ղանութեան Տաճկաց (Պարսից) Ջիհան Շահի, 'ի դառն և 'ի նեղ ժամանակիս, որ ի խստութենէ այլազգաւան սեռի որ յահէ և յերկիւղէ նոցա մաշեալք և հալածական լինէաք, փախստեայք և մոլորեալք, գերեալք և տառապեալք։ 'Ի յառաւել խստութենէ հարկապահանջութեան և 'ի հոլովութենէ գերելոցն և ի չքաւորութենէ ընչից ոչ կարէր օգնել եղբայր եղբօր և ոչ ողորմէր ազգս ազգիս... Եւ ես անարժան և տառապեալ ծերունիս Գրիգոր՝ երերուն տատանեալ շրջեցայ... ուխտիս Հաղբատայ և տէր Աստուածատուր եպիսկոպոս սիրով ընկալաւ զմեզ»։ Բայց թէ ինչ դիպուածով ընկած է աւետարանս եկեղեցուս մէջ, անյայտ է մնում։

Ը. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ըստ ամենայնի հասարակ։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ Սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՋՀԳ. ձեռամբ.. Ալեգսանոս աբեղայի ի սուրբ ուխտս Մաքենացւոց [1]) ի դուռն սուրբ տաճարիս Աստուածածնիս»։

Թ. Աւետարան թղթեայ, փոքրադիր և առանց պատկերի։ *Յիշատակարանից* «Շնորհօք և օժանդակութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի աւարտեցաւ նոր կտակարանս.. ձեռամբ.. Մխիթարի ի թուականութեան հայկական տումարի ամի հազարերորդի, հարիւրերորդի, քսաներորդի...

[1]) Գտնուում է Սեւանայ լճակի հարաւային ափից մղոնաչափ հեռի— Բասար—Գեչարից ոչ այնքան հեռի։

ի յայս ամի սաստիկ մահ յերկիրս Վերին Զակամայ, որ օր մի 'ի տան միում եօթն հոգի վախճանեցաւ... ի հայրապետութեան տեառն Պետրոսի Սրբազան Կաթուղիկոսին Սրբոյ Գանձասարայ, ի առաջնորդութեան Նահանգիս Մինաս վարդապետի և ի տէրութեան Պարսից Շահ Սուլէյմանին ի յերկիրս Վերին Զակամայ 'ի գեօղս որ կոչի Սուլտանեցիք ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս ի խնդրոյ բարեմիտ Եւային և այրն (առն) իւրոյ Ոսկանին...։ Արդ ես Եւայս ստացայ զայս աւետարանս և ետու վախմ ի դուռն Ղարամուրատ Կուսանաց անապատի Սուրբ Աստուածածնի»։ Հուսկ յետոյ գրուած է այլ գրչից. «Զվերջին ստացող զսուրբ աւետարանս... Մէլիք Սարգիս և ծնողացն հայրն իմոյ Ովանէսն... Թվին ՌՃՀԸ»։

Ժ. Աւետարան Թղթեայ, միջակ դիրքով, առանց պատկերի, ամենայն ինչ հասարակ։ *Ցիշատակարանից*. «'Ի ՌՃԱ. Թուականիս Հայոց և ի յամսեանն մարտի ԻԱ. պտուհացից պահոց առաջին շաբաթին երկուշաբաթ օրն եղև սկիզբն գրութեան սուրբ աւետարանիս և կատարեցաւ. ապրիլ ամսոյ ԺԵ. յաւուր մեծի հինգշաբթին [1]... արդ գրեցաւ սա ի յերկիրս Զակամ ի գիւղս Մէլիքզատայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Սուրբ Թովմայ և այլ սուրբ Նահատակի, որ աստ է, ձեռամբ անարուեստ և փծուն գրչի Յակովբայ յետնեալ քահանայի»։ Աւետարանս ստացած է Կիրակոս երէցն, ապա Մէլիք Ովանէս, «Արդ ես Մէլիք Ովանէսս ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ և ծնողացն.. հայրն Միրզախան, և որդիքն իմ Մէլիք Մաթէոսն»։ Եւ ապա գրած են Մէլիք-Մաթէոսի թոռներն. «Արդ ես Մէլիք Մաթէոսի թոռն Աղաջանս և Սարգիսն ի թուին Հայոց ՌՄԽԴ. Ն էր, որ Չէզոք (Ներքինի Աղա-Մամատ) Շահն Պարսից եկն ի քաղաքն Թիփլիզ Սուրբ Խաչի պահոց երեքշաբաթի օրն, առաւ, աւերեց և ցիրուցան արար զամենայն, կոտորեաց աւելի քան ԺԲՌ. (12000) մարդ և զայր ու զկին ամեն

[1]) Սխալ է երևում «մարտի ԻԱ.» ամսաթիւն, քանզի երբ աւագ հինգշաբթի օրն լինի ապրիլ. 15, Բշ. (Մեծի պահոց) Ա. օրն եղած կը լինի մարտի (Ա.) վաանորոյ գրած է գուցէ Մ ա ր տ ի 'ի Ա.։

կերի աքարին և բազում նշխարս սրբոց և զսպաս եկեղեցեաց աւար առին, դարձան յետս նոյն ամի։ Երկրորդ Թուին (ՌՄԽԵ.—1796) մեծի պահոց միջոցն Թիփլիզու Իրէկլայ (Հերակլ) արքայն վրաց եկն 'ի վերայ Կանձակու հանդերձ Շամշադինու զօրօք և Շուշու Իբրահիմ խանն հանդերձ Լազկիւն. տեղոյս իշխող Ջաւատ խանն էր. մազապուրծ եղեալ ի Ղալայն բազում պատերազմ աքարին, ոչ կարացին յաղթել նմա. հրաման արարեալ եկն 'ի սար գիւղօրայս Սուլթան Շամշադին զօրօք իւրովք և սուտ երդմամբ հանեալ զմեզ կերի վարեցին և սրախողխող արարին և մնացելոցն այսր և անդր ընթանալով ոչ ոչ գտաք հանգիստ ոտից մերոց։ Յետոյ զօրքն Վրաց հանդերձ լազկիւն եկն և զմնացեալսն կերի արարին և Բանանց գիւղս ամեն այրեցին հրով։ ԽԶ. (ՌՄԽԶ.—1796) Թվին սով և մահն եկն ի վերայ մեր. Կոբեկ ալիւրի լիտրն (18 ֆունտ) Թ. ապասի դժուար գտանելով, վասն որոյ ուրացեալ այր զկին և կին զայր իւր, հայր 'ի որդոյ և որդի 'ի հօրէ, մայր 'ի դստերէ և դուստր ի մօրէ իւրմէ բաժանեալ, ոչ գտանէինք հանգիստ ոտից մերոց. զի կերակուր մեր էր կաղինն և կաղնի քլէպ (կեղևն) և մեր առեալ զայս սուրբ աւետարանս մեծաւ պգուշութեամբ և բազում տառապանօք, շնորհօք սուրբ Հոգոյն հասուցաք մինչև ցայսօր։ Իսկ ի Թվին մերոյ ՌՄԿ. էր, եկն ի վերայ մեր ժանտամահն. առաջ Ըռուսի մէջն անկաւ, շատ կոտորեց, յետոյ Թուրք ազգի մէջն անկաւ, յետոյ Քիլիսա-Քեանդըն [1]) և Նորաշէնն [2]) անկաւ, յետոյ սար կեղօրայք և Բանանց կիւղս անողորմ կոտորեց. շատ մարդ առանց կին մնաց, և շատ կին առանց այր, շատն առանց որդի և շատն առանց դուստր։ բազումք առանց քահանայի Թաղեցին, բազում տունք աւեր մնացին։ Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Սոյն ժամանակ Դաւիթ վարդապետն սաղն (կենդանի մնացածները) վեր առաւ գնաց Քիճիք-Բանանց [3]) որ է Դամ-

[1]) Մինչև ցայսօր Քիլիսա-Քեանդ է կոչուում Գանձակի Հայոց Ս. Յովհաննէս եկեղեցու Թաղն։

[2]) Նոյն քաղաքի Հայոց հիւսիսային Թաղն։

[3]) Փոքր-Բանանց այժմ աւերակ գիւղն կայ՝ Բանանց գիւղից վերև Արութիւնի վտակի և Քարհատի առուի խառնուրդի հարաւային լանջի վերայ։

Digitized by Google

պղլաձոր, որ կնաց կումերն, որն կնաց պազերն, փոքր ինչ հանդարտեաց ցաւն. վա՜յ մեզ, իմացանք, թէ պրծանք ցաւէն. աստուածատատ բարկութիւնն հասեալ, գազան մի աւերեալ և բազում վնաս արար և քանի մի անձինք չարաչար մեռան… այն ժամանակիս նորոգել տուինք սուրբ աւետարանս յիշատակ մեզ և ծնողաց մերոց, մեր պապ Մէլիք-Մաթէոսին.։… գրեալ 'ի մատեանս ՌՄԿԳ. 'ի տիրապա՞ն գիւղս Բանանց ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եկեղեցոյն։ ՌՄԾԲ. ին Ռուսըն եկաւ Կանձու վերայ, մէկ ամիս նստաւ, մէկ ս՞աթումն առաւ. ս՞աթուկէս ԳՌ. (3000) մարդ կոտորեց»։

ԺԱ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, անյիշատակարան, անյայտ գրողի անունն և ամենասատր չորս աւետարանչաց պատկերներն և ամենայն ինչ։

ԺԲ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ամենայն մասամբ սատր։ Յիշատակարանից. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն ժամանակիս 'ի լաւ ընտիր օրինակէ 'ի յերկիր Վերին Զակամ 'ի Ղարամուրատի Հարանց անապատիս ձեռամբ մեղօք զառածեալ Աւետիս աբեղայի, որ եմ յերկրէն Տաւուշու 'ի գեղջէն Քամալու. Հ. ի թուականիս Հայոց ՌԾԻԸ։»։

ԺԳ. Աւետարան փոքրադիր, գրուած գեղեցիկ թղթի վերայ, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ։ Յիշատակարանից. Աւրհնեալ է Աստուած, թվին ՌԾԺԹ. յուլիսի Ե. աւարտ եղաւ»։ «Արդ ես Կարմիր Ծատուրենց Ջուղայեցի մեղապարտ Աւետիքս եկի ի քաղաքն Տփխիս … զսուրբ աւետարանս ետու յիշատակ ի դուռն Բեդղահեմու Սուրբ Աստուածածնին թվին ՌԾԻՁ.»։ Ապա գրուած է այլ գրչից. «Գրեցաւ թուականիս ՌՄԽԹ. յունվարի Ե. որ ես Սարգիսս Կանջայու ի գիւղն որ կոչի Գետաշէն, ի ժամանակին Ջաւատ խանն էր»։ Աւետարանիս սկզբում յայտնուած է, որ նոյն Գետաշէնցին յիշատակ տուած է. աւետարանս Բանանց եկեղեցուն։

Գիւղումս կայ տղայոց միդասեան ուսումնարան, ուր ուսանում են 55 աշակերտ, թոշակաւոր 48, ձրիավարժ 7, միամեայ ռոճիկ ուսուցչի 350 րուբլի։

Digitized by Google

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԱՆԱՊԱՏ.

Շինուած է Բանանց գիւղին հարաւային հանդէպ, Արութիւն վտակի աջ կողմում և կլորած առուակի աջ ափի բարձրութեան վերայ։ Անապատս, որի տեղն գեղեցիկ հարթակ է, կառուցեալ է մի կամարի վերայ անտաշ քարով, որ ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և մի աւագ, չորս նեղ լուսամուտ, երկու դուռն—հարաւից և արևմուտքից, 15 մետր 55 սանթիմ երկարութիւն 9 մետր 25 սանթիմ լայնութիւն բացի գաւթից։ Հարկ է յայտնել, որ ճաքած է գագաթնագծի ուղղութեամբ երկար։

*Արեւմտեան դրան վերայ.* «Շինեց սուրբ եկեղեցիս Միքխաւճայ Ազիզն թվ. ՌՃԹ.»։ «Սուրբ խաչս Ովանէսին»։ *Նոյն դրան հիւսիսային սեմի վերայ.* «Սուրբ խաչս Փարլին, Տահումին»։ «Սուրբ խաչս բարեխաւս Հռումսիմին ՌՀԸ.»։

Ունի և մի փոքր գաւիթ և զանգատուն հարաւային դրան վերայ, որի մօտ մի տապանաքարի վերայ. «Այս է տապան Տէրունց Յարութիւնի որդի Գաբրիէլ եպիսկոպոսին, 60 ամ վանահայր էր սա անապատիս, 96 ամեայ էր որ փոխեցաւ առ Քրիստոս $18\frac{2}{13}31$ ՌՄՁ.»։ Զանգատան գետնայարկի հիւսիսային ոտքի հարաւահայեաց ճակատին. «Ես Պաղտասարի որդի Մահտեսի Ներսէսս և Օսէփս տվինք սուրբ անապատիս ա. թուման փախմ. սորա տվին մեզ տարեն դ. ժամ. եթէ որք խափանի, պարտական լինի առաջի ատենին Քրիստոսի. թվ. ՌԾԽԴ.»։ Զանգակին վերայ. «Յիշատակ է Ապովի որդի Խոճայ Ղազարին ի դուռն Բանանցայ սուրբ Անապատին թվ. ՌԾԺԶ.»։ Անապատիս գլխին, արևելեան կողմի գագաթնագծի վերայ դրուած է մի քառակուսի քար, որի չորս երեսին քանդակուած է չորս խաչ և մէջն մի խաչի տակ մի մի անուն, որք երևի թէ չորս անձինք կամ չորս եղբարք եղած են նուիրաբերներն. ահա «Սուրբ խաչս բարեխօս տէր Եղիշէին, Անտունին, Գրիգորին և Եղիսէին»։ Իսկ արևմտեան գագաթնագծի վերայ եղածին գրուած է միայն «Տէր Եղիա»։

Անապատիս արևելեան կողմում, շրջապարսպի ներսում

Digitized by Google

կան ինն Թաղակապ խուցեր, որք ցարդ մնում են անվնաս և անապատիս կայն։ Իսկ արևմտեան հանդէպ ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ կայ մի աւերակ մատուռ, որի մէջ դրուած են ութ հնաձև քարեայ խաչեր։ Անապատս ունի ընկուզի շատ ծառ իւր հարաւային ձորում։ ամայի անապատս և անմարդաբնակ։

*Երկու կամուրջ*, յորոց մին շինուած է քարուկիր և գեղեցիկ Արութիւն վտակի վերայ և միւսն նորա օժանդակին, որ հոսում է Անապատին արևմտեան ձորով։

*Փոքր Բանանց Դամբլաձոր*. Գտնուում է Մեծ-Բանանց գիւղից մղոնաչափ վերև նոյն վտակի աջ կողմի բարձրութեան վերայ, ուր կայ աւերակ գիւղատեղի և կիսաւեր եկեղեցի, որի աւազանին վերայ. «Մեհրի ճան, տարան մ....»։ Մի կիսատ խաչարձանի վերայ. «Ես Դաւիթս կանգնեցի....»։

*Նահատակ*

Աւերակներիցս ներքև ձորի մէջ կայ մի մեծ քար, որի տակից բղխում է յորդ աղբիւր։ Քարիս արևմտահայեաց երեսին շինուած է հնուց մի խաչ, որ է ուխտատեղի։ Ամեն տարի շրջակայ գիւղերից խռնուում է այստեղ մեծ բազմութիւն աւագ չորեքշաբթի օրում, մանաւանդ բորոտութեամբ վարակուածներ, որք լողանալով աղբիւրումս բժշկուում են։

*Ճգնաւորի տեղ*. Նահատակիս հանդէպ ձորի ձախ ափումն է մի քարայր, որի մէջ—ասում են երկար ժամանակ ճգնած է ոմն ճգնազգեաց ճգնաւոր։

*Թագաւորաշէն կամուրջ*. Ջրաձորիս ստորոտում, Արութիւն վտակի վերայ կայ մի քարուկիր և հնաշէն կամուրջ, որի մասին, ասում են թէ շինած է Կիւրիկէ Թագաւորն։ Մի քանի քայլ վերև Խաչակապ գիւղացիք շինած են այլ նոր և գեղեցիկ կամուրջ, որի երկարութիւնն է 12 մետր, լայնութիւնն 4 մետր 50 սանթիմ։

Ժ. ՔԱՐՀԱՏ ԳԻՒՂ (Դաշքեասան). Հիմնուած է մի խոր ձորում, որի արևելեան, հարաւային և արևմտեան կողմերն պատած են բարձրագոյն սարեր. բնակիչք բնիկ. հողն ար-

Digitized by Google

քունի, ապառաժուտ և խիստ սակաւ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն ըստ Մեծ-Բանանց, անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 76, ար. 486, իգ. 393, ար. ծն. 20, իգ. 14, պսակ 9, ար. ննջ. 7, իգ. 5։

*Երկաթահանք, պղնձահանք եւ քարահանք* (41)

Արդէն խօսած եմք հանքերիս մասին իւր տեղումն. իսկ այստեղ միայն ասում ենք ջրաձորիս աջ ու ձախ կողմերն լի են երկաթի, պղպջատի, պղնձի և զանազան պատուական քարի հանքեր։ Մեծ-Բանանց բնակիչներն շարունակ գործածած են երկաթհանքերս մինչև անտառների վերայ տուրք կապելն, քանզի անմաքս եղած են անտառների փայտերն։ Հալած և շինած են գութանի խոփ, ձևիչ, ճամբարակ, արօրի խոփ, եռոտանի և առատ երկաթ։ Բայց անտառների վերայ տուրք դնելուց յետոյ այլ ևս խափանած են գործածութիւնը սակայն մեծ վնասներով։

*Խաչ-աղբիւր* (Խաչ-Բուլաղ), աւերակ գիւղ Հայոց, որ գտնուում է Քարհատի հարաւային կողմում։ Աւերակիս մէջ կայ մի նշանաւոր եկեղեցի [1]), շինուած սրբատաշ քարով 4 սիւների վերայ, որ ունի «ՌՁԾԹ.» թուականը։ Իսկ փոքր ինչ հեռի է հանգստարան։ Այժմ մահմետականք են բնակում գիւղումս, ուր կայ շուկայ և առուծախ է լինում՝ մահմետականներն ձմերանոցից ամարանոց չուելուց յետոյ։ Խաչաղբիւրից շատ հեռի չեն պատուական ամարանոցներն։

ԺԱ. ԿԻՐԱՆՑ ԳԻՒՂ. Հիմնուած է Քարհատի հիւսիս արևմտեան կողմում, Արութիւն վտակի հիւսիսային կողմի վերայ. բնակիչք բնիկ, հողն սեփական, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Աստուածածին, փայտաշէն, քահանան գալիս է Խաչակապ գիւղից։ Ծուխ 44, ար. 224, իգ. 223, ար. ծն. 11, պսակ 4, ար. ննջ. 3, իգ. 3։

*Կանգնեալ խաչ.*

Գիւղիս մօտ կայ այս անուամբ մի փոքր մատուռ, որի

[1]) Եկեղեցուցս փոքր ինչ ներքևից բղխում է մի յորդառատ աղբիւր, որ ունի մի խաչաձև աւազան, որից առած է Խաչաղբիւր անունը։

Digitized by Google

խորանի տակ ամփոփուած է ոմն պատուական անձի սուրբ մարմինն, որի մասին աւանդաբար ասում են թէ «Գարդման գաւառիս իշխող Խուրս իշխանի գերեզմանն է, որին պատկանում էին ամբողջ հանքերս»։ Մեծ ուխտատեղի է այս։ Մատրանս մօտ կայ և մի փոքրիկ վանք, մնացեալ խիստ հնուց, բայց այժմ վերնամասն փայտաշէն։

ԺԲ. ԽԱՉԱԿԱՊ ԳԻՒՂ. Հիմնուած է Կիրանցի հիւսիսային կողմում, մի առուակի ձախ կողմի վերայ։ Գիւղս եւ շրջապատուած է լեռներով. բնակիչք բնիկ. հողն արքունի, ապառաժուտ և նուազ արգիւնաբեր, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Աստուածածին, կամարակապ չորս սիւների վերայ, որ ունի մի փոքր զանգատուն, 18 մետր, 90 սանթիմ երկարութիւն, 12 մետր 28 սանթիմ լայնութիւն։

*Արձանագրութիւնն*. «Արդեամբ Խաչակապայ ժողովրդոց շինեցաւ 1650 ամի, նորոգեցաւ 1864 ամի»։ Դրան շուրջն. «Եկայք առ իս ամենայն . . . .»։

*Արձանագրութիւն Զանգատան*. «Արդեամբ շինեցաւ զանգակատունս 1864 ամի Վերտի Յարութիւնեան Տռուզեանց»։ Քահանայ մի։

Գիւղիս ստորոտում կայ մի անտաշ քարով շինուած մատուռ, որի մէջ ամփոփուած է ոմն սուրբ անձի մարմինն։ Մատուռս կոչուում է *Խաչ-Քցի*. գերեզմանիս վերայ վիճակ են ձգում երիտասարդներն և օրիորդներն։ Ահա *վիճակարկութիւնս* է Խաչ-Քցի կոչուելու պատճառն։

Համանման մատուռ, միջումն ճգնաւորի գերեզման, *ծիրանաւոր* անուանեալ, կայ գիւղիս միջում։ Երկու մատուռներս եւս ուխտատեղի են, երկոցունց ծածքն փայտեայ և երկու ամփոփեալների անուններն և անձնաւորութիւններն անյայտ։ Ծուխ 104, ար. 699, իգ. 631, ար. ծն. 30, իգ. 27, պսակ 20, ար. ննջ. 7, իգ. 5։

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՎԱՆՔ (1)

Հիմնուած է գիւղիս հիւսիսային կողմում, ոչ այնքան հեռի, մի գեղեցիկ, տեսարանաւոր և հարաւահայեաց սարա-

Digitized by Google

հարթի վերայ։ Ունի խաչաձև շինութիւն, երկու փոքր և մի աւագ խորան, մի կաթուղիկէ, տասն լուսամուտ, երկու խորհրդարան, մի դուռն, չափաւոր բարձրութիւն, 11 մետր երկարութիւն, 10 մետր 25 սանթիմ լայնութիւն և հիմնարկութեան սոյն թուականը ՆԼԸ. (989)։ Վանքս ունի և գաւիթ կառուցեալ երկու խաչաձև կամարների վերայ, երկարութեամբ 7 մետր 75 սանթիմ, լայնութեամբ 6 մետր 60 սանթիմ։ «Գաւիթս այս կառուցաւ ի վանահայրութեան Սամուէլ եպիսկոպոսի 1800 ամի»։ Ունի և զանգատուն «Զանգակատունս կառոյց Գանձակեցի Պօղոս Ամիրխանեանց ի 1856 ամի»։ Գաւթումս ամփոփուած են սուրբ տաճարիս ծառայող եպիսկոպոսների և վարդապետների մարմիններն. ինչպէս են Սամուէլ եպիս. Դատեանց, միւս Սամուէլ եպիս. Եփրեմ և Խաչատուր վարդապետներն են.։

Վանքումս կայ մեծագիր, մագաղաթեայ և ընտիր ձեռագիր մի աւետարան, ամբողջապէս գրուած գլխագրերով։ Ունի Յիսուս Քրիստոսի ծննդեան, մկրտութեան, յարութեան, ընթրեաց, աւետեաց, դժողքի աւերման, Աստուածածնայ ննջման և չորս աւետարանչաց ընտիր պատկերներն։ Ընտրելագոյն են պատկերներն, նկարներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն. հիանալի են տռհասարակ բոլոր գծագրութիւններն, անկեղծ ներկեր, փայլելուչ գոյներն և ամենաընտիր ոսկեզօծն։ Վերջապէս մի մագնիսական զօրութիւն, որ իրեն է քաշում այցելուաց ուշադրութիւնը, գեղարուեստի այն նրբագործութիւնն է, որի նմանն հազուագիւտ է հին ձեռագրաց մէջ։ Սակայն հարկ է յայտնել որ պահպանուած չէ խնամքով։ Սկզբում մանր գրերով բացատրուած է համեմատութեանց գործածութեան կերպի եղանակն և տուած գեղեցիկ տեղեկութիւններ չորս աւետարանչաց մասին։

Գրուած է Մատթէոսի վերջում.

«Յանուն առատապարգևին Աստուծոյ, որ միշտ ներգործէ յալարածո բարիս քաղցրութեան կամաց իւրոց։ Արդ որպէս յամենայն գարու, նոյնպէս և ի մերս նուազեալ ժամանակիս

յարոյց զքրիստոսասէր և զփառաւոր պարոնն զաւրհնեալն ի կանայս Ասփայ դուստր Տարսայիճին տեառն Սիւնեաց յազգէ Ուրպէլեանց, որ էր ամուսին Մեծ և փառաւոր իշխանաց իշխանին պարոն Գրիգորին։ Սա ամենայն բարեպաշտութեամբ զարդարեալ, զարդարեաց զանազան սպասուք և շինուածիւք զեկեղեցիս Հայաստանեայց, ստացաւ և սուրբ աւետարանս յարդար ընչից իւրոց և ընծայեաց ի սուրբ ուխտն Խադարի (Խաթրայ) վանս, որ է գերեզմանատուն մեծ իշխանացն ազգին Դոփեանց և ինքն կարճաւրեայ կենաւք փոխի մահուամբ յաշխարէս առ Քրիստոս և դնի ի Դամբանի 'ի նոյն 'ի վերասացեալ սուրբ ուխտն. իսկ ըստ մարմնոյ գլուխ նորին և այր մեծ իշխան Գրիգոր զարդարեալ պճնէ զսա ոսկւով և արծաթով ի յիշատակ հոգւոյ սուրբ ամուսնոյն իւրոյ Ասփային և յերկարութիւն կենաց իւր և քրիստոսընծայ զաւակաց իւրոց, որոց յիշատակն նոցա եղիցի աւրհնութեամբ»։

*Մարկոսի վերջում*. «Զմեղապարտ գծիչս զՏիրացու յիշեցէք ի Տէր»։ *Ղուկասի վերջում*. «Զմեծ և զամենաւրհնեալ պարոնաց Պարոն զԳրիգոր որդի Դոփին և զամենագովելի զբարեպաշտ ամուսին իւր զՊարոն Ասփայն զստացողք և զարդարիչք սուրբ աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս»։

*Յիշատակարանից*. «Ի ժամանակս և 'ի դարս աւուրց տիեզերակալութեան և արքայութեան բոլոր աշխարհաց ազգին Նետողաց, որ տիրէ 'ի ծովէն Պոնտոսի մինչև ցծովն Կազբից և յԵփրատ գետոյ մինչև յանկոյս լերանցն Կովկասու, որոց գլուխ և ինքնակալ կանն աշխարհակալ Խարպանդայ կոչեցեալ 'ի թվ. Հայոց ՉԿԱ.։ Յայսմ ժամանակի ծագեցաւ ոմն մեծ և երևելի տոհմային պայազատութեամբ ի ցեղէ վեհից, ի զարմէ դիւցազանց, 'ի դասակարգէ քաջաց, 'ի գնդէ գովելեաց Գրիգոր մեծ իշխան Հայոց, տէր և պարոն Փոքր Սիւնեաց, Հանդաբերդոյ և Ականայ և Բարձր (Մռաւ և Գեղամեան մեծ լեռնաշղթան) ծովակին Գեղամայ, Սոթից մինչև ի Տաղուագայ, ամուսնացեալ ընդ դստեր Տարսայիճ իշխանին ընդ ամենաւրհնեալ պարկեշտ տիկնոջն Ասփայի։ Ծնանի 'ի նմանէ ուստերս

Digitized by Google

և դստերս. իսկ զմինն, որում անուն էր Սարգիս, Նուիրէ Քրիստոսի 'ի ստնդեայ հասակին, որ արժանաւորութեամբ 'ի կոչմանէ Հոգւոյն էանց ընդ ամենայն աստիճանս քահանայութեան՝ հասեալ ի պատիւ եպիսկոպոսութեան Խաչենոյ, ընդ մարմնական տէրութեան. զոր ունէր ի հարանց ստացեալ, ընգալաւ և զհոգևոր պետութիւն։ Արդ յայսմ ամի, որ էր թիւս ՉԿ. փոխեցաւ յաշխարհէս Ասփայն առ Քրիստոս և եդաւ ի շիրմի ի սուրբ ուխտն Խադարի վանս, վասնորոյ և մեծ Պարոն Գրիգոր Նուիրէ գերեզմանի նորա ընծայս յոլով, գեղորայս, այգիս, և անդաստանս և զարգարէ զսուրբ ուխտն զանազան սպասուք և հանդերձիւք, ընդ որս պճնեալ շքեղացոյց և զսուրբ աւետարանս [1]) ոսկենկար կազմածով և շնորհեաց գերեզմանի նորա և իւր Նախնեացն յիշատակ, որում բարձաւղք և ընթերցողք սուրբ աւետարանիս յիշեցէք զԱսփայն 'ի Քրիստոս և դուք յիշեալ լիջիք ի Տեառնէ»։ Ապա յականէ յանուանէ յիշուած են այն գաւառների և բերդերի անունները, որք սեփական ժառանգութիւն են Գրիգոր իշխանիս Դոփեանց։

«Եւ գաւառք մեր յանուանէ այս է Սոթ, Գլուխ, և Բերդաձոր և Ծոխանց, Հոսաբակս, Ատրենիս, Կալեր, Ուռեաց Փոր և Խորուագետ, Դվալանոց, Էրքն Մափռելանց և այլ իւրեանց միջոց Մազրովն ի մեր Նախնեաց մնացեալ հայրենիքս է իւրեանց չորս սահմաններովն ստոյգ և ճշմարիտ գրեալ 'ի յաւետարանիս»։

Վանքս ունի ամուր շրջապարիսպ, ութ խուց, պարտէզ, մեղուանոց, կամուրջներ և պատուական աղբիւր։ Իմ շրջած և տեսած բոլոր վանքերից պայծառ է վանքս։ Նորոգուած է վանքս, գաւիթն շրջապարիսպն, խուցերն, և Նորենորոյ շինուած կամուրջներ։ Այս բոլոր Նորոգութիւնները, պայծառութիւնը և վերակենդանութիւնը պարտական ենք Գանձակեցի մեծ. Ներսէս-բէկ Աբրահամեան Տէր-Ներսիսեանցին [2])։

ԺԳ. ՀԱՐՑՀԱՆԳԻՍՏ ԳԻՒՂ. (Ձովգառ) Հիմնուած Մըրգնաբերդ կոչուած սարի հիւսիս արևմտեան կողմում, որ

[1]) Այժմ զարդարանք չկայ աւետարանիս վերայ։
[2]) Չկարողացանք իմանալ քանի օրավար է վանքիս հողն։

թարգմանչաց անապատի հիւսիսային կողմումն է, մի բարձր և տեսարանաւոր սարահարթի վերայ, որի ետև կայ մի լեռ [1]), բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի լեռնային, բայց հացաւէտ· տեղական բերքերն նոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն, սքանչելի՛ տեսարանն, եկեղեցին Սուրբ Յովհաննէս, կառուցեալ չորս սիւների վերայ, որ ունի իւր հարաւային կողմում գաւիթ և զանգատուն· քահանան գալիս է Խաչակապ գիւղից։ Ծուխ 94, ար· 246, իգ· 226, ար· ծն· 22, իգ· 27, պսակ 15, ար· ննջ· 15, իգ· 12։

Եկեղեցումս կայ մի սպիտակ փոքր և հին խաչարձան, որ բերուած է Մլգնաբերդից, որ զարմացնում է այցելուները իւր գեղարուեստի նրբագործ քանդակներով, որ ունի· «Թվ. ՈԴ. Անուամբն Աստուծոյ ես Մարգարիտ դուստր Ուխտիկայ կանգնեցի զսուրբ նշանս 'ի փրկութիւն հոգւոյն Զարգմբերին և Զարգագունին, Մխիթարայ և Կանանին. որք յաղաւթըս յիշէք և զԱտոմ, որ գործող էր խաչիս»։

Կայ և մի ձեռագիր աւետարան, մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ պատկերներն, ծաղիկներն, նախշերն և թռչնագրերն։ *Յիշատակարանից*· «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի թւականութեանս Հայոց 'ի ՈՀ. 'ի մայրաքաղաքս Տարսոն, յորում ամենայն ոք տատանէր,.. յետ մահուն աստուածասէր թագաւորին մերոյ Լևոնի· վշտատես ազգս Հայոց վշտանայր· չարն տեղի տայր, որոշեցան ոմանք 'ի սուրբ ուխտէն և ի միմեանց միաբանութենէ, և որպէս է սովորութիւն ազգիս՝ ամենայն ոք զինքն յառաջ կոչէր և չհաւանեալ միմեանց՝ լինէր արեան ճապաղիս 'ի բազում տեղիս· և գաւառք և գեօղք քանդէին և եկեղեցիք աւերէին։ Ի յայսմ դառն և ի չփոթման ժամանակիս աւարտեցի զգիրս սուրբ։ Աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և լուսաւորիք յաստուածային բանիցս, յիշեսջիք... զնախասացեալ տիկին Առիւծ և զբարի ծնողն իւր զՇուշան

[1]) Սարիս վերայ կայ կռապաշտ և քրիստոնեայ տարբերից մնացած շատ հանգիստներ· դուցէ այս պատճառաւ կոչուած է Հարց-հանգիստ։

Digitized by Google

Թադուհի (Լևոն Թագաւորին).... և զմեղապարտ գրիչս գԴրիգոր սարկաւագ»։ Ունի նաև այլ յիշատակարաններ, որք գրուած են հետզհետէ։

Ա. Վերջին երեսում ՉԽԹ. թուին.
Բ. ,, ,, երկրորդ անգամ ստացած է Ծաքեցի Զալալի խօջէն ՊՁԴ. թվին.
Գ. Սկզբում ՌԽԸ. թվին.
Դ. ,, ՌԾԵ. ,,

## ՄԼՁՆԱԲԵՐԴ ՎԱՆՔ (Մաձնաբերդ վանք)

Հարցհանգիստ գիւղից հարաւ արևելեան հանդէպ, ոչ այնքան հեռի, արձանացած է մի սար, որ բոլորովին առանձնացած է իւր չորս կողմերից և բարձրացած ձուաձև։ Սարիս կատարն 12 կալաչափ հարթակ է, որի գրեթէ մէջ տեղում, նախկին վանքի տեղում, շինուած է երկու երկաթակապ կամարների վերայ մի փոքր եկեղեցի, որ ունի մի դուռն, երկու լուսամուտ, մի զանգատուն, 12 մետր 12 սանթիմ երկարութիւն, 6 մետր 72 սանթիմ լայնութիւն։ Դռնակալին. «Հնադարեան ուխտատեղիս յանուն Սուրբ Սարգսի որ է Մլձնաբերդ, հիմնովին նորոգեց Գանձակեցի Սողոմոն Յար. Նալչաղաիեանցն ծախիւք իւրովք ի յիշատակ իւր կնոջն Բալախանումի, որդւոյն Լևոնի և համայն ննջեցելոց իւրոց 'ի 1891 ՌՅԽ. ամի»։ Վանքաբարձ սարիս գագաթի եզերքներով պարսպուած է եղել վաղուց ամրագին պատերով իբրև անմերձենալի ամրոց, որ այժմ կիսաւեր է։ Պարսպից ներսում կան շատ գերեզմաններ և միաբանութեան խուցերի մեծ աւերակներ, (միայն կանգուն է երկու սենեակ)։ Հանգստարանս ծածկուած է կաղնի, տխկի, ճրա տանձի և այլ ծառերով։

Վսկաթել (Ոսկեթել) մատուռ. Գտնուում է գիւղից հիւսիսային անդնդախոր ձորում, որի միջով հոսում է Հարցհանգիստ առուակն։ Փոքրիկ մատուռ է, ձեղունն փայտաշէն, որի մասին ոչ ինչ չկայ գրաւոր. միայն աւանդութեամբ ասում են թէ «Մի Վսկաթել կոյս աղջիկ նահատակուած է այստեղ»։ Մատրանս ստորոտից բղխում է մի նշանաւոր աղբիւր։



Digitized by Google

ի յայս ամի սաստիկ մահ յերկիրս Վերին Զակամայ, որ օր մի 'ի տան միում եօթն հոգի վախճանեցաւ… ի հայրապետութեան տեառն Պետրոսի Սրբազան Կաթուղիկոսին Սրբոյ Գանձասարայ, ի առաջնորդութեան Նահանգիս Մինաս վարդապետի և ի տէրութեան Պարսից Շահ Սուլէյմանին ի յերկիրս Վերին Զակամայ 'ի գեօղս որ կոչի Սուլտանեցիք ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս ի խնդրոյ բարեմիտ Եւային և այրն (առն) իւրոյ Ոսկանին…։ Արդ ես Եւայս ստացայ զայս աւետարանս և ետու վախմ ի դուռն Ղարամուրատ Կուսանաց անապատի Սուրբ Աստուածածնի»։ Հուսկ յետոյ գրուած է այլ գրչից. «Զվերջին ստացող զսուրբ աւետարանս… Մէլիք Սարգիս և ծնողացն հայրն իմոյ Ովանէսն… Թվին ՌՃՀԸ»։

Ժ. Աւետարան Թղթեայ, միջակ դիրքով, առանց պատկերի, ամենայն ինչ հասարակ։ Յիշատակարանից. «'Ի ՌՃԱ. Թուականիս Հայոց և ի յամսեանն մարտի ԻԱ. ալուհացից պահոց առաջին շաբաթին երկուշաբաթ օրն եղև սկիզբն գրութեան սուրբ աւետարանիս և կատարեցաւ. ապրիլ ամսոյ ԺԵ. յաւուր մեծի հինգշաբթին [1]… արդ գրեցաւ սա ի յերկիրս Զակամ ի դիւղս Մէլիքզատայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Սուրբ Թովմայ և այլ սուրբ նահատակի, որ աստ է, ձեռամբ անարուեստ և փծուն դրչի Յակովբայ յետնեալ քահանայի»։ Աւետարանս ստացած է Կիրակոս երէցն, ապա Մէլիք Ովանէս, «Արդ ես Մէլիք Ովանէսս ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ և ծնողացն․․ հայրն Միրզախան, և որդիքն իմ Մէլիք Մաթէոսն»։ Եւ ապա գրած են Մէլիք-Մաթէոսի թոռներն. «Արդ ես Մէլիք Մաթէոսի թոռն Աղաջանս և Սարգիսն ի թուին Հայոց ՌՄԽԴ. ն էր, որ Ջէզըք (Ներքինի Աղա-Մամատ) Շահն Պարսից եկն ի քաղաքն Թիփլիզ Սուրբ Խաչի պահոց երեքշաբաթի օրն, առաւ, աւերեց և ցիրուցան արար զամենայն, կոտորեաց աւելի քան ԺԲՌ. (12000) մարդ և զայր ու զկին ամեն

[1]) Սխալ է երեւում «մարտի ԻԱ.» ամսաթիւն, քանզի երբ աւագ հինգշաբթի օրն լինի ապրիլ. 15, Բշ. (Մեծի պահոց) Ա. օրն եղած կը լինի մարտի (Ա.) վասնորոյ գրած է գուցէ Մ ա ր տ ի 'ի Ա.։

կերի արարին և բազում նշխարս սրբոց և զսպաս եկեղեցեաց աւար առին, դարձան յետս նոյն ամի։ Երկրորդ Թուին (ՌՄԽԵ.— 1796) մեծի պահոց միջոցն Թիֆլիզու Էրէկլայ (Հերակլ) արքայն վրաց եկն 'ի վերայ Գանձակու հանդերձ Շամշադինու զօրօք և Շուշու Իբրահիմ խանն հանդերձ Լազկիւն. ուղղոյս իշխող Ջաւատ խանն էր. մազապուրծ եղեալ ի Ղալայն բազում պատերազմ արարին, ոչ կարացին յաղթել նմա. հրաման արարեալ եկն 'ի սար գիւղօրայս Սուլթան Շամշադին զօրօք իւրովք և սուտ երդմամբ հանեալ զմեզ կերի վարեցին և սրախողխող արարին և մնացելոցն այսր և անդր ընծանալով ոչ ոչ գտաք հանգիստ ուրեք մերոց։ Յետոյ զօրքն Վրաց հանդերձ լազկիւն եկն և զմնացեալսն կերի արարին և Բանանց գիւղս ամեն այրեցին հրով։ ԽԶ. (ՌՄԽԶ.—1796) Թվին սով և մահն եկն ի վերայ մեր. Կորեկ ալիւրի լիտրն (18 ֆունտ) Թ. ապասի դժուար գտանելով, վասն որոյ ուրացեալ այր զկին և կին զայր իւր, հայր 'ի որդոյ և որդի 'ի հօրէ, մայր 'ի դստերէ և դուստր ի մօրէ իւրմէ բաժանեալ, ոչ գտանէինք հանգիստ ուրեք մերոց. զի կերակուր մեր էր կաղինն և կաղնի քըէպ (կեղևն) և մեր առեալ զայս սուրբ աւետարանս մեծաւ զգուշութեամբ և բազում տառապանօք, չնորհօք սուրբ Հոգոյն հասուցաք մինչև ցայսօր։ Իսկ ի Թվին մերոյ ՌՄԿ. էր, եկն ի վերայ մեր ժանտամահն. առաջ Ըռուսի մէջն անկաւ, շատ կոտորեց, յետոյ Թուրք ազգի մէջն անկաւ, յետոյ Քիլիսա-Քեանդըն [1]) և Նորաշէնն [2]) անկաւ, յետոյ սար կեղօրայք և Բանանց կիւղս անողորմ կոտորեց. շատ մարդ առանց կին մնաց, և շատ կին առանց այր, շատն առանց որդի և շատն առանց դուստր։ բազումք առանց քահանայի Թաղեցին, բազում տունք աւեր մնացին։ Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Սոյն ժամանակ Դաւիթ վարդապետն սաղն (կենդանի մնացածները) վեր առաւ գնաց Քիճիք-Բանանց [3]) որ է Դամ-

[1]) Մինչև ցայսօր Քիլիսա-Քեանդ է կոչուում Գանձակի Հայոց Ս. Յովհաննէս եկեղեցու թաղն։

[2]) Նոյն քաղաքի Հայոց հիւսիսային թաղն։

[3]) Փոքր-Բանանց այժմ աւերակ գիւղն կայ՝ Բանանց գիւղից վերև ԱրուՊիւնի վտակի և Քարհատի առուի խառնուրդի հարաւային լանջի վերայ։

պըլաձոր, որ կնաց կումերն, որն կնաց պաղերն, փոքր ինչ հանդարտեաց ցաւն. վա՜յ մեզ, իմացանք, թէ պրծանք ցաւէն. աստուածաաաաստ բարկութիւննւ հասեալ, գազան մի աւերեալ և բազում վնաս արար և քանի մի անձինք չարաչար մեռան . . . սոյն ժամանակիս նորոգել տուինք սուրբ աւետարանս յիշատակ մեզ և ծնողաց մերոց, մեր պապ Մէլիք-Մաթէոսին.։ . . գրեալ 'ի մատեանս ՌՄԿԳ. 'ի տիրապահ գիւղս Բանանց ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եկեղեցոյն։ ՌՄԾԲ. ին Ռուսըն եկաւ Կանջու վերայ, մէկ ամիս նստաւ, մէկ սհաթումն առաւ. սհաթումն Գռ. (3000) մարդ կոտորեց»։

ԺԱ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, անյիշատակարան, անյայտ գրողի անունն և ամենաստոր չորս աւետարանչաց պատկերներն և ամենայն ինչ։

ԺԲ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, ամենայն մասամբ ստոր։ Յիշատակարանից. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն ժամանակիս 'ի լաւ ընտիր օրինակէ 'ի-յերկիր Վերին Զակամ 'ի Ղարամուրատի Հարանց անապատիս ձեռամբ մեղօք զառածեալ Աւետիս աբեղայի, որ եմ յերկրէն Տաւուշու 'ի գեղջէն Քամալու. հ. ի թուականիս Հայոց ՌՃԻԸ։»։

ԺԳ. Աւետարան փոքրադիր, գրուած գեղեցիկ թղթի վերայ, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ։ Յիշատակարանից. Աւրհնեալ է Աստուած, թվին ՌՃԺԹ. յուլիսի Ե. աւարտ եղաւ»։ «Արդ ես Կարմիր Ծատուրենց Ջուղայեցի մեղապարտ Աւետիքս եկի ի քաղաքն Տփխիս . . . զսուրբ աւետարանս եառւ յիշատակ ի գուռն Բեդղահեմու Սուրբ Աստուածածնին թվին ՌՃԻՋ.»։ Ապա գրուած է այլ գրչից. «Գրեցաւ թուականիս ՌՄԽԹ. յունվարի Ե. որ ես Սարգիսս Կանջայու ի գիւղն որ կոչի Գետաշէն, ի ժամանակին Ջաւատ խանն էր»։ Աւետարանիս սկզբում յայտնուած է, որ նոյն Գետաշէնցին յիշատակ տուած է. աւետարանս Բանանց եկեղեցուն։

Գիւղումս կայ տղայոց միդասեան ուսումնարան, ուր ուսանում են 55 աշակերտ, թոշակատու 48, ձրիավարժ 7, միամեայ ռոճիկ ուսուցչի 350 րուբլի։

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԱՆԱՊԱՏ.

Շինուած է Բանանց գիւղին հարաւային հանդէպ, Արուլթիւն վտակի աջ կողմում և կլորած առուակի աջ ափի բարձրութեան վերայ։ Անապատս, որի տեղն գեղեցիկ հարթակ է, կառուցեալ է մի կամարի վերայ անտաշ քարով, որ ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և մի աւագ, չորս նեղ լուսամուտ, երկու դուռն—հարաւից և արևմուտքից, 15 մետր 55 սանթիմ երկարութիւն 9 մետր 25 սանթիմ լայնութիւն բացի գաւթից։ Հարկ է յայտնել, որ ճաքած է գագաթնագծի ուղղութեամբ երկար։

*Արևմտեան դրան վերայ.* «Շինեց սուրբ եկեղեցիս Միլխաւճայ Ազիզն թվ. ՌՀԹ.»։ «Սուրբ խաչս Ովանէսին»։ *Նոյն դրան հիւսիսային սեմի վերայ.* «Սուրբ խաչս Փարին, Տահումին»։ «Սուրբ խաչս բարեխաւս Հռումսիմին ՌՀԸ.»։

Ունի և մի փոքր գաւիթ և զանգատուն հարաւային դրան վերայ, որի մօտ մի տապանաքարի վերայ. «Այս է տապան Տէրունց Յարութիւնի որդի Գաբրիէլ եպիսկոպոսին, 60 ամ վանահայր էր սա անապատիս, 96 ամեայ էր որ փոխեցաւ առ Քրիստոս 18$\frac{2}{13}$31 ՌՄԳ.»։ Զանգատան գետնայարկի հիւսիսային ոտքի հարաւահայեաց ճակատին. «Ես Պաղտասարի որդի Մահտեսի Ներսէսս և Օսէփս տվինք սուրբ անապատիս ա. թաւման վախմ. սորա տվին մեզ տարեն դ. ժամ. ենթէ ոք խափանի, պարտական լինի առաջի ատենին Քրիստոսի. թվ. ՌԾԽԴ.»։ Զանգակին վերայ. «Յիշատակ է Ապովի որդի Խոճայ Ղազարին ի դուռն Բանանցայ սուրբ Անապատին թվ. ՌԾԺԶ.»։ Անապատիս գլխին, արևելեան կողմի գագաթնագծի վերայ գրուած է մի քառակուսի քար, որի չորս երեսին քանդակուած է չորս խաչ և մէն մի խաչի տակ մի մի անուն, որք երևի թէ չորս անձինք կամ չորս եղբարք եղած են նուիրաքերներն. ահա «Սուրբ խաչս բարեխօս տէր Եղիշէին, Անտոնին, Գրիգորին և Եղիսէին»։ Իսկ արևմտեան գագաթնագծի վերայ եղածին գրուած է միայն «Տէր Եղիա»։

Անապատիս արևելեան կողմում, շրջապարսպի ներսում

Digitized by Google

կան էնն թաղակապ խուցեր, որք ցարդ մնում են անվնաս և անայլատիս կալն: Իսկ արևմտեան հանդէպ ջրաձորի ձախ ափի բարձրութեան վերայ կայ մի աւերակ մատուռ, որի մէջ դրուած են ութ հնաձև քարեայ խաչեր: Անապատս ունի ընկուզի շատ ծառ էր հարաւային ձորում: ամայի անապատ և անմարդաբնակ:

*Երկու կամուրջ*, յորոց մին շինուած է քարուկիր և գեղեցիկ Արութիւն վտակի վերայ և միւսն նորա օժանդակին, որ հոսում է Անապատին արևմտեան ձորով:

*Փոքր Բանանց Դամբլաձոր*. Գտնուում է Մեծ-Բանանց գիւղից մղոնաչափ վերև նոյն վտակի աջ կողմի բարձրութեան վերայ, ուր կայ աւերակ գիւղատեղի և կիսաւեր եկեղեցի, որի աւազանին վերայ. «Մեհրի ճա՛ն, տարան մ՛....»: Մի կիսատ խաչարձանի վերայ. «Ես Դաւիթս կանգնեցի....»:

*Նահատակ*

Աւերակներիցս ներքև ձորի մէջ կայ մի մեծ քար, որի տակից բղխում է յորդ աղբիւր: Քարիս արևմտահայեաց երեսին շինուած է հնուց մի խաչ, որ է ուխտատեղի: Ամեն տարի շրջակայ գիւղերից խռնուում է այստեղ մեծ բազմութիւն աւագ չորեքշաբթի օրում, մանաւանդ բորոտութեամբ վարակուածներ, որք լողանալով աղբիւրումս բժշկւում են:

*Ճգնաւորի տեղ*. Նահատակիս հանդէպ ձորի ձախ ափումն է մի քարայր, որի մէջ—ասում են երկար ժամանակ ճգնած է ոմն ճգնազգեաց ճգնաւոր:

*Թագաւորաշէն կամուրջ*. Ջրաձորիս ստորոտում, Արութիւն վտակի վերայ կայ մի քարուկիր և հնաշէն կամուրջ, որի մասին, ասում են թէ շինած է Կիւրիկէ թագաւորն: Մի քանի քայլ վերև Խաչակապ գիւղացիք շինած են այլ նոր և գեղեցիկ կամուրջ, որի երկարութիւնն է 12 մետր, լայնութիւնն 4 մետր 50 սանթիմ:

Ժ. ՔԱՐՀԱՏ ԳԻՒՂ (Դաշքեասան). Հիմնուած է մի խոր ձորում, որի արևելեան, հարաւային և արևմտեան կողմերն պատած են բարձրագոյն սարեր. բնակիչք բնիկ. հողն ար-

քունի, ապառաժուտ և խիստ սակաւ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն ըստ Մեծ-Բանանց, անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 85. եկեղեցին Սուրբ Աստուածածին, փայտաշէն, քահանայ մի: Ծուխ 76, ար. 486, իգ. 393, ար. ծն. 20, իգ. 14, պսակ 9, ար. ննջ. 7, իգ. 5:

*Երկաթահանք, պղնձահանք եւ քարահանք* (41)

Արդէն խօսած եմք հանքերիս մասին իւր տեղումն. իսկ այստեղ միայն ասում ենք ջրաձորիս աջ ու ձախ կողմերն լի են երկաթի, պղպջատի, պղնձի և զանազան պատուական քարի հանքեր: Մեծ-Բանանց բնակիչներն շարունակ գործածած են երկաթահանքերս մինչև անտառների վերայ տուրք կապելն, քանզի անմաքս եղած են անտառների փայտերն: Հալած և շինած են գութանի խոփ, ձևիչ, ճամբարակ, արօրի խոփ, եռոտանի և առատ երկաթ: Բայց անտառների վերայ տուրք դնելուց յետոյ այլ ևս խափանած են գործածութիւնը սակայն մեծ վնասներով:

*Խաչ-աղբիւր* (Խաչ-Բուլաղ), աւերակ գիւղ Հայոց, որ գտնուում է Քարհատի հարաւային կողմում: Աւերակիս մէջ կայ մի նշանաւոր եկեղեցի [1]), շինուած սրբատաշ քարով 4 սիւների վերայ, որ ունի «ՌԺԾԹ.» թուականը: Իսկ փոքր ինչ հեռի է հանգստարան: Այժմ մահմետականք են բնակում գիւղումս, ուր կայ շուկայ և առուծախ է լինում՝ մահմետականներն ձմերանոցից ամարանոց չուելուց յետոյ: Խաչաղբիւրից շատ հեռի չեն պատուական ամարանոցներն:

ԺԱ. ԿԻՐԱՆՑ ԳԻՒՂ. Հիմնուած է Քարհատի հիւսիս արևմտեան կողմում, Արութիւն վտակի հիւսիսային կողմի վերայ. բնակիչք բնիկ, հողն սեփական, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Աստուածածին, փայտաշէն, քահանան գալիս է Խաչակապ գիւղից: Ծուխ 44, ար. 224, իգ. 223, ար. ծն. 11, պսակ 4, ար. ննջ. 3, իգ. 3:

*Կանգնեալ խաչ.*

Գիւղիս մօտ կայ այս անուամբ մի փոքր մատուռ, որի

[1]) Եկեղեցուցս փոքր ինչ ներքևից բղխում է մի յորդառատ աղբիւր, որ ունի մի խաչաձև աւազան, որից առած է Խաչաղբիւր անունը:

խորանի տակ ամփոփուած է ումն պատուական անձի սուրբ մարմինն, որի մասին աւանդաբար ասում են թէ «Գարդման կաւառիս իշխող Խուրս իշխանի գերեզմանն է, որին պատկանում էին ամբողջ հանքերս»։ Մեծ ուխտատեղի է այս։ Մատրանս մօտ կայ և մի փոքրիկ վանք, մնացեալ խիստ հնուց, բայց այժմ վերնամասն փայտաշէն։

ԺԲ. ԽԱՉԱԿԱՊ ԳԻՒՂ. Հիմնուած է Կիրանցի հիւսիսային կողմում, մի առուակի ձախ կողմի վերայ։ Գիւղս ևս շրջապատուած է լեռներով. բնակիչք բնիկ. հողն արքունի, ապառաժուտ և նուազ արդիւնաբեր, ամենայն ինչ նոյն, եկեղեցին Սուրբ Աստուածածին, կամարակապ չորս սիւների վերայ, որ ունի մի փոքր զանգատուն, 18 մետր, 90 սանթիմ երկարութիւն, 12 մետր 28 սանթիմ լայնութիւն։

*Արձանագրութիւնն*. «Արդեամբ Խաչակապայ ժողովրդոց շինեցաւ 1650 ամի, նորոգեցաւ 1864 ամի»։ Դրան շուրջն. «Եկայք առ իս ամենայն . . . .»։

*Արձանագրութիւն Զանգատան*. «Արդեամբ շինեցաւ զանգակատունս 1864 ամի Վերտի Ցարութիւնեան Տուզեանց»։ Քահանայ մի։

Գիւղիս ստորոտում կայ մի անտաշ քարով շինուած մատուռ, որի մէջ ամփոփուած է ումն սուրբ անձի մարմինն։ Մատուռս կոչւում է *Խաչ-Քցի*. գերեզմանիս վերայ վիճակ են ձգում երիտասարդներն և օրիորդներն։ Ահա *վիճակարկութիւնս* է Խաչ-Քցի կոչուելու պատճառն։

Համանման մատուռ, միջումն ճգնաւորի գերեզման, *ծիրանաւոր* անուանեալ, կայ գիւղիս միջում։ Երկու մատուռներս ևս ուխտատեղի են, երկոցունց ծածքն փայտեայ և երկու ամփոփեալների անուններն և անձնաւորութիւններն անյայտ։ Ծուխ 104, ար. 699, իգ. 631, ար. ծն. 30, իգ. 27, պսակ 20, ար. ննջ. 7, իգ. 5։

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՎԱՆՔ (1)

Հիմնուած է գիւղիս հիւսիսային կողմում, ոչ այնքան հեռի, մի գեղեցիկ, տեսարանաւոր և հարաւահայեաց սարա-

Digitized by Google

հարթի վերայ։ Ունի խաչաձև շինուածք, երկու փոքր և մի աւագ խորան, մի կաթուղիկէ, տասն լուսամուտ, երկու խոր-հրդարան, մի դուռն, չափաւոր բարձրութիւն, 11 մետր երկարութիւն, 10 մետր 25 սանթիմ լայնութիւն և հիմնար-կութեան սոյն թուականը ՆԼԸ. (989)։ Վանքս ունի և գա-ւիթ կառուցեալ երկու խաչաձև կամարների վերայ, երկա-րութեամբ 7 մետր 75 սանթիմ, լայնութեամբ 6 մետր 60 սանթիմ։ «Գաւիթս այս կառուցաւ ի վանահայրութեան Սա-մուէլ եպիսկոպոսի 1800 ամի»։ Ունի և զանգատուն «Զանգա-կատունս կառոյց Գանձակեցի Պօղոս Ամիրխանեանց ի 1856 ամի»։ Գաւթումս ամփոփուած են սուրբ տաճարիս ծառայող եպիսկոպոսների և վարդապետների մարմիններն. ինչպէս են Սամուէլ եպիս. Դատեանց, միւս Սամուէլ եպիս. Եփրեմ և Խաչատուր վարդապետներն են.։

Վանքումս կայ մեծագիր, մագաղաթեայ և ընտիր ձե-ռագիր մի աւետարան, ամբողջապէս գրուած գլխագրերով։ Ունի Յիսուս Քրիստոսի ծննդեան, մկրտութեան, յարութեան, ընթրեաց, աւետեաց, դժողքի աւերման, Աստուածածնայ ննջման և չորս աւետարանչաց ընտիր պատկերներն։ Ընտրե-լագոյն են պատկերներն, նկարներն, նախշերն, ծաղիկներն և թռչնագրերն. հիանալի են առհասարակ բոլոր գծագրու-թիւններն, անկեղծ ներկեր, վայելուչ գոյներն և ամենաըն-տիր ոսկեզօծն։ Վերջապէս մի մագնիսական զօրութիւն, որ իրեն է քաշում այցելուաց ուշադրութիւնը, գեղարուեստի այն նրբագործութիւնն է, որի նմանն հազուագիւտ է հին ձեռագրաց մէջ։ Սակայն հարկ է յայտնել որ պահպանուած չէ խնամքով։ Սկզբում մանր գրերով բացատրուած է համե-մատութեանց գործածութեան կերպի եղանակն և տուած գե-ղեցիկ տեղեկութիւններ չորս աւետարանչաց մասին։

Գրուած է Մատթէոսի վերջում.

«Յանուն առատապարգևին Աստուծոյ, որ միշտ ներգործէ յալարածս բարիս քաղցրութեան կամաց իւրոց։ Արդ որպէս յամենայն դարու, նոյնպէս և ի մերս նուազեալ ժամանակիս

յարոյց զքրիստոսասէր և զփառաւոր պարոնն զաւրհնեալն ի կանայս Ասփայ դուստր Տարսայիճին տեառն Սիւնեաց յազգէ Ուրպէլեանց, որ էր ամուսին Մեծ և փառաւոր իշխանաց իշխանին պարոն Գրիգորին։ Սա ամենայն բարեպաշտութեամբ զարդարեալ, զարդարեաց զանազան սպասուք և շինուածիւք զեկեղեցիս Հայաստանեայց, ստացաւ և սուրբ աւետարանս յարդար ընչից իւրոց և ընծայեաց ի սուրբ ուխտն Խագաբէ (Խաթրայ) վանս, որ է գերեզմանատուն մեծ իշխանացն ազգին Դոփեանց և ինքն կարճաւրեայ կենաւք փոխի մահուամբ յաշխարհէս առ Քրիստոս և դնի ի Դամբանի 'ի նոյն 'ի վերասացեալ սուրբ ուխտն. իսկ ըստ մարմնոյ գլուխ նորին և այր մեծ իշխան Գրիգոր զարդարեալ պճնէ զսա ոսկւով և արծաթով ի յիշատակ հոգւոյ սուրբ ամուսնոյն իւրոյ Ասփային և յերկարութիւն կենաց իւր և քրիստոսընծայ զաւակաց իւրոց, որոց յիշատակն նոցա եղիցի աւրհնութեամբ»։

*Մարկոսի վերջում.* «Զմեղապարտ դծիչս զՏիրացու յիշեցէք ի Տէր»։ *Ղուկասի վերջում.* «Զմեծ և զամենաւրհնեալ պարոնաց Պարոն զԳրիգոր որդի Դոփին և զամենագովելի զբարեպաշտ ամուսին իւր զՊարոն Ասփայն զստացօղք և զարդարիչք սուրբ աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս»։

*Յիշատակարանից.* «Ի ժամանակս և 'ի դարս աւուրց տիեզերակալութեան և արքայութեան բոլոր աշխարհաց ազգին Նետողաց, որ տիրէ 'ի ծովէն Պոնտոսի մինչև ցծովն Կազբից և յԵփրատ գետոյ մինչև յանկոյս լերանցն Կովկասու, որոց դըլուխ և ինքնակալ կանն աշխարհակալ Խարպանդայ կոչեցեալ 'ի Թվ. Հայոց ՉԿԱ։։ Յայսմ ժամանակի ծագեցաւ ոմն մեծ և երևելի տոհմային պայազատութեամբ ի ցեղէ վեհից, ի զարմէ դիւցազանց, 'ի դասակարգէ քաջաց, 'ի դնդէ զօրելեաց Գրիգոր մեծ իշխան Հայոց, տէր և պարոն Փոքր Սիւնեաց, Հանդաբերդոյ և Ականայ և Բարձր (Մռաւ և Գեղամեան մեծ լեռնաշղթան) ծովակին Գեղամայ, Սոթից մինչև ի Շաղուագայ, ամուսնացեալ ընդ դստեր Տարսայիճ իշխանին ընդ ամենաւրհնեալ պարկեշտ տիկնոջն Ասփայի։ Ծնանի 'ի նմանէ ուստրս

Digitized by Google

և դստերս. իսկ զմինն, որում անուն էր Սարգիս, Նուիրէ Քրիստոսի 'ի սողդեայ հասակին, որ արժանաւորութեամբ 'ի կոչմանէ Հոգւոյն էանց ընդ ամենայն աստիճանս քահանայութեան՝ հասեալ ի պատիւ եպիսկոպոսութեան Խաչենոյ, ընդ մարմնական տէրութեան. զոր ունէր ի հարանց ստացեալ, ընգալաւ և զհոգևոր պետութիւն։ Արդ յայսմ ամի, որ էր թիւս ՉԿ. փոխեցաւ յաշխարհէս Ասփայն առ Քրիստոս և եդաւ ի շիրմի ի սուրբ ուխտն Խադարի վանս, վասնորոյ և մեծ Պարոն Գրիգոր Նուիրէ գերեզմանի նորա ընծայս յոլով, գեղորայս, այգիս, և անդաստանս և զարդարէ զսուրբ ուխտն զանազան սպասուք և հանդերձիւք, ընդ որս պճնեալ շքեղացոյց և զսուրբ աւետարանս [1]) ոսկենկար կազմածով և շնորհեաց գերեզմանի նորա և իւր նախնեացն յիշատակ, որում բարձաւղք և ընթերցողք սուրբ աւետարանիս յիշեցէք զԱսփայն 'ի Քրիստոս և դուք յիշեալ լիջիք ի Տեառնէ»։ Ապա յականէ յանուանէ յիշուած են այն գաւառների և բերդերի անունները, որք սեփական ժառանգութիւն են Գրիգոր իշխանիս Դոփեանց։

«Եւ գաւառք մեր յանուանէ այս է Սոթ, Գլուխ, և Բերդաձոր և Ծոխանց, Հոսաբակս, Ատրենիս, Կալեր, Ուռեաց Փոր և Խորուագետ, Դվալանոց, Էրքն Մափռելանց և այլ իւրեանց միջոց Մազրովն ի մեր նախնեաց մնացեալ հայրենիքս է իւրեանց չորս սահմաններովն ստոյգ և ճշմարիտ գրեալ 'ի յաւետարանիս»։

Վանքս ունի ամուր շրջապարիսպ, ութ խուց, պարտէզ, մեղուանոց, կամուրջներ և պատուական աղբիւր։ Իմ շրջած և տեսած բոլոր վանքերից պայծառ է վանքս։ Նորոգուած է վանքս, գաւիթն շրջապարիսպն, խուցերն, և նորինորոյ շինուած կամուրջներ։ Այս բոլոր նորոգութիւնները, պայծառութիւնը և վերակենդանութիւնը պարտական ենք Գանձակեցի մեծ. Ներսէս-բէկ Աբրահամեան Տէր-Ներսիսեանցին [2])։

ԺԳ. ՀԱՐՑՀԱՆԳԻՍՏ ԳԻՒՂ. (Զովդառ) Հիմնուած Մըրգնաբերդ կոչուած սարի հիւսիս արևմտեան կողմում, որ

---

1) Այժմ զարդարանք չկայ աւետարանիս վերայ։

2) Չկարողացանք իմանալ քանի օրավար է վանքիս հողն։

*թարգմանչաց անապատի հիւսիսային կողմումն է, մի բարձր և տեսարանաւոր սարահարթի վերայ, որի ետև կայ մի լեռ[1]), բնակիչք բնիկ, հողն արգաւնի, անջրդի լեռնային, բայց հացաւէտ. տեղական բերքերն նոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն, սքանչելի՛ տեսարանն, եկեղեցին Սուրբ Յովհաննէս, կառուցեալ չորս սիւների վերայ, որ ունի իւր հարաւային կողմում գաւիթ և զանգատուն. քահանան գալիս է Խաչակապ գիւղից։ Տուխ 94, ար. 246, իգ. 226, ար. ծն. 22, իգ. 27, պսակ 15, ար. ննջ. 15, իգ. 12։*

*Եկեղեցումս կայ մի սպիտակ փոքր և հին խաչարձան, որ բերուած է Մլգնաբերդից, որ զարմացնում է այցելուները իւր գեղարուեստի նրբագործ քանդակներով, որ ունի. «Թվ. ՈԴ. Անուամբն Աստուծոյ ես Մարգարիտ դուստր Ուխտիկայ կանգնեցի զսուրբ նշանս 'ի փրկութիւն հոգւոյն Զարդմբերին և Զարդագունին, Մխիթարայ և Կանանին. որք յաղաւթըս յիշէք և զԱտոմ, որ գործող էր խաչիս»։*

*Կայ և մի ձեռագիր աւետարան, մագաղաթեայ, միջակ դիրքով, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ։ Ընտիր է մագաղաթն, գեղեցիկ պատկերներն, ծաղիկներն, նախշերն և թռչնագրերն։ Յիշատակարանից. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի լժուականութեանս Հայոց 'ի ՈՀ. 'ի մայրաքաղաքս Տարսոն, յորում ամենայն ոք տատանէր,.. յետ մահուն աստուածասէր թագաւորին մերոյ Լևոնի. վշտատես ազգս Հայոց վշտանայր. չարն տեղի տայր, որոշեցան ոմանք 'ի սուրբ ուխտէն և ի միմեանց միաբանութենէ, և որպէս է սովորութիւն ազգիս՝ ամենայն ոք զինքն յառաջ կոչէր և չհաւանեալ միմեանց՝ լինէր արեան ճապաղիս 'ի բազում տեղիս. և գաւառք և գեօղք քանդէին և եկեղեցիք աւերէին։ Ի յայսմ դառն և ի շփոթման ժամանակիս աւարտեցի զգիրս սուրբ։ Աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և լուսաւորիք յաստուածային բանիցս, յիշեսջիք... զնախասացեալ տիկին Աւիւծ և զբարի ծնողն իւր զՇուշան*

---

[1]) *Սարիս վերայ կայ կառապաշտ և քրիստոնեայ սարերից մնացած շատ հանգիստներ. գուցէ այս պատճառաւ կոչուած է Հարց-հանգիստ։*

Digitized by Google

Թագուհի (Լևոն Թագաւորին).... և զմեղապարտ գրիչս գԳրիգոր սարկաւագ»։ Ունի նաև այլ յիշատակարաններ, որք գըրուած են հետզհետէ։

Ա. Վերջին երեսում ՉԽԹ. թուին.
Բ. ,, ,, երկրորդ անգամ ստացած է Տաքեցի Ջալալի խոջէն ՊՑԴ. թվին.
Գ. Սկզբում ՌԽԸ. թվին.
Դ. ,, ՌԾԵ. ,,

## ՄԼՁՆԱԲԵՐԴ ՎԱՆՔ (Մաձնաբերդ վանք)

Հարցհանգիստ գիւղիս հարաւ արևելեան հանդէպ, ոչ այնքան հեռի, արձանացած է մի սար, որ բոլորովին առանձնացած է իւր չորս կողմերից և բարձրացած ձուաձև։ Սարիս կատարն 12 կալաչափ հարթակ է, որի գրեթէ մէջ տեղում, նախկին վանքի տեղում, շինուած է երկու երկաթակապ կամարների վերայ մի փոքր եկեղեցի, որ ունի մի դուռն, երկու լուսամուտ, մի զանգատուն, 12 մետր 12 սանթիմ երկարութիւն, 6 մետր 72 սանթիմ լայնութիւն։ Դռնազլխին. «Հնագարեան ուխտատեղիս յանուն Սուրբ Սարգսի որ է Մլըզնաբերդ, հիմնովին նորոգեց Գանձակեցի Սողոմոն Յար. Նալչագարեանցն ծախիւք իւրովք ի յիշատակ իւր կնոջն Բալախանումի, որդւոյն Լևոնի և համայն ննջեցելոց իւրոց 'ի 1891 ՌՅԽ. ամի»։ Վանքաբարձ սարիս գագաթի եզերքներով պարսպուած է եղել վաղուց ամրագին պատերով իբրև անմերձենալի ամրոց, որ այժմ կիսաւեր է։ Պարսպիս ներսում կան շատ գերեզմաններ և միաբանութեան խուցերի մեծ աւերակներ, (միայն կանգուն է երկու սենեակ)։ Հանգստարանս ծածկուած է կաղնի, տխկի, ճըռ տանձի և այլ ծառերով։

*Վսկաթել* (Ոսկեթել) *մատուռ*. Գտնուում է գիւղիս հիւսիսային անդնդախոր ձորում, որի միջով հոսում է Հարցհանգիստ առուակն։ Փոքրիկ մատուռ է, ձեղունն փայտաշէն, որի մասին ոչ ինչ չկայ գրաւոր. միայն աւանդութեամբ ասում են թէ «Մի Վսկաթել կոյս աղջիկ նահատակուած է այստեղ»։ Մատրանս ստորոտից բղխում է մի նշանաւոր աղբիւր։

*Բախշիկ աւերակ*. Ընդարձակ աւերակ գիւղ, մեծ և հին հանգստարան և եկեղեցի, որ շինուած է վեց սիւների վերայ, որի երկարութիւնն է 20 մետր 2 սանթ. և որի գլուխն խոնարհուած է այժմ։ Աւերակս գտնուում է Հարցհանգիստի հիւսիսային հանդէպ, խորանդունդ ձորի ձախ կողմի բարձրութեան վերայ։

*Պտկեսըերը* (Պտկի Սուրբ Գէորգ) կայ աւերակիս արևելեան հանդէպ կանգնած մի սրածայր սարի գլխին մի խաչարձան, որ ուխտատեղի է։ Վաղուց եղած է այստեղ անապատի նման մի մատուռ, որ աւերուած է յետոյ։ Ահա այս է Պտկի Սուրբ Գէորգն։

ԺԳ. ՆԻԿԶԱՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Սուրբ Գէորգ սարիս հիւսիսային և Ճամքոր գետակի հարաւային կողմի սարահարթի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք ծիցիանովի ժամանակ գաղթած են Երևանեան նահանգի Ճաթղդան, Ճուլվեզ և Քանաքեռ գիւղերից. հողն արքունի, անջրդի սակայն հացաւէտ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—100. եկեղեցին Սուրբ Գէորգ, հիմնուած մի կամարի վերայ, որ ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և մի աւագ, 18 մետր 20 սանթիմ երկարութիւն 9 մետր 5 սանթիմ լայնութիւն։ Շինուած է գիւղիս նախկին բնակիչներից։ Քահանայ մի։ Ծուխ 70, ար. 360, իգ. 323, ար. ծն. 17, իգ. 13, պսակ 9, ար. ննջ. 2, իգ. 2։

Գիւղիս հին հանգստարանում, որ մի քանի քայլ հեռի է եկեղեցուց, կայ մի հին *մատուռ*, շինուած անտաշ քարով, ծածքն փայտաշէն, քարեայ հին խաչերով զարդարեալ բեմի ժողովրդահայեաց երեսն։ Մատրանս մօտ *մի շիրմաքարի* վերայ. «Այս է հանգիստ Գրիգորոյ թվիս ՋԽԷ.»։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ ՆԻԿԶԱՐԻ ՄՕՏ

Հիմնուած է գիւղիս հարաւ-արևմտեան կողմում մի լանջի վերայ, որ նայում է Ճամքոր գետակի ձորին, այժմ աւե-

Digitized by Google

րակ է և մնում է միայն խորանի կամարն, վէմ և սեղան քարերն։ Ունի միայն մի փոքր խորան աւագ խորանի աջ կողմում, մի փոքր գաւիթ, որի ճակատի վերայ գրուած է. «Ես Դաւիթ եպիսկոպոս Նորոգեցի զեկեղեցիս այս թվ. ՌՃԻԸ.»։ Եպիսկոպոսիս մարմինն ամփոփուած է խորանի տակ։

Աւերակ դրութեան մէջ են և վանուցս շրջապարիսպն և միաբանից խուցերն, բայց մնում է հանգստարանն, վանուցս հիւսիսային կողմում մի բլրակի վերայ։

## ԾԾԵՐ

Ամենափրկչիցս փոքր ինչ ներքև ձորի մէջ կայ մի ապառաժ քերծ, որի ստորոտով վազում է մի առուակ։ Քերծիս ստորին մասն ձևացած է ինչպէս քարայր, որի առաստաղից կախուած են (բնական գոյացած են) ամենատեսակ ծծեր—մարդոյ, ոչխարի, խոզի և այլն։ Ծծերի ծայրերից կաթկաթում են ջրեր և թափուում աւազանին մէջ, որ տակին է։ Ջրից խմում են կաթն պակաս մայրեր և աւելանում է կաթն. հաւատքով լողանում են աւազանիս մէջ և բժշկուում տեսակ տեսակ ախտաժէտներ։

*Կարմիր եկեղեցի* (կամ Հոռոմաշէն) (42)

Նամքոր գետակի աջ ափի մօտ ճանապարհի վերայ հիմնուած է տաճարս, որ փոքր, խաչաձև, բարձրաշէն և ամբողջապէս սրբատաշ կարմիր քարով շինուած է, վասնորոյ կոչուում է *Կարմիր եկեղեցի*։ Տաճարս [1]) ունի գեղեցիկ և սրածայր կաթուղիկէ, միայն աւագ խորան, որի հարաւային անկիւնում մի փոքր և մութ խորան։ Աւելի վանքի ձև ունի տաճարս, քան թէ եկեղեցու, ունի և գաւիթ, որի մէջ ամփոփուած են շատ ննջեցեալներ, որոց քարերն չունին արձանագրութիւն. ունի և բաւական խուցեր միաբանից համար և հանգստարան և քարուկիր շրջապարիսպ, որք կիսաւեր են և ենթարկուած քայքայման վիճակի։ Վանքս իւր հիւսիսային արտաքին կողմում, սալկախից ներքև ունեցած

[1]) Կոչուում է և Դաշտան։

է հայերէն երկար արձանագրութիւն, որի մէջ յականէ յանուանէ նշանակուած է եղել վանուցս անշարժ կալուածներն։ Մի քանի տարիներ առաջ Գանձակեցի ոմն անազնիւ հայ ջարդում է արձանագրութիւն կրող քարերը և ններգութեամբ իւրացնում կալուածները։

ԺԵ. ԿԻՒԼԱՄԲԻՒՐ ՇԷՆ. Մի քանի գերդաստան հատուածեալ Նիւկզար գիւղից եկած և բնակութիւն հաստատած են շինումս, որ կայ Կարմիր եկեղեցուց վերև, Շամքոր գետակի աջ ափի մօտ։ Ծուխերն և ամեն ինչ հաշուած է Նիւկզարի վերայ. ունին գեղեցիկ այգիներ։

Գետակիս աջ ու ձախ հովտում կան աւերակ գիւղեր և հանգստարաններ։

ԺԶ. ՆՈՐ-ՓԻՓ ԱՒԱՆ. Հիմնուած է Շամքոր գետակի աջ կողմում, մի լոյնագոգ սարի արևմտահայեաց լանջի վերայ։ Գիւղն շինուած է երկու սեռի և երկու ձորակի վերայ Կիւլամբիւրից շատ վերև, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային, անջրդի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն—աւելի ոչխար, տաւար, գոմէշ, խոզ, հիանալի տեսարանն, օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, կամարակապ վեց սիւների վերայ, ունի մի կաթուղիկէ դասի վերայ և մի փոքր զանգատուն եկեղեցուս արևմտեան ծայրում տանեաց վերայ. 22 մետր երկարութիւն 12 լայնութիւն, քարեայ խաչկալ և սոյն արձանագրութիւնը. «1849 ՌՄՂԸ. թվին»։ Քահանայ 2։ Ծուխ 301, ար. 1641, իգ. 1407, ար. ծն. 72, իգ. 58, պսակ 35, ար. ննջ. 15, իգ. 13։

Եկեղեցումս կան հետևեալ *ձեռագիրները*.

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, առանց պատկերի, նկարի, նախշի և ծաղկի։

*Յիշատակարանից*. «Եւ արդ ես անարժան գրիչս Աթանաս գծոյլս 'ի բարեաց, որ անարժան ձեռաւքս գրեցի զսուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՉԼԷ. 'ի սուրբ ուխտս Աւ-

ծոպոյ [1]) 'ի դուռն Սուրբ Աստուածածնին. յիշատակ Գասպարին և ծնողաց իւրոց»։

Բ. Աւետարան թղթեայ, պատկերազարդ, բայց բոլորովին անճաշակ, անարուեստ և անախորժ գոյներով։ *Ցիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս 'ի գեաւղս, որ կոչի Արտամէտ ձեռամբ... Կարապետ երիցու ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Ստեփաննոս Նախավկային և Ամենափրկչին 'ի դառն և 'ի նեղ ժամանակիս, որ կամք գերի 'ի ձեռս այլազգեաց, որ պիղծ, ժանդ և արեանարբուն Կարապետ Նեռին և որդին կորստեան Սարտար Ջղալ աւղլին 'ի Ըստամբուլայ երեգ 'ի Վան և արար ժողով իւր հեծելին և երկու դարբայ (անգամ) հարիւր հազար մարդ ժողովեաց և գնաց 'ի վերայ Շահ Արասին և Աստուած զնորա բանն ոչ յաջողեաց, այլ փախեաւ և եկաւ աւերելով 'ի Վան և աւերեաց զՎանայ աշխարհն զամեն, որ սովն կալաւ զարարածս, որ եղ(և) քիլայ ցորեն 'ի ութ ափասի, ապա գնող կեր և ծախող չկեր։ Որ 'ի սովու կերան զշուն և կատու, էշ և ձի և կաշի և այքատն ժողովէին զերեք և չորս տարու չոր ոսկրներն և ողկէին [2]) և ուտէին և կուտուց կուտուց [3]) մեռանէին։ Որ կերաւ մայրն զորդին և հայրն ծախեց զորդին բ. կորեք հացի, որ մեռան 'ի սովու հազարք հազարաց և բիւրք բիւրոց։ Եւ այն որ մնաց, փախեան 'ի Ջզիրէն, 'ի Բաղդատ և յԱրաբստան, 'ի Թաւրէզ, 'ի Ղազուին և 'ի Խորասան և Գուրջստան և ամեներեան մեռան 'ի զարիպութիւն, որ 'ի խազարէն մէկ չի գարձ (աւ) 'ի յետ։ Որ 'ի Ջազիրէն 'ի քաղաքն միայն երիցներն (երիցունք) խսապ (հաշիւ) արարին ամենքն զիւրեանց թաղածն, խռ։ (40000) մարդ էր մեռէր, թող զայն որ ի բուքն խեղդեցան և կամ ի դետն անգան և թող զայլ քաղքունէքն, որ 'ի Սալամաստայ մինչև Գուրջստան և մինչև յԸստամբուլ և հիւսիսակողմով մինչև յԱմիթ, յԱլապ եղև անմարդաբնակ, որ առջք և

[1]) Տապ էր կոչուում 'ի հնումն այժմեան Դիլիջանի ձորն, իսկ Աստուածածնայ վանքն այժմ անմարդաբնակ է, որ կոչուում է Ջոխտակ վանք։

[2]) Մանրել, ջարդել, փոշիացնել։

[3]) Կերակուր ի բերան մեռնիլ։

խոզք և մարդակեր գայլքն և շունք լի շուն գայլին և այն անաւրէն և պիղծ գազանաբարոյ ազգն Հոռոմեցիքն բռնէին զմարդիկն և չարչարէին, զնոցա ամաւթն ծամէին և ասէին թէ մեզ հաց և զահրայ տուէք և նոքա ոչ ունէին զատ (իր ինչ), որ տային նոցա և չարաչար մահուամբ սպանանէին...... յառաջն երեր (Աստուած) զխաշանց մահ, որ երեկ յարևելից և գնաց մինչև 'ի մուտս արևու, 'ի հիւսիսոյ 'ի հարաւ.....։ Եւ յետոյ եբեր զմարդկային պատուհասն, որ 'ի սովու կերան զմիմեանս, որ եթող հայրն զորդին և մայրն զդուստրն, եղբայրն զեղբայրն և ուտէին կենդանի (ք) զմեռեալն և ամենեքեան յայլ աշխարհ գնային, և որն որ մեռան և որն որ Թուրքացան և այլ ոչ դարձան 'ի յիւրեանց տեղն վասն ծովացեալ մեղաց մերոց։ Եւ մին 'ի բազմաց եղկելի գործողս էր, որ առի զընտանիքն իմ և գնացի 'ի Ջղիրէն և մեռան անդ զընտանիքն իմ, կին իմ և դստերքն իմ և մէկ որդին իմ Մկրտիչն և հարսներն իմ և եղբայրն 'ի Տէր Ատումն, որ զայս աւետարանս ծաղկեց և ամենեքեան մեռան ի դարխպութիւն.... գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՌԾԴ. ամի յիշատակ Գուլիարին և Սաղգաթեարին և Սպադիարին....»։

Գ. Աւետարան թղթեայ, անթուական և անյայտ գրողի անունն և տեղն։

Դ. Աւետարան թղթեայ, որի մէջ կան Քրիստոսի բոլոր բժշկութեանց և չորս աւետարանչաց պատկերներն, վերջից ընկած են յիշատակարանն և շատ թերթեր։

Գիւղիս հին եկեղեցու, որի ծածքն փայտաշէն է, փայտեայ սիւնի վերայ. «Իշխանութեան Մէլիք Հախնազարի, պապեր 'ի Քրիստոս յիշեցէք, Հրապետն, որդիք Պալին Սարգիս, հանգուցեալ որդին Տէր Ղազար, մայրն իւր Նարկիզն թվ. ՌՃԼՋ.»։ *Արձանագրութիւն* «Սուրբ Աստուածածին բարեխօս տէր Ըստեփաննոսին թվ. ՌՃՃԹ.»։

Սուրբ Գէորգեան միդասեան ուսումնարան, աշակերտք 40, թոշակատու 36. տարեկան ռոճիկ վարժապետին 350 րուբլի։

*Շիպի հանք*—Ամբողջապէս շիպահանք է գիւղիս հարաւային կողմի ահագին լեռն, որից եղած շիպաքարերը փոխադրում էին գործարաններն, որ գիւղիս հարաւ արևմտեան ծայրումն են։ Ապա քարերը վառարաններում այրում էին կրաքարի պէս, յետոյ ջարդում այրուած քարերը և լցնում էին աւազանների մէջ, ջրով լցնում աւազանները, թողնում ամսաչափ, յետոյ հանում աւազաններից, մեծ կաթսաներում եփում զանգուածը. թափում հորերի մէջ, որոց մէջ մնալով լինում էր շիպ։ Բայց մի քանի տարի է որ այլ ևս չեն շինում Փիփեցիք շիպ. այլ դադարեցրած են կառավարութեան հրամանաւ։

*Քարահատի խաչ*. Նոյն Շիպասարի վերայ մի մատուռ է, որի ծածքն փայտաշէն է և որի մէջ ամփոփուած է ոմն յարգելի անձի մարմինն, բայց անյայտ է սուրբ ամփոփեալի անունն։ Ուխտատեղի է։

*Սվրեցիք*. աւերակ գիւղատեղի Փիփիս արևելեան հիւսիսային կողմում, որ գտնուում է մի դալարագեղ և բարձր սարահարթի վերայ։ Շամքոր գետակի աջ կողմի բարձրութեան վերայ։ Տակաւին կայ ընդարձակ եկեղեցու աւերակն, որից մնում է կանգուն միայն խորանի թաղն և երկու փոքր խորաններն։ Խորանի *լուսամուտի հարաւային* կողմում. «Թվ. ՉԻԲ. ես Համզա կանգնեցի զխաչս որդոյ իմոյ Պապի»։ «Ես Համզա կանգ. զխաչս որդոյ իմոյ Եվատին»։

Աւերակից ներքև, ձորի ձախ կողմում կայ հանգստարան, ուր մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ. «Սուրբ խաչս Թումանին Պէկլաջին թվ. Պ.»։ Աւելի ուշագրաւ է սորա մօտ եղած մի խաչարձան. որ ունի գեղեցկաքանդակ պատուանդան [1]), որի վերայ քանդակուած է մի գութան իւր մաճկալով, մաճկալեղբայրով և հօտաղներով, եզներով և գոմէշներով, և մի ճաշաբեր հարսն, որ կերակրով լի կաթսան իւր գլխին դրած, գութանաւորների համար կէսօրուան ճաշ է բերում։ Սորա խաչարձանի վերայ.

---

[1]) Երկարութիւնն 1 մետր 10 սանթիմ, լայն. 95 ս.։

«Սուրբ խաչս բարեխաւս Գիչնին. կանկնե....» (43) Ափսոս որ եղծուած են կէտագրեալ բառերն։ Այլ քարի վերայ. «Սուրբ խաչս Հուռիփսիմի Մարտիրոսին»։

*Մաղթում զատէ.* Հանգստարանից ներքև նոյն ձորի աջ կողմում, գետակահայեաց լանջի վերայ, մի տեսարանաւոր սարահարթում հանգստարան և աւերակ մատուռ։ Մատրանս մէջ, որ բուսած է մի տխկի ծառ, կայ երկու խաչարձան. մէկի վերայ. «Սուրբ խաչս բարեխաւս Խամբկի ՆւՀԳ.»։

*Խորհրդաւոր մահարձան.* Հանգստարանումս մի գերեզմանաքարի վերայ շինուած է գուլթան իւր պարագայիւք, սազ ածող, թմբուկ զարկող. սեղան պատրաստող կին, պարող մարդիկ. գինու կուլան ձեռնին, իսկ իշխան ումն իւր աջ ձեռնով բռնած բազէն և ձախովն գինու թասը։ Սորա մօտ կոնգ, գինաման և կենդանի խոյ։ Քարիս արևելեան երեսին կայ մի ահագին արծիւ, որ բարձրացնում է մի գառն։ Ափսոս միայն որ չունի արձանագրութիւն։ Սորա մօտ *այլ քարի վերայ.* «Ես Եղոմ կանգնեցի խաչս Նատարին»։

*Ռուսկան* (գուցէ Ոսկան) *նահատակ.* Փայտաշէն մատուռ Փիփի հիւսիսային կողմում, գետակահայեաց լանջի վերայ։ Մատրանս մէջ կայ տապան, որի վերայ կանգնած է մի մեծ քարեայ խաչարձան, որ ուխտատեղի է։

*Հին-Փիփ գիւղ.*

Ծամքոր գետակի աջ կողմում, աւերակ է այժմ։ Այս տեղից խոխագրուած են Փիփի բնակիչներն Նոր-Փիփ. բայց անարատ մնում է եկեղեցին, որ շինուած է երկու կամարների վերայ։ Աւագ խորանի աջ ու ձախ կողմերում կան երկու ծակեր, որք գաղտնի պահարաններ են։ Հոյակապ տաճարիս [1]) երկարութիւնն է 26 մետր 35 սանթիմ, լայնութիւնն 12 մետր 70 սանթիմ, պատի հաստութիւնն 2 մետր 40 սանթիմ։ *Աւագանի վերայ.* «Յիշեցէք ի Քրիստոս Ծատուրն և կողակիցն իւր Մարեան թվ. ՌՃԺԹ.»։ Հիւսիսային փոքր խորանի դռնագլխին. «Յիշեցէք ի Քրիստոս Գաւրկին և

[1]) Սուրբ տանս հիւսիսային կողմումն է հանգստարանն։

Digitized by Google

Տատուրն... Առաքեալն և որդին իւր Յովհան»։

*Դրան վերայ.* «Կամաւն Աստուծոյ մեք Փիփեցոց ժողովուրդս միաբան շինեցաք զեկեղեցիս 'ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Աղուանից) ձեռամբ Սարգիս վարդապետին, յիշխանութեան Մուրթուզա-Ղուլի խանին. յիշեցէք 'ի Քրիստոս տանուտէր Վարդանէսն և կողակից Մարեան»։

*Բարսամ ճգնաւոր.* Այսպէս են անուանում մատուռը, որ կայ եկեղեցուն հարաւային կողմում։ Մատրանս մէջ կայ երեք գերեզման, երկու տապանաքարերի վերայ չկայ արձանագրութիւն. միայն երրորդի վերայ. «Ես Մաղաքայ եպիսկոպոս կանգնեցի զխաչս հաւր.. եղբաւրն իմոյ տէր Պար..մարհ եպիսկոպոսին Թվ. ՋԶ.»։

*Օխտը եղցի կամ Քարահերձ* (44)

Ճիպասարեցն դէպի Ճամքոր գետակն երկարած է մի լեռնաբազուկ, որի հիւսիսահայեաց ծայրի քերծի ճակատում փորուած են եօթը քարայրներ և քարուկիր պատով պատուած բաց տեղերն։ Քերծս և քարայրներս շրջապատուած են թանձր անտառներով։ Քարայրներս բոլորն ևս եկեղեցի չեն, այլ միայն երկուսն, որոց մէջ մնում են վէմ և սեղան քարերն ցարդ։ Վիմահերձի ճակատով շինուած է ուղի, որ տանում է այրերն։ Ուղիղ Ձարեք բերդի հարաւային հանդէպ են քարայրներս, որոց արևելեան կողմում կայ պատուական աղբիւր, որից խմած և գործածած են այրերումս նստող կաթուղիկոսներն։

*Աղիւաշէն.* Մի գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր եկեղեցի է այս անուամբ, որ գտնուում է Քարահերձից վերև նոյն լեռնաբազկի վերայ։

## ԳԱՐԴՄԱՆ ԱԻԱՆ (45)

Գտնուում է Աղիւաշէն աւերակի արևմտեան հանդէպ Գարդման վտակի [1]) ձախ կողմում։ Այս էր ահա Գարդման գաւառիս գաւառագլուխն, որի անուամբ ամբողջ գաւառս

[1]) Այս է Ճամքոր գետակի արևելեան մեծ օժանդակն. որ խառնուում է Ձորէք բերդի ստորին կողմում։

կոչուած է Գարդման, և գաւառիս իշխանաց աթոռանիստ աւանն։ Այժմ աւերակ է աւանս և թրքաբնակ և կոչուում է Գրթմանիկ։ Կիսաւեր եկեղեցու արևելեան որմի արտաքին երեսին վերայ քանդակուած է մի խաչքար։ Իսկ հարաւային կողմում՝ մի քանի քայլ հեռաւորութեամբ՝ գտնուում են 7 հատ ցից, աննգին և նշանաւոր մահարձաններ, որք միատեսակ են և մօտ առ մօտ. յորոց միոյն վերայ փորագրուած է. «Կանգնեցաւ խաչս Քրիստոսի թ. ՌՄՂԱ.»։ Եղծուած են գրեթէ և անընթեռնլի միւս 6 մահարձանների գրութիւնները։

*Սրբլթոն*. Գարդման աւանիս հարաւային կողմում փոքր ինչ հեռի կայ մի ուխտատեղի Սրբլթոն անուն, որ մի փոքրիկ մատուռ է և որն բնաւ չունի արձանագրութիւն։ Բայց մատրանս մօտ կայ մի մահարձան, $3^1/_2$ մետր բարձր, որի վերայ փորագրուած է «Այս է տապան սուրբ Սրապիոնի թոռն մեծին Սամորին մեծին Սատին [1]) թ. ՁԶ.»։ Ալնածաւալ հանգստարան կայ մատրանս մօտ, որի մէջ են գեղեցիկ մահարձաններով զարդարուած շատ գերեզմաններ։

*Դղում-ըլուր*. (Ղաբաղ թափէ) ընդարձակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան Գարդման աւանից բաւական վերև։ Դեռ կանգուն է ընդարձակ եկեղեցին, որ կառուցեալ է 4 սիւների վերայ։ Տաճարիս, որի դուռն հարաւային կողմից է, մի սիւնի վերայ գրուած է. «Ես Խոսրովս թվ. ՌՃԽԱ.»։ Միւս սիւնի վերայ գրուած է. «Ի թ. ՌՃԾԵ.»։ Տաճարս հոյակապ է, որ ունի 21 մետ. երկ. 13 լայն.։ Այժմ մահմետականներ են բնակում գիւղումս։

## ԱՐՈՒԹԻՒՆԱՑ (46) ՍԱՐ (տճկ. Ղոչ-ղարա) 11085 ոտք

Մի հսկայ, բոլորակաձև և գեղեցիկ սար, որ գրեթէ Մռաւեան և Գեղամեան բարձր լեռնաշղթայի խառնուրդի շարքից դէպի հիւսիս դուրս ելած, առանձնացած է, բայց մի հսկայ լեռնասեռով կցուած է նոյն լեռնագօտու խառ-

[1]) Գուցէ Սադունին։

նուրղին և վեհանձնաբար արձանացած Գարդման գաւառիս լեռնամասում։ Համարեա՛ թէ իւր շրջապատի բոլոր բարձր լեռներից ամենասիրունն է։ Հինգ ժամ է տևում մինչև սարիս գագաթն բարձրանալն և երեք ժամ՝ իջնելն։ Զորս կալաչափ տեղի մեծութեամբ տափարակ է սարիս կատարն, որի վերայ կայ մի գերեզման, որի շուրջն շարուած են շատ քարեր։ Այս երևոյթն ենթադրել է տալիս թէ մատուռ եղած լինելու է վաղուց այստեղ։ Գերեզմանիս մօտ կայ մի լճացեալ ջուր, որ անկասկած գոյացած է ձիւնից և անձրևից. սակայն անպակաս է ամառ. ձմեռ ջուրն լճակիցն։ Քանի՜ ուշագրաւ է գագաթիս տեսարանն, քանի՜ գեղեցիկ և անբացատրելի է դիրքն. անթերի՜ զուարճութիւնն և բարձրաթռի՜չ այցելուի սլացող միտքն....։

Սարիս լանջերից և ստորոտներից բղխում են հետևեալ գետակների բուն սկզբնական ակունքներն։

Ա. Գանձակ գետակի մի մասն։

Բ. Արութինայ վտակն, որ հոսում է Բանանց գիւղի մօտով։

Գ. Գարդման վտակն։

Դ. Փառիս վտակն, որ հոսում է փառիսոսի վանքի արևելեան կողմով, բաժանում Գարդման և Փառիսոս գաւառներն իբր սահմանագլուխ և ապա միանում Շամքոր գետակին Ջոխտակ կամրջի (Ղօշա քեօրփի) մօտ։

*Աղի շէն*. այժմ աւերակ է, բայց եկեղեցին կանգուն է։ Աւերակ գիւղս, եկեղեցիս և հանգստարանս գտնուում է Փառիսոսի վանքի արևելեան հանդէպ, Փառիսոս վտակի աջ կողմի բարձրութեան վերայ։

## ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա. *Ղալա* անուն բերդակ, որ կայ Ոսկանապատից մօտ մի մզոն վերև նոյն գետակի ձախ ափին։ Քարուկիր և գրեթէ քառակուսի է բերդակս, որ ունի չորս աշտարակ և մի դուռն։ Փոքր է, բայց ունի գեղեցիկ դիրք, հաստատուն

պարիսպ և յարմար տեղ։ Երևի թէ գետակի կողմում ունեցած է կրկնապարիսպ, որ փոքր ինչ ցած է բուն պարսպից և ունի քարուկիր շինութիւն և բնակարան իբր տուն։

Բ. *Մլզնաբերդ կամ Մաձնաբերդ* (47)

Գտնուում է համանուն վանքի հիւսիսային հանդէպ, ձորի միւս կողմում։ Իւր շրջապատից առանձնացած է նաև բերդասարս, որի հարաւային և արևելեան կողմերն վիմահերձ և բարձրագոյն ապառաժներ են, հիւսիսային կողմն անմերձենալի սարալանջ, իսկ արևմտեան կողմն ունի հաստատուն պարիսպ երեք ամուր աշտարակներով։ Ունի միայն մի դուռն արևմտեան կողմից և բաւական մեծութիւն, որի մակերևոյթն թեքուած է հարաւից հիւսիս։ բերդիս վերնամասում [1]) կայ հանգստարան և բնակարանների շատ աւերակ։ Ստորին մասում կայ յատկապէս միջնաբերդ, որը տեղացիք անուանում են *Նարին-Ղալա*, որ ունի առանձին պարիսպ և մուտք։ Մեծ ուշադրութեամբ ամրափակուած են քարուկիր պատերով կասկածաւոր տեղի կիրճերն. վերջապէս Նշանաւոր ամրոցներից մին է բերդս և շատ հին։ Բերդիս հիւսիսային մասում կայ մի բարակ ջուր, սակայն երևի թէ բնակիչք չեն բաւականացած ջրովս, այլ խեցեղէն խողովակներով ջուր բերած են արևմտեան կողմից։ Կարծես թէ եղած է և քաղաք։ այժմ հերկում են Հարցհանգիստ գիւղի բնակիչներն բերդիս մէջը և հետզհետէ քայքայուում են պատերն։

Գ. *Ղըզ-Ղալա* բերդակ, որ կայ Նիւկզար գիւղի արևելեան կողմում, մի սարի վերայ, որ բաւական հնաշէն է։

Դ. *Կեռստավանք բերդ.*

Հիմնուած է Տամքոր գետակի աջ կողմի բարձրութեան վերայ Ռուսկան նահատակից փոքր ինչ ներքև։ Բերդիս տեղն թեքուած է դէպի գետակն, իսկ երկու կողմերն՝ ձորեր են։ Ունի շրջապարիսպ, որից այժմ տեղ տեղ քանդուած է կամ լաւ ևս է ասել մնում է պարսպի ստորին մասն և քարու-

[1]) Բարձր են վերնամասիս հարաւային և հիւսիսային ծայրերն, իսկ փոս միջավայրն։

կէր շինութեանց բեկորներ։ Ոմանք կարծում են թէ վանք եղած է այս, իսկ այլ ոմանք թէ՝ բերդ է։ Մենք հաւանական ենք համարում վերջին կարծիքս. քանզի ժամանակաւ մեծ ճանապարհ եղած է գետակիս ձորովն Գեղամայ լճի արեւելեան ափի վերայ, վասն որոյ Զարէք բերդն շինուած է գետակիս ձախ և բերդս աջ ափերի վերայ՝ թշնամեաց մուտքը արգիլելու համար։

## ԺԷ. ՓԱՌԻՍՈՍ ԳԱՒԱՌ.

Գաւառիս սահմաններն են արեւելքից Տամքոր գետակն և Փառիս օժանդակն, հարաւից՝ Գեղամեան լեռնաշղթայի գագաթնագիծն, արեւմուտքից՝ Տաւուշ գետակի արեւելեան օժանդակն և հիւսիսից դաշտաբերանն։

*Այցելու սուրը* (Փիրնազար) երկու աւերակ եկեղեցիներ, որք կան Տանձուտից բաւական վերև։ Մերձաբնակ պարսիկ բնակիչներն մեծ յարգանքով են վերաբերուում *ուխտ* անելով և *մոմեր* վառելով աւերակներիս քարերին և յարգանքով արտասանում *Փիր-Նազար*։

*Տանձուտ աւերակ*. Գտնուում է Փառիս վտակի ձախ ափի վերայ, Աւոի շէն աւերակի հանդէպ։ Խիստ ընդարձակ է գիւղիս աւերակն և հանգստարան. ԵՒս առաւել եկեղեցին, որ հիացնում է այցելուները իւր հոյակապ շինութեամբ և մեծութեամբ։ Կառուցեալ է վեց սիւների վերայ. ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու գեղեցիկ խորհրդարան, երկու դուռն հարաւից և հիւսիսից. 27 մետր երկարութիւն, 15 մետր 60 սանթիմ լայնութիւն։ Այժմ խոնարհուած է աւագ խորանն, ձախակողմեան դասի կամարով միասին և փոքր ինչ տեղ տաճարիս արեւմտեան հիւսիսային անկիւնից (ձեղունից). չունի արձանագրութիւն։

### ՓԱՌԻՍՈՍԻ ՎԱՆՔ.

Հիմնուած է Տանձուտիցս փոքր ինչ վերև մի պատուական և անտառապատ սարահարթի [1]) վերայ։ Արեւմտեան

[1]) Սարահարթս ունի բոլորակ ձև, միջակ մեծութիւն։

Digitized by Google

*Բախշիկ աւերակ*. Ընդարձակ աւերակ գիւղ, մեծ և հին հանգստարան և եկեղեցի, որ շինուած է վեց սիւների վերայ, որի երկարութիւնն է 20 մետր 2 սանթ. և որի գլուխն խոնարհուած է այժմ։ Աւերակս գտնուում է Հարցհանգիստի հիւսիսային հանդէպ, խորանդունդ ձորի ձախ կողմի բարձրութեան վերայ։

*Պտկեսբերք* (Պտկի Սուրբ Գէորգ) կայ աւերակիս արևելեան հանդէպ կանգնած մի սրածայր սարի գլխին մի խաչարձան, որ ուխտատեղի է։ Վաղուց եղած է այստեղ անապատի նման մի մատուռ, որ աւերուած է յետոյ։ Ահա այս է Պտկի Սուրբ Գէորգն։

ԺԳ. ՆԻԿՁԱՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Սուրբ Գէորգ սարիս հիւսիսային և Տամքոր գետակի հարաւային կողմի սարահարթի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք Ցիցիանովի ժամանակ գաղթած են Երևանեան նահանգի Ճաթղուան, Ճորվիզ և Քանաքեռ գիւղերից. հողն արքունի, անջրդի սակայն հացաւէտ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 90—100. եկեղեցին Սուրբ Գէորգ, հիմնուած մի կամարի վերայ, որ ունի միայն մի փոքր խորան հիւսիսային կողմում և մի աւազ, 18 մետր 20 սանթիմ երկարութիւն 9 մետր 5 սանթիմ լայնութիւն։ Շինուած է գիւղիս նախկին բնակիչներից։ Քահանայ մի։ Ծուխ 70, ար. 360, իգ. 323, ար. ծն. 17, իգ. 13, պսակ 9, ար. մնջ. 2, իգ. 2։

Գիւղիս հին հանգստարանում, որ մի քանի քայլ հեռի է եկեղեցուց, կայ մի հին *մատուռ*, շինուած անտաշ քարով, ծածքն փայտաշէն, քարեայ հին խաչերով զարդարեալ բեմի ժողովրդահայեաց երեսն։ Մատրանս մօտ *մի շիրմաքարի* վերայ. «Այս է հանգիստ Գրիգորոյ թվիս ՉԽԷ.»։

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔ ՆԻԿՁԱՐԻ ՄՕՏ

Հիմնուած է գիւղիս հարաւ-արևմտեան կողմում մի լանջի վերայ, որ նայում է Տամքոր գետակի ձորին, այժմ աւե-

Digitized by Google

րակ է և մնում է միայն խորանի կամարն, վէմ և սեղան քարերն։ Ունի միայն մի փոքր խորան աւագ խորանի աջ կողմում,, մի փոքր գաւիթ, որի ծեփի վերայ գրուած է. «Ես Դաւիթ եպիսկոպոս Նորոդեցի զեկեղեցիս այս թվ. ՌԾԻԸ.»։ Եպիսկոպոսիս մարմինն ամփոփուած է խորանի տակ։

Աւերակ դրութեան մէջ են և վանուցս շրջապարիսպն և միաբանից խուցերն, բայց մնում է հանգստարանն, վանուցս հիւսիսային կողմում մի բլրակի վերայ։

## ԾԾԵՐ

Ամենափրկչիցս փոքր ինչ ներքև ձորի մէջ կայ մի ապառաժ քերծ, որի ստորոտով վազում է մի առուակ։ Քերծիս ստորին մասն ձևացած է ինչպէս քարայր, որի առաստաղից կախուած են (բնական գոյացած են) ամենատեսակ ծծեր—մարդոյ, ոչխարի, խոզի ևն,։ Ծծերի ծայրերից կաթկաթում են ջրեր և թափուում աւազանին մէջ, որ տակին է։ Ջրից խմում են կաթն պակաս մայրեր և աւելանում է կաթն. հաւատքով լողանում են աւազանիս մէջ և բժշկուում տեսակ տեսակ ախտաժէտներ։

*Կարմիր եկեղեցի* (կամ Հոռոմաշէն) (42)

Տամքոր գետակի աջ ափի մօտ ճանապարհի վերայ հիմնուած է տաճարս, որ փոքր, խաչաձև, բարձրաշէն և ամբողջապէս սրբատաշ կարմիր քարով շինուած է, վասնորոյ կոչուում է *Կարմիր եկեղեցի*։ Տաճարս [1]) ունի գեղեցիկ և սրածայր կաթուղիկէ, միայն աւագ խորան, որի հարաւային անկիւնում մի փոքր և մութ խորան։ Աւելի վանքի ձև ունի տաճարս, քան թէ եկեղեցու, ունի և գաւիթ, որի մէջ ամփոփուած են շատ ննջեցեալներ, որոց քարերն չունին արձանագրութիւն. ունի և բաւական խուցեր միաբանից համար և հանգստարան և քարուկիր շրջապարիսպ, որք կիսաւեր են և ենթարկուած քայքայման վիճակի։ Վանքս իւր հիւսիսային արտաքին կողմում, սալկախից ներքև ունեցած

[1]) Կոչուում է և Դառան։

է հայերէն երկար արձանագրութիւն, որի մէջ յականէ յանուանէ նշանակուած է եղել վանուցս անշարժ կալուածներն։ Մի քանի տարիներ առաջ Գանձակեցի ոմն անազնիւ հայ ջարդում է արձանագրութիւն կրող քարերը և նենգութեամբ իւրացնում կալուածները։

ԺԵ. ԿԻՒԼԱՄԲԻՒՐ ՇԷՆ. Մի քանի գերդաստան հաստուածեալ Նիւկզար գիւղից եկած և բնակութիւն հաստատած են շինումս, որ կայ Կարմիր եկեղեցուց վերև, Շամքոր գետակի աջ ափի մօտ։ Ծուխերն և ամեն ինչ հաշուած է Նիւկզարի վերայ. ունին գեղեցիկ այգիներ։

Գետակիս աջ ու ձախ հովտում կան աւերակ գիւղեր և հանգստարաններ։

ԺԶ. ՆՈՐ-ՓԻՓ ԱԻԱՆ. Հիմնուած է Շամքոր գետակի աջ կողմում, մի լայնագոգ սարի արևմտահայեաց լանջի վերայ։ Գիւղն շինուած է երկու սեռի և երկու ձորակի վերայ Կիւլամբիւրից շատ վերև, բնակիչք բնիկ, հողն արքունի, լեռնային, անջրդի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն—աւելի ոչխար, տաւար, գոմէշ, խոզ, հիանալի տեսարանն, օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100. եկեղեցին Սուրբ Ստեփաննոս, քարուկիր, կամարակապ վեց սիւների վերայ, ունի մի կաթուղիկէ դասի վերայ և մի փոքր զանգատուն եկեղեցուս արևմտեան ծայրում տանեաց վերայ. 22 մետր երկարութիւն 12 լայնութիւն, քարեայ խաչկալ և սոյն արձանագրութիւնը. «1849 ՌՄՂԸ. թվին»։ Քահանայ 2։ Ծուխ 301, ար. 1641, իգ. 1407, ար. ծն. 72, իգ. 58, պսակ 35, ար. ննջ. 15, իգ. 13։

Եկեղեցումս կան հետևեալ *ձեռագիրներն*.

Ա. Աւետարան մագաղաթեայ, միջակ դիրքով, առանց պատկերի, նկարի, նախշի և ծաղկի։

*Յիշատակարանից*. «Եւ արդ ես անարժան գրիչս Աթանաս գծոյլս 'ի բարեաց, որ անարժան ձեռաւքս գրեցի զսուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՋԼԷ. 'ի սուրբ ուխտս Աւ-

ծոպոյ [1]) 'ի դուռն Սուրբ Աստուածածնին. յիշատակ Գասպարին և ծնողաց իւրոց»։

Բ. Աւետարան Թղթեայ, պատկերազարդ, բայց բոլորովին անճաշակ, անարուեստ և անախորժ գոյներով։ *Յիշատակարանից*. «Արդ դրեցաւ սուրբ աւետարանս 'ի գեաւղս, որ կոչի Արտամէտ ձեռամբ... Կարապետ երիցու ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Ստեփաննոս Նախավկային և Ամենափրկչին 'ի դառն և 'ի նեղ ժամանակիս, որ կամք գերի 'ի ձեռս այլազգեաց, որ պիղծ, ժանդ և արեանարբուն Կարապետ Նեռին և որդին կորստեան Սարտար Ջղալ աւղլին 'ի Ըստամբուլայ եբեդ 'ի Վան և արար ժողով իւր հեծելին և երկու դարբայ (անգամ) հարիւր հազար մարդ ժողովեաց և գնաց 'ի վերայ Շահ Աբասին և Աստուած զնորա բանն ոչ յաջողեաց, այլ փախեաւ և եկաւ աւերելով 'ի Վան և աւերեաց զՎանայ աշխարհն զամեն, որ սովն կալաւ զարարածս, որ եղ(և) քիլայ ցորեն 'ի ութ ափասի, ապա գնող կեր և ծախող չկեր։ Որ 'ի սովու կերան զշուն և կատու, էշ և ձի և կաշի և այրքատն ժողովէին զերէք և չորս տարու չոր ոսկրներն և ողկէին [2]) և ուտէին և կուտուց կուտուց [3]) մեռանէին։ Որ կերաւ մայրն զորդին և հայրն ծախեց զորդին բ. կորեք հացի, որ մեռան 'ի սովու հազարք հազարաց և բիւրք բիւրոց։ Եւ այն որ մնաց, փախեան 'ի Ջզիրէն, 'ի Բաղդատ և յԱրաբստան, 'ի Թաւրէզ, 'ի Ղազուին և 'ի Խորասան և Գուրջստան և ամենեքեան մեռան 'ի ղարիպութիւն, որ 'ի խազարէն մէկ չի դարձ (աւ) 'ի յետ։ Որ 'ի Ջազիրէն 'ի քաղաքն միայն երիցներն (երիցունք) խսապ (հաշիւ) արարին ամենքն զիւրեանց թաղածն, խւ։ (40000) մարդ էր մեռէր, թող զայն որ ի բուքն խեղդեցան և կամ ի գետն անգան և թող զայլ քաղքունէքն, որ 'ի Սալամաստայ մինչև Գուռջստան և մինչև յԸստամբուլ և հիւսիսակողմով մինչև յԱմիթ, յԱլապ եղև անմարդաբնակ, որ առջք և

[1]) Ծոպ էր կոչւում 'ի հնումն այժմեան Դիլիջանի ձորն, իսկ Աստուածածնայ վանքն այժմ անմարդաբնակ է, որ կոչւում է Ջուխտակ վանք։

[2]) Մանրել, ջարդել, փոշիացնել։

[3]) Կերակուր ի բերան մեռնիլ։

խոզք և մարդակեր գայլքն և շունք ի շուռ գային և այն անաւրէն և պիղծ գազանաբարոյ ազգն Հոռոմեցիքն բռնէին զմարդիկն և չարչարէին, զնոցա ամաւթն ծամէին և ասէին թէ մեզ հաց և զահրայ տուէք և նոքա ոչ ունէին զատ (իր ինչ), որ տային նոցա և չարաչար մահուամբ սպանանէին...... յառաջն եբեր (Աստուած) զխաշանց մահ, որ երեկ յարևելից և գնաց մինչև 'ի մուտս արևու, 'ի հիւսիսոյ 'ի հարաւ....: Եւ յետոյ եբեր զմարդկային պատուհասն, որ 'ի սովու կերան զմիմեանս, որ եթող հայրն զորդին և մայրն զդուստրն, եղբայրն զեղբայրն և ուտէին կենդանի (ք) զմեռեալն և ամենեքեան յայլ աշխարհ գնային, և որն որ մեռան և որն որ թուրքացան և այլ ոչ դարձան 'ի յիւրեանց տեղն վասն ծովացեալ մեղաց մերոց: Եւ մին 'ի բազմաց եղկելի գործողս էր, որ առի զընտանիքն իմ և գնացի 'ի Ջղիրէն և մեռան անդ զընտանիքն իմ, կին իմ և դստերքն իմ և մէկ որդին իմ Մկրտիչն և հարսներն իմ և եղբայրն 'ի Տէր Ատումն, որ զայս աւետարանս ծաղկեց և ամենեքեան մեռան ի դարիպութիւն.... գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՌԾԴ. ամի յիշատակ Գուլիարին և Սաղդաթեարին և Սպադիարին....»:

Գ. Աւետարան թղթեայ, անթուական և անյայտ գրողի անունն և տեղն:

Դ. Աւետարան թղթեայ, որի մէջ կան Քրիստոսի բոլոր բժշկութեանց և չորս աւետարանչաց պատկերներն, վերջից ընկած են յիշատակարանն և շատ թերթեր:

Գիւղիս հին եկեղեցու, որի ծածքն փայտաշէն է, փայտեայ սիւնի վերայ. «Իշխանութեան Մէլիք Հախնազարի, պապեր 'ի Քրիստոս յիշեցէք, Հրապետն, որդիք Պալին Սարգիս, հանդուցեալ որդին Տէր Ղազար, մայրն իւր Նարկիզն թվ, ՌՃԼԶ.»: *Արձանագրութիւն* «Սուրբ Աստուածածին բարեխօս տէր Ըստեփաննոսին թվ. ՌՃԺԹ.»:

Սուրբ Գէորգեան միդասեան ուսումնարան, աշակերտք 40, թոշակառու 36. տարեկան ռոճիկ վարժապետին 350 րուբլի:

*Շիպի հանք*—Ամբողջապէս շիպահանք է գիւղիս հարաւային կողմի ահագին լեռն, որից եղած շիպաքարերը փոխադրում էին գործարաններն, որ գիւղիս հարաւ արևմտեան ծայրումն են։ Ապա քարերը վառարաններում այրում էին կրաքարի պէս, յետոյ ջարդում այրուած քարերը և լցնում էին աւազանների մէջ, ջրով լցնում աւազանները, թողնում ամսաչափ, յետոյ հանում աւազաններից, մեծ կաթսաներում եփում զանգուածը. թափում հորերի մէջ, որոց մէջ մնալով լինում էր շիպ։ Բայց մի քանի տարի է որ այլ ևս չեն շինում Փիփեցիք շիպ. այլ դադարեցրած են կառավարութեան հրամանաւ։

*Քարահատի խաչ*. Նոյն Շիպասարի վերայ մի մատուռ է, որի ծածքն փայտաշէն է և որի մէջ ամփոփուած է ոմն յարգելի անձի մարմինն, բայց անյայտ է սուրբ ամփոփեալի անունն։ Ուխտատեղի է։

*Սվրեցիք*. աւերակ գիւղատեղի Փիփիս արևելեան հիւսիսային կողմում, որ գտնուում է մի դալարագեղ և բարձր սարահարթի վերայ։ Շամքոր գետակի աջ կողմի բարձրութեան վերայ։ Տակաւին կայ ընդարձակ եկեղեցու աւերակն, որից մնում է կանգուն միայն խորանի թաղն և երկու փոքր խորաններն։ Խորանի *լուսամուտի հարաւային* կողմում. «Թվ. ՋԻԲ. ես Համզա կանգնեցի գխաչս որդոյ իմոյ Պապլի»։ «Ես Համզա կանգ. գխաչս որդոյ իմոյ Էվատին»։

Աւերակից ներքև, ձորի ձախ կողմում կայ հանգստարան, ուր մի գեղեցկաքանդակ խաչարձանի վերայ. «Սուրբ խաչս Թումանին Պէկլաջին Թվ. Պ.»։ Աւելի ուշագրաւ է սորա մօտ եղած մի խաչարձան. որ ունի գեղեցկաքանդակ պատուանդան [1]), որի վերայ քանդակուած է մի գութան իւր մաճկալով, մաճկալեղբայրով և հօտաղներով, եզներով և գոմէշներով, և մի ճաշաբեր հարսն, որ կերակրով լի կաթսան իւր գլխին դրած, գութանաւորների համար կէսօրուան ճաշ է բերում։ Սորա խաչարձանի վերայ.

[1]) Երկարութիւնն 1 մետր 10 սանթիմ, լայն. 95 ս.։

«Սուրբ խաչս բարեխաւս Գիչնին. կանկնե....» (43) Ափսոս որ եղծուած են կէտագրեալ բառերն։ Այլ քարի վերայ. «Սուրբ խաչս Հուռիփսիմի Մարտիրոսին»։

*Մաղթում զատէ*. Հանգստարանից ներքեւ նոյն ձորի աջ կողմում, գետակահայեաց լանջի վերայ, մի տեսարանաւոր սարահարթում հանգստարան եւ աւերակ մատուռ։ Մատրանս մէջ, որ բուսած է մի տխկի ծառ, կայ երկու խաչարձան. մէկի վերայ. «Սուրբ խաչս բարեխաւս Խամբկի ՆՀԳ.»։

*Խորհրդաւոր մահարձան*. Հանգստարանումս մի գերեզմանաքարի վերայ շինուած է գուլթան իւր պարագայիւք, սազ անող, թմբուկ զարկող. սեղան պատրաստող կին, պարող մարդիկ. գինու կուլան ձեռնին, իսկ իշխան ոմն իւր աջ ձեռնով բռնած բաժէն եւ ձախովն գինու թասը։ Սորա մօտ կոնգ, գինաման եւ կենդանի խոյ։ Քարիս արեւելեան երեսին կայ մի աճագին արծիւ, որ բարձրացնում է մի գառն։ Ափսոս միայն որ չունի արձանագրութիւն։ Սորա մօտ *այլ քարի վերայ*. «Ես Եղոմ կանգնեցի խաչս Նատարին»։

*Րուսկան* (գուցէ Ոսկան) *նահատակ*. Փայտաշէն մատուռ Փիփի հիւսիսային կողմում, գետակահայեաց լանջի վերայ։ Մատրանս մէջ կայ տապան, որի վերայ կանգնած է մի մեծ քարեայ խաչարձան, որ ուխտատեղի է։

*Հին-Փիփ գիւղ*.

Տամքոր գետակի աջ կողմում, աւերակ է այժմ։ Այս տեղից խոխագրուած են Փիփի բնակիչներն Նոր-Փիփ. բայց անարատ մնում է եկեղեցին, որ շինուած է երկու կամարների վերայ։ Աւագ խորանի աջ ու ձախ կողմերում կան երկու ծակեր, որք գաղտնի պահարաններ են։ Հոյակապ տաճարիս [1]) երկարութիւնն է 26 մետր 35 սանթիմ, լայնութիւնն 12 մետր 70 սանթիմ, պատի հաստութիւնն 2 մետր 40 սանթիմ։ *Աւազանի վերայ*. «Յիշեցէք ի Քրիստոս Տատուրն և կողակիցն իւր Մարեան թվ. ՌՃԺԹ.»։ Հիւսիսային փոքր խորանի դռնագլխին. «Յիշեցէք ի Քրիստոս Գաւրկին և

---

[1]) Սուրբ տանս հիւսիսային կողմումն է հանգստարանն։

Digitized by Google

Տատուրն... Առաքեալն և որդին իւր Յովհան»։

*Դրան վերայ.* «Կամաւն Աստուծոյ մեք Փիփեցոց ժողովուրդս միաբան շինեցաք զեկեղեցիս 'ի հայրապետութեան տեառն Պետրոսի (Ալուանից) ձեռամբ Սարգիս վարդապետին, յիշխանութեան Մուրթուզա-Ղուլի խանին. յիշեցէք 'ի Քրիստոս տանուտէր Վարդանէսն և կողակից Մարեան»։

*Բարսամ ճգնաւոր.* Այսպէս են անուանում մատուռը, որ կայ եկեղեցուն հարաւային կողմում։ Մատրանս մէջ կայ երեք գերեզման, երկու տապանաքարերի վերայ չկայ արձանագրութիւն. միայն երրորդի վերայ. «Ես Մաղաքայ եպիսկոպոս կանգնեցի զխաչս հաւր.. եղբաւրն իմոյ տէր Պար..մարհ եպիսկոպոսին թվ. ՃՋ.»։

*Օխտը եղցի կամ Քարահերձ* (44)

Տիպասարեցն դէպի Տամքոր գետակն երկարած է մի լեռնաբազուկ, որի հիւսիսահայեաց ծայրի քերծի ճակատում փորուած են եօթը քարայրներ և քարուկիր պատով պատուած բաց տեղերն։ Քերծս և քարայրներս շրջապատուած են թանձր անտառներով։ Քարայրներս բոլորն ևս եկեղեցի չեն, այլ միայն երկուսն, որոց մէջ մնում են վէմ և սեղան քարերն ցարդ։ Վիմահերձի ճակատով շինուած է ուղի, որ տանում է այրերն։ Ուղիղ Զարեք բերդի հարաւային հանդէպ են քարայրներս, որոց արևելեան կողմում կայ պատուական աղբիւր, որից խմած և գործածած են այրերումս նստող կաթուղիկոսներն։

*Աղիւսաշէն.* Մի գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր եկեղեցի է այս անուամբ, որ գտնուում է Քարահերձից վերև նոյն լեռնաբազկի վերայ։

## ԳԱՐԴՄԱՆ ԱԻԱՆ (45)

Գտնուում է Աղիւսաշէն աւերակի արևմտեան հանդէպ Գարդման վտակի [1]) ձախ կողմում։ Այս էր աչհա Գարդման գաւառիս գաւառագլուխն, որի անուամբ ամբողջ գաւառս

[1]) Այս է Տամքոր գետակի արևելեան մեծ օժանդակն. որ խառնուում է Զարէք բերդի ստորին կողմում։

կոչուած է Գարդման, և գաւառիս իշխանաց աթոռանիստ աւանն։ Այժմ աւերակ է աւանս և Թրքաբնակ և կոչուում է Գրթմանիկ։ Կիսաւեր եկեղեցու արևելեան որմի արտաքին երեսին վերայ քանդակուած է մի խաչքար։ Իսկ հարաւային կողմում՝ մի քանի քայլ հեռաւորութեամբ՝ գտնուում են 7 հատ ցից, ահագին և նշանաւոր մահարձաններ, որք միատեսակ են և մօտ առ մօտ. յորոց միոյն վերայ փորագրուած է. «Կանգնեցաւ խաչս Քրիստոսի Թ. ՌՄՂԱ.»։ Եղծուած են գրեթէ և անընթեռնլի միւս 6 մահարձանների գրութիւններն։

*Սըբլթոն*. Գարդման աւանիս հարաւային կողմում փոքր ինչ հեռի կայ մի ուխտատեղի Սրբլթոն անուն, որ մի փոքրիկ մատուռ է և որն բնաւ չունի արձանագրութիւն։ Բայց մատրանս մօտ կայ մի մահարձան, $3^{1}/_{2}$ մետր բարձր, որի վերայ փորագրուած է «Այս է տապան սուրբ Սրապիոնի Թոռն մեծին Սամորին մեծին Սատին [1]) Թ. ՁՁ.»։ Լայնածաւալ հանգստարան կայ մատրանս մօտ, որի մէջ են գեղեցիկ մահարձաններով զարդարուած շատ գերեզմաններ։

*Դղում-ըլուր*. (Ղաբաղ Թափէ) ընդարձակ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որք կան Գարդման աւանից բաւական վերև։ Դեռ կանգուն է ընդարձակ եկեղեցին, որ կառուցեալ է 4 սիւների վերայ։ Տաճարիս, որի դուռն հարաւային կողմից է, մի սիւնի վերայ գրուած է. «Ես Խոսրովս Թվ. ՌՃԽԱ.»։ Միւս սիւնի վերայ գրուած է. «Ի Թ. ՌՃԾԵ.»։ Տաճարս հօյակապ է, որ ունի 21 մետ. երկ. 13 լայն.։ Այժմ մահմետականներ են բնակում գիւղումս։

## ԱՐՈՒԹԻՒՆԱՑ (46) ՍԱՐ (տճկ. Ղոչ-ղարա) 11085 ոտք

Մի հսկայ, բոլորակաձև և գեղեցիկ սար, որ գրեթէ Մռաւեան և Գեղամեան բարձր լեռնաշղթայի խառնուրդի շարքից դէպի հիւսիս դուրս ելած, առանձնացած է, բայց մի հսկայ լեռնասեռով կցուած է նոյն լեռնագօտու խառ-

[1]) Գուցէ Սադունին։

Digitized by Google

նուրդին և վեհանձնաբար արձանացած Գարդման գաւառիս լեռնամասում։ Համարեա՛ թէ իւր շրջապատի բոլոր բարձր լեռներից ամենասիրունն է։ Հինգ ժամ է տևում մինչև սարիս գագաթն բարձրանալն և երեք ժամ՝ իջնելն։ Զորս կալաչափ տեղի մեծութեամբ տափարակ է սարիս կատարն, որի վերայ կայ մի գերեզման, որի շուրջն շարուած են շատ քարեր։ Այս երևոյթն ենթադրել է տալիս թէ մատուռ եղած լինելու է վաղուց այստեղ։ Գերեզմանիս մօտ կայ մի լճացեալ ջուր, որ անկասկած գոյացած է ձիւնից և անձրևից. սակայն անպակաս է ամառ. ձմեռ ջուրն լճակիցն։ Քանի՜ ուշագրաւ է գագաթիս տեսարանն, քանի՜ գեղեցիկ և անբացատրելի է դիրքն. անթերի՜ զուարճութիւնն և բարձրաթռի՜չ այցելուի սլացող միտքն....։

Սարիս լանջերից և ստորոտներից բղխում են հետևեալ գետակների բուն սկզբնական ակունքներն։

Ա. Գանձակ գետակի մի մասն։

Բ. Արութիւնայ վտակն, որ հոսում է Բանանց գիւղի մօտով։

Գ. Գարդման վտակն։

Դ. Փառիս վտակն, որ հոսում է փառիսոսի վանքի արևելեան կողմով, բաժանում Գարդման և Փառիսոս գաւառներն իբր սահմանագլուխ և ապա միանում Տամքոր գետակին Զոխտակ կամրջի (Դօշա քեօրփի) մօտ։

*Աղի շէն*. այժմ աւերակ է, բայց եկեղեցին կանգուն է։ Աւերակ գիւղս, եկեղեցիս և հանգստարանս գտնուում է Փառիսոսի վանքի արևելեան հանդէպ, Փառիսոս վտակի աջ կողմի բարձրութեան վերայ։

## ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա. *Ղալա* անուն բերդակ, որ կայ Ոսկանապատից մօտ մի մղոն վերև նոյն գետակի ձախ ափին։ Քարուկիր և գրեթէ քառակուսի է բերդակս, որ ունի չորս աշտարակ և մի դուռն։ Փոքր է, բայց ունի գեղեցիկ դիրք, հաստատուն

պարիսպ և յարմար տեղ։ Երևի թէ գետակի կողմում ունեցած է կրկնապարիսպ, որ փոքր ինչ ցած է բուն պարսպից և ունի քարուկիր շինութիւն և բնակարան իբր տուն։

Բ. *Մլզնաքերդ կամ Մածնաքերդ* (47)

Գտնուում է Համանուն վանքի հիւսիսային հանդէպ, ձորի միւս կողմում։ Իւր շրջապատից առանձնացած է նաև բերդասարս, որի հարաւային և արևելեան կողմերն վիմահերձ և բարձրագոյն ապառաժներ են, հիւսիսային կողմն անմերձենալի սարալանջ, իսկ արևմտեան կողմն ունի հաստատուն պարիսպ երեք ամուր աշտարակներով։ Ունի միայն մի դուռն արևմտեան կողմից և բաւական մեծութիւն, որի մակերևոյթն թեքուած է հարաւից հիւսիս։ բերդիս վերնամասում [1]) կայ հանգստարան և բնակարանների շատ աւերակ։ Ստորին մասում կայ յատկապէս միջնաբերդ, որը տեղացիք անուանում են *Նարին-Ղալա*, որ ունի առանձին պարիսպ և մուտք։ Մեծ ուշադրութեամբ ամրափակուած են քարուկիր պատերով կասկածաւոր տեղի կիրճերն. վերջապէս նշանաւոր ամրոցներից մին է բերդս և շատ հին։ Բերդիս հիւսիսային մասում կայ մի բարակ ջուր, սակայն երևի թէ բնակիչք չեն բաւականացած ջրովս, այլ խեցեղէն խողովակներով ջուր բերած են արևմտեան կողմից։ Կարծես թէ եղած է և քաղաք։ այժմ հերկում են Հարցհանգիստ գիւղի բնակիչներն բերդիս մէջը և հետզհետէ քայքայուում են պատերն։

Գ. *Ղըզ-Ղալա* բերդակ, որ կայ Նիւկզար գիւղի արևելեան կողմում, մի սարի վերայ, որ բաւական հնաշէն է։

Դ. *Կեռստավանք բերդ*.

Հիմնուած է Տամքոր գետակի աջ կողմի բարձրութեան վերայ Բուսկան նահատակից փոքր ինչ ներքև։ Բերդիս տեղն թեքուած է դէպի գետակն, իսկ երկու կողմերն՝ ձորեր են։ Ունի շրջապարիսպ, որից այժմ տեղ տեղ քանդուած է կամ լաւ ևս է ասել մնում է պարսպի ստորին մասն և քարու-

[1]) Բարձր են վերնամասիս հարաւային և հիւսիսային ծայրերն, իսկ փոս միջավայրն։

կէր շինութեանց բեկորներ։ Ոմանք կարծում են թէ վանք եղած է այս, իսկ այլ ոմանք թէ՝ բերդ է։ Մենք հաւանական ենք համարում վերջին կարծիքս. քանզի ժամանակաւ մեծ ճանապարհ եղած է գետակիս ձորովն Գեղամայ լճի արեւելեան ափի վերայ, վասն որոյ Զարէք բերդն շինուած է գետակիս ձախ և բերդս աջ ափերի վերայ՝ թշնամեաց մուտքը արգիլելու համար։

## ԺԷ. ՓԱՌԻՍՈՍ ԳԱՒԱՌ.

Գաւառիս սահմաններն են արևելքից Տամքոր գետակն և Փառիս օժանդակն, հարաւից՝ Գեղամեան լեռնաշղթայի գագաթնագիծն, արևմուտքից՝ Տաւուշ գետակի արևելեան օժանդակն և հիւսիսից դաշտաբերանն։

*Այցելու սուրբ* (Փիրնազար) երկու աւերակ եկեղեցիներ, որք կան Տանձուտից բաւական վերև։ Մերձաբնակ պարսիկ բնակիչներն մեծ յարգանքով են վերաբերուում *ուխտ* անելով և *մոմեր* վառելով աւերակներիս քարերին և յարգանքով արտասանում *Փիր-Նազար*։

*Տանձուտ աւերակ*. Գտնուում է Փառիս վտակի ձախ ափի վերայ, Ատի շէն աւերակի հանդէպ։ Խիստ ընդարձակ է գիւղիս աւերակն և հանգստարան. և ս առաւել եկեղեցին, որ հիացնում է այցելուները իւր հոյակապ շինութեամբ և մեծութեամբ։ Կառուցեալ է վեց սիւների վերայ. ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու գեղեցիկ խորհրդարան, երկու դուռն հարաւից և հիւսիսից. 27 մետր երկարութիւն, 15 մետր 60 սանթիմ լայնութիւն։ Այժմ խոնարհուած է աւագ խորանն, ձախակողմեան դասի կամարով միասին և փոքր ինչ տեղ տաճարիս արևմտեան հիւսիսային անկիւնից (ձեղունից). չունի արձանագրութիւն։

### ՓԱՌԻՍՈՍԻ ՎԱՆՔ.

Հիմնուած է Տանձուտիցս փոքր ինչ վերև մի պատուական և անտառապատ սարահարթի [1]) վերայ։ Արևմտեան

[1]) Սարահարթս ունի բոլորակ ձև, միջակ մեծութիւն։

պարիսպ և յարմար տեղ։ Երևի թէ գետակի կողմում ունեցած է կրկնապարիսպ, որ փոքր ինչ ցած է բուն պարսպից և ունի քարուկիր շինութիւն և բնակարան իբր տուն։

Բ. *Մլզնաբերդ կամ Մածնաբերդ* (47)

Գտնուում է Համանուն վանքի հիւսիսային հանդէպ, ձորի միւս կողմում։ Իւր շրջապատից առանձնացած է նաև բերդասարս, որի հարաւային և արևելեան կողմերն վիմահերձ և բարձրագոյն ապառաժներ են, հիւսիսային կողմն անմերձենալի սարալանջ, իսկ արևմտեան կողմն ունի հաստատուն պարիսպ երեք ամուր աշտարակներով։ Ունի միայն մի դուռն արևմտեան կողմից և բաւական մեծութիւն, որի մակերևոյթն թեքուած է հարաւից հիւսիս։ բերդիս վերնամասում [1]) կայ հանգստարան և բնակարանների շատ աւերակ։ Ստորին մասում կայ յատկապէս միջնաբերդ, որը տեղացիք անուանում են *Նարին-Ղալա*, որ ունի առանձին պարիսպ և մուտք։ Մեծ ուշադրութեամբ ամրափակուած են քարուկիր պատերով կասկածաւոր տեղի կիրճերն. վերջապէս նշանաւոր ամրոցներից մին է բերդս և շատ հին։ Բերդիս հիւսիսային մասում կայ մի բարակ ջուր, սակայն երևի թէ բնակիչք չեն բաւականացած ջրովս, այլ խեցեղէն խողովակներով ջուր բերած են արևմտեան կողմից։ Կարծես թէ եղած է և քաղաք։ այժմ հերկում են Հարցհանգիստ գիւղի բնակիչներն բերդիս մէջը և հետզհետէ քայքայուում են պատերն։

Գ. *Ղըզ-Ղալա* բերդակ, որ կայ Նիւկզար գիւղի արևելեան կողմում, մի սարի վերայ, որ բաւական հնաշէն է։

Դ. *Կեռատավանք բերդ*.

Հիմնուած է Տամքոր գետակի աջ կողմի բարձրութեան վերայ Բուսկան նահատակից փոքր ինչ ներքև։ Բերդիս տեղն թեքուած է դէպի գետակն, իսկ երկու կողմերն՝ ձորեր են։ Ունի շրջապարիսպ, որից այժմ տեղ տեղ քանդուած է կամ լաւ ևս է ասել մնում է պարսպի ստորին մասն և քարու-

---

[1]) Բարձր են վերնամասիս հարաւային և հիւսիսային ծայրերն, իսկ փոս միջավայրն։

կեր շինութեանց բեկորներ։ Ոմանք կարծում են թէ վանք եղած է այս, իսկ այլ ոմանք թէ՝ *բերդ* է։ Մենք հաւանական ենք համարում վերջին կարծիքս. քանզի ժամանակաւ մեծ ճանապարհ եղած է գետակիս ձորովն Գեղամայ լճի արեւելեան ափի վերայ, վասն որոյ Զարէք բերդն շինուած է գետակիս ձախ և բերդս աջ ափերի վերայ՝ թշնամեաց մուտքը արգիլելու համար։

## ԺԷ. ՓԱՌԻՍՈՍ ԳԱՒԱՌ.

Գաւառիս սահմաններն են արևելքից Տամքոր գետակն և Փառիս օժանդակն, հարաւից՝ Գեղամեան լեռնաշղթայի գագաթնագիծն, արևմուտքից՝ Տաւուշ գետակի արևելեան օժանդակն և հիւսիսից դաշտաբերանն։

*Այցելու սուրբ* (Փիրնազար) երկու աւերակ եկեղեցիներ, որք կան Տանձուտից բաւական վերև։ Մերձաբնակ պարսիկ բնակիչներն մեծ յարգանքով են վերաբերուում *ուխտ* անելով և *մոմեր* վառելով աւերակներիս քարերին և յարգանքով արտասանում *Փիր-Նազար*։

*Տանձուտ աւերակ*. Գտնւում է Փառիս վտակի ձախ ափի վերայ, Ատի շէն աւերակի հանդէպ։ Խիստ ընդարձակ է գիւղիս աւերակն և հանգստարան. ևս առաւել եկեղեցին, որ հիացնում է այցելուները իւր հոյակապ շինութեամբ և մեծութեամբ։ Կառուցեալ է վեց սիւների վերայ. ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու գեղեցիկ խորհրդարան, երկու դուռն հարաւից և հիւսիսից. 27 մետր երկարութիւն, 15 մետր 60 սանթիմ լայնութիւն։ Այժմ խոնարհուած է աւագ խորանն, ձախակողմեան դասի կամարով միասին և փոքր ինչ տեղ տաճարիս արևմտեան հիւսիսային անկիւնից (ձեղունից). չունի արձանագրութիւն։

### ՓԱՌԻՍՈՍԻ ՎԱՆՔ.

Հիմնուած է Տանձուտից փոքր ինչ վերև մի պատուական և անտառապատ սարահարթի [1]) վերայ։ Արևմտեան

[1]) Սարահարթս ունի բոլորակ ձև, միջակ մեծութիւն։

կողմում բարձրացած է Հովուի սարն (Չօպան-դաղի) սարահարթիցս վերև, որի եզերքներով շրջապատուած է ամուր պարիսպ, որ այժմ կիսաւեր է, որի մէջ կայ երեք եկեղեցի։

Ա. շինուած է արևելեան կողմում. Բ-ն՝ մէջ տեղում. Գ-ն՝ արևմտեան կողմում, համարեա թէ մի շարքի վերայ։ Բ. և Գ. տաճարներն ունին երեք սիւնով կամարակապ գաւիթ. իւրեանց հարաւային կողմում, իսկ Գ. տաճարն իւր դռնագլուխ քարի վերայ ունի. «Մուսէս երէց»։ Միջի եկեղեցին աւելի մեծ է միւսերից։ Երեքն ևս հին շինուածք են, որոց դռներն բացուած են հարաւային կողմից։ Արևելեան տաճարս ևս ունի փոքրիկ գաւիթ, որի մօտ է զանկատունն, որ շինուած է սրբատաշ չիչ քարով. չիչ քարով շինուած են բոլոր տաճարների և սրահների անկիւնաքարերն և կամարներն. իսկ մնացեալ մասերն անտաշ քարով։ Բ. և Գ. տաճարներն ունին 25 մետր երկարութիւն և 11 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Ամբողջապէս կանգուն են տաճարներս. բայց աւերակ են միաբանից բոլոր խուցերն։ Շատ գերեզմաններ կան թէ պարսպից ներսումն և թէ դրսումն, սակայն չգտանք գրութիւն։ Վանքիս մօտ երևում են ջրաւազան և խեցեղէն խողովակների հետքեր, արևմտեան կողմի աղբիւրի ջուրն բերուած է վանքս։

*Ջոխտակ-կամուրջ.* Գետաբակի երկաթուղու վերջին կայարանն է այս, որ կայ Փառիսոս և Շամքոր վտակների խառնուրդի մէջ։ Կայարանումս դիզուած են խարոյկներով փայտ և ահագին ամբարներով ածուխ, որք հետզհետէ փոխադրւում են Գետաբակի և Փառիսոսի գործարաններն պղնձաքարերը հալելու։

Երկաթուղու գիծն վերջացած տեղի արևելեան հանդէպ վտակի աջ կողմի բարձրութեան վերայ կայ մի եկեղեցի, որի գլուխն խոնարհուած է։

## ՓԱՌԻՍՈՍ ՔԱՂԱՔ (Ղալաքեանդ) (48)

Շինուած է Շամքոր գետակի աջ ու ձախ ափերի լանջերի վերայ Ջոխտակ կամրջից մօտ երեք մղոն վերև։ Բաւա-

Digitized by Google

կան ընդարձակ է աւերակիս ծաւալն. բնակչաց ոքքանութիւնը մօտաւորապէս գիտենալու համար՝ բաւական է յայտնել, թէ աւերակ քաղաքումս կայ տասնևմի եկեղեցի, երեքն գետակի աջ ափի վերայ, յորոց մին կանգուն է և երկուսն կիսաւեր. իսկ ութն շինուած է գետակի ձախ կողմումն, որից կանգուն են՝ երկուսն և աւերակ՝ վեցն։ Աւերակների հիմքերն պարզապէս երևում են և շատ տարի չէ որ քանդած են, ինչպէս վկայում են ականատեսներն։ Մայր եկեղեցին հիմնուած է գետակի ձախ ափի վերայ, որը մի քանի տարի առաջ քանդած [1]) և սորա քարերով շինած են խանութներ։ Աւերակ տաճարիս երկարութիւնն է 15 մետր, լայնութիւնն 11 մետր 50 սանթ. և գտնուում է այժմեան խանութների մօտ։ Դեռ պարզապէս նշմարուում են խիտ առ խիտ տնաբակեր և քարուկիր շինութեանց շատ հետքեր։ Աւագ եկեղեցուս արևմտեան կողմում, ոչ այնքան հեռի, երկաթուղու գծի տակ կայ երկու քարեայ խաչարձաններ. արևելեան խաչարձանի վերայ.

«Թվին ՉԻ. յանուն Աստուծոյ ես Հայրապետ . . ևա . . . եղբայր Փա կանգնեցաք զխաչս յիշատակ հաւր մերոյ Խորենայ, մաւր մերոյ Ծաղակկոյ ու եղբաւր մերոյ Խայոմթենիշայ, ով զայս գիրս կարդայ . . . [2])»։

Արևմտեան խաչարձանի վերայ. [3])

«Թվ. ՉԼ. յանուն Աստուծոյ ես Սասնայս կանգնեցի զխաչս 'ի տէրութեան ժամանակի իմոյ՝ յիշատակ ինձ և ծնողաց իմոց և ամուսնոյն իմոյ Սիրունիկայ և որդւոյ իմ Սարգիսայ և դստերն իմոյ Մամա Խաթունայ, Նփաղհաճայ եղբաւրն Սիրունիկայ. կանգնեցաւ խաչս բարեխաւսութեան հոգոց մերոց։ Ով կարդայ այս. Դաւիթս յիշեսցէ առ Աստուածչըհեց.... (շինող վարպետի անունն է Դաւիթն)»։

Այժմ անմարդաբնակ է քաղաքս, բայց ամրան երեք ամիսներում հաւաքուում են այստեղ մի քանի վաճառական-

1) Տակաւին մնում են հիմքն և խորանի կլորակն

2) Անընթեռնլի են կետադրեալ բառերն։

3) Ունի 2 մետր 75 սանթ. երկար։ 1 մետր. 22 սանթ. լայնութ.

Digitized by Google

ներ՝ գարբին, պայտառ, դերձակ և այլ արհեստաւորներ՝ ամարանոց բարձրացողների պէտքերը հոգալու և շահուելու համար։

*Սուրբ Յովհաննէս.* Քարուկիր փոքր եկեղեցի, որ կայ Փառխոս քաղաքի աւերակի արևելեան հանդէպ գետակի աջ կողմի բարձրութեան վրայ, մի գեղեցիկ հարթակի վերայ։ Տաճարիս երկարութիւնն է 8 մետր 27 սանթիմ, լայնութիւնն 5 մետր 5 սանթիմ։ Փոքր ինչ ծակուած է հարաւային դասի առաստաղից։ Արտաքուստ արևմտեան մի կանաչագոյն խաչքարի վերայ. «Թվ. ՇԾԵ. (1106) ես Վա..... (անընթեռնլի)»։ Դրան մօտ այլ խաչքարի վերայ. «Թվ. ՋԻ.»։ Ունեցած է և շրջապարիսպ և միաբանից խուցեր, բայց կործանուած են, մնում են միայն գերեզմաններ։

Եկեղեցուս արևմտեան կողմում, փոքր ինչ վար լանջի վերայ կայ մի փոքրիկ մատուռ շինուած անտաշ քարով, որի մէջ կայ մի գերեզման, բայց անարձանագիր է քարն, որ կոչուում է *Ծզնաւորի գերեզման*։

Աւերակ *գիւղատեղիներ, եկեղեցիներ* և *հանգստարաններ* կան Ղարա-Բուլաղ, Սաբէթ-Կէչմազ և Ջալ-դաղ կոչուած տեղերում, որք գտնուում են Փառխոս քաղաքիս հիւսիսային կողմում։

*Գարզար աւերակ* գիւղ Փառխոս քաղաքի հիւսիս-արևմտեան կողմում, ջրաձորի աջ լանջի վերայ, ուր կայ կիսաւեր եկեղեցի և հանգստարան։ Այժմ մահմետականներ են բնակում այստեղ և կոչում են գիւղս *Գեառզեառ*։

*Փոքր-Ղարա-Մուրատ* [1])

Գարզար գիւղիս արևմտեան հանդէպ, վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ Հայոց գիւղ, այժմ թրքաբնակ, բայց կայ կիսաւեր եկեղեցի և հանգստարան։

*Մեծ-Ղարա-Մուրատ*, որ կայ նոյն վտակի ձախ կողմի լանջին վերայ։ Այստեղ կայ երկու եկեղեցի, մինն խիստ ընդարձակ, հոյակապ, կանգուն և միւսն փոքր և կիսաւեր՝

[1]) Գիւղերիս բնակիչներն Վրաց վերջին Հերակլ թագաւորի օրով գաղթած և բնակութիւն հաստատած են Շուլաւերում։

մօտ առ մօտ։ Վեց սիւների վերայ շինուած է մեծ եկեղեցին, որի մէջ մնում են վէմ և սեղան քարերն։ Խորանի ճակատին. «Շինեցաւ սուրբ տաճարս ձեռամբ անարժան Ջուղայեցի ուստա Մուսէսին որդի Եռկարին զաւակ Սողոմոնին՝ հրամանաւ Փիլիպոս կաթուղիկոսին եկի շինեցի սուրբ եկեղեցիս Ղարամուրատին Հայոց թվին ՌՁԳ. ով կարդաք, ողորմի Մուսէի յիշեցէք 'ի Տէր, Աստուած ձեզ յիշէ, ամէն»։ Ձախ փոքր խորանի ճակատին. «.... թվին ՌՁԳ. էր... և եկեղեցի.։. Սաւիկն և հայրն Վելիճանն և որդին Ղարա մուրատն, Ղուկասն և դուստրն իւր Գուլաղէն, Զաքարի հայրն Վելիճան, կողակիցն իւր Գուլդանէն, որդին իւր Աջամն, Հախնազարն, Ովանէսն յիշեցէք և Աստուած ողորմի սաէք»։ Փոքր ինչ սորանից ներքև. «Սուրբ սեղանի քարն յիշատակ է Ըռստոմին, իւր եղբայր Եվազին, Պարոնին, իրենց մայր Խաթունին թվ. ՌՁԳ»։ Գիւղիս, եկեղեցուս և հանգստարանիս ծաւալից այցելուն եզրակացնում է թէ Մեծ-Ղարա-Մուրատս գիւղաքաղաք եղած է։ Այժմ թրքաբնակ է և այս։ Խոնարհուած է փոքր եկեղեցու առաստաղն։ Դռան վերայ. «Շնորհիւ Աստուծոյ ես Ովանէս վարդապետս, որդի պապաշխարողի շինեցի զեկեղեցիս (անապատ կուսանաց) արդեամբ զուիք (գոյիւք) ամենայն քրիստոնէից՝ յիշատակ ինձ և ծնողացն իմոց և ամենայն աշխատողաց 'ի մայրապետութեան անապատիս Թագուհւոյն և Կայինային 'ի ՌձԾ. թվ.»։

Կիսաւէր Անապատ Մեծ Ղ.-Մուրատիս արևելեան հանդէպ փոակի աջ կողմի հարթի վերայ, որի մօտ կայ հանգստարան և խուցերի աւերակ և մի երկար քարեայ սիւն, որ ընկած է գետնի վերայ, բայց կրում է խաչ նշան և հակիրճ արձանագրութիւնս «Սուրբ Սարգիս»։

## ԽԱՄՇԻ ՎԱՆՔ (49)

Հիմնարկուած է աւերակիս կամ սիւնիս արևելահիւսիս կողմում մի ձորահովտում։ Կառուցեալ է սրբատաշ քարով երկու սիւների վերայ սագաշէն, որ կանգուն է բոլորովին և

որի երկարութիւնն 15 մետր 5 սանթիմ, լայնութիւնն 9 մետր 60 սանթիմ է։ Դրան վերայ արտաքուստ. «Սուրբ խաչս Մար..... (եղծուած է)»։ Սորա հիւսիսային կողմում. «սուրբ խաչս Ամիրխանին»։ Վանքս իւր հիւսիս-արեւելեան անկիւնում ունի երկյարկ զանգատուն շինուած համակ սրբատաշ քարով։ Թափուած են ինչպէս վանքիս տանեաց նոյնպէս և զանգատանս սալկախներն։ Վերջնոյս գետնայարկում աստիճանաւոր պատուանդանի վերայ հաստատուած է մարդաչափ բարձրութեամբ մի քարեայ խաչ՝ յար և նման Յիսուս Քրիստոսի խաչափայտին, որի հարաւային և հիւսիսային թեւերի վերայ. «Յիսուս Քրիստոս» և գագաթնահայեաց ստորոտում. «Թվ. ՌՃԸ.»։ Անյագ նայում է այցելուն, զմայլում և միանգամայն զարմանում խաչիս նուրբ քանդակագործութեան գեղարուեստի ճարտարութեան վերայ։ Խաչիս մօտ մի այլ քարի վերայ կայ երկար արձանագրութիւն, բայց մահմետականք ջարդած են քարս և արած միջից երկու բաժին։ Անկարող եղանք գտնել կէսը, որ միմեանց մօտ բերէինք և ընդօրինակէինք։

Վանքս ունեցած է և շրջապարիսպ, միաբանից սենեակներ, որք աւերուած են այժմ, միայն մնում հանգստարանի տապանաքարերն։

*Փնտխլու* կամ Նոր-Սարաթովկա, գիւղս մինչդեռ կանխաւ եղած է հայաբնակ, այժմ մալականաբնակ է և հիմնուած Չակամ գետակի արեւմտեան օժանդակի ձախ ափին։ Սակայն մնում է հանգստարանն, որ ունի խիստ երկար (մի քար 3 մ. երկար է) տապանաքարեր և կիսաւեր եկեղեցին, որի երկարութիւնն 18 մետր, լայնութիւնն 11 մետր է։

Գիւղից Բաշ-գեղ տանող ճանապարհի վերայ կան հետեւեալ հնութիւններն.

Ա. Մի փոքր եկեղեցի, հանգստարան և գիւղատեղի կայ ճանապարհի արեւելեան եզրի մօտ։ (Թուցէ այս է Սուլթանէ գիւղն, որի մասին տես Բանանց գիւղի Թ. աւետարանի յիշատակարանը)։

Digitized by Google

Բ. Սորանից գրեթէ նոյնչափ վերև ճանապարհի արևմտեան եզրում է Մէլիք-զատա գիւղի աւերակն, մի մեծ և մի փոքր կիսաւեր եկեղեցի և խիստ լայնածաւալ հանգստարան (50)։

Գ. այլ անանուն գիւղատեղի, հանգստարան և աւերակ եկեղեցի, որ կայ Բաշ-գիւղից ներքև։

Ա. Բաշ-գեղ. Հիմնուած է մի սարի [1]) հարաւահայեաց լանջի վերայ. բնակիչք տեղափոխուած են այստեղ Զորաթան գիւղից, հողն արքունի, սակաւ, լեռնային, անջրդի, բայց հացատու և յարմար անասնապահութեան, տեղական բերքերն՝ ցորեն, գարի, գարնանի, հաճար, ոչխար առատ, կով, եզն, գոմէշ. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 112 տարի. եկեղեցին նորաշէն, Սուրբ Մինաս, ծածքն փայտաշէն, «Անուն Սրբոյն Մինասայ շինեցաւ եկեղեցիս արդեամբ ժողովրդոց Բաշքեանդի 1872 ամի մայիս 5-ին»։ Քահանայ 2 ծուխ 115, ար. 804, իգ. 639։

Գիւղիս նախկին բնակչաց եկեղեցին Սուրբ Յովհաննէս անունն, ծածքն փայտաշէն, որի մէջ փոքր խորանում. «Թվ. ՌԾՁ.». Այս է եկեղեցւոյ շինութեան թուականն։ Մի կիսատ խաչքարի վերայ. Սիմոն, Տէր Մխիթար, Ջանէ հանգուցեալ ի Տէր»։ «Սուրբ խաչս բարեխաւս Սահակի կին Եղիսաբէթին»։ Նախկին բնակչաց հանգստարանում կայ մինչև 700 տարուան, այս է Հայոց ՈԽԳ. թուականից արձանագրութիւն։

Գիւղիս շրջականերում կան հետևեալ աւերակներն.

Ա. *Փարա-գիւղ*, որի մէջ կայ և եկեղեցի և մօտն հանգստարան՝ Բաշ—գիւղիս արևելեան կողմում։

Բ. *Աղքիլիսա* (սպիտակ եկեղեցի), ուր կայ գիւղատեղի, հանգստարան և մեծ եկեղեցի։ Աւերակներումս, որ գտնուում են գիւղիս հարաւային կողմում. բնակում են մալականներ։

Գ. Փոքր և աւերակ եկեղեցի, որ գտնուում է Աղ-քիլիսայից փոքր ինչ հեռի։

[1]) Սարս գրեթէ գտնուում է Զակամ գետակի և Ցաւուշ գետակի արևելեան օժանդակի (Ախնջի) միջև։

Digitized by Google

Դ. *Կարմիր վանք* (Ղզըլ-քիլիսա), որ շինուած է կարմիր քարով Աղ-քիլիսի հարաւային կողմում. Բաբաջան անուն վտակի ձախ ափում. մի բարձրագոյն ժայռի վերայ։

Ե. Այլ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի Կարմիր վանքի արևմտեան կողմում։

Զ. *Բաբաջան* գիւղատեղի, եկեղեցի և հանգստարան, Կարմիր վանքից ներքև նոյն վտակի ձախ կողմում։

Է. *Ծմող գիւղատեղի*, հանգստարան և եկեղեցի, Բաշգեղի արևմտեան կողմում Ծմղ կոչուած տեղում։

## ՀԻՆ-ԳԵՏԱԲԱԿ

Հիմնուած է Ծամքոր գետակի ձախ կողմում մի ձորի հարաւահայեաց լանջի վերայ, որի նախկին բնակիչներն առհասարակ եղած են հայ։ Այժմ ևս այստեղ է Հայոց սուրբ Գէորգ եկեղեցին, մեծ հանգստարանն, շուկան, խանութներն և շատ կանգուն տուներ։ Այստեղ եղած է և ուրիշ մի եկեղեցի Հայոց, որը քանդել տուած է պղնձահանքի կառավարող պ. Քելլ գերմանացին և քարերը գործ դրած այլ շինութեանց համար։ Նոյն պ. Գերմանացին շինել տուած է ինչպէս այստեղ, նոյնպէս և Փառիսոս քաղաքի ստորոտում շատ գործարաններ, բնակարաններ և զանազան շինութիւններ (բոլոր գործարանների և երկաթուղու գործիքներ շինելու համար) այս տեղից մինչև Ջողտակ կամուրջ երկաթուղի և հեռագիր։ Վերջապէս այստեղ են *պղնձահանքերն*։ (որոց արտադրած պղինձներն աւելի ընտիր են) տեսակ տեսակ շոգեշարժ մեքենաներ, վառարաններ, պղնձաքովեր, ձուլարաններ, զտարաններ, ևն. ևն.։ Մօտ 800 մարդ է բանում օրական թէ այստեղ և թէ Փառիսոսի գործարանում։ Պղնձաքարերը հանում են հանքերից—լեռների տակերից, նախ զատում վատերը լաւերից, վատերը դիզում լեռնաձև, այրում ածխով կամ փայտով, ապա ջարդում և լցնում բովերի մէջ, վերստին հալում, զտում և հուսկ յետոյ կտոր կտոր ձուլում կաղապարներում։ Ընտիր պղնձի հետ ելնում է և ոսկի։ Բայց անտանելի է սաստիկ մուխն և ծծմբահոտն, որք գի-

Digitized by Google

չեր և ցերեկ Եգիպտոսի խաւարի նման թանձրակոյտ և մառախլապատ տարածուած են ոչ միայն գետաբակիս վերայ, այլ և ծածկում են մերձաւոր շրջակաները։ Այժմ այստեղ բնակում են վաճառականներ, արուեստաւորներ, ծառայողներ, Հայ, ռուս, գերմանացի գործավարներ և մշակներ, որոց մէջ կան և մահմետականներ։ Երևի թէ շրջապարիսպ ունեցած է Հին-Գետաբակս իբր ամրոց, բայց անհետացած է այժմ։

Բ. ՆՈՐ-ԳԵՏԱԲԱԿ գիւղ, Հիմնուած է Հին-Գետաբակի արևելեան կողմում—սեռի ետևի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք 1863 թուին տեղափոխուած են Ղազախի Կոթ, Ղալաչա և Ոսկեպար գիւղերից այստեղ, նախ բնակութիւն հաստատած Հին-Գետաբակում, ապա տէրութեան հրամանաւ փոխադրուած Նոր-Գետաբակս։ Տեղական բերքերն նոյն, հողն արքունի, բայց խիստ սակաւ և միանգամայն ապարդիւն. անվնաս օդն, կլիման և ջուրն, եկեղեցին նոյն—է Սուրբ Գէորգ, քահանայ մի։ Ծուխ 33, ար. 215, իգ. 202, ար։ ծն. 25, իգ. 22, պսակ 6, ար. ննջ. 7, իգ. 5։

*Սուրբ Սարգիս*. Ուխտատեղի է և փոքրիկ մատուռ Հին-Գետաբակի արևելեան հանդէպ ջրաձորի աջ կողմի բարձր և գեղեցիկ սարայարթում. ունի և փայտաշէն սրահ և անտառապատ շուրջ։ (Այս տեղ բնակած է Յովհան—Մայրագոմեցի գիտնական վարդապետն)։

*Զարէքայ անապատ*

Հիմնուած է Շամքոր գետակի ձախ ափի վերայ։ Գրեթէ սագաշէն և փոքր եկեղեցի է կառուցեալ չորս սիւների վերայ, ունի և գաւիթ, որ շինուած է տաշուած քարով։ Արտաքուստ հարաւային դրան վերայ.

«Ի թվին ՌՃԼԳ. շնորհաւք ամենակալին Աստուծոյ կառուցաւ յանուն փրկչին վերնատուն տեղի Հոգւոյն ճշմարտի եկեղեցիս սուրբ և գաւիթ գովելի. շինեցաւ ձեռամբ տեառն Ներսիսի հանդերձ եօթանասուն եղբարց ամենի փրկութեան.»..»։

Արտաքուստ արևմտեան դրան սեմի վերայ.

«Սուրբ խաչս բարեխաւս տէր Մովսէսին Ներսէսեանց վասն փրկութեան հոգւոյ Բարխուտարին, որք բազում սիրով ետուն շինել զգաւիթ սուրբ եկեղեցւոյն»։

Անապատս ունի և փոքր զանգատուն, որի վերայ.

«Ի թուին ՌՃՂ. կամաւք Աստուծոյ շինեցաւ զանգակատունս յանուն Հրեշտակապետացն Միքայէլի և Գաբրիէլի ի հայրապետութեան Պետրոսի սրբազան կաթուղիկոսին տանն Աղուանից և յառաջնորդութեան սուրբ ուխտիս և անապատիս Զարէքայ Սարգիս վարդապետի ձեռնտուութեամբ և աղաւթիւք եօթանասուն միաբանից կատարումն եղև խորանիս ի փառս Աստուծոյ, արդ ես Քրիստոսի ծառայ Սարգիս վարդապետ և աղաւթաւոր եղբարքս շինեցաք զսուրբ կաթուղիկէս ի փրկութիւն հոգւոց մերոց և ամենայն հետևողաց, որք ընթեռնուք, յիշեցէք զմեզ ի Քրիստոս»։

Փոքր ինչ դէպի արևելք Հարանց մատուռ, որի վերայ. «Ի թուին Հայոց ՌՃԺԶ. ի հայրապետութեան տեառն Պետրոսի կաթուղիկոսին, ես Քրիստոսի ծառայ Սարգիս վարդապետս կանգնեցի զխաչս ի լուսաւորութիւն հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց տէր Յաւանէսին, Եղիսաբեթին և միաբանիցս, որք աստ կան հանգուցեալ և ամենայն ողորմածաց մերոց.....»։ Անապատս ունի և միաբանից խուցեր և ամուր շրջապարիսպ, որի դրան ճակատին. «Ի թուին ՌՃԿԳ. ես Մկրտիչ վարդապետս շինեցի պարիսպս, որ եղև խարջ ԻՌ, թուման. Ովանէս վարդապետն տուաւ Ժ. թուման. շինեցաւ...»։ Մատրանս մէջ ամփոփուած են Դաւիթ եպիսկոպոսի և Կիրակոս, Սահակ և Սարգիս վարդապետների մարմինները։ Վանքս ունի վանահայր և մի քանի ծառաներ։

### Խունիսայ վանք.

Հիմնուած է Նոր-Գետաբակի արևելեան հանդէպ, Գետաբակ անուն վտակի ձախ կողմում, մի հարթակի վերայ, որին մօտ է Մօլլալու թրքաբնակ գիւղն։ Փոքր վանքս ունի կաթուղիկէ և գեղեցիկ շինութիւն. բայց այժմ անմարդաբնակ։

Digitized by Google

*Զոխտակ եկեղեցի*. մօտ առ մօտ կանգնած են երկու եկեղեցիքս Նոր-Գետաբակի արեւելեան հիւսիսային հանդէպ մի դալարագեղ լանջի վերայ, որոց մօտ կայ գիւղատեղի և հանգստարան։ Բայց անարձանագիր են տաճարներն և հանգստաքարերն։

*Սուրբ Ստեփաննոս*. Զոխտակ եկեղեցու արեւելեան կողմում, նոյն սարի արեւելահայեաց լանջի վերայ, Տանձուտ կոչուած տեղում (այլ է Տանձուտս նախորդիցն) կայ մի աւերակ եկեղեցի, որի քարերը քանդած և տարած են մերձաբնակ Սաւեանկա գիւղի բնակիչներն [1]։ Այժմ մնացած է միայն աւագ խորանի կլորակ մասն։ Հարաւային փոքր և աւագ խորանի մէջ եղած պատում մի խաչքարի վերայ.

«Եկեղեցիս Սուրբ Ստեփան. ես Մովսէս....»։ Այստեղ կայ մեծ գիւղատեղի և հանգստարան։

Գ. ԳԱՌՆԱԿԵՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Ծամքոր գետակի ձախ ափին. խորագոյն ձոր է գիւղիս տեղն, վասն որոյ և խեղդուած տեսարանն. բնակիչք բնիկ, հողն արքունի և նուազ արդիւնաբեր և սակաւ, տեղական բերքերն նոյն և այգի—գինի, օղի, սեւկեւիլ, դեղձ, տանձ, խնձոր, ոչխար, փոփոխական օդն, տենդաբեր կլիման, 65—70 տարի երկար կեանքն. եկեղեցին Սուրբ Աստուածածին, կառուցեալ երեք կամարների վերայ 1838-ին. ունի մի աւագ և մի փոքր խորան (հիւս. կողմում). երկարութիւն 12 մետր 35 սանթիմ, լայնութիւն 8 մետր 20 սանթիմ. քահանայ մի։ Ծուխ 80, ար. 618, իգ. 533, ար. ծն. 29, իգ. 23, պսակ 12, ար. ննջ. 4, իգ. 3։

*Քարոզ գրքեր*. Ա.-ն գտնուում է Փիփեցի պ. Յովհաննէսի մօտ, որ նօտրագիր է և պարունակում է *առաքինութեանց* և *մոլութեանց ճառեր*։ Բայց թափուած են ձեռագրիս սկզբից և վերջից թերթեր։ Բ-ն բարեկրօն Յովսէփ քա-

---

[1]) Աղանդաւորներիս բնակութեան տեղին ևս աւերակ գիւղ եղած է հայոց, որի մէջ եղած է եկեղեցի և հանգստարան։

հանայ Բալեանցի մօտ, որ պարունակում է զանազան խրատական բաներ, որը գրած է «ամենախոնարհ ծառայ Աստուծոյ Եսայեայ դպիր տէր Խաչատրեանց 1848»։

*Ծաղկոց վանք*. Հիմնարկուած է Ծամքոր գետակի ձախ ափի վերայ մի ժայռի գլխին, որ փոքր ինչ վերև է գիւղիցս։ Մենաստանս ոչ սիւներ ունի և ոչ կաթուղիկէ, այլ ունի սովորականից շատ մեծ դուռն, բարձրագոյն շինուած և նեղ նեղ լուսամուտներ, 9 մետր 25 սանթիմ երկարութիւն և 6 մետր 40 սանթիմ լայնութիւն։ Անյայտ է վանուցս շինութեան թուականն։

Դրան ներսում հիւսիսային կողմում. «Սուրբ խաչ տէր Ուհան պարոն Գաբրիէլին քաւարան թվ. ՌՃԼԸ.»։ Մենաստանս ունեցած է և փայտաշէն գաւիթ, որը, հնութեան պատճառաւ քանդած են Գառնակերցիք յորդորմամբ նոյն Յովսէփ քահանային, այժմ շինում են նորը. որի պատերն քարուկիր են, իսկ ծածքն փայտաշէն (գլի փայտով)։ Գաւթումս կայ երկու գերեզման, տեղացիք աւանդաբար *Ճգնաւորների գերեզման* են անուանում. տապանաքարերն անտաշ են և անարձանագիր։

*Հրեշտակապետաց վանք*.

Մենաստանիցս փոքր ինչ վերև է Գաբրիէլ և Միքայէլ Հրեշտակապետաց անուամբ շինուած վանքն, որ նոյնպէս գետակին ձախ ափին է և սագաձև կառուցեալ ինչպէս պարզ եկեղեցի։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան (աւագ խորանի միջից բացուած է հարաւայկն փոքր խորանի դուռն և շինութեան կարգից բոլորովին դուրս հանուած է հիւսիսային փոքր խորանն) 10 մետր 65 սանթիմ երկարութիւն, 8 մետր լայնութիւն, և այս արձանագրութիւնը. «Շնորհիւն Աստուծոյ շինեցաւ Սուրբ Միքայէլ և Գաբրիէլս ձեռամբ Յովհաննէս վարդապետի և Մահտեսի Յովհաննէսի հանդերձ միաբան եղբարբք թվ. ՌՄԿԵ.»։ Վանքս ունի նաև քարուկիր գաւիթ, որի մէջ ամփոփուած են ննջեցեալներ։ Մի *շիրմաքարի վերայ*. «Այս է հանգիստ ճգնաւոր Յոհաննէս վարդա-

պետի շինող վանիս Մաղաքի որդի. թվ. ՌՄՀԵ.»։

Վանքումս կայ մի ձեռագիր աւետարան, որ գրուած է հասարակ թղթի վերայ. չունի յիշատակարան, անճաշակ է ամեն ինչ։

Մի տպ. *ճայնքաղ շարականի* սկզբի թերթի վերայ.

«Տենդի ազօթք. Սուրբքն Սուքիր ինքն և Սուքիասանք. իժ մի ժանի և էր իբրև վարազին. կամին սպանանել զնա և ասէ. «Միք սպանանել զիս, երդնում զնոյն Կենդանին, որ տարածեցաւ ի վերայ խաչին, որ տեղ որ յիշէին, այլ ոչ մեր-ձենան ի տեղին, ջերմին և սարսափելոյն, զի հեռասցէ ծա-ռայս Աստուծոյ *այս ինչ անուն*»։

Մենաստանս ունի ինն հին խուցեր, որք ունին նեղ լուսամուտներ և ցած դռներ և մի այգի, որի մէջ կան բա-ւականին պատուաստեալ թթենիք, որթ, կեռասի, ընկուզի և բանջարանոց։

*Հարանց.* վանուցս արևմտեան հանդէպ մի քանի քայլ հեռի կայ մի հին հանգստարան, որի մէջ կան ճգնաւորաց, վարդապետաց և միաբանից շատ հանգիստներ։

*Ճգնարան.* Ահա այս է Հարանցն։ Վանքիս արևելեան հանդէպ գետակի աջ ափի քերծում մի քարայր է, որի մէջ կայ երեք պատուական խաչքար և որի մէջ, աւանդաբար ա-սում են, ճգնած են ճգնազգեաց անձինք։

*Կաղնի խաչ.* Գիւղիս արևմտեան հիւսիսային կողմում, ձուաձև բարձրացած երկու սարերի մէջ ընկած մի սեռի վե-րայ կայ երեք հնադարեան խաչարձան, որ իբր ուխտատեղի յարգուած է հասարակութիւնից։

*Ծիրանաւոր.* Կաղնի խաչից բաւական վերև, նոյն ճա նապարհի աջ կողմում կայ աւերակ եկեղեցի, գիւղատեղի և հանգստարան։

*Նահատակ.* Գառնակերի հիւսիս արևելեան կողմում, նոյն Շամքոր գետակի աջ ափի վերայ կայ մատուռ, ձեղունն փայտաշէն, որի մէջ կայ մի գերեզման. որ է անունն ան-յայտ նահատակի գերեզմանն։

Digitized by Google

**Գ. ԲԱՐՍՈՒՄ ԳԻՒՂ.** Հիմնուած է Ծամքար գետակի ձախ ափի վերայ Գառնակերից մօտ մի մղոն վար. բնակիչք գաղթած են Անի քաղաքից, հողն արքունի, անջրդի, շիկահող, և նաւաղ արգիւնաբեր. անդական բերքերն նոյն, խոր ձոր է գիւղի տեղն, նեղ հորիզոնն, խեղդուած տեսարանն, երկար կեանք 80 տարի, եկեղեցին նորաշէն, կիսատ, չորս սիւների վերայ. երկարութիւնն 22 մետր, լայնութիւնն 11 մետր 40 սանթիմ. քահանայ մի: Ծուխ 154, ար. 614, իգ. 472, ար. ծ. 28, իգ. 21, պս. 10, ար. նն. 10, իգ. 8:

*Գրչագիր աւետարան*, թղթեայ, անարուեստ են չորս աւետարանչաց պատկերներն, նկարներն, և կեղծ գոյներն: *Յիշատակարանից*. «Եւ արդ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՌԻԸ. ձեռամբ մեղուցեալ և անարժան Յովհաննէս եղխկաղասի 'ի գերահռչակ ուխտիս Եւստաթէոսի սուրբ առաքելոյն ԹՌԼՃ. (9800) սուրբ նշխարացս որ աստ կան հաւաքեալ ի մէջ տաճարիս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս 'ի հայրապետութեան տեառն Յովհաննիսի Աղուանից կաթուղիկոսի....»: Սատցողն է «Յակովբ էրեց»:

Գիւղիս մօտերքում կայ երեք եկեղեցի և երկու վանք:

Ա. քարուկիր և փոքր եկեղեցի, որ կայ գիւղիս հարաւային հանգստարանի տակ՝ փայտաշէն ծածքով. գանագլուխ փայտի վերայ. «Թվ. ՌՃԵ. էր»:

Բ. Գիւղիս հին եկեղեցին, որ կայ հիւսիսային հանգստարանի մօտ, նոյնպէս փայտաշէն ծածքով:

Գ. Թառն (բարձր տեղ թառած) եղցի վերջին հանգստարանիս մէջ մի սարի վերայ: Կանգուն մնում են միայն չորս պատերն, միջումն բուսած է մի բաշնի ծառ:

Ա. Վանքն կայ գիւղիս արևելեան կողմում այգիների մէջ, որի չորս պատերն քարուկիր, ծածքն փայտաշէն, անունն անյայտ, մեծութիւնն միջակ:

Բ. Վանքն Սուրբ Հռիփսիմէ, որ կայ այգիներում *Ակուլանց բաղում*: Ամբողջապէս քարուկիր եղած է վանքս, խոնարհած է առաստաղն, որ փայտաշէն է այժմ: Այս է

Digitized by Google

Գօշ-Մխիթարի ակնարկած Հախփսմէի մենաստանն։ Համարեա թէ ընդարձակ հանգստարաններով շրջապատուած է գիւղս։ Տեղացի ծերունիք այս երևոյթը բացատրում են հետևեալ կերպով. «Լազկին (Լեկզի) քանի հետ (անգամ) եկած, սարսափելի պատերազմներ արած, թալանած, կոտորած և գերիներ տարած է, մանաւանդ այստեղ մեր Զօրն հաւաքուած հայոց հետ։ Քանի հետ ղալապատըղ արած են Տամբօր գետիս աջի ձորում [1])։ Ձորս կողմի հայերն հաւաքուած են ձորս պատերազմների ժամանակ. կռիւներում նահատակուած բոլոր հայերն թաղուած են այս հանգստարաններումս, որան համար էլ շատացել ա մեր գերեզմանուտը»։

Ներքին-Ղօթիւլ. Գիւղատեղի հանգստարան և եկեղեցի, որք են Տամբոր գետակի աջ ափի վերայ, ուր կայ և հնուց մնացեալ այգիներ։

*Մէլիք-Առստամի ծագումն.*

(Պատմական աւանդութիւն) «Բարսում գիւղացի Մէլիք-Առստամի նախնիքն ծագած են Բագրատունի թագաւորազն սերնդից, այս է Կիւրիկեան թագաւորների յետագաներից»։ Կիւրիկեան Բագրատ Բագրատունի իշխանն զինուորական ծառայութեան է մտնում Վրաց մի թագաւորին մօտ, բայց անբաւականութեան պատճառաւ մի ժամանակից յետոյ ելնում է նոյն ծառայութիւնից և դիմում Պարսից Շահ-Աբաս առաջնոյն։ Նախ ներկայանում է Պարսից նախարարական ժողովին, ծանօթացնում իւր Բագրատունի լինելը և փափագ յայտնում զինուորական ծառայութեան մէջ մտնելու։ Շահ-Աբաս իւր նախարարներից իմանալով Բագրատի նպատակը՝ ընդունում է զինքը զինուորական ծառայութեան մէջ, այնուհետև հետզհետէ փորձով տեսնելով Բագրատի հաւատարմութիւնը և կամենալով վարձատրել նորա ծառայութիւնը՝ Շահ-Աբաս խանութիւն է տալիս նրան։ Բագրատ

[1]) Ձորս, ծածկուած է մշտադալար գի ծառերով, բաւական խոր ահարկու, դժուարամատչելի և ապահով է պատսպարուելու համար։ Այս տեղ կայ հարկ եղած անհրաժեշտ պիտոյք—պատուական ջուր, վառելափայտ, ջրաղաց։ Մուտքն գետակի աջ կողմիցն է։

*խանից ծնուում է Առստամ-բէկն, Առստամ-բէկից՝ Այտին-բէկն, Այտին-բէկից՝ Առստամ-բէկ բ. որ ստանալով մէլիքութեան հրովարտակ գալիս է Նախ Կուսապատ աւանն, ամուսնանում Ապրէս-աղայի Վարդխաթուն դստեր հետ, ապա գալիս Գանձակ Շահվէրտի խանին մօտ ներկայացնում շահական հրովարտակը և այնուհետև բնակութիւն հաստատում, իւր նախնիքներից ժառանգութիւն մնացած, Բարսում գիւղումս և տիրում Մլղնաբերդից մինչև Եօթն-աղբիւր (Եոտիբուլաղ)։*

*Կիւլստանի Մէլիք-Աբով Գ. ամուսնանում է Մէլիք-Առստամիս դստեր հետ և հաստատում սերտ բարեկամութիւն։ Մէլիք Առստամիցս ծնուում է Ստեփան-աղան. իսկ սորանից ծնուում են Գրիգոր, Աւագ, Աւետիս, Յարութիւն, Ստեփան, Առստամ, Յովսէփ և Մկրտիչ աղաներն։ Մէլիք-Առստամն մինչև իւր մահն ապրում է քաջութեամբ, տիրում իւր սեփական ժողովրդեան, որ գաղթած է Անի քաղաքից և բնակութիւն հաստատած Բարսում գիւղումս և իշխում Մլղնաբերդին և ի թիւս այլ գիւղօրէից Քարատակ [1]) Համշափոր [2]), Վերին-Ղօթիւլ [3]) և Ներքին-Ղօթիւլ [4]) գիւղերին։ (Աւերակներս ընկած են Գարդման գաւառի արևմտահայեաց ծայրում։*

*Մէլիք-Առստամիս գերեզմանն գտնուում է Գանձակի Ս. Յովհաննէս եկեղեցու գաւթի հարաւային կողմում, որի տապանաքարի վերայ քանդակուած է.*

*«Անմոռաց յայս տապան քաջ անուանի*
*Հանգչի մարմին Մէլիք-Առստամի [5]),*
*Յազգէն Բագրատունի Հայկազանց տոհմի,*

*[1]) Այժմ աւերակ գիւղ, եկեղեցի և հանգստարան, որ կան Նիւկզարից Նոր-Փիփ տանող ճանապարհի վերայ։*

*[2]) Նոյն այժմ աւերակ, որի մէջ կայ և եկեղեցի և հանգստարան, որ կան նոյն ճանապարհի արևելեան կողմում, Քարատակից մղոնաչափ վերև։*

*[3]) Նոյն ճանապարհի արևմտեան կողմում եկեղեցի և հանգստարան։*

*[4]) Բարսում գիւղիս հարաւային հանդէպ, գետակի աջ ափի վերայ. մնում է եկեղեցին, որի շուրջն հանգստարան է։*

*[5]) Մելիքիս ծագման և իրաւանց և գործնէութեան մասին գրած է Գերագնիւ պօլկովնիկ Յ. Դաւթեան Լազարեանց տպ. ի Թիփլիս 1877 Կովկաս. գլխաւոր Կառ. տպարանում ռուսերէն լեզուաւ։*

Տիրող Բարսում, Գանձակ նահանգի,
Ծնեալ 1722, վախճանեալ 1794 ամի»։

Ե. ՋԱԿԻՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Բարսումի հիւսիսային կողմում, մի տեսարանաւոր տեղում. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80—90. եկեղեցին Սուրբ Աստուածածին. քահանայ մի։ Ծուխ 110, ար. 459, իգ. 349, ար. ծն, 22, իգ. 18, պսակ 10, ար. ննջ. 9, իգ. 5։

Զ. ՋԱՐՏԱԽԼՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Ջակիրի արևմտեան կողմում մի հարթավայր տեղում. որի բարձ. 5181, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, հացաւէտ. տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80—90 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, քահանայ մի։ Ծուխ 200, ար. 770, իգ. 550, ար. ծն. 40, իգ. 31, պսակ 20, ար. ննջ. 15, իգ. 10։

Տղայոց միդասեան ուսումնարան. աշակերտք 35, միամեայ ռոճիկ վարժապետին 300 րուբլի։

Գիւղիս մօտ է *Ոսկան նահատակ* անունամբ ուխտատեղին, որ *Բուլանլուղ* ևս է կոչւում։

Է. ՊԱՏԻ ԳԵՂ. Հիմնուած է մի բարձրահայեաց (4973 ոտք) տեղում. բնակիչք եկած են Չրաբերդից, Փամբակից և Ղարա-Մուրատ գիւղերից. հողն արքունի, անջրդի, բայց բաբեբեր. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 245, ար. 735, իգ. 713, արակ. ծն. 50, իգ. 48, պս. 28, ար. ննջ. 15, իգ. 14.

Ը. ՂՈՒԼԱԼԻ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր ձորում Տաւուշ գետակի օժանդակի (Ախնջի) վտակի աջ ափի վերայ, որ սահմանագլուխ է Փառիսոս և Քաւս գաւառների. (Նախկին բնակիչք գերի տարուած են Պարսկաստան). այժմեան բնակիչք նախ՝ Փառիսոս քաղաքից տեղափոխուած են Մեծ-Ղարա-Մուրատ գիւղն, ապա այստեղ. հողն արքունի, սակաւ,

Digitized by Google

միջակ արդիւնաբեր. օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանքն 80—90 տ. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն, քահանայ մի, որ եկած է Բաշ գեղից։ Ծուխ 114, ար. 742, իգ. 601, ար. ծն. 31, իգ. ծ. 26, պս. 15, ար. նն. 8, իգ. 6։

Եկեղեցումս կայ չորս գրչագիր.

Ա. Աւետարան թղթեայ, փոքրադիր. անճաշակ են չորս աւետարանչաց պատկերներն և նկարներն, բայց գեղեցիկ են փոքր տառերն։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սայ 'ի թուաբերութեանս Հայոց ՉԾԴ. յԱրարատեան գաւառիս ի տեղիս որ կոչի Նորագեղ»։ Անյայտ է գրողի անունն, նախկին ստացողն. է Սիմէօն անուն ումն քահանայ, երկրորդ ստացողն է Թանում Հայոց ՋՂԹ.-ին։

Բ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, բազմապատկեր, սակայն անարուեստ, անճաշակ և առանց յիշատակարանի։

Գ. Աւետարան թղթեայ, փոքրադիր, գրուած Հերմինի վանքում, չունի թուական, անյայտ է գրողն։

Դ. Աւետարան փոքրադիր, թղթեայ. *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՌՑԺԸ. ի հայրապետութեան երից երանելոյ հովուապետին տանս Աղուանից տեառն Պետրոսի կաթուղիկոսին, թագաւորութիւն Պարսից Շահ Սիլէմանին գրեցաւ ձեռամբ.. Յովհաննիսի 'ի յերկիրս Գանձակու 'ի գեաւղս, որ կոչի Հարցհակիս(տ) 'ի դրան Սուրբ Մլոնաբերդին. ի դառն ժամանակիս աւարտեցաք որ հարկապահանջութիւն բազմացեալ էր և անօրէնքն յամենայն ժամ խրոխտային 'ի վերայ քրիստոնէից ազգին»։

*Խորանաշատ վանք* (51)

Հիմնուած է նոյն օժանդակ վտակի աջ կողմում, Ղուլալի գիւղի արևելեան կողմում, մի գեղեցիկ հովտի մէջ։ Արևմտահայեաց ձորակիս աջ կողմում կառուցեալ է վանքս համակ տորոնագոյն սրբատաշ, պատուական քարով չորս կամարների վերայ, որոց գլխին կանգնած է մի գեղեցկաձև կաթուղիկէ։ Տաճարս հրաշալի է Գանձասարից յետոյ. ունի

մի աւագ և չորս փոքր խորան (իրարու վերայ) երկու խորհըրդանոց, երկու դուռն, 13 մետր երկարութիւն, 10 մետր 55 սանթիմ լայնութիւն։ Աւագ խորանի ստորոտով, դասահայեաց կլոր երեսին վերայ շինուած են տասն փոքրիկ, գեղեցիկ և խորանաձև կերտուածներ։ Փորագրուած է խորանի մօտ.

«ՌԿԹ. ես Աւելգատ Սրտժեցի միաբանեցայ Խորանաշատ Սուրբ Աստուածածնին (ս) և ետու զծախս այսմ խորանիս յիշատակ ծնողաց և եղբարց իմոց Շաւուրին և Ապիրատին և վարդապետն հաստատեաց Բ. ժամ յայսմ խորանիս, Ա. ի տաւնի Վարդավառին և Ա. Վարագայ խաչին անխափան. հաստատ է կամաւն Աստուծոյ»։ Աւագ սեղանի ետև փոքրիկ խորանների գլխին. «Անդրէաս ՌԿԷ.» «Յովսէփ քահանայ ՌՀԱ»։

*Հիւսիսային փոքր խորանի վերայ.*

«ՌԿԵ. ես Աբրահամ Կանաչհողեցի [1]) և ամուսին իմ միաբանեցաք Խորանաշատու Աստուածածին (նին), ետու զծախս խորանիս և վարդապետն հաստատեաց ինձ Բ. ժամ ի տաւնի Սուրբ Գրիգորի անխափան»։

Վանքս իւր արևմտեան կողմին կից ունի հրաշագան գաւիթ կառուցեալ չորս միապաղաղ և կլոր սիւների վերայ՝ նոյնպէս շինուած սրբատաշ քարով։ Գաւիթս ունի 16 մետր 6 սանթիմ երկարութիւն, 15 մետր 90 սանթիմ լայնութիւն և չորս փոքր խորան, որոց երկուսն իրարու վերայ դրան հարաւային կողմում և միւս երկուսն հիւսիսային։ Տաճարիս արևելեան որմի վերայ արտաքուստ. «Յանուն Աստուծոյ ես Գրիգոր որդի Վասակայ Միջկա շինեցի զհաւչկակերանց [2]) և տուի ի Սուրբ Աստուածածինս Խորանաշատու. վարգապետն հաստատեց մեզ Բ. պատարակ ի տաւնի Հոգեգալստեան Ա. ինձ և Ա. ամուսնո իմո, կատարիչքն...»։

Գաւթի հարաւային որմի վերայ կայ արևի ժամացոյց։ Այժմ տեղ տեղ քայքայուած են վանքիս և գաւթիս սալկախներն և շրջապարսպի պատերն. մի վանք, որ զարմաց-

---

[1]) Կանաչ-հողեցի։ [2]) Հօշկակերանց։

նում է այցելուները իւր երկնանման շինութեամբ և լացացնում իւր անցեալի փառքով և ներկայիս աւեր և ամայի դրութեամբ։

Մենաստանս ունի և շրջապարիսպ. որի ներսում, տաճարի հարաւային կողմում կայ մի փոքր մատուռ՝ շինուած սրբատաշ քարով, որը տեղացիք անուանում են Սուրբ Կիրակի։ Այստեղ կայ մի կիսաւեր մատուռ ևս՝ շինուած հասարակ քարով, որի մէջ կան ամփոփեալներ։

Երրորդ մատուռն, որ շինուած է սրբատաշ քարով, պարսպից դուրս արևելեան կողմումն է, միաբանից հանգստարանում։ Խոնարհուած է մատրանս գլուխն, որի մէջ, ասում են, է Վանական վարդապետի գերեզմանն. որպէս վկայում է և Կիրակոս, բայց տապանաքարն չունի արձանագրութիւն։

Վանքս ունեցած է մեծ կալուածներ և հողեր, որովք ապահովված է եղել վանքիս ապագան. այժմ միայն մնացած է 15 օրավար անվիճելի հող, մի աւերակ ձիթահանք, ծերունազարդ ծիրանի և ընկուզի ծառերով լի խոպանացեալ պարտէզ և պատուական քարահանք։

Աւերակ գիւղեր, եկեղեցիներ և հանգստարաններ՝ կան վանքիս հեռաւոր և մերձաւոր շրջապատում Բլովիկ, Չիլքինլու, Ղօշաչի, Աղ-Բուլաղ, Իրիցի չէն, Սղնախ եւ Չինարի [1]) կոչուած տեղերում։

Ղուլալի գիւղից վերև, գետակի աջ կողմի լանջի վերայ կայ մի քարուկիր մատուռ, որի մէջ—ասում են Վանական վարդապետն բնակած է մի ժամանակ ստիպեալ Թաթարների երկիւղից։ Մատրիցս փոքր ինչ վերև կայ գիւղատեղի, աւերակ եկեղեցի և հանգստարան։

## ԳԱԽԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Ա. ՓԱՌԻՍՈՍ ԲԵՐԴ [1]). Համանուն աւերակ քաղաքին

---

[1]) Մի քանի գերդաստուն հատուածելով Ղուլալի գիւղից բնակութիւն հաստատած են գիւղումս, որ կայ Խորան. վանքից ներքև։ Իւրեանց մայր գիւղի հաշուի մէջ է և սոցա ծխաթիւն և ամեն ինչ։

Հիւսիսային լանջին կից՝ բարձրացած է մի քարաժայռ սար, որ բաղկացած է կրաքարից և բոլորովին առանձնացած իւր երեք կողմերից։ Սարիս, որ համարեա թէ ձգուած է արևելքից արևմուտ դիրքով, արևելեան և հարաւային կողմերն վիմահերձ ապառաժներ են և լայնագոգ ու խոր խոր ձորեր, Հիւսիսային կողմն ամենասաստիկ զառիվայր լանջ և լայնագոգ ձոր. իսկ արևմտեան կողմից բերդասարս հաղորդակցութիւն ունի մի երկարաձիգ և թրաձև սեռով Ղանղալ սարի հետ։ Քարուկիր, բրգաշատ և ամուր պարսպով պարսպուած է ոչ միայն հիւսիսային և արևմտեան կողմերն, այլ և բարձր քերծերի գլուխներն։ Ամրոցիս երկարութիւնն է 100 մետր, լայնութիւնն մօտ 80 մետր. ունի մի դուռն արևելեան կողմից, տասներկու աշտարակ, 3 մետր 75 սանթիմ պատի հաստութիւն։ Բերդիս մէջ լի է աւերակների հոծ բեկորներով, որոց մէջ կայ երկու քարուկիր մատուռ, որոց գլուխներն խոնարհած են և չունին արձանագրութիւն։ Բերդս ունեցած է անառիկ բառի բուն նշանակութիւնը, սակայն այժմ տեղ տեղ քայքայուած են պարսպի պատերն։

Նշանաւոր է ամրոցիս ամենապատուական և յորդառատ ջուրն որ զարմացնում է այցելուները իւր ազնուութեամբ և սառնութեամբ և հնարագէտ շինուածով։

Հիւսիսային պարսպին կից՝ ներքուստ շինուած են երկու պատից քարուկիր և թաղակապ ստորերկրեայ սենեակներ, որք իրարու հետ հաղորդակցութիւն ունին մի մեծ դռնով, որ բացուած է միջնապատից։ Ա. սենեակն գրեթէ կիսով չափ լցուած է հողով. իսկ Բ-ն լի է ջրով։ Ասում են որ ջուրը ստորերկրեայ ականով բերած են Ղանղալ սարից՝ հաղորդակից սեռով։ Պատմում են թէ հետաքրքիր անձինք ջրաւազանիս մէջ լցրած են յարդ, որ ելած է Ղարա-Բուլաղ անուն մեծ աղբիւրից՝ որ բերդիս հիւսիսային ստորոտի ձորումն է և դարձնում է երկու ջրաղաց։ Փորձով, որպէս

[1]) Արութինայ սարի հարաւային կողմում է Դինալ սարն 11057 ոտք. ապա Գեղամայ լճի և գաւառիս մէջ ընկած են իբր սահման Օկրուջա 11986, Սև խաչ (Ղարա խաչ) 10081 սարերն։

թէ իմացած են, որ մեծ աղբիւրն կապ ունի ջրաւազանիս հետ։

Բերդիս հարաւային քերծում կան վիմափոր այրեր, որոց մէջ կայ վիմափոր ննջարան։ Մուտքն ոչ եթէ բերդիս միջովն է, այլ արտաքուստ քերծի տակովն (52)։

Բ. ՄԱՄՌՈՒՏ ԲԵՐԴ (53). Հիմնուած է Զարէք անապատից վար Ծամքոր գետակի և Գետաբակ վտակի ջրախառնուրդում։ Բերդավայրն թեքուած է դէպի Ծամքոր գետակի ձախ ափն։ Բերդս ունի ամուր բուրգերով շրջապարիսպ, իսկ արևելեան կողմից կրկնապարիսպ. ունի չափաւոր մեծութիւն, ամուր դիրք, իւր միջում մի կոնաձև բլուր, զանազան մեծութեամբ քարայրներ և քարուկիր շինութեանց շատ փլատակներ։ Այժմ համարեմ թէ անտառապատ և մացառուտ է ամրոցս և որջ եղած աւազակների. աւարկու են քարայրներն և սոսկալի անտառիս մէջ մտնելն։

Ջուր չկայ բերդումս, վասն որոյ ունի ստորերկրեայ ական, որով ջուր փոխադրած են բերդս Ծամքոր գետակից։ Հետզհետէ քայքայուելու վերայ են տեղ տեղ ամրոցիս պարիսպներն։

Գ. Վահրամ իշխանի բերդաքաղաք ամրոցն (այժմ կոչուում է Ղալա-Բոյուն), որ հիմնուած է մի ձկնաձև սարի վերայ։ Սարս գտնուում է Ջակամ գետակի ձախ կողմում, որի դիրքն ձգուած է հիւսիսային արևմուտքից հարաւային արևելք։ Ահա սարիս վերայ է բերդն, որ միևնոյն ժամանակ եղած է և քաղաք ինչպէս ակներև երևում է խանութների, տների և եկեղեցիների աւերակներից։ Արդէն յայտնի է երեք եկեղեցու աւերակն, իսկ եթէ եղած է և այլ եկեղեցի, ոչինչ յայտնի չէ։ Շրջապարիսպն, որ տեղ տեղ կիսաւեր է, տեղ տեղ քայքայուելու վերայ, ձգուած է սարի դիրքի ձևով։ Բերդիս մօտ կայ և հանգստարան (54)։

Դ. Դղեակ, որ կոչուում է (Ղըզ-ղալա) որ գտնուում է Ղուլալի գիւղից բաւական վերև նոյն օժանդակի (Ախնջի) աջ ափի վերայ։ Զրեզերքումս ցցուած է մի բարձր և սրա-

ծայր ժայռ, որ իւր արեւելեան կողմից ունի մի դժուարատար և ոլոր մոլոր կածան։ Հազիւ թէ կալաչափ մեծութիւն ունի ժայռիս գագաթն, որի շուրջն տեղ տեղ նշմարուում են տակաւին քարուկիր պատերին հետքերն և ջրաւազանի վիմափոր փոսեր։ Դղեկաբարձ ժայռիս արեւելեան ստորոտի հարթակում կայ մի եկեղեցի և հանգստարան (55)։

## ԺԲ. ՔՈՒՍՏԻ կամ ՔԱՒՍ ԳԱՒԱՌ.

Ա. *Ղրղի* (ղարա-ղայա) *գիւղ*. Հիմնուած է նոյն (Ախնջի) օժանդակի ձախ կողմի բարձր սարի արեւելահայեաց լանջին վերայ. բնակչաց մի մասն բնիկ և միւս մասն տեղափոխուած Ղարա-ղայա գիւղից (գտնուում է Թարսայ գետակի վերայ)։ Հողն արքունի, լեռնային և միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն՝ ցորեն, գարի, կորեկ, գարնանի, ոչխար, տաւար, գոմէշ, խոզ, տանձ. խնձոր, պատուական օդն, կլիման և ջուրն, ուշագրաւ տեսարանն, 90 տարի երկար կեանքն, սուրբ Յովհաննէս եկեղեցին, որ նոր կառուցեալ է վեց սիւների վերա, քահանան գալիս է Նորաշէնից։

Ծուխ 84, ար. 541, իգ. 449.

*Կիսատ-խաչարձան*. Ղրղ-ղալա-դղեկի հիւսիսային հանդէպ, նոյն օժանդակի ձախ ափում ճանապարհի վերայ ընկած մի կիսատ խաչարձան, որի արձանագրութիւնը, թէև եղծուած է տեղ տեղ, այնու ամենայնիւ արժան համարեցինք նոյնութեամբ ընդօրինակել. «. . . . . . . . . ութեամբ ողորմեալ ես . . . Կիւրիկէի, զԱքասայ աւազանէ . . . որդեկիր և ղտէր Յովհանէս ե . . . . սի արձան շին . . իյր տափին աւետարան . . . ի ձորի բերաք աշխատութեամբ խաչս կանգնեցաք հանդիսիւ բարեխաւս առ Քրիստոս Յիսուս յահեղ աւուրն դատաստանի»։

*Ջօրաւոր*. Ղրղի գիւղիս արեւմտահարաւ կողմում հարաւահայեաց մի խոր ձորի հարաւահայեաց լանջի վերայ կայ գիւղատեղի, հանգստարան և փոքր եկեղեցի, որի մօտ մի կոտորուած խաչքարի վերայ.

Digitized by Google

հանայ Բալեանցի մօտ, որ պարունակում է զանազան խրատական բաներ, որը գրած է «ամենախոնարհ ծառայ Աստուծոյ Եսայեայ դպիր տէր Խաչատրեանց 1848»։

*Ծաղկոց վանք*. Հիմնարկուած է Ճամքոր գետակի ձախ ափի վերայ մի ժայռի գլխին, որ փոքր ինչ վերև է գիւղիցս։ Մենաստանս ոչ սիւներ ունի և ոչ կաթուղիկէ, այլ ունի սովորականից շատ մեծ դուռն, բարձրագոյն շինուած և նեղ նեղ լուսամուտներ, 9 մետր 25 սանթիմ երկարութիւն և 6 մետր 40 սանթիմ լայնութիւն։ Անյայտ է վանուցս շինութեան թուականն։

Դրան ներսում հիւսիսային կողմում. «Սուրբ խաչ տէր Ունան պարոն Գաբրիէլին քաւարան թվ. ՌԾԼԸ.»։ Մենաստանս ունեցած է և փայտաշէն գաւիթ, որը, հնութեան պատճառաւ քանդած են Գառնակերցիք յորդորմամբ նոյն Յովսէփ քահանային, այժմ շինում են նորը. որի պատերն քարուկիր են, իսկ ծածքն փայտաշէն (դի փայտով)։ Գաւթումս կայ երկու գերեզման, տեղացիք աւանդաբար *ճգնաւորների գերեզման* են անուանում. տապանաքարերն անտաշ են և անարձանագիր։

*Հրեշտակապետաց վանք*.

Մենաստանիցս փոքր ինչ վերև է Գաբրիէլ և Միքայէլ Հրեշտակապետաց անուամբ շինուած վանքն, որ նոյնպէս գետակին ձախ ափին է և սագաձև կառուցեալ ինչպէս պարզ եկեղեցի։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան (աւագ խորանի միջից բացուած է հարաւային փոքր խորանի դուռն և շինութեան կարգից բոլորովին դուրս հանուած է հիւսիսային փոքր խորանն) 10 մետր 65 սանթիմ երկարութիւն, 8 մետր լայնութիւն, և այս արձանագրութիւնը. «Շնորհիւն Աստուծոյ շինեցաւ Սուրբ Միքայէլ և Գաբրիէլս ձեռամբ Յովհաննէս վարդապետի և Մոհտեսի Յովհաննէսի հանդերձ միաբան եղբարբք թվ. ՌՄԿԵ.»։ Վանքս ունի նաև քարուկիր գաւիթ, որի մէջ ամփոփուած են ննջեցեալներ։ Մի *շիրմաքարի վերայ*. «Այս է հանգիստ ճգնաւոր Յոհաննէս վարդա-

Digitized by Google

պետի շինող վանիս Մաղաքի որդի. Թվ. ՌՄՀԷ.»։

Վանքումս կայ մի ձեռագիր աւետարան, որ գրուած է Հասարակ Թղթի վերայ. չունի յիշատակարան, անճաշակ է ամեն ինչ։

Մի տպ. *ճայնքաղ շաղականի* սկզբի Թերթի վերայ.

«Տեմնդի ադօթք. Սուրբքն Սուքիր ինքն և Սուքիասանք. իժ մի ժանի և էր իբրև վարազին. կամին սպանանել զնա և ասէ. «Միք սպանանել զիս, երդնում զնոյն Կենդանին, որ տարածեցաւ ի վերայ խաչին, որ տեղ որ յիշէին, այլ ոչ մեռձենան ի տեղին, ջերմին և սարսափելոյն, զի Հեռասցէ ծառայս Աստուծոյ *այս ինչ անուն*»։

Մենաստանս ունի ինն Հին խուցեր, որք ունին նեղ լուսամուտներ և ցած դռներ և մի այգի, որի մէջ կան բաւականին պատուաստեալ Թթենիք, որԹ, կեռասի, ընկուզի և բանջարանոց։

*Հարանց.* վանուցս արևմտեան Հանդէպ մի քանի քայլ Հեռի կայ մի Հին Հանգստարան, որի մէջ կան ճգնաւորաց, վարդապետաց և միաբանից շատ Հանգիստներ։

*Ճգնարան.* Ահա այս է Հարանցն։ Վանքիս արևելեան Հանդէպ գետակի աջ ափի քերծում մի քարայր է, որի մէջ կայ երեք պատուական խաչքար և որի մէջ, աւանդաբար ասում են, ճգնած են ճգնազգեաց անձինք։

*Կաղնի խաչ.* Գիւղիս արևմտեան Հիւսիսային կողմում, ձուաձև բարձրացած երկու սարերի մէջ ընկած մի սեռի վերայ կայ երեք Հնադարեան խաչարձան, որ իբր ուխտատեղի յարգուած է Հասարակութիւնից։

*Ծիրանաւոր.* Կաղնի խաչից բաւական վերև, նոյն ճանապարՀի աջ կողմում կայ աւերակ եկեղեցի, գիւղատեղի և Հանգստարան։

*Նահատակ.* Գառնակերի Հիւսիս արևելեան կողմում, նոյն Ծամքոր գետակի աջ ափի վերայ կայ մատուռ, ձեղունն փայտաշէն, որի մէջ կայ մի գերեզման. որ է անունն անյայտ ՆաՀատակի գերեզմանն։

Digitized by Google

**Դ. ԲԱՐՕՈՒՄ ԳԻՒՂ.** Հիմնուած է Ճամքոր գետակի ձախ ափի վերայ Գառնակերից մօտ մի մղօն վար. բնակիչք գաղթած են Անի քաղաքից, հողն արքունի, անջրդի, չէկահող, և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն, խոր ձոր է գիւղի տեղն, նեղ հորիզօնն, խեղդուած տեսարանն, երկար կեանք 80 տարի, եկեղեցին նորաշէն, կիսատ, չորս սիւների վերայ. երկարութիւնն 22 մետր, լայնութիւնն 11 մետր 40 սանթիմ. քահանայ մի: Ծուխ 154, ար. 614, իգ. 472, ար. ծ. 28, իգ. 21, պս. 10, ար. նն. 10, իգ. 8:

Գրչագիր աւետարան, թղթեայ, անարուեստ են չորս աւետարանչաց պատկերներն, նկարներն, և կեղծ գոյներն: Ցիշատակարանից. «Եւ արդ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՌԻԸ. ձեռամբ մեղուցեալ և անարժան Յովհաննէս եպիսկոպոսի 'ի գերահռչակ ուխտիս Եւստաթէոսի սուրբ առաքելոյն ԹՌԸՃ. (9800) սուրբ նշխարացս որ աստ կան հաւաքեալ ի մէջ տաճարիս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին 'ի հայրապետութեան տեառն Յովհաննիսի Աղուանից կաթուղիկոսի....»: Ստացողն է «Յակովբ էրեց»:

Գիւղիս մօտերքում կայ երեք եկեղեցի և երկու վանք:

Ա. քարուկիր և փոքր եկեղեցի, որ կայ գիւղիս հարաւային հանգստարանի տակ՝ փայտաշէն ծածքով. դռնագլուխ փայտի վերայ. «Թիվ. ՌՃԵ. էր»:

Բ. Գիւղիս հին եկեղեցին, որ կայ հիւսիսային հանգստարանի մօտ, նոյնպէս փայտաշէն ծածքով:

Գ. Թռան (բարձր տեղ թառած) եղցի վերջին հանգստարանիս մէջ մի սեռի վերայ: Կանգուն մնում են միայն չորս պատերն, միջումն բուսած է մի բռշնի ծառ:

Ա. Վանքն կայ գիւղիս արևելեան կողմում այգիների մէջ, որի չորս պատերն քարուկիր, ծածքն փայտաշէն, անունն անյայտ, մեծութիւնն միջակ:

Բ. Վանքն Սուրբ Հռիփսիմէ, որ կայ այգիներում Ակուբանց բաղում: Ամբողջապէս քարուկիր եղած է վանքս, խոնարհած է առաստաղն, որ փայտաշէն է այժմ: Այս է

Գօշ-Մխիթարի ակնարկած Հոփսիմէի մենաստանն։ Համարեա թէ ընդարձակ հանգստարաններով շրջապատուած է գիւղս։ Տեղացի ծերունիք այս երևոյթը բացատրում են հետևեալ կերպով. «Լազկին (Լեկզի) քանի հետ (անգամ) եկած, սարսափելի պատերազմներ արած, թալանած, կոտորած և գերիներ տարած է, մանաւանդ այստեղ մեր Ձորն հաւաքուած հայոց հետ։ Քանի հետ ղալապատըղ արած են Տամքօռ գետիս աջի ձորում [1])։ Ձորս կողմի հայերն հաւաքուած են ձորս պատերազմների ժամանակ. կռիւներում նահատակուած բոլոր հայերն թաղուած են այս հանգստարաններումս, սրան համար էլ չտացալ ա մեր գերեզմանուտը»։

Ներքին-Ղօթիւլ. Գիւղատեղի հանգստարան և եկեղեցի, որք են Տամքօռ գետակի աջ ափի վերայ, ուր կայ և հնուց մնացեալ այգիներ։

*Մէլիք-Առստամի ծագումն.*

(Պատմական աւանդութիւն) «Բարսում գիւղացի Մէլիք-Առստամի նախնիքն ծագած են Բագրատունի թագաւորազն սերնդից, այս է Կիւրիկեան թագաւորների յետագաներից»։ Կիւրիկեան Բագրատ Բագրատունի իշխանն զինուորական ծառայութեան է մտնում Վրաց մի թագաւորին մօտ, բայց անբաւականութեան պատճառաւ մի ժամանակից յետոյ ելնում է նոյն ծառայութիւնից և դիմում Պարսից Շահ-Աբաս առաջնոյն։ Նախ ներկայանում է Պարսից նախարարական ժողովին, ծանօթացնում իւր Բագրատունի լինելը և փափագ յայտնում զինուորական ծառայութեան մէջ մտնելու։ Շահ-Աբաս իւր նախարարներից իմանալով Բագրատի նպատակը՝ ընդունում է զինքը զինուորական ծառայութեան մէջ, այնուհետև հետզհետէ փորձով տեսնելով Բագրատի հաւատարմութիւնը և կամենալով վարձատրել նորա ծառայութիւնը՝ Շահ-Աբաս խանութիւն է տալիս նրան։ Բագրատ

[1]) Ձորս, ծածկուած է մշտադալար գի ծառերով, բաւական խոր ահարկու, դժուարամատչելի և ապահով է պատսպարուելու համար։ Այս տեղ կայ հարկ եղած անհրաժեշտ պիտոյք—պատուական ջուր, վառելափայտ, ջրաղաց։ Մուտքն գետակի աջ կողմիցն է։

խանից ծնուում է Առստամ-բէկն, Առստամ-բէկից՝ Այտին-բէկն, Այտին-բէկից՝ Առստամ-բէկ բ. որ ստանալով մելիքութեան հրովարտակ գալիս է նախ Կուսապատ աւանն, ամուսնանում Ապրէս-աղայի Վարդխաթուն դստեր հետ, ապա գալիս Գանձակ Նահվերտի խանին մօտ ներկայացնում շահական հրովարտակը և այնուհետև բնակութիւն հաստատում, իւր նախնիքներից ժառանգութիւն մնացած, Բարսում գիւղումս և տիրում Մլզնաբերդից մինչև Եօթն-աղբիւր (Ետտի-բուլաղ)։

Կիւլստանի Մելիք-Աբով Գ. ամուսնանում է Մելիք-Առստամիս դստեր հետ և հաստատում սերտ բարեկամութիւն։ Մելիք Առստամիցս ծնուում է Ստեփան-աղան. իսկ սորանից ծնուում են Գրիգոր, Աւագ, Աւետիս, Յարութիւն, Ստեփան, Առստամ, Յովսէփ և Մկրտիչ աղաներն։ Մելիք-Առստամն մինչև իւր մահն ապրում է քաջութեամբ, տիրում իւր սեփական ժողովրդեան, որ գաղթած է Անի քաղաքից և բնակութիւն հաստատած Բարսում գիւղումս և իշխում Մլզնաբերդին և ի թիւս այլ գիւղօրէից Քարատակ [1]) Համշափոր [2]), Վերին-Ղօթիւլ [3]) և Ներքին-Ղօթիւլ [4]) գիւղերին։ (Աւերակներս ընկած են Գարդման գաւառի արևմտահայեաց ծայրում։

Մելիք-Առստամիս գերեզմանն գտնուում է Գանձակի Ս. Յովհաննէս եկեղեցու գաւթի հարաւային կողմում, որի տապանաքարի վերայ քանդակուած է.

«Անմոռաց յայս տապան քաջ անուանի
Հանգչի մարմին Մէլիք-Առստամի [5]),
Յազգէն Բագրատունի Հայկազանց տոհմի,

[1]) Այժմ աւերակ դիւղ, եկեղեցի և հանգստարան, որ կան Նիւկզարից Նոր-Փիփ տանող ճանապարհի վերայ։

[2]) Նոյն այժմ աւերակ, որի մէջ կայ և եկեղեցի և հանգստարան, որ կան նոյն ճանապարհի արևելեան կողմում, Քարատակից մղոնաչափ վերև։

[3]) Նոյն ճանապարհի արևմտեան կողմում եկեղեցի և հանգստարան։

[4]) Բարսում գիւղիս հարաւային հանդէպ, գետակի աջ ափի վերայ։ Անում է եկեղեցին, որի շուրջն հանդստարան է։

[5]) Մելիքիս ծագման և իրաւանց և գործնէութեան մասին գրած է Գերազնիւ պօլկովնիկ Յ. Դաւթեան Լազարեանց տպ. ի Թիփլիս 1877 Կովկաս. գլխաւոր Կառ. տպարանում ռուսերէն լեզուաւ։

Տիրող Բարսում, Գանձակ նահանգի,
Ծնեալ 1722, վախճանեալ 1794 ամի»։

Ե. ՋԱԿԻՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Բարսումի հիւսիսային կողմում, մի տեսարանաւոր տեղում. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80—90. եկեղեցին Սուրբ Աստուածածին. քահանայ մի։ Ծուխ 110, ար. 459, իգ. 349, ար. ծն, 22, իգ. 18, պսակ 10, ար. ննջ. 9, իգ. 5։

Զ. ՋԱՐՏԱԽԼՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Ջակիրի արևմտեան կողմում մի հարթավայր տեղում. որի բարձ. 5181, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի, հացաւէտ. տեղական բերքերն նոյն, սննդարար օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80—90 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, հոյակապ, քահանայ մի։ Ծուխ 200, ար. 770, իգ. 550, ար. ծն. 40, իգ. 31, պսակ 20, ար. ննջ. 15, իգ. 10։

Տղայոց միդասեան ուսումնարան. աշակերտք 35, միամեայ ռոճիկ վարժապետին 300 րուբլի։

Գիւղիս մօտ է *Ոսկան նահատակ* անուամբ ուխտատեղին, որ *Բուլանլուղ* ևս է կոչուում։

Է. ՊԱՏԻ ԳԵՂ. Հիմնուած է մի բարձրահայեաց (4973 ոտք) տեղում. բնակիչք եկած են Ջրաբերդից, Փամբակից և Ղարա-Մուրատ գիւղերից. հողն արքունի, անջրդի, բայց բարեբեր. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տ. եկեղեցին Սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։ Ծուխ 245, ար. 735, իգ. 713, արակ. ծն. 50, իգ. 48, պս. 28, ար. ննջ. 15, իգ. 14.

Ը. ՂՈՒԼԱԼԻ ԳԻՒՂ. Հիմնուած է մի խոր ձորում Տաւուշ գետակի օժանդակի (Ախնջի) վտակի աջ ափի վերայ, որ սահմանագլուխ է Փախոսս և Գաւս գաւառների. (Նախկին բնակիչք գերի տարուած են Պարսկաստան). այժմեան բնակիչք նախ՝ Փախոսս քաղաքից տեղափոխուած են Մեծ-Ղարա-Մուրատ գիւղն, ապա այստեղ. հողն արքունի, սակաւ,

Digitized by Google

միջակ արդիւնաբեր. օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանքն 80—90 տ. եկեղեցին Սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն, քահանայ մի, որ եկած է Բաշ գեղից։ Ծուխ 114, ար. 742, իգ. 601, ար. ծն. 31, իգ. ծ. 26, պս. 15, ար. նն. 8, իգ. 6։

Եկեղեցումս կայ չորս գրչագիր.

Ա. Աւետարան թղթեայ, փոքրագիր. անճաշակ են չորս աւետարանչաց պատկերներն և նկարներն, բայց գեղեցիկ են փոքր տառերն։ *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սայ 'ի թուաբերութեանս Հայոց ՉԾԴ. յԱրարատեան գաւառիս ի տեղիս որ կոչի Նորագեղ»։ Անյայտ է գրողի անունն, նախկին ստացողն. է Սիմէօն անուն ոմն քահանայ, երկրորդ ստացողն է Թանում Հայոց ՋՂԹ.-ին։

Բ. Աւետարան թղթեայ, փոքրագիր, բազմապատկեր, սակայն անարուեստ, անճաշակ և առանց յիշատակարանի։

Գ. Աւետարան թղթեայ, փոքրագիր, գրուած Հերմինի վանքում, չունի թուական, անյայտ է գրողն։

Դ. Աւետարան փոքրագիր, թղթեայ. *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՌՃԺԸ. ի հայրապետութեան երից երանելոյ հովուապետին տանս Աղուանից տեառն Պետրոսի կաթուղիկոսին, թագաւորութիւն Պարսից Շահ Սիլէմանին գրեցաւ ձեռամբ․․ Յովհաննիսի 'ի յերկիրս Գանձակու 'ի գեաւղս, որ կոչի Հարցհակիս(տ) 'ի դրան Սուրբ Մլնաբերգին. ի դառն ժամանակիս աւարտեցաք որ հարկապահանջութիւն բազմացեալ էր և անօրէնքն յամենայն ժամ խրոխտային 'ի վերայ քրիստոնէից ազգին»։

*Խորանաշատ վանք* (51)

Հիմնուած է նոյն օժանդակ վտակի աջ կողմում, Դուլալի գիւղի արևելեան կողմում, մի գեղեցիկ հովտի մէջ։ Արևմտահայեաց ձորակիս աջ կողմում կառուցեալ է վանքս համակ տորոնագոյն սրբատաշ, պատուական քարով չորս կամարների վերայ, որոց գլխին կանգնած է մի գեղեցկաձև կաթուղիկէ։ Տաճարս հրաշալի է Գանձասարեց յետոյ. ունի

Digitized by Google

մի աւագ և չորս փոքր խորան (իրարու վերայ) երկու խորհըրդանոց, երկու դուռն, 13 մետր երկարութիւն, 10 մետր 55 սանթիմ լայնութիւն։ Աւագ խորանի ստորոտով, դասահայեաց կլոր երեսին վերայ շինուած են տասն փոքրիկ, գեղեցիկ և խորանաձև կերտուածներ։ Փորագրուած է խորանի մօտ.

«ՈԿԹ. ես Աւելդատ Սրտժեցի միաբանեցայ Խորանաշատ Սուրբ Աստուածածնին (ս) և ետու զծախս այսմ խորանիս յիշատակ ծնողաց և եղբարց իմոց Շաւուրին և Ապիրատին և վարդապետն հաստատեաց Բ. ժամ յայսմ խորանիս, Ա. ի տաւնի Վարդավառին և Ա. Վարագայ խաչին անխափան. հաստատ է կամաւն Աստուծոյ»։ Աւագ սեղանի ետև փոքրիկ խորաններէ գլխին. «Անդրէաս ՈԿԷ.» «Յովսէփ քահանայ ՈՀԱ»։

Հիւսիսային փոքր խորանի վերայ.

«ՈԿԵ. ես Աբրահամ Կանաչհողեցի [1]) և ամուսին իմ միաբանեցաք Խորանաշատու Աստուածածին (Նին), ետու զծախս խորանիս և վարդապետն հաստատեաց ինձ Բ. ժամ ի տաւնի Սուրբ Գրիգորի անխափան»։

Վանքս իւր արևմտեան կողմին կից ունի հրաշազան գաւիթ կառուցեալ չորս միապաղաղ և կլոր սիւների վերայ՝ նոյնպէս շինուած սրբատաշ քարով։ Գաւիթս ունի 16 մետր 6 սանթիմ երկարութիւն, 15 մետր 90 սանթիմ լայնութիւն և չորս փոքր խորան, որոց երկուսն իրարու վերայ դրան հարաւային կողմում և միւս երկուսն հիւսիսային։ Տաճարիս արևելեան որմի վերայ արտաքուստ. «Յանուն Աստուծոյ ես Գրիգոր որդի Վասակայ Միջկա շինեցի զԿաւշկակերանց [2]) և տուի ի Սուրբ Աստուածածինս Խորանաշատու. վարդապետն հաստատեց մեզ Բ. պատարակ ի տաւնի Հոգեգալստեան Ա. ինձ և Ա. ամուսնո իմո, կատարիչքն...»։

Գաւթի հարաւային որմի վերայ կայ արևի ժամացոյց։ Այժմ տեղ տեղ քայքայուած են վանքիս և գաւթիս սալկախներն և շրջապարսպի պատերն. մի վանք, որ զարմաց-

---

[1]) Կանաչ-հողեցի։ [2]) Կօշկակերանց։

Digitized by Google

նում է այցելուները իւր երկնանման շինութեամբ և լացացնում իւր անցեալի փառքով և ներկայիս աւեր և ամայի դրութեամբ։

Մենաստանս ունի և շրջապարիսպ. որի ներսում, տաճարի հարաւային կողմում կայ մի փոքր մատուռ՝ շինուած սրբատաշ քարով, որը տեղացիք անուանում են Սուրբ Կիրակի։ Այստեղ կայ մի կիսաւեր մատուռ ևս՝ շինուած հասարակ քարով, որի մէջ կան ամփոփեալներ։

Երրորդ մատուռն, որ շինուած է սրբատաշ քարով, պարսպից դուրս արևելեան կողմումն է, միաբանից հանգստարանում։ Խոնարհուած է մատրանս գլուխն, որի մէջ, ասում են, է Վանական վարդապետի գերեզմանն. որպէս վկայում է և Կիրակոս, բայց տապանաքարն չունի արձանագրութիւն։

Վանքս ունեցած է մեծ կալուածներ և հողեր, որովք ապահոված է եղել վանիս ապագան. այժմ միայն մնացած է 15 օրավար անվիճելի հող, մի աւերակ ձիթահանք, ծերունազարդ ծիրանի և ընկուզի ծառերով լի խոպանացեալ պարտէզ և պատուական քարահանք։

Աւերակ գիւղեր, եկեղեցիներ և հանգստարաններ՝ կան վանքիս հեռաւոր և մերձաւոր շրջապատում Բլովիկ, Չիլքինլու, Ղօշաչի, Աղ-Բուլաղ, Իրիցի շէն, Սղնախ եւ Չինարի [1] կոչուած տեղերում։

Ղուլալի գիւղից վերև, գետակի աջ կողմի լանջի վերայ կայ մի քարուկիր մատուռ, որի մէջ—ասում են Վանական վարդապետն բնակած է մի ժամանակ ստիպեալ Թաթարների երկիւղից։ Մատրեցս փոքր ինչ վերև կայ գիւղատեղի, աւերակ եկեղեցի և հանգստարան։

## ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ.

Ա. ՓԱՌԻՍՈՍ ԲԵՐԴ [1]. Համանուն աւերակ քաղաքին

---

[1]) Մի քանի գերդաստան հատուածելով Ղուլալի գիւղից բնակութիւն հաստատած են գիւղումն, որ կայ Խորան. վանքից ներքեւ։ Իւրեանց մայր գիւղի հաշուի մէջ է և սոցա ծխաթիւն և ամեն ինչ։

Հիւսիսային լանջին կից՝ բարձրացած է մի քարաժայռ սար, որ բաղկացած է կրաքարից և բոլորովին առանձնացած իւր երեք կողմերից։ Սարիս, որ համարեա թէ ձգուած է արևել-քից արևմուտ դիրքով, արևելեան և հարաւային կողմերն վիմահերձ ապառաժներ են և լայնագոգ ու խոր խոր ձորեր, Հիւսիսային կողմն ամենաստտիկ զառիվայր լանջ և լայնա-գոգ ձոր. իսկ արևմտեան կողմից բերդասարս հաղորդակցու-թիւն ունի մի երկարաձիգ և թրաձև սեռով Ղանղալ սարի հետ։ Քառակիր, բրգաշատ և ամուր պարսպով պարսպուած է ոչ միայն հիւսիսային և արևմտեան կողմերն, այլ և բարձր քերծերի գլուխներն։ Ամրոցիս երկարութիւնն է 100 մետր, լայնութիւնն մօտ 80 մետր. ունի մի դուռն արևելեան կող-մից, տասներկու աշտարակ, 3 մետր 75 սանթիմ պատի հաս-տութիւն։ Բերդիս մէջ լի է աւերակների հոծ բեկորներով, որոց մէջ կայ երկու քառակիր մատուռ, որոց գլուխներն խոնարհած են և չունին արձանագրութիւն։ Բերդս ունեցած է անառիկ բառի բուն նշանակութիւնը, սակայն այժմ տեղ տեղ քայքայուած են պարսպի պատերն։

Նշանաւոր է ամրոցիս ամենապատուական և յորդառատ ջուրն որ զարմացնում է այցելուները իւր ազնուութեամբ և սառնութեամբ և հնարագէտ շինուածով։

Հիւսիսային պարսպին կից՝ ներքուստ շինուած են երկու պատից քառակիր և թաղակապ ստորերկրեայ սենեակներ, որք իրարու հետ հաղորդակցութիւն ունին մի մեծ դռնով, որ բացուած է միջնապատից։ Ա. սենեակն գրեթէ կիսով չափ լցուած է հողով. իսկ Բ-ն լի է ջրով։ Ասում են որ ջուրը ստորերկրեայ ականով բերած են Ղանղալ սարից՝ հաղորդա-կից սեռովն։ Պատմում են թէ հետաքրքիր անձինք ջրաւա-զանիս մէջ լցրած են յարդ, որ ելած է Ղարա-Բուլաղ ա-նուն մեծ աղբիւրից՝ որ բերդիս հիւսիսային ստորոտի ձո-րումն է և դարձնում է երկու ջրաղաց։ Փորձով, որպէս

[1]) Արութիւնայ սարի հարաւային կողմում է Դինալ սարն 11057 ոտք. ապա Գեղամայ լճի և գաւառիս մէջ ընկած են իբր սահման Օկրուջա 11986, Օև խաչ (Ղարա խաչ) 10081 ոտքերն։



Digitized by Google

թէ իմացած են, որ մեծ աղբիւրն կապ ունի ջրաւազանիս հետ։

Բերդիս հարաւային քերծում կան վիմափոր այրեր, որոց մէջ կայ վիմափոր ննջարան։ Մուտքն ոչ եթէ բերդիս միջովն է, այլ արտաքուստ քերծի տակովն (52)։

Բ. ՄԱՄՐՈՒՏ ԲԵՐԴ (53). Հիմնուած է Զարէք անապատից վար Ծամքոր գետակի և Գետաբակ վտակի ջրախառնուրդում։ Բերդավայրն թեքուած է դէպի Ծամքոր գետակի ձախ ափն։ Բերդս ունի ամուր բուրգերով շրջապարիսպ, իսկ արևելեան կողմից կրկնապարիսպ. ունի չափաւոր մեծութիւն, ամուր դիրք, իւր միջում մի կոնաձև բլուր, զանազան մեծութեամբ քարայրներ և քարուկիր շինութեանց շատ փլատակներ։ Այժմ համարեա՛ թէ անտառապատ և մացառուտ է ամրոցս և որջ եղած աւազակների. ահարկու են քարայրներն և սոսկալի անտառիս մէջ մտնելն։

Ջուր չկայ բերդումս, վասն որոյ ունի ստորերկրեայ ական, որով ջուր փոխադրած են բերդս Ծամքոր գետակից։ Հետզհետէ քայքայուելու վերայ են տեղ տեղ ամրոցիս պարիսպներն։

Գ. Վահրամ իշխանի Քերղաքաղաք ամրոցն (այժմ կոչուում է Ղալա-Բոյուն), որ հիմնուած է մի ձկնաձև սարի վերայ։ Սարս գտնուում է Զակամ գետակի ձախ կողմում, որի դիրքն ձգուած է հիւսիսային արևմուտքից հարաւային արևելք։ Ահա սարիս վերայ է բերդն, որ միևնոյն ժամանակ եղած է և քաղաք ինչպէս ակներև երևում է խանութների, տների և եկեղեցիների աւերակներից։ Արդէն յայտնի է երեք եկեղեցու աւերակն, իսկ եթէ եղած է և այլ եկեղեցի, ոչինչ յայտնի չէ։ Ծրջապարիսպն, որ տեղ տեղ կիսաւեր է, տեղ տեղ քայքայուելու վերայ, ձգուած է սարի դիրքի ձևով։ Բերդիս մօտ կայ և հանգստարան (54)։

Դ. Դղեակ, որ կոչուում է (Ղըզ-ղալա) որ գտնուում է Ղուլալի գիւղից բաւական վերև նոյն օժանդակի (Ախնջի) աջ ափի վերայ։ Ջրեզերքումս ցցուած է մի բարձր և սրա-

ծայր ժայռ, որ իւր արեւելեան կողմից ունի մի դժուարատար և ոլոր մոլոր կածան։ Հազիւ թէ կալաչափ մեծութիւն ունի ժայռիս գագաթն, որի շուրջն տեղ տեղ նշմարւում են տակաւին քարուկիր պատերին հետքերն և ջրաւազանի վիմափոր փոսեր։ Դղեկաքարձ ժայռիս արեւելեան ստորոտի հարթակում կայ մի եկեղեցի և հանգստարան (55)։

## ԺԲ. ԲՈՒՍՏԻ կամ ԲԱԽՍ ԳԱՒԱՌ.

Ա. *Ղրղի* (ղարա-ղայա) *գիւղ*. Հիմնուած է նոյն (Անձչի) օժանդակի ձախ կողմի բարձր սարի արեւելահայեաց լանջին վերայ. բնակչաց մի մասն բնիկ և միւս մասն տեղափոխուած Ղարա-ղայա գիւղից (գտնուում է Թարսայ գետակի վերայ)։ Հողն արքունի, լեռնային և միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն՝ ցորեն, գարի, կորեկ, գարնանի, ոչխար, տաւար, գոմէշ, խոզ, տանձ. խնձոր, պատուական օդն, կլիման և ջուրն, ուշագրաւ տեսարանն, 90 տարի երկար կեանքն, սուրբ Յովհաննէս եկեղեցին, որ նոր կառուցեալ է վեց սիւների վերա, քահանան գալիս է Նորաշէնից։

Ծուխ 84, ար. 541, իգ. 449.

*Կիսատ-խաչարձան*. Ղըզ-ղլը-դղեկի հիւսիսային հանդէպ, նոյն օժանդակի ձախ ափում ճանապարհի վերայ ընկած մի կիսատ խաչարձան, որի արձանագրութիւնը, թէև եղծուած է տեղ տեղ, այնու ամենայնիւ արժան համարեցինք նոյնութեամբ ընդօրինակել. « . . . . . . . . . ութեամբ ողորմեալ ես . . . Կիւրիկէի, զԱբասայ աւազան է . . . որդեկիր և դտէր Յովհանէս ե . . . . սի արձան շին . . իյո տափին աւետարան . . . ի ձորի բերաք աշխատութեամբ խաչս կանգնեցաք հանդիսիւ բարեխաւս առ Քրիստոս Յիսուս յահեղ աւուրն դատաստանի»։

*Ջօրաւոր*. Ղրղի գիւղիս արեւմտահարաւ կողմում հարաւահայեաց մի խոր ձորի հարաւահայեաց լանջի վերայ կայ գիւղատեղի, հանգստարան և փոքր եկեղեցի, որի մօտ մի կոտրուած խաչքարի վերայ.

Digitized by Google

«Ես Յոհան հայր և եղբայր իմ Տիրածէր կանգնեցաք զխաչերս, Քրիստոս Աստուած ող. . . »: Հանգստարանում մի խաչքար տապանաքարի վերայ. «խաչս ու. թիւ տէր Աթանասի. . . . »:

Եկեղեցուցս փոքր ինչ հեռի կայ մի հանքային թթու ջուր, որ յար և նման է Տուշուց վեր եղած թթու ջրին:

Վանական վարդապետի քարայրն (56)

Զօրաւորի հիւսիս-արևմտեան կողմում մի բարձր քերձի գլխին կայ մի քարայր, որի մէջ է մի վիմափոր փոքրիկ եկեղեցի և որի մէջ կայ մի գերեզման: Քարայրիցս հեռի չէ աւերակն, որի մէջ կայ եկեղեցի և հանգստարան: Աւերակս այժմ կոչւում է Շլորուտ (սալոր-սալորուտ): Ահա այս է Կիրակոսի «Ոլորուտ» անուած գիւղի աւերակն:

Բ. ՋՈՐԱԹԱՆ ՇԷՆ. Հիմնուած է Դրղի գիւղի հիւսիսային կողմում, մի տեսարանաւոր տեղում. բնակիչք բնիկ, հողն բէկական, անջրդի, բայց հացաւէտ. տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90—100 տարի. եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն և առանց փոքր խորանի, երկարութիւնն 18 մետր, լայնութիւնն 9 մետր 65 սանթիմ: Արտաքուստ դրան արևմտեան կողմում. «Թվ. ՌՃԼԲ. յանուն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ձեռամբ մեղապարտ Ովանէս եպիսկոպոսին Խորանաշատու»: Խորանի հիւսիսային կողմում. «Սուրբ խաչս բարեխօս Ովանէս եպիսկոպոսի աշակերտ տէր Դաւթի»: Քահանան գալիս է Մովսէս գիւղից:

Գրչագիր աւետարան թղթեայ, անճաշակ պատկերներով և անազնիւ գոյներով, գրուած է ոմն Սարգիս անուն անձի ձեռնով. «Արդ գրեցաւ սայ ի յերկիրս Աղուանից ի դաւառս Մաղաւուզայ ի գիւղս, որ կոչի Վաղազուն ի դուռն սուրբ ուխտիս թվիս ռղա.»: Ստացողն է Մանկասար անուն ոմն: Իսկ գիւղիս հանգստարանում, որ արևմտեան կողմումն է, կայ մի մատուռ Բարձրեալ անուն, որ ուխտատեղի է:

Ծուխ 28, ար. 198, իգ. 170.

Գ. ՄՈՎՍԷՍ ԳԻՒՂ. Հիմնուած է Տաւուշ գետակի աջ

Digitized by Google

կողմում մի ձորի մէջ. բնակիչք բնիկ, հողն արքունի և բազմարդիւն. տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, տեսարանն խեղդուած, երկար կեանք 80 տ. եկեղեցին սուրբ Գէորգ, քարուկիր, կիսատ. քահանայ երկու:

Ծուխ 74, ար. 507, իգ. 488.

Դ. ՆՈՐԱՇԷՆ ԳԻՒՂ. Հիմնուած Զորաթանի արևմտեան կողմում մի փոքր ձորակի ձախ լանջին վերայ. բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի, հացաւէտ, տեղական բերքերն նոյն. անվնաս օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 80 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ չորս սիւների վերայ, երկարութիւնն 19 մետր 75 սանթիմ, լայնութիւնն 10 մետր 45 սանթիմ. քահանայ մի:

Ծուխ 38. ար. 351, իգ. 262.

Միդասեան ծխական ուսումնարան, աշակերտք 40, թոշակատու 35, տարեկան ռոճիկ վարժապետի 300 ռուբլի:

Ե. ԿԱՐՄԻՐ-ԱՂԲԻՒՐ. (ղզըլ-բուլաղ) գիւղ. շինուած է մի սարահարթի վերայ Նորաշէնի արևմտեան կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի և միջակ բարեբեր. տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 88—95 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս ծածքն փայտաշէն. «Ես տէր Վարդանս շինեցի զեկեղեցիս ձեռամբ Մուրադխանի թվ. ռճծ.»: «Սուրբ խաչս Խանադին»: «Ովանէս եպիսկոպոս շինեցի զեկեղեցիս ձեռամբ տէր Գրիգորին»: Քահանայ մի: Ծուխ 105, ար. 602, իգ. 494.

Զ. ԲԵՐԴ-ԳԻՒՂ. (թովուզ-ղալա). Շինուած է Տաւուշ գետակի ձախ ափի վերայ. բնակիչք բնիկ. (մասամբ եկամուտ), հողն արքունի. անջրդի և միջակ բարեբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն, կլիման և ազնիւ ջուրն, երկար կեանք 85 տարի. եկեղեցին սուրբ Գրիգոր (կանխաւ շինուած է եղել չորս սիւների վերայ, բայց խոնարհած է գլուխն), ծածքն փայտաշէն. երկարութիւնն 21 մետր 70 սանթիմ, լայնութիւնն 10 մետր 62 սանթիմ: Ներքուստ արևմտեան որմի վերայ:

Digitized by Google

«Անուն Աստուծոյ ես Թիփլիզեցի Չիթախէնց մղտեսի խոճա Սուլիս շինեցի եկեղեցիս, խորանս Ծացուոյուին (°) սրբազան եպիսկոպոսին Թաւուզա երկրիս Մէլիք-Ղօրխմազին[1]) կամակցութեամբ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոյ Թաղի և Բէկխսուլթանի և կողակցին իմոյ Դարիճանին և որդոյ իմոյ Ստեփանին և կողակցին Ասլիզատին, Ցարութիւնին և կողակցին Բէկխսաթունին և Պօղոս Սարկաւագին և դստերացն իմոյ Ապաշխարող Աննային և Հռիսիմէին, Ծահրուպանին և իւր դուստր Քևոժվանին, փեսայ Մելքոնին և իւր դուստր Բէկխսուլթանին»։ Քահանայ մի։

Տուն 101, ար. 598, իգ. 458.

Գիւղիս արևմտեան կողմում կայ *Սուրբ Սարգիս ուխտատեղի* քարուկիր մատուռ, որի մօտ կայ ընդարձակ հանգստարան։

Սուրբ Սարգսից վերև *Աւագ-Սուրբ-Նշան* քարուկիր մատուռ, որի մօտ կայ մանր խուցեր և որ ուխտատեղի է։

Գիւղիս հարաւային կողմում, գետակի աջ ափի վերայ մի ծառի տակ կայ մի վարդապետի գերեզման։

Է. ՆԱԻՈՒՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Բերդի արևմտեան կողմում. բնակիչք հաւաքածոյ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին. քահանայ մի։ Գիւղիս մօտերքում կան մանր լճակներ և գեղեցիկ խաչարձաններ.

Տուն 34, ար. 253, իգ. 205.

Ը. ՏԱԻՈՒՇ ԳԻՒՂ (57) Թովուզ. Հիմնուած է Բերդ գիւղի հիւսիսային կողմում, մի ձորի հարաւահայեաց լանջի վերայ. բնակիչք հաւաքուած[2]) զանազան տեղերից. հողն արքունի

---

[1]) Անկարելի եղաւ իմանալ թէ սա ինքն միայն իշխած է Տաւուշի ձորիս, թէ եղած են և այլ իշխողներ. մէլիքութիւնը իւր նախնիքներից ժառանգած է թէ իրանից սկսուած է, յետագայ իշխող մէլիք ժառանգ ունեցած է թէ ոչ։ Միայն յայտնի է, որ հայ եղած է և մականուն է ՂՈՐԽՄԱԶՆ և ոչ մկրտութեան։

[2]) Աւանդաբար ասում են «ՊԱՐՍԿԱՍՏԱՆ ԳԵՐԻ ՏԱՐԱԾ ԵՆ ԳԻՒՂԻՍ ՆԱԽԿԻՆ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ»։

և սակաւ արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն (կայ և այգի). անվնաս օդն, կլիման, պատուական ջուրն, նեղ հորիզոնն, խեղդուած տեսարանն. 80 տարի երկար կեանք՝ սուրբ Աստուածածին եկեղեցին, ծածքն փայտաշէն, բեմն և ժողովրդահայեաց երեսներն խաչազարդ, որք՝ բերուած են հին հանգստարանից, մի քանիսին վերայ կայ արձանագրութիւն.

«Սուրբ խաչս է Վանէսին և Հախասմոնոյ և Գոհարին և 'ի վեր Քրիստոս Աստուած, վաշ վաշ... Վարդան կազմող (խաչիս) ՌԿԷ.»։

«Սուրբ խաչս բարեխաւս Փարուն»։

« ,, ,, ,, Մխիթար... Քիրամ կազմող թվ. ՌՀԹ.»։

Եկեղեցուս հիւսիսային կողմում կայ մի առանձին փոքր խորան (բացի փոքր խորանից) որ ուխտատեղի է. ոչ ոք չգիտէ գիւղացիներից թէ ինչ ուխտատեղի է։ Քահանան գալիս է Բերդից։

Ծուխ 95, ար. 663, իգ. 502.

*Գիւղիս անդերում կան հետևեալ աւերակներն.*

1) ԽԱՉԱԴԲԻՒՐ գիւղիս հիւսիսային կողմում, որի մօտ կան խաչարձաններ։

2) ՔԱՐՈՒԿԻՐ ՄԱՏՈՒՌ Դուրնկեանոյ բերդի հարաւային ստորոտում, որ ուխտատեղի եղած է կանխաւ (գիւղիս արևելեան կողմում)։

3) ՍՈՒՐԲ ԿԻՒՐԱԿԻ մատուռ (գիւղիս հարաւային հանդէպ Կածարքէթի լանջի վերայ) որի մէջ կայ քարեայ խաչարձան՝ մնացեալ ի հնուց՝ և որ ուխտատեղի է։

4) ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ ՄԱՏՈՒՌ (Կածարքէթի մօտ հարթակի վերայ հին հանգստարանում, գիւղիս հարաւային հանդէպ), որի ծածքն փայտաշէն է և ունի խորանումն մի խաչարձան։

5) ՉԻՆՉԻՆ. Գեղեցիկ ցանքսերով զարդարուած բարձր սարահարթ (գիւղիս արևմտեան կողմում), ուր կայ գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի, որի ծածքն փայտաշէն է։

Digitized by Google

6) ԴՈՉԱՆԱՑ ՇԻՆԱՏԵՂ. Զինչինի արեւմտահիւսիս կողմում, ուր կայ հանգստարան և մի աւերակ եկեղեցի, որից մնացած է միայն սեղանի կլորակ թաղն։

7) ԿԱՊՏԱՎԱՆՔ. որ գտնւում է Դոզանայ շինատեղի արեւմտեան կողմում մի անտառապատ սարահարթի վերայ, որի հիւսիսային խորանդունդ ձորով հոսում է Հախում վտակն։ Վանքս շինուած է կապտագոյն[1]) մեծ մեծ և անտաշ քարերով։ Վանքս կառուցեալ է չորս կամարների վերայ, որոց ոտքերն զետեղուած են պատերում։ Մենաստանս ունի խաչաձև շինուածք, մի աւագ խորան, չորս փոքր խորաններ, երկու դուռն հարաւային և արեւմտեան կողմերից, մի գեղեցկաձև կաթուղիկէ, 11 մետր 50 սանթիմ երկարութիւն, 9 մետր լայնութիւն և երկու խորհրդանոց։ *Արեւմտեան դրան վերայ.*

*«Ա. աւր պասխային նոր կիւրակին ես Հանէս արդեամբ կառուցի եկեղեցիս հոգոյ իմոյ. . . . Թվ. Ռ.»: Հարաւային դրան վերայ.*

*«Անուամբ Աստուծոյ ես Աջիշէր որդի Գորգորոյ ըմբերիս միաբանեցայ այս եկեղեցիս. բնակիչք եկեղեցուս գրեցին Բ. պատարագ յայտնութեան ճրագալուցին ինձ, միւսն ամուսնոյն իմոյ, կատարողք աւրհնեալ եղիցին»: Սորա մօտ. «ՌՁԳ. ես Աբլհասնն միաբանեցայ այս եկեղեցիս և հայրս և միաբանքս գրեցին մին աւր պատարադ սուրբ խաչին. . . .»:*

Մենաստանս ունեցած է մի քանի խուցեր և շրջապարիսպ. բայց այժմ տեղ տեղ թափուած են կաթուղիկէի և տանեաց սալկախներն, միջից ջարդուած է սեղան քարն, քայքայուած են *Խաչաձեւի* հարաւային և արեւմտեան վերնամասերն, շրջապարսպի և խուցերի ամենամեծ բաժիններն։ Բայց կան ամփոփեալ միաբաններ վանքիս մօտերքում։

Մենաստանս իւր հարաւային կողմում ունի մի նշանաւոր աղբիւր, որի ջուրն՝ իւր հազուագիւտ ազնուութեամբ,

---

[1]) Դուցէ այս յատկութիւնից ստացած լինի ԿԱՊՏԱՎԱՆՔ անունը կամ ԿԱՊՏԵՆ բայից կապտուած։

Digitized by Google

տեսս՝ թէ անմահական է։

Թ. ԹԱԹԼՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Տաւուշ գիւղի հիւսիսային կողմում Հասան վտակի աջ ափում. բնակիչք բնիկ (նախ բնակած են եղել Պառաքար կոչուած տեղում, որ գտնուում է միևնոյն անդում, ապա փոխուած են այստեղ) հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ծանր ամրան և տենդաբեր. երկար կեանք 70 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Ծուխ 96, ար. 519, իգ. 415.

Ժ. ՀԱԽՈՒՄ ԳԻՒՂ. Հիմնուած է Թաթլուից վերև նոյն վտակի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք հաւաքուած են զանազան տեղերից. հողն արքունի և միջակ արդիւնաբեր. ջրարբի են վտակահովիտներն. տեղական բերքերն նոյն. համարեա թէ նոյն են օդն և կլիման, ջուրն պատուական, երկար կեանք 75 տ. եկեղեցին Սուրբ Նշան. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 82, ար. 448, իգ. 379.

*Յաճարումս կան հետևեալ աւետարաններն.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրագիր, անյայտ գրողի անունն, ժամանակն և տեղն։

Բ. Աւետարան թղթեայ, մեծագիր. Յիշատակարանից. «Գրեցաւ սուրբ աւետարանս ի դառն և ի նեղ ժամանակիս ի լաւ, ընտիր աւրինակէ ի յերկիրս վերին Զական 'ի գիւղս՝ որ կոչի Տաքար բէկ ձեռամբ մեղաւր զառածեալ Յովհաննէս իրիցու, որ եմ ի յերկրէն Գանջայոյ 'ի գեղէն Տատախոյ, որդի մահտեսի Դաւիթ քահանայի 'ի հայրապետութեան սուրբ Աթոռոյն Էջմիածնայ տեառն տէր Մովսէսին, որ կրկին լուսաւորեաց գՀայաստան աշխարհս և յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, հայրապետութ(եան)ն Աղուանից տէր Յովհաննիսին, որ մատնեցաւ ի ձեռն պարսիկ ազգին, տարան ի դուռն Տահին, վերջն Աստուած գիտէ և եպիսկոպոսութեան պարոն

տէր Բարսեղին ի Թուականիս հայոց ՌՁԲ. ի ժամանակս Շահ Աբասին....»: Ցետոյ գրուած է կարմիր Թանաքով. «Աստուածաշունչ աւետարանս վախմ 'ի տրէ 'ի դուռն սուրբ Աստուածածնի տաճարիս, որ է հարանց անապատ Դարամաւրասու... առաջնորդ սուրբ ուխտիս Յովհաննէս եպիսկոպոս հարանց անապատիս Դարամուրադու Թիւին ռճիգ.-ին դրեցաւ ձեռամբ անարժան Եղիա արեղային...»: Հուսկ յետոյ շարայարուած է. «Ողորմութեամբն Աստուծոյ Նորոգեցաւ սուրբ աւետարանս 'ի դուռն Եղնասարու անապատն... Պետրոս սարկաւագին ՌՋԴ. ապրիլ ա. »:

Գ. Աւետարան Թղթեայ, միջակ դիրքով, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ, բայց չունի ոչ յիշատակարան և ոչ Թուական:

Դ. Աւետարան Թղթեայ, փոքրադիր. Յիշատակարանից. «Արդ գրեցաւ սայ յամի Թուաբերութեանս Հայոց ՋԾԴ: ի վանս Գլակայ ի դուռն սուրբ Կարապետի ձեռամբ.. Մարտիրոսի, որ մականուն աբեղայի, ի հայրապետութեան տէր Սարգսի Հայոց Կաթուղիկոսի ...»:

Ե. Աւետարան Թղթեայ, պատկերազարդ. (խիստ անճաշակ և անարուեստ). «Արդ գրեցաւ աւետարանս յընտիր աւրինակէ ի Թուիս Հայոց ՌԼԵ. ի գեաւղն՝ որ կոչի Դվնիկ ի դուռն սուրբ Սարգսին ձեռամբ Ներսէս գրչի» (գրուած է Ղուկասի վերջում): Տաճարումս ամփոփուած է Գրիգոր եպիսկոպոս Մանուչարեանի մարմինն:

*Պառաւաքար.* Այս անուն ուխտատեղի կայ Հախումի Հիւսիսային հանդէպ համանուն վտակի ձախ կողմում, մի բերդաձև սարի գլխին: Զորս քարով պատուած է ուխտատեղուս շուրջն, որի մէջ կայ չորս խաչաքար տապանաքարով գերեզման. և այլ համանման *գերեզմաններ:*

## ԹՈՒՄՆԻՐԱՏԱՑ ՎԱՆՔ

Հիմնուած է Հախում գիւղից բաւական վերև, Հասան վտակի ձախ ափին, մի բարձր և ցից ժայռի ներքև, ճանա-

Digitized by Google

*պարհի տակ։ Վանքս կառուցեալ է խաչաձև, տաշուած մոխրագոյն չիչ քարով. ունի մի աւագ և չորս միմիանց վերայ շինուած փոքր խորան, երկու դուռն արևմտեան և հարաւային կողմերից, երկու խորհրդարան, մի գեղեցիկ կաթուղիկէ. 9 միտր երկարութիւն, 7 միտր 40 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան վերայ եղած է գաւիթ, որ փլած է այժմ։ Գաւթիս արևելեան կողմում կայ խորան, որի ճակատակալ քարին վերայ.*

*«Յամի Կ երորդի, ե, երորդի Նորո շրջակայիս[1]) ես տէր Գրիգոր շինեցի խորանիկս Աստուածարնակ հրամանաւ Սադորնո մեծի իշխանի վասն յիշատակի ննջեցելոց իւրոց և յաւետենականութիւն անձին· իւրոյ, որք սպասաւորէք ի սմա, զիս զտէր Գրիգոր և զծնողս իմ յաղաւթս յիշեսջիք ընդ նմին և այլ զազգատոհմն».*

*Տաճարիս հիւսիսային փոքր խորանի ճակատին.*

*«Յանուն Աստուծոյ ես Դանիէլ և Այլարայ միաբանեցաք վանքս և տուաք յայտնութեամբ ժամհերայ տղին......»։ Ուշադրաւ է այն երևելի խաչարձանն, որ կանգուն է տաճարիս հարաւ-արևմտեան կամարակալ ոտի ճակատին. այո՛, ասում եմ որ իւր գեղարուեստի նրբաքանդակ ճարտարութեամբ զարմացնում է այցելուներըը։ Վանքիս բուն արձանագրութիւնն կայ արևմտեան դռնագլուխ քարի ճակատին, որը անկարելի եղաւ կարդալ։*

*Վանքս ունի և երկրորդ գաւիթ իւր արևմտեան կողմում, որի վերնամասն-թաղն-շինուած է սրբատաշ չիչ քարով՝ երկու սիւների վերայ և որի երկարութիւնն հիւսիսից հարաւ 10 մետր, արևմտից արևելք 9 մետր 40 սանթիմ է։ Այժմ խոնարհուած է գաւթիս գլուխն, որ իւր մէջ ամփոփուած ունի շատ ննջեցեալներ, բայց անարձանագիր են*

---

*[1]) Փառիսոսցի Յովհաննէս-սարկաւագ վարդապետն շինած էր մի Նոր տումար փրկչական 1116-թուին, որ կոչում է Նոր թուական։ Երբ սարկաւագադիր 1 թուականս հաւասար է փրկչ. 1116-ին և Հայոց ՇԿԵ.-ին։ Ուրեմն 65 (կե.) «ՆՈՐՈՅ ՇՐՋԱԿԱՅԻՍ» հաւասար է փրկչ. 1181-ին, որ է վանքիս հիմնարկութեան թուականն։*

տապանաքարերն։ Տաճարս ունեցած է շրջապարիսպ և միաբանից խուցեր, սակայն քանդուած են այժմ։ Վանքիս տանեաց վերայ բուսած են ծառեր։ Վանքիս արևելեան կողմում, ոչ այնքան հեռի, կայ գիւղատեղի և հանգստարան Ճխմուրատ անուն։

ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ԱՒԵՐԱԿՆԵՐ. վանքիցս բաւական վերև վտակաձորիս ձախ կողմում կայ *Քարագեղ*, *Աղ-սու* և *Խաչքուլաղ* անուն գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր ու աւերակ եկեղեցիներ։

ՉԻՆԱՐԻ կոչուած տեղում, որ կայ Հախումեցւոց գոմերի մօտ, կայ գիւղատեղի և սուրբ Գէորգ անուն մի մատուռ, որի մէջ կան խաչարձաններ և որի ծածքն փայտաշէն է։

## ՎԱՐԱԳԱՑ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ ՎԱՆՔ (58)

Հասան վտակի ձախ կողմում մի տեսարանաւոր սարահարթի վերայ հիմնարկուած է հրաշալի վանքս, որ շրջապատուած է թանձր անտառով։ Շինուած է յար և նման Գանձասարի ձևով, բայց երկնագոյն սրբատաշ քարով, որ ունի մի աւագ և ութ փոքր խորան (չորսն արևմտեան կողմում) մի գեղեցկաձև կաթուղիկէ, երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից. 15 մետր 60 սանթիմ երկարութիւն 10 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան ճակատակալ քարի վերայ. «Շինեցաւ եկեղեցիս ձեռամբ Յովհաննէս վարդապետի հրամանաւ և իշխանութեամբ իշխանաց իշխանի Վասակայ որդւոյ... պոռնկի բարսաւ (?) և սահնակեցար չարաչար» (թերիմաստ է բանս)։

*Տաճարիս հիւսիսային որմի վերայ ներքուստ.*

«Ի թվ. ՈՁ. (1231) ընդ այլ աշխարհս հոլովս հարաւ գաւազան և ցասումն Աստուծոյ գաւառն Խլաթա ի ձեռն Խորազմին և Թամթարին, ընդ որս և մեծահռչակ սուրբ ուխտս Վարագային շինեցեալ վասն մեղաց մերոց յայսմ ամի. ես Ղուկաս հայր Վարագայ առեալ զտիեզերահամբաւ սուրբ

Digitized by Google

Նշանն զշնորհեալն յԱստուծոյ 'ի փառս մարդկան 'ի ձեռն Պատրոնիկեայ և սուրբ Հռիփսիմեանց և Թոդկաւս վեց ամ շրջեցայ թափառեալ ի տեղւոյ ի տեղ. ապա ի կամսն Աստուծոյ ամենատես խնամոց տեառն հասի 'ի նոր բերդն առ Քրիստոսասէր իշխանն Վասակ յաստուածարեակ անապատ կոչեցեալ վանքս և ազդումն հնչեալ առիս հաճոյանալ սուրբ Նշանիս 'ի տեղւոջս. նկարեցի և գդեղաղէշ եկեղեցիս արժանի հանգստեան սորա և մեծարեալ 'ի քրիստոնէից՝ առի զվանքս և ետու գխաչս եկեղեցիս այս միջնորդութեամբ և վկայութեամբ տեառն Յովհաննու շինողի եկեղեցոյս՝ առաջի հրեշտակաց և մարդկան և հաստատեցաւ ինձ 'ի տանի սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, Յակովբայ և Յովհաննու յամենայն եկեղեցիս պատարագ։ Արդ եթէ ոք հանել ջանայ աստի, կապանս և անէծս ժառանգեսցէ 'ի հոգի և 'ի մարմին անբժշկելի 'ի սուրբ Նշանէս և յամենայն սրբոց Աստուծոյ։ Որչափ այս եկեղեցիս շէն է, մի՝ ոք իշխեսցէ զխաչս [1]) հանել և զիմ յիշատակս խափանել, ապա թէ ոչ, նախ զինքն ջնջեսցէ ի կենաց գրոցն և 'ի յիշմանէ Աստուծոյ. ասասցեն հրեշտակք և մարդիկ, եղեցի՝ եղեցի՝»։ *Արեւմտեան դրան ճակատակալն վերայ.*

«'Ի թվին ՈՁԶ. (1237) ես վասակ որդի Դաւթի, որդւոյ Վասակայ, 'ի տանէ Բագրատունի ի տոհմէ Դաւթայ մարգարէին 'ի փառս Աստուծոյ կառուցի զեկեղեցիս, զոր շինեցի ի ձեռն Յովհաննու և ընծայեցի զԾաղկագուղի իւր կոպարովն 'ի վանս ի Քրիստոս և հաւանութեամբ եղբարցս հաստատեցաւ ինձ պատարագ յայտնութիւն և զատիկն յիմ շինեալ մեծ եկեղեցիս, որպէս իմ հայրն յիւր շինեալ փոքր եկեղեցին գրեցաւ և կնքեցաւ, անուամբ Աստուծոյ յաւուր՝ յորում Վարագայ հայրն Ղուկաս զսուրբ Նշանն եդ յեկեղեցիս։ Արդ թէ ոք զմեր տուեալ գիւղերս 'ի մեր եկեղեցոյս հանել ջանայ և զմեր յիշատակն խափանել, թէ քրիստոնեայ է՝

---

[1]) Վանքումս չէ կենաց փայտի մասն, զի այժմ անմարդաբնակ է մենաստանս։

ի Քրիստոսէ և յիւր ընտրելոցն է նզոված, և թէ յայլազգեաց՝ յԱստուծոյ և 'ի դենէ և յառաջնորդաց իրեանց և մեր մեղացն պարտական է յաւուրն դատաստանի և ասասցէն ամէն, եղիցի, եղիցի»։

Վանքս ունեցած է և հրաշալի գաւիթ, որի գլուխն փլած է այժմ և որի երկարութիւնն է 14 մետր 50 սանթիմ և լայնութիւնն 13 մետր 20 սանթիմ. և ունի սոյն արձանագրութիւնը. «Թվ. ՉԺ. կամաւ Աստուծոյ ես Հայրուտս վայելեալ դձիավարժ իշխանութեան և հասեալ յայս տեղի՝ զարհուրեցայ 'ի սպառնալեաց և դիմեցի յեղբարանոց անապատիս առ ոտս տեր Յովհաննէս շինողի սուրբ ուխտիս և ստացայ զտնակս սակս յիշատակ ինձ և իմոցն....»։

Մեննաստանիս հարաւային կողմին կից է մի այլ վանք իւր գաւթով միասին։ Այս է Վասակի հայր Բագրատունի Դաւիթ իշխանի շինել տուածն, ինչպէս իւր արձանագրութեանց մէջ յիշեց արդէն Վասակ իշխանն։ Այժմ խոնահած է և գաւթիս գլուխն։

Իսկ իւր հիւսիսային կողմին կից՝ մեծ վանքս ունի մի առանձին խորան, որ քայքայուելու վերայ է։ Ունեցած են վանքերս և շրջապարիսպ, և միաբանից խուցեր, որք բոլորովին քանդուած են այժմ։ Վանքերիս վերայ գործ դրուած են տորոնագոյն, երկնագոյն եւ կանաչագոյն քարեր, որոց հանքերն գտնուում են վանքիս հարաւ արևմտեան կողմում ոչ այնքան հեռի։

Երևում է թէ վանքս բերուած է խողովակներով այն ջուրն, որ հոսում է հարաւային ձորով. այժմ յայտնի է ջրաւազանն և ուրեք ուրեք աւերուած խողովակներն. ջուրն ընդհատուած է և վանքս անմարդաբնակ։

Կայ այլ ևս երկու մատուռ մին վանքի հարաւային և միւսն հիւսիսային կողմում։ Այս կողմումն է և միաբանից հանգստարանն։

Digitized by Google

ԺԱ. ԱՇՈՒՂԻ կամ ԼԱԼԻ գեղ. Հիմնուած է Աղստև գետակի աջ կողմում. Վարագեան լեռնաբազկի հիւսիսահայեաց լանջի մի սեռի վերայ. բնակիչք տեղափոխուած են Խաչեն և Ջրաբերդ գաւառներից. հողն արքունի և կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, պատուական տեսարաննր, բարեխառն օդն և կլիման, և բարեհամ ջուրն, երկար կեանք 85 տարի. եկեղեցին նոր սկսեալ. քահանան գալիս է Ուզուն-Թալայից։

Ծուխ 30, ար. 140, իգ. 113.

Ա. ԴԻՏԱՐԱՆ կամ ԴԻՏԻԽԱՆ. Հիմնուած է Ղազախ քաղաքից վերև, նոյն գետակի և արքունի ճանապարհի աջ կողմում մի բլրակի վերայ, որ ունի բոլորշի ձև, և քարուկիր շինութիւն, որի գոյութիւնն շատ հին չէ։

Բ. ԴԻՏԱՐԱՆ շինուած է թրծեալ աղիւսով և կրացեխով եռայարկ, նոյնպէս բոլորշի, որ կայ Ուզուն-թալա կայարանի հանդէպ գետակի աջ կողմի ափի վերայ։ Շատ հին չէ և այս, որ ունի վերնայարկում հրացան արձակելու ծակեր և որն ճեղքուած է վերից վար։

ԺԲ. ՈՒԶՈՒՆ-ԹԱԼԱ գիւղ. Հիմնուած է Վարագեան լեռնաբազկի հիւսիսահայեաց լանջերի և սեռերի վերայ. բնակիչք կիսով չափ բնիկ և կիսով չափ տեղափոխուած Խաչեն և Ջրաբերդ գաւառներից, հողն արքունի, արդիւնաւոր և կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն (ունի այգի և պարտէզ). օդն, կլիման և ջուրն սննդարար, երկար կեանք 90 տարի. եկեղեցի երկու, արևելեանն՝ Ամենափրկիչ. քարուկիր, կառուցեալ չորս բոլորշի սիւների վերայ, որ ունի 17 մետր երկարութիւն 11 մետր լայնութիւն. մի քահանայ։ Իսկ արևմտեանն՝ Ս. Աստուածածին, նոյնպէս կամաբակապ չորս սիւների վերայ, որ ունի 15 մետր 15 սանթիմ երկարութիւն, 9 մետր 15 սանթիմ լայնութիւն և մի քահանայ։ Երկու թաղերում միասին քահանայ 2.

Ծուխ 133, ար. 650, իգ. 500.

Digitized by Google

Միզասեան ծխական ուսումնարան. աշակերտք 50, տարեկան ռոճիկ վարժապետին 300 րուբլի։

## ՍՐՎԵՂ ՎԱՆՔ ([1])

Հիմնուած է Համզա սարից դէպի Ուզուն-թալա խոնարհուած լեռնաբազկին հարթակին վերայ, որ անտառապատ է և ուշագրաւ։ Մենաստանս շինուած է թրծեալ աղիւսով և կրացեխով բացի հիմունքներից, որք քարաշէն են։ Վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու լուսամուտով մի վեղարաձև կաթուղիկէ, երկու դուռն հիւսիսային և արևմտեան կողմերից, բարձրագոյն շինուածք, 15 մետր 60 սանթիմ երկարութիւն, 10 մետր 22 սանթիմ լայնութիւն։ Վէմ քարի վերայ.

«Կանգնեցաւ սուրբ Նշանս 'ի բարեխաւսութիւն Ո. ամի»։ Հիւսիսային որմի վերայ աւագանից արևմուտք. «Թիւ ՈԱ. ես Արտաւազ և Սարգիս շինեցաք զեկեղեցիս ձեռամբ Յովհաննիսի..»։ Վանուցս արևելեան-հիւսիսային կողմում արտաքուստ. «ՈԾ. թուին ես Անանիաս որդի սուրբ ուխտիս բարեխաւսութեամբ աւրն աղաւթ... երկրպագէք»։

Վանքս նորոգուած է զանազան ժամանակներում. զորօրինակ երևում է շինութեան նշաններից և ծեփի հետքերից։ Արեւմտեան դրան վերայ.

«Ես Աստոհի տղայ Մխիթարս սուրբ Սրվեղի Բ. դուռս շինեցի (նորոգեցի), ով կարդայ, ողորմի ասի թվ. ՌՃԽԱ.»։

Բոլորովին աւերակ են մենաստանիս խուցերն և շրջապարիսպն և Ձիթահանքն և բուսած են վանքի տանեաց վերայ մի քանի հացի և բռշնի ծառեր և վնասուած են հիւսիսային կողմի ձեղունն և արևմտեան հիւսիսային անկիւնն։

Մենաստանիս հիւսիսային կողմում, պարսպի ներսում կայ սուրբ Աստուածածին անուն մի եկեղեցի, որի ծածքն

---

[1]) Բացատրում են երկու տեսակ իմաստով. Ա. վեղարի նման սրածայր կաթուղիկէ ունեցող վանք։ Բ. Սարու հող—շիկահող—վանքատեղ։

փայտաշէն է և ուխատեղի։

Խեցեղէն խողովակներով վանքս բերուած է վաղուց ԿԵՈՒՌ (Ցորդ) աղբիւրն, այժմ չէ հոսում ջուրն, բայց կայ ջրաւազանն և խողովակների հետքերն։

Վանքիս շրջապատում կան երեք Գիւղատեղիներ և հանգստարաններ, որք ծածկուած են թանձրախիտ անտառներով։

Վանքիս հիւսիսային կողմում, ճանապարհի վերայ կան կարմիր, կանաչ և դեղին գոյնով հեղեր, որովք գիւղացիք ներկում են կարմիր, կանաչ և դեղին գունով թելեր։

Սուրբ Նշան մատուռ, որ գտնուում է Ուզուն-Թալա և աշուղի գիւղերի միջև։ Քարուկիր է, հնաշէն և անարձանագիր. որի մօտ կայ գիւղատեղի, հանգստարան և գեղեցիկ ծառեր։

ԺԳ. Ռեւազլու շէն. հիմնուած է Ուզուն-Թալայի արեւմտեան կողմում նոյն սարի (Համզայի) հիւսիսային ստորոտում, նոյն գետակի աջ ափի բարձրութեան վերայ. բնակչաց կէս մասն բնիկ, միւս կէսն փոխադրուած Սռի գիւղից. հողն արքունի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. եկեղեցին սուրբ Գրիգոր, ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 22, ար. 107, իգ. 98.

Ռեւազլու և Խաչթառակ գիւղերի միջև կայ մի ընդարձակ Գիւղատեղի, երկու հանգստարան զարդարուած խաչարձաններով, հիմնահանքի քարեր և խաղողի որթեր։

ԺԴ. Խաչթառակ գիւղ (Սարհատլու). շինուած է նոյն սարի ստորոտում; բնակչաց մի մասն բնիկ և միւսն տեղափոխուած Ջրաբերդի և Կիւլստանի գիւղերից, հողն արքունի և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն, օդն և կլիման նոյն, երկար կեանք 85—90 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանան գալիս է Հաչա-ջուր գիւղից։

Ծուխ 60, ար. 410, իգ. 342.



Digitized by Google

*Ղամիշ-կեօլում*, որ կայ գիւղիս արեւմտեան կողմում, կան զիւղատեղի և հանգստարան և եկեղեցի, որից մնացած է այժմ խորանի գլխի թաղն։

## ՄՈՐՈՑ ՁՈՐՈՑ կամ ԾՈՎՁԻ ՎԱՆՔ

Հիմնուած է գիւղիս, գրեթէ հարաւային կողմում, Ծովիզ կոչուած գոմերի մօտ, ձորի աջ կողմում։ Կառուցեալ է խաչաձև սրբատաշ չէչ քարով։ Վանքիս երկարութիւնն է 7 մետր 20 սանթիմ, լայնութիւնն նոյնչափ։ Այժմ քանդուած են արեւմտեան կողմի կամարն, արեւելեան կամարի կէսն և կաթուղիկէի սալկախն։ Խորանի հիւսիսային կողմում։

«Թ. ՈԿՁ. ես Մխիթար և ամուսին իմ միաբանեցաք եկեղեցւոյս և ետուն մեզ ժամ Աստուածածնին բ. մին ինձ, Ա. (միւսն) Հարկնորին, ով խափանէ, մեր մեղաց պարտական է, դրած աղին արծաթագին»։

«Յանուն Աստուծոյ ես Սանայս միաբանեցայ իմ որդաւքս Մորոյ-ձորոյ Աստուածածնիս և հայրս Գրիգոր և այլ միաբանքս ետուն ինձ տարին Բ. ժամ զՎարդավառին շաբաթ աւրն և զկիւրակէն Ա. աւրն ինձ, Ա. Տուշանկան . . .»։

Հիւսիսային կողմում. «Անուամբ ամենակալին Աստուծոյ ես Գեաւրկի (Գեօրկի) Թագաւորաց[1]) թագաւոր ետու զՄորոյ Ձորոյ վասն հայր Յովհաննէս և արարի ազատ յամենայն հարկէ. ամիր Քրտին հոգացողութիւն (թեամբ) որ ինձ ադաւթս անեն. որ մեր հրամանացս հակառակ լինի, Աստուծոյ հրամանին է հակառակ, հաստատ է գիրս անուամբ Աստուծոյ»։

Կաթուղիկէի արեւմտեան կողմի վերայ արտաքուստ. «Ես հայր Գրիգոր... վանքս շինեցի Աստուածածին.... (անընթեռնլի)»։ Արդէն հերկուած են միաբանից խուցերի և շրջապարսպի տեղերն, որոց արեւելեան կողմում կայ *Գիւղատեղի և հանգստարան*։

ԺԵ. *Կարվանսարա* գիւղ. (կարաւանի իջևանելու տեղ).

---

[1]) Վրաց Գէորգի թագաւորն և Թամար թագուհու հայրն, որ թագաւորեց 1156—1184 թուականն փրկչին։

շինուած է Աղստև գետակի աջ ափի վերայ, Աղտան վտակի աջ ու ձախ կողմերի վերայ. գիւղիս նախկին բնակիչներն գերի տարուած են Պարսկաստան և ցրուած են մնացեալներն։ Այժմեան բնկիչք տեղափոխուած են Երևանի Ղըրխ-Բուլաղ, Արզն և Կեամրիս գիւղերից (անյայտ է տեղափոխուելու ստոյգ թուականն), հողն արքունի, մեծ մասամբ անջրդի, նուազ արդիւնաւէտ, բայց այգևէտ. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90—100 տարի. եկեղեցին Ամենափրկիչ, ծածքն փայտաշէն, քահանայ երեք։

Ծուխ 115, ար. 751, իգ. 613.

Տղայոց միդասեան ուսումնարան, ուր ուսանում են 77 տղայք, թոշակատու 68, ձրիավարժ 9, տարեկան ռոճիկ վարժապետին 310 րուբլի։

*Եկեղեցումս կան հետեւեալ գրչագրերն.*

Ա. Աւետարան մեծագիր, թղթեայ, պատկերազարդ. միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, ծաղիկներն, թռչնագրերն և նկարներն։ Փտած և թափուած են յիշատակարանի կէսն, միայն մնացած է. «........ Գրեցաւ Հայկական թուականիս չհա. յանապատս Աղուանաձոր (Վանայ կողմերում) ընդ հովանեաւ սրբուհւոյ մաւրս լուսոյ Աստուածածնիս և Վասիլ թագաւորի սուրբ Նշանիս և այլ և այլ հաւաքեալ սրբութեանցս 'ի ղանութեան Բյուստիտին (?) և ի քահանայապետութեան տեառն Զաքարիայի ձեռամբ ամենամեղ և անարհեստ գրչի Յակոբայ մեղապարտ... հանդէպ սրբարար ծովուն, ուր մանր ձկունք ելանեն..... ստացող սորա Մոսէս կրաւնաւոր հանդերձ ծնողիւք և եղբայրք կենդանեաւք....»։

Վերջին *յիշատակարանից*. «Գրեցաւ ի թուին հայոց ՊԵ. են 'ի դուռն սուրբ Նախավկային ձեռամբ սրբոյ Էջմիածնի նուիրակ Սիմէոն վարդապետի յառաջնորդութեան սուրբ սքանչելագործայ տեառն Ներսիսի եպիսկոպոսի, վկայութեամբ բազմաց ժողովրդոց ...»։

6) ՂՈՋԱՆԱՑ ՇԻՆԱՏԵՂ. Ջինչինի արեւմտահիւսիս կողմում, ուր կայ հանգստարան և մի աւերակ եկեղեցի, որից մնացած է միայն սեղանի կլորակ թաղն։

7) ԿԱՊՏԱՎԱՆՔ. որ գտնուում է Ղողանայ շինատեղի արեւմտեան կողմում մի անտառապատ սարահարթի վերայ, որի հիւսիսային խորանդունդ ձորով հոսում է Հախում վտակն։ Վանքս շինուած է կապտագոյն[1]) մեծ մեծ և անտաշ քարերով։ Վանքս կառուցեալ է չորս կամարների վերայ, որոց ոտքերն զետեղուած են պատերում։ Մենաստանս ունի խաչաձև շինուածք, մի աւագ խորան, չորս փոքր խորաններ, երկու դուռն հարաւային և արեւմտեան կողմերից, մի գեղեցկաձև կաթուղիկէ, 11 մետր 50 սանթիմ երկարութիւն, 9 մետր լայնութիւն և երկու խորհրդանոց։ Արեւմտեան դրան վերայ.

«Ա. աւր պասխային Նոր կիւրակին ես Հանէս արդեամբ կառուցի եկեղեցիս հոգոյ իմոյ. . . . թվ. Ո.»։ Հարաւային դրան վերայ.

«Անուամբ Աստուծոյ ես Աջիչէր որդի Գորգորոյ ըմբերիս միաբանեցայ այս եկեղեցիս. բնակիչք եկեղեցուս գրեցին Բ. պատարագ յայտնութեան ճրագալուցին ինձ, միւսն ամուսնոյն իմոյ, կատարողք աւրհնեալ եղիցին»։ Սորա մօտ. «ՈՁԳ. ես Աբլհասնն միաբանեցայ այս եկեղեցիս և հայրս և միաբանքս դրեցին մին աւր պատարագ սուրբ խաչին. . . . »։

Մենաստանս ունեցած է մի քանի խուցեր և շրջապարիսպ. բայց այժմ տեղ տեղ թափուած են կաթուղիկէի և տանեաց սալկախներն, միջից ջարդուած է սեղան քարն, քայքայուած են Խաչաձևի հարաւային և արեւմտեան վերնամասերն, շրջապարսպի և խուցերի ամենամեծ բաժիններն։ Բայց կան ամփոփեալ միաբաններ վանքիս մօտերքում։

Մենաստանս իւր հարաւային կողմում ունի մի նշանաւոր աղբիւր, որի ջուրն՝ իւր հազուագիւտ ազնուութեամբ,

[1]) Դուցէ այս յատկութիւնից առաջացած լինի ԿԱՊՏԱՎԱՆՔ անունը կամ ԿԱՊՏԵԼ բայից կապտուած։

Digitized by Google

ասես՝ թէ անմահական է։

Թ. ԹԱԹԼՈՒ ԳԻՒՂ. Հիմնուած է Տաւուշ գիւղի հիւսիսային կողմում Հասան վտակի աջ ափում. բնակիչք բնիկ (նախ բնակած են եղել Պառաքար կոչուած տեղում, որ գտնուում է միևնոյն անդում, ապա փոխուած են այստեղ) հողն արքունի, սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն, օդն և կլիման ծանր ամրան և տենդաբեր. երկար կեանք 70 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Ծուխ 96, ար. 519, իգ. 415.

Ժ. ՀԱԽՈՒՄ ԳԻՒՂ. Հիմնուած է Թաթլուից վերև նոյն վտակի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք հաւաքուած են զանազան տեղերից. հողն արքունի և միջակ արդիւնաբեր. ջրաբբի են վտակահովիտներն. տեղական բերքերն նոյն. համարեա թէ նոյն են օդն և կլիման, ջուրն պատուական, երկար կեանք 75 տ. եկեղեցին Սուրբ Նշան. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 82, ար. 448, իգ. 379.

*Ցամարումն կան հնտեւեալ աւետարաններն.*

Ա. Աւետարան մագաղաթեայ, փոքրագիր, անյայտ գրողի անունն, ժամանակն և տեղն։

Բ. Աւետարան թղթեայ, մեծագիր. Յիշատակարանից. «Գրեցաւ սուրբ աւետարանս և ի դառն և ի նեղ ժամանակիս ի լաւ, ընտիր աւրինակէ ի յերկիրս վերին Ձական 'ի գիւղս՝ որ կոչի Տաքար բէկ ձեռամբ մեղաւք զառածեալ Յովհաննէս իրիցու, որ եմ ի յերկրէն Գանձայոյ 'ի գեղէն Տատախոյ, որդի մահտեսի Դաւիթ քահանայի 'ի հայրապետութեան սուրբ Աթոռոյն Էջմիածնայ տեառն տէր Մովսէսին, որ կրկին լուսաւորեաց զՀայաստան աշխարհս և յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, հայրապետութ'ին Աղուանից տէր Յովհաննիսին, որ մատնեցաւ ի ձեռն պարսիկ ազգին, տարան ի դուռն Տահին, վերջն Աստուած դիտէ և եպիսկոպոսութեան պարոն

*տէր Բարսեղին ի Թուականիս հայոց ՌՁԲ. ի ժամանակս Շահ Աբասին. . . . »։ Յետոյ գրուած է կարմիր Թանաքով. «Աստուածաշունչ աւետարանս վախմ 'ի արէ 'ի դուռն սուրբ Աստուածածնի տաճարիս, որ է հարանց անապատ Ղարամու-րատու. . . առաջնորդ սուրբ ուխտիս Յովհաննէս եպիսկոպոս հարանց անապատիս Ղարամուրադու Թիւին ռճիգ.-ին գրեցաւ ձեռամբ անարժան Եղիա աբեղային . . . »։ Հուսկ յետոյ շարայարուած է. «Ողորմութեամբն Աստուծոյ Նորոգեցաւ սուրբ աւետարանս 'ի դուռն Եղնասարա անապատն . . . Պետ-րոս սարկաւագին ՌՋԴ. ապրիլ ա. »։*

*Գ. Աւետարան Թղթեայ, միջակ դիրքով, որ ունի չորս աւետարանչաց պատկերներ, բայց չունի ոչ յիշատակարան և ոչ Թուական։*

*Դ. Աւետարան Թղթեայ, փոքրադիր. Յիշատակարանից. «Արդ դրեցաւ սայ յամի Թուաբերութեանս Հայոց ՋԾԴ։ ի վանս Գլակայ ի դուռն սուրբ Կարապետի ծեռամբ . . Մար-տիրոսի, որ մականուն աբեղայի, ի հայրապետութեան տէր Սարգսի Հայոց Կաթուղիկոսի . . . »։*

*Ե. Աւետարան Թղթեայ, պատկերազատ. (խիստ անճա-շակ և անարուեստ). «Արդ գրեցաւ աւետարանս յընտիր աւ-րինակէ ի Թուիս Հայոց ՌԼԵ. ի գեաւղն՝ որ կոչի Դվնիկ ի դուռն սուրբ Սարգսին ծեռամբ Ներսէս գրչի» (գրուած է Ղուկասի վերջում)։ Տաճարումս ամփոփուած է Գրիգոր ե-պիսկոպոս Մանուչարեանի մարմինն։*

*Պառաւաքար. Այս անուն ուխտատեղի կայ Հախումի հիւսիսային հանդէպ համանուն վտակի ձախ կողմում, մի բերդաձև սարի գլխին։ Չորս քարով պատուած է ուխտատե-ղուս շուրջն, որի մէջ կայ չորս խաչաքար տապանաքարով գերեզման. և այլ համանման գերեզմաններ:*

## ԾԻՄՌԻՐԱՏԱՑ ՎԱՆՔ

*Հիմնուած է Հախում գիւղից բաւական վերև, Հասան վտակի ձախ ափին, մի բարձր և ցից ժայռի ներքև, ճանա-*

Digitized by Google

պարհի տակ։ Վանքս կառուցեալ է խաչաձև, տաշուած մոխրագոյն չիչ քարով. ունի մի աւագ և չորս միմիանց վերայ շինուած փոքր խորան, երկու դուռն արևմտեան և հարաւային կողմերից, երկու խորհրդարան, մի գեղեցիկ կաթուղիկէ. 9 մետր երկարութիւն, 7 մետր 40 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան վերայ եղած է գաւիթ, որ փլած է այժմ։ Գաւթիս արևելեան կողմում կայ խորան, որի ճակատակալ քարին վերայ.

«Յամի Կ երորդի, Ե, երրորդի Նորո շրջակայիս[1]) ես տէր Գրիգոր շինեցի խորանիկս Աստուածածնակ հրամանաւ Սադորնո մեծի իշխանի վասն յիշատակի ննջեցելոց իւրոց և յաւետենականութիւն անձին՝ իւրոյ, որք սպասաւորէք ի սմա, զիս զտէր Գրիգոր և զծնողս իմ յաղաւթս յիշեսջիք ընդ նմին և այլ զազգատոհմն».

*Տաճարիս հիւսիսային փոքր խորանի ճակատին.*

«Յանուն Աստուծոյ ես Դանիէլ և Այլարայ միաբանեցաք վանքս և տուաք յայտնութեամբ Ժամհերայ տղին......»։ Ուշադրաւ է այն երևելի խաչարձանն, որ կանգուն է տաճարիս հարաւ-արևմտեան կամարակալ ոտի ճակատին. այո՛, ասում եմ որ իւր գեղարուեստի նրբաքանդակ ճարտարութեամբ զարմացնում է այցելուներըը։ Վանքիս բուն արձանագրութիւնն կայ արևմտեան դռնագլուխ քարի ճակատին, որը անկարելի եղաւ կարդալ։

Վանքս ունի և երկրորդ գաւիթ իւր արևմտեան կողմում, որի վերնամասն-թաղն-շինուած է սրբատաշ չիչ քարով՝ երկու սիւների վերայ և որի երկարութիւնն հիւսիսից հարաւ 10 մետր, արևմտից արևելք 9 մետր 40 սանթիմ է։ Այժմ խոնարհուած է գաւթիս գլուխն, որ իւր մէջ ամփոփուած ունի շատ ննջեցեալներ, բայց անարձանագիր են

[1]) Փառիսոսցի Յովհաննէս-սարկաւագ վարդապետն շինած էր մի նոր տումար փրկչական 1116-թուին, որ կոչում է Նոր թուական։ Երբ սարկաւագադիր 1 թուականս հաւասար է փրկչ. 1116-ին և Հայոց ՇԿԵ.-ին։ Ուրեմն 65 (ԿԵ.) «ՆՈՐՈՑ ՇՐՋԱԿԱՅԻՍ» հաւասար է փրկչ. 1181-ին, որ է վանքիս հիմնարկութեան թուականն։

Digitized by Google

տապանաքարերն։ Տաճարս ունեցած է շրջապարիսպ և միաբանից խուցեր, սակայն քանդուած են այժմ։ Վանքիս տանեաց վերայ բուսած են ծառեր։ Վանքիս արևելեան կողմում, ոչ այնքան հեռի, կայ գիւղատեղի և հանգստարան Ճխմուրատ անուն։

ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՆ ԱՒԵՐԱԿՆԵՐ. վանքիցս բաւական վերև վտակաձորիս ձախ կողմում կայ *Քարագեղ*, *Աղ-սու* եւ *Խաչբուլաղ* անուն գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր ու աւերակ եկեղեցիներ։

ՁԻՆԱՐԻ կոչւած տեղում, որ կայ Հախումեցւոց գոմերի մօտ, կայ գիւղատեղի և սուրբ Գէորգ անուն մի մատուռ, որի մէջ կան խաչարձաններ և որի ծածքն փայտաշէն է։

## ՎԱՐԱԳԱՅ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ ՎԱՆՔ (58)

Հասան վտակի ձախ կողմում մի տեսարանաւոր սարահարթի վերայ հիմնարկուած է հրաշալի վանքս, որ շրջապատուած է թանձր անտառով։ Շինուած է յար և նման Գանձասարի ձևով, բայց երկնագոյն սրբատաշ քարով, որ ունի մի աւագ և ութ փոքր խորան (չորսն արևմտեան կողմում) մի գեղեցկաձև կաթուղիկէ, երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից. 15 մետր 60 սանթիմ երկարութիւն 10 մետր 70 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան ճակատակալ քարի վերայ. «Շինեցաւ եկեղեցիս ձեռամբ Յովհաննէս վարդապետի հրամանաւ և իշխանութեամբ իշխանաց իշխանի Վասակայ որդւոյ... պոռնկի բարսաւ (?) և սահնակեցար չարաչար» (թերիմաստ է բանս)։

*Տաճարիս հիւսիսային որմի վերայ ներքուստ.*

«՚ի թվ. ՈՁ. (1231) ընդ այլ աշխարհս հոլովս հարաւ գաւազան և ցասումն Աստուծոյ գաւառն Խլաթա ՚ի ձեռն Խորազմին և Թամթարին, ընդո լս և մեծահռչակ սուրբ ուխտս Վարագային շինեցեալ վասն մեղաց մերոց յայսմ ամի. ես Ղուկաս հայր Վարագայ առեալ զտիեզերահամբաւ սուրբ

Digitized by Google

Նշանն զշնորհեալն յԱստուծոյ 'ի փառս մարդկան 'ի ձեռն Պատրոնիկեայ և սուրբ Հռիփսիմեանց և Թոդկաւս վեց ամ շրջեցայ թափառեալ ի տեղւոյ ի տեղ. ապա ի կամսն Աստուծոյ ամենատես խնամոց տեառն հասի 'ի Նոր բերդն առ Քրիստոսասէր իշխանն Վասակ յաստուածարեալ անապատ կոչեցեալ վանքս և ազդումն հնչեալ առիս հաճոյանալ սուրբ Նշանիս 'ի տեղւոջս. նկարեցի և գեղազէշ եկեղեցիս արժանի հանգստեան սորա և մեծարեալ 'ի քրիստոնէից՝ առի զվանքս և ետու զխաչս եկեղեցիս այս միջնորդութեամբ և վկայութեամբ տեառն Յովհաննու շինողի եկեղեցոյս՝ առաջի հրեշտակաց և մարդկան և հաստատեցաւ ինձ 'ի տաւնի սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, Յակովբայ և Յովհաննու յամենայն եկեղեցիս պատարագ։ Արդ եթէ ոք հանել ջանայ աստի, կապանս և անէծս ժառանգեսցէ 'ի հոգի և 'ի մարմին անբժշկելի 'ի սուրբ Նշանէս և յամենայն սրբոց Աստուծոյ։ Որչափ այս եկեղեցիս չէն է, մի՝ ոք իշխեսցէ *զխաչս* [1]) հանել և զիմ յիշատակս խափանել, ապա թէ ոչ, նախ զինքն ջնջեսցէ ի կենաց գրոցն և 'ի յիշմանէ Աստուծոյ. ասասցեն հրեշտակք և մարդիկ, եղեցի՝ եղեցի՝»։ *Արեւմտեան դրան ճակատակալն վերայ.*

«'Ի թվին ՈՁՁ. (1237) ես վասակ որդի Դաւթի, որդւոյ Վասակայ, 'ի տանէ Բագրատունի ի տոհմէ Դաւթայ մարգարէին 'ի փառս Աստուծոյ կառուցի զեկեղեցիս, զոր շինեցի ի ձեռն Յովհաննու և ընծայեցի զԾաղկագուզի իւր կոպարովն 'ի վանս ի Քրիստոս և հաւանութեամբ եղբարցս հաստատեցաւ ինձ պատարագ յայտնութիւն և զատիկն յիմ շինեալ մեծ եկեղեցիս, որպէս իմ հաւրն յիւր շինեալ փոքր եկեղեցին գրեցաւ և կնքեցաւ, անուամբ Աստուծոյ յաւուր՝ յորում Վարազայ հայրն Ղուկաս զսուրբ Նշանն եդ յեկեղեցիս։ Արդ թէ ոք զմեր տուեալ գիւղերս 'ի մեր եկեղեցոյս հանել ջանայ և զմեր յիշատակն խափանել, թէ քրիստոնեայ է՝

[1]) Վանքումս չէ կենաց փայտի մասն, զի այժմ անմարդաբնակ է մենաստանս։

ի Քրիստոսէ և յիւր ընտրելոցն է նզոված, և թէ յայլազգեաց՝ յԱստուծոյ և 'ի դենէ և յառաջնորդաց իւրեանց և մեր մեղացն պարտական է յաւուրն դատաստանի և ասասցէն ամէն, եղիցի, եղիցի»։

Վանքս ունեցած է և հրաշալի գաւիթ, որի գլուխն փլած է այժմ և որի երկարութիւնն է 14 մետր 50 սանթիմ և լայնութիւնն 13 մետր 20 սանթիմ. և ունի սոյն արձանագրութիւնը. «Թվ. Զժ. կամաւ Աստուծոյ ես Հայրուտս վայելեալ գձիավարժ իշխանութեան և հասեալ յայս տեղի՝ զարհուրեցայ 'ի սպառնալեաց և դիմեցի յեղբարանոց անապատիս առ ոտս տեր Յովհաննէս շինողի սուրբ ուխտիս և ստացայ զտնակս սակս յիշատակ ինձ և իմոցն....»։

Մենաստանիս հարաւային կողմին կից է մի այլ վանք իւր գաւթով միասին։ Այս է Վասակի հայր Բագրատունի Դաւիթ իշխանի շինել տուածն, ինչպէս իւր արձանագրութեանց մէջ յիշեց արդէն Վասակ իշխանն։ Այժմ խոնահած է և գաւթիս գլուխն։

Իսկ իւր հիւսիսային կողմին կից՝ մեծ վանքս ունի մի առանձին խորան, որ քայքայուելու վերայ է։ Ունեցած են վանքերս և շրջապարիսպ, և միաբանից խուցեր, որք բոլորովին քանդուած են այժմ։ Վանքերիս վերայ գործ դրուած են տորոնագոյն, երկնագոյն եւ կանաչագոյն քարեր, որոց հանքերն գտնուում են վանքիս հարաւ արեւմտեան կողմում ոչ այնքան հեռի։

Երևում է թէ վանքս բերուած է խողովակներով այն ջուրն, որ հոսում է հարաւային ձորով. այժմ յայտնի է ջրաւազանն և ուրեք ուրեք աւերուած խողովակներն. ջուրն ընդհատուած է և վանքս անմարդաբնակ։

Կայ այլ ևս երկու մատուռ մին վանքի հարաւային և միւսն հիւսիսային կողմում։ Այս կողմումն է և միաբանից հանգստարանն։

Digitized by Google

ԺԱ. ԱՇՈՒՂԻ կամ ԼԱԼԻ գեղ. Հիմնուած է Ազատև գետակի աջ կողմում. Վարագեան լեռնաբազկի հիւսիսահայեաց լանջի մի սեռի վերայ. բնակիչք տեղափոխուած են Խաչէն և Ջրաբերդ գաւառներից. հողն արքունի և կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն, պատուական տեսարանն, բարեխառն օդն և կլիման, և բարեհամ ջուրն, երկար կեանք 85 տարի. եկեղեցին նոր սկսեալ. քահանան գալիս է Ուզուն-Թալայից։

Տուն 30, ար. 140, իգ. 113.

Ա. ԴԻՏԱՐԱՆ կամ ԴԻՏԻՒԱՆ. Հիմնուած է Ղազախ քաղաքից վերև, նոյն գետակի և արքունի ճանապարհի աջ կողմում մի բլրակի վերայ, որ ունի բոլորշի ձև, և քարուկիր շինութիւն, որի գոյութիւնն շատ հին չէ։

Բ. ԴԻՏԱՐԱՆ շինուած է թրծեալ աղիւսով և կրացեխով եռայարկ, նոյնպէս բոլորշի, որ կայ Ուզուն-թալա կայարանի հանդէպ գետակի աջ կողմի ափի վերայ։ Նատ հին չէ և այս, որ ունի վերնայարկում հրացան արձակելու ծակեր և որն ճեղքուած է վերից վար։

ԺԲ. ՈՒԶՈՒՆ-ԹԱԼԱ գիւղ. Հիմնուած է Վարագեան լեռնաբազկի հիւսիսահայեաց լանջերի և սեռերի վերայ. բնակիչք կիսով չափ բնիկ և կիսով չափ տեղափոխուած Խաչէն և Ջրաբերդ գաւառներից, հողն արքունի, արդիւնաւոր և կիսով չափ ջրարբի, տեղական բերքերն նոյն (ունի այգի և պարտէզ). օդն, կլիման և ջուրն սննդարար, երկար կեանք 90 տարի. եկեղեցի երկու, արևելեանն՝ Ամենափրկիչ. քարուկիր, կառուցեալ չորս բոլորշի սիւների վերայ, որ ունի 17 մետր երկարութիւն 11 մետր լայնութիւն. մի քահանայ։ Իսկ արևմտեանն՝ Ս. Աստուածածին, նոյնպէս կամարակապ չորս սիւների վերայ, որ ունի 15 մետր 15 սանթիմ երկարութիւն, 9 մետր 15 սանթիմ լայնութիւն և մի քահանայ։ Երկու թաղերում միասին քահանայ 2.

Տուն 133, ար. 650, իգ. 500.

Digitized by Google

Միջասեան ծխական ուսումնարան. աշակերտք 50, տարեկան ռոճիկ վարժապետին 300 րուբլի։

## ՍՐՎԵՂ ՎԱՆՔ (1)

Հիմնուած է Համզա սարից դէպի Ուզուն-Թալա խոնարհուած լեռնաբազկին Հարթակին վերայ, որ անտառապատ է և ուշագրաւ։ Մենաստանս շինուած է Թրծեալ աղիւսով և կրացեխով բացի Հիմունքներից, որք քարաշէն են։ Վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու լուսամուտով մի վեղարաձև կաթուղիկէ, երկու դուռն հիւսիսային և արևմտեան կողմերից, բարձրագոյն շինուածք, 15 մետր 60 սանթիմ երկարութիւն, 10 մետր 22 սանթիմ լայնութիւն։ Վէմ քարի վերայ.

«Կանգնեցաւ սուրբ Նշանս 'ի բարեխաւսութիւն Ո. ամի»։ Հիւսիսային որմի վերայ աւագանից արևմուտք. «Թիւ ՈԱ. ես Արտաւազ և Սարգիս շինեցաք զեկեղեցիս ձեռամբ Յովհաննիսի . .»։ Վանուցս արևելեան-Հիւսիսային կողմում արտաքուստ. «ՈԾ. թուին ես Անանիաս որդի սուրբ ուխտիս բարեխաւսութեամբ աւրն աղաւթ... երկրպագէք»։

Վանքս նորոգուած է զանազան ժամանակներում. զորօրինակ երևում է շինութեան նշաններից և ծեփի հետքերից։ Արեւմտեան դրան վերայ.

«Ես Ասդոհի տղայ Մխիթարս սուրբ Սրվեղի Բ. դուռս շինեցի (նորոգեցի), ով կարտայ, ողորմի ասի թվ. ՌԾԽԱ.»։

Բոլորովին աւերակ են մենաստանիս խուցերն և շրջապարիսպն և Ձիթահանքն և բուսած են վանքի տանեաց վերայ մի քանի հացի և բաշնի ծառեր և վնասուած են հիւսիսային կողմի ձեղունն և արևմտեան հիւսիսային անկիւնն։

Մենաստանիս հիւսիսային կողմում, պարսպի ներսում կայ սուրբ Աստուածածին անուն մի եկեղեցի, որի ծածքն

---

1) Բացատրում են երկու տեսակ իմաստով. Ա. վեղարի նման արածայր կաթուղիկէ ունեցող վանք։ Բ. Սարու հող—շիկահող—վանքատեղ։

փայտաշէն է և ուխատեղի։

Խեցեղէն խողովակներով վանքս բերուած է վաղուց ԿԵՌԻՌ (Յորդ) աղբիւրն, այժմ չէ հոսում ջուրն, բայց կայ ջրաւազանն և խողովակների հետքերն։

Վանքիս շրջապատում կան երեք *Գիւղատեղիներ* և *հանգստարաններ*, որք ծածկուած են թանձրախիտ անտառներով։

Վանքիս հիւսիսային կողմում, ճանապարհի վերայ կան *կարմիր*, *կանաչ* և *դեղին* գոյնով հեղեր, որովք գիւղացիք ներկում են *կարմիր*, *կանաչ* և *դեղին* գունով թելեր։

*Սուրբ Նշան* մատուռ, որ գտնուում է Ուզուն-թալա և աշուղի գիւղերի միջև։ Քարուկիր է, հնաշէն և անարձանագիր. որի մօտ կայ *գիւղատեղի*, *հանգստարան* և գեղեցիկ ծառեր։

ԺԳ. *Ռեւազլու շէն*. հիմնուած է Ուզուն-թալայի արևմտեան կողմում նոյն սարի (Համզայի) հիւսիսային ստորոտում, նոյն գետակի աջ ափի բարձրութեան վերայ. բնակչաց կէս մասն բնիկ, միւս կէսն փոխադրուած Սաւի գիւղից. հողն արքունի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. եկեղեցին սուրբ Գրիգոր, ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 22, ար. 107, իգ. 98.

Ռեւազլու և Խաչթառակ գիւղերի միջև կայ մի ընդարձակ *Գիւղատեղի*, երկու *հանգստարան* զարդարուած խաչարձաններով, ձիթահանքի քարեր և խաղողի որթեր։

ԺԴ. *Խաչթառակ գիւղ* (Սարհատլու). շինուած է նոյն սարի ստորոտում; բնակչաց մի մասն բնիկ և միւսն տեղափոխուած Ջրաբերդի և Կիւլստանի գիւղերից, հողն արքունի և սակաւ արդիւնաբեր, տեղական բերքերն, օդն և կլիման նոյն, երկար կեանք 85—90 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանան գալիս է Հաչա-ջուր գիւղից։

Ծուխ 60, ար. 410, իգ. 342.



Digitized by Google

*Ղամիշ-Կեօլում*, որ կայ գիւղիս արևմտեան կողմում, կան *գիւղատեղի* և *հանգստարան* և եկեղեցի, որից մնացած է այժմ խորանի գլխի թաղն։

## ՄՈՐՈՑ ՁՈՐՈՑ կամ ԾՌՎՁԻ ՎԱՆՔ

Հիմնուած է գիւղիս, գրեթէ հարաւային կողմում, Ծռվիզ կոչուած գոմերի մօտ, ձորի աջ կողմում։ Կառուցեալ է խաչաձև սրբատաշ չէչ քարով։ Վանքիս երկարութիւնն է 7 մետր 20 սանթիմ, լայնութիւնն նոյնչափ։ Այժմ քանդուած են արևմտեան կողմի կամարն, արևելեան կամարի կէսն և կաթուղիկէի սալկախն։ Խորանի հիւսիսային կողմում։

«Թ. ՈԿՁ. ես Մխիթար և ամուսին եմ միաբանեցաք եկեղեցւոյս և ետուն մեզ ժամ Աստուածածնին բ. մին ինձ, Ա. (միւսն) Հարկևորին, ով խափանէ, մեր մեղաց պարտական է, գրած աղին արծաթագին»։

«Յանուն Աստուծոյ ես Սամնայս միաբանեցայ իմ որդաւքս Մորոյ-ձորոյ Աստուածածնիս և հայրս Գրիգոր և այլ միաբանքս ետուն ինձ տարին Բ. ժամ զՎարդավառին շաբաթ աւրն և զկիւրակէն Ա. աւրն ինձ, Ա. Շուշանկան . . .»։

Հիւսիսային կողմում. «Անուամբ ամենակալին Աստուծոյ ես Գեաւրկի (Գեօրկի) Թագաւորաց[1]) թագաւոր ետու զՄորոյ Ձորոյ վասն հայր Յովհաննէս և արարի ազատ յամենայն հարկէ. ամիր Քրտին հոգացողութիւն (թեամբ) որ ինձ աղաւթս անեն. որ մեր հրամանացս հակառակ լինի, Աստուծոյ հրամանին է հակառակ, հաստատ է գիրս անուամբ Աստուծոյ»։

Կաթուղիկէի արևմտեան կողմի վերայ արտաքուստ. «Ես հայր Գրիգոր… վանքս շինեցի Աստուածածին…. (անընթեռնլի)»։ Արդէն հերկուած են միաբանից խուցերի և շրջապարսպի տեղերն, որոց արևելեան կողմում կայ *Գիւղատեղի* և *հանգստարան*։

ԺԵ. *Կարվանսարա* գիւղ. (կարաւանի իջևանելու տեղ).

---

[1]) Վրաց Գէորգի թագաւորն և Թամար թագուհու հայրն, որ թագաւորեց 1156—1184 թուականն փրկչին։

շինուած է Աղստև գետակի աջ ափի վերայ, Աղտան վտակի աջ ու ձախ կողմերի վերայ. գիւղիս նախկին բնակիչներն գերի տարուած են Պարսկաստան և ցրուած են մնացեալներն։ Այժմեան բնկիչք տեղափոխուած են Երևանի Ղըրխ-Բուլաղ, Արզն և Կեամրիս գիւղերից (անյայտ է տեղափոխուելու ստոյգ թուականն), հողն արքունի, մեծ մասամբ անջրդի, նուազ արդիւնաւէտ, բայց այգևէտ. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 90—100 տարի. եկեղեցին Ամենափրկիչ, ծածքն փայտաշէն, քահանայ երեք։

Ծուխ 115, ար. 751, իգ. 613.

Տղայոց միդասեան ուսումնարան, ուր ուսանում են 77 տղայք, թոշակատու 68, ձրիավարժ 9, տարեկան ռոճիկ վարժապետին 310 րուբլի։

*Եկեղեցումս կան հետևեալ գրչագրերն.*

Ա. Աւետարան մեծադիր, թղթեայ, պատկերազարդ. միջակ գեղեցկութիւն ունին պատկերներն, ծաղիկներն, թռչնագրերն և նկարներն։ Փտած և թափուած են յիշատակարանի կէսն, միայն մնացած է. «........ Գրեցաւ Հայկական թուականիս չհա. յանապատս Այրուանաձոր (Վանայ կողմերում) ընդ հովանեաւ սրբուհւոյ մաւրս լուսոյ Աստուածածնիս և Վասիլ թագաւորի սուրբ Նշանիս և այլ և այլ հաւաքեալ սրբութեանցս 'ի ղանութեան Բյուստիտին (?) և ի քահանայապետութեան տեառն Զաքարիայի ձեռամբ ամենամեղ և անարհեստ գրչի Յակոբայ մեղապարտ... հանդէպ սրբարար ծովուն, ուր մանր ձկունք ելանեն..... ստացող սորա Մոսէս կրաւնաւոր հանդերձ ծնողիւք և եղբայրբ կենդանեաւք....»։

Վերջին *յիշատակարանից.* «Գրեցաւ ի թուին հայոց ՊԵ. են 'ի դուռն սուրբ Նախավկային ձեռամբ սրբոյ Էջմիածնի նուիրակ Սիմէոն վարդապետի յառաջնորդութեան սուրբ սքանչելագործայ տեառն Ներսիսի եպիսկոպոսի, վկայութեամբ բազմաց ժողովրդոց . . .»։

Բ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, ամբողջապէս գլխագրով գրուած, որի սկզբից պակաս են թերթեր, վասն որոյ չունի յիշատակարան։ Սակայն նայելով գլխագրերի ձևերին՝ 800 տարուայ գրուած լինելու է աւետարանս։

Գ. Աւետարան միջակ դիրքով, թղթեայ, որ ունի միայն չորս աւետարանչաց անճաշակ պատկերներ. *Յիշատակարանից*. «Եւ ես յետինս 'ի կրաւնաւորաց . . . Գրիգոր եպիսկոպոս . . . . գծեցի զսա մեղսամած մատամբ իմով 'ի Բջնի ընդ հովանեաւ երկնանման աթուոյ սուրբ Աստուածածնիս 'ի հայրապետութեան տեառն Սարգսի (Բ-ի) Հայոց վերադիտողի 'ի թուաբերութեանս Հայոց ՋԻԷ . . . . Եւ արդ ես պատրոնս և ամուսին իմ Մէլիքխաթուն ստացաք զսուրբ աւետարանս 'ի յարդար վաստակոց մերոց և տուաք ընծայ 'ի դուռն սուրբ Ամենափրկիչ Աշտարակու և սուրբ Մարիամին և սուրբ Կամբրաւորին ի վայելումն մանկանց սոցա»։
«. . . և ես տէր Գրիգոր եպիսկոպոս աշտարակեցի Նստելով եպիսկոպոս իմ ի սուրբ աթոռս ԺԷ. ամ և Զ. ամիս դրեցի զսուրբ աւետարանս . . . . .»։

Դ. Աւետարան փոքրադիր, թղթեայ, պատկերազարդ, որք նկարուած են ճաշակով, արուեստով և ընտիր գոյներով, ընկած է յիշատակարանի կէսն, վասն որոյ մնում է անյայտ գրողի անունն, տեղն և թուականն։ Միայն գրուած է Մատթէոսի վերջում. «Զստացող սուրբ աւետարանիս զբարեմիտ և հաւատարիմ տանուտէր Յովհաննէսն և զեղբայրն իւր զՄարտիրոսն, որ ստացաւ զսուրբ աւետարանս . . . . . թվ. ՌԾԻԱ.»։

Ե. Աւետարան միջակ դիրքով, թղթեայ, պատկերազարդ (անճաշակ են). *Յիշատակարանից*. «Արդ գրեցաւ և աւարտեցաւ սուրբ աւետարանս ի գաւառս Միջագետաց յԱմիթ մայրաքաղաքի ընդ հովանեաւ Թէոդորոսի զինուորին և ամենասրբուհի կուսին Մարիամու Աստուածածնի և սուրբ Կարապետին Յովհաննու և Գէորգայ զաւրավարին ի հայրապետութեան տեառն Կոստանդնի Վահկեցոյ և 'ի վերադիտողութեան

Ամիթ Տաճաստանի տեառն Մկրտչի աստուածաբան վարդապետի և արքեպիսկոպոսի ամենայն միջագետաց և երիցփոխանի Կաթուղիկոսի ամենայն Հայաստանեայց և մինչ ի ծայրս արևելեան լիշխեցողի, և ի թագաւորութեան ամենայն Միջագետացս պարոնայց պարոնի, որ կոչի Տաճ Աւթման պաճաթուր ի թվ. Հայկականս տումարի ՊՅ. երորդի, յորում ամի մերկացաւ սուրն վաղակատր յազգերէ իւրմէ և վասն ծովացեալ մեղաց սուր պատուհասի Աստուծոյ տարածեցաւ տարաժամ մահ ընդ ամենայն երկիր և առաւել ևս բարկութիւնն Աստուծոյ տեղեաց յԱմիթ մայրաքաղաքի և խստառ կոտորեաց զամենայն առհասարակ առաւել քան զանդրանկածախն Եգիպտոսի, որպէս յանապատի զԽսրայէլ և յաւուրս Դաւթի ՀԷ. հազարացն. զի անկաւ 'ի ժողովրդենէն ԶՌ. (6000) արանց միայն, զորս 'ի թիւ արկին, թող զանհամարսն և զայն որ արտաքոյ քաղաքին ի Գաւառսն և 'ի գեաւղսն որ և բազում աւանս անմարդաբնակ արար, մինչ զի չորքոտանիքն յամայի շրջէին և ամենայն հայրենիք կողոպուտ եղեն յարքունեան։ Եւ արդ ոչ ոք կարէ ընդ գրով արկանել կամ լեզուաւ ճառել զայլէտս կսկծանաց և զողբս տարակուսանաց և զհառաչանս սրտից և զգործս տարակուսանաց, որ գործեցան 'ի միջի մերում, զի բարկութիւն Աստուածային էր և սաստիկ էր հրաման . . . . . . յամենայն ուրեք ողբ հառաչանաց և յամենայն տուն գործս տարակուսանաց լալումն որբոց և աղաղակ այրեաց, կսկիծ ծերոց և մաղկատումն մանկամեռ մարց, յամենայն լեզուէ վա՜յ և յամենայն բերանոց ապաշաւանք . . . . Մայտեսի Ագիգն . . . որ ստացաւ զսուրբ աւետարանս . . . և ընծայեաց սուրբ աւետարանս Նուիրէք սուրբ Թորոս' զաւրավարին . . . և կայցէ սուրբ աւետարանս յիշատակ անջնջելի. . . . յիշեցէք 'ի Քրիստոս . . զԳրիգոր գրագիրս, որ գրեաց զսա յընտիր աւրինակէ այլև զԱբրահամ վարդապետ, որ զարդարեաց զսա ծաղկով»։

«Նորոգեցաւ սուրբ աւետարանս 'ի թվ. ՌԽԴ. ի քաղաքն յԱմիթ 'ի դուռն սուրբ Կիրակոսի, 'ի յառաջնորդութիւն Ամ-

Digitized by Google

թայ Ղուկաս քաջ րաբունապետին. . . . ի դառն և 'ի նեղ ժամանակիս, որ քրիստոնեայքն խիստ նեղութեան կային. հարկապահանջութիւն շատացեր էր 'ի վերայ քրիստոնէից. մէկ խարաջ մի Գ. Դ. ղուրիշ կառնին, հա՞նց (այնպէս) թանգութիւն, որ չարէք ցորեն ԺԳ. շահի կու առնեն. այս տարի մեռաւ Խոնթքար Մուրատն և թագաւորեց որդի Մահմուտ փաշան. . . . »:

*Սուրբ Գրիգոր* մատուռ, շինուած անտաշ քարով, խոնարհուած է ծածքն, որ գիւղիս արևելեան կողմումն է: Գեղեցկաքանդակ խաչարձաններով զարդարուած է մատրանս ներսն և ուխտի օրն է Աստուածածնայ վերափոխումն:

Խոզ-մարագ կոչուած տեղում կայ *Գիւղատեղի* և *հանգստարան*:

ԺՁ. *Վերին-Աղդան*. Շինուած է Կարվանսարայի հարաւային կողմում Աղդան վտակի աջ ու ձախ ափերի վերայ: Գիւղս բաժանուած է երեք թաղի *Ներքին*, *Միջին* եւ *Վերին*. բնակիչք տեղափոխուած են Ներքին-Աղդանից, հողն արքունի, լեռնային և միջակ արդիւնաբեր, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին երկու, ներքին թաղինն՝ Աստուածածին[1]) Վերի թաղինն՝ Նորաշէն (դեռ չունի անուն). քահանայ մի: Ծուխ 90, ար. 686, իգ. 638:

Գիւղիս արևելեան կողմում, սարի ստորոտում կայ ընդարձակ *հանգստարան*, որի մէջ կան խիստ հին ամփոփեալներ: Տապանաքարերից շատերն ունի խաչարձաններ: Մի անտաշ քարի վերայ, որի խաչարձանն չկայ. «Խաչս բարեխաւս Սուլթանի Նաւին»: Այլ քարի վերայ. «Խաչս բարեխաւս Ասպրտէրին ամենայն Ննջեցելոց» (բազմախաչ է տապանաքարս):

---

1) Եկեղեցումս կայ մի մասունք արծաթեայ աջի մէջ, որը՝ հերկելու ժամանակ՝ գութանն հանած է հողի սակից, յայտնի չէ՝ թէ որ սրբի մասունքից է:

«Սուրբ խաչս Ավաքին ամուսին»։ սորանից փոքր ինչ վերև է գիւղատեղին և եկեղեցու աւերակն, որ շինուած է եղել մի սեռահարթի վերայ, որի շուրջն պարսպուած է եղել ահագին քարերով։ Այժմ մնացած են միայն եկեղեցու և պարսպի աւերակներ։

## ՍՈՒՐԲ ԿԻՐԱԿԻ ՄԱՏՈՒՌ

Մի միապաղաղ քարի վերայ շինուած է մատուռս, որ կայ եկեղեցու աւերակի հարաւային հանդէպ, ձորի ձախ կողմի սեռի վերայ։ Մատուռս, որի չորս պատերն շինուած է անտաշ և թաղն տաշուած քարով, ունի մի խորան, երկու խորհրդարան, չորս լուսամուտ, մի դուռն արևմտեան կողմից և մի կաթուղիկէ և 14 մետր շրջապատ, արտաքուստ չափելով։
Դրան ճակատակալ քարին վերայ.

«Կամաւն Աստուծոյ, ղանութիւն Արղունին, թագաւորութիւն Դեմետրի ես Մկրտիչս շինեցի զեկեղեցիս ծնողաց իմոց և վասն թողութեան մեղաց իմոց. ամեն. թւկ. ՁԼԵ.»։ Հիւսիսային սեմ խաչարձանի ստորոտում. «Աստուծով ես Ալափես ետու գմարանս Մարկոս. Մխ. (կիթար) քահանա եւ ա. պատարագ զգաւիթս 'ի սուրբ խաչին» (տօնին)։ Մատրանս շուրջն հանգստարան է, իսկ հիւսիսային կողմում խիստ մօտ կան խուցերի աւերակներ։

*Անանուն մատուռ* շինուած միևնոյն սեռի վերայ, փոքր ինչ վերև մացառուտների մէջ, որ աւերակ դրութեան մէջ է այժմ.

*Քոսի աղբիւր.* երկու պատուական ջրով աղբիւրներ են, որք բղխում են աւերակ մատրան ստորոտի ձորից և հոսում սուրբ կիրակի մատրան հարաւային ձորով։ Աղբիւրներիս ակների մօտ կայ մի տորոնագոյն խաչարձան, որի մօտ լուացուելով սրբուում են բորոտութիւնից։

Digitized by Google

## ԼԱՉԻՆ-ՂԱՅԱՒ-ՁՈՐ.

Գտնուում է Վերին-Աղդանի հարաւային սարի մէջ մի ջրաձորի վերի մասումն։ Այս մի խորագոյն, հորիզոնն նեղ, անտառապատ, ահարկու և մթնագին ձոր է, որ ունի միայն մի մուտք ջրաձորով-հիւսիսից հարաւ։ Վերնամասն գոգաւոր է և ամեն կողմերից անմատչելի։ Սոյն մասում կան քարայրներ, բայց մին անմատչելի է այժմ քանզի աւերուած է վերելակ կածանն և ոտից կռուաններն։ Ահա այս ձորում և այրերում պատսպարուած են շրջաբնակ հայերն և ազատ մնացած Լեկզիների աւերիչ արշաւանքներից և գերեվարութիւնից։ Երեք տարի առաջ ձորիցս գտած են տասներկու պղնձեայ ափսէ և երկու արոյրէ աշտանակ։

*Անապատ.* Մրղուզ սարի արեւմտեան ստորոտում, *Սալա գիւղի* մօտ (այժմ Թրքաբնակ է որ կանխաւ եղած է հայաբնակ) կայ մի փոքր վանք անապատ անուն, շինուած սրբատաշ քարով։ Բացի անապատից՝ գիւղումս կայ քարուկիր մեծ *եկեղեցի* և ընդարձակ *հանգստարան*։

*Գետաշէնում* (*Զայքեանդ*), Թարսա-չայի աջ կողմում, կայ մեծ *եկեղեցի* և հանգստարան։ Մինչդեռ կանխաւ հայաբնակ եղած է, այժմ Թրքաբնակ է։

*Հանքային ջուր*, որ գտնուում է մօտ կէս մղոնից աւելի վերև նոյն ջրի ձախ ափումն և կոչուում է տաճկ. Ղոթուր-բուլաղ։ յար և նման է ըստ ամենայնի ջուրս Նուշուց վերև եղած թթու ջրին։

ԺԷ. *Ներքին-Ճամբարակ.* շինուած է նոյն վտակի (Թարսայ-չայի) աջ ափում, հանքային ջրից վերև, բնակիչք բնիկ, հողն արքունի և խիստ սակաւ արդիւնաբեր, քանզի մօտ 8000 ոտք բարձր է սոցա բնակութեան և ցանքսերի տեղերն. տեղական բերքերն ցորեն, գարի, ոչխար, տաւար և գոմէշ. գերազանց օդն, կլիման և ջուրն ամրան. եկեղեցին սուրբ Աստուածածին, քահանան գալիս է Վերին-Ճամբարակից։

ԺԸ. *Վերին-Ճամբարակ*. շինուած նոյն վտակի աջ կողմում մի առուակի աջ ափի վերայ. ամենայն ինչ նոյն. եկեղեցին սուրբ Աստուածածին, քարուկիր և հին, քահանայ մի։

Ծուխ (երկու գիւղերում միասին) 67, ար. 550, իգ. 440.

Գիւղիս արևմտեան հանդէպ վտակի ձախ կողմի բարձրութեան վերայ կայ *գիւղատեղի, համգստարան* և եկեղեցու *աւերակ*:

*Վիմափոր խաչարձաններ*, Գօշ առուի ձախ ափում, Թարսա-չային խառնուրդին մօտ, ճանապարհի գլխին, ապառաժ քերծի ճակատին փորուած է երեք խաչ, երկուսն մեծ և մին փոքր։ Մեծերի գլխին. «Գրիգորոյ է». իսկ տակին. «ՈՁԳ. թուին հայոց»։

ԺԹ. *Ղօշայ-վանք-շէն*. շինուած է Թարսա-չայի ձախ կողմում հովուի սարի (Ջոբան-դաղի 8435 ոտք) ստորոտում, մի արևելահայեաց լանջի վերայ. բնակիչք 1855-ին տեղափոխուած են այստեղ Ջաւէ գաւառի Կոթ, Դոստլու, Գվեղ և Սուի գիւղերից. հողն վանքապատկան, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն պատուական, քահանայ մի, հոգևոր պէտքերն կատարուում են վանքումն.

Ծուխ 25, ար. 140, իգ. 130.

## ԳՕՇ-ՄԽԻԹԱՐԱՅ ՎԱՆՔ (59)

Հիմնարկուած է շինիս մէջ մի գեղեցիկ հարթակի վերայ. բարձր և անտառապատ լեռներ պատած են վանքիս և շինիս հարաւային, արևմտեան և հիւսիսային կողմերը, բաց է միայն արևելեան կողմն և գոգաւոր խոր փոս վանքիս և շինիս տեղն։ Մենաստանս շինուած է յանուն սուրբ Աստուածածնայ ամբողջապէս տորոնագոյն տաշուած քարով և հոյակապ կառուցեալ չորս բարձրաշէն կամարների վերայ Գանձասար վանքի իսկական ձևով։ Վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, տասներեք լուսամուտ, մի վեղարաձև կաթուղիկէ, երկու դուռն արևմտեան և հիւսիսային կողմերից. 15 մետր 75 սանթիմ երկարութիւն, 11 մետր 50 սանթիմ լայնութիւն։ Նարժից

Digitized by Google

վնասուած են արտաքուստ արևելեան որմն, կաթուղիկէն և տեղ տեղ սալկախն. իսկ ներքուստ արևմտեան և հարաւայ-
ին կողմերն։

*Աջակողմեան դասի Բ. խորանի ճակատին.*

«'ի ՌԽ. թուին զկնի չորս ամաց առնլոյ զԵրուսաղէմ Սալահադինին՝ սկսեալ եկեղեցիս սուրբ ի նորս Գետիկ և կատարի ամս է, 'ի խանգար զատկին յունաց ձեռամբ վարդապետին Մխիթարայ 'ի հայրութեան Վարդանայ, ձեռնտուութեամբ բարեպաշտ իշխանին Վախտանկայ և նորին զուգակցին Արզու խաթունին, և նորին եղբարցն Սմբատայ, Վասակայ և խորթն[1]) Գրիգորոյ և նոցին զաւակացն։ Լիցի նոցա պատարագ յեկեղեցիս 'ի տաւնի սուրբ Աստուածածնին Գ. աւուրն. բայց զԱ. Հասանայ հաւրն Վախտանկայ. Ա. մաւրն նոցին Մամին և Ա. հաւրն Արզու խաթունին Քրդին բարեպաշտի անխափան»։

*Աւագ խորանի վերայ*

«Յուսով ողորմութեան Աստուծոյ ես Ծարս որդի պարոն Ումիկին, թոռն Ծարին, աշխարհաւ Մանածկերտացի յաշխարհակալութեան Ղարա Նուին 'ի թագաւորութեան վրաց Դեմետրի Բագրատունոյ իմ հայրն Ումիկ գնեալ էր զԳետիկ 'ի ԽՌ. կարմիր տուգանի. ես Ծարս դրեցի զՀովս (դեզս) իւր ամեն սահմանաւք ի դառն ժամանակի, որ հայրենիքն աժան էր և ոսկին թանկ. ԴՌ. կարմիր տուգատ տուի Գետկայ Աստուածածնին իմ հոգոյ տանս յիշատակ անջնջելի իմ ծնողացն Ումիկին և Թագուհւոյ, ինձ և իմ որդեացն Արղութին և իւր եղբարցն, առաջնորդութեամբ Ղասապ վարդապետին. և միաբանիքս սահմանեցին զաւագ Ե. շաբաթ աւրն, և զատկի աւրն զամէն եկեղեցիքս պատարագ որչափ մեք կենդանի եմք՝ մեր ծնողացն լինի, և յետ ելից մերոյ յաշխարհէս՝ մեզ լինի։

---

[1]) «Վախթանկայ Խաչենւոյ տեառն Հաթերքոյ, և եղբարց իւրոց՝ Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ» (Կիր. եր. 125 տպ. 'ի Մոսկ. 1858)։

Digitized by Google

Արդ՝ ով այս գեղս հանել ջանայ յայս եկեղեցւոյս, կամ զիմ յիշատակն խափանէ ով ոք և իցէ, որ լինիցի ի ծննդոցն Ադամայ, եղիցի նզովեալ չլբ.»։

Վանքս ունի և գաւիթ, որ կառուցեալ է չորս միապաղաղ և բոլորակ սիւների և ութ կիսասիւների վերայ տաճարի արևմտեան կողմին կից նոյնպէս սրբատաշ քարով։ Գաւթի կեդրոնի ուղղութեամբ շինուած է մի ութանկիւնի գմբէթ իբր երդիկ։ Գաւիթս ունի մ?րս խորան. տասնևմի լուսամուտ, մի երդիկ, երկու դուռն, 15 մետր 79 սանթիմ երկարութիւն (հիւսիսից հարաւ) 13 մետր 40 սանթիմ լայնութիւն։ *Արևմտեան դրան վերայ.* «..... Եցի ես որդի Գայլաձագին միաբանեցայ սուրբ Աստուածածնիս. հաստատեցին մեզ Դ. պատարագ ի տաւնի Յովհաննու Կարապետին զկնի յայտնութեան զԱ. իմ հաւրն Գայլաձագին, զԱ. իմ մաւրն Մամաքին. զԲ. իմ եղբարցն Բուլանին և Աղբերկանն. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ ի թվ. ՉԽԲ.»։

*Երկրորդ վանք.* որ կոչուում է սուրբ Գրիգոր Լուսաւորիչ, պատկից է գրեթէ սուրբ Աստուածածին վանքին հարաւային կողմին։ Շինուած է յար և նման մեծ տաճարի ձևով, բայց առանց գաւթի։ Սուրբ Գրիգորս ունի 11 մետր 90 սանթիմ երկարութիւն, 9 մետր 12 սանթիմ լայնութիւն, բայց քանդուած է ամբողջ կաթուղիկէն, խորանի կամարի վերի քարերից մի քանիսն, հարաւային կողմի երկրորդ կամարի քարերից մի քանիսն և սալկախներ։ *Աւագ խորանի վերայ.*

«Շնորհիւն Աստուծոյ և կամակցութեամբ եղբարցս և միջնորդութեամբ տէր Գրիգորիսի գրեցաւ յիշատակ եղբաւրս մերոյ Պետրոսի Արտաւազայ. միաբանք սուրբ ուխտիս սահմանեցաք 'ի տաւնի Դաւթի և Յակոբայ մատուցանել պատարագ ամենայն եկեղեցիքս զկէսն Արդաւազայ և զկէսն ամուսնոյն իւրոյ Աւթային, որ խափանէ, դատի 'ի տեառնէ»։

*Հիւսիսային փոքր խորանի դրան վերայ*

«Ի տաւնի սուրբ խաչին Ա. աւրն պատարագ Խաչատուր

Digitized by Google

վնասուած են արտաքուստ արևելեան որմն, կաթուղիկէն և տեղ տեղ սալկախն. իսկ ներքուստ արևմտեան և հարաւայ-յին կողմերն։

*Աջակողմեան դասի Բ. խորանի ճակատին.*

«՚ի ՌԽ. թուին զկնի չորս ամաց առնլոյ զՆրուսազէմ Սալահադինին՝ սկսեալ եկեղեցիս սուրբ ի նորս Գետիկ և կատարի ամս է, ՚ի խանգար զատկին յունաց ձեռամբ վար-դապետին Մխիթարայ ՚ի հայրութեան Վարդանայ, ձեռնտու-ութեամբ բարեպաշտ իշխանին Վախտանկայ և նորին զուգա-կցին Արզու խաթունին, և նորին եղբարցն Սմբատայ, Վասա-կայ և խորթն[1]) Գրիգորոյ և նոցին զաւակացն։ Լիցի նոցա պատարագ յեկեղեցիս ՚ի տաւնի սուրբ Աստուածածնին Գ. աւուրն. բայց զԱ. Հասանայ հաւրն Վախտանկայ. Ա. մաւրն նոցին Մամին և Ա. հաւրն Արզու խաթունին Քրդին բարե-պաշտի անխափան»։

*Աւագ խորանի վերայ*

«Յուսով ողորմութեան Աստուծոյ ես Ձարս որդի պարոն Ումեկին, թոռն Ձարին, աշխարհաւ Մանածկերտացի յաշ-խարհակալութեան Ղարա նուին ՚ի թագաւորութեան վրաց Դեմետրի Բագրատունոյ իմ հայրն Ումեկ գնեալ էր զԳետիկ ՚ի ԽՌ. կարմիր տուդատի. ես Ձարս դրեցի զՀովս (դեզս) իւր ամեն սահմանաւք ի դառն ժամանակի, որ հայրենիքն աժան էր և ոսկին թանկ. ԴՌ. կարմիր տուգատ տուի Գետկայ Աս-տուածածնին իմ հոգոյ տանս յիշատակ անջնջելի իմ ծնողացն Ումեկին և Թագուհւոյ, ինձ և իմ որդեացն Արղութին և իւր եղբարցն, առաջնորդութեամբ Ղասապ վարդապետին. և մի-աբանքս սահմանեցին զաւագ Ե. շաբաթ աւրն, և զատկի աւրն զամէն եկեղեցիքս պատարագ որչափ մեք կենդանի եմք՝ մեր ծնողացն լինի, և յետ ելից մերոց յաշխարհէս՝ մեզ լինի։

---

[1]) «Վախթանկայ Խաչենւոյ տեառն Հաթերքոյ, և եղբարց իւրոց՝ Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ» (Կիր. եր. 125 տպ. ՚ի Մոսկ. 1858)։

Արդ՝ ով այս գեղս հանել ջանայ յայս եկեղեցւոյս, կամ զիմ յիշատակն խափանէ ով ոք և իցէ, որ լինիցի ի ծննդոցն Ադամայ, եղիցի նզովեալ չըք.»։

Վանքս ունի և գաւիթ, որ կառուցեալ է չորս միապաղաղ և բոլորակ սիւների և ութ կիսասիւների վերայ տաճարի արևմտեան կողմին կից նոյնպէս սրբատաշ քարով։ Գաւթի կեդրոնի ուղղութեամբ շինուած է մի ութանկիւնի գմբէթ իբր երդիկ։ Գաւիթս ունի մէրս խորան. տասնևմի լուսամուտ, մի երդիկ, երկու դուռն, 15 մետր 79 սանթիմ երկարութիւն (հիւսիսից հարաւ) 13 մետր 40 սանթիմ լայնութիւն։ *Արեւմտեան դրան վերայ*. «..... Եցլի ես որդի Գայլաձագին միաբանեցայ սուրբ Աստուածածնիս. հաստատեցին մեզ Դ. պատարագ ի տաւնի Յովհաննու Կարապետին զկնի յայտնութեան զԱ. իմ հաւրն Գայլաձագին, զԱ. իմ մաւրն Մամաքին. զԲ. իմ եղբարցն Բուլանին և Աղբերկանն. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ ի թվ. ՁԽԲ.»։

*Երկրորդ վանք*. որ կոչուում է սուրբ Գրիգոր Լուսաւորիչ, պատկից է գրեթէ սուրբ Աստուածածին վանքին հարաւային կողմին։ Շինուած է յար և նման մեծ տաճարի ձևով, բայց առանց գաւթի։ Սուրբ Գրիգորս ունի 11 մետր 90 սանթիմ երկարութիւն, 9 մետր 12 սանթիմ լայնութիւն, բայց քանդուած է ամբողջ կաթուղիկէն, խորանի կամարի վերի քարերից մի քանիսն, հարաւային կողմի երկրորդ կամարի քարերից մի քանիսն և սալկանները։ *Աւագ խորանի վերայ*.

«Շնորհիւն Աստուծոյ և կամակցութեամբ եղբարցս և միջնորդութեամբ տէր Գրիգորիսի գրեցաւ յիշատակ եղբաւրս մերոյ Պետրոն Արտաւազայ. միաբանք սուրբ ուխտիս սահմանեցաք 'ի տաւնի Դաւթի և Յակոբայ մատուցանել պատարագ ամենայն եկեղեցիքս զկէսն Արդաւազայ և զկէսն ամուսնոյն իւրոյ Աւթային, որ խափանէ, դատի 'ի տեառնէ»։

*Հիւսիսային փոքր խորանի դրան վերայ*

«Ի տաւնի սուրբ խաչին Ա. աւրն պատարագ Խաչատուր

վարդապետին և եղբարց իւրոց և ծնողացն, զի նոցա ընծիւք շինեցաւ խորանս»։

*Հարաւային փոքր խորանի դրան վերայ*

«Ծառայն Աստուծոյ Գերգ (Գէորգ) և ամուսին իւր Կատայ և զաւակունք նոցին շինեցին իւրանց ընծիւք զխորանս. Բ. աւր պատարագն նոցա է 'ի տաւնի սրբոցն Գէորգայ. խափանողքն դատին ի Տեառնէ»։

*Տաճարիս դրան ճակատակալ քարին վերայ*

«Յուսովն Աստուծոյ Բ. եղբարքս Մարտիրոս և Գրիգոր, և ամուսին Թամար միաբանեալ Եփրեմաւ շինեցաք զեկեղեցիս, վասն որոյ տնկեցաք և զայգիսն. տէր Յովհաննէս և միաբանքս եառւն նոցա պատարագ զեկեղեցիս Բ. տաւնն սրբոյն Գրիգորի զԵ. խորանս Մարտիրոսի, Գրիգորի, Փիրաժի, Թամարին, Նազխաթունին և Մաթէոսի անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ ՈՁ»։ (Արևի ժամացոյց տաճարիս հարաւային արտաքուստ որմի վերայ)։

Երրորդ տաճար Սուրբ Կարապետ, որ համարեա թէ կից է մեծ տաճարի գմբեթին հարաւային որմին։ Այս ևս շինուած է համակ սրբատաշ քարով մի կամարի վերայ։ Քանդակազարդ են բեմն և խորհրդարաններն և զոյգ լուսամուտներ ունի մեծ խորանն։ Տաճարս ունի երկու փոքր և մի մեծ խորան , հինգ լուսամուտ, մի դուռն, 6 մետր 90 սանթիմ երկարութիւն, 5 մետր 38 սանթիմ լայնութիւն։

*Տաճարիս հարաւային որմի վերայ արտաքուստ*

«Ի ՈՁՁ. ես Գրիգոր որդի Ս. . . . միաբանքս եառւն զաւագ խորան եկեղեցւոյս ինձ պատարագ . . . .»։ Խախտուած են սուրբ Կարապետիս հարաւային որմի արտաքին երեսի քարերն և թափուած մի քանիսն սալկախի հետ։

Սուրբ Կարապետիս դրան աջ ու ձախ կողմերում արտաքուստ դրուած են երկու քարեայ ականաւոր խաչարձան-

Digitized by Google

ներ, որք գրաւում են այցելուների ուշադրութիւնը իւրեանց ւխրալի քանդակագործութեամբ։ Հարաւային կողմինն կոտորուած է ստորոտի մօտից. անվնաս է հիւսիսայինն, որի ստորոտում քանդակուած է. «Պաւղոս» որ է շինող վարպետի անունն։

## ԶԱՆԳԱՏՈՒՆ

Եռայարկ և բարձր շինութիւն է, որ գրեթէ պատկից մեծ տաճարի գաւթի հիւսիսային կողմին։ Մարանատուն է գետնայարկն, որ պատերի արտաքին երեսներն շինուած են աճագին անտաշ քարերով։ Միմեանց միջով անցած են չորս կամարներ, որոց ոտքերն հաստատուած են չորս պատերի մէջ զետեղուած ութ կիւսասիւների վերայ հիանալի ճարտարապետութեամբ։ Գետնայարկս, որի յատակն լի է աճագին քարուկիր հորերով-տաքարներով, ունի վեց լուսամուտ և մի դուռն։ Միջնայարկն գաղտնի պահարան է։ Խաչաձև շինուած է վերնայարկն, որ ունի մի դուռն հարաւային կողմից, երկու փոքր սեղաններ Գաբրիէլ և Միքայէլ հրեշտակապետաց անուամբ արևելեան կողմում մի լուսամուտ (միջնասիւնով զոյգ լուսամուտ) հիւսիսային և մի արևմտեան կողմից։ Մուտքի առաջ կայ մի ծակ, որից ներս մտնելով մարդ գտնում է զինքը թանձրամած խաւարի մէջ։ Ահա այս է միջնայարկ գաղտնի պահարանի դուռն։ Այժմ խոնարհուած է զանգատանս կաթուղիկէն։

*Արձանագրութիւն*. «Կամաւն Ամենակալին Աստուծոյ ի թվիս ՁԽ. մենք երկու եղբարքս Դասապետ վարդապետ և Կարապետ եդաք հիմն և 'ի վերայ եդաք զանգակատուն և եկեղեցի յանուն հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի սակաւ ընչիւք մերովք և քեռոյն մերոյ Իգնատիոսի. արդեամբք բազմաւք եդաք և պարիսպ շուրջ եկեղեցեաւքս և այլ աշխատութիւնս ըստ մերում կարի։ Սարգիս վարսապետն հայր վանիցս և միաբանքս հաստատեցին զատկին և ճրագալուցին պատարագ, յոր եկիղեցին Դասապետ վարդապետին և Կարապե-

տին սահմանեսցին։ Արդ ապաշեմ զամենայն ժառանգաւորդ յիշման արժանի արարէք զամենայն աշխատեալսն 'ի սմա, ես առաւել Զաքէոսն և Գրիգորն»։

*Սեղանատունն*. որ ընդարձակ շէնք է և որի գլուխն ամբողջապէս խոնարհուած է այժմ. պատկից է զանգատան գետնայարկի արևմտեան և տեղմին հիւսիսային կողմերին։ Զորս պատերն շինուած են անտաշ մեծ մեծ քարերով. երկարութիւնն է 17 մետր և լայնութիւնն 12։ Ուսանողաց և միաբանից թիւն թէ որքան մեծ եղած է, դիւրաւ կարելի է մակաբերել սեղանատանս մեծութիւնիցն։ Այժմ քայքայուած են միաբանից բոլոր սենեակներն և շրջապարիսպն թողլով միայն իւրեանց տխուր հետքերն և աւեր հիմքերն։

Շատ տապանաքարեր կան բոլոր տաճարների արևմտեան կողմերում և սակաւ արևելեան։ Իսկ մեծ տաճարի արևելեան կողմում կայ մի փոքր մատուռ շինուած սրբատաշ քարով, որի մասին ոմանք կարծում են թէ գրադարան եղած է։

*Սուրբ Հռիփսիմէ մատուռ*

Այսպէս են անուանում մատուռը, որ շինուած է համակ սրբատաշ քարով նախորդ տաճարների ձևով, որ գտնուում է շինամիջում և որ ունի 5 մետր 70 սանթիմ երկարութիւն և նոյնչափ լայնութիւն։

*Ներքուստ հարաւային որմի վերայ*

«'Ի տաւնի սուրբ Գէորգայ Ա. պատարագ Տերանշահին է անխափան»։

*Կաթուղիկէի վերայ*. «Զ. Տէր Աստուած ողորմեա Խաչատուր վարդապետին և Բարսղին շինողաց եւեղեցւոյս և ամենայն աշխատողացն ի սմա»։ Մատրանս մօտ ևս կան ամփոփեալներ։

*Հոգին սուրբ մատուռ*

Սուրբ Հռիփսիմէ մատուռից վերև է չինի գլխին, որ ունի և գաւիթ: Մատուռը և գաւիթը նորոգած է Պ. Սմբատ Փարսատանեանն: Գաւթումս կայ երկու տապանաքար. Հիւսիսային շիրմաքարի վերայ փորագրուած է. «Մխիթար»: Ահա այս է Գօշ-Մխիթարի գերեզմանն, որի գլխատակի հողը բժշկութեան համար՝ հաւատով այնքան տարած են որ մեծ փոս ձևացած է: Իսկ հարաւային տապանաքարին վերայ. (Գրիգոր քահանայ): Մատրանս և գաւթիս շուրջն լի է խիտախիտ գերեզմաններով: Մատրանս հարաւային կողմում կայ պատուական խաչարձանով մի տապանաքար, որի վերայ քանդակուած է. «Ոգոյն հարազատ եղբարք Պաւղոս և Յովհաննէս երկորեակ նշանքս աւծելոյն Յիսուսի, ծնողաց մերոց, որք երկրպագէք . . . մի թուի . . . .» (եղծուած է և անընթեռնլի):

Հազար ափսոս, հետզհետէ բոլորովին ոչնչանում են այս պատուական տաճարներն. կարօտ են նորոգութեան, բայց նորոգող չկայ. խղճալի դրութեան մէջ են, բայց նայող չկայ. բոլոր տաճարներս յանձնուած է մի անհասկացող քահանայի, որ իսպառ անհոգ է:

Յափշտակուած են[1]) վանուցս բոլոր կալուածները, որովք 700 տարի չէն, պայծառ կեանք և կենդանութիւն ունեցած են վանքերս. այժմ զոհ են գնում անհոգութեան:

Վանքիցս փոքր ինչ ներքև է *Ուռելանջ* գիւղն, որ այժմ աւերակ է, բայց կայ իւր հանգստարանն և կիսաւեր եկեղեցին: Իսկ վանքիս հարաւային կողմումն է *Տզրկածով* անուն գիւղն, որ այժմ թրքաբնակ է: Բաց յայսցանէ լճակի հարաւային կողմում է *Աղ-քիլիսա* անուն գիւղն, որի մէջ

[1]) Ինչպէս երևում է արձանագրութիւններից, վանքերս ունեցած են սեպհական շատ անշարժ կալուածներ-այգիներ, ջրաղացներ, գիւղեր, վարելահողեր, անտառներ և ամարանոցեր: Սակայն այժմ յափշտակուած են անտիրութեան պատճառաւ:

Digitized by Google

կայ և փոքր եկեղեցի և հանգստարան. այլ այժմ թրքաբնակ։

Հին-Տար-Խաչ

Վանուցս հիւսիս-արևմտեան կողմում, սարի հիւսիսահայեաց լանջի վերայ կայ մի աւերակ գիւղ և հանգստարան։ Երկոցունցս մէջ տեղում, այս է աւերակի և հանգստարանի միջև, կայ մի բարձր ժայռ, որի հարաւային և արևմտեան երեսների վերայ շարքով շինուած են քանևվեց հատ մեծ և փոքր խաչեր։ Հաստատում են թէ սոյն հանգամանքից ստացած է Տար-խաչ անունը հին գիւղս. որ անցած է և նորի վերայ։

Աշուղի գիւղատեղ. գտնւում է նոյն սարի ստորոտում, մի առուակի ձախ կողմին ուր կայ և հանգստարան։ Սորանից փոքր ինչ վերև է Եղցու-Թալա կոչուած տեղն, ուր է գիւղատեղի, հանգստարան և եկեղեցի։ Այս տեղից շատ հեռի չէ Գէորգ Ճգնաւորի քարայրն և գերեզմանն։ Իսկ սոցանից փոքր ինչ ներքև Աղստև գետակի աջ ափի վերայ կայ մի կիսաւեր եկեղեցի, որ է Հին-գետակի վանքի աւերակն. մեր համեստ կարծիքով։

Ի. ԴԻԼԻՋԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է նոյն սարի (Եղջերուասար[1]) Մարալ-դաղի) արևմտահայեաց լանջի վերայ, նոյնպէս Աղստև գետակի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք տեղափոխուած են Սև-քար, Հաչա-ջուր գիւղերից և Ջրաբերդի գիւղերից. հողն արքունի, անջրդի, սակաւ և նուազ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, հնաշէն (պատրաստում են շինել նորը). քահանայ մի։

Տուն 100, ար. 537, իգ. 474.

Միդասեան երկսեռ ուսումնարան, (գեղեցիկ է մանաւանդ օրիորդաց ուսումնարանի շէնքն) ուր ուսանում են 60

[1]) Կոչւում է և Մայմեխ սար, որ ունի 8435 բարձր.։

աշակերտ և 25 օրիորդ. Թոշակառու 70 (երկսեռ միասին). տարեկան ուսուցչաց 1015 րուբլի։

## ԱՒԵՐԱԿՆԵՐ

Գիւղիս արևելեան կողմում, ճանապարհի վերայ է Դի․չի անուանեալ աւերակ գիւղն, եկեղեցին և հանգստարանն։ Դիլիջան գիւղիս մէջ է մի հին եկեղեցի (քանանց գիւղացի Ջղեթանց Ալեքսանի խանութի դիմացն), որի երկարութիւնն է 14 մետր, լայնութիւնն 6 մետր 80 սանթիմ, և ընդարձակ հին հանգստարան։

Բախտիարի գիւղատեղի և հանգստարան Աղստևի աջ ափի հովտում. Կիսաւեր եկեղեցի, որ գտնուում է Աղստև գետակի և Դիլիջան վտակի խառնուրդի մէջ, որի մօտ բնակում են այժմ Մալականներ.

*Գաւառիս Բերդերն*

### Ա. ԵՐԳԵՎԱՆՔ ԲԵՐԴ (60)

Գտնուում է Ղուլալի գիւղի արևմտեան հանդէպ Տաւուշի օժանդակ (Ախնջի) վտակի ձախ կողմի բարձր սարի վերայ։ Տակաւին երևում են պարսպի պատերն և տեղ տեղ աւերուածների հետքերն։ Թէև ցից ցից ժայռեր, նեղ նեղ կիրճի և մացառուտ ձորեր են բերդիս շուրջն, այսու ամենայնիւ այնքան ապահով չէ։ Ջուրը ամաններով բերած են իւր արևմտեան ձորում եղած աղբիւրից, որի մօտ կայ ընկուզի մեծ մեծ ծառեր, գիւղատեղի և հանդստարան։

Բ. ՏԱԻՈՒՇ կամ ԹՈՎՈՒԶ բերդ, որ կայ նոյնանուն գետակի աջ ափը բարձր սարի վերայ, Բերդ գիւղի արևելեան հանդէպ։ Բերդավայր սարս բոլորովին առանձնացած է իւր շրջապատից-արևելեան և հիւսիսային կողմերից և անջրպետուած է լայնագոգ ձորերով. Հարաւային և արևմտեան կողմերն ահագին վիմահերձ և բարձր ապառաժներն են, որոց ստորոտը քերելով խոխոջում է Տաւուշ գետակն։ Բեր-



Digitized by Google

դս ունի կրկնապարիսպ, որոնց մին սարիս ստորոտով, որ սկսուած է սաստիկ զառիվայր հարաւային կողմից և հասած մինչև արևմտեան վիմահերձն. իսկ միւսն բրգաշատ, որ ձգուած է վերնաբերդի արևելեան և հիւսիսային կողմերով։ Ստորին բերդում երևում են տնաբակեր և քարուկիր կիսաւեր եկեղեցի. իսկ վերնաբերդում, որ գրեթէ անառիկ է, երևում են քարուկիր շինութեանց հիմունքներն միայն և ջրաւազաններ։ Բերդումս չկայ ջուր, վասն որոյ խորագոյն ականով և խեցեղէն խողովակներով ջուր են բերած ի հնումն Կիլիլուան կոչուած առուակից մինչև ստորին բերդն, որից ամաններով փոխադրուած են վերնաբերդիս ջրաւազաններն։

Գ. ԿԱԾԱՐԵԹ ԴՂԵԱԿ. որ կայ Տաւուշ գիւղի հարաւային հանդէպ եղած սարի վերայ։ Սարիս բերդաբարձ մասն միապաղաղ և ապառաժ քար է, որի հարաւային և արևմտեան կողմերն վիմահերձ են. իսկ արևելեան և հիւսիսային կողմերն խիստ զառիվայր լանջեր։ Միապաղաղ քարաժայռիս գագաթի շուրջն պարսպուած է քարուկիր պատով և ձևացրած փոքրիկ դղեակ, որի երկարութիւնն է 50 մետր և լայնութիւնն 20։ Դղեկիս արևելեան մասում պատի ներսում կայ վիմափոր մի ջրաւազան, որի ջուրն բերուած է՝ ի պահանջել հարկին արևմտեան կողմից-ծգնաւորի աղբիւրից-խեցեղէն խողովակներով մինչև դղեկիս ստորոտն, որից և ջրաւազանս։ Երբեմն երբեմն ելնում են խողովակներից գերեզման փորելու ժամանակ, քանզի մօտ է սուրբ Գէորգ մատուռն և հանգստարանն. (տես Տաւուշ գիւղի շարքում)։ Վիմափոր քարայր ՝է դղեկիս տակն, որ մի մուտք միայն ունի հիւսիս-արևելեան կողմից։ Այցելուն ներս մտնելով՝ նախ տեսնում է մի փոքր քարայր, որից մի այլ մուտք տանում է վիմափոր քարայրն։ Այժմ հող լցուած է թէ առաջին և թէ երկրորդ մուտքն, վասն որոյ դժուարութեամբ է մուտ գործուում ներս։

Դ. ԴՈՒՆԿԵԱՆՑ ԲԵՐԴ. գտնուում է Տաւուշ գիւղից

Digitized by Google

վար Համանուն գետակի ձախ կողմում. Օքսուզլու Թրքաբնակ գիւղի մօտ մի բարձր բլրի գլխին։ Պարսպուած է սարիս վտանգաւոր կարծուած տեղերն և կիրճերն։ Ունի նշանաւոր ամրութիւն, բարձր դիրք, զուարճալի տեսարան և ջրամբարներ։ Ջուրն բերուած է ամաններով մօտակայ ջրեցն։

Ե. ՑԻՑ ՔԱՐ կամ ՆՈՐ-ԲԵՐԴ (61) Ձուաձև բարձրացած և միապաղաղ արձանացած ժայռ է, որի կատարը դղեակ ձևացրած են հնուց՝ պատելով հարկ եղած տեղերը։ Ջուր չկայ դղեկիս մէջ, երևի թէ բերած են մերձակայ աղբիւրեցն։ Դղեակս գտնուում է Վարագայ վանքի և Աշուղի գիւղի միջև եղած սեռի վերայ. ըստ նոր բաժանման սեռս գագաթնագիծն է սահման Շամշադին և Ղազախ գաւառների։

Զ. ՃՇԱՔԱՐ. Ռևազլու շինի արևելահարաւ կողմի բարձր քերձի մէջ կայ մի քարայրանման տեղ, որի մակերևութի տարածութիւնն մօտ երեք կալաչափ է։ Քարայրիս առաջքն պատուած է քարուկիր պատով և ձևացած անմատչելի բերդ, որ ունի մի դժուարատար, սանդղաձև և երկիւղալի կածան։ Այստեղ ևս չկայ ջուր, բայց երևի թէ սափորներով ջուր բերած և կարասների մէջ լցրած են։ Դղեակս կոչուում է և *Ծգնաւորի քար*. զի այստեղ կայ և երկու գերեզման (62)։

Է. ՂՐՋ-ՂԱԼԱ. գտնուում է մզոնից փոքր աւելի վերև Կարվանսարայից Աղստև գետի աջ կողմի բարձրութեան վերայ մի ժայռի գլխին, որ առանձնացած է իւր շրջապատից։ Կամենալով յարգել հանգուցեալ Մարտիրոս Սիմոնեանցի յիշատակը, զետեղում ենք այս տեղ նորա իսկ հետազօտութիւնը, որ տպուած է Ղըզ-ղալայիս մասին «Մեղու Հայ..» մէջ 1874 ամի 31 թուահամարում։ «Մենք հասանք բերդի պատերին և նորա միակ մուտքով, որ քարից ու կրից շինած կիսաւեր կամար էր և երկու կողմից մարտկոցներ և բուրջեր, ներս մտանք բերդը, բարձրացանք նորա ամենաբարձր կէտը..........., ժայռի գագաթին գտանւում է մի քառակուսի հրապարակ, որի երկարութիւնը.. և լայնութիւնն է մօտ 15 սաժէն.... մի ընդհանուր պարսպով շրջապատուած է այդ

հրապարակը... Պարսպի անկիւններում գտնվում են բոլորակ բուրջեր.... Ներսը գտնվում են մեծ և փոքր սենեակների աւերակներ, ամենը երկյարկ։ Դէպի հիւսիս գտնուող բուրջը չունէ, ոչինչ արհեստական մուտք.... մի աւերակ.. ընդարձակ սենեակ, որի չորս պատերը կանգնած էին առանց առաստաղի և.. երկյարկ էր եղած... ամենից մեծ սենեակի (մէջ) ներսը դուրս էին եկած մեծամեծ ծառեր։ Հարաւային կողմում գտնվում էին... երկու.. նեղ և ձիգ սենեակների աւերակ... երդիկի տակ գտանվում էր.:. մեծ ծառ, որ գլուխը դուրս էր հանել երդից... Այդ սենեակից մի դուռը տանում էր դէպի ներսի կամարակապ սենեակը, որ բացի այդ դռնից ոչինչ մուտք և երդիկ չունէր.... ժայռի մէջ փորած գտանվում էր.. մի երկայն սենեակ, որ ունէր մի մուտք... ժայռից կտրած սանդուխտ..։ դա պահպանվում էր ամբողջութեամբ, կային և մի քանի այլ շինութիւններ... կան և բաց դեղնագոյն սրբատաշ քարեր, որոնք գործ են դրուած դռների, երդիկների և կամարների համար։.... Ամբողջ մնացած շինութիւնների ոմանց ներսը գտանվում էր կամիր ներկ քսած. իսկ մէկի պատի վերայ մի տող գրուածքի տեղ էր, որ աւերվել էր, և միայն կարողացանք պարզ որոշել տողի սկզբի հայերէն տառերը «ԱԾ» (Աստուած)»։

Ը. ՏՆՔԱՐ կամ ՍՂՆԱԽԻ ՁՈՐ. Գտնուում է Թարսաչայի արևելեան և Աղստև գետակի աջ կողմում։ Ձորիս դիրքըն ընկած է դէպի արևելք, որի միջով հոսում է մի առուակ և թափուում Աղստևի մէջ։ Ձորիս աջ կողմում շինուած են վաղուց չոր քարով մեծ մեծ սենեակներ. կան և քարայրեր, որոց առաջի կողմերը ամրացրած են հնուց պատերով և ձևացրած մի մի ամրագին դղեակ։ Այս տեղերքումս ևս ամրանալով բազմաթիւ հայեր ազատ մնացած են Լեկզիների գերեվարութիւններից։ Աւելորդ է գովել ձորիս յարմարութիւնները—ամուր դիրք, ապահով պատսպարան, առատ փայտ, պատուական ջուր, ահարկու մուտք և սոսկալի նեղուց։

## ԺԹ. ՁԱՒԷ ԳԱՒԱՌ (Ղազախ)

Ա. ՊՕՂՈՍ-ՔԻԼԻՍԱ ԳԻՒՂ. Հիմնուած է Դիլիջանի հիւսիս-արեւմտեան կողմում, Աղստեւ գետակի ձախ կողմում մի լեռնալանջի վերայ. բնակիչք գաղթած են Երեւանի Արզնի և Կամրիս գիւղերից Հասան խանի ժամանակ. հողն արքունի, լեռնային և միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն—ցորեն, գարի, գարնանի, ոչխար. տաւար—պատուական օդն, ջուրն և կլիման, երկար կեանք 115 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, հնաշէն, կամարակապ. քահանայ մի։

Տուն 74, ար. 501, իգ. 408.

Գիւղումս կայ մէ միդասեան ուսումնարան, աշակերտ 25, վարժապետին տարեկան 300 րուբլի։

ՂՈՒՇ-ԴՈՂԱՆ կոչուած տեղում, գիւղիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի գիւղ և հանգստարան։

## ՁՈՒՏԱԿ-ՎԱՆՔ

Գտնուում է Պօղոս-քիլիսայի արեւմտեան կողմում երկու առուակների մէջ ընկած մի անտառապատ հովտում։ Երկու վանքեր են մօտ առ մօտ շինուած։

*Արեւելեան վանքն*[1]) կառուցեալ չորս կամարների վերայ, որոց գլխին բազմած է կաթուղիկէն, ունի չորս փոքր և մի աւագ խորան. ուղթ լուսամուտ, երկու խորհրդարան, մի դուռն արեւմտեան կողմից և երկու ճգնարան. 9 մետր 78 սանթիմ երկարութիւն, 7 մետր 57 սանթիմ լայնութիւն։ Գեղեցկաքանդակ խաչերով զարդարուած են երկու վերին և փոքր խորաններ և սոցա ժաղովրդահայեաց երեսներն։ Այժմ խոնարհուած է ամբողջ կաթուղիկէն, հարաւային լուսամտի շրջանակ անկիւնաքարերն, դրան սեմերն և գլխի քարն և բուսած են տանեաց վերայ ծառեր։ *Վանքիս հա-*

---

[1]) Արձանագրութիւնից երեւում է որ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ է անուանն։

Digitized by Google

*րաւային կողմում արտաքուստ*։

«Կամաւն Աստուծոյ ես Տալիթայս միաբանեցայ սուրբ Գրիգորիս. միաբանքս ետուն Ա. պատարագ 'ի տաւնի ծառազարդին. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»։

*Աւագ խորանի հիւսիսային կողմում ներքուստ*.

«Այս իմ գիր է Բէկիս և Բարինիս, որ գնեցաք զաչոյ խորանս հանապազ մեզ պատարագ. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

*Արեւմտեան վանք*. շինուած է այս եկեղեցու ձևով մի կամարի վերայ, որ ունի երկու փոքր և մի աւագ խորան չորս լուսամուտ և մի դուռն արևմտեան կողմից, 8 մետր 62 սանթիմ երկարութիւն, 6 մետր 40 սանթիմ լայնութիւն։ Ամբողջապէս կանգուն է վանքս և անվնաս. միայն բուսած են տանեաց վերայ ծառեր։

*Դրան ճակատակալ քարի վերայ*.

«ՌԾ. Հայոց . . ամիրութեան Լաչայի, 'ի տէրութեան . . խանին ես Հայրապետ առաջնորդ ուխտիս որ կոչի Պետրոսի վանս, շինեցի զսուրբ Աստուածածինս և յուսով կարգեցի զճրագալոյցն Բ. խորանն ինձ պատարագ առնել և Ա. իմ եղբաւրն Շմաւոնին և . . զամեն եկեղեցիս իմ ծնողացն… մակաց. կատարիչք գրոյս աւրհնեալ… խափանիչք դատապարտին.. մեղացս տէր է առաջի Աստուծոյ» (կէտադրեալ բառերն եղծուած են)։

*Հիւսիսային փոքր խորանի դրան վերայ*.

«Ի թվ. ՌԾԶ. ես Մայրացեալս շինեցի զխորանս 'ի հալալ արդեանց իմոց և առաջնորդք սորա ի տուն 'ի տարումն.. ժամ տեառնընդառաջին. խափանողքն դատին ի Տեառնէ»։

Digitized by Google

*Հարաւային փոքր խորանի դռնագլխին.*

«Յայսմ խորանի Ա. ժամ ի տաւնի սուրբ Սարգսին՝ Սարգսին արասցեն, զի նորա արդեամբք շինեցաւ խորանս, ով զժամս խափանէ, դատի ի Տեառնէ»: Կային արձանագրութիւններ և վանքիս արևելեան արտաքին կողմում. բայց մեծ մասամբ եղծուած, վասն որոյ թողինք:

Վանքերիս շուրջն լի է գերեզմաններով: Միաբանից սենեակներն շինուած են եղել գետնափոր, վիմափոր և փայտեայ: Իսկ շրջապարսպի հետքերն անգամ անկարելի եղաւ գտնել:

## ՄԱԹՈՍԻ ԳԻՒՂԱՏԵՂ.

Ջոխտակ վանքին հարաւային հանդէպ, մի առուի աջ կողմի բարձրութեան վերայ, մի կանաչազարդ սարահարթում, որի հարաւ-արևելեան ծայրումն է հանգստարանն և եկեղեցին, որ փոքր է և կառուցեալ մի կամարի վերայ: Վերից մինչև վար քանդուած է խորանի լուսամուտն իւր կողերի սպառերով միասին. և բուսած տանեաց վերայ ծառեր: Եկեղեցիս ունի և գաւիթ, որի երկարութիւնն ձգուած է հիւսիսից հարաւ մի միջնակամարով: Գաւթումս ամփոփուած են շատ ննջեցեալներ:

*Եկեղեցւոյ դռնագլխին վերայ,*

«Կամաւն Աստուծոյ (ես) տէր Յորդանան շինեցի զեկեղեցիս 'ի թվին ՈՂՁ. իշխանութեան Աւագին ողորմութեամբ և տրաւք Պղնձահանացն Աստուածածնի և առաջնորդութեամբ Պետրէի և Համազասպա, որք երկրպագէք, յիշեցէք ի Քրիստոս զԾնողք մեր զԾնողք և զՄարթա իւր և զՄխիթար, զՄենաւոս, զոր (դին) Նաթանաէլն Յորդանանա Հռիմսիմի....»: «Աստուած ողորմի Խաչատուրին» «Տէր Աստուած ողորմի Աղբաղին և Անդաւլին»: *Հարաւային սեմի վերայ.* «Ես Պետրէ և

Համազասպ համարեցաք զԾովքն. եդաք սահման ժողովուրդ Աստուածածնիս, ով որ խափանէ, դատի ի տեառնէ, ամէն»։

Եկեղեցուս հիւսիսային որմի մօտ արտաքուստ կայ խաչարձան, որի երկարութիւնն առանց պատուանդանի է 2 մետր 50 սանթիմ և լայնութիւնն 1 մետր 20 սանթիմ. որի վերայ քանդակուած է։

«Շնորհիւ Աստուծոյ ես Մխիթար և Արուեր (կանգնեցաք) սուրբ խաչս բարեխաւս մեզ Թվ. Զ.»։

Սուրբ *Սարգիս մատուռ*. Պօղոս Քեշիշայի արևմտեան կողմում մի տեսարանաւոր բլրի վերայ։

## ՀԱՂԱՐԾԻՆ ՎԱՆՔ (63),

Հիմնարկուած է Պօղոս-Քէշիշայի հիւսիսային կողմում, մի խոր ձորի ձախ լանջի հարթակի վերայ։ Վանքիս հարաւային ձորով հոսում է Հաղարծին վտակն, և արևելեան ձորով մեծ աղբիւրի ջուրն, որ դարձնում երկու ջրաղաց։ Երկու ջրերս միանալով վանքից փոքր ինչ վար խառնուում են Աղստևին։

Ա. ՎԱՆՔՍ, որ անուանուած է սուրբ Աստուածածին, շինուած է խաչաձև չորս *կամարների վերայ* սրբատաշ մոխրագոյն քարով, որոց վերայ բազմած է գեղեցկաձև կաթուղիկէն. ունի մի աւագ, երկու փոքր խորաններ, երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, հինգ լուսամուտ, (և մի զոյգ լուսամուտ մեծ խորանի ետև), երկու խորհրդարան, 14 մետր 50 սանթիմ երկարութիւն, 11 մետր լայնութիւն. (երկու փոքր խորանների դռներն բացուած են աւագ խորանի միջով)։

Վանքիս *հարաւային դռնագլխի վերայ՝* խոշոր գրերով.

«Թվ. ՇԻ.»։ Միւս կողմում «ՁԼ.»։ Դրանից արևելեան կողմում կայ մի գեղեցկաքանդակ խաչարձան պատուանդանով հանդերձ, որի մօտ մի քարի վերայ քանդակուած է երկու վեղարաւոր վերդապետների պատկերներ, որք փէլոն

Digitized by Google

ծածկած և բարձրացրած են Հաղարծին վանքիս կաղապարը։ Խաչարձանիս կից է մի մեծ և լայն տապանաքար, որն բաժանուած է միջից մի գծով. այս քարիս տակ ամփոփուած են երկու հոգևոր եղբարք, որք միացած են եղել հոգւով, սրտով, համամիտ և համակամ գործով։ Զոր օրինակ մի հոգւով բնակած են երկու մարմնոց մէջ կենդանութեամբ. նոյնպէս մի քարի տակ բնակած են մահուամբ երկու մարմնով։

*Ներքուստ տաճարիս հարաւային որմի վերայ.*

«Տնորհիւն Աստուծոյ ես Բէկս որդի Աշոտոյ յաղգէ Հարբանց և ամուսին իմ Բոբոնա և եղբայր իմ Սմբատ միաբանեցաք ի սուրբ ուխտս, որպէս և հայրս իմ և տվաք գինս չինութեան»։

Վանքս նորոգած են Թիփլիսեցի Չիթախեաններն. «Ես Թիֆլիզեցի Չիթայի որդի Թաղայ, որդի մահտեսի Սուլխանս և եղբայրն իմ Ձալն և մեր որդիքն Ստեփաննոսն և Թաղին և Փահրապատցի Խոճա Գուլին և իւր որդի Յարութիւն մեծաւ յուսով՝ որ առ Քրիստոս վերստին նորոգեցաք զՀաղարծինոյ զեկեղեցին զսուրբ Աստուածածինն և սրբոյն Գրիգորին՝ յիշատակ մեզ և համօրէն ննջեցելոց մերոց 'ի թվ. ՌճԼ. Հայոց»։

Վանքիս ունի և մեծ գաւիթ, որ շինուած է կաթնագոյն չէչ քարով և ունի 15 մետր 30 սանթիմ երկարութիւն, 13 մետր 82 սանթիմ լայնութիւն։ Ամբողջապէս խոնարհուած է գաւթիս գլուխն։

Բ. ՎԱՆՔ *Սուրբ Գրիգոր*, որ շինուած է մեծ վանքի հարաւային կողմում միևնոյն ձևով, բայց կաթնագոյն չէչ քարով և որ ունի չորս փոքր և մի աւագ խորան[1]), մի դուռն, ինն լուսամուտ, երկու խորհրդարան, մի կաթուղիկէ, 9 մետր երկարութիւն, 7 մետր 90 սանթիմ լայնութիւն։ Վանքս ունի հրաշալի գաւիթ, որ կառուցեալ է չորս

[1]) Բեմի մէջ տեղից է խորանս բարձրանալու սանդուղն։

Digitized by Google

միապաղաղ սիւների և տասներկու կիսասիւների վերայ։ Ատաստաղի մէջ տեղում բազմած է կամարների վերայ մի ութանկիւնի գմբէթ, որ ունի նոյն ձևով երդիկ։ Երկարութիւն հիւսիսից հարաւ 14 մետր 30 սանթիմ, լայնութիւն արևելից արևմուտք 11 մետր 50 սանթիմ։

*Դրան վերայ.*

«Կամաւ ամենակալին Աստուծոյ այս մեր գիր յիշատակի է և արձան մշտնջենաւոր որդոց մերոյն Սարգսին յազգէ Բագրատունեաց Իւանէի և Զաքարէի. յորժամ Նախախնամութիւնն Աստուծոյ եհաս յարարածս և ետ տիրել սեփհական ժառանգութեան նախնեաց մերոց, ետ 'ի ձեռս մեր յառաջ զանառիկ դղեակն զԱնբերդ և զԹագաւորանիստ քաղաքն Անի և ապա զամուրն Բջնի. զՄարանդ մինչև Գաւաղան[2]) 'ի Թավրէզ, 'ի Կարնոյ քաղաքէն մինչև 'ի Խլաթ, զՇաքի և զՇրուան, զԲարտա մինչև 'ի Պէլուկան և այլ բազումս իւրեանց սահմանաւքն, զոր աւելորդ համարեցաք յիշատակել։ Այլ և անքարկանալին Աստուած սիրեաց զԹագ պարծանաց գլխոյ իմոյ Զաքարիայն և կոչեաց առ ինքն, որոյ ձեռն եղև արիութիւն։ Եւ ես շինեցի 'ի մեր վանքս Հաղարծին ժամատուն վիմարդեան, կամարակապ 'ի դրան սուրբ Գրիգորիս և այգի յԵրևան ետու վասն յիշատակի եղբաւրն իմոյ. և պարտին սպասաւորք սորա զաւագ խորանի պատարագն Զաքարէի մատուցանել անխափան։ Կատարիչք գրոյս աւրհնեալ լինին յԱստուծոյ, ամէն»։

*Գաւթումս.*

«'Ի թուին ՈԾԵ. յաշխարհակալ տէրութեան Զաքարէի և Իւանէի, յառաջնորդութեան Ստեփաննոսի ես Խաղաթ որդի Սմբատա իմ ղեղն Քանաքեռ Սկանդարեանց զհողն գնեցի և 'ի Հաղարծինս ետու վասն իմ հոգոյս և վասն յերկարութեան

---

[2]) Գովզան գետ Պարսից, որ այժմ կոչուում է Կզլ-Օզան և որ հոսում է Պարսկաստանի հիւսիսային կողմից և թափուում Կասպից ծովի մէջ. (Դ. Թագ. ԺԷ. 6. և Ա. Մնաց. Ե. 26)։

Տաճանչի և Աւագին։ Եւ միաբանքս գծառղարդարին զերկրորդ գալստեան ժամն յինձ ետուն զամենայն եկեղեցեացս, ով զայ-գին ասոյց հանցէ կամ դիմ ժամն խափանէ, իմ մեղաց տէր է և Յուդայի մասնակից եղիցի»։

Գաւթիս հիւսիս-արևելեան կողմում երկու քարերի վերայ քանդակուած է մի թագաւորի և մի վարդապետի պատկերներ, որոց շրջապատում կայ գրութիւն, բայց գրեթէ անվերծանելի։

*Տաճարիս նորոգութեան մասին.*

«Ի թուին ՈԴ. 'ի Թագաւորութեան Ափխազաց Գաւրգեայ, 'ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորիսի ես Խաչատուր վարդապետ և Սուքեաս նորոգեցաք զսուրբ Գրիգորիս հրամանաւ Թագաւորին և իւր մեծ իշխանին Սարգսի ամիր սպասալարին՝ գհին և գնոր կազմութիւնս դրով եւ 'ի սուրբ Գրիգորս դայգին Միջնաշինին ջրին, զՏեառն խաչ Կոպալանից 'ի միջին զՔուրդ գեղանն, զԱբասաձորն, զՏանձուտն. և հրամայեաց Թագաւորն զսուրբ Խաչն տաւնն յիւր յիշատակ կատարել։ Արդ՝ որք հակառակ կան և հանել ջանան, քակեսցին տամբք և որդւովք և ազդայնովք. նզովեսցին 'ի վարձէ Աստուածածնէն և ՅԺԸ. հայրապետաց և ջնջեսցին յայսմ կենաց. ամէն»։

Գաւթիս մէջ կան շատ ամփոփեալներ։

Սուրբ Գրիգոր վանքիս Հարաւային կողմին կից շինուած է համակ սրբատաշ քարով Թագաւորաց Դամբարան մատուռն, որ ունի երկու խորան։ Հիւսիսային խորանի առաջ եղած տապանաքարի վերայ քանդակուած է։

«ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ»։ Իսկ Հարաւային.

«Հանգիստ.. ա. Թագաւորին Գագկայ»։ Խոնարհած է մատուռներիս գլուխներն և սոցա գաւթի թաղն։

Digitized by Google

Գ. ՎԱՆՔ *սուրբ Ստեփաննոս*. շինուած է սուրբ Գրիգոր վանքի արևելեան կողմում, խիստ մօտ. միևնոյն ձևով, ոճով և ճաշակով։ Փոքրիկ, գեղեցկագոյն և ուշագրաւ վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, ինն լուսամուտ, մի կաթուղիկէ, մի դուռն արևմտեան կողմից, 6 մետր 38 սանթիմ երկարութիւն, 5 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Կաթուղիկէին վերայ. «՚ի թվ. ՈՂԳ. իշխանութեան Իւանէի և առաջնորդութեան Խաչատուր վարդապետի ես Խալթ որդի Հարբայ շինեցի զեկեղեցիս վասն իմ հոգւոյս փրկութեան. և ամենայն միաբանքս զյայտնութեան ճրագալուցին ժամն ինձ հրամայեցին և զզատիկն որ անխափան առնեն. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

Հարաւային *որմի վերայ արտաքուստ*. «Ի թուին Հայոց ՌՃ..... աց Շահ Սուլէմանին որդոյ փոքր Շահ Ապասին և տէ... Ս. իշխանին և մէլիքութեան պարոն Շահնազարին և ՚ի հայրապետ.. Ջուղայեցւոյ և առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Յակովբայ եպիսկոպ.. տէր Պետրոս աշակերտի նորին. ողորմութեամբ Աստուծոյ մեք յետինքս ՚ի կրօնից Թիփլիզեցի հոգեջան որդիքս Պարոս, Մխիթարս, Սափարս և Ջալիս և որդիքն տէր Գասպարն, Հոգեջանն, Բաղդասարն և Մելքոնն զմեր հոգոյ արդեամբքն նորոգեցաք զսուբբ Ստեփաննոս, որ յոյժ խախտեալ էր՝ վասն փրկութեան հոգւոց մերոց և երկարութեան կենաց որդոց մերոց. և միաբանք սորա հաստատեցին յայտնութեան և յարութեան պատարագն զմեզ յիշատակել և մեք խոստացաք որ զկանթեղ սորին միշտ ՚ի վառ պահել որդէց որդի, կատարողքն օրհնին յԱստուծոյ ամէն»։

*Սեղանատուն*

Շինուած է Մեծ Վանքի փլած գաւթի հիւսիս-արևմտեան կողմում տաշուած չիչ քարով երկու սիւների և տասներկու կիսասիւների վերայ, այնպէս որ առաստաղն ունի չորս չորս խաչաձև կապուած կամարներ, երկու երդիկ, երկու լուսամուտ, մի դուռն, 23 մետր երկարութիւն, 10 մետր լայնութիւն.

Digitized by Google

*Հարաւային դրան վերայ*

«'Ի թվ. ՌՂէ. յառաջնորդութեան Յովհաննէսի վարդապետի շինեալ......[1])»։

Հարկ է յայտնել որ քանդուած խախտուած են վանքերիս սալկախներն և տեղ տեղ որմերից քարեր։ Բոլոր վանքերի շրջապատում կան գերեզմաններ։ Վանքս ունեցած է և շրջապարիսպ, որ այժմ խիստ աւերուած է, և միաբանից սենեակներ, որք հասած են եղել քայքայեալ դրութեան։ Մօտ տասն տարի է որ արժանապատիւ Պօղոս վարդապետ Մարգարեանցն աբիւն քրտինք թափելով ճգնում է պայծառացնել վանքս։ Նորոգել տուած է մի քանի խուցեր, որոց առջև տեսնեմը գտած է մի պղնձեայ աշագին կաթսայ, ապա փորելով գետինը հանած է նոյն կաթսայն և ղրկած Մայր աթոռի սուրբ Էջմիածնի տաճարի պահարան, որ ունի ձուլածոյ շինուածք 21 փութ և 26 ֆունտ ծանրութիւն, երեք հնաձև ոտք, չորս ամուր կանթեր և այս արձանագրութիւնը. «'Ի թ. ՌՁԱ. ես Զօսիմա քահանայ մեղապարտ անձամբ ստացա զքօբս յարդեանց իմոց. միաբանքս էտուն ինձ 'ի տարին Ա, ժամ Գորգա (Գէորգայ) դաւրավարի տանինի»։ Կաթսայի հետ գտած է նաև մի զանգակ, որ ունի 2 փութ 2 ֆունտ ծանրութիւն։ Արժանապատիւ Հայրսուրբն մաքառելով ամեն տեսակ նեղութեանց, աղքատութեանց և թշուառութեանց հետ պահպանում է վանքերս և ցարդ հազիւ կարողացած է վանքապատկան անել 5000 օրավար հողերից միայն 1105 օրավար (դեսեատին) հող, և այս ևս տակաւին վճռուած չէ վերջնականապէս։

Վանքերս, իւրեանց արևմտեան կողմում, ունին կալ, քարուկիր մարագ, կալապան և աշագին ցորենահոր. ունին նաև վարելահող, անտառ, խոտահարք, թոնրատուն, ջրաղաց, գոմ և անասուն։ Այս ամենի վերակենդանութիւնը պարտական ենք Պօղոս Հայր-սրբին։

Վանքիս արևելեան կողմում կայ երեք քարուկիր մա-

---

[1]) Եղծուած են բոլոր կէտադրեալ բառերն։

Digitized by Google

դս ունի կրկնապարիսպ, որոնց մին սարիս ստորոտով, որ սկսուած է սաստիկ զառիվայր հարաւային կողմից և հասած մինչև արևմտեան վիմահերձն. իսկ միւսն բրգաշատ, որ ձգուած է վերնաբերդի արևելեան և հիւսիսային կողմերով։ Ստորին բերդում երևում են տնաքակեր և քարուկեր կիսաւեր եկեղեցի. իսկ վերնաբերդում, որ գրեթէ անառիկ է, երևում են քարուկիր շինութեանց հիմունքներն միայն և ջրաւազաններ։ Բերդումս չկայ ջուր, վասն որոյ խորագոյն ականով և խեցեղէն խողովակներով ջուր են բերած ի հնում ն Կիլիլուան կոչուած առուակից մինչև ստորին բերդն, որից ամաններով փոխադրուած են վերնաբերդիս ջրաւազաններն։

Գ. ԿԱԾԱՐԵԹ ԴՂԵԱԿ. որ կայ Տաւուշ գիւղի հարաւային հանդէպ եղած սարի վերայ։ Սարիս բերդաքարձ մասն միապաղաղ և ապառաժ քար է, որի հարաւային և արևմտեան կողմերն վիմահերձ են. իսկ արևելեան և հիւսիսային կողմերն խիստ զառիվայր լանջեր։ Միապաղաղ քարաժայռիս գագաթի շուրջն պարսպուած է քարուկիր պատով և ձևացրած փոքրիկ դղեակ, որի երկարութիւնն է 50 մետր և լայնութիւնն 20։ Դղեկիս արևելեան մասում պատի ներսում կայ վիմափոր մի ջրաւազան, որի ջուրն բերուած է՝ ի պահանջել հարկին արևմտեան կողմից-ծգնաւորի աղբիւրից-խեցեղէն խողովակներով մինչև դղեկիս ստորոտն, որից և ջրաւազանս։ Երբեմն երբեմն ելնում են խողովակներից գերեզման փորելու ժամանակ, քանզի մօտ է սուրբ Գէորգ մատուռն և հանգստարանն. (տես Տաւուշ գիւղի շարքում)։ Վիմափոր քարայր է դղեկիս տակն, որ մի մուտք միայն ունի հիւսիս-արևելեան կողմից։ Այցելուն ներս մտնելով՝ նախ տեսնում է մի փոքր քարայր, որից մի այլ մուտք տանում է վիմափոր քարայրն։ Այժմ հող լցուած է թէ առաջին և թէ երկրորդ մուտքն, վասն որոյ դժուարութեամբ է մուտ գործուում ներս։

Դ. ԴՈՒՐԿԵԱՆՆԱՑ ԲԵՐԴ. գտնուում է Տաւուշ գիւղից

Digitized by Google

վար Համանուն գետակի ձախ կողմում. Օքսուզլու Թրքաբնակ գիւղի մօտ մի բարձր բլրի գլխին։ Պարսպուած է սաբիս վտանգաւոր կարծուած տեղերն և կիրճերն։ Ունի նշանաւոր ամրութիւն, բարձր դիրք, զուարճալի տեսարան և ջրամբարներ։ Ջուրն բերուած է ամաններով մօտակայ ջրից։

Ե. ՑԻՑ ՔԱՐ կամ ՆՈՐ-ԲԵՐԴ (61) Ձուաձև բարձրացած և միապաղաղ արձանացած ժայռ է, որի կատարը դղեակ ձևացրած են հնուց՝ պատելով հարկ եղած տեղերը։ Ջուր չկայ դղեկիս մէջ, երևի թէ բերած են մերձակայ աղբիւրից։ Դղեակս գտնուում է Վարագայ վանքի և Աշուղի գիւղի միջև եղած սեռի վերայ. ըստ նոր բաժանման սեռիս գագաթնագիծն է սահման Շամշադին և Ղազախ գաւառների։

Զ. ՃՇԱՔԱՐ. Ոևազլու շինի արևելահարաւ կողմի բարձր քերձի մէջ կայ մի քարայրանման տեղ, որի մակերևութի տարածութիւնն մօտ երեք կալաչափ է։ Քարայրիս առաջքն պատուած է քարուկիր պատով և ձևացած անմատչելի բերդ, որ ունի մի դժուարատար, սանդղաձև և երկիւղալի կածան։ Այստեղ ևս չկայ ջուր, բայց երևի թէ սափորներով ջուր բերած և կարասների մէջ լցրած են։ Դղեակս կոչուում է և *Ճգնաւորի քար*. զի այստեղ կայ և երկու գերեզման (62)։

Է. ՂԸԶ-ՂԱԼԱ. գտնուում է մղոնից փոքր աւելի վերև Կարվանսարայից Աղստև գետի աջ կողմի բարձրութեան վերայ մի ժայռի գլխին, որ առանձնացած է իւր շրջապատից։ Կամենալով յարգել Հանգուցեալ Մարտիրոս Սիմոնեանցի յիշատակը, զետեղում ենք այս տեղ նորա իսկ հետազօտութիւնը, որ տպուած է Ղըզ-ղալայիս մասին «Մեղու Հայ..» մէջ 1874 ամի 31 Թուահամարում։ «Մենք հասանք բերդի պատերին և նորա միակ մուտքով, որ քարից ու կրից շինած կիսաւեր կամար էր և երկու կողմից մարտկոցներ և բուրջեր, ներս մտանք բերդը, բարձրացանք նորա ամենաբարձր կէտը.........., ժայռի գագաթին գտանուում է մի քառակուսի հրապարակ, որի երկարութիւնը.. և լայնութիւնն է մօտ 15 սաժէն.... մի ընդհանուր պարսպով շրջապատուած է այդ

հրապարակը... Պարսպի անկիւններում գտնվում են բոլորակ բուրջեր.... Ներսը գտանվում են մեծ և փոքր սենեակների աւերակներ, ոմանք երկյարկ: Դէպի հիւսիս գտանուող բուրջը չունէ ոչինչ արհեստական մուտք.... մի աւերակ.. ընդարձակ սենեակ, որի չորս պատերը կանգնած էին առանց առաստաղի և.. երկյարկ էր եղած... ամենից մեծ սենեակի (մէջ) ներսը դուրս էին եկած մեծամեծ ծառեր: Հարաւային կողմում գտանվում էին... երկու.. նեղ և ձիգ սենեակների աւերակ... երդիկի տակ գտանվում էր... մեծ ծառ, որ գլուխը դուրս էր հանել երդից... Այդ սենեակից մի դուռը տանում էր դէպի ներսի կամարակապ սենեակը, որ բացի այդ դռնից ոչինչ մուտք և երդիկ չունէր.... ժայռի մէջ փորած գտանվում էր.. մի երկայն սենեակ, որ ունէր մի մուտք... ժայռից կտրած սանդուխտ..: դա պահպանվում էր ամբողջութեամբ, կային և մի քանի այլ շինութիւններ... կան և բաց դեղնագոյն սրբատաշ քարեր, որոնք գործ են դրուած դռների, երդիկների և կամարների համար:.... Ամբողջ մնացած շինութիւնների ոմանց ներսը գտանվում էր կամիր ներկ քսած. իսկ մէկի պատի վերայ մի տող գրուածքի տեղ էր, որ աւերվել էր, և միայն կարողացանք պարզ որոշել տողի սկզբի հայերէն տառերը «ԱԾ» (Աստուած)»:

Ը. ՏՆՔԱՐ կամ ՍՂՆԱԽԻ ՁՈՐ. Գտնուում է Թարսաչայի արևելեան և Աղստև գետակի աջ կողմում: Ձորիս դիրքըն ընկած է դէպի արևելք, որի միջով հոսում է մի առուակ և թափուում Աղստևի մէջ: Ձորիս աջ կողմում շինուած են վաղուց չոր քարով մեծ մեծ սենեակներ. կան և քարայրեր, որոց առաջի կողմերը ամրացրած են հնուց պատերով և ձևացրած մի մի ամրագին դղեակ: Այս տեղերքումս ես ամրանալով բազմաթիւ հայեր ազատ մնացած են Լեկզիների գերեվարութիւններից: Աւելորդ է գովել ձորիս յարմարութիւնները—ամուր դիրք, ապահով պատսպարան, առատ փայտ, պատուական ջուր, ահարկու մուտք և սոսկալի նեղուց:

Digitized by Google

## ԺԹ. ՋԱՒԷ ԳԱՒԱՌ (*Ղազախ*)

Ա. ՊՕՂՈՍ-ՔԻԼԻՍԱ ԳԻՒՂ. *Հիմնուած է Դիլիջանի հիւսիս-արեւմտեան կողմում, Աղստեւ գետակի ձախ կողմում մի լեռնալանջի վերայ. բնակիչք գաղթած են Երեւանի Արզնի եւ Կամրիս գիւղերից Հասան խանի ժամանակ. հողն արքունի, լեռնային եւ միջակ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն—ցորեն, գարի, գարնանի, ոչխար. տաւար—պատուական օդն, ջուրն եւ կլիման, երկար կեանք* 115 *տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, հնաշէն, կամարակապ. քահանայ մի։*

*Ծուխ* 74, *ար.* 501, *իգ.* 408.

*Գիւղումս կայ մի միդասեան ուսումնարան, աշակերտ* 25, *վարժապետին տարեկան* 300 *րուբլի։*

ՂՈՒՇ-ԴՈՂԱՆ *կոչուած տեղում, գիւղիս հիւսիսային կողմում կայ աւերակ եկեղեցի գիւղ եւ հանգստարան։*

### ՋՈԽՏԱԿ-ՎԱՆՔ

*Գտնուում է Պօղոս-քիլիսայի արեւմտեան կողմում երկու առուակների մէջ ընկած մի անտառապատ հովտում։ Երկու վանքեր են մօտ առ մօտ շինուած։*

*Արեւելեան վանքն*[1]) *կառուցեալ չորս կամարների վերայ, որոց գլխին բազմած է կաթուղիկէն, ունի չորս փոքր եւ մի աւագ խորան. ութ լուսամուտ, երկու խորհրդարան, մի դուռն արեւմտեան կողմից եւ երկու ճգնարան.* 9 *մետր* 78 *սանթիմ երկարութիւն,* 7 *մետր* 57 *սանթիմ լայնութիւն։ Գեղեցկաքանդակ խաչերով զարդարուած են երկու վերին եւ փոքր խորաններ եւ սոցա ժողովրդահայեաց երեսներն։ Այժմ խոնարհուած է ամբողջ կաթուղիկէն, հարաւային լուսամտի շրջանակ անկիւնաքարերն, դրան սեմերն եւ գլխի քարն եւ բուսած են տանեաց վերայ ծառեր։ Վանքիս հա-*

[1]) *Արձանագրութիւնից երեւում է որ* ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ *է անունն։*

Digitized by Google

*Հարաւային կողմում արտաքուստ։*

«Կամաւն Աստուծոյ ես Տալիթայս միաբանեցայ սուրբ Գրիգորիս. միաբանքս ետուն Ա. պատարագ 'ի տաւնի ծառազարդին. կատարիչքն աւր՚նին յԱստուծոյ»։

*Աւագ խորանի հիւսիսային կողմում ներքուստ.*

«Այս իմ գիր է Բէկիս և Բարինիս, որ գնեցաք զաչոյ խորանս հանապազ մեզ պատարագ. կատարիչք գրոյս աւր՚նին յԱստուծոյ»։

*Արեւմտեան վանք.* շինուած է այս եկեղեցու ձեւով մի կամարի վերայ, որ ունի երկու փոքր և մի աւագ խորան չորս լուսամուտ և մի դուռն արեւմտեան կողմից, 8 մետր 62 սանթիմ երկարութիւն, 6 մետր 40 սանթիմ լայնութիւն։ Ամբողջապէս կանգուն է վանքս և անվնաս. միայն բուսած են տանեաց վերայ ծառեր։

*Դրան ճակատակալ քարի վերայ.*

«ՌԾ. Հայոց . . ամիրութեան Լաշայի, 'ի տէրութեան . . խանին ես Հայրապետ առաջնորդ ուխտիս որ կոչի Պետրոսի վանս, շինեցի զսուրբ Աստուածածինս և յուսով կարգեցի զճրագալոյցն Բ. խորանն ինձ պատարագ առնել և Ա. իմ եղբաւրն Շմաւոնին և . . զամեն եկեղեցիս իմ ծնողացն... մակաց. կատարիչք դրոյս աւր՚նեալ... խափանիչք դատապարտին.. մեղացս տէր է առաջի Աստուծոյ» (կէտադրեալ բառերն եղծուած են)։

*Հիւսիսային փոքր խորանի դրան վերայ.*

«Ի թվ. ՌԾԶ. ես Մայրացեալս շինեցի զխորանս 'ի հալալ արդեանց իմոց և առաջնորդք սորա ի տուն 'ի տարումն.. ժամ տեառնընդառաջին. խափանողքն դատին ի Տեառնէ»։

*Հարաւային փոքր խորանի դրնագլխին.*

«Ցայսմ խորանի Ա. ժամ ի տանի սուրբ Սարգսին՝ Սարգսին արասցեն, զի նորա արդեամբք շինեցաւ խորանս, ով զժամս խափանէ, դատի ի Տեառնէ»։ Կային արձանագրութիւններ և վանքիս արևելեան արտաքին կողմում. բայց մեծ մասամբ եղծուած, վասն որոյ թողինք։

Վանքերիս շուրջն լի է գերեզմաններով։ Միաբանից սենեակներն շինուած են եղել գետնափոր, վիմափոր և փայտեայ։ Իսկ շրջապարսպի հետքերն անգամ անկարելի եղաւ գտնել։

## ՄԱԹՈՍԻ ԳԻՒՂԱՏԵՂ.

Զոխտակ վանքին հարաւային հանդէպ, մի առուի աջ կողմի բարձրութեան վերայ, մի կանաչազարդ սարահարթում, որի հարաւ-արևելեան ծայրումն է հանգստարանն և եկեղեցին, որ փոքր է և կառուցեալ մի կամարի վերայ։ Վերից մինչև վար քանդուած է խորանի լուսամուտն իւր կողերի սպառերով միասին. և բուսած տանեաց վերայ ծառեր։ Եկեղեցիս ունի և գաւիթ, որի երկարութիւնն ձգուած է հիւսիսից հարաւ մի միջնակամարով։ Գաւթումս ամփոփուած են շատ ննջեցեալներ։

*Եկեղեցւոյ դրնագլխին վերայ,*

«Կամաւն Աստուծոյ (ես) տէր Յորդանան շինեցի զեկեղեցիս 'ի թվին ՈՂՁ. իշխանութեան Աւագին ողորմութեամբ և տրաւք Պղնձահանացն Աստուածածնի և առաջնորդութեամբ Պետրէի և Համազասպա, որք երկրպագէք, յիշեցէք ի Քրիստոս զծնողք մեր զենոք և զՄարթա իւր և զՄխիթար, զՄենաւոս, զոր (դին) Նաթանաէլն Յորդանանա Հոռիմսիմի....»։ «Աստուած ողորմի Խաչատուրին» «Տէր Աստուած ողորմի Աղբաղին և Անդաւին»։ *Հարաւային սեմի վերայ.* «Ես Պետրէ և

Համազասպ համարեցաք զծովքն. եդաք սահման ժողովուրդ Աստուածածնիս, ով որ խափանէ, դատի ի տեառնէ, ամէն»։

Եկեղեցուս հիւսիսային որմի մօտ արտաքուստ կայ խաչարձան, որի երկարութիւնն առանց պատուանդանի է 2 մետր 50 սանթիմ և լայնութիւնն 1 մետր 20 սանթիմ. որի վերայ քանդակուած է։

«Շնորհիւ Աստուծոյ ես Մխիթար և Արուեր (կանգնեցաք) սուրբ խաչս բարեխաւս մեզ Թվ. Զ.»։

Սուրբ *Սարգիս մատուռ*. Պօղոս Քեշիշայի արևմտեան կողմում մի տեսարանաւոր բլրի վերայ։

## ՀԱՂԱՐԾԻՆ ՎԱՆՔ (63).

Հիմնարկուած է Պօղոս-Քիլիսայի հիւսիսային կողմում, մի խոր ձորի ձախ լանջի հարթակի վերայ։ Վանքիս հարաւային ձորով հոսում է Հաղարծին վտակն, և արևելեան ձորով մեծ աղբիւրի ջուրն, որ դարձնում երկու ջրաղաց։ Երկու ջրերս միանալով վանքից փոքր ինչ վար խառնուում են Աղստևին։

Ա. ՎԱՆՔՍ, որ անուանուած է սուրբ Աստուածածին, շինուած է խաչաձև չորս *կամարների վերայ* սրբատաշ մոխրագոյն քարով, որոց վերայ բազմած է գեղեցկաձև կաթուղիկէն. ունի մի աւագ, երկու փոքր խորաններ, երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, հինգ լուսամուտ, (և մի զոյգ լուսամուտ մեծ խորանի ետև), երկու խորհրդարան, 14 մետր 50 սանթիմ երկարութիւն, 11 մետր լայնութիւն. (երկու փոքր խորանների դռներն բացուած են աւագ խորանի միջով)։

Վանքիս *հարաւային դռնագլխի վերայ՝* խոշոր գրերով.

«Թվ. ՇԻ.»։ Միւս կողմում «ՁԼ.»։ Դրանս արևելեան կողմում կայ մի գեղեցկաքանդակ խաչարձան պատուանդանով հանդերձ, որի մօտ մի քարի վերայ քանդակուած է երկու վեղարաւոր վերդապետների պատկերներ, որք փիլոն

Digitized by Google

ծածկած և բարձրացրած են Հաղարծին վանքիս կաղապարը։ Խաչարձանիս կից է մի մեծ և լայն տապանաքար, որն բաժանուած է միջից մի գծով. այս քարիս տակ ամփոփուած են երկու հոգևոր եղբարք, որք միացած են եղել հոգւով, սրտով, համամիտ և համակամ գործով։ Զոր օրինակ մի հոգւով բնակած են երկու մարմնոց մէջ կենդանութեամբ. նոյնպէս մի քարի տակ բնակած են մահուամբ երկու մարմնով։

*Ներքուստ տաճարիս հարաւային որմի վերայ.*

«Շնորհիւն Աստուծոյ ես Բէկս որդի Աշոտոյ յազգէ Հարբանից և ամուսին իմ Բոքոնա և եղբայր իմ Սմբատ միաբանեցաք ի սուրբ ուխտս, որպէս և հայրս իմ և տվաք գինս չինութեան»։

Վանքս նորոգած են Թիփլիսեցի Ջիթախեանններն. «ես Թիֆլիզեցի Ջիթայի որդի Թաղայ, որդի մահտեսի Սուլխանս և եղբայրն իմ Ջալն և մեր որդիքն Ստեփաննոսն և Թալին և Փահրապատցի Խոճա Գուլին և իւր որդի Յարութիւն մեծաւ յուսով՝ որ առ Քրիստոս վերստին նորոգեցաք զՀաղարծինոյ զեկեղեցիսն զսուրբ Աստուածածինն և սրբոյն Գրիգորին՝ յիշատակ մեզ և համօրէն ննջեցելոց մերոց 'ի թվ. ՌՃԼ. Հայոց»։

Վանքիս ունի և մեծ գաւիթ, որ շինուած է կաթնագոյն չէչ քարով և ունի 15 մետր 30 սանթիմ երկարութիւն, 13 մետր 82 սանթիմ լայնութիւն։ Ամբողջապէս խոնարհուած է գաւթիս գլուխն։

Բ. ՎԱՆՔ *Սուրբ Գրիգոր*, որ շինուած է մեծ վանքի հարաւային կողմում միևնոյն ձևով, բայց կաթնագոյն չէչ քարով և որ ունի չորս փոքր և մի աւագ խորան[1]), մի դուռն, ինն լուսամուտ, երկու խորհրդարան, մի կաթուղիկէ, 9 մետր երկարութիւն, 7 մետր 90 սանթիմ լայնութիւն։ Վանքս ունի հրաշալի գաւիթ, որ կառուցեալ է չորս

[1]) Բեմի մէջ տեղից է խորանս բարձրանալու սանդուղն։

միապաղաղ սիւների և տասներկու կիսասիւների վերայ։ Աւաստաղի մէջ տեղում բազմած է կամարների վերայ մի ութանկիւնի գմբէթ, որ ունի նոյն ձևով երդիկ։ Երկարութիւն հիւսիսից հարաւ 14 մետր 30 սանթիմ, լայնութիւն արևելից արևմուտք 11 մետր 50 սանթիմ։

Դրան վերայ.

«Կամաւ ամենակալին Աստուծոյ այս մեր դիր յիշատակի է և արձան մշտնջենաւոր որդոց մերոց Սարգսին յազգէ Բագրատունեան Իւանէի և Զաքարէի. յորժամ նախախնամութիւնն Աստուծոյ եհաս յարարածս և ետ տիրել սեփհական ժառանգութեան նախնեաց մերոց, ետ 'ի ձեռս մեր յառաջ զանառիկ դղեակն զԱնբերդ և զԹագաւորանիստ քաղաքն Անի և ապա զամուրն Բջնի. զՄարանդ մինչև Գաւազան[2]) 'ի Թավրէզ, 'ի Կարնոյ քաղաքէն մինչև 'ի Խլաթ, զՇաքի և զՇրուան, զԲարտա մինչև 'ի Պէլուկան և այլ բազումս իւրեանց սահմանաւքն, զոր աւելորդ համարեցաք յիշատակել։ Այլ և անբարկանալին Աստուած սիրեաց զԹադ պարծանաց գլխոյ իմոյ Զաքարիայն և կոչեաց առ ինքն, որոյ ձեռն եղև ալիութիւն։ Եւ ես շինեցի 'ի մեր վանքս Հաղարծին ժամատուն վիմարդեան, կամարակապ 'ի դրան սուրբ Գրիգորիս և այգի յԵրևան ետու վասն յիշատակի եղբաւրն իմոյ. և պարտին սպասաւորք սորա զաւագ խորանի սպատարագն Զաքարէի մատուցանել անխափան։ Կատարիչք գրոյս աւրհնեալ լինին յԱստուծոյ, ամէն»։

Գաւթումս.

«'Ի թուին ՈԾԵ. յաշխարհակալ տէրութեան Զաքարէի և Իւանէի, յառաջնորդութեան Ստեփաննոսի ես Խաղաթ որդի Սմբատա իմ ղեպն Քանաքեռ Սկանդարեանց զհողն գնեցի և 'ի Հաղարծինս ետու վասն իմ հոգոյս և վասն յերկարութեան

---

[2]) Գովզան գետ Պարսից, որ այժմ կոչուում է Կզլ-Օզան և որ հոսում է Պարսկաստանի հիւսիսային կողմից և թափուում Կասպից ծովի մէջ. (Դ. Թադ. ժէ. 6. և Ա. Մնաց. Ե. 26)։

Շահանշի և Աւագին։ Եւ միաբանքս գծառգարգարին զերկրորդ գալստեան ժամն ինձ ետուն զամենայն եկեղեցեացս, ով գայ֊ գին ասմից հանցէ կամ զիմ ժամն խափանէ, իմ մեղաց տէր է և Յուդայի մասնակից եղիցի»։

Գաւթիս հիւսիս-արեւելեան կողմում երկու քարերի վե֊ րայ քանդակուած է մի թագաւորի և մի վարդապետի պատկերներ, որոց շրջապատում կայ գրութիւն, բայց գրե֊ թէ անվերծանելի։

*Տաճարիս նորոգութեան մասին.*

«Ի թուին ՈԴ. 'ի Թագաւորութեան Ափխազաց Գաւր գեայ, 'ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորիսի ես Խաչատուր վարդապետ և Սուքեաս նորոգեցաք զսուրբ Գրի֊ գորիս հրամանաւ թագաւորին և իւր մեծ իշխանին Սարգսի ամիր սպասալարին՝ զհին և զնոր կազմութիւնս գրով ետ 'ի սուրբ Գրիգորս զայգին Միջնաշինին ջրին, զՏեառն խաչ հո֊ պավանից 'ի միջին զՔուրդ գեղանն, զԱբասաձորն, զՏանձու֊ տն. և հրամայեաց թագաւորն զսուրբ Խաչն տաւնն յիւր յի֊ շատակ կատարել։ Արդ՝ որք հակառակ կան և հանել ջանան, քակեսցին տամբք և որդւովք և ազգայնովք. նզովեսցին 'ի վարձէ Աստուածածնէն և ՅԺԸ. հայրապետաց և ջնջեսցին յայսմ կենաց. ամէն»։

Գաւթիս մէջ կան շատ ամփոփեալներ։

Սուրբ Գրիգոր վանքիս հարաւային կողմին կից շինուած է համակ սրբատաշ քարով թագաւորաց Դամբարան մատուռն, որ ունի երկու խորան։ Հիւսիսային խորանի առաջ եղած տապանաքարի վերայ քանդակուած է։

«ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ»։ Իսկ հարաւային.

«Հանգիստ.. ա. թագաւորին Գագկայ»։ Խոնարհած է մատուռներիս գլուխներն և սոցա գաւթի թաղն։

Digitized by Google

Գ. ՎԱՆՔ *սուրբ Ստեփաննոս*. շինուած է սուրբ Գրիգոր վանքի արևելեան կողմում, խիստ մօտ. միևնոյն ձևով, ոճով և ճաշակով։ Փոքրիկ, գեղեցկագոյն և ուշագրաւ վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, ինն լուսամուտ, մի կաթուղիկէ, մի դուռն արևմտեան կողմից, 6 մետր 38 սանթիմ երկարութիւն, 5 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Կաթուղիկէին վերայ. «՚ի թվ. ՈՂԳ. իշխանութեան Իւանէի և առաջնորդութեան Խաչատուր վարդապետի ես Խայլթ որդի Հարբայ շինեցի զեկեղեցիս վասն իմ հոգւոյս փրկութեան. և ամենայն միաբանքս զյայտնութեան ճրագալուցին ժամն ինձ հրամայեցին և զզատիկն որ անխափան առնեն. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

Հարաւային *որմի վերայ արտաքուստ*. «Ի թուին Հայոց ՌՃ..... աց Շահ Սուլէմանին որդոյ փոքր Շահ Աղասին և տէ... Ս. իշխանին և մէլիքութեան պարոն ՇահՆազարին և ՚ի հայրապետ.. Զուգայեցւոյ և առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Յակովբայ եպիսկոպ.. տէր Պետրոս աշակերտի նորին. ողորմութեամբ Աստուծոյ մեք յետինքս ՚ի կրօնից Թիփլիզեցի հոգեջան որդիքս Պարոս, Մխիթարս, Սափարս և Զալիս և որդիքն տէր Գասպարն, Հոգեջանն, Բաղդասարն և Մելքոնն զմեր հոգոյ արդեամբքն նորոգեցաք զսուրբ Ստեփաննոս, որ յոյժ խախտեալ էր՝ վասն փրկութեան հոգւոց մերոց և երկարութեան կենաց որդոց մերոց. և միաբանք սորա հաստատեցին յայտնութեան և յարութեան պատարագն զմեզ յիշատակել և մեք խոստացաք որ զկանթեղ սորին միշտ ՚ի վառ պահել որդէց որդի, կատարողքն օրհնին յԱստուծոյ ամէն»։

*Սեղանատուն*

Շինուած է Մեծ Վանքի փլած գաւթի հիւսիս-արևմտեան կողմում տաշուած չէչ քարով երկու սիւների և տասներկու կիսասիւների վերայ, այնպէս որ առաստաղն ունի չորս չորս խաչաձև կապուած կամարներ, երկու երդիկ, երկու լուսամուտ, մի դուռն, 23 մետր երկարութիւն, 10 մետր լայնութիւն.

Digitized by Google

*Հարաւային դրան վերայ*

«Ի թվ. ՌՂԷ. յառաջնորդութեան Յովհաննէսի վարդապետի շինեալ......[1])»։

Հարկ է յայտնել որ քանդուած խախտուած են վանքերիս սալկախներն և տեղ տեղ որմերից քարեր։ Բոլոր վանքերի շրջապատում կան գերեզմաններ։ Վանքս ունեցած է և շրջապարիսպ, որ այժմ իսպառ աւերուած է, և միաբանից սենեակներ, որք հասած են եղել քայքայեալ դրութեան։ Մօտ տասն տարի է որ արժանապատիւ Պօղոս վարդապետ Մարգարեանցն արիւն քրտինք թափելով ճգնում է պայծառացնել վանքերս։ Նորոգել տուած է մի քանի խուցեր, որոց առջև *տեսլեամբ* գտած է մի պղնձեայ ահագին կաթսայ, ապա փորելով գետինը հանած է նոյն կաթսայն և դրկած Մայր աթոռի սուրբ Էջմիածնի տաճարի պահարան, որ ունի ձուլածոյ շինուածք 21 փութ և 26 ֆունտ ծանրութիւն, երեք հնաձև ոտք, չորս ամուր կանթեր և այս արձանագրութիւնը. «Ի թ. ՌՁԱ. ես Զօսիմա քահանայ մեղապարտ անձամբ ստացայ զքոբս յարդեանց իմոց. միաբանքս էտուն ինձ 'ի տարին Ա, ժամ Գուրգա (Գէորգայ) ղուլբալարի տաւնին»։ Կաթսայի հետ գտած է նաև մի զանգակ, որ ունի 2 փութ 2 ֆունտ ծանրութիւն։ Արժանապատիւ Հայր-սուրբն մաքառելով ամեն տեսակ նեղութեանց, աղքատութեանց և թշուառութեանց հետ պահպանում է վանքերս և ցարդ հազիւ կարողացած է վանքապատկան անել 5000 օրավար հողերից միայն 1105 օրավար (դեսեատին) հող, և այս ևս տակաւին վճռուած չէ վերջնականապէս։

Վանքերս, իւրեանց արևմտեան կողմում, ունին կալ, քարուկիր մարագ, կալապան և ահագին ցորենահոր. ունին նաև վարելահող, անտառ, խոտահարք, թոնրատուն, ջրաղաց, գոմ և անասուն։ Այս ամենի վերակենդանութիւնը պարտական ենք Պօղոս Հայր-սրբին։

Վանքիս արևելեան կողմում կայ երեք քարուկիր մա-

[1]) Եղծուած են բոլոր կէտադրեալ բառերն։

Digitized by Google

տուռ։—Կիսաւեր է Ա. մատուռն, որ շինուած է մի միապաղաղ քարի վերայ։

Բ. Մատուռն փոքրիկ է և ունի գաւիթ։

Գ. Մատրան, որ նոյնպէս ունի գաւիթ, փլած է թաղըն։ Երևի թէ յատուկ գամբարաններ եղած են մատուռներս, որոց գաւիթներում և շրջապատում կան գերեզմաններ։—շատ հեռի չեն վանքերիս քարահանքերն։

*Վանքերիս շրջապատներում*

*Խազինա-քար*. վիմահերձ ապառաժ քարայր, որ գտնուում է վանուցս հիւսիս արևմտեան կողմում։ Վիմահերձս իւր հիւսիսային կողմով ունեցած է միայն մի դժուարատար մուտք, որ աւերուելով ժամանակի մաշիչ բռնութիւնից, այժմ եղած է անմատչելի։ Աւանդաբար ասում են թէ *վանքիս զանձն պահուած է քարայրումս:* Մի քանի տարի առաջ Լոռիցի ոմն երիտասարդ *Դալլաք—Ցովսէփ* անուն կտրում է երկար և բազմաճղի ծառեր, շարում քերձի ճակատին, բարձրանալով վերելակ ճղներով մտնում ներս և տեսնում որ Խազինաքար ասուածն ոչ այլ ինչ է, եթէ ոչ մի *քարայր*, որի առաջի բաց կողմը քարուկիր պատով պատած են ժամանակաւ և ձևացրած մի փոքրիկ բերդակ։ Նոյն դալլաքն (սափրիչ) հանած է այրիս միջից գորգի, կարպետի և այլ բրդեղէն կարասեաց փտած մանրուքներ։ Քարայրիս վերևում քերձի գլխին կայ մի խորագոյն *հոր*, որի բերանի լայնութիւնն մօտ մի մետր է։ Ծատերն կարծում են թէ հորս հաղորդակցութիւն ունի քարայրին հետ և գուցէ մի ժամանակ հորովս ել և էջ արած լինին մարդիկ։

*Մեծ—աղբիւր*. Քարայրիս ստորոտից բղխում է յորդառատ ակն, որ բանեցնում է երկու ջրաղաց։

*Անյայտացած ջերմուկ*. Պատմում են թէ տաք ջուր եղած է վանուցս արևմտեան կողմում. բայց վանքերս անմարդաբնակ մնալուց յետոյ՝ բնակում են սրբավայրերումս մահմետականներ, որք անյայտացնում են *տաք ջուրդ*՝ կաս-

Digitized by Google

կածելով թէ ջրին պատճառաւ քրիստոնեայք շինութիւններ կը շինեն ջրին մօտ և իւրեանց ձեռքերից կը խլուին շատ բարիքներ։ Մի քանի տարի առաջ մի խոզարած տեսնում է որ իւր խոզերից մին ընկաւ մի փոքրիկ լճակի մէջ, իսկոյն աղիողորմ խանչեց խոզն և առժամայն թափուեցան խոզին մազերն։ Խոզարածն փորձելու համար ձեռնը մօտեցնում է ջրին և իսկոյն զգում որ սարսափելի տաք է այն։ Խոզարածս խոստանում է ցոյց տալ լճակը արժ. Պօղոս վարդապետին, բայց անսպասելի մահուամբ վախճանուում է և վերստին անյայտ է մնում ջերմկի տեղն։

*Աւերակ Հաղարծին գիւղ.* Վանքերիցս քառորդ մղոնաչափ վար, ճանապարհի վերայ, Հաղարծին վտակի ձախ ափին է գիւղի աւերակն, ուր կայ և հանգստարան և կործանեալ եկեղեցի։

Բ. ՆՈՐ-ՏԱՐ-ԽԱՉ ԳԻՒՂ. Հիմնուած է Հաղարծին աւերակից մղոնաչափ վար Աղստև գետակի ձախ ափի լանջի վերայ. բնակիչք նախ Ջրաբերդի գիւղերից տեղափոխուած են Հաչա-ջուր, ապա Նոր-Տար-Խաչ գիւղս. հողն արքունի և սակաւ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն. բարեխառն օդն, կլիման, և անվնաս ջուրն. երկար կեանք 80—90 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 55, ար. 504, իգ. 483.

*Հախխախլու* կոչուած տեղում, որ բաւական վար է Նոր-Տար-Խաչից, կայ աւերակ գիւղատեղի, կանգուն մատուռ և հանգստարան. այժմ մահմետականաբնակ է։

Գ. ՔՐԴԵՒԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Կայենի[1]) լեռնաբազուկների մէկի հարաւահայեաց լանջի վերայ, բնակիչք նախ Արցախի գաւառներից տեղափոխուած են Սև—քար գիւղն,

---

[1]) Հայերէն Կայենի սար (տաճ. Դալի դաղ) է կոչուում լեռս, որ կայ Նոր-Տար-Խաչի հիւսիսային կողմում և ունի 8741 ոտք բարձրութիւն։ Ցէրն մի՛ արասցէ, եթէ շրջակայ գաւառներումս կարկուտ իջնելու լինի, փորձով հաստատուած է, որ կարկուտն նախ գոյանում է սարիս վերայ դիզուած ամպերի բովի մէջ, թերևս այս վատ յատկութեանց համար անուանած են ԿԱՅԵՆԻ ՍԱՐ։

Digitized by Google

տպա այստեղ. հող, արքունի, հացատու, բայց բազմիցս կարկտահար. տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 110 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին։

Ծուխ 32, ար. 255, իգ. 233.

Դ. ԹԱԼԱ ԳԻՒՂ. Շինուած է Աղստև գետակի ձախ կողմում, մի սարի ստորոտում. բնակիչք տեղափոխուած են Խաչէն և Ջրաբերդ գաւառներից. հողն արքունի. տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80 տարի, եկեղեցին սուրբ Նշան. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 40, ար. 268, իգ. 230.

Ե. ԽԱԻԱՐԱՁՈՐ շէն (Ղարանլուղ դերէ). Հիմնաւած է նոյն սարի հիւսիսային կողմի խոր ձորի բերանի հովտում, բնակիչք տեղափոխուած Արցախի նոյն գաւառներից. հողն արքունի, տեղական բերքերն՝ խաղող. թութ, ոչխար, տաւար, խոզ. վատառողջ օդն և կլիման, երկար կեանք 55—60 տարի, եկեղեցին սուր Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Հաչա-ջրից։

Ծուխ 15, ար. 82, իգ. 67.

Զ. ՆԵՐՔԻՆ-ԱՂԴԱՆ ՇԷՆ. Հիմնուած է Աղստև գետի ձախ կողմում. խճուղու գլխին. բնակիչք փոքր մասամբ բնիկ. հողն արքունի և նուազ բարեբեր, տեղական բերքերն նոյն, վնասակար ամրան օդն և կլիման. երկար կեանք 54 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին. քահանան գալիս է Թալայից։

Ծուխ 20, ար. 127, իգ. 100.

Է. ՆՈՐ-ՀԱՁԱ-ՋՈՒՐ ԳԻՒՂ (Աչա-սու) Հիմնարկուած է նոյն գետակի ձախ կողմում, երկու առուակներ մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, իսկ փոքր մասն տեղափոխուած Արցախի յիշեալ գաւառներից. հողն արքունի և բարեբեր, գինեէտ և ուրեք ուրեք ջրարբի. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն, երկար

կեանք 80—85 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին. նորաշէն, կառուցեալ չորս սիւների վերայ. երկարութիւնն 21 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 13 մետր 25 սանթիմ. քահանայ երկու։ Եկեղեցումս կայ մի ձեռագիր յայսմաւուրք, բայց թափուած են թերթեր, պակասաւոր է, և անյայտ գրողի անունն ևն.

Ծուխ 151, ար. 1007, իգ. 890.

*Նահատակ.* անունն անյայտ ուխտատեղիս գտնուում է գիւղիս հիւսիսային կողմում մի բարձրակատար սարի վերայ. անտաշ քարով շինուած քարուկիր մատուռ է, որ ունի սքանչելի տեսարան։

*Սուրբ Յովհաննէս.* Քարուկիր մատուռ, ուխտատեղի գիւղիս արևմտեան կողմում, որի մօտ կայ հանգստարան։

*Հին-Հաչա Ջուր.* Գիւղիցս վերև, ջրաձորի ձախ կողմում, Մակարայ վանքի հիւսիսային հանդէպ, ուր կայ գիւղատեղին և հանգստարանն։

## ՄԱԿԱՐԱՅ ՎԱՆՔ (64)

Հիմնուած է Հին-Հաչա-ջրի հարաւային հանդէպ, մի գեղեցիկ և բարձրահայեաց սարահարթի վերայ։

Ա. Հին-Վանք սուրբ Աստուածածին ամենից առաջ շինուած կիսատաշ քարերով, խաչաձև, որ ունի չորս փոքր, մի աւագ խորան, վեց լուսամուտ, մի դուռն, 11 մետր երկարութիւն 8 մետր 10 սանթիմ լայնութիւն և մի գաւիթ իւր արևմտեան կողմին կից, որ կառուցեալ է չորս սիւների և տասն կիսասիւների վերայ։ Մէջ տեղում չորս կամարների վերայ եղած է մի հրաշալի գաւիթ, որ խոնարհած է այժմ։ Միապաղաղ են և բոլորշի տաշուած սիւներն[1]) և կիսասիւներն, որք ունին և գեղեցիկ պատուանդաններ և խոյակներ։ Գաւիթս իւր հարաւային կողմում ունի երկու փոքր խորան իրարու վերայ. հիանալի է քանդակագործ սանդուղն, որ

[1]) 2 մետր 71 սանթիմ է սիւների հաստութիւնն։



Digitized by Google

տանում է վերի խորանն. իսկ իւր հիւսիսային կողմում ունի մի մեծ սենեակ, որ եղած է մատնատուն (նշխար գործելու տեղ). որի մէջ կայ փռարան (թուխարի)։ Գաւիթս ունի նաև երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, վեց լուսամուտ. 14 մետր 10 սանթիմ երկարութիւն և նոյնչափ լայնութիւն։

*Գաւթիս դրան սեմի վերայ*

«ՌՂ. թիւ. Թամելս մեծ յուսով միաբանեցայ Աստուածածնիս և ետու (զարդիւնս) յուսովն Աստուծոյ»։

*Սորանից ներքև.* «Ես Սերոբ և Թոմա քահանայք և եղբարք զմեր հոգոյ արդիւնս տուաք ի սուրբ Աստուածածինս. հայրս Յովհաննէս և միաբանքս ետուն մեզ Բ. պատարագ Թոմային 'ի տաւնի Անտոնի. որ խափանէ, մեր մեղացն պարտական է և դատի յԱստուծոյ թվ. ՁԲ.»։

Բ. ՆՈՐ-ՎԱՆՔ. Շինուած է ամբողջապէս սրբատաշ պղնձագոյն քարով կից հին վանքին և գաւթին խաչաձև, չորս բարձրակառոյց կամարների վերայ. բայց խոնարհուած է այժմ սորա կաթուղիկէն։ Վանքս որ շինուած է Գանձասարի ճաշակով, ոճով և ճարտարապետութեամբ, ունի եօթն քօքր և մի աւագ խորան, տասն և մի լուսամուտ (երեքն կլորակ է), երկու խորհրդարան, երկու դուռն հիւսիսից և արևմտքից. 15 մետր 30 սանթիմ երկարութիւն և 11 մետր 10 սանթիմ լայնութիւն։ Աւագ խորանի կլորակի վերայ շինուած է տասներեք հատ ամենափոքր, բայց ամենագեղեցիկ խորաններ, որպիսին տեսանք միայն Խորանաշատ վանքի աւագ խորանում։ Վերին փոքր խորանների մուտքն բացուած է աւագ խորանի միջով։ Հրաշալի և ուշագրաւ է բեմի ժողովրդահայեաց ճակատն, որ շինուած է գոյնզգոյն քարերով և զարմանազան նրբաքանդակ նախշերով։

Digitized by Google

*Հարաւային փոքր խորանի դրան վերայ.*

«Կամաւն Աստուծոյ ես Դաւիթ առաջնորդ սուրբ ուխտիս կամակցութեամբ եղբարցս գրեցաք զՏեառն ընդառաջ աւրն զամեն եկեղեցիքս, որ Վահրամա լինի պատարագ, որչափ ի շինութեան է սուրբ ուխտս, ով խափանէ...»։

*Հարաւային որմի վերայ, ներքուստ, նոյն խորանի մօտ.*

«Անուամբն Աստուծոյ այս մեր գիր է Դաւթի և այլ միաբանացս որ գրեցաք վասն Յովսէփայ, որ ետ ոսկի 'ի գին եկեղեցւոյս և մեք տուաք Ա. պատարագ ի տաւնի քառասնիցն»։

*Արեւմտեան լուսամուտից վերեւ, արտաքուստ.*

«Տէր Յիսուս Քրիստոս ողորմեա Իւան Շահին և ամուսնոյն ՈՂԲ.»։

*Արտաքուստ հարաւ. որմի վերայ արեւի ժամացուցի տակ.*

«Յուսով Աստուծոյ ես Յովանէս քահանայ էտու զիմ հոգոյ արդիւնս և գնեցի յԱրտաւազայ իւր ամեն որդեանցն զայգին և ընծայեցի Աստուածածնիս. Յովանէս առաջնորդ և միաբանքս էտուն Բ. ժամ 'ի տաւնի աշխարհամատրան. Ա. ժամ ինձ և Ա. ժամ իմ մաւրն Զուզին. ով զայգին խափանէ, ՅԺԸ. հարապետացն անիծած է թվ. ՉԹ.»։

Գ. ՓՈՔՐ ՄԱՏՈՒՌ. շինուած է վանքերիս արեւելեան կողմում և ունի սոյն արձանագրութիւնը «Ի թուին ՈԽԷ. Հայ (ոց) ես յամենայնի մեղապարտս Յովհանէս՝ ամեն միաբան եղբարցս կամակցութեամբ և ձեռնտուութեամբ՝ զեկեղեցիս՝ յիմ ծնողացն և եղբարցն, որ այժմ ննջեցեալ են, յանուն շինեցի Վասակայ, Տուչկանն, Հասանա և Վաչէի, և խնդրեմ մեծ յուսով և հաւատով և զԱստուածածին և զՔրիստոսի չարչարանսն բարեխաւս ունիմ, որ յետ իմ սպասաւորին տեղոյս,

Digitized by Google

զի զատկի աւրն նոցա արասցեն ժամ, որ խափանէ, նզով ասցէ. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»։

Այժմ աւերուած են վանուցս շրջապարիսպն և միաբանից սենեակներն և խուցերն և տեղ տեղ թափուած վանքերի սալխաններից և որմերից քարեր։ Գերեզմաններ կան գաւիթներում, վանքերիս արևմտեան կողմերում և դռների առաջ։

Հարկ է յայտնել որ Բ. վանքի արևելեան արտաքին որմի վերայ կայ մի երկար արձանագրութիւն, որի մէջ յիշուած է միայն *Մակարայ վանք* անունն։ Անմարդաբնակ են վանքերս։

*Հին-Պիպիս գիւղ*. Այժմ աւերակ գիւղ, սուրբ Աստուածածին անուամբ կանգուն մատուռ և հանգստարան վանքերիս հարաւային կողմում։

*Քոլամիշի խաչ*. Մակարայ վանքից վար, ճանապարհի հարաւային կողմում (և Հաչա-ջրից վերև) *գիւղատեղի*, հանգստարան և փոքր եկեղեցի սուրբ Աստուածածին անուն։

Ը. ՍԵԻ ՔԱՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Հաչա-ջրի հիւսիսարևմտեան կողմում, մի հովտի մէջ. բնակիչք տեղափոխուած են Կիւլստան և Ջրաբերդ գաւառներից, հողն արքունի, ջուրն սակաւ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն. կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի, եկեղեցին սուրբ Պետրոս, ծածքն փայտաշէն, քահանայ երկու։ Եկեղեցումս կայ երկու ձեռագիր աւետարան, որք պակասաւորք են, և չունին յիշատակարան.

Ծուխ 175, ար. 1306, իգ. 1116.

Թ. ՆՈՐԱԳԵՂ. Սառի գեղ կամ Դլիջ-քեանդ. Հիմնուած է մի սառի վերայ Սև-քարի հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պակաս ջուրն, երկար կեանք 80—85 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Ծուխ 77, ար. 411, իգ. 342.

Digitized by Google

Ժ. ՄԷԼԻՔ ԳԻՒՂ. Հիմնուած է մի տեսարանաւոր հարթի վերայ. Սուրբ գիւղի արեւմտա-հիւսիս կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի. միջակ արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրըն, երկար կեանք 90—100 տարի. եկեղեցին սուրբ Յովհաննէս. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 38, ար. 262, իգ. 175.

ԺԱ. ՆՈՐ-ՊԻՊԻՍ կամ Ջողազ. հիմնուած է Ոսկեպար[1]) (ըստ տաճկ. Ասկի փարա) վտակի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն կիսով չափ արքունի, տեղական բերքերն նոյն. անախորժ ամրան օդն, կլիման և ջուրն, և տենդաբեր, երկար կեանք 50 տարի, եկեղեցին սուրբ Գէորգ. ծածքն փայտաշէն. քահանան գալիս է Մէլիք գիւղից։

Ծուխ 35, ար. 177, իգ. 174.

ԺԲ. ՆՈՐ-ԿՈՒՆԷՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Նոր-Պիպիսի արեւմտեան կողմում այն սեռի վերայ, որ ընկած է Ոսկեպար վտակի և Կունէն առուակի մէջ. բնակիչք գաղթած Երեւանի Նորք և Կողթ կամ Տամշատին գաւառի Կուզեն գիւղերից. հողն կիսով չափ արքունի. տեղական բերքերն նոյն, օդն կլման և ջուրն ոչ այնքան գովելի, երկար կեանք 60—70 տարի, եկեղեցին սուրբ Երրորդութիւն, քահանան գալիս է Ոսկեպար գիւղից։

Ծուխ 34, ար. 185, իգ. 156.

*Սուրբ Աստուածածին մատուռ.* Գիւղից վերև Կունէն[2]) առուակի աջ ափի բարձրութեան վերայ. շինուած անտաշ քարով մի կամարի վերայ։ Դրան գլխի քարին վերայ. «Թվին ՌՃԽԴ. ես Մէլիք-Տահնազարս... ամուսին Խանզատէն շինեցինք սուրբ Աստուածածին ձեռամբ Յակոբին»։ Մեծ հանգստարան շրջապատած է մատրանս շուրջն։

*Հին Կունէն* աւերակ, որ կայ մատրանս հիւսիս-արեւմտեան հանդէպ առուի ձախ ափին։

[1]) Վտակիս ջուրն միանում է Աղստևին Ղազախ քաղաքի հանդէպ։ Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի Պիպիս կամ Ջողազ անուն. ուխտի օրն է զատիկ օրերն։

[2]) Խառնուում է Ոսկեպարին։

## ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ 1)

Հին-Կունէնից փոքր ինչ վերև, նոյն առուակի ձախ կողմում մի լեռնաբազկի վերայ։ Հիմնուած է չորս կամարների վերայ, որ ունի մի աւագ խորան (առանց փոքր խորանի), չորս լուսամուտ, երկու խորհրդարան, մի կաթուղիկէ, մի դուռն արևմտեան կողմից, 10 մետր 25 սանթիմ երկարութիւն, 7 մետր 45 սանթիմ լայնութիւն։ Որմերի ներսի երեսներն շինուած են անտաշ, իսկ դրսի երեսներն՝ սրբատաշ քարով։ Մենաստանս ունի և գաւիթ, որ կից է իւր արևմտեան կողմին, կառուցեալ ութ կիսասիւների վերայ, երկարութիւն (հիւսիսից հարաւ) 10 մետր 40 սանթիմ, լայնութիւն 9 մետր 50 սանթիմ։ *Գաւթիս դրնագլուխ քարի վերայ.* «Ի թվին ՈՂԴ. կամաւ բարերարին Աստուծոյ և ողորմութեամբ՝ Աթաբագ ամիր սպասալար Խութլու փուղին (Խութէ ու Բուղին) ես Գրիգոր թոռն Խաչենիսենց ապաւինեցայ սուրբ առաքելոյս իմ հալալ արդեամբ և բնակիչք սուրբ ուխտիս եառուն Բ. պատարագ 'ի տաւնի սուրբ Գրիգորի գիւտի նշխարացն-. կատարիչքն աւրհնին Աստուծոյ և խափանողքն դատին 'ի Տէր»։

Արտաքուստ տաճարիս հարաւային որմի տակ կայ մի նշանաւոր խաչարձան, որի երկարութիւնն 2 մետր 50 սանթիմ է (առանց պատուանդանում զետեղուած մասին) լայնութիւնն 1 մետր 10 սանթիմ։ Խաչարձանիս վերին մասումն քանդակուած է Յիսուսի Քրիստոսի պատկերն[2]), որը բռնուած են երկու հրեշտակներ։ Իսկ Յիսուս Քրիստոս բռնած է իւր ձեռքում մի թուղթ, *որի վերայ* քանդակուած է,

«Ես եմ լոյս աշխարհի....»։ Իսկ *ստորին մասում.*
«Ով քառաթև սուրբ պանծալի,
Փրկագործող մարդկան ազգի,

---

1) Հիւսիսային պատում կայ մի գաղտնի պահարան, որի ճանապարհն գաւթի տանեաց վերայովն է։

2) Փորագրուած է պատկերիս կողքերով. «Բանն Հայր
Բարձրեալ անսկզբնական
Կարապետին լեր աւգնական»։

Տեսիլ փառաց անճառելի,
Գերապայծառ և սխրալի,
Յորժամ փայլես ընդ ամպս երկնի,
Լեր բարեխաւս Տեառն Յիսուսի,
Կարապետին քո աւգնողի,
Ալմկանին իւր կենակցի,
Եւ զաւակացն գովելի,
Համայն ազգացն, որ 'ի կամս Հաւր ննջեցին»։

Խաչարձանիս վերայ փորագրուած են նաև ուրիշ խօսքեր աւելի խոշոր գրերով, սակայն անընթեռնլի են, քանզի եղծուած են։

Մենաստանս ունի ամրոցի նման ամուր պարիսպ՝ շինուած լեռնաբազկի դիրքով, որ ձգուած է գրեթէ հիւսիսից հարաւ և ունի հաստատուն և բարձր բուրգեր։ Պարսպի ներսում կան միաբանից խուցեր, պալատանման բնակարաններ, սենեակներ և գոմեր։ Վանքիս արևելեան կողմում, հովտի մէջ կայ, գիւղատեղի, ձիթահանքեր և հին շինութիւններ։ Իսկ հարաւ արևմտեան կողմում, ձորի միւս լանջի վերայ, հանգստարան և մի քառաթև և բարձր խաչ, որպիսին տեսանք Խամշի վերքի մօտ։

*Ներանց վանք.*

Հիմնուած է Առաքելոց վանքից բաւական վերև նոյն վտակի ձախ ափի մօտ։ Տաշուած մոխրագոյն քարով շինուած են դռներն և հիմքից բարձր երկու շար քարերով շրջապատն. իսկ մնացեալ բոլոր մասերն շինուած են թրծեալ աղիւսով։ Մենաստանս կառուցեալ է երկու սիւների և երկու կիսասիւների վերայ, խաչաձև է ներքուստ, բայց եկեղեցու ձև ունի արտաքուստ։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, երկու դուռն (հարաւից, արևմուտքից) ութ նեղ և երկար լուսամուտ, մի բարձրագոյն և գեղեցիկ կաթուղիկէ[1]). 17 մետր 60 սանթիմ երկարութիւն, 12 մետր

[1]) Կաթուղիկէիս արտաքին երեսն շինուած է մանր և գոյնզգոյն եփած աղիւսներով։

Digitized by Google

Գ. ՎԱՆՔ *սուրբ Ստեփաննոս*. շինուած է սուրբ Գրիգոր վանքի արեւելեան կողմում, խիստ մօտ. միեւնոյն ձեւով, ոճով և ճաշակով։ Փոքրիկ, գեղեցկագոյն և ուշագրաւ վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, ինն լուսամուտ, մի կաթուղիկէ, մի դուռն արեւմտեան կողմից, 6 մետր 38 սանթիմ երկարութիւն, 5 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Կաթուղիկէին վերայ. «'ի թվ. ՌՂԳ. իշխանութեան Իւանէի և առաջնորդութեան Խաչատուր վարդապետի ես Խալթ որդի Հարբայ շինեցի զեկեղեցիս վասն իմ հոգւոյս փրկութեան. և ամենայն միաբանքս զյայտնութեան ճրագալուցին ժամն ինձ հրամայեցին և զզատիկն որ անխափան առնեն. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

*Հարաւային որմի վերայ արտաքուստ*. «Ի թուին Հայոց ՌՃ..... աց Շահ Սուլէմանին որդոյ փոքր Շահ Ապասին և տէ... Ս. իշխանին և մէլիքութեան պարոն Շահնազարին և 'ի հայրապետ.. Ջուղայեցւոյ և առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Յակովբայ եպիսկոպ.. տէր Պետրոս աշակերտի նորին. ողորմութեամբ Աստուծոյ մեք յետինքս 'ի կրօնից Թիփլիզեցի հոգեջան որդիքս Պարոս, Մխիթարս, Սափարս և Ջալիս և որդիքն տէր Գասպարն, Հոգեջանն, Բաղդասարն և Մելքոնն զմեր հոգոյ արդեամբքն նորոգեցաք զսուրբ Ստեփաննոս, որ յոյժ խախտեալ էր՝ վասն փրկութեան հոգւոց մերոց և երկարութեան կենաց որդոց մերոց. և միաբանք սորա հաստատեցին յայտնութեան և յարութեան պատարագն զմեզ յիշատակել և մեք խոստացաք որ զկանթեղ սորին միշտ 'ի վառ պահել որդէց որդի, կատարողքն օրհնին յԱստուծոյ ամէն»։

*Սեղանատուն*

Շինուած է Մեծ Վանքի փլած գաւթի հիւսիս-արեւմտեան կողմում տաշուած չիչ քարով երկու սիւների և տասներկու կիսասիւների վերայ, այնպէս որ առաստաղն ունի չորս չորս խաչաձեւ կապուած կամարներ, երկու երդիկ, երկու լուսամուտ, մի դուռն, 23 մետր երկարութիւն, 10 մետր լայնութիւն.

*Հարաւային դրան վերայ*

«'Ի թվ. ՌՂԷ. յառաջնորդութեան Յովհաննէսի վարդապետի շինեալ......[1])»։

Հարկ է յայտնել որ քանդուած խախտուած են վանքերիս սալքախներն և տեղ տեղ որմերից քարեր։ Բոլոր վանքերի շրջապատում կան գերեզմաններ։ Վանքս ունեցած է և շրջապարիսպ, որ այժմ իսպառ աւերուած է, և միաբանից սենեակներ, որք հասած են եղել քայքայեալ դրութեան։ Մօտ տասն տարի է որ արժանապատիւ Պօղոս վարդապետ Մարգարեանցն արիւն քրտինք թափելով ճգնում է պայծառացնել վանքերս։ Նորոգել տուած է մի քանի խուցեր, որոց առջև տեսլեամբ գտած է մի պղնձեայ ահագին կաթսայ, ապա փորելով գետինը հանած է նոյն կաթսայն և ղրկած Մայր աթոռի սուրբ Էջմիածնի տաճարի պահարան, որ ունի ձուլածոյ շինուածք 21 փութ և 26 ֆունտ ծանրութիւն, երեք հնաձև ոտք, չորս ամուր կանթեր և այս արձանագրութիւնը. «'Ի թ. ՌՁԱ. ես Զօսիմա քահանայ մեղապարտ անձամբ ստացայ զքոբս յարդեանց իմոց. միաբանքս էտուն ինձ 'ի տարին Ա, ժամ Գորգա (Գէորգայ) ղալրավարի տանին»։ Կաթսայի հետ գտած է նաև մի զանգակ, որ ունի 2 փութ 2 ֆունտ ծանրութիւն։ Արժանապատիւ Հայրսուրբն մաքառելով ամեն տեսակ նեղութեանց, աղքատութեանց և թշուառութեանց հետ պահպանում է վանքերս և ցարդ հազիւ կարողացած է վանքապատկան անել 5000 օրավար հողերից միայն 1105 օրավար (դեսեատին) հող, և այս ևս տակաւին վճռուած չէ վերջնականապէս։

Վանքերս, իւրեանց արևմտեան կողմում, ունին կալ, քարուկիր մարագ, կալապան և ահագին ցորենահոր. ունին նաև վարելահող, անտառ, խոտահարք, թոնրատուն, ջրաղաց, գոմ և անասուն։ Այս ամենի վերակենդանութիւնը պարտական ենք Պօղոս Հայր-սրբին։

Վանքիս արևելեան կողմում կայ երեք քարուկիր մա-

[1]) Եղծուած են բոլոր կէտադրեալ բառերն։

Digitized by Google

Գ. ՎԱՆՔ *սուրբ Ստեփաննոս.* շինուած է սուրբ Գրիգոր վանքի արեւելեան կողմում, խիստ մօտ. միեւնոյն ձեւով, ոճով և ճաշակով։ Փոքրիկ, գեղեցկագոյն և ուշագրաւ վանքս ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, ինն լուսամուտ, մի կաթուղիկէ, մի դուռն արեւմտեան կողմից, 6 մետր 38 սանթիմ երկարութիւն, 5 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Կաթուղիկէին վերայ. «'ի թվ. ՈՂԳ. իշխանութեան Իւանէի և առաջնորդութեան Խաչատուր վարդապետի ես Խալթ որդի Հարբայ շինեցի զեկեղեցիս վասն իմ հոգւոյս փրկութեան. և ամենայն միաբանքս զյայտնութեան ճրագալուցին ժամն ինձ հրամայեցին և զզատիկն որ անխափան առնեն. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

*Հարաւային որմի վերայ արտաքուստ.* «Ի թուին Հայոց ՌՃ..... աց Տաճ Սուլէմանին որդոյ փոքր Տաճ Ապասին և տէ... Ս. իշխանին և մէլիքութեան պարոն Տահմազբին և 'ի հայրապետ.. Զուղայեցւոյ և առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Յակովբայ եպիսկոպ.. տէր Պետրոս աշակերտի Նորին. ողորմութեամբ Աստուծոյ մեք յետինքս 'ի կրօնից Թիփլիզեցի հոգեջան որդիքս Պարոս, Մխիթարս, Սափարս և Զալիս և որդիքն տէր Գասպարն, Հոգեջանն, Բաղդասարն և Մելքոնն զմեր հոգոյ արդեամբքն նորոգեցաք զսուրբ Ստեփաննոս, որ յոյժ խախտեալ էր՝ վասն փրկութեան հոգւոց մերոց և երկարութեան կենաց որդոց մերոց. և միաբանք սորա հաստատեցին յայտնութեան և յարութեան պատարագն զմեզ յիշատակել և մեք խոստացաք որ ղկանթեղ սորին միշտ 'ի վառ պահել որդէց որդի, կատարողքն օրհնին յԱստուծոյ ամէն»։

*Սեղանատուն*

Շինուած է Մեծ Վանքի փլած գաւթի հիւսիս-արեւմտեան կողմում տաշուած չիչ քարով երկու սիւների և տասներկու կիսասիւների վերայ, այնպէս որ առաստաղն ունի չորս չորս խաչաձեւ կապուած կամարներ, երկու երդիկ, երկու լուսամուտ, մի դուռն, 23 մետր երկարութիւն, 10 մետր լայնութիւն.

Digitized by Google

*Հարաւային դրան վերայ*

«'Ի թվ. ՈՂԷ. յառաջնորդութեան Յովհաննէսի վարդապետի շինեալ......[1])»։

Հարկ է յայտնել որ քանդուած խախտուած են վանքերիս սալկախներն և տեղ տեղ որմերից քարեր։ Բոլոր վանքերի շրջապատում կան գերեզմաններ։ Վանքս ունեցած է և շրջապարիսպ, որ այժմ իսպառ աւերուած է, և միաբանից սենեակներ, որք հասած են եղել քայքայեալ դրութեան։ Մօտ տասն տարի է որ արժանապատիւ Պօղոս վարդապետ Մարգարեանցն արիւն քրտինք թափելով ճգնում է պայծառացնել վանքերս։ Նորոգել տուած է մի քանի խուցեր, որոց առջև *տեսլեամբ* գտած է մի պղնձեայ ահագին կաթսայ, ապա փորելով գետինը հանած է նոյն կաթսայն և ղրկած Մայր աթոռի սուրբ Էջմիածնի տաճարի պահարան, որ ունի ձուլածոյ շինուածք 21 փութ և 26 ֆունտ ծանրութիւն, երեք հնաձև ոտք, չորս ամուր կանթեր և այս արձանագրութիւնը. «'Ի թ. ՈՁԱ. ես Զոսիմա քահանայ մեղապարտ անձամբ ստացա զքոբս յարդեանց իմոց. միաբանքս էտուն ինձ 'ի տարին Ա, ժամ Գորդա (Գէորգայ) ղաւրավարի տաւնին»։ Կաթսայի հետ գտած է նաև մի զանգակ, որ ունի 2 փութ 2 ֆունտ ծանրութիւն։ Արժանապատիւ Հայր-սուրբն մաքառելով ամեն տեսակ նեղութեանց, աղքատութեանց և թշուառութեանց հետ պահպանում է վանքերս և ցարդ հազիւ կարողացած է վանքապատկան անել 5000 օրավար հողերից միայն 1105 օրավար (դեսեատին) հող, և այս ևս տակաւին վճռուած չէ վերջնականապէս։

Վանքերս, իւրեանց արևմտեան կողմում, ունին կալ, քարուկիր մարագ, կալապան և ահագին ցորենահոր. ունին նաև վարելահող, անտառ, խոտահարք, թոնրատուն, ջրաղաց, գոմ և անասուն։ Այս ամենի վերակենդանութիւնը պարտական ենք Պօղոս հայր-սրբին։

Վանքիս արևելեան կողմում կայ երեք քարուկիր մա-

[1]) Եղծուած են բոլոր կէտագրեալ բառերն։

տուռ։—Կիսաւեր է Ա. մատուռն, որ շինուած է մի միապաղաղ քարի վերայ։

Բ. Մատուռն փոքրիկ է և ունի գաւիթ։

Գ. Մատրան, որ նոյնպէս ունի գաւիթ, փլած է թաղըն։ Երևի թէ յատուկ դամբարաններ եղած են մատուռներս, որոց գաւիթներում և շրջապատում կան գերեզմաններ։—Շատ հեռի չեն վանքերիս քարահանքերն։

*Վանքերիս շրջապատներում*

*Խազինա-քար.* վիմահերձ ապառաժ քարայր, որ գտնուում է վանուցս հիւսիս արևմտեան կողմում։ Վիմահերձս իւր հիւսիսային կողմով ունեցած է միայն մի դժուարատար մուտք, որ աւերուելով ժամանակի մաշիչ բռնութիւնից, այժմ եղած է անմատչելի։ Աւանդաբար ասում են թէ *վանքիս գանձն պահուած է քարայրումս:* Մի քանի տարի առաջ Լօռիցի ոմն երիտասարդ *Դալլաք—Ցովսէփ* անուն կտրում է երկար և բազմաճղի ծառեր, շարում քերձի ճակատին, բարձրանալով վերելակ ճղներով մտնում ներս և տեսնում որ Խազինաքար ասուածն ոչ այլ ինչ է, եթէ ոչ մի *քարայր*, որի առաջի բաց կողմը քարուկիր պատով պատած են ժամանակաւ և ձևացրած մի փոքրիկ բերդակ։ Նոյն դալլաքն (սափրիչ) հանած է այրիս միջից գորգի, կարպետի և այլ բրդեղէն կարասեաց փտած մանրուքներ։ Քարայրիս վերևում քերձի գլխին կայ մի խորագոյն *հոր*, որի բերանի լայնութիւնն մօտ մի մետր է։ Ցատերն կարծում են թէ հորս հաղորդակցութիւն ունի քարայրին հետ և գուցէ մի ժամանակ հորովս ել և էջ արած լինին մարդիկ։

*Մեծ—աղբիւր.* Քարայրիս ստորոտից բղխում է յորդառատ ակն, որ բանեցնում է երկու ջրաղաց։

*Անյայտացած ջերմուկ.* Պատմում են թէ տաք ջուր եղած է վանուցս արևմտեան կողմում. բայց վանքերս անմարդաբնակ մնալուց յետոյ՝ բնակում են սրբավայրերումս մահմետականներ, որք անյայտացնում են *տաք ջուրը*՝ կաս-

կածելով թէ ջրին պատճառաւ քրիստոնեայք շինութիւններ կը շինեն ջրին մօտ և իւրեանց ձեռքերից կը խլուին շատ բարիքներ։ Մի քանի տարի առաջ մի խոզարած տեսնում է որ իւր խոզերից մին ընկաւ մի փոքրիկ լճակի մէջ, իսկոյն աղիողորմ խանչեց խոզն և առժամայն թափուեցան խոզին մազերն։ Խոզարածն փորձելու համար ձեռնը մօտեցնում է ջրին և իսկոյն զգում որ սարսափելի տաք է այն։ Խոզարածս խոստանում է ցոյց տալ լճակը արժ. Պօղոս վարդապետին, բայց անսպասելի մահուամբ վախճանուում է և վերստին անյայտ է մնում ջերմկի տեղն։

*Աւերակ Հաղարծին գիւղ.* Վանքերից քառորդ մղոնաչափ վար, ճանապարհի վերայ, Հաղարծին վտակի ձախ ափին է գիւղի աւերակն, ուր կայ և հանգստարան և կործանեալ եկեղեցի։

**Բ. ՆՈՐ-ՇԱՐ-ԽԱՉ ԳԻՒՂ.** Հիմնուած է Հաղարծին աւերակից մղոնաչափ վար Աղստև գետակի ձախ ափի լանջի վերայ. բնակիչք նախ Ջրաբերդի գիւղերից տեղափոխուած են Հաչա-ջուր, ապա Նոր-Շար-Խաչ գիւղս. հողն արքունի և սակաւ արդիւնաբեր. տեղական բերքերն նոյն. բարեխառն օդն, կլիման, և անվնաս ջուրն. երկար կեանք 80—90 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 55, ար. 504, իգ. 483.

*Հախկախլու* կոչուած տեղում, որ բաւական վար է Նոր-Շար-Խաչից, կայ աւերակ գիւղատեղի, կանգուն մատուռ և հանգստարան. այժմ մահմետականաբնակ է։

**Գ. ՔՐԴԵՒԱՆ ԳԻՒՂ.** Հիմնուած է Կայենի[1]) լեռնաբազուկների մէկի հարաւահայեաց լանջի վերայ, բնակիչք նախ Արցախի գաւառներից տեղափոխուած են Սև—քար գիւղն,

---

[1]) Հայերէն Կայենի սար (տաճ. Դալի դաղ) է կոչուում լեռս, որ կայ Նոր-Շար-Խաչի հիւսիսային կողմում և ունի 8741 ոտք բարձրութիւն։ Ցէրն մի՛ արասցէ, եթէ շրջակայ գաւառներումս կարկուտ իջնելու լինի, փորձով հաստատուած է, որ կարկուտն նախ գոյանում է սարիս վերայ դիզուած ամպերի բովի մէջ, թերևս այս վատ յատկութեանց համար անուանած են ԿԱՑԵՆԻ ՍԱՐ։

Digitized by Google

ապա այստեղ. հող, արքունի, հացատու, բայց բազմիցս կարկտահար. տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 110 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին։

Ծուխ 32, ար. 255, իգ. 233.

Դ. ԹԱԼԱ ԳԻՒՂ. Շինուած է Աղստև գետակի ձախ կողմում, մի սարի ստորոտում. բնակիչք տեղափոխուած են Խաչեն և Ջրաբերդ գաւառներից. հողն արքունի. տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն անվնաս, երկար կեանք 80 տարի, եկեղեցին սուրբ Նշան. ծանքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 40, ար. 268, իգ. 230.

Ե. ԽԱԻԱՐԱԶՈՐ շէն (Ղարանլուղ դերէ). Հիմնաւած է նոյն սարի հիւսիսային կողմի խոր ձորի բերանի հովտում, բնակիչք տեղափոխուած Արցախի նոյն գաւառներից. հողն արքունի, տեղական բերքերն՝ խաղող. թութ, ոչխար, տաւար, խոզ. վատառողջ օդն և կլիման, երկար կեանք 55—60 տարի, եկեղեցին սուր Աստուածածին, ծանքն փայտաշէն, քահանան գալիս է Հաչա-ջրից։

Ծուխ 15, ար. 82, իգ. 67.

Զ. ՆԵՐՔԻՆ-ԱՂԴԱՆ ՇԷՆ. Հիմնուած է Աղստև գետի ձախ կողմում. խճուղու գլխին. բնակիչք փոքր մասամբ բնիկ. հողն արքունի և նուազ բարեբեր, տեղական բերքերն նոյն, վնասակար ամրան օդն և կլիման. երկար կեանք 54 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին. քահանան գալիս է Թալայից։

Ծուխ 20, ար. 127, իգ. 100.

Է. ՆՈՐ-ՀԱՉԱ-ՋՈՒՐ ԳԻՒՂ (Աչա-սու) Հիմնարկուած է նոյն գետակի ձախ կողմում, երկու առուակներ մէջ. բնակչաց մեծ մասն բնիկ, իսկ փոքր մասն տեղափոխուած Արցախի յիշեալ գաւառներից. հողն արքունի և բարեբեր, գինեէտ և ուրեք ուրեք ջրարբի. տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն, երկար

Digitized by Google

կեանք 80—85 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին. Նորաշէն, կառուցեալ չորս սիւների վերայ. երկարութիւնն 21 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 13 մետր 25 սանթիմ. քահանայ երկու։ Եկեղեցումս կայ մի ձեռագիր յայսմաւուրք, բայց թափուած են թերթեր, պակասաւոր է, և անյայտ գրողի անունն ևն.

Ծուխ 151, ար. 1007, իգ. 890.

*Նահատակ*. անունն անյայտ ուխտատեղիս գտնուում է գիւղիս հիւսիսային կողմում մի բարձրակատար սարի վերայ. անտաշ քարով շինուած քարուկիր մատուռ է, որ ունի սքանչելի տեսարան։

*Սուրբ Յովհաննէս*. Քարուկիր մատուռ, ուխտատեղի գիւղիս արևմտեան կողմում, որի մօտ կայ հանգստարան։

*Հին-Հաչա ջուր*. Գիւղից վերև, ջրաձորի ձախ կողմում, Մակարայ վանքի հիւսիսային հանդէպ, ուր կայ գիւղատեղին և հանգստարանն։

## ՄԱԿԱՐԱՅ ՎԱՆՔ (64)

Հիմնուած է Հին-Հաչա-ջրի հարաւային հանդէպ, մի գեղեցիկ և բարձրահայեաց սարահարթի վերայ։

Ա. Հին-Վանք սուրբ Աստուածածին ամենից առաջ շինուած կիսատաշ քարերով, խաչաձև, որ ունի չորս փոքր, մի աւագ խորան, վեց լուսամուտ, մի դուռն, 11 մետր երկարութիւն 8 մետր 10 սանթիմ լայնութիւն և մի գաւիթ իւր արևմտեան կողմին կից, որ կառուցեալ է չորս սիւների և տասն կիսասիւների վերայ։ Մէջ տեղում չորս կամարների վերայ եղած է մի հրաշալի գաւիթ, որ խոնարհած է այժմ։ Միապաղաղ են և բոլորշի տաշուած սիւներն[1]) և կիսասիւներն, որք ունին և գեղեցիկ պատուանդաններ և խոյակներ։ Գաւիթս իւր հարաւային կողմում ունի երկու փոքր խորան իրարու վերայ. հիանալի է քանդակագործ սանդուղն, որ

[1]) 2 մետր 71 սանթիմ է սիւների հաստութիւնն։



Digitized by Google

տանում է վերի խորանն. իսկ իւր հիւսիսային կողմում ունի մի մեծ սենեակ, որ եղած է մասնատուն (նշխար գործելու տեղ). որի մէջ կայ փառարան (բուխարի)։ Գաւիթս ունի նաև երկու դուռն հարաւային և արևմտեան կողմերից, վեց լուսամուտ. 14 մետր 10 սանթիմ երկարութիւն և նոյնչափ լայնութիւն։

*Գաւթիս դրան սեմի վերայ*

«ՈՂ. թիւս. Թամեյս մեծ յուսով միաբանեցայ Աստուածածնիս և ետու (զարդեւնս) յուսովն Աստուծոյ»։

*Սորանից ներքեւ.* «Ես Սերոբ և Թոմա քահանայք և եղբարք զմեր հոգոյ արդիւնս տուաք ի սուրբ Աստուածածինս. հայրս Յովհաննէս և միաբանքս ետուն մեզ Բ. պատարագ Թոմային 'ի տաւնի Անտոնի. որ խափանէ, մեր մեղացն պարտական է և դատի յԱստուծոյ թվ. ՁԲ.»։

Բ. ՆՈՐ-ՎԱՆՔ. Շինուած է ամբողջապէս սրբատաշ պղնձագոյն քարով կից հին վանքին և գաւթին խաչաձև, չորս բարձրակառոյց կամարների վերայ. բայց խոնարհուած է այժմ սորա կաթուղիկէն։ Վանքս որ շինուած է Գանձասարի ճաշակով, ոճով և ճարտարապետութեամբ, ունի եօթն քօքր և մի աւագ խորան, տասն և մի լուսամուտ (երեքն կլորակ է), երկու խորհրդարան, երկու դուռն հիւսիսից և արևմտքից. 15 մետր 30 սանթիմ երկարութիւն և 11 մետր 10 սանթիմ լայնութիւն։ Աւագ խորանի կլորակի վերայ շինուած է տասներեք հատ ամենափոքր, բայց ամենագեղեցիկ խորաններ, որպիսին տեսանք միայն Խորանաշատ վանքի աւագ խորանում։ Վերին փոքր խորանների մուտքն բացուած է աւագ խորանի միջով։ Հրաշալի և ուշագրաւ է բեմի ժողովրդահայեաց ճակատն, որ շինուած է գոյնզգոյն քարերով և զարմանազան նրբաքանդակ նախշերով։

Digitized by Google

*Հարաւային փոքր խորանի դրան վերայ.*

«Կամաւն Աստուծոյ ես Դաւիթ առաջնորդ սուրբ ուխտիս կամակցութեամբ եղբարցս դրեցաք զՏեառն ընդառաջ աւրն զամեն եկեղեցիքս, որ Վահրամա լինի պատարագ, որչափ ի շինութեան է սուրբ ուխտս, ով խափանէ... »։

*Հարաւային որմի վերայ, ներքուստ, նոյն խորանի մօտ.*

«Անուամբն Աստուծոյ այս մեր գիր է Դաւթի և այլ միաբանացս որ գրեցաք վասն Յովսէփայ, որ ետ ոսկի 'ի գին եկեղեցւոյս և մեք տուաք Ա. պատարագ ի տաւնի քառասնիցն»։

*Արեւմտեան լուսամտից վերեւ, արտաքուստ.*

«Տէր Յիսուս Քրիստոս ողորմեա Իւանէ Շահին և ամուսնոյն ՈՂԲ.»։

*Արտաքուստ հարաւ. որմի վերայ արեւի ժամացուցի տակ.*

«Յուսով Աստուծոյ ես Յովանէս քահանայ էտու զիմ հոգոյ արդիւնս և գնեցի յԱրտաւազայ իւր ամեն որդեանցն զայգին և ընծայեցի Աստուածածնիս. Յովանէս առաջնորդ և միաբանքս էտուն Բ. ժամ 'ի տաւնի աշխարհամատրան. Ա. ժամ ինձ և Ա. ժամ իմ մաւրն Զուզին. ով զայգին խափանէ, ՅԺԸ. հարապետացն անիծած է թվ. ՉԹ.»։

Գ. ՓՈՔՐ ՄԱՏՈՒՌ. *շինուած է վանքերիս արեւելեան կողմում և ունի սոյն արձանագրութիւնը «Ի թուին ՈԽԷ. Հայ (ոց) ես յամենայնի մեղապարտս Յովհանէս՝ ամենի միաբան եղբարցս կամակցութեամբ և ձեռնտուութեամբ՝ զեկեղեցիս՝ յիմ ծնողացն և եղբարցն, որ այժմ ննջեցեալ են, յանուն շինեցի Վասակայ, Տուչկանն, Հասանա և Վաչէի, և խնդրեմ մեծ յուսով և հաւատով և զԱստուածածին և զՔրիստոսի չարչարանսն բարեխաւս ունիմ, որ յետ իմ սպասաւորին տեղոյս,*

գի զատկի աւրն նոցա արասցեն ժամ, որ խափանէ, նզով ասցէ. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»:

Այժմ աւերուած են վանուցս շրջապարիսպն և միաբանից սենեակներն և խուցերն և տեղ տեղ թափուած վանքերի սալկախներից և որմերից քարեր։ Գերեզմաններ կան գաւիթներում, վանքերիս արևմտեան կողմերում և դռների առաջ։

Հարկ է յայտնել որ Բ. վանքի արևելեան արտաքին որմի վերայ կայ մի երկար արձանագրութիւն, որի մէջ յիշուած է միայն *Մակարայ վանք* անունն։ Անմարդաբնակ են վանքերս։

*Հին-Պիպիս գիւղ*. Այժմ աւերակ գիւղ, սուրբ Աստուածածին անուամբ կանգուն մատուռ և հանգստարան վանքերիս հարաւային կողմում։

*Քոլամիշի խաչ*. Մակարայ վանքից վար, ճանապարհի հարաւային կողմում (և Հաչա-ջրից վերև) *գիւղատեղի*, հանգստարան և փոքր եկեղեցի սուրբ Աստուածածին անուն։

Ը. ՍԵԻ ՔԱՐ ԳԻՒՂ. Հիմնուած է Հաչա-ջրի հիւսիսարևմտեան կողմում, մի հովտի մէջ. բնակիչք տեղափոխուած են Կիւլստան և Ջրաբերդ գաւառներից, հողն արքունի, ջուրն սակաւ, տեղական բերքերն նոյն, պատուական օդն. կլիման և ջուրն, երկար կեանք 90—95 տարի, եկեղեցին սուրբ Պետրոս, ծածքն փայտաշէն, քահանայ երկու։ Եկեղեցումս կայ երկու ձեռագիր աւետարան, որք պակասաւորք են, և չունին յիշատակարան.

Ծուխ 175, ար. 1306, իգ. 1116.

Թ. ՆՈՐԱԳԵՂ. Սռի գեղ կամ Դլիջ-քեանդ. Հիմնուած է մի սեռի վերայ Սև-քարի հիւսիսային կողմում, բնակիչք բնիկ, հողն արքունի, անջրդի և միջակ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պակաս ջուրն, երկար կեանք 80—85 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Ծուխ 77, ար. 411, իգ. 342.

Digitized by Google

Ժ. ՄԷԼԻՔ ԳԻՒՂ. Հիմնուած է մի տափարանաւոր հարթի վերայ. Սուփ գիւղի արեւմտա-հիւսիս կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի, անջրդի. միջակ արդիւնաւէտ. տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրըն, երկար կեանք 90—100 տարի. եկեղեցին սուրբ Յովհաննէս. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Տուխ 38, ար. 262, իգ. 175.

ԺԱ. ՆՈՐ-ՊԻՊԻՍ կամ Ջողազ. հիմնուած է Ոսկեպար[1]) (ըստ տաճկ. Ասկի փարա) վտակի աջ կողմի բարձրութեան վերայ. բնակիչք բնիկ, հողն կիսով չափ արքունի, տեղական բերքերն նոյն. անախորժ ամրան օդն, կլիման և ջուրն, և տենդաբեր, երկար կեանք 50 տարի, եկեղեցին սուրբ Գէորգ. ծածքն փայտաշէն. քահանան գալիս է Մէլիք գիւղից։

Տուխ 35, ար. 177, իգ. 174.

ԺԲ. ՆՈՐ-ԿՈՒՆԷՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Նոր-Պիպիսի արեւմտեան կողմում այն սեռի վերայ, որ ընկած է Ոսկեպար վտակի և Կունէն առուակի մէջ. բնակիչք գաղթած Երևանի Նորք և Կողթ կամ Շամշատին գաւառի Կուզեն գիւղերից. հողն կիսով չափ արքունի. տեղական բերքերն նոյն, օդն կլման և ջուրն ոչ այնքան գովելի, երկար կեանք 60—70 տարի, եկեղեցին սուրբ Երրորդութիւն, քահանան գալիս է Ոսկեպար գիւղից։

Տուխ 34, ար. 185, իգ. 156.

*Սուրբ Աստուածածին մատուռ.* Գիւղիցս վերև Կունէն[2]) առուակի աջ ափի բարձրութեան վերայ. շինուած անտաշ քարով մի կամարի վերայ։ *Դրան գլխի քարին վերայ.* «Թվին ՌՃԽԴ. ես Մէլիք-Շահնազարս… ամուսին Խանզատէն շինեցինք սուրբ Աստուածածին ձեռամբ Յակոբին»։ Մեծ հանգստարան շրջապատած է մատրանս շուրջն։

*Հին Կունէն աւերակ,* որ կայ մատրանս հիւսիս-արեւմտեան հանդէպ առուի ձախ ափին։

---

[1]) Վտակիս ջուրն միանում է Աղստևին Ղազախ քաղաքի հանդէպ։ Գիւղիս մօտ կայ մի ուխտատեղի Պիպիս կամ Ջողազ անուն. ուխտի օրն է զատիկ օրերն։

[2]) Խառնուում է Ոսկեպարին։

## ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ 1)

Հին-Կունէնից փոքր ինչ վերև, նոյն առուակի ձախ կողմում մի լեռնաբազկի վերայ։ Հիմնուած է չորս կամարների վերայ, որ ունի մի աւագ խորան (առանց փոքր խորանի), չորս լուսամուտ, երկու խորհրդարան, մի կաթուղիկէ, մի դուռն արևմտեան կողմից, 10 մետր 25 սանթիմ երկարութիւն, 7 մետր 45 սանթիմ լայնութիւն։ Որմերի ներսի երեսներն շինուած են անտաշ, իսկ դրսի երեսներն՝ սրբատաշ քարով։ Մենաստանս ունի և գաւիթ, որ կից է իւր արևմտեան կողմին, կառուցեալ ութ կիսասիւների վերայ, երկարութիւն (հիւսիսից հարաւ) 10 մետր 40 սանթիմ, լայնութիւն 9 մետր 50 սանթիմ։ Գաւթիս դռնագլուխ քարի վերայ. «Ի թվին ՈՂԴ. կամաւ բարերարին Աստուծոյ և ողորմութեամբ՝ Աթաբագ ամիր սպասալար Խութլու փուղին (Խութէ ու Բուղին) ես Գրիգոր թոռն Խաչենիսենց ապաւինեցայ սուրբ առաքելոյս իմ հալալ արդեամբ և բնակիչք սուրբ ուխտիս ետուն Բ. պատարագ 'ի տաւնի սուրբ Գրիգորի գիւտի նշխարացն-. կատարիչքն աւրհնին Աստուծոյ և խափանողքն դատին 'ի Տէր»։

Արտաքուստ տաճարիս հարաւային որմի տակ կայ մի նշանաւոր խաչարձան, որի երկարութիւնն 2 մետր 50 սանթիմ է (առանց պատուանդանում զետեղուած մասին) լայնութունն 1 մետր 10 սանթիմ։ Խաչարձանիս վերին մասումն քանդակուած է Յիսուսի Քրիստոսի պատկերն[2]), որը բռնուած են երկու հրեշտակներ։ Իսկ Յիսուս Քրիստոս բռնած է իւր ձեռքում մի թուղթ, որի վերայ քանդակուած է,

«Ես եմ լոյս աշխարհի....»։ Իսկ ստորին մասում.

«Ով քառաթև սուրբ պանծալի,
Փրկագործող մարդկան ազգի,

---

[1]) Հիւսիսային պատում կայ մի գաղտնի պահարան, որի ճանապարհն գաւթի տանեաց վերայովն է։

[2]) Փորագրուած է պատկերիս կողքերով. «Բանն Հաւր
Բարձրեալ անսկզբնական
Կարապետին լէր ագնական»։

Տեսիլ փառաց անճառելի,
Գերապայծառ և սխրալի,
Յորժամ փայլես ընդ ամպս երկնի,
Լեր բարեխաւս Տեառն Յիսուսի,
Կարապետին քո աւգնողի,
Ալմկանին իւր կենակցի,
Եւ զաւակացն գովելի,
Համայն ազգացն, որ 'ի կամս Հաւր ննջեցին»։

Խաչարձանիս վերայ փորագրուած են նաև ուրիշ խօսքեր աւելի խոշոր գրերով, սակայն անընթեռնլի են, քանզի եղծուած են։

Մենաստանս ունի ամրոցի նման ամուր պարիսպ՝ շինուած լեռնաբազկի դիրքով, որ ձգուած է գրեթէ հիւսիսից հարաւ և ունի հաստատուն և բարձր բուրգեր։ Պարսպի ներսում կան միաբանից խուցեր, պալատանման բնակարաններ, սենեակներ և գոմեր։ Վանքիս արևելեան կողմում, հովտի մէջ կայ, գիւղատեղի, ձիթահանքեր և հին շինութիւններ։ Իսկ հարաւ արևմտեան կողմում, ձորի միւս լանջի վերայ, հանգստարան և մի քառաթև և բարձր խաչ, որպիսին տեսանք Խամշի վերքի մօտ։

Ներանց վանք.

Հիմնուած է Առաքելոց վանքից բաւական վերև նոյն վտակի ձախ ափի մօտ։ Տաշուած մոխրագոյն քարով շինուած են դռներն և հիմքից բարձր երկու շար քարերով շրջապատն. իսկ մնացեալ բոլոր մասերն շինուած են թրծեալ աղիւսով։ Մենաստանս կառուցեալ է երկու սիւների և երկու կիսասիւների վերայ, խաչաձև է ներքուստ, բայց եկեղեցու ձև ունի արտաքուստ։ Ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, երկու դուռն (հարաւից, արևմուտքից) ութ նեղ և երկար լուսամուտ, մի բարձրագոյն և գեղեցիկ կաթուղիկէ[1]). 17 մետր 60 սանթիմ երկարութիւն, 12 մետր

[1]) Կաթուղիկէիս արտաքին երեսն շինուած է մանր և գոյնզգոյն եփած աղիւսներով։

15 սանթիմ լայնութիւն։ Բարձրում նկարուած են սրբոց պատկերներ, բայց ոչ հայկական ճաշակով և ոճով, այլ յունական. սակայն պատկերների ստորոտում կան հայերէն գրեր, զորս անհնարին եղաւ մեզ կարդալ խիստ հեռաւորութեան պատճառաւ։ Հիւսիսային փոքր խորանի միջից կայ մի վերելակ, նեղ և մութ սանդուղ, որ տանում է մի գաղտնի պահարան։
Բեմի դասահայեաց ճակատն չէ շինուած աղիւսով, այլ քարերով, որոց վերայ կան նրբագործ քանդակներ, ծաղիկներ և նախշեր. գեղեցկաքանդակ են և դռների սեմերն։

Մենաստանս ունի երկու գաւիթ. արևմտեան դրան վերայ եղած գաւիթն շինուած է տաճարիս լայնութեան չափով. իսկ հարաւային դրան վերայ եղածն՝ ըստ երկարութեան։ Տաճարիս հիւսիսային կողման կից կայ մի մատուռ, որի ստորին մասն շինուած է քարով, իսկ վերնամասն՝ աղիւսով։ Տաճարիս արևմտեան գաւթից մի քանի քայլ դէպի արևմուտք, երեք կամարի վերայ շինուած է մի ընդարձակ շինութիւն, որ ունի երկու դուռն արևելքից և արևմուտքից։ Կարծում ենք թէ սեղանատուն է այս կամ ուսումնարան։

Տաճարս ունեցած է քառակուսի ձևով շրջապարիսպ, որ սկսուած է սեղանատուն կարծուած շինութեան հիւսիսային ժայռից, պատած հարաւային և արևելքից հասցրած նոյն ապառաժ ժայռի ծայրին, որ քանդուած է արդէն։ Ունեցած է և սենեակներ և խուցեր, որք աւերուած են այժմ։ Տաճարիս հարաւային և արևելեան արտաքին որմերի տակերն լի են գերեզմաններով։

Պարսպի շուրջն լի է տնատեղի բակերով. իսկ գիւղիս հանգստարանն գտնուում է հիւսիսային հանդէպ եղած մօտ բլրակի վերայ։

## Դեղձնուտի վանք

Հիմնուած է Կերանց վանքի հարաւ-արևելեան կողմի անտառապատ լեռների մէջ։ Հարաւային կողմից միանում է

Digitized by Google

Կունէն վտակի մի այլ առուակ, որի ջրաձորի արևմտեան կողմում բաւական վերև շինուած է Դեղձնուտ անուն վանքն Դեղձնուտ կոչուած տեղում։ Վանքս ամբողջապէս շինուած է սրբատաշ քարով, որ գրեթէ ունի Մակարայ վանքի մեծութիւնը և մի գաւիթ, որ շինուած է շատ յետոյ։ Տաճարս ունի երկու փոքր և մի աւագ խորան, երկու խոր-հրդարան, մի դուռն արևմտեան կողմից։ Գաւթումս ամփոփուած են մի քանի ննջեցեալներ, սակայն աւելի ուշադրաւ են երկու գեղեցկաքանդակ խաչարձաններն, որոց գեղարուեստի նրբագործութիւնն ներկայացնում է ժամանակին ճարտարապետութեան արտափայլումը։ Հարկ է յայտնել թէ խախտուած է վանքիս գաւիթն, որի մօտերքում կան գերեզմաններ։

*Սամոնի վանք*. Կառուցեալ է Խնձորկուտի ջրաձորում, մի տափարակ տեղում, անտաշ քարով։ Փոքր վանքս, որ ներսից խաչաձև է, ունի կաթուղիկէ, աւերակ խուցեր և հանգստարան։

ԺԳ. ՆՈՐ-ՈՍԿԵՊԱՐ (Աքսիպար). Հիմնուած է Կունէն գիւղի հիւսիս-արևմտեան կողմում Ոսկէպար վտակի աջ կողմի բարձրութեան վերայ, բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, ոչ այնքան գովելի օդն և կլիման ամրան, երկար կեանք 75 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Ծուխ 35, ար. 172, իգ. 121.

*Հին-Ոսկեպար*. Ընդարձակ աւերակ, Նոր-ին հանդէպ, վտակի ձախ կողմումն, որի մէջ կայ կիսաւեր մեծ եկեղեցի և հանգստարան, բաղանիս և փլատակների տակ ծածկուած շէնքեր։ Փորուածքներից գտնում են սսկեղէն, արծաթեղէն և պղնձեղէն զարդեր և անօթներ և երկաթեայ խափ, ձևիչ, ճամբարակ։ Այս տեղից փոխադրուած են Նոր-Ոսկեպարի բնակիչներն. բայց այժմ Թրքաբնակ է աւերակս։

*Աշտարակ*. Աւերակ Ոսկեպարից վերև կայ մի քարուկիր բարձր աշտարակ նոյն վտակի ձախ կողմում, որը անուա-

Digitized by Google

նում են Ղըզ-Ղալա։ Մի դիտարան է այս։

*Ջրխտակ եկեղեցի*. Մօտ մղոնաչափ վերև կայ աւերակ հայկական գիւղ. *հանգստարան* և երկու մօտ առ մօտ կիսաւեր *եկեղեցիներ*։ Ահա այս է նոյն անունը կրող աւերակն, որ այժմ Թրքաբնակ է։

Աւերակ *Գիւղատեղի, հանգստարան* և *եկեղեցի* կայ Նոր-Ոսկեպարի հիւսիսային հանդէպ փոքր ձախ կողմում։

ԺԴ. ԲԱՂԱՆԻՍ ԳԻՒՂ. Հիմնուած է այն լեռնաշղթայի հարաւահայեաց լանջի վերայ, որ սկսուած է արևմտեան լեռներից, անցած Ճչեվանք, Բաղանիս և Ղոշղոթան գիւղերի հիւսիսային կողմով դէպի Գաւարզին։ Բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, երկար կեանք 85 տարի, եկեղեցին փայտաշէն և մնասուած, քահանան գալիս է Ղոշղոթան գիւղից, որ խիստ մօտ է։

Ծուխ 47, ար. 239, իգ. 183.

ԺԵ. ՂՈՇՂՈԹԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Բաղանիսի հիւսիս-արևելեան կողմում. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն, քահանայ երկու։

Ծուխ 89, ար. 575, իգ. 450.

ԺԶ. ՃՉԵՎԱՆՔ ՇԷՆ. Բաղանիսից վերև մի անտառապատ ձորի ձախ լանջի վերայ. բնակիչք տեղափոխուած են այստեղ Ջալու և Հաղբատ գիւղերից. հողն արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին նորաշէն սուրբ Աստուածածին, քահանան գալիս է Պարանայ գիւղից. Ծուխ 17, (արականք և իգականք հաշուած են Ղոշղոթանի վերայ)։

*Դվեղայ սուրբ Սարգիս վանք.*

Հիմնարկուած է մի անտառապատ և խոր ձորի աջ լանջի հարթակի վերայ, որի հիւսիսային կողմն վիմահերձ

Digitized by Google

ապառաժ է։ Մենաստանս շինուած է ամբողջապէս սրբատաշ քարով, բայց եկեղեցու ձևով և ունի երկու փոքր, մի աւագ խորան, մի առանձին խորան ևս հիւսիսային որմի մէջ, մի դուռն հարաւային կողմից, մի քանի լուսամուտ, մի զանգատուն, որ բազմած է աւագ խորանի գլխին, 11 մետր 80 սանթիմ երկարութիւն, 7 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Հնաշէն են աւագ խորանն և հիւսիսային երկու խորաններն, իսկ նորոգուած են մնացեալ բոլոր մասերն։

Հարաւային կամարի վերայ «Շինեցաւ յատակս սուրբ սեղանոյս արդեամբ Խաչատուր և Դարչօ Հախվերտեանցի»։ Դրան ճակատին:

«Ողորմութեամբն Աստուծոյ շինեցաւ եկեղեցիս յանուն սրբոյն Սարգսի տրովք բարեպաշտից, ջանիւք և վերակացութեամբ տփխիսեցի Եսայեան Նուրենց, զոր յիշատակէ Տէր յաւուրն վերջին։ Հիմնարկեցաւ 'ի 1845 և աւարտեցաւ 1849 ամի Տեառն»։

Վանքիս հիւսիսային կողմում կայ մի մատուռ սուրբ Կիւրակէ անուն։ Մատրանս հիւսիսային խոր ձորում ժայռից բղխում է մի պատուական ջուր, որը անուանում են Օրհնած աղբիւր:

Ոմանք Թիփլիզեցիք շինած են վանքիս մօտ մի քանի սենեակներ, ուխտի օրերն են ամեն զատկին. մեծ բազմութիւն է լինում այստեղ ուխտաւորաց։

ԺԷ. ՆՈՐ-ՊԱՐԱՆ կամ ԱՊԱՐԱՆ գիւղ. Շինուած է սուրբ Սարգսի արևմտեան հիւսիսային կողմում մի ջրաձորի արևելահայեաց լանջի վերայ. ամբողջ ձորն զարդարուած է այգիներով, բնակիչք տեղափոխուած են այստեղ Ապարանից, վասնորոյ և պահած իւրեանց նախկին բնակավայրի անունը-Ապարան—, որը կրճատելով կոչած են Պարան։ Հողն արքունի, լեռնային, սակաւ, բայց արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Սարգիս. ծախքն փայտաշէն, քահանայ երեք։

Digitized by Google

Ծուխ 95, ար. 573, իգ. 441.

Աւերակ գիւղ, հանգստարան և եկեղեցի կայ *Հին-Պարանում*, որ գիւղիցս վերև է և *Մկնածորում*: Իսկ Պղնձահանք, որ կայ *Միսխանա* կոչուած տեղում, աւելի վերև է Հին-Պարանայ աւերակից:

ԺԲ. ՆՈՐ-ԿՈՂԲ ԳԻՒՂ. Շինուած է Պարանայի արևմտեան կողմում (խիստ մօտ) մի ջրաձորի արևմտահայեաց լանջի վերայ, բնակիչք տեղափոխուած են Արարատեան նահանգի Կողբ գիւղից, վասն որոյ պահած են միևնոյն գիւղանունը, բարբառը և սովորութիւնները. Հողն արքունի, տեղական բերքերն նոյն, գովելի օդն և կլիման, բայց ոչ ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց միապաղաղ սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 35 սանթիմ, լայնութիւն 13 մետ 5 սանթիմ, քահանայ երկու: Եկեղեցումս կայ մի *գրչագիր* աւետարան, որ պակասաւոր, անպատկեր և թղթեայ է, որը գրած է Սարկաւագ Նասիպն Դիզակ գաւառին Տագ գիւղումն Հայոց ՌԺԲ. թուին:

Ծուխ 160, ար. 979, իգ. 814.

Միգասեան ուսումնարան, որ ունի գեղեցիկ շինութիւն, յարմար դասարաններ և սոյն արձանագրութիւնը. «Կանգնեցաւ ուսումնարանական շինութիւնս 'ի սեպհական տեղոջն սեպհական արդեամբ կամ ծախիւք Կողպա բնակիչք պ. Բէկլարի և որդոց նորա Սարգսի և Մարտիրոսի Տէր-Բարսեղեանց ի յիշատակ նոցա և որդոց նոցա ի թուականին Փրկչին 1892-ին և Հայոց ՌՅԽԱ.»:

Աշակերտք 30. համարեալ թէ ամենքն ևս ձրիավարժ են. տարեկան վարժապետին 250 րուբլի:

*Սուրբ Աստուածածին մատուռ*. Գիւղիս հին հանգստարանում սրբատաշ մոխրագոյն քարով շինուած է կիսաւեր մատուռս, որի վերայ. «Ես Ասլան և Սար... դերկն խաչին զ... յեկեղեցիս և տվաք Ե.. սուրբ Աստուածածին Բ. աւր ժամ.. տարումն կարգեցաք յոյս.. Աղիլին և Արևտեղին. ով

այլ հակառակեցէ, Կայենին և Յուդային մասն ժառանգեցէ»։

Մատրանս մօտ (արևելեան կողմում) մի խաչարձանի վերայ.

«Ի թուին ՌՂԳ. ես Սարգիս քահանայ կանգնեցի զխաչս ի յիշատակ ինձ և որդոց իմոց Եպիփանայ, Եփրեմի և եղբարց Ունծ Ալէքսիսի, Իգնատիոսի և հաւրեղբաւր իմոյ Ոհաննէսին, արդ որք երկրպագէք, յիշեսջիք զմեզ առ Քրիստոս»։ Շարայարուած է. «ԶԱբէլ և տէր Աւագ կազմող խաչիս յիշեցէք ի Տէր»։

*Սուրբ Նշան ուխտատեղի.* Գտնուում է գիւղիս հարաւային կողմի բարձրագոյն սարի արևմտահայեաց սեռի վերայ, փայտաշէն է, որի մէջ մի կիսատ խաչքարի վերայ. «Ես Բենիամին վարդապետ Հայոց արարի յիշատակ ինձ սուրբ զբեմս, որ է հիմն հաւատոյ և պատուանդան սուրբ Նշանիս տեղի աղաւթից երթևեկաց և յոյս, որ վնան արդարութեամբ յերկրի»։ Այլ քարի վերայ. «Ցանուն սրբոյն Գիսայ (զուցէ Սարգիսայ) ես հայր Գրիգոր կանգնեցի նշանս Քրիստոսի աւգնական մեր ի Տէր և որք Տեառն են»։

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՎԱՆՔ (65)

Սուրբ Նշանից փոքր ինչ վերև մի զմայլելի սարահարթի վերայ կառուցեալ է վանքս համակ սրբատաշ, սպիտակ, տորոնագոյն և երկնագոյն քարերով մի կամարի վերայ, որ ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, չորս լուսամուտ, մի դուռն, 12 մետր երկարութիւն և 8 մետր լայնութիւն։ Հիանալի քանդակներով զարդարուած են բեմի և խորհրդարանների քարերն։

*Դրան գլխի քարի վերայ.*

«Ես Ոլստակէս և այլ միաբանքս հաստատեցաք 'ի տարին Բ. ժամ. Ա. Աբեսալայ, Ա. Ագլգին 'ի տանի քառասնից, որ խափանէ, մեր մեղացս տէր է առաջի Աստուծոյ»։

Տաճարիս արեւմտեան կողմին կից է քառակամար և գեղեցիկ գաւիթ, որ կանգնած է երկու միապաղաղ սիւների և վեց կիսասիւների վերայ։ Գաւիթս ունի երկու փոքր խորան, երկու գեղեցկաքանդակ խաչարձան, երեք լուսամուտ, մի դուռն, 14 մետր 85 սանթիմ երկարութիւն 13 մետր լայնութիւն։ Հարաւային խորանի վերայ «Տէր Աստուած ողորմեայ յԱզատին և իւր ծնողացն ամեն ՈՂՋ.» Հար. խաչարձանի վերայ. «Տէր Աստուած ողորմի Աւմ Տողմիշին, Գաւիին, Խոյտանին»։

Հիւսիսային խաչարձանի վերայ. «Տէր ողորմեայ Թաշտին և իւր ծնողաց, որ զխաչս կանգնեաց 'ի Թվիս Հայոց ՉԽ.»։ Գաւթիս յատակն լի է տապանաքարերով, որք են գերեզման եպիսկոպոսաց և վարդապետաց։

Տաճարիս հարաւային որմի վերայ արտաքուստ, արեւի ժամացոյց. «'Ի Թուակ ԷՃԲ. (ՉԲ.) ես Վասակ, Սիսխաթունս էգի ետու Աստուածածնիս. Որստակէս և միաբանքս տվաք Գ. ժամ աւետեացն տաւնին. ով զիրուր տայ (խաունէ), յԱստուծոյ անիծած եղեցի»։

Վանքիս արեւելեան կողմում (արտաքուստ) ընկած է մի կտրած տափակ քար, որի վերայ գծուած է տասն և ինն կարակնաձև գծեր, որոց մէջ գրուած են Հայոց Թուեր-ա-բ. գ. դ. ե. զ. եւն. Թուերն նման են տարեգրի, վերադրի, եօթներեակի. երեւի թէ դաս տալու համար շինուած է։ Քարիս ստորոտում քանդակուած է.

«Շարադրութիւն Գրիգորոյ»։ Շատ ջանացի ընդօրինակել նոյնութեամբ, բայց որովհետև եղծուած են շատ գրեր, վասնորոյ Թողի ակամայից և հեռացայ։ Վանքիս շուրջն լի է գերեզմաններով, այս տեղ կայ և գիւղատեղի, որ կոչուում է Վանք։ Անյայտ են միաբանից խուցերի տեղերն։

Վանքիս արեւմտահիւսիս կողմում, քարընկէց հեռի կայ մի մատուռ, որ շինուած է սրբատաշ քարով, իսկ հարաւ արեւելեան կողմում, փայտաշէն ծածքով Բարձրեալ անուն այլ մատուռ։

*Անշարժ խաչարձան*. Վանքիս աղբիւրից վերև, քարահանքում վանքաշէն վարպետներն տաշած են քարահանքի ճակատը, նախ շինած մի մեծ խանչայ և այդ խանչայիս մէջ մի հիանալի խաչարձան։

*Հին-Կող*. աւերակ գիւղատեղի, կիսաւեր եկեղեցի և հին հանգստարան, որք կան Նոր-կողից վերև համանուն վտակի աջ կողմում։

*Ցւարայ եղցի*. աւերակ գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր ընդարձակ եկեղեցի, Հին-Կողից մօտ քառորդ մղոն վերև նոյն ջրաձորի ձախ ափի վրայ։

*Մխիթար վարդապետի մատուռ*. Նոր-Կողի այգիների գլխին, ջրի ձախ ափին, ծածքն փայտաշէն մատուռ, որի մէջ ամփոփուած են երկու վարդապետի և երկու քահանայի մարմիններ։

*Սուրբ Առաքել*. Գիւղիս արևմտա-հիւսիս հանդէպ սարի վրայ քարուկիր մատուռ, որից մնում են միայն չորս պատերն. որի մօտ կայ *գիւղատեղի* և *հանգստարան*։

*Ամուրիներ* (Ազափլար). մատրանս հարաւային կողմի բարձրութեան վրայ՝ խաչարձաններով գերեզմաններ, որոց մասին աւանդաբար ասում են. թէ երեսուն հայ ամուրի երիտասարդներ քաջութեամբ պատերազմում են Լեկզիների հետ և յաղթում նոցա հրոսակներին, բայց յետոյ նահատակւում են օժանդակ եկան Լեկզիներից և ամփոփվում են իւրեանց ընկած տեղերում և խաչեր կանգնում գերեզմանների վրայ և անուանում *Ամուրիներ*։

*Վարդի գիւղ*. Գիւղիս արևմտեան կողմում աւերակ գիւղատեղի, *հանգստարան* և *եկեղեցի*, որից մնում են չորս պատերն և վէմ քարն։ Հանգստարանումս կայ *սուրբ Գէորգ* անուն մի մատուռ.

*Բարսում գիւղատեղի*, հանգստարան և մի մատուռ, որի մէջի գերեզմանը անուանում են *Բարսում ճգնաւոր*։

ԺԹ. ՇԷՆ կամ ՇԻՆՈՂ գիւղ. Հիմնուած է Զորագետի աջ կողմի բարձրութեան վրայ և բաժանուած երկու թաղի։

Digitized by Google

Հիւսիսային թաղն արդէն եղած է բերդաթաղում, որի շրջապատն անմատչելի վիմահերձներ են. այս բերդիս հիւսիսային կողմով հոսում է Ձորագետն, արեւմտեան՝ Շինոզ գետակն, հարաւային աղբիւրաջրեր, արեւելեան կողմն պարսպուած է վաղուց, որ ունի և ամուր բուրգեր, այնպէս որ բերդավայրն բարձրացած է իւր չորս կողմի ձորերից։ Ամրոցս ունի երկու մուտք արեւելեան և հարաւային, առաջի մուտքով ել և մուտք են անում սայլեր և անասուններ. իսկ երկրորդով ընդանիք ջուր են բերում աղբիւրներից, քան զի նեղ, զառիվայր և դժուարատար է։ Բոլորովին հարթ է բերդիս մակերեւոյթն, որ ունի բաւական մեծութիւն և գեղեցիկ տեսարան։ Եկեղեցին սուրբ Գէորգ[1]) նորաշէն. հօյակապ, որ ունի 16 մետր 30 սանթիմ երկարութիւն, 9 մետր 82 սանթիմ լայնութիւն, քահանայ մի։ Բարեկրօն Ալեքսան քահանայի մօտ կայ մի ձեռագիր շարական, գրուած թղթի վերայ փոքրատիր։ Յիշատակարանից։

«Արդ եղև աւարտ գրչութեան.. ի շրջակայութեան Հայկազեան տումարի հազար հարիւր և չորս ամի 'ի դառն և ամբարի, վշտաշատ ժամանակի, որ երերուր և տատանեալ ազգս Հայոց 'ի ձեռն այլազգեաց և անօրինաց և յանիրաւ պահանջողաց, ի հայրապետութեան տեառն Պետրոսի Նորընծայ և սրբազան կաթուղիկոսի և առաքելական աթոռ սուրբ Գանձասար կոչի և 'ի խանութեան երկրիս մերում Մուրթուզա խանին 'ի սուրբ և 'ի գերահռչակ ուխտիս որ կոչի.. Զաքարայ անապատ... բայց եղև սկսանել շարականոցիս 'ի երկրին մերում վերին Զակամ 'ի հայրենական գեօղն իմ անուն Գապաջան և այժմ օտարացեալ և փախուցեալ կամ 'ի երկիրս, զոր 'ի վերոյ գրեցաք, 'ի գիւղս որ կոչի Խաւունիս, որ եղև աւարտ շարականոցիս, զի 'ի շէնս այս կայ պատուական Ջուխտակ

---

[1]) Բերդիս մէջ արեւմտեան կողմում կայ մի հին եկեղեցի, որ կանգուն է ամբողջութեամբ։ Արեւելեան կողմում, արտաքոյ բերդին մի քարուկիր մատուռ սուրբ Աստուածածին անուն, որի մօտ կայ և հանգստարան և քարայրներ, որք փոխուած են գոմերի։ Իսկ բերդիս հիւսիսային քերծի քարայրներից ելնում է բորակ։

եկեղեցիս[1])... Գերեցաւ ձեռամբ ամենամեղ., գրչի Աւետիս անպիտանի քահանայ կոչիս»։

Հիւսիսային թաղն կոչուում է Նորաշէն, որի բնակիչներն մօտ քառասուն տարի առաջ հատուածելով Շնողից հիմնարկուած են բերդի հարաւային հանդէպ։ Թաղս ևս ունի իւր յատուկ եկեղեցին սուրբ Սարգիս, հոյակապ կանգնեալ չորս սիւների վերայ, քահանայ երկու։ Երկու թաղերիս բնակիչներն ևս գաղթած են Արցախի մելիքների գաւառներից, հողն արքունի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն. 85—90 տարի երկար կեանք։ երկու թաղերում միասին։

Ծուխ 197, ար. 961, իգ. 826.

*Ղարախանի հանգստարան* (Նորաշէնի արևմտեան կողմում) որի մէջ կայ մինչև 900 տարուայ խաչարձան և իւր մօտ գիւղատեղի և աւերակ եկեղեցի։

*Բուրայ եղծի*. որ կայ Ղարախանի հանգստարանի հարաւային կողմում, որի մէջ տարին մի անգամ պատարագ են մատուցանում *Բուրայ քահանայի* տօնին, որի մարմինն ըստ աւանդութեան ամփոփուած է եկեղեցումս, որ նորոգուած է։

*Շինու Սարկաւագ*. մի աւերակ մատուռ, որ կայ Բուրայ եկեղեցու արևմտեան կողմում։ Աւանդաբար ասում են. «Մատրանս մէջ ամփոփուած է Շինու սարկաւագի մարմինն»։ Ուխտատեղի են երկոցունցս գերեզմաններն ևս—քահանային և սարկաւագիս—.

*Ակեղցու ղաշ. Ղարաքեօթիւկ, Թեղուտ* և *Չորագեղ* կոչուած տեղերում ևս կան աւերակ գիւղեր, եկեղեցիներ և հանգստարաններ։

*Մանատեւի վանք*. Ձորագեղից հարաւ, Շինող վտակի վերայ սրբատաշ քարով շինուած վանք, որի տանեաց վերայ դրուած է մի խոյ (քարեայ արձան) որի գլուխն երևում է արևելեան կողմում. իսկ դմակն՝ արևմտեան կողմում։ Մե-

[1]) Թերևս ընթերցողն մտահան արած չէ Նոր-Գետարակի արևելեան հանդէպ եղած ՋՈՒԽՏԱԿ ԵԿԵՂԵՑԻՆ, որի մօտ եղած աւերակն է ԽԱԻՈՒՆԻՍ գիւղն։



Digitized by Google

Նաստանս ունի միաբանից խուցեր և հանգստարան։

Ի. *Արճէշ գիւղ*. Հիմնուած է Տինողի կամ Տինու արևելեան կողմում, մի գեղեցիկ տեսարան ունեցող լանջի վերայ, բնակիչք տեղափոխուած են Տինող գիւղից. հողն արքունի. տեղական բերքերն նոյն, գովելի օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի. եկեղեցին սուրբ Յակովբ. ծածքն փայտաշէն, քահանայ մի, որի մօտ կայ մի ձեռագիր Նարեկ, բայց սկզբից և վերջից թափուած են թերթեր։

Ծուխ 61, ար. 234, իգ. 202.

*Սուրբ Յակովբ մատուռ*. այս է նախկին բնակչաց փոքր եկեղեցին, գիւղիս վերի կողմին մօտ։

*Ուղտըքաման* կոչուած ձորում, որ կայ գիւղիս արևելեան կողմում, կայ գիւղատեղի, հանգստարան և աւերակ մատուռ։

*Ծգնաւորի գերեզման*. գիւղիս հարաւային կողմում կայ մի հին եկեղեցի, որի շուրջն լի է հին ամփոփեալներով, որոց մէջ կայ ծգնաւորի գերեզման անուն մի հանգիստ, որը այնքան յարգում է ժողովուրդն, մինչև անգամ զգուշանում է երդուել նոյն գերեզմանով։

ԻԱ. Լճկաձոր շէն. Հիմնուած է Արճէշի արևելեան և Զորագետի աջ կողմում մի հիւսիսահայեաց խոր ձորի մէջ. բնակիչք նախ Խոյից գաղթած են Ուլաշլու, որ մօտ է Բորչալու կոչուած բերդին, ապա տեղափոխուած Թարգևին[1]) ապա ճալու և հուսկ յետոյ Լճկաձոր, հողն արքունի, անվնաս օդն, կլիման և ջուրն. եկեղեցին նորաշէն և կիսատ, քահանան գալիս է Արճէշից։

Տինումս կայ 12 ծուխ, որք արականով և իգականով հաշուած են Արճէշի ծխաթւոյն հետ։

ԻԲ. ԲԵՐԴԱ-ԳԻՒՂ (Ղալաչայ) Տինուած է Կողբ գիւղից փոքր ինչ վար նոյնանուն վտակի աջ ափում։ Բաժանուած է երկու թաղի—Արևելեան և Արևմտեան թաղ. բնակիչք

[1]) Զորագետի աջ կողմում են ՈՒԼԱՇԼՈՒ կամ ՂՈՒՇՉԻՇԱՐ, ԹԱՐԳԵՒԻՆ, ՃԱԼՈՒ աւերակ գիւղերն և հանգստարաններն։ Թարգևին գիւղում մնում է կանգուն ՍՈՒՐԲ ՆՇԱՆ եկեղեցին։

Digitized by Google

բնիկ, հողն արքունի և բարեբեր (առատ են այգիներն) տեղական բերքերն նոյն, ամրան ճնշիչ ձորի օդն և կլիման, երկար կեանք 60 տարի. Արևելեան թաղի եկեղեցին սուրբ Գէորգ, քարուկիր. Արևմտեան Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Տուն 160, ար. 614, իգ. 461.

*Օղարկու* (Քեաքլիկ) գիւղիս հիւսիսային կողմում մի ձուաձև, բարձր և գեղեցիկ բլուր, որի գագաթի վերայ կայ մի աւերակ մատուռ *Սուրբ Աստուածածին* անուն, որի մօտ կայ մի մոխրատանձի։

*Ջուլոյի գերեզման* (Խազնադաշ). Օղարկուի արևմտեան կողմում, մի ձորի արևելեան լանջին վերայ է աւերակ գիւղն, իսկ նոյն ձորի արևմտեան կողմում, ճանապարհի տակին է խաչարձաններով զարդարուած հանգստարան, որի մէջ և *Ջլոյի* գերեզմանն։ Մերձաբնակ մահմետականներն ջարդած են գեղեցկաքանդակ խաչարձաններից շատերն։

*Ղևասի գիւղատեղի*. Ջլոյի գերեզմանի արևմտեան կողմում, խոր ձորի ձախ լանջի վերայ է այս գիւղատեղին, հանգստարանն, աւերակ եկեղեցին և նշանաւոր ջուր ունեցող *աղբիւրն*։

ԻԳ. ԴՎԵՂ կամ ԴՈՎԵՂ գիւղ. Շինուած է Դվեղայ սուրբ Սարգիս վանքից վար, նոյն ձորի ձախ լանջի վերայ. բնակիչք տեղափոխուած են Բերդագիւղից, հողնար քունի, տեղական բերքերին նոյն, բարեխառն օդն, կլիման, երկար կեանք 85 տարի եկեղեցին սուրբ Սարգիս, նորաշէն, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Պարանից։

Տուն 30 Բերդագեղի վերայ հաշիւ արուածէ ծխաթիւ և գլխաթեւերն։

ԻԴ. ԴՈՍՏԼՈՒ ԳԵՂ. Շինուած է Դվեղի արևելեան կողմում, նոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ. հողն արքունի, լեռնային անվնաս օդն և կլիման. երկար ձեանք 75—80 տարի, եկեղեցին սուրբ Գէորգ. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Digitized by Google

Ծուխ 72, ար. 322, իգ. 301.

*Ամենափրկիչ կամ Բարձրեալ.* Մին հին, խաչխուլ, քարուկիր մատուռ, որ կայ գիւղիս արեւմտեան կողմում։

ԻԵ. ԿՈԹԻ ԳԻՒՂ. Շինուած է մի խոր և լայնագոգ ձորում Գագայ սուրբ Սարգսի արեւմտեան կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ երկու. «Այս Աստուածածին եկեղեցին յիշատակ է Կոթի Գիւղայ հասարակութեան 1850 ամի»։

Ծուխ 200, ար. 961, իգ, 826.

Գիւղումս պ. Տէր-Սահակեանցի տան կայ երկու կոնդակ ուղարկուած Եփրեմ կաթուղիկոսից[1]) որ արտայայտում է իւր շնորհակալութիւնը սուրբ Էջմիածնի համար ղրկուած գործերի մասին և օրհնում է ղրկողները։

Գիւղիս արեւմտեան կողմում, գիւղիցս սուրբ Սարգիս վանքն տանող ճանապարհի վերայ կայ մարդաչափ բարձրութեամբ իմ արձան, որ խիստ հին է։ Մարդարձանս, որ ներկայացնում է մի երիտասարդի հայկական տիպը, կերպարանքը, զգեստը, գուցէ դարերով ծածկուած է լինում բարձրակոյտ հողերի տակ։ Ումն երիտասարդ քանիցս երազում տեսնելով, որ ումն անձանօթ անձն հրամայում է քանդել և հորելով երեւան հանել մարդարձանը։ Ահա այսպէս գտնուած է։ Չեմ կարող վճռաբար ասել թէ որ դարու գործ է այս. բայց կարող եմ վստահութեամբ ասել թէ խիստ հին է ըստ երեւութին։

*Գաւառիս բերդերն*

Ա. Շար-խաչ Գիւղի հիւսիս արեւմտեան կողմում, մեծ քերծից վար կայ մի հին և փոքր բերդ, որի արեւելեան և

---

[1]) Սոյն երջանկայիշատակ կաթուղիկոսիս օծման հանդիսի առթիւ Կարբեցի Յովսէփ վարդապետ Մարութեանցն 1824 Նեմբ. 9-ին խօսած է մի ՃԱՌ, որով յայտնում է Հայաստանեայց եկեղեցու ուրախութիւնը։ Բնագիր ճառը յանձնեցի Մայր Աթոռոյս Ս. Էջմիածնիս Մատենադարանին։

հարաւային կողմերն վիմահերձ ժայռեր են, իսկ մնացեալ կողմերն պարսպուած են քարուկիր պատով։ Այժմ շատ տեղեր քայքայուած են պարսպից։

Բ. ՄԱՆԹԱՇ ՂԱԼԱ. «Ղըզղալայի հանդէպ ճանապարհի Աղստև գետի միւս (ձախ) կողմի լերանց շղթայումը գտանվում է Մանթաշղալան, մի սուր սուր ժայռի գագաթին։ Թէպէտ նրան շատ մօտենալը հեշտ է և չէ ներկայացնում առանձին դժուարութիւն, բայց նոյնիսկ գագաթին մօտ նոյնպէս դժուար է բարձրանալ։ Մանթաշ ղալայի շինութիւնների թիւն աւելի փոքր է և աւելի աւերակ, այնպէս որ այն տեղ ոչինչ շինութիւն չկայ ամբողջ մնացած, ինչպէս Ղըզղալայում։ Աւերակների միւս մանրամասնութիւնները ներկայացնում են միևնոյն դրութիւնը՝ ինչ որ Ղըզղալայինը։

Այդ երկու ղալաների Աղստափայ գետի ափին․․ գտնվում է մի փոքրիկ աւերակ քարուկրից շինած, որ, ինչպէս պատմում են տեղացիք, բաղնիք է եղել։ Այն կղզին… այժմ և կոչվում «Համամի ճալա» այսինքն բաղնիքի կղզի[1])։

Ղզղալայի, Մանթաշղալայի և աւերակ բաղնիքի մասին ժողովրդեան մէջ մնացել է նոցա մէջ ընդհանրացած աւանդութիւն։ Ասում են․․ Եղել է մի հերոսուհի գեղեցիկ աղջիկ, որ ունեցել է իր զօրքը։ Շատ իշխաններ գրաւվելով նորա գեղեցկութիւնց՝ ցանկացել են ամուսնանալ նորա վերայ՝ բայց նա մերժել է բոլորի առաջարկութիւնը, կամենալով կոյս մնալ։ Երբ ոչինչ միջոցով հնար չէ եղել մամօքել նորան, այն ժամանակ այդ բախտախնդիր իշխանները կամեցել են ուժով տիրանալ նորան։ Իշխանուհի հերոսը իւր կուսութիւնը պահպանելու համար ժողովում է իւր ձեռքի տակի եղած մարդկանց և զօրք կազմելով․․ շինելով Ղզղալա ամրոցը, ապահովութիւն գտանում այդ տեղ։ Նորա վերայ սիրահարուած իշխաններից աւելի զօրեղը և համարձակը․․ չէ կամենում ձեռնաթող անել իւր սիրոյ առարկան։ Աղջկայ քաջագործութիւններն աւելի և աւելի վառում են Մանթաշի

[1]) ճԱԼԱ նշանակում է հովիտ և ոչ թէ կղզի.

նում են Ղըզ-Ղալա։ Մի դիտարան է այս։

*Ջոխտակ եկեղեցի*. Մօտ մղոնաչափ վերև կայ աւերակ հայկական գիւղ. *հանգստարան* և երկու մօտ առ մօտ կիսաւեր *եկեղեցիներ*։ Ահա այս է նոյն անունը կրող աւերակն, որ այժմ Թրքաբնակ է։

Աւերակ *Գիւղատեղի*, *հանգստարան* և *եկեղեցի* կայ Նոր-Ոսկեպարի հիւսիսային հանդէպ վտակի ձախ կողմում։

ԺԴ. ԲԱՂԱՆԻՍ ԳԻՒՂ. Հիմնուած է այն լեռնաշղթայի հարաւահայեաց լանջի վերայ, որ սկսուած է արևմտեան լեռներից, անցած Ճչեվանք, Բաղանիս և Ղօշղօթան գիւղերի հիւսիսային կողմով դէպի Գաւարզին։ Բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, երկար կեանք 85 տարի, եկեղեցին փայտաշէն և վնասուած, քահանան գալիս է Ղօշղօթան գիւղից, որ խիստ մօտ է։

Ծուխ 47, ար. 239, իգ. 183.

ԺԵ. ՂՕՇՂՕԹԱՆ ԳԻՒՂ. Հիմնուած է Բաղանիսի հիւսիս-արևելեան կողմում. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն, պատուական օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս, ծածքն փայտաշէն, քահանայ երկու։

Ծուխ 89, ար. 575, իգ. 450.

ԺԶ. ՃՋԵՎԱՆՔ ՏԷՆ. Բաղանիսից վերև մի անտառապատ ձորի ձախ լանջի վերայ. բնակիչք տեղափոխուած են այստեղ Ջալու և Հաղբատ գիւղերից. հողն արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն, եկեղեցին նարաշէն սուրբ Աստուածածին, քահանան գալիս է Պարանայ գիւղից. Ծուխ 17, (արականք և իգականք հաշուած են Ղօշղօթանի վերայ)։

*Դվեղայ սուրբ Սարգիս վանք.*

Հիմնարկուած է մի անտառապատ և խոր ձորի աջ լանջի հարթակի վերայ, որի հիւսիսային կողմն վիմահերձ

Digitized by Google

տպառած է։ Մենաստանս շինուած է ամբողջապէս սրբատաշ քարով, բայց եկեղեցու ձեւով և ունի երկու փոքր, մի աւագ խորան, մի առանձին խորան ևս Հիւսիսային որմի մէջ, մի դուռն Հարաւային կողմից, մի քանի լուսամուտ, մի զանգատուն, որ բազմած է աւագ խորանի գլխին, 11 մետր 80 սանթիմ երկարութիւն, 7 մետր 80 սանթիմ լայնութիւն։ Հնաշէն են աւագ խորանն և Հիւսիսային երկու խորաններն, իսկ նորոգուած են մնացեալ բոլոր մասերն։

Հարաւային կամարի վերայ «Շինեցաւ յատակս սուրբ սեղանոյս արդեամբ Խաչատուր և Դարչօ Հախվերտեանցի»։ Դրան ճակատին։

«Ողորմութեամբն Աստուծոյ շինեցաւ եկեղեցիս յանուն սրբոյն Սարգսի տրովք բարեպաշտից, ջանիւք և վերակացութեամբ տփխիսեցի Եսայեան Նուրենց, զոր յիշատակէ Տէր յաւուրն վերջին։ Հիմնարկեցաւ 'ի 1845 և աւարտեցաւ 1849 ամի Տեառն»։

Վանքիս Հիւսիսային կողմում կայ մի մատուռ սուրբ Կիւրակէ անուն։ Մատրանս Հիւսիսային խոր ձորում ժայռից բղխում է մի պատուական ջուր, որը անուանում են Օրհնած աղբիւր։

Ոմանք Թիփլիզեցիք շինած են վանքիս մօտ մի քանի սենեակներ, ուխտի օրերն են ամեն զատկին. մեծ բազմութիւն է լինում այստեղ ուխտաւորաց։

ԺԻ. ՆՈՐ-ՊԱՐԱՆ կամ ԱՊԱՐԱՆ գիւղ. Շինուած է սուրբ Սարգսի արեւմտեան Հիւսիսային կողմում մի ջրաձորի արեւելահայեաց լանջի վերայ. ամբողջ ձորն զարդարուած է այգիներով, բնակիչք տեղափոխուած են այստեղ Ապարանից, վասնորոյ և պահած իւրեանց նախկին բնակավայրի անունը-Ապարան—, որը կրճատելով կոչած են Պարան։ Հողն արքունի, լեռնային, սակաւ, բայց արդիւնաւէտ, տեղական բերքերն նոյն, օդն, կլիման և ջուրն գովելի, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Սարգիս. ծախքն փայտաշէն, քահանայ երեք։

Digitized by Google

Ծուխ 95, ար. 573, իգ. 441.

Աւերակ գիւղ, հանգստարան և եկեղեցի կայ Հին-Պարանում, որ գիւղից վերև է և Մկնածորում։ Իսկ Պղնձահանք, որ կայ Միխանա կոչուած տեղում, աւելի վերև է Հին-Պարանայ աւերակից։

ԺԸ. ՆՈՐ-ԿՈՂԲ ԳԻՒՂ. Շինուած է Պարանայի արևմտեան կողմում (խիստ մօտ) մի ջրաձորի արևմտահայեաց լանջի վերայ, բնակիչք տեղափոխուած են Արարատեան Նահանգի Կողբ գիւղից, վասն որոյ պահած են միևնոյն գիւղանունը, բարբառը և սովորութիւնները. Հողն արքունի, տեղական բերքերն նոյն, գովելի օդն և կլիման, բայց ոչ ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, հոյակապ, կառուցեալ վեց միապաղաղ սիւների վերայ, երկարութիւն 22 մետր 35 սանթիմ, լայնութիւն 13 մետ 5 սանթիմ, քահանայ երկու։ Եկեղեցումս կայ մի գրչագիր աւետարան, որ պակասաւոր, անպատկեր և թղթեայ է, որը գրած է Սարկաւագ Նասիպն Դիզակ գաւառին Տաղ գիւղումն Հայոց ՌԺԲ. թուին։

Ծուխ 160, ար. 979, իգ. 814.

Միգասեան ուսումնարան, որ ունի գեղեցիկ շինութիւն, յարմար դասարաններ և սոյն արձանագրութիւնը. «Կանգնեցաւ ուսումնարանական շինութիւնս 'ի սեպհական տեղոջն սեպհական արդեամբ կամ ծախիւք Կողպա բնակիչք պ. Բէկլարի և որդոց նորա Սարգսի և Մարտիրոսի Տէր-Բարսեղեանց ի յիշաատակ նոցա և որդոց նոցա ի Թուականին Փրկչին 1892-ին և Հայոց ՌՅԽԱ.»։

Աշակերտք 30. համարեայ թէ ամենքն ևս ձրիավարժ են. տարեկան վարժապետին 250 րուբլի։

*Սուրբ Աստուածածին մատուռ.* Գիւղիս հին հանգստարանում սրբատաշ մոխրագոյն քարով շինուած է կիսաւեր մատուռս, ուր վերայ. «Ես Ասլան և Սար... գերկն խաչին գ... յեկեղեցիս և տվաք Ե.. սուրբ Աստուածածին Բ. աւր ժամ.. տարումն կարգեցաք լոյս.. Աղիլին և Արևտեղին. ով

Digitized by Google

այլ հակառակիսցէ, Կայենին և Յուդային մասն ժառանգեսցէ»։

Մատրանս մօտ (արևելեան կողմում) մի խաչարձանի վերայ.

«Ի Թւիս ՈԼԳ. ես Սարգիս քահանայ կանգնեցի զխաչս ի յիշատակ ինձ և որդոց իմոց Եպիփանայ, Եփրեմի և եղբարց Ունծ Ալէքսիոսի, Իգնատիոսի և հաւրեղբաւր իմոյ Ոհանին, արդ որք երկրպագէք, յիշեսջիք զմեզ առ Քրիստոս»։ Ծարայարուած է. «ԶԱքէլ և տէր Աւագ կազմող խաչիս յիշեցէք ի Տէր»։

*Սուրբ Նշան ուխտատեղի.* Գտնուում է գիւղիս Հաքաւային կողմի բարձրագոյն սարի արևմտահայեաց սեռի վերայ, փայտաշէն է, որի մէջ մի կիսատ խաչքարի վերայ. «Ես Բենիամին վարդապետ Հայոց արարի յիշատակ ինձ սուրբ զբեմս, որ է հիմն հաւատոյ և պատուանդան սուրբ Նշանիս տեղի աղաւթից երթևեկաց և յոյս, որ գնան արդարութեամբ յերկրի»։ Այլ քարի վերայ. «Յանուն սրբոյն Գիսայ (գուցէ Սարգիսայ) ես հայր Գրիգոր կանգնեցի նշանս Քրիստոսի աւգնական մեր ի Տէր և որք Տեառն են»։

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՎԱՆՔ (65)

Սուրբ Նշանից փոքր ինչ վերև մի զմայլելի սարահարթի վերայ կառուցեալ է վանքս համակ սրբատաշ, սպիտակ, տորոնագոյն և երկնագոյն քարերով մի կամարի վերայ, որ ունի չորս փոքր և մի աւագ խորան, երկու խորհրդարան, չորս լուսամուտ, մի դուռն, 12 մետր երկարութիւն և 8 մետր լայնութիւն։ Հիանալի քանդակներով զարդարուած են բեմի և խորհրդարանների քարերն։

*Դրան գլխի քարի վերայ.*

«Ես Ոըստակէս և այլ միաբանքս հաստատեցաք 'ի տարին Բ. ժամ. Ս. Աբեսալայ, Ս. Ազըզին 'ի տանի քառանից, որ խափանէ, մեր մեղացս տէր է առաջի Աստուծոյ»։

Digitized by Google

Տաճարիս արեւմտեան կողմին կից է քառակամար և գեղեցիկ գաւիթ, որ կանգնած է երկու միապաղաղ սիւների և վեց կիսասիւների վերայ։ Գաւիթս ունի երկու փոքր խորան, երկու գեղեցկաքանդակ խաչարձան, երեք լուսամուտ, մի դուռն, 14 մետր 85 սանթիմ երկարութիւն 13 մետր լայնութիւն։ Հարաւային խորանի վերայ «Տէր Աստուած ողորմեայ յԱզատին և իւր ծնողացն ամեն ՈՂՋ.» Հար. խաչարձանի վերայ. «Տէր Աստուած ողորմի Ամ Տողմիշին, Դաւիթին, Խոյտանին»։

Հիւսիսային խաչարձանի վերայ. «Տէր ողորմեայ Թաշտին և իւր ծնողաց, որ զխաչս կանգնեաց 'ի թվիս Հայոց ՉԽ.»։ Գաւթիս յատակն լի է տապանաքարերով, որք են գերեզման եպիսկոպոսաց և վարդապետաց։

Տաճարիս հարաւային որմի վերայ արտաքուստ, արեւի ժամացոյց. «'Ի թուակ ՆՃԲ. (ՉԲ.) ես Վասակ, Սիսխաթունս էգի ետու Աստուածածնիս. Որստակէս և միաբանքս տվաք Գ. ժամ աւետեացն տաւնին. ով զիրուր տայ (խառնէ), յԱստուծոյ անիծած եղեցի»։

Վանքիս արեւելեան կողմում (արտաքուստ) ընկած է մի կոտրած տափակ քար, որի վերայ գծուած է տասն և ինն կարակնաձև գծեր, որոց մէջ գրուած են Հայոց թուեր-ա. բ. գ. դ. ե. զ. ևն. թուերն նման են տարեգրի, վերադրի, եօթներեակի. երևի թէ դաս տալու համար շինուած է։ Քարիս ստորոտում քանդակուած է.

«Նարադրութիւն Գրիգորոյ»։ Շատ ջանացի ընդօրինակել նոյնութեամբ, բայց որովհետև եղծուած են շատ գրեր, վասնորոյ թողի ակամայից և հեռացայ։ Վանքիս շուրջն լի է գերեզմաններով, այս տեղ կայ և գիւղատեղի, որ կոչւում է Վանք։ Անյայտ են միաբանից խուցերի տեղերն։

Վանքիս արեւմտահիւսիս կողմում, քարընկէց հեռի կայ մի մատուռ, որ շինուած է սրբատաշ քարով, իսկ հարաւ արեւելեան կողմում, փայտաշէն ծածքով Բարձրեալ անուն այլ մատուռ։

Digitized by Google

*Անշարժ խաչարձան*. Վանքիս աղբիւրից վերև, քարահանքում վանքաշէն վարպետներն տաշած են քարահանքի ճակատը, նախ շինած մի մեծ խոնչայ և ապա խոնչայիս մէջ մի հիանալի խաչարձան։

*Հին-Կողբ*. աւերակ գիւղատեղի, կիսաւեր եկեղեցի և հին հանգստարան, որք կան Նոր-կողբից վերև համանուն վտակի աջ կողմում։

*Ցւարայ եղցի*. աւերակ գիւղատեղի, հանգստարան և կիսաւեր ընդարձակ եկեղեցի, Հին-Կողբից մօտ քառորդ մղոն վերև նոյն ջրաձորի ձախ ափի վերայ։

*Մխիթար վարդապետի մատուռ*. Նոր-Կողբի այգիների գլխին, ջրի ձախ ափին, ծածքն փայտաշէն մատուռ, որի մէջ ամփոփուած են երկու վարդապետի և երկու քահանայի մարմիններ։

*Սուրբ Առաքել*. Գիւղիս արևմտա-հիւսիս հանդէպ սարի վերայ քարուկիր մատուռ, որից մնում են միայն չորս պատերն. որի մօտ կայ *գիւղատեղի* և *հանգստարան*։

*Ամուրիներ* (Ազափլար). մատրանս հարաւային կողմի քարձրութեան վերայ՝ խաչարձաններով գերեզմաններ, որոց մասին աւանդաբար ասում են. թէ երեսուն հայ ամուրի երիտասարդներ քաջութեամբ պատերազմում են Լեկզիների հետ և յաղթում նոցա հրոսակներին, բայց յետոյ նահատակուում են օժանդակ եկան Լեկզիներից և ամփոփվում են իւրեանց ընկած տեղերում և խաչեր կանգնում գերեզմանների վերայ և անուանում *Ամուրիներ*։

*Վարդի գիւղ*. Գիւղիս արևմտեան կողմում աւերակ գիւղատեղի, *հանգստարան* և *եկեղեցի*, որից մնում են չորս պատերն և վէմ քարն։ Հանգստարանումս կայ *սուրբ Գէորգ* անուն մի մատուռ.

*Բարսում գիւղատեղի*, հանգստարան և մի մատուռ, որի միջի գերեզմանը անուանում են *Բարսում ճգնաւոր*:

**ԺԹ. ՇԷՆ կամ ՇԻՆՍՈՂ գիւղ**. Հիմնուած է Զորագետի աջ կողմի բարձրութեան վերայ և բաժանուած երկու թաղի։

Digitized by Google

Հիւսիսային թաղն արդէն եղած է բերդաթաղում, որի շրջապատն անմատչելի վիմահերձներ են. այս բերդիս հիւսիսային կողմով հոսում է Ձորագետն, արեւմտեան՝ Ծինող գետակն, հարաւային աղբիւրաջրեր, արեւելեան կողմն պարսպուած է վաղուց, որ ունի և ամուր բուրգեր, այնպէս որ բերդավայրն բարձրացած է իւր չորս կողմի ձորերից։ Ամրոցս ունի երկու մուտք արեւելեան և հարաւային, առաջի մուտքով ել և մուտք են անում սայլեր և անասուններ. իսկ երկրորդով ընդանիք ջուր են բերում աղբիւրներից, քան զի նեղ, զառիվայր և դժուարատար է։ Բոլորովին հարթ է բերդիս մակերևոյթն, որ ունի բաւական մեծութիւն և գեղեցիկ տեսարան։ Եկեղեցին սուրբ Գէորգ[1]) Նորաշէն. հոյակապ, որ ունի 16 մետր 30 սանթիմ երկարութիւն, 9 մետր 82 սանթիմ լայնութիւն, քահանայ մի։ Բարեկրօն Ալեքսան քահանայի մօտ կայ մի ձեռագիր շարական, գրուած թղթի վերայ փոքրատիր։ Յիշատակարանից։

«Արդ եղև աւարտ գրչութեան.. ի շրջակայութեան Հայկազեան տումարի հազար հարիւր և չորս ամի 'ի դառն և ամբարի, վշտաշատ ժամանակի, որ երերուր և տատանեալ ազգս Հայոց 'ի ձեռն այլազգեաց և անօրինաց և յանիրաւ պահանջողաց, ի հայրապետութեան տեառն Պետրոսի Նորընծայ և սրբազան կաթուղիկոսի և առաքելական աթոռ սորին Գանձասար կոչի և 'ի խանութեան երկրիս մերում Մուրթուզա խանին 'ի սուրբ և 'ի պերահռչակ ուխտիս որ կոչի.. Զարեքայ անապատ... բայց եղև սկսանել շարականոցիս 'ի երկրին մերում վերին Զակամ 'ի հայրենական գեօղն իմ անուն Պապաջան և այժմ օտարացեալ և փախուցեալ կամ 'ի երկիրս, զոր 'ի վերոյ գրեցաք, 'ի գիւղս որ կոչի Խաւունիս, որ եղև աւարտ շարականոցիս, զի 'ի շէնս այս կայ պատուական Զուխտակ

---

[1]) Բերդիս մէջ արևմտեան կողմում կայ մի հին եկեղեցի, որ կանգուն է ամբողջութեամբ։ Արևելեան կողմում, արտաքոյ բերդին մի քարուկիր մատուռ սուրբ Աստուածածին անուն, որի մօտ կայ և հանգստարան և քարայրներ, որք փոխուած են գոմերի։ Իսկ բերդիս հիւսիսային քերծի քարայրներից ելնում է բորակ։

եկեղեցիս[1])... Գերեցաւ ձեռամբ ամենամեղ., գրչի Աւետիս անպիտանի քահանայ կոչի»։

Հարաւային թաղն կոչւում է Նորաշէն, որի բնակիչներն մօտ քառասուն տարի առաջ հատուածելով Շնողից հիմնարկուած են բերդի հարաւային հանդէպ։ Թաղս և ունի իւր յատուկ եկեղեցին սուրբ Սարգիս, հօյակապ կանգնեալ չորս սիւների վերայ, քահանայ երկու։ Երկու թաղերիս բնակիչներն ևս գաղթած են Արցախի մէլիքների գաւառներից, հողն արքունի և նուազ արդիւնաբեր, տեղական բերքերն նոյն, բարեխառն օդն և կլիման, պատուական ջուրն. 85—90 տարի երկար կեանք։ երկու թաղերում միասին։

Ծուխ 197, ար. 961, իգ. 826.

*Ղարախանի հանգստարան* (Նորաշէնի արևմտեան կողմում) որի մէջ կայ մինչև 900 տարուայ խաչարձան և իւր մօտ գիւղատեղի և աւերակ եկեղեցի։

*Բուրայ եղծի*. որ կայ Ղարախանի հանգստարանի հարաւային կողմում, որի մէջ տարին մի անգամ պատարագ են մատուցանում *Բուրայ քահանայի* տօնին, որի մարմինն ըստ աւանդութեան ամփոփուած է եկեղեցումս, որ նորոգուած է։

*Շինու Սարկաւագ*. մի աւերակ մատուռ, որ կայ Բուրայ եկեղեցու արևմտեան կողմում։ Աւանդաբար ասում են. «Մատրանս մէջ ամփոփուած է Շինու սարկաւագի մարմինն»։ Ուխտատեղի են երկոցունցս գերեզմաններն ևս—քահանային և սարկաւագիս—.

*Ակեղցու ղաշ*. Ղարաբեօթիկ, Թեղուտ և Ձորագեղ կոչուած տեղերում ևս կան աւերակ գիւղեր, եկեղեցիներ և հանգստարաններ։

*Մանստեւի վանք*. Ձորագեղից հարաւ, Շինող վտակի վերայ սրբատաշ քարով շինուած վանք, որի տանեաց վերայ դրուած է մի խոյ (քարեայ արձան) որի գլուխն երևում է արևելեան կողմում. իսկ դմակն՝ արևմտեան կողմում։ Մե-

---

[1]) Թերևս ընթերցողն մտահան արած չէ Նոր-Գետաբակի արևելեան հանդէպ եղած ՋՈՒԽՏԱԿ ԵԿԵՂԵՑԻՆ, որի մօտ եղած աւերակն է ԽԱՒՈՒՆԻՍ գիւղն։



Digitized by Google

նաստանս ունի միաբանից խուցեր և հանգստարան։

Ի. *Արճէշ գիւղ.* Հիմնուած է Տրնողի կամ Տրնու արևել-եան կողմում, մի գեղեցիկ տեսարան ունեցող լանջի վերայ, բնակիչք տեղափոխուած են Տրնող գիւղից. հողն արքունի. տեղական բերքերն նոյն, գովելի օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի. եկեղեցին սուրբ Յակովբ. ծածքն փայտաշէն, քահանայ մի, որի մօտ կայ մի ձեռագիր Նարեկ, բայց սկզբից և վերջից թափուած են թերթեր։

Ծուխ 61, ար. 234, իգ. 202.

*Սուրբ Յակովբ մատուռ.* այս է նախկին բնակչաց փոքր եկեղեցին, գիւղիս վերի կողմին մօտ։

*Ուղտըքաման* կոչուած ձորում, որ կայ գիւղիս արևե-լեան կողմում, կայ գիւղատեղի, հանգստարան և աւերակ մատուռ։

*Ծգնաւորի գերեզման.* գիւղիս հարաւային կողմում կայ մի հին եկեղեցի, որի շուրջն լի է հին ամփոփեալնե-րով, որոց մէջ կայ Ճգնաւորի գերեզման անուն մի հան-գիստ, որը այնքան յարգում է ժողովուրդն, մինչև անգամ զգուշանում է երդուել նոյն գերեզմանով։

ԻԱ. Լճկաձոր շէն. Հիմնուած է Արճէշի արևելեան և Զորագետի աջ կողմում մի հիւսիսահայեաց խոր ձորի մէջ. բնակիչք նախ Խոյից գաղթած են Ուլաշլու, որ մօտ է Բոր-չալու կոչուած բերդին, ապա տեղափոխուած Թարգևին[1]) ապա ճալու և հուսկ յետոյ Լճկաձոր, հողն արքունի, ան-վնաս օդն, կլիման և ջուրն. եկեղեցին նորաշէն և կիսատ, քահանան գալիս է Արճէշից։

Տրնումս կայ 12 ծուխ, որք արականով և իգականով հաշուած են Արճէշի ծխաթւոյն հետ։

ԻԲ. ԲԵՐԴԱ-ԳԻՒՂ (Ղալաչայ) Տրնուած է Կողբ գիւղից փոքր ինչ վար նոյնանուն վտակի աջափում։ Բաժանուած է երկու թաղի—Արևելեան և Արևմտեան թաղ. բնակիչք

[1]) Զորագետի աջ կողմում են ՈՒԼԱՇԼՈՒ կամ ՂՈՒՇՉԻՇԱՐ, ԹԱՐԳԵԻՒՆ, ՃԱԼՈՒ աւերակ գիւղերն և հանգստարաններն։ Թարգևին գիւղում մնում է կանգուն ՍՈՒՐԲ ՆՇԱՆ եկեղեցին։

Digitized by Google

բնիկ, հողն արքունի և բարեբեր (առատ են այգիներն) տեղական բերքերն նոյն, ամրան ճնշիչ ձորի օդն և կլիման, երկար կեանք 60 տարի. Արևելեան թաղի եկեղեցին սուրբ Գէորգ, քարուկիր. Արևմտեան Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ մի։

Ծուխ 160, ար. 614, իգ. 461.

*Օղարկու* (Քեաքլիկ) գիւղիս հիւսիսային կողմում մի ձուաձև, բարձր և գեղեցիկ բլուր, որի գագաթի վերայ կայ մի աւերակ մատուռ *Սուրբ Աստուածածին* անուն, որի մօտ կայ մի մոխրատանձի։

*Ջուլոյի գերեզման* (Խազնադաշ). Օղարկուի արևմտեան կողմում, մի ձորի արևելեան լանջին վերայ է աւերակ գիւղն, իսկ նոյն ձորի արևմտեան կողմում, ճանապարհի տակին է խաչարձաններով զարդարուած հանգստարան, որի մէջ և *Ջլոյի* գերեզմանն։ Մերձաբնակ մահմետականներն ջարդած են գեղեցկաքանդակ խաչարձաններից շատերն։

*Ղեւասի գիւղատեղի*. Ջլոյի գերեզմանի արևմտեան կողմում, խոր ձորի ձախ լանջի վերայ է այս գիւղատեղին, հանգստարանն, աւերակ եկեղեցին և նշանաւոր ջուր ունեցող *աղբիւրն*։

ԻԳ. ԴՎԵՂ կամ ԴՈՎԵՂ գիւղ. Շինուած է Դվեղայ սուրբ Սարգիս վանքից վար, նոյն ձորի ձախ լանջի վերայ. բնակիչք տեղափոխուած են Բերդագիւղից, հողնար քունի, տեղական բերքերին նոյն, բարեխառն օդն, կլիման, երկար կեանք 85 տարի եկեղեցին սուրբ Սարգիս, նորաշէն, ծածքն փայտաշէն, քահանան գալիս է Պարանից։

Ծուխ 30 Բերդագեղի վերայ հաշիւ արուածէ ծխաթիւ և գլխաթիւերն։

ԻԴ. ԴՈՍՏԼՈՒ ԳԵՂ. Շինուած է Դվեղի արևելեան կողմում, նոյն սարի հիւսիսահայեաց լանջի վերայ. բնակիչք բնիկ. հողն արքունի, լեռնային անվնաս օդն և կլիման. երկար ձեանք 75—80 տարի, եկեղեցին սուրբ Գէորգ. ծածքն փայտաշէն, քահանայ մի։

Digitized by Google

Ծուխ 72, ար. 322, իգ. 301.

*Ամենափրկիչ կամ Բարձրեալ.* Մին հին, խարխուլ, քարուկիր մատուռ, որ կայ գիւղիս արեւմտեան կողմում։

ԻԵ. ԿՈԹԻ ԳԻՒՂ. Շինուած է մի խոր և լայնագոգ ձորում Գագայ սուրբ Սարգսի արեւմտեան կողմում. բնակիչք բնիկ. հողն արքունի, տեղական բերքերն նոյն. պատուական օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ երկու. «Այս Աստուածածին եկեղեցին յիշատակ է Կոթի Գիւղայ հասարակութեան 1850 ամի»։

Ծուխ 200, ար. 961, իգ, 826.

Գիւղումս պ. Տէր-Սահակեանցի տան կայ երկու կոնդակ ուղարկուած Եփրեմ կաթուղիկոսից[1]) որ արտայայտում է իւր շնորհակալութիւնը սուրբ Էջմիածնի համար ղրկուած գորգերի մասին և օրհնում է ղրկողները։

Գիւղիս արեւմտեան կողմում, գիւղիցս սուրբ Սարգիս վանքն տանող ճանապարհի վերայ կայ մարդաչափ բարձրութեամբ իմ արձան, որ խիստ հին է։ Մարդարձանս, որ ներկայացնում է մի երիտասարդի հայկական տիպը, կերպարանքը, զգեստը, գուցէ դարերով ծածկուած է լինում քարձրակոյտ հողերի տակ։ Ոմն երիտասարդ քանիցս երազում տեսնելով, որ ոմն անձանօթ անձն հրամայում է քանդել և հորելով երեւան հանել մարդարձանը։ Ահա այսպէս գտնուած է։ Չեմ կարող վճռաբար ասել թէ որ դարու գործ է այս. բայց կարող եմ վստահութեամբ ասել թէ խիստ հին է ըստ երեւութին։

*Գաւառիս բերդերն*

Ա. Տար-խաչ Գիւղի հիւսիս արեւմտեան կողմում, մեծ քերծից վար կայ մի հին և փոքր բերդ, որի արեւելեան և

[1]) Սոյն երջանկայիշատակ կաթուղիկոսիս օծման հանդիսի առթիւ Կարբեցի Յովսէփ վարդապետ Մարուքեանցն 1824 Նեմբ. 9-ին խօսած է մի ՃԱՌ, որով յայտնում է Հայաստանեայց եկեղեցու ուրախութիւնը։ Բնագիր ճառը յանձնեցի Մայր Աթոռոյս Ս. Էջմիածնիս Մատենադարանին։

Digitized by Google

հարաւային կողմերն վիմահերձ ժայռեր են, իսկ մնացեալ կողմերն պարսպուած են քարուկիր պատով։ Այժմ շատ տեղեր քայքայուած են պարսպեցն։

Բ. ՄԱՆԹԱՇ ՂԱԼԱ. «Ղըզղալայի հանդէպ ճանապարհի Արփա գետի միւս (ձախ) կողմի լերանց շղթայումը գտանվում է Մանթաշղալան, մի սուր սուր ժայռի գագաթին։ Թէպէտ նրան շատ մօտենալը հեշտ է և չէ ներկայացնում առանձին դժուարութիւն, բայց նոյնիսկ գագաթին մօտ նոյնպէս դժուար է բարձրանալ։ Մանթաշ ղալայի շինութիւնների թիւն աւելի փոքր է և աւելի աւերակ, այնպէս որ այն տեղ ոչինչ շինութիւն չկայ ամբողջ մնացած, ինչպէս Ղըզղալայում։ Աւերակների միւս մանրամասնութիւնները ներկայացնում են միևնոյն դրութիւնը՝ ինչ որ Ղըզղալայինը։

Այդ երկու ղալաների Արփաափայ գետի ափին.. գտնվում է մի փոքրիկ աւերակ քարուկրից շինած, որ, ինչպէս պատմում են տեղացիք, բաղնիք է եղել։ Այն կղզին... այժմ և կոչվում «Համամի ճալա» այսինքն բաղնիքի կղզի[1])։

Ղզղալայի, Մանթաշղալայի և աւերակ բաղնիքի մասին ժողովրդեան մէջ մնացել է նոցա մէջ ընդհանրացած աւանդութիւն։ Ասում են.. Եղել է մի հերոսուհի գեղեցիկ աղջիկ, որ ունեցել է իր զօրքը։ Շատ իշխաններ գրաւվելով նորա գեղեցկութիւնց՝ ցանկացել են ամուսնանալ նորա վերայ՝ բայց նա մերժել է բոլորի առաջարկութիւնը, կամենալով կոյս մնալ։ Երբ ոչինչ միջոցով հնար չէ եղել մամոքել նորան, այն ժամանակ այդ բախտախնդիր իշխանները կամեցել են ուժով տիրանալ նորան։ Իշխանուհի հերոսը իւր կուսութիւնը պահպանելու համար ժողովում է իւր ձեռքի տակի եղած մարդկանց և զօրք կազմելով.. շինելով Ղզղալա ամրոցը, ապահովութիւն գտանում այդ տեղ։ Նորա վերայ սիրահարուած իշխաններից աւելի զօրեղը և համարձակը.. չէ կամենում ձեռնաթող անել իւր սիրոյ առարկան։ Աղջկայ քաջագործութիւններն աւելի և աւելի վառում են Մանթաշի

---

[1]) ՃԱԼԱ նշանակում է հովիտ և ոչ թէ կղզի.

Digitized by Google

սրտումը սիրոյ կայծը և նա Ղզղալի հանդէպ շինում է Մանթաշ ղալէն և այնտեղից երբեմն երբեմն յարձակմունքներ է անում Ղզղալի վերայ, 'ի զուր է անցնում նորա ջանքը, միշտ յաղթող է հանդիսանում աղջիկը։

Վերջապէս միանգամ աղջիկը իւր զօրքը տալիս է իւր զօրավարի ձեռքը և ուղարկում է Մանթաշ ղալի վերայ։ Այդ կռւում, ու ինքն աղջիկը անձամբ չէ զօրավարում, յաղթւում է նորա զօրքը և Մանթաշը դորանից յետոյ հեշտութեամբ կարողանում է ձեռք ձգել աղջկան։ Դորանից յետոյ կայանում է նոցա մէջ հետևեալ դաշը-որ նոցանից ամեն մինը կենայ առանձին իւր ղալայում, միայն 'ի նշան բարեկամութեան շինում են գետի ափին վերոյիշեալ բաղանիքը, որ այդ լինի նոցա միմեանց այցելութեան տեղը։ Դոցանից յետոյ, ասում են, նոքա երկու ժայռերի գագաթից նշաններով խօսում էին միմեանց հետ և արտայայտում իրանց մտքերը և սէրը[1])։

Գ. ՄԹՆԱՑՈՐ (ղարանլուխ դէրէ)։ խորագոյն անտառապատ, հորիզոնն նեղ, սոսկալի ձոր, որի մէջ կան քարայրներ և պատսպարուելու տեղեր և պատուական ջուր։ Այստեղ պատսպարուած են Լեկզիների արշաւանաց ժամանակ շրջակայ գիւղերի բնակիչներն, ինչպէս պատմում են ծերունիք։

Դ. ԿԱՑԵՆԻ ԲԵՐԴ. Գտնվում է Մակարայ վանքից բաւական վերև Պայտաթափ (Նալթեօքան) սարի հարաւային կողմում։ Առանձնացած է իւր չորս կողմերից բերդակիր սարս և անմատչելի ձորերով։ Աչագին քարերով, պարսպուած է սարիս գլուխն գագաթի դիրքով, բայց անպարիսպ են տեղ տեղ վեմահերձերի գլուխներն։ Բերդիս մակերևոյթն թեքուած է դէպի արևելահարաւ, որի մէջ երևում են բնակարանների աւերակներն և կուտակ կուտակ քարեր և տեղ տեղ ջրաւազաններ, որն բերուած է արտաքուստ մօտակայ աղբիւրից։ *Աւերակ մատուռ*. բերդիս հիւսիսային կողմում

---

[1]) Ղըզղալա և Մանթաշ ամրոցներիս մասին հանգուցեալ Մարտիրոսի գրածները ստացած եմ շնորհիւ իմ ազնիւ բարեկամ գիւտ քահանայ Աղանեանցի ննղաակիր ջանից.

արտաքուստ, որի մէջ կայ չորս կտոր եղած խաչարձան։

Ե. ԲԵՐԴԱՔԱՐ. Գտնուում է Դեղձնուտի և Սամսոնի վանքերի մօտերքում, Խնձորկուտ անուանեալ ջրի աջ կողմում։ Իւր շրջապատից առանձնացած և բարձրացած է Բերդաքարս. որի կատարի մեծութեան ծաւալն Հազիւ լինի հինգ կալաչափ տեղի տարածութեան։ Քարուկիր պատով պարսպուած է քարագլխի եզերքին։ Ունի միայն մի դժուարատար, խիստ սառիվեր և միանգամայն վտանգաւոր կածան, որ առաջնորդում է տղեակն։ Կայ յատուկ շինուած ջրաւազան, բայց ջուրն բերուած է ի պահանջել Հարկին դղեկիս Հարաւային և Հիւսիսային սարոտներում եղած աղբիւրներից։

Զ. ԳԱԻԱՐՁԻՆ ԱՄՐՈՑ. Ոսկեպար կա Ջողազ վտակի ձախ կողմում արձանացած է մի բարձր. միապաղաղ, գորշագոյն, զարմանալի և միանգամայն ահարկու ժայռ, որի արևելեան ստորոտով շինած են հնուց պարիսպ, որի ներսի կողմում կան սենեակներ և խուցեր, որոնցից միոյն մէջ կայ ջրհոր և ջուր։ Ժայռիս գագաթն բարձրանալու համար կայ միայն մի դժուարատար, սոսկալի, նեղ, չափազանց զառիվեր, և միանգամայն վտանգաւոր կածան հիւսիսալին կողմից։ Գագաթն համարեա թէ հարթակ է մօտ երկու կալաչափ, որի վերայ բուսած են թըլղի, համառկի թուփեր, և բռշնի, ջաղանի և վայրի դեղձի ծառեր։ Ահա այս է Գաւարզինբերդ հռչակուածն, որի վերայ երկու տեղ շինուած է վիմափոր ջրաւազան, ջուրն բերուած է յիշեալ ջրհորիցն։

Ժայռիս արևմտեան կողմում, բաւական բարձր երևում է մի մեծ ծակ, որի ետև, ասում են կայ մի մեծագոյն քարայր, որի ճանապարհն անյայտացած է այժմ։ Երբեմն երբեմն արծիւներն այլից հանում են գորգի և կարպետի փտած կտորներ և ձգում վար։

Գաւարզնի հարաւ-արևելեան կողմում, Ոսկեպար վտակի ափի վերայ Դա՞Ղիրչիլար գիւղն, որի մօտ է մեծ հանգստարան և եկեղեցու աւերակն. բայց այժմ մահմետականաբնակ է գիւղս և այլ մի քանի գիւղեր, որի կանխաւ եղած

Digitized by Google

են Հայաբնակ և որք կան Դամբրչիլարիս շրջակայքում։

Է. ԳԱԳԱՑ ԲԵՐԴ (66) Կոթի գիւղի արևելեան և Գաւառգնի հիւսիս-արևելեան կողմում արձանացած է Գագ անուն մի սար, որի հարաւային, արևելեան և հիւսիսային կողմերն դաշտալեզուներ են[1]։ Գագ սարիս գագաթի եզերներով պարիսպ ձգուած է վաղուց և ձևացրած մի անմատչելի բերդ, զի առանձնացած է սարս։ Բաւական ամուր է բերդս, ափսոս,, որ ջուր չունի իւր մէջ, վասն որոյ փորուած են մի քանի վեմափոր աւազաններ, որք բազմիցս լի են լինում անձրևաջրով։ Համարեա́ թէ 20-ից աւելի վիմափոր այրեր կան յատկապէս պատրաստուած, որք ի հնումն գուցէ ծառայած են իբրև զօրանոց, յորոց մի քանիսն ունին երդիկներ։

*Գագայ վանք*—Սուրբ Սարգիս. Բերդիս մէջ, սարիս ամենաբարձր գագաթին վերայ, շատ վաղուց շինուած է սրբատաշ կաթնագոյն քարով մի փոքր վանք։ Ժամանակի երկարութիւնն մաշած լինելով վանքիս շինութիւնը՝ վասն որոյ քանիցս նորոգուած է։ Սակայն վերջին անգամ վերանորոգած է վանքս Կոթի գիւղացի պ. Արզուման Խաչատրեան Տէր-Սարգսեանցն միևնոյն գունով տաշուած քարով։ Վանքիս ուխտագնացութեան ժամանակներն են սուրբ Սարգսի և զատկի օրերն։

Վանքիս մօտ՝ նոյնպէս շինուած սրբատաշ քարով՝ կայ մի մատուռ *սուրբ Կիւրակէ* անուն։

Ը. ԲԵՐԴԱՏԵՂ. Պարանայ և Կողբ գիւղերի միջև կայ այս անուն մի սար, որի կատարի վերեայ նշմարուում է բերդի նշաններ։ Վաշուց պարսպուած է եղել սարիս գլխի հարթակի շրջապատն, այժմ թէև աւերուած է պարիսպն, բայց ոչ հիմունքներն, որք դեռ մնում են հողի տակ։ Փոքր է դշեկիս ծաւալն, այսու ամենայնիւ պարսպին ներսից փորած, գտած և հանած են մեծ մեծ կարասներ, որք

[1]) Գարգարացւոց մեծ դաշտի շարունակութիւնիցն երկու դաշտալեզուներն են, յորոց մեծն ընկած է Գագ լեռնաշղթայիս և Կուր գետի աջափերի մէջ և հետզհետէ նեղանալով վերջացած Կոտրած-Կամրջի մօտ. իսկ փոքրն ընկած է նոյն Գագ սարի արևմտաձիգ լեռնաշղթայի և Ոսկեպար վտակի մէջ և գամ քան զգամ սեղմուելով վերջանում Նոր-Գիւղիս գիւղի մօտ։

պահուած են եղել այստեղ իբրև պաշար ջրի, քանզի ջուր չկայ այստեղ։ Բացի կարասներիցս դղեկիս արևելեան կողմում կայ մի հոր, որ բաւական խոր է. կարծում ենք, որ այս ևս ջրի համար է։

Թ. Բերդագիւղի մօտ եղած *Դղեակն*, որ շինուած է գիւղիս արևելեան Թաղի հիւսիսային ծայրում մի բլրի վերայ։ Դղեակս ունի քառակուսի ձև, աշտարակներով պարիսպ և մի փոքր դուռն, որ այժմ ևս կանգուն է և անվնաս։

Ժ. ՂԵԱՍԻ ԲԵՐԴ, որ Ղըզ-ղալա ևս է կոչուում. Ղեաս աւերակ գիւղի արևմտեան եզրից բարձրացած է մի սար, որի երկարութիւնն ձգուած է արևելքից արևմուտք և բոլորովին առանձնացած։ Ամրոցիս մուտքն արևմտեան կողմից է, որ բարձրանում է սարի գլուխն, ուր կայ մի խաչարձան։ Սարիս գլխի վերայ կայ երկու սարաբլուր, որք բարձրացած են ուղտի մէջքից բարձրացած աւելամսերի նման, բայց փոս մնացած է երկու սարաբլուրների մէջ տեղն։ Ահա երկսւ բարձրութեանցս վերայ հիմնուած են երկու ամրագին դղեակներ։ Առանց աշտարակների են պարիսպներն, որ տեղ տեղ բոլորովին կանգուն են և տեղ տեղ կիսաւեր։ Արևմտեան դղեակն մեծ է քան արևելեան։ Երկոցունց մէջ ևս չկայ ջուր, որը բերած են Ղեաս աւերակին մօտի սլատուական աղբիւրից և ամբարած կարասներում։

Արևելեան դղեկիս տակի արևելեան բարձր քերծի մէջ կայ մի մեծագոյն քարայր, որ ունի նեղ, բայց երկար և բարձրագոյն դիրք։ Քարայրիս առաջքը պատած են ժամանակաւ և ձևացրած բերդակ. որի մուտքն բարձրանում է սանդղաձև աստիճաններով և մտնում քարայրս յատուկ շինուած դռնով։ Քանի՜ ահարկու է այրիս արձագանքն, մանաւանդ խորքերում։ Այստեղ ևս չկայ ջուր, բայց կան հացի տաշտերի նման աւազաններ։ Այս ևս պատկանում է Ղեասին (Ղուկասին),

ԺԱ. Բերդն է *Շինող*, որի մասին խօսած ենք։

Digitized by Google

ԺԱ. ԲՈՐՁԱԼՈՒ ԲԵՐԴ. Գտնում է Խրամ և Ձորագետ ջրերի միախառնուած տեղից վերև, Ձորագետի աջ կողմում մի բլրի վերայ։ Բերդիս հիմունքներն շինուած են քարուկիր, իսկ գետնից վերև թրծեալ աղիւսով և կրաշաղախ ցեխով։ Բերդս փոքր է, իւր ներսում ունի թաղակապ սենեակներ, բայց չունի ջուր։ Սակայն բերդիս մօտ կայ մի փոքր լճակ, որից արտահոսում են երկու ջրաղաց դարձնելու չափ (մնասակար Դարասու) ջուր։ Երևի թէ ջրիցս գործ ածած են բերդումս, որ կիսաւեր է այժմ։

*Հնաբավետ ամրոց* Կուր և Խրամ գետերի մէջ ընկած է մի շատ հին ամրոց, որի երկարութիւնն ձգուած է գրեթէ արևմուտքից արևելք։ Բերդավայրի մեծ մասի մակերևոյթն թեքուած է Կուր գետի կողմից դէպի Խրամն. իսկ ստորին մասինն՝ խոնարհուած է դէպի գետախառնուրդն։ Բերդավայրիս երկու ջրերի մէջ մտած մասն ստացած է սուրանկիւն ձև, միջի մասն՝ լայն ձև և վերի մասն նեղ ձև. քանզի Խրամն արմունկ տալով նեղացրաց է այս մասը։ Մակերևութի երկարութիւնն այժմ քառորդ մղոնաչափ է և լայնութիւնն՝ մի տասն և չորսերորդ մղոնաչափ։ Հարկ է յայտնել որ թէ՝ երկարութիւնից և թէ՝ լայնութիւնից շատ պակասեցրած են գետերն, մանաւանդ Խրամն, ինչպէս ակներև է։ Գետից գետ փորուած լայն և խոր խրամով բաժանուած է երեք մասի, *Ստորին*, *միջին* և *վերին* ամրոց։ Միջավայրի բարձրութեան վերայ կրացեխով և թրծեալ աղիւսով շինուած է մի ամրոց, որ ունի չորս աշտարակ իւր չորս անկիւններում և 120 մետր շրջապատ (արտաքուստ չափերով)։ Կործանուած է այժմ ամրոցս՝ բայց դեռ մնում են աշտարակների մնացորդներն և պարսպի հետքերն։ Ամրոցիս Կուրի գետահայեաց կողմերն յատուկ պատրաստուած անպիսի լանջեր են, որից անհնար է թշնամւոյն բարձրանալ. երևի թէ այսպէս պատրաստուած է եղել և Խրամահայեաց լանջերն, սակայն յորդած ժամանակ գետն երկար դարերի ընթացքում քանդած և տարած է։

Digitized by Google

Բոլոր բերդամասերի երեսներն լի է վաղեմի աղիւսների, յախճապակեայ անօթների, խեցեղէն կոպիտ և հաստ կարասների, սափորների և ամանների բեկորներով և շինութեանց հետքերով։ Թուի թէ ներկայ դարուս առաջին և երկրորդ քառորդում հերկած են ամրոցներիս մակերևոյթը, մանաւանդ վերնամասերն։

Երկու տեղ երևում են հանգստարաններ, մին ամրոցիս արևմտեան կողմում. փոշտի հին ճանապարհի տակին և միւսն՝ Խրամի ձախ ափերի վերայ։ Մեր կարծիքով երկու հանգստարաններս միացած են եղել, այս է Կոտրած կամրջի մօտից մինչև Կուրի հանդէպն ամփոփեալ են ննջեցեալներ, բայց տապանաքարերը տարած են և գործ դրած ուրիշ շինութեանց համար։ Ի նկատի ունենալով այդ բոլոր յատկութիւնները, կարծում ենք որ այս է Հնարակերտ ամրոցն (67)։

*Կոտրած-կամուրջ*. Շինուած է Խրամի վերայ Նոր-Կամրջից փոքր ինչ վար։ Տակաւին երևում են Խրամի աջ ու ձախ ափերի վերայ ոտքերի անքակ մնացեալ մասերն։

Նոր-Կամուրջ. Հիմնուած է Կոտրածից փոքր ինչ վերև, որ կառուցեալ է կրացեխով և թրծեալ աղիւսով և ունի չորս աչք, ամենամեծն է հիւսիսային աչքն։ Երկու եզերքների ոտքերի մէջ շինուած են երկու մեծ սենեակներ, իսկ մէջ տեղի մօտ, կամրջի երեսի արևելեան կողմից կայ մի մուտք, որ սանդղներով իջնում է մի այլ սենեակ, որ շինուած է մի ոտքի մէջ։ Երևի թէ պահապանի տեղեր են սենեակներս։ Կամրջիս երկարութիւնն է 160 մետր և լայնութիւնն՝ 7. որի երկու եզերքներով հաստատուած են երկաթեայ վանդակներ։ Կամրջիս շինութիւնն թերևս հին է. բայց նորոգութիւններ եղած են Ռուսաց երկրիս տիրելուց յետոյ։

*Հարաւային կամ վերին գաւառներ*

Ի. Բերձոր կամ Բերդաձոր գաւառ, որի բնակչաց ամե-

Digitized by Google

նամեծ մասն այժմ մահմետականներ են։ Հետեւեալ գիւղերն, որ կանխաւ հայաբնակ եղած են, այժմ մահմետականաբնակ են, որոց մէջ կան եկեղեցիներ և հանգստարաններ։ Սկսեալ Երասխի ձախ ափից մինչև Ղալաղշլաղ գիւղն.

1) Դիրի՝ Երասխի ձախ ափում կամրջի մօտ Դիրի սարի տակ.
2) Թոմաս գիւղում եկեղեցին աւերակ.
3) Բայաթ այժմ Բաշարաթ ,, ,,
4) Հին-փոքր Թաղլարում ,, ,,
5) Հորնաւոտում ,, ,,
6) Հատք գիւղում ,, կիսաւեր
7) Դաշտահատ գիւղում ,, աւերակ.
8) Չէք ,, ,, ,,
9) Փարաջան ,, ,, ,,
10) Հին-Մեծ Թաղլարում [1] ,, ,,
11) Եաւրին-խութ (մերձ կոզառ) ,,
12) Երկաթաւոր (Դամիրլու) ,,
13) Սափիան գիւղում ,,
14) Թումասլու ,, կիսաւեր.
15) Ամուտուկա ,, ,,
16) Խոջիկ ,, ,,
17) Պատար ,, ,,
18) Սարգիս ,, ,,
19) Չղջիկ այժմ Չաղջիկ.
20) Սպիտակ շէն.
21) Չամին-գիւմ (գոմ).
22) Գառնակաշ.
23) Ծակարի.

Հայաբնակ են այժմ միայն հետեւեալ գիւղերն.

Ա. ԴՈՂԱՆԼԱՐ. Շինուած է Հին-Մեծ-Թաղլարի հարաւային կողմում մի սարի վերայ. բնակիչք գաղթած են Ղարադաղից. հողն արքունի, լեռնային և նուազ հացատու.

---

[1]) Նոր-Թաղլարեցիք նախ Պարսկաստանից գաղթած են այստեղ և մի ժամանակից յետոյ տեղափոխուած են Նոր-Թաղլար աւանն։

Digitized by Google

տեղական բերքերն ցորեն, գարի, գարնանի, հաճար, սորեկ, ոչխար, տաւար, այծ, խոզ, գոմէշ. կերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին. ծանքն փայտաշէն քահանայ մի։

Տուն 29, ար. 123, իգ. 117.

Բ. ԽԱՆՑԱՑՈՐ գիւղ. Հիմնուած է Տամ-ձոր գիւղին արևմտեան կողմում. բնակիչք գաղթած են Ղարադաղից, հողն բէկական. տեղական բերքերն միևնոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս։

Տուն 57, ար. 287, իգ. 222.

Գ. ՅԱՐԱՐ ԳԻՒՂ. Շինուած է Խցաբերդի արևմտեան կողմում բնակիչք գաղթած են Ղարադաղից, հողն բեկական, տեղական բերքերն միևնոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն երկար կեանք 100 տ. եկեղեցի չունին, քահանայ մի։

Տուն 134, ար. 532, իգ. 482.

Դ. ԽՑԱԲԵՐԴ ԳԻՒՂ. Շինուած է Դիզափայտի արևմտահայեաց լանջին վերայ. բնանկիչք գաղթած են Ղարադաղցից. հողն արքունի, լեռնային, (6000 ոտքից աւելի բարձր է) գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տ. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծանքն փայտաշէն, քահանայ մի. Տուն 50, ար. 166, իգ. 158։

Ե. ՂԱԼԱ-ՂՇԼԱՂ. Հիմնուած է (Սաղսաղան 7083 ոտք) բարձր սարի հարաւային լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 110 տ. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծանքն փայտաշէն. քահանայ երկու։

Տուն 337, ար. 1436, իգ. 1175.

## ԳԱԻԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա. ԱՄՈՒ ՏԵՂ ԱՄՐՈՑ. Շինուած է Հակարի գետի ձախ կողմում համանուն սարի վերայ (որի բարձր. 4131 ոտք)։ Քարուկիր պատով պարսպուած է վաղ ժամանակից

Digitized by Google

սարիս գլուխն, որ ունի բաւական մեծութիւն, ամուր դիրք, պատուական տեսարան, և բարեխառն կլիմայ։ Ամրոցիս մակերևոյթն լի է շինութեանց բեկորներով, որոց մէջ տակաւին կանգուն է մի քառակիր մատուռ, որ ուխտատեղի է և որի շուրջն ամփոփուած է հնուց ննջեցեալներ։ Մատրանս հիւսիսային կողմում կայ երկու այլ գերեզման, իսկ արևմտեան կողմում կայ մի վիմափոր աւազան, որ միշտ լի է ջրով. գալիս են կաշուի հիւանդութիւն ունեցողներ (ինչպէս է բորոտութիւն ևն.) լողանում ջրումս և աղօթում՝ մատրանս մէջ և վերադառնում առողջացած։

Բ. ԹՈՄԱՍ ԲԵՐԴ. Հիմնուած է համանուն սարի վերայ (որի բարձր. 5230 ոտք) որ կայ Ամու տեղի հարաւ արևելեան կողմում։ Թոմաս սարս առանձնացած է իւր ամեն կողմերից և բարձրացած ձուաձև, որի վերայ է ամրոցն։ Այս ևս ունի քառակիր պարիսպ, նշանաւոր ամրութիւն, սքանչելի տեսարան և մի աւերակ փոքր եկեղեցի։

Գ. ՂԱԼԱԼՈՒ ԲԵՐԴ. որի սարն առձանացած է Բաշարաթ սարի արևմտեան հանդէպ և Բազմին (Բեզմին) սարի հարաւային հանդէպ։ Առանձնացած է իւր շրջապատից և բերդասարս, որ ունի մօտ 3600 ոտք բարձրութիւն և որի շուրջն ահագին քերծեր են։ Հնուց պարսպուած են մուտքի կողմերն և հարկ եղած տեղերն։ Ամրոցիս մէջ ևս կան հին շինութեանց շատ բեկորներ և աւերակ մատուռ։

Դ. ԽՑԱԲԵՐԴ. որի մէջ արդէն բնակում են հայեր, ուր կայ և եկեղեցի, ինչպէս գիտենք։ Ամրոցս, որի բարձրութիւնն պակաս չէ 6000-ից, ունի ամուր պարիսպ, բերդակալ սար. ազնիւ ջուր, զմայլելի տեսարան և ամեն ընտիր յատկութիւն։ Հարկ է յայտնել որ հետզհետէ քայքայուում են բոլոր բերդերիս պարիսպներն։

ԻԱ. և ԻԲ. Գաւառներն են *Հարճլանք* և *Վակունիք*։ Առհասարակ լեռնոտ են երկու գաւառներս ևս, որոց մէջ են Արտաշաւի սարն 4456 ոտք, Տղիկ կամ Տղայ՝ 5180, Լաչին՝ 6328, Սարի պապ (Սարի պապա) 7574, Կարմիր

Digitized by Google

քար (Դըըլ-դաշ) 6552, Բաքադէմ՝ 6006, Փինկան՝ 7903, Ցուշարձան (Վանքասար) 1861, Տէրտէրի սար (Քէշիշ-դաղի) 7560, Ներքին-Բևեռաթափ (Մխթեօքան) 6944, Աղջկայ բերդ (Ղըզ-ղալա) 9324, Դիւրին (Դիւրու դաղ) 6914, Սպիտակ քերծ (Ալա կայա) 7672, Չիլ-կեադ (Չիլկեադ) 7777, Սահմանասար՝ 8687, Վանքա սար (Քիլիսա-դաղի) 7553, Երկաթաղբիւր (Դամիւր-բուլաղ) 7639, Կոփսար (Ինաք-դաղի) 8583, Հին-դայլ (Ղօջա-ղուրդ) 7675, Սարի աղբիւր (Սարի բուլաղ) 9898, Պել-սար (Դալի-դաղ) 11907, Վերին-Բևեռաթափ (Մխթեօքան) 11851, Աղխասար (Ախխա-դաղ) 8364։ Սքանչելի ամարանոցներ են լեռներս։

Երկու գաւառներումս կան մօտ վաթսուն գիւղ, որ կանխաւ եղած է հայաբնակ, բայց այժմ մահմետականաբնակ են, որոց մէջ սակայն անպակաս են հայկական հնութեանց հետքեր—կամ կիսակործան, կամ հիմնայատակ կործանուած և կամ կանգուն տաճարներ, եկեղեցիներ, մատուռներ և հանգստարաններ։ Ահա այն գիւղերից մի քանիսն։

Ձերդի (Ձարդ) Տիկ, Բաքադէմ, Նիլջան, Ենկիջա, Ղարաչամ, Արտաշաւի, Վաղազին, Հաճի, Հոչազ, Հաճի Սամլու, Խալիփալըու (Առաջնորդապատական), Սուաթ, Մարջանլու, (Մունջուխլու), Հաթամլար, Հաճիլար, (Հարճլանք), Զուրման, Շամքեանդի, Կարաբայնի (Կարաբաց), Կարաչանի, Լիլօ-Բաղը (Լիլաբակ), Ալակչի (Մաղագործ), Թուրքիշվան (Թրքաշվանթուր քաշող և հալածող գիւղ), Շուքարան, Աղան, Աւրիկ (Իսրայէլի գիւղ), Աղջաքանդ (Աղջկաքանդ—Աղջկայ քանդած), Ալուխան, Սևանդ (Սև հանդ), ևն.։

Միայն մի հայաբնակ գիւղ մնացած է այժմ Հարճլանք գաւառում, որ է։

*Ալղուլի*, Հիմնուած է Արտաշի սարի հարաւային կողմում. բնակիչք բնիկ, հողն արքունի, օդն, կլիման և ջուրն պատուական, կրկար կեանք 95—105 ա. եկեղեցին սուրբ Աստուածածին. քահանայ մի։

Ծուխ 74, ար. 372, իգ. 286.

Digitized by Google

Մի բերդ կայ միայն երկու գաւառներումս Աղջկայ—բերդ (Ղըզ-ղալա) անուն, որ գտնուում է Ղըրխ-ղըզ (40 օրիորդ) սարի հիւսիսային կողմում և ունի 9324 ոտք բարձրութիւն։ Հարկ է յայտնել թէ այնքան ամուր տեղեր կան գաւառներումս, մինչև անգամ կարօտութիւն չկայ բերդերի։

ԻԳ. *Սիսաիան—Ուսաան, Սիսական, ծար, Վերին-Խաչին*, այժմ Ձառ կամ Ձար գաւառ։

Գաւառս ես, որ կանխաւ եղած է հայաբնակ, այժմ թրքաբնակ է ամբողջապէս, այսուամենայնիւ կան կանգուն, կիսաւեր կամ հիմնայատակ կործանեալ եկեղեցիներ, վանքեր և հանգստարաններ հետևեալ գիւղերում։

Լև (Լևոնի գիւղ) Ջամիլ, Եղջերուագոմ (Մարալ դամի), Դամիրչիլար (Դարբնոց), Աղալար, Քիլիսաքեանդ (եկեղեցաձոր), Ղամիշլու (Եղեգնուտ), Ջիլքին, Ալլահվերտի (Աստուածատրի գիւղ), Տահքեանդ (Տահնչէի գիւղ), Լև ղալա, Ջափնի, Քիլիսալու, Ալխասլու, Ջայքեանդ (Գետաշէն) Քալուաջար, Բաշքեանդ (Գլխաւոր գիւղ), Միլլի, Ջոմարդ, Տահղամ, Հաճի-Բաբա, Եալթկան, Խաչպարալի (Խաչ-պարան), Ուլուխան, Փիրխանալի (Սրբագուն) Թարխանլու, Խայիւսցոկ (Հայոց ձոր), Ջակլիկ. Ջախմախ, Ջբիլ, Ղարախաչ, Ջիրախ, Մամատ-Սափի, Իստի սու (Ջերմուկ), Բաղասաղ, ևն.։

Գաւառիս իշխանանիստ գիւղաքաղաքն եղած է Ծարն, որ կայ մի լեռնահովտում։ Գիւղաքաղաքիս չորս կողմերն ի բացուստ շրջապատած են, բարձրագոյն, ձիւնապատ, կարկնաձև և շղթայաշար լեռներ սկսեալ արևելքից մինչև հիւսիս, որք են. սարի աղբիւր (սարի-բուլաղ) 9900 ոտք, Տաք ջրին սար՝ 7240, Սև խաչ 9000, Քիթ (Քեթի) 11284, Կուժ, սար՝ 9000 ոտք. Վիմահերձ և բարձր քերծեր են գիւղաքաղաքիս հիւսիսային, արևելեան և հարաւային կողմերն, որոց միջից հոսում են սրընթաց Թարթառ գետի վտակներն և միանում գիւղաքաղաքիս ստորոտում. իսկ արևմտեան կողմով՝ վիմահերձից վիմահերձ ձգուած է պա-

Digitized by Google

րիսպ. այնպէս որ միանգամայն նշանաւոր ամրոց դարձած է Տարս։ Գիւղաքաղաքիս մակերևոյթն հարթ է (սարերին կողմն փոքր ինչ թեքուած է դէպի արևելք) և ունի մեծ տարածութիւն, որ լի է աւերակ շինութեանց կոյտ կոյտ բեկորներով, մատուռներով և խաչարձաններով:

Ա. ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ մատուռ, քարուկիր, կանգուն և շինուած Տարիս հարաւային եզրում, որ ունի 7 մետր 15 սանթիմ երկարութիւն, 4 մետր 75 սանթիմ լայնութիւն։

*Արտաքուստ դռան գլխին խաչքարի վերայ.*

«Սուրբ Սարգիս»։ Ապա «Քրիստոս որդի Դաւթի աւգնէ վանիս Հասանայ անարժան ծառայիս յաւուրն ատենի ամէն թվ. ՉԻԳ.»։ Մատրանս դրան հարաւային կողմում արտաքուստ կայ երկու նշանաւոր և գեղեցկաքանդակ խաչարձան՝ զետեղուած աստիճանաւոր պատուանդանների վերայ։ Հիւսիսային խաչարձանի վերայ, (որի երկար. 2 մ. 60 ս. լայն. 1 մ. 10 ս.) «թվիս Հայոց ՉԼԸ. Աստուծով ես Գրիգոր որդի Հասանայ քաջ և յաղթող զաւրավարին և մեծի իշխանին Ականոյ, Հանգարբերգոյ, Սոթից, Շողգահո և այլ բազում դաւառաց, կանգնեցի զխաչս ի գեղս որ կոչի Տար սիրեցելոյն հաւրն իմոյ հայրենիք և պարգև քաջութեան»։

Հարաւային խաչարձանի ճակատի վերի կողմում քանդակուած է սուրբ Աստուածածնայ պատկերն, որ գրկած է մանկացեալ Յիսուս Քրիստոսը։ Տէրունական պատկերիս շուրջն պատած են քառակերպեան կենդանիք, սուրբ Հոգին, արեգակն և մի թռչուն։ Խաչարձանիս ստորոտում. «Սուրբ Աստուածածին Քրիստոս Աստուած... ես Մամքան դուստր Քրդին ու Խորիշահի, ամուսին Հասանայ կանգնեցի զխաչս»։ Կան ուրիշ շատ տապանաքարեր և պատուական մահարձաններ, բայց անիրաւ քրդերն որը կոտրած են և որի գրերը ջնջած։ Մամքան տիկնոջ կանգնած արձանի համանման ամենայն մասամբ կայ փոքր ինչ հեռի դէպի արևմուտ (5 քայլաչափ), որի վերայ փորագրուած է։



Digitized by Google

«Քրիստոս Աստուած. Նշանս բարեխաւս Դաւլաթին. Աստուծով ես Դաւլաթս, ամուսին իմ մեծ իշխան Միրզաջան Խիկար, որդիքս իմ Տաւիտ բէկ, Մէլիք պէկի գանգնեցին զխաչս փրկութիւն հոգոյ ի տանէն Գեղամայ. դուստր Մէլիք Ղուկասին թ. ՋՂԸ.»: *Սորա մօտ.*

«Այս է հանգիստ պարոն Ճհանկիր բէկին թվ. ՌՃԻԵ.»: «Այս է հանգիստ Մէլիք Պէկին կողակից Շայամին, որ հանգուցաւ (ի) տապանս թվ. ՌՃԿՁ.»: Այստեղ են նաև Շահփարու և Վահրամի տապանաքարերն: Մատրանս *հիւսիսային կողմում.* «.... Միրզա Ճհան կանգնեցաք զխաչս բարեխաւս եղբաւրն իմ պարոն Ճհան Բնուր (ˆ) Շահինճանին... թվ. ՋԿ.»:

Բ. Մատուռ *սուրբ Սարգիս,* քարուկիր, որ հիմնարկուած է գիւղաքաղաքիս միջում, արտաքին որմերի կէսն շինուած է սրբատաշ քարով և միւս կէսն (ստորին մասն) անտաշ. երկարութիւնն 6 մետր 65 սանթիմ, լայնութիւնն 4 մետր 6 սանթիմ:

*Դրնագլուխ քարի վերայ*

«Թվ. ՋԻԸ. ի հայրապետութեան տէր Աթանասի, ի պարոնութեան Դուփին որդոյն Ուհան երէցու, Ուհանէս շինեցաք զսուրբ Սարգիս կենաց բարեխաւս, հոգոց փրկութիւն, ով կարդ....»: Դրան հարաւային կողմի շարխաչերի տակ. «Ես հայր Անտոն տվի սուրբ Սարգիսս Համարրակի հողին... Ա. ժամ տվին զծառազարդին»: Մատրանս դրան վերայ. «Շահանշահ կանգնեց խաչս որդոց...... (եղծուած է)»:

Մատրանս հարաւ արևելեան կողմում արտաքուստ. «Յանուն Աստուծոյ մեք Խաչատուր, Զաքարէս կանգնեցաք սուրբ խաչ բարեխաւս հաւրն իմոյ և եղբարց Վելին, Ովանէսին, Մարգարէին, Միրաքին.. թվ. ՋԼԳ.»:

## ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Համարեմ թէ պատկեց է Բ. մատրանս հիւսիսային*

Digitized by Google

կողմին և կիսաւեր. բայց ունի 26 մետր 10 սանթիմ երկարութիւն և 11 մետր 55 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան վերայ մի խաչքարի ստորոտում. «Ի թուին ՌՀԳ. ես Մելքք հոգևորդի իմ Ակուտին ու Մխիթար եղբայր կանգնեցաք զխաչս»։

Գ. ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ մատուռ, խիստ մօտ մայր եկեղեցու արևելեան կողմին, շինուած անտաշ քարով, երկարութիւնն 6 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 4 մետր 40 սանթիմ։ Դրան ճակատակալ քարին վերայ. «Խորք տէր (ս) շինեցի սուրբ Գրիգոր ի հալալ արդեամբ ինձ, ամուս (ն)ոյ, իմ որդոյ Մարգարէին, յիշէք 'ի Տէր թվ. ՉԻԳ.»։ Դրանս հիւսիսային քարին վերայ. «Յանուն Աստուծոյ Կուկս միաբանեցայ սուրբ Գրիգորիս (տվի) իմ հողն Սոսթանիսի ունին այլագ հինգշաբաթ ար ժամն...»։

*Մատրանս հարաւային որմին վերայ կրկին արտաքուստ.*

«Աստուծով մեք Տաքըքի որդիքս տվաք զմեր Կապին հողն ի սուրբ Գրիգորիս. Սոսթանէս եւ Ղազարու տաւնին Ա. ժամ.....»։ *Սորա մօտ.*

«Գրիգոր Ջաջուռ կանգնեցաք խաչս մեզ և ծնողաց մերոց. Աստուած ողորմի Շ.»։

Բոլոր մատուռների շուրջն լի է խիտ առ խիտ գերեզմաններով և խաչարձաններով։

*Սուրբ Աստուածածին վանք*

Սրբատաշ քարով շինուած տաճարս, որ կանգուն է նոյնութեամբ, գտնուում է Ծարի Հարաւային վիմահերձի տակ երկու ջրախառնուրդի մօտ, որք են տաք-ջրի և Զբիւլ գիւղի վտակներն։ Մենաստանս թէ և փոքր է, բայց շատ գեղեցիկ է ամեն մասամբ։ Վանուցս *արձանագրութիւնն*։

«Ի ժամանակին յորում տիրեալ ազգն Նետողաց բազում աշխարհաց և մինչև յՈվկիանոս ծով և Ստամպաւլն, ի

Digitized by Google

Պոնտոս և մինչև ցգետն Եփրատես տիրելով զօրօգաբար և ծանր հարկապահանջութեամբ ցաւեցուցանելով զամենեսեան՝ զմեծամեծս և զփոքունս 'ի մահ և 'ի գերութիւն մատնելով, յայսմ ժամանակի դառնութեան որ էաք մեք տէր Յովհաննէս Դոփեան տրուպ և նուաստ և տկար հոգի, հասաւ մեզ հրաման ի նախահարցն մերոց գնալ ի մեր հայրապետացն առաջնո յաթոռն հռչակելի Հախպատ. դարձ արարեալ 'ի մեր հայրենական և բնիկ տունս հարազատ աւագ եղբաւր Հասանայ քաջ զաւրականին և հռչակաւոր արխացելոյն, որ և որդի իւր Գրիգոր սիրող եկեղեցոյ և քահանայից և ամուսինն իւր բարեհամբաւ Ասփայ դուստր մեծի կոմսի Տարսայիճի իշխեցողի կողմանցն սիւնեաց՝ և մեր հայեցեալ 'ի ձորակս, զի հոսէին ջուրք աստի և անտի և միջի նոցա բլրակ մի գեղեցիկ, ես հաճեցայ ընդ սա և մտայ յանապատս և սկսայ շինել մատուռ մի և յայնմ խորհրդի եկն Գրիգոր եղբաւրորդի մեր և իշխան գաւառիս և այլ շատ շատ կողմանց իշխեցող և կամեցաւ շինել զսուրբ Աստուածածինս ի բարեխաւս մեզ և ամենայն քրիստոնէից. ես տէր Յովհաննէս արարի սկիզբն շինութեան եկեղեցոյս 'ի թուին ՁԾ.»:

*Տաճարիս մօտ եղած սքանչելի խաչարձանի վերայ.*

«Աստուծով ես Սայտի որդի պարոն Շանշին քաջ և յաղթող զաւրավարին և մեծ իշխանաց յազգէն և ի թուին ՊՀԹ. տեղեացս տէր և պարոն Փոքր Սիւնեաց, Ականայ, Հաթերքոյ և Հանդաբերդոյ և ծովակին Գեղամայ մինչ 'ի Շաղվաքայ՝ կանգնեցաք զխաչս հաւր մերոյ Շանշին....»:

Կայ և մի այլ փոքր վանք Ծարիս արևելեան ստորոտում—երկու ջրերի խառնուրդում:

*Տաք-Ջուր*. Բղխում է այս Ծարի հարաւային կողմի ջրաձորից. Նշանաւոր է ծծմբային ջուրս իւր տեսակին մէջ և առատ: Միայն ափսոս որ իւր մօտ չկան պէտք եղած շինութիւններ և խիստ խոր է ջերմուկի ձորն և նեղ հօրիզոնն: Այստեղ ամենայնիւ բազմաթիւ յաճախորդներ են հա-

ւաքուում այստեղ ամրան երեք ամիսներում շրջակայ գաւառներից, որք և պատսպարուում են վրաններում։

## ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա-ն Բերդն է Ծարն, որին արդէն ծանօթացանք, որի մէջ այժմ բնակուում են Փարիկեան ցեղից քուրդեր։

Բ-ն է Ղըզ-ղալա կոչուած բերդն, որ գտնուում է Ծարի հիւսիսային կողմում և Սոթի ու Զարզըիլի արևելեան հանդէպ արձանացած սարի վերայ, որ մօտ 9000 ոտք բարձր է և միանգամայն սահման Արցախի և Գեղամայ կամ ասել Ծար և Սոթ գաւառների։

Գ-ն է բոլորից նշանաւորն, որ է Հանդաբերդն և որն այժմ կոչուում է Լևա ղալա։ Բերդս հիմնուած է մի միապաղաղ և ձուաձև բարձրացած ապառաժի վերայ, որ առանձնացած է իւր չորս կողմերից։ Բերդաբարձ ժայռիս հիւսիսային խորանդունդ ձորով հոսում է Թարթառի մի օժանդակն, (որի ակունքներն առած են իւրեանց սկիզբը Ղըզղալա. Ոմբասար, Գինալ 11051 ոտք և Մանուշակ (Բանովշալի) 10100 խաչենահայեաց լանջերից և միացած նոյն խորանդունդ ձորում։ Արևելեան կողմում, ձորի աջ կողմի հարթակի վերայ երևում է Զափնի աւերակ գիւղն և կիսաւեր եկեղեցին. ոչ ինչ պակաս խոր ձոր է և հարաւային կողմն. միայն մի թրաձև սեռով բերդաժայռս հաղորդակցութիւն ունի իւր արևմտեան կողմի սարի հետ, որի վերայ է Լևա գիւղի աւերակն։ Այսու ամենայնիւ բուն բերդաժայռն շատ բարձր է սեռից։ Մի նեղ, զառիվեր և երկիւղալի կածան, որ փորուած է քարից, առաջնորդում է արևմտեան կողմից. անցնում հիւսիսային վիմափոր և քարուկիր, բայց *կիսաւեր դռնից*, որի մօտ է դռնապանների վիմափոր այրն և ապա հիւսիս արևելեան կողմով մտնում բերդի դրան։ Հարկ է յայտնել որ *կիսաւեր* դուռնս և պատըս ծառայած են ինչպէս *արտաքին* պարիսպ և դուռն,

Digitized by Google

որոց Համանմանն կայ և բուն բերդի Հարաւ արևելեան կողմում։

Ներքին բերդն ունի ամուր շրջապարիսպ, շատ բուրգեր, 100 մետր երկարութիւն, 80 մետր լայնութիւն, 6 մետր 10 սանթիմ պարսպի բարձրութիւնն և միայն մի դուռն Հիւսիսայքին կողմից։ Ամրոցիս մակերևոյթն զգալի կերպով թեքուած է դէպի արևելք, որի վերնամասն կազմուած է առանձին ամրոց, որ ունի միայն մի դուռն, նշանաւոր ամրութիւն և պալատաման ձև։ Մակերևութի վերայ կայ ցորենի և ալրի ամբար, Հաց եփելու փուռն և այլ շինութեանց Հետքեր [1])։ Ամենայն ինչ կատարեալ է, միայն ափսոս որ ջուր չկայ բերդումս։ Սակայն կան եօթն վիմափոր, բոլորշի և խոր Հորեր, որոց Հինգն արևմտեան և երկուսն արևելեան կողմում։ Նեղ են բոլոր Հորերի բերաններն, լայն և բոլորակ մէջերքն և տակերն և մօտ 5 մետր խորութիւնն։ Ջուրը բերած են մօտակայ աղբիւրեցն և լցած Հորերիս մէջ 'ի պաշար պատերազմի։ Այժմ բերդումս բուսած են ծառեր և Հետզհետէ ժամանակի մշտագործ մուրճն քանդում է ամրոցիս քարերը. (68)։

## Զուկն եւ Զկնեղէն

Կուր գետից, որի մէջ թափուող Հարաւայքն գետերից

[1]) Գաւառիս իշխողներն թէ և տիրապետած և իշխած են Նաև Սօթի Նաղուաքայ գաւառների վերայ ևս զոր օրինակ տեսանք արձանագրութեանց մէջ, սակայն մենք չուզեցինք շեղուել Սարգիս Ա. ընդհանրական կաթուղիկոսի Հայոց ՆՏԵ, և փրկչ. 1006 թուի որոշած սահմանից։ Միայն բարւոք համարեցինք ներկայացնել աղնիւ ընթերցողաց Մեծ և Փոքր Սիւնեաց մէջ ընկած բնական սահմանագիծը, որի վերայ հիմնուած է և հանդուցեալ հայրապետի որոշումն։ Սահմանագիծն սկսեալ Գինալ (11057), Ոմբասար (7760), Ղըղ-ղալա (9000), Կարմիր-կումուր (8000), Քեթ-Քիթ-11284, Քեթի—(10000), Սարմուսաղ, Զինկիլ (9980) Կալին սար-Ղալին-ղայա—(11002), Գել սար-Դալի-դաղ (11907), Մեծ բեռաթափ-Մխթեօքան (1185), սահմանն սարերիս գագաթնագծերովն հասած է Հակարի գետի ակունքներին, որ առած են իւրեանց սկիզբը Գել-սարի հարաւահայեաց լանջերից։

Digitized by Google

և գետակներից և նոյն կողմերում եղող լճերից ելնում են.

| | Սալիանի վերի կողմից Փութ. | Սալիանի վարի կողմից. Փութ. |
|---|---|---|
| 1) Սպիտակ ձուկն (Ռուս. Բելուգա) | 150 | 3154 |
| 2) Թարթ » (Օսետր, կամ » » » շիպա) | 21538 | 29773 |
| 3) Երկարաքիթ ձուկն (Սևրուգա) | 139098 | 564048 |
| 4) Կարմրախայտ » (Լօսոս) | 419 | 15820 |
| 5) Շարմագի կամ շամահի (շեմահի) | 27958 | 325870 |
| 6) Լոքո — — (Սոմա) | 29556 | 70646 |
| 7) Մէջքն ոսկորոտ միջակ[1]) (Սուտակ) | 8998 | 204000 |
| 8) Թեփամորթ (ոչ այնքան քաղցր) » » (Լեշչա) | 6174 | 755236 |
| 9) Խաշամ — — (Խաշամա) | 20699 | 271318 |
| 10) Դասփիչ — — (Կութումա) | 741 | 66831 |
| 11) Օձաձուկն — (Մինոկի) | 1500 | 3300 |
| 12) Սազան — (Սազան) | 126606 | 1,006,300 |
| 13) Օձաձուկն — (Բալիկ) | 78748 | 16017 |
| Սպիտակ, թարթ և երկարաքիթ ձկներից միայն ելնում են. | | |
| Ձկնհաւկիթ — (Իկրա) | 6064 | 17109 |
| Սոսինձ · — — | 438 | 1675 |
| Փորաթել — [2]) (Վեազիկա) Թմբկի երեսի համար փար: Վերջին 3 ձկներից շինում են նաև զիւրկեար և գէօշ մեծ քանակութեամբ։ | 838 | 2075 |
| Լոքո ձկնից ելնում է և այլ սոսինձ | 356 | 546 |
| Գետերից և գետակներից այլ և այլ մանր ձկներ — — | 21423 | 607246 |

Արցախեան նահանգի բոլոր գետերից և գետակներից ելնում են չորս տեսակ մանր ձուկն--ըազմափուշ կողակ, սակաւափուշ կողակ, կարմրախայտ և երկարաքիթ կամ Բեղլու։ Ա. տեսակն ելնում է միայն Թարթառ և Հակարի

[1]) Միջակ մեծութեամբ ձուկն։ Թուանշաններդ ներկայացնում են տարեկան ելած ձկների քանակութիւնը։

[2]) Գործ է ածուում կերակրի մէջ։

Digitized by Google

նամեծ մասն այժմ մահմետականներ են։ Հետևեալ գիւղերն, որ կանխաւ հայաբնակ եղած են, այժմ մահմետականաբնակ են, որոց մէջ կան եկեղեցիներ և հանգստարաններ։ Սկսեալ Երասխի ձախ ափից մինչև Ղալաղշլաղ գիւղն.

1) Դիրի՝ Երասխի ձախ ափում կամրջի մօտ Դիրի սարի տակ.
2) Թոմաս գիւղում եկեղեցին աւերակ.
3) Բայաթ այժմ Բաշարաթ· ,, ,,
4) Հին-փոքր Թաղլարում ,, ,,
5) Հորնաւոտում ,, ,,
6) Հատք գիւղում ,, կիսաւեր
7) Դաշտահատ գիւղում ,, աւերակ.
8) Չէք ,, ,, ,,
9) Փարաջան ,, ,, ,,
10) Հին-Մեծ Թաղլարում [1]) ,, ,,
11) Եաւրին-խութ (մերձ կոզառ) ,,
12) Երկաթաւոր (Դամիրլու) ,,
13) Սափիան գիւղում ,,
14) Թումասլու ,, կիսաւեր.
15) Ամուտուկա ,, ,,
16) Խոջիկ ,, ,,
17) Պատար ,, ,,
18) Սարգիս ,, ,,
19) Ջղջիկ այժմ Ջաղջիկ.
20) Սպիտակ շէն.
21) Ջամին-գիւմ (գոմ).
22) Գառնակաշ.
23) Ծակարի.

Հայաբնակ են այժմ միայն հետևեալ գիւղերն.

Ա. ԴՈՂԱՆԼԱՐ. Շինուած է Հին-Մեծ-Թաղլարի հարաւային կողմում մի սարի վերայ. բնակիչք գաղթած են Ղարադաղից. հողն արքունի, լեռնային և նուազ հացատու.

---

[1]) Նոր-Թաղլարեցիք նախ Պարսկաստանից գաղթած են այստեղ և մի ժամանակից յետոյ տեղափոխուած են Նոր-Թաղլար աւանն։

տեղական բերքերն ցորեն, գարի, գարնանի, հաճար, սորեկ, ոչխար, տաւար, այծ, խոզ, գոմէշ. կերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տարի. եկեղեցին սուրբ Աստուածածին. ծածքն փայտաշէն քահանայ մի։

Տուն 29, ար. 123, իգ. 117.

Բ. ԽԱՆՁԱՁՈՐ գիւղ. Հիմնուած է Ծամ-ձոր գիւղին արեւմտեան կողմում. բնակիչք գաղթած են Ղարադաղից, հողն բէկական. տեղական բերքերն միեւնոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն, երկար կեանք 100 տարի, եկեղեցին սուրբ Յովհաննէս։

Տուն 57, ար. 287, իգ. 222.

Գ. ՑԱՐԱՐ ԳԻՒՂ. Շինուած է Խցաբերդի արեւմտեան կողմում բնակիչք գաղթած են Ղարադաղից, հողն բեկական, տեղական բերքերն միեւնոյն, գերազանց օդն, կլիման և ջուրն երկար կեանք 100 տ. եկեղեցի չունին, քահանայ մի։

Տուն 134, ար. 532, իգ. 482.

Դ. ԽՑԱԲԵՐԴ ԳԻՒՂ. Շինուած է Դիզափայտի արեւմտահայեաց լանջին վերայ. բնանկիչք գաղթած են Ղարադաղցից. հողն արքունի, լեռնային, (6000 ոտքից աւելի բարձր է) գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 100 տ. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն, քահանայ մի. Տուն 50, ար. 166, իգ. 158։

Ե. ՂԱԼԱ-ՂՇԼԱՂ. Հիմնուած է (Սաղսաղան 7083 ոտք) բարձր սարի հարաւային լանջի վերայ. բնակիչք բնիկ, հողն արքունի, տեղական բերքերն նոյն. գերազանց օդն, կլիման և ջուրն. երկար կեանք 110 տ. եկեղեցին սուրբ Աստուածածին, ծածքն փայտաշէն. քահանայ երկու։

Տուն 337, ար. 1436, իգ. 1175.

## ԳԱՒԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա. ԱՄՈՒ ՏԵՂ ԱՄՐՈՑ. Շինուած է Հակարի գետի ձախ կողմում համանուն սարի վերայ (որի բարձր. 4131 ոտք)։ Քարուկիր պատով պարսպուած է վաղ ժամանակից

սարխ գլուխն, որ ունի բաւական մեծութիւն, ամուր դիրք, պատուական տեսարան, և բարեխառն կլիմայ։ Ամրոցիս մակերևոյթն լի է շինութեանց բեկորներով, որոց մէջ տակաւին կանգուն է մի քարուկիր մատուռ, որ ուխտատեղի է և որի շուրջն ամփոփուած է հնուց ննջեցեալներ։ Մատրանս հիւսիսային կողմում կայ երկու այլ գերեզման, իսկ արևմտեան կողմում կայ մի փիմափոր աւազան, որ միշտ լի է ջրով. գալիս են կաշուի հիւանդութիւն ունեցողներ (ինչպէս է բորոտութիւն են.) լողանում ջրումս և աղօթում· մատրանս մէջ և վերադառնում առողջացած։

Բ. ԹՈՄԱՍ ԲԵՐԴ. Հիմնուած է Համանուն սարի վերայ (որի բարձր. 5230 ոտք) որ կայ Ամու տեղի Հարաւ արևելեան կողմում։ Թոմաս սարս առանձնացած է իւր ամեն կողմերից և բարձրացած ձուաձև, որի վերայ է ամրոցն։ Այս ևս ունի քարուկիր պարիսպ, նշանաւոր ամրութիւն, սքանչելի տեսարան և մի աւերակ փոքր եկեղեցի։

Գ. ՂԱԼԱԼՈՒ ԲԵՐԴ. որի սարն արձանացած է Բաշաբաթ սարի արևմտեան հանդէպ և Բազմին (Բեզմին) սարի հարաւային հանդէպ։ Առանձնացած է իւր շրջապատից և բերդասարս, որ ունի մօտ 3600 ոտք բարձրութիւն և որի շուրջն ահագին քերծեր են։ Հնուց պարսպուած են մուտքի կողմերն և հարկ եղած տեղերն։ Ամրոցիս մէջ ևս կան հին շինութեանց շատ բեկորներ և աւերակ մատուռ։

Դ. ԽՑԱԲԵՐԴ. որի մէջ արդէն բնակում են հայեր, ուր կայ և եկեղեցի, ինչպէս գիտենք։ Ամրոցս, որի բարձրութիւնն պակաս չէ 6000-ից, ունի ամուր պարիսպ, բերդակալ սար. ազնիւ ջուր, զմայլելի տեսարան և ամեն ընտիր յատկութիւն։ Հարկ է յայտնել որ հետզհետէ քայքայւում են բոլոր բերդերիս պարիսպներն։

ԻԱ. և ԻԲ. Գաւառներն են *Հարճլանք* և *Վակունիք*։ Առհասարակ լեռնոտ են երկու գաւառներս ևս, որոց մէջ են Արտաշաւի սարն 4456 ոտք, Տղիկ կամ Տղայ՝ 5180, Լաչին՝ 6328, Սարի պապ (Սարի պապա) 7574, Կարմիր

քար (Ղզըլ-դաշ) 6552, Բաբադէմ՝ 6006, Փինկան՝ 7903, Յուշարձան (Վանքասար) 1861, Տէրտէրի սար (Քէշիշ-դաղի) 7560, Ներքին-Բեւռաթափ (Մխթեօքան) 6944, Աղջկայ բերդ (Ղըզ-ղալա) 9324, Դիւրին (Դիւրու դաղ) 6914, Սպիտակ քերծ (Ալա կայա) 7672, Զիլ-կեազ (Զիլկեազ) 7777, Սահմանասար՝ 8687, Վանքա սար (Քիլիսա-դաղի) 7553, Երկաթաղբիւր (Դամիւր-բուլաղ) 7639, Կովսար (Ինաք-դաղի) 8583, Հին-գայլ (Ղօջա-ղուրդ) 7675, Սարի աղբիւր (Սարի բուլաղ) 9898, Պել-սար (Դալի-դաղ) 11907, Վերին-Բեւռաթափ (Մխթեօքան) 11851, Աղխասար (Ախիա-դաղ) 8364։ Սքանչելի ամարանոցներ են լեռները։

Երկու գաւառներումս կան մօտ վաթսուն գիւղ, որ կանխաւ եղած է հայաբնակ, բայց այժմ մահմետականաբնակ են, որոց մէջ սակայն անպակաս են հայկական հնութեանց հետքեր—կամ կիսակործան, կամ հիմնայատակ կործանուած և կամ կանգուն տաճարներ, եկեղեցիներ, մատուռներ և հանգստարաններ։ Ահա այն գիւղերից մի քանիսն։

Ձերդի (Ձարդ) Տիկ, Բաբադէմ, Նիլջան, Ենկիջա, Ղարաչամ, Արտաշաւի, Վաղազին, Հաճի, Հոչազ, Հաճի Սամլու, Խալիփալլու (Առաջնորդապատկան), Սուաթ, Մարջանլու, (Մունջուխլու), Հաթամլար, Հաճիլար, (Հարճլանք), Զուրման, Ծամքեանդի, Կարաբայնի (Կարաբաց), Կարաչանի, Լիլօ-Բաղր (Լիլաբակ), Ալակչի (Մաղագործ), Թուրքիշվան (Թրքաշվանթուր քաշող և հալածող գիւղ), Ծուքարան, Աղան, Ասրիկ (Իսրայէլի գիւղ), Աղջաքանդ (Ըղջկաքանդ—Աղջկայ քանդած), Ալուխան, Սևանդ (Սև հանդ), ևն.։

Միայն մի հայաբնակ գիւղ մնացած է այժմ Հարճլանք գաւառում, որ է։

*Ալղուլի*, Հիմնուած է Արտաշի սարի հարաւային կողմում. բնակիչք բնիկ, հողն արքունի, օդն, կլիման և ջուրն պատուական, կրկար կեանք 95—105 տ. եկեղեցին սուրբ Աստուածածին. քահանայ մի։

Ծուխ 74, ար. 372, իգ. 286.

Digitized by Google

Մի բերդ կայ միայն երկու գաւառներումս Աղջկայ—բերդ (Ղըզ-ղալա) անուն, որ գտնուում է Ղըրխ-ղըզ (40 օրիորդ) սարի հիւսիսային կողմում և ունի 9324 ոտք բարձրութիւն։ Հարկ է յայտնել թէ այնքան սմուր տեղեր կան գաւառներումս, մինչև անգամ կարօտութիւն չկայ բերդերի։

ԻԳ. *Սիսական—Ոստան, Սիսական, ծար, Վերին-Խաչին,* այժմ Զառ կամ Զար գաւառ։

Գաւառս ևս, որ կանխաւ եղած է հայաբնակ, այժմ թրքաբնակ է ամբողջապէս, այսուամենայնիւ կան կանգուն, կիսաւեր կամ հիմնայատակ կործանեալ եկեղեցիներ, վանքեր և հանգստարաններ հետևեալ գիւղերում։

Լև (Լևոնի գիւղ) Զամիլ, Եղջերուագոմ (Մարալ դամի), Դամիրչիլար (Դարբնոց), Աղալար, Քիլիսաքեանդ (եկեղեցաձոր), Ղամիշլու (Եղեգնուտ), Զիլքին, Ալլահվերտի (Աստուածատրի գիւղ), Տահքեանդ (Տահնշէի գիւղ), Լև ղալա, Զափնի, Քիլիսալու, Ալխասլու, Զայքեանդ (Գետաշէն) Քալուաջար, Բաշքեանդ (Գլխաւոր գիւղ), Միլլի, Զոմարդ, Տահղամ, Հաճի-Բաբա, Տառթկան, Խաչպարալի (Խաչ-պարան), Ուլուխան, Փիրխանլլի (Սրբադուն) Թարխանլու, Խայիւտցոկ (Հայոց ձոր), Զակլիկ. Զախմախ, Զըբիլ, Ղարախաչ, Զիրախ, Մամատ-Սափի, Իստի սու (Ջերմուկ), Բաղասաղ, ևն.։

Գաւառիս իշխանանիստ գիւղաքաղաքն եղած է Տարն, որ կայ մի լեռնահովտում։ Գիւղաքաղաքիս չորս կողմերն ի բացուստ շրջապատած են, բարձրագոյն, ձիւնապատ, կարկնաձև և շղթայաշար լեռներ սկսեալ արևելքից մինչև հիւսիս, որք են. սարի աղբիւր (սարի-բուլաղ) 9900 ոտք, Տաք ջրին սար՝ 7240, Սև խաչ 9000, Քիթ (Քեթի) 11284, Կուլթ, սար՝ 9000 ոտք. Վիմահերձ և բարձր քերծեր են գիւղաքաղաքիս հիւսիսային, արևելեան և հարաւային կողմերն, որոց միջից հոսում են սրընթաց Թարթառ գետի վտակներն և միանում գիւղաքաղաքիս ստորոտում. իսկ արևմտեան կողմով՝ վիմահերձից վիմահերձ ձգուած է պա-

րիսպ. այնպէս որ միանգամայն նշանաւոր ամրոց դարձած է Ծարս։ Գիւղաքաղաքիս մակերևոյթն հարթ է (ստորին կողմն փոքր ինչ թեքուած է դէպի արևելք) և ունի մեծ տարածութիւն, որ լի է աւերակ շինութեանց կոյտ կոյտ բեկորներով, *մատուռներով և խաչարձաններով:*

Ա. ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ մատուռ, քարուկիր, կանգուն և շինուած Ծարիս հարաւային եզրում, որ ունի 7 մետր 15 սանթիմ երկարութիւն, 4 մետր 75 սանթիմ լայնութիւն։

*Արտաքուստ ղրան գլխին խաչքարի վերայ.*

«Սուրբ Սարգիս»։ Ապա «Քրիստոս որդի Դաւթի աւգնէ վանիս Հասանայ անարժան ծառայիս յաւուրն առենի ամէն թվ. ՉԻԳ.»։ Մատրանս դրան հարաւային կողմում արտաքուստ կայ երկու նշանաւոր և գեղեցկաքանդակ խաչարձան՝ զեփեղուած ստինճանաւոր պատուանդանների վերայ։ Հիւսիսային *խաչարձանի վերայ,* (որի երկար. 2 մ. 60 ս. լայն. 1 մ. 10 ս.) «թվիս Հայոց ՉԼԸ. Աստուծով ես Գրիգոր որդի Հասանայ քաջ և յաղթող զաւրավարին և մեծի իշխանին Ականոյ, Հանդաբերդոյ, Սոթից, Շողգահո և այլ բազում գաւառաց, կանգնեցի զխաչս ի գեղս որ կոչի Ծար սիրեցելոյն հաւրն իմոյ հայրենիք և պարգև քաջութեան»։

Հարաւային խաչարձանի ճակատի վերի կողմում քանդակուած է սուրբ Աստուածածնայ պատկերն, որ գրկած է մանկացեալ Յիսուս Քրիստոսը։ Տէրունական պատկերիս շուրջն պատած են քառակերպեան կենդանիք, սուրբ Հոգին, արեգակն և մի թռչուն։ *Խաչարձանիս ստորոտում.* «Սուրբ Աստուածածին Քրիստոս Աստուած... ես Մամքան դուստր Քրդին ու Խորիշահի, ամուսին Հասանայ կանգնեցի զխաչս»։ Կան ուրիշ շատ տապանաքարեր և պատուական մահարձաններ, բայց անիրաւ քրդերն որը կոտրած են և որի գրերը ջնջած։ Մամքան տիկնոջ կանգնած արձանի համանման ամենայն մասամբ կայ փոքր ինչ հեռի դէպի արևմուտ (5 քայլաչափ), որի վերայ փորագրուած է։



Digitized by Google

«Քրիստոս Աստուած. Նշանս բարեխաւս Դաւլաթին. Աստուծով ես Դաւլաթս, ամուսին իմ մեծ իշխան Միրզաջան Խիկար, որդիքս իմ Տաւիտ բէկ, Մէլիք պէկի գանգնեցին զխաչս փրկութիւն հոգոյ ի տանէն Գեղամայ. դուստր Մէլիք Ղուկասին Թ. ՋՂԸ.»: *Սորա մօտ.*

«Այս է հանգիստ պարոն Ճհանկիր բէկին Թվ. ՌՃԻԵ.»: «Այս է հանգիստ Մէլիք Պէկին կողակից Շայամին, որ հանգուցաւ (ի) տապանս Թվ. ՌՃԿՁ.»: Այստեղ են նաև Շահփարու և Վահրամի տապանաքարերն: Մատրանս *հիւսիսային կողմում.* «.... Միրզա Ճհան կանգնեցաք զխաչս բարեխաւս եղբաւրն իմ պարոն Ճհան Բնուր (⌒) Շահիճանին... Թվ. ՋԿ.»:

Բ. Մատուռ *սուրբ Սարգիս*, քարուկիր, որ հիմնարկուած է գիւղաքաղաքիս մէջում, արտաքին որմերի կէսն շինուած է սրբատաշ քարով և միւս կէսն (ստորին մասն) անտաշ. երկարութիւնն 6 մետր 65 սանթիմ, լայնութիւնն 4 մետր 6 սանթիմ:

*Դրնազլուխ քարի վերայ*

«Թվ. ՉԻԸ. ի հայրապետութեան տէր Աթանասի, ի պարոնութեան Դուփին որդոյն Ուհան երէցու, Ուհանէս շինեցաք զսուրբ Սարգիս կենաց բարեխաւս, հոգոց փրկութիւն, ով կարդ....»: Դրան հարաւային կողմի շարխաչերի տակ. «Ես հայր Անտոն տվի սուրբ Սարգիսս Համարբակի հողին... Ա. ժամ տվին զծառազարգին»: Մատրանս դրան վերայ. «Շահանշահ կանգնեց խաչս որդոց...... (եղծուած է»:

Մատրանս հարաւ արևելեան կողմում արտաքուստ. «Յանուն Աստուծոյ մեք Խաչատուր, Զաքարէս կանգնեցաք սուրբ խաչ բարեխաւս հաւրն իմոյ և եղբարց Վելին, Ովանէսին, Մարգարէին, Միրաքին.. Թվ. ՋԼԳ.»:

## ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Համարեա թէ պատկեց է Բ. մատրանս հիւսիսային

Digitized by Google

կողմին և կիսաւեր. բայց ունի 26 մետր 10 սանթիմ երկարութիւն և 11 մետր 55 սանթիմ լայնութիւն։ Հարաւային դրան վերայ մի խաչքարի ստորոտում. «Ի թուին ՈՀԳ. ես Մելքք հոգևորդի իմ Ակուտին ու Մխիթար եղբայր կանգնեցաք զխաչս»։

Գ. ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ մատուռ, խիստ մօտ մայր եկեղեցու արևելեան կողմին, շինուած անտաշ քարով, երկարութիւնն 6 մետր 40 սանթիմ, լայնութիւնն 4 մետր 40 սանթիմ։ Դրան ճակատակալ քարին վերայ. «Խորբ տէր (ս) շինեցի սուրբ Գրիգոր ի հալալ արդեամբ ինձ, ամուս (ն)ոյ, իմ որդոյ Մարգարէին, յիշէք 'ի Տէր թվ. ՉԻԳ.»։ Դրանս հիւսիսային քարին վերայ. «Յանուն Աստուծոյ Կուկս միաբանեցայ սուրբ Գրիգորիս (տվի) իմ հողն Սոսթանիսի տուին այւագ հինգշաբաթ աւր ժամն...»։

*Մատրանս հարաւային որմին վերայ կրկին արտաքուստ։*

«Աստուծով մեք Տարբէի որդիքս տվաք զմեր Կալին հողն ի սուրբ Գրիգորիս. Սոսթանէս ետ Ղազարու տաւնին Ա. ժամ.....»։ *Սորա մօտ.*

«Գրիգոր Ջաջուռ կանգնեցաք խաչս մեզ և ծնողաց մերոց. Աստուած ողորմի Ն.»։

Բոլոր մատուռների շուրջն լի է խիտ առ խիտ գերեզմաններով և խաչարձաններով։

*Սուրբ Աստուածածին վանք*

Սրբատաշ քարով շինուած տաճարս, որ կանգուն է նոյնութեամբ, գտնուում է Ծարի Հարաւային վիմահերձի տակ երկու ջրախառնուրդի մօտ, որք են տաք-ջրի և Զբիւլ գիւղի վտակներն։ Մենաստանս թէ և փոքր է, բայց շատ գեղեցիկ է ամեն մասամբ։ Վանուցս *արձանագրութիւնն*։

«Ի ժամանակին յորում տիրեալ ազգն Նետողաց բազում աշխարհաց և մինչև յՈվկիանոս ծով և Ստամպաւլն, ի

Digitized by Google

Պոնտոս և մինչև ցգետն Եփրատես տիրելով գոռոզաբար և ծանր հարկապահանջութեամբ ցաւեցուցանելով զամենեսեան՝ զմեծամեծս և զփոքունս 'ի մահ և 'ի գերութիւն մատնելով, յայսմ ժամանակի դառնութեան որ էաք մեք տէր Յովհաննէս Դոփեան տրուպ և նուաստ և տկար հոգի, հասաւ մեզ հրաման ի նախահարցն մերոց գնալ ի մեր հայրապետացն առաջնոյ յաթոռն հռչակելի Հախպատ. դարձ արարեալ 'ի մեր հայրենական և բնիկ տունս հարազատ աւագ եղբաւր Հասանայ քաջ զաւրականին և հռչակաւոր արիացելոյն, որ և որդի իւր Գրիգոր սիրող եկեղեցոյ և քահանայից և ամուսինն իւր բարեհամբաւ Ասփայ դուստր մեծի կոմսի Տարսայիճի իշխեցողի կողմանցն սիւնեաց՝ և մեր հայեցեալ 'ի ձորակս, զի հոսէին ջուրք աստի և անտի և միջի նոցա բլրակ մի գեղեցիկ, ես հաճեցայ ընդ սա և մտայ յանապատս և սկսայ շինել մատուռ մի և յայնմ խորհրդի եկն Գրիգոր եղբաւրորդի մեր և իշխան գաւառիս և այլ շատ շատ կողմանց իշխեցող և կամեցաւ շինել զսուրբ Աստուածածինս ի բարեխաւս մեզ և ամենայն քրիստոնէից. ես տէր Յովհաննէս արարի սկիզբն շինութեան եկեղեցոյս 'ի թուին ՉԾ.»։

*Տաճարիս մօտ եղած սքանչելի խաչարձանի վերայ.*

«Աստուծով ես Սայտի որդի պարոն Ճանշին քաջ և յաղթող զաւրավարին և մեծ իշխանաց յազգէն և ի թուին ՊՀԹ. տեղեացս տէր և պարոն Փոքր Սիւնեաց, Ականայ, Հաթերքոյ և Հանդաբերդոյ և ծովակին Գեղամայ մինչ 'ի Ճաղվաքայ՝ կանգնեցաք զխաչս հաւր մերոյ Ճանշին....»։

Կայ և մի այլ փոքր վանք Ծարիս արևելեան ստորոտում—երկու ջրերի խառնուրդում։

*Տաք-ջուր.* Բղխում է այս Ծարի հարաւային կողմի ջրաձորից. նշանաւոր է ծծմբային ջուրս իւր տեսակին մէջ և առատ։ Միայն ափսոս որ իւր մօտ չկան պէտք եղած շինութիւններ և խիստ խոր է ջերմուկի ձորն և նեղ հօրիզոնն։ Այստ ամենայնիւ բազմաթիւ յաճախորդներ են հա-

ւաքուում այստեղ ամրան երեք ամիսներում շրջակայ գաւառներից, որք և պատսպարուում են վրաններում։

## ԳԱԻԱՌԻՍ ԲԵՐԴԵՐՆ

Ա-ն Բերդն է Տարն, որին արդէն ծանօթացանք, որի մէջ այժմ բնակուում են Փարիկեան ցեղից քուրդեր։

Բ-ն է Ղըզ-ղալա կոչուած բերդն, որ գտնուում է Տարի հիւսիսային կողմում և Սոթի ու Զարզբիլի արևելեան հանդէպ արձանացած սարի վերայ, որ մօտ 9000 ոտք բարձր է և միանգամայն սահման Արցախի և Գեղամայ կամ աւել Տար և Սոթ գաւառների։

Գ-ն է բոլորից նշանաւորն, որ է Հանդաբերդն և որն այժմ կոչուում է Լեա ղալա։ Բերդս հիմնուած է մի միապաղաղ և ձուաձև բարձրացած ապառաժի վերայ, որ առանձնացած է իւր չորս կողմերից։ Բերդաբարձ ժայռիս հիւսիսային խորանդունդ ձորով հոսում է Թարթառի մի օժանդակն, (որի ակունքներն առած են իւրեանց սկիզբը Ղըզղալա. Ումբասար, Գինալ 11051 ոտք և Մանուշակ (Բանովշալի) 10100 խաչենահայեաց լանջերից և միացած նոյն խորանդունդ ձորում։ Արևելեան կողմում, ձորի աջ կողմի հարթակի վերայ երևում է Զափնի աւերակ գիւղն և կիսաւեր եկեղեցին. ոչ ինչ պակաս խոր ձոր է և հարաւային կողմն. միայն մի Թրաձև սեռով բերդաժայռս հաղորդակցութիւն ունի իւր արևմտեան կողմի սարի հետ, որի վերայ է Լեա գիւղի աւերակն։ Այսու ամենայնիւ բուն բերդաժայռն շատ բարձր է սեռից։ Մի նեղ, զառիվեր և երկիւղալի կածան, որ փորուած է քարից, առաջնորդում է արևմտեան կողմից. անցնում հիւսիսային վիմափոր և քարուկիր, բայց *կիսաւեր դռնից*, որի մօտ է դռնապանների վիմափոր այրն և ապա հիւսիս արևելեան կողմով մտնում բերդի դրան։ Հարկ է յայտնել որ *կիսաւեր* դուռնս և պատըս ծառայած են ինչպէս *արտաքին* պարիսպ և դուռն,

որոց համանմանն կայ և բուն բերդի հարաւ արևելեան կողմում։

Ներքին բերդն ունի ամուր շրջապարիսպ, շատ բուրգեր, 100 մետր երկարութիւն, 80 մետր լայնութիւն, 6 մետր 10 սանթիմ պարսպի բարձրութիւնն և միայն մի դուռն հիւսիսային կողմից։ Ամրոցիս մակերևոյթն զգալի կերպով թեքուած է դէպի արևելք, որի վերնամասն կազմուած է առանձին ամրոց, որ ունի միայն մի դուռն, նշանաւոր ամրութիւն և պալատաման ձև։ Մակերևութի վերայ կայ ցորենի և ալրի ամբար, հաց եփելու փուռն և այլ շինութեանց հետքեր [1])։ Ամենայն ինչ կատարեալ է, միայն ափսոս որ ջուր չկայ բերդումս։ Սակայն կան եօթն վիմափոր, բոլորշի և խոր հորեր, որոց հինգն արևմտեան և երկուսն արևելեան կողմում։ Նեղ են բոլոր հորերի բերանները, լայն և բոլորակ մէջերքն և տակերն և մօտ 5 մետր խորութիւնն։ Ջուրը բերած են մօտակայ աղբիւրիցն և լցած հորերիս մէջ 'ի պաշար պատերազմի։ Այժմ բերդումս բուսած են ծառեր և հետզհետէ ժամանակի մշտագործ մուրճն քանդում է ամրոցիս քարերը. (68)։

## Ձուկն եւ Ձկնեղէն

Կուր գետից, որի մէջ թափուող հարաւային գետերից

[1]) Գաւառիս իշխողներն թէ և տիրապետած և իշխած են նաև Սոթի Նաղուաքայ գաւառների վերայ ևս զոր օրինակ տեսանք արձանագրութեանց մէջ, սակայն մենք չուզեցինք շեղուել Սարգիս Ա. ընդհանրական կաթուղիկոսի Հայոց ՆԾԵ, և փրկչ. 1006 թուի որոշած սահմանից։ Միայն բարւոք համարեցինք ներկայացնել ազնիւ ընթերցողաց Մեծ և Փոքր Սիւնեաց մէջ ընկած բնական սահմանագիծը, որի վերայ հիմնուած է և հանգուցեալ հայրապետի որոշումն։ Սահմանագիծն սկսեալ Գինալ (11057), Ոմբասար (7760), Ղըզ-ղալա (9000), Կարմիր-կումուր (8000), Քեթ-Քիթ-11284, Քեթի—(10000), Սալմուսաղ, Ջինկիլ (9980) Կալին սար-Ղալին-ղայա—(11002), Գել սար-Դալի-դաղ (11907), Մեծ բեեռաթափ-Մխթեօքան (1185), սահմանն սարերիս գագաթնագծերումն հասած է Հակարի գետի ակունքներին, որ առած են իւրեանց սկիզբը Գել-սարի հարաւահայեաց լանջերից։

Digitized by Google

և գետակներից և նոյն կողմերում եղող լճերից ելնում են.

| | Սալիանի վերի կողմից Փութ. | Սալիանի վարի կողմից Փութ. |
|---|---|---|
| 1) Սպիտակ ձուկն (Ռուս. Բելուգա) | 150 | 3154 |
| 2) Թառթ » (Օսետր, կամ » » » շիպա) | 21538 | 29773 |
| 3) Երկարաքիթ ձուկն (Սևրուգա) | 139098 | 564048 |
| 4) Կարմրախայտ » (Լօսոս) | 419 | 15820 |
| 5) Ճարմագի կամ շամահի (շեմահի) | 27958 | 325870 |
| 6) Լոքո — — (Սոմա) | 29556 | 70646 |
| 7) Մէջքն ոսկորոտ միջակ[1]) (Սուտակ) | 8998 | 204000 |
| 8) Թեփամորթ (ոչ այնքան քաղցր) » » (Լեշչա) | 6174 | 755236 |
| 9) Խաշամ — — (Խաշամա) | 20699 | 271318 |
| 10) Դասափիչ — — (Կութումա) | 741 | 66831 |
| 11) Օձաձուկն — (Մինոկի) | 1500 | 3300 |
| 12) Սազան — (Սազան) | 126606 | 1,006,300 |
| 13) Օձաձուկն — (Բալիկ) | 78748 | 16017 |
| Սպիտակ, թառթ և երկարաքիթ ձկներից միայն ելնում են. Ձկնհաւկիթ — (Իկրա) | 6064 | 17109 |
| Սոսինձ — — | 438 | 1675 |
| Փորաթել — [2]) (Վեազիկա) Թմբկի երեսի համար փառ: Վերջին 3 ձկներից շինում են նաև զիւրկեար և գէօշ մեծ քանակութեամբ։ | 838 | 2075 |
| Լոքո ձկնից ելնում է և այլ սոսինձ | 356 | 546 |
| Գետերից և գետակներից այլ և այլ մանր ձկներ — — | 21423 | 607246 |

Արցախեան նահանգի բոլոր գետերից և գետակներից ելնում են չորս տեսակ մանր ձուկն—բազմափուշ կողակ, սակաւափուշ կողակ, կարմրախայտ և երկարաքիթ կամ Բեղլու։ Ա. տեսակն ելնում է միայն Թարթառ և Հակարի

[1]) Միջակ մեծութեամբ ձուկն։ Թուանշաններդ ներկայացնում են տարեկան ելած ձկների քանակութիւնը։

[2]) Գործ է ածուում կերակրի մէջ։

Digitized by Google

գետերից, որ համեմատաբար մեծ մեծ են լինում քան թէ գետակներից ելածներն։

Իսկ Բ. և Գ. տեսակներն ելնում են բոլոր գետակներից և վտակներից, որք համեմատաբար մանր և քաղցր են լինում քան Մարթառ և Հակարի գետերից ելածներն։ Բայց քաղցր են միայն Հակարուց ելած մեծ կարմրախայտն, որ Երասխով գալով մանում է Հակարու մէջ. այսպէս են և Երասխից ելածներն։ Համարեա թէ միևնոյն տեսակ ձկներ ելնում են և Կասպից ծովից և Դարբանդի կողմերում Մեծ—Սամուր գետից։

## Վ Ե Ր Ջ



Digitized by Google

## Ծանօթութիւններ.

1) Նշանաւոր տեղ գրաւած է Մուղանի դաշտն ոչ միայն Հայոց, այլ և օտարազգի պատմութեանց էջերում։ 50 մղոնից աւելի է դաշտիս երկարութիւնն Երասխի ձախ ափից մինչև Կոտրած կամրջի մօտերքն և 2-23 լայնութիւն Գագայ սարից և Հատրութից մինչև Կուր։ Դաշտս կոչուած է Գարդարացւոց, Մուղանի և Արցախի դաշտ։ Ըստ ասութեան հմուտ երկրագէտների աւելի բարձր է Սև ծովի մակերևոյթն Մուղանի դաշտիս մակերևութիցն, այս իսկ է պատճառն, որ դաշտիս վերայ, մանաւանդ Կուր գետի եզերքներում տեղ տեղ լճանալով անշարժ մնացած են բաւական ջրեր։ Աղուանից թագաւորների և իշխանների ժամանակ դրախտի նմանութիւն ունեցած է դաշտս, քանզի ահագին առու հանած են Երասխից և ջրարբի արած ընդարձակ դաշտիս ամենամեծ մասը. վասն որոյ դաշտս լի եղած է ամենայն բարութեամբ, ինչպէս գրում է Կիր (եր. 137) «Եւ ապա եկին հասին (Թաթարք) յաշխարհս Աղուանից ամենայն աղխիւք բազմութեամբ իւրեանց և ի բերրի և յարգաւանդ դաշտին, որ կոչի Մուղան, լի ամենայն բարութեամբ, ջրով և փայտիւ, մրգով և որսով, անդ հարին դխորանս իւրեանց»։ «Դւ գարձան յերկիրն Մուղանայ, որ միշտ կանաչ լինի խոտն ամառն և ձմեռն վասն պարարտութեան երկրին» (Վարդ. պատմիչ եր. 18)։ Այս տեղ ձմերանոց հաստատեցին Թաթարներն. դաշտիս ստորին մասում թագ կապեց Նադիր-Շահն։ Դաշտումս ներկայացաւ Աղուանից Ներսէս Կաթուղիկոսն Թաթարաց զօրագլուխ Սարթախին (Կիր. եր. 215 216)։ Վարդան բարձր բերդցին (ՁԺԳ.ին 204-209) Հուլաւու-Ելղանին Սարգիս և Գրիգոր վարդապետների հետ, և Հայոց Կաթուղիկոս Աբրահամ Կրետացին Նադիր-Շահին թագադրութեան ժամանակ։ Բայց այժմ ոչ ջուր կայ դաշտումս և ոչ բնակիչ, ոչ ծառ կայ և ոչ միրգ կամ պտուղ, այլ ամրան սարսափելի տաք, թունաւոր և ահարկու օձեր. կատաղի կարիճներ և մորմեր և քառասնոտնեայ մահաթոյն զեռուններ։ Գուցէ աւերակ քաղաքիս և բերդերիս մասին է նոյն Վարդ. Բարձ. (եր. 198—199) «Դարձաւ Հուլաւուն յիջևանս ի ձմերոցս ի դաշտն Մուղանայ և ի կայս ամարայնի ի Դառին (?) կոչեցեալն կամ ըստ այլոց ի Դարան դաշտ, զի այրք և բերդուկք քարանց կան անդ շուրջանակի առ լերամբքն, զոր սիրեաց և շինեաց անդ շինուածս ըստ սրտի իւրում։ Եւ խորհեցաւ շինել քաղաք, յորմէ պատճառէ տառապեցաւ երկիր, մարդ և անասուն փայտս ծանունս ի հեռաստանէ բերելով»։

2) Զորս գաւառներս ես կազմում էին Ուտի նահանգի մասն, բայց պատկանում էին Հայոց թագաւորութեան Արցախի հետ, որից



Digitized by Google

անբաժան եղած են ամեն ժամանակ, ինչպէս և Աղուանից Թագաւորութեան ենթարկուած ժամանակ և յետոյ: Այժմս մի տուն անգամ հայ չկայ գաւառներումս, մինչդեռ կանխաւ մի տուն անգամ մահմետական եղած չէ: Եկեղեցեաց աւերակներ և հանգստարանների քարեր բոլորովին անհետացրած են մահմետականներն:

3) Աւանդութիւն. Տիգրանակերտ գաւառի Հովուասարի մասին. Մի աղքատ մարդ ոչխարի կաթ է խնդրում մի հարուստ հովուից, բայց հովիւս կաթ չէ տալիս: Իսկոյն չոքում է նեղացրած աղքատ մարդն և անում այս աղօթքը: «Աստուած, եթէ մի հօտ ոչխար տաս ինձ, ամեն խնդրողի կաթ կտամ ես»: Լսում է ամենաբարի Յիսուս Քրիստոս և իսկոյն ոչխար փոխում մօտի բոլոր սպիտակ քարերը: Աղքատն այնքան ուրախանում է. որ կարծես թե է տանում որ թռչի, որովհետև մի հօտ ոչխարի տէր եղաւ յանկարծ, և ոչխարները քշում է դէպի սարն: Յիսուս Քրիստոս ութսուն տարեկան ծերունու կերպարանքով մօտենում է նոր հարստացած հովուին և աղերսելով խնդրում. «Հովիւջան, որդիս. սիրտս կաթ է ուզում, խնդրեմ էս սև ոչխարը կթես, ինձ տաս խմեմ և օրհնեմ քեզ»: Ինչքան աղաչում է, հովիւն չէ տալիս կաթ, էս պատճառաւ խաչակնքում է Տէրըն և իսկոյն էլի քարանում են ոչխարներն և հովիւն: Էն օրից մինչև էսօր հայերէն Հովուի սար է ասում էս սարն, Թուրքերն էլ Չոբան դաղի. Ամեն ժամանակ գայլերն անպակաս են սարից»: Այժմ մի խաչարձան է քարացեալ հովւին համանուն սարի վերայ տնկուած: Սարիս բարձրութիւնն է 2316 ոտք:

Սարիս հետ հաղորդակցութիւն ունի հիւսիսային կողմից Վանքասարն, որ Թուրքերէն կոչում է Բէշիկ-դաղի (օրօրոցի սար) Վաչէ և գրեթէ ունի միևնոյն բարձրութիւնն, որի վերայ Աղուանից Բ. շինած է մի խաչաձև մենաստան, որի գլուխն այժմ խոնարհուած է ամբողջապէս: Բ. Աւանդութիւն. «Մի չբերք (ամուլ) կին ուխտ է գալիս վանքս և խնդրում մի արու զաւակ. Միւս տարում ուխտի եկած ժամանակ ծնում է մանուկը վանքումս, բայց որովհետև արս [illegible] է լինում կինն և մկրտւում է ուխտ օրից [illegible] մանկան [illegible] պատճառաւ աղաւաղիք աչ[illegible] են [illegible] վանքն, [illegible]
կինն էլ մանուկն էլ: Կին[illegible]
ինձ»: Փրկիչն հրամայու[illegible]
րս, խածնում բարձրաց[illegible]
օձերով: Կինն էլ մի ք[illegible]
մանուկը. սորս համա[illegible]

4) Ազուանից Ա. մայրաքաղաքն էր Զողա [1]). բայց որովհետև յաճախակի արշաւանքներ էին գործում հիւսիսային խուժողուժ ազգերըն Զողայի վերայ, վասնորոյ հարկ եղաւ տեղափոխել թագաւորանիստ աթոռը։

Պարսից շահ Պերոզ թագաւորին հրամանաւ Ազուանից Վաչէ Բ. բարեպաշտ թագաւորն շինում է Պարտաւ քաղաքն Գարգարացւոց դաշտի վերայ։ „Եւ ի հրամանէ Պերոզի Պարսից արքայի շինեցաւ ի Վաչէէ Պերոզապատ մեծ քաղաք, որ այժմ կոչի Պարտաւ» (Մով. Կաղ. եր. 33)։ Փրկչ. 551 և հայկական 1 թուականին Զողայից քաղաքս է փոխադրւում նաև Ազուանից կաթուղիկոսական աթոռն. „Ցետ այսորիկ գերեցաւ ի Խաղրաց աշխարհս Ազուանից, հրկէզ եղեն եկեղեցիք և կտակարանք։ Ապա յորժամ սկիզբն հայ թուականին եղև, ի սոյն ամի փոխեցին զաթոռ հայրապետութեան Ազուանից ի Զողայ քաղաքէն ի մայրաքաղաքն Պարտաւ վասն հինահալած արշաւանաց թշնամեաց Խաչին Քրիստոսի, և նստուցին հայրապետ զտէր Աբաս ի զաւազէն Մեծ իրանաց“ (Մով. Կաղ. եր. 91)։ Քաղաքիս պարիսպն ունեցած է չորս դուռն երբ Խազիրներն պաշարում են քաղաքս, որի բնակիչք „Եւ դէմ եգեալ առհասարակ ընդ չորս դրունս քաղաքին աճապարէին անկանիլ ի լեռնակողմն Արցախական զաւաուրն“ (Նոյն եր. 104—107)։

Քաղաքիս մէջ գահակալած են Ազուանից Վաչէ Բ. և Վաչական Գ. բարեպաշտ թագաւորներն, շատ կաթուղիկոսներ, Վարազ-Գրիգոր, Ջուանշիր (2) և Վարազ-Տրդատ իշխաններն նոյնպէս Վաչական Գ. Շուփահղիշոյ կաթուղիկոսի հետ (Մով. Կաղ. եր. 65—69)։

Պարտաւիս մէջ ժողով գումարեց Հայոց Եղիա կաթուղիկոսն Փրկչ. 709 թուին և գահընկեց արաւ Ազուանից Ներսես Բակուր կաթուղիկոսը (Նոյն եր. 238)։ Բ. ժողովը գումարեց քաղաքումս Հայոց Սիոն կաթուղիկոսն փրկչ. 768-ին և եկեղեցու բարեկարգութեան համա[illegible] հաստատեց 24 կանոն։ Քաղաքս եկած են նաև Հայոց Եսայի կա[illegible]ղիկոսն (Մով. Կաղ. եր. 262) և Գէորգ Բ. կաթուղիկոսն (Մով-[illegible] եր. 268-269։ [illegible] քաղաքումս վերականգնեց Համամ իշխանն Ազուա-[illegible] [illegible]ուլթիւնը (Նոյն. եր. 268-269. Աստղ եր. [illegible]

[illegible]ուած են Պարսիկք, Խազիրք, Հոնք, Արա-[illegible] [illegible]ցեղի մի տեսակն. տես Սեբ. զլ. Գ. ԼԵ.),

[illegible] [illegible]ուանից Երկ. և Գր.։

[illegible] [illegible]նշիր կոչուած են դաւառներս Ռստ[illegible]ց հե-[illegible] [illegible]ճնակ դաւառի և բոլոր հայաստ[illegible] գիւ-

Digitized by Google

Ռուսք (Մով. Կաղ. 270). Վրացիք, Թաթարք, վերստին Պարսիկք, Օսմանցիք և Լէկղիներն (Եսւ. կաթ. եր. 21-40)։ Վերջապէս ամեն բարութեամբ լի և վաճառաշահ եղած է քաղաքս, այս պատճառաւ իւրաքանչիւր արշաւող ազգ ճգնած է իւրացնել այս իւղալի պատառը։ Այդուանից Եսւ. Կաթ. գրուածներից (եր. 31-32) երևում է որ Հայոց ՌՃՀ. (փրկչ. 1721-ին) թուին Պարտաւն տակաւին կորուսած չէր իւր քաղաք լինելու փառքը (1)։ Երևի թէ այնուհետև աւերակ դարձած է քաղաքս։

Մահմետականաց աղօթարանս Իմամզատէ եղած է Պարտաւի մայր եկեղեցին Սուրբ Գրիգոր անուամբ, որի մէջ ամփոփուած են երկու նահատակւող եղբարք-Մ ա ն կ ի կ և Մ ե ր դ ա զ ա տ Հայոց ՃԿ. (711 թուին (Մով. Կաղ. եր. 259)։ Ուշիմ ընթերցողն այժմ իմացաւ թէ իմամզատէում եղած զոյգ տապանաքարերն են երկու եղբարց գերեզմանները։ Պարտաւումս նահատակուած են այլ և երկու հարազատ եղբարք-Արծրունի իշխանք Ս ա հ ա կ և Հ ա մ ա զ ա ս պ, որոց յիշատակութիւնն կատարում է Հայաստանեաց եկեղեցին իշարս սրբոց (Յայսմ. Տէր-Իսրայ. հատ. Ա. եր, 155)։ Բայց սոցա մարմիններն շարժանացան հողին, այլ այրեցին և մոխիրը գետին մէջ թափեցին (Ղևոն. եր. 162—165 Հայոց ՄԼԳ. թուին)։

5) Բազմաշխատ Ղ. Վ. Ինճիճեան իւր Հնախ. Ա. հատ։ եր. 329-332 (առնելով օտարազգի պատմութիւններից) գրած է թէ Սկիւթացիք զօրանալով մեծ ցեղ դարձան և առաջ բերին թագաւորներ. «յորոց ծնան Ս ա կ ք և Մ ա ղ ք ո ւ թ ք». և թէ «ի սկզբանէ, անդ Հակք անուն ժողովուրդ հայկական բնակեալ անդ յՈւտի նահանգին մերում. որոց և գլխաւորի անուամբ կոչեցաւ գաւառն Շակաշէն». (Ս ա կ-Հ ա կ-Շակաշէն)։ Որպէս թէ տակաւին չհիմնարկուած Գանձակ քաղաքն Շակաշէն էր կոչում գաւառս։ Խորենացին անուանում է գաւառս Շիկաշէն, իսկ Կաղականդուացու հեղինակներն 141 և 251 եր. Շ ա կ ա շ է ն. իսկ 170 և 265 եր. Ա ր շ ա կ ա շ է ն են անուանում Գանձակի միևնոյն գաւառը։ Աւելի ուղիղ և հ ա յ կ ա կ ա ն է թուում Շ ի կ ա շ է ն ն, քանզի չ է կ բառով բարդուած շատ անուններ ունինք նոյն իսկ Արցախում և Կաղական. պատմութեան մէջ, ինչպէս է Շիկաշէն. Շիկատափ, Ձիկահող, Ձիկահեր են։ Եւ զոր օրինակ տեսանք փոփոխութեանց ենթարկուած բոլոր գաւառների անունները, անհաւանական չէ եթէ փոխուած լինի և Շիկաշէնն յԱրշակաշէն։

Բաղդատի խալիֆայի հրամանաւ և արքունի գանձով փրկչ. 836 թուին գալիս է արաբ Խաղը-Փատկոսի որդին և հիմնարկում Գանձակ քաղաքը Շիկաշէն գաւառումն «իսկ նորա որդին (Խաղը-

1) Վկայում է և Տարեցի Յովհաննէս վարդապետն (Սամ. ան. եր. (189.

Digitized by Google

Փատկոսին). . . . եկեալ արքունի հրամանաւ և գանձուք շինեաց զԳանձակ քաղաք յԱրշակաշէն գաւառի» Մով. Կաղ. եր. 265)։ Այնուհետև Պարտաւի փոխարէն ամիրայանիստ քաղաք է դառնում Գանձակն, ուր փոխադրուում է և Աղուանից Կաթուղիկոսարանն (Մատ. Ուր. եր. 278). սակայն այս Գանձակն կործանուում է փրկչ. 1139 թուին մեծ շարժով. «Ի ՇՁԸ. թուականին եղև շարժ սաստիկ և կործանեցաւ քաղաքն Գանձակ և տապալեցան շինուածք որ ի նմա ի վերայ բնակչաց իւրոց. և եկն թագաւորն Վրաց Դեմետրէ հայրն Գիւրգեայ և տարաւ զդրունս քաղաքի յաշխարհն իւր». (Կիր. եր. 65 և Վարդ. Բարձր. 162)։ Վերստին շինում են Գանձակ քաղաքը նոյն իսկ փլած տեղում։ Սակայն 1235 փրկչ. թուին [1]) դարձեալ աւերուում է նոյն քաղաքն. «երևեցան յառաջագոյն նշանք աւերման. . . որպէս ի վերայ երուսաղէմի յառաջ քան զաւեր նորա, նոյնպէս և այսմ քաղաքի (Գանձակի), քանզի յանկարծ պատառեալ երկրի և արտաքս ելեալ ջուր սեաւ . . . և յանկարծակի հասին զօրք Թաթարին և պատեցին զքաղաքն յամենայն կողմանց . . . . իսկ բնակիչք քաղաքին իբրև տեսին թէ առաւ քաղաքն ի թշնամեացն, մտեալ իւրաքանչիւր ոք ի տունն իւր այրեաց ի վերայ իւր զշինուածն, զի մի անկցի ի ձեռս թշնամեացն. . . . , և այսպէս ամայի եկաց քաղաքն ի չորս ամս և ապա հրաման ետուն շինութեան քաղաքին» (Կիր եր. 137-138)։ 1239-ին շինուած Գանձակն ևս կործանում է Ա. Շահ-Աբասի հրամանաւ 1606-ին և շինում այժմեան քաղաքն Գ ե ա ն ջ ա անուամբ։

Ահա այսպէս կործանուում է և ե ր ր ո ր դ անգամ շինուած Գան. ձակ քաղաքն։ Բայց տակաւին երևում են Հին-Գանձակի աւերակներն նորից բաւական վար համանուն գետակի աջ ու ձախ ափերի վերայ-տների, շուկաների, բերդերի, աշտարակների, կամուրջների բեկորներն և հետքերն։ Այժմ երևում են իրարից զանազան չափով հեռու երեք բազմաչեայ, բայց փլած կամուրջներ, որոց Ա-ն այժմեան կամուրջից վար, Բ-ն երկաթուղու կամուրջից վերև, իսկ Գ-ն սրանից վար։ Գետակի աջ ու ձախ կողմերում դեռ երևում են բերդերի աւերակներն որք հաղորդակցութիւն ունեցած են միմեանց հետ ստորին կամուրջներովս, որոց մօտ գետակի ձախ ափի բերդն եղած է բաւական ընդարձակ. որի աշտարակներից մի քանիսն կիսակործան են։ Գետակի աջ կողմում նախ ընկած են վերևոյիշեալ քաղաքի և շուկայի աւերակներն. որոց ստորոտում աւերակ բերդն, որ միացած է եղել երկու զուգահեռական պատերով և բաժանուած երկու միջնորմ պատերով,

1) Վարդ. Բարձ. եր. 189։

*այժմ երևում են միայն բերդերիս հիմքերն։ Այս բերդերից փոքր ինչ վար եղած է Հայոց թաղն և եկեղեցին, որի մէջ ամփոփուած ս. Խոսրով Նահատակի մարմինն* [1]*։ Պարսիկներն եկեղեցիս փոխած են մզկթի, որը անուանում են Գ ե օ գ-ի մ ա մ։ Խոսրովի գերեզմանն էս զարդարուած է թանգագին կերպասներով։ Շինութիւնս ամեն մասամբ նման է Պարտաւի Իմամզադէին, տարբերութիւնն այն է միայն որ Գեօգ-Իմամիս գաւիթն լի է գերեզմաններով և սորա գմբեթի արտաքին կողմն խաչազարդարուած է գոյնզգոյն մանր աղիւսներով։*

*Հին-Գանձակումս ծնած և սնած են Գօշ-Մխիթարն և պատմաբան Կիրակոս Գանձակեցին։ Գանձակումս Կաթուղիկոս օծուեցան ի չարս այլոց մանկահասակ Յովհաննէս և Գագիկ (Կիր. եր.* 105 *և* 116*)։*

*Իսկ Նոր-Գանձակիս վերայ եղած են Ռուս-պարսկական պատերազմներն, նախ* 1804*-ին դեկտ.* 3*-ին Ռուսներն յաղթում և գրաւում են քաղաքս, որը և Ե լ ի ս ա ւ է տ ա պ օ լ անուանում ի պատիւ Ելիսաւէտա Կայսերուհւոյն Ռուսաց։ Երկրորդ* 1826*-ին այս պատերազմում վերջնական կերպով յաղթումեն Պարսիկներն-*

6) *Կաղթ գաւառիս մէջ այժմ ես գտնում են ջարդուած քարերում, ք ա ր ա խ ա ւ ն կ, ինչպէս ակնարկում է Խորենացին։ Գտնում են քարերը ջարդած ժամանակ. բայց խիստ սակաւ։*

*Շամքոր և Ջակամ գետակների պատճառաւ երկու գլխաւոր մասերի բաժանուած է գաւառս և ստացած յետոյ երկու առանձին անուն- Շ ա մ ք ո ր և Ջ ա կ ա մ։*

7) *Կողթ գաւառիս արևելեան մասում շինուած է Շամքոր* [2] *քաղաքն Զ. դարում որպէս թէ յանուն Ճաթ-Խաղրի (Կիր. եր.* 113-114*)։*

*Բագրատունի Աշոտ Գ. Ո ղ ո ր մ ա ծ թագաւորի կրտսեր որդին Գուրգէն Թ. դարի վերջին քառորդում քաջութեամբ տիրում է ի միջի այլոց Սևորդեաց ձորին, Կայան և Կայծոն բերդերին (Վարդ. Բարձ.* 122*)։*

*Գուրգէն այս գործողութեամբ դնում է հիմը մի առանձին թագաւորութեան։ Գուրգենիս որդի Դաւիթ- Անհողին Ժ. դարի առաջին քառորդում յաջորդելով իւր հօր աւելի ընդարձակում է իւր տէրութեան սահմանները. հնազանդեցնում Թիփլիսի ամիրան, յաղթում Գանձակի Փալտուն ամիրային սրախողխող և գետաւէժ անելով նորա զօրքերը, տիրում Զաւէ և Կայենի և Քաւս կամ Քօւստի և կողթ*

---

1) *Բնիկ Գանձակեցի է Խոսրով Նահատակս, որը, զՔրիստոս չուրանալու համար կապեցին թթենի ծառից և նահատակեցին, որի մարմինը ամփոփեցին հայք եկեղեցումս. (Նոյն յայսմ. հատ. Բ. եր.* 5*)։*

2) *Քաղաքումս ժողով գումարեց Աղուանից Միքայէլ կաթուղիկոսն (Մով. Կաղ. եր.* 258*)։*

գաւառներին և սոցա բոլոր բերդերին և ժառանգում Թագաւոր Աղուանից անունը։ (Ասող. եր. 257), Այնուհետև Դաւիթ Թագաւորն յաղթում է Պարսից Ապլուսուարի 100,000-ից բաղկացած զօրացն և տիրում Արցախի Գարդման գաւառին ևս և շատ բերդերի (Մատ. Ուռ. եր. 92-96)։ Աղուանից Թագաւոր կոչուեցաւ նաև Կիւրկէ Ա. որդի Դաւիթ Անհողինի, որովհետև տիրում էր Աղուանից երկրի հարաւ արևմտեան մասին այն է իւր հօր տիրած բոլոր գաւառներին և բերդերին։ Այս պատճառաւ Մատթ. Ուռ. (եր. 278) գրում է. «և Թագաւորք Աղուանից Գագիկ (Գուրգէն) և Դաւիթ և Կորիկէ (Կիւրիկէ) [1]) որք նստէին այժմուս ի Լոռէ քաղաք»։ Շարունակաբար տիրեցին և սոցա որդիքն և թոռներն։ Յետոյ նոյն գաւառները գրաւեցին Սելճուկեաններն պարսիկ զօրքով. ապա «Այսպէս և միւս իշխանն Զաքարէ անուն և եղբայր իւր Սարգիս հայրն Զաքարէի և Իւանէի, ազգականք մեծ իշխանացն . . . առին բազում գաւառս ի Պարսից և զբերդս ամուրս զԳարդման, զՔարահերձ, և զՇրգեվանք, զՏաւուշ, զԿածարէթ և զՏէրունականն, զԳագ և զՇամքոր քաղաք ի նեղ էարկ, զոր յետոյ էառ որդի նորա Վահրամ հայր Աղպուղին, պապն Վահրամայ և Զաքարէի և Իւանէի [2])» (Կիր. եր. 95)։ «Եւ ապա ձեռն տուեալ (Իւանէ եղբայր Սպասալարին) ազգայնոյն իւրոյ Վահրամայ որդւոյ Զաքարիեայ. առնու զՇամքոր» (Վարդ. Բարձր. եր. 184)։

1235-ին Թաթարներն գրաւում են նախ «առին զնա (զՇամքոր) . . . և այրեցին զշինուածն, որ ի նմա. ապա յարձակեցան ի վերայ այլ բերդերն, որ ընդ իշխանութեամբ Վահրամայ ի Տէրունականն և յՇրգեվանքն, և ի Մածնաբերդն. զոր ունէր Կիւրիկէ Բագրատունի որդի Աղսարթանայ և ի Գարդման և յայլ կողմանս և ի Չարեք և ի Գետաբակս . . . ի Տաւուշ և ի Կածարեթ և ի Նոր բերդն և Գագ» (Կիր. եր. 141-142)։ Յետոյ դարձեալ ծաղկում է քաղաքս։ Վերջապէս քաղաքիս հայ բնակչաց մեծ մասն փոխադրվում է Թիֆլիս

---

1) Աշոտ-Ողորմածի որդի Գուրգենից ծնուած էր Դաւիթ-Անհողին Թագաւորն, որից Կիւրիկէ Թագաւորն և Կիւրիկէից Աբաս Թագաւորն, որ տիրում էր Գարդման գաւառին և Մածնաբերդին, այսպէս և իւր հետագաներն մինչև Մէլիք-Աստամ Բարսում գիւղի։

2) Սպասալար Զաքարէն և Իւանէն չեն սոքա, այլ ազգական են սոքա նոցա։ Սպասալարների համար գրած է Կիր. եր 94 Զաքարէ և Իւանէ էին „Որդիք Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարեայ որ հատուածեալ ի Քրթաց ի Բաբիրական խելէն (եկն ի Հայաստան)»: Իսկ միւս Զաքարէի և Իւանէի մասին որոշ գրում է նոյն Կիր. եր. 95. Թէ միւս իշխաններն Զաքարէ և Սարգիս եղբարք էին բայց ազգական Սպասալար եղբարց։ Զաքարէ իշխանից ծնուած էր Վահրամ, որ հայր էր Աղպուղէին, և պապ Վահրամին և Զաքարէին և Իւանէին։ Վահրամ իշխանն էր վերև յիշուած բոլոր բերդերի տէր Թաթարաց եկած ժամանակ։

Digitized by Google

*և շինում իւր համար առանձին եկեղեցի, որ կոչւում է Ճամքորցւոց Թաղ և Ճամքորցւոց եկեղեցի։ Իսկ Ճամքոր աւերակ քաղաքում մնացեալ նշանաւոր և աղիւսաշէն և բարձրագոյն դիտարանն կործանւում է 1840 Թուականին մեծ շարժով։*

*Գաւառիս երկրորդ մասն էր Զակամ. որ կրկին է. Ստորին-Զակամ և Վերին-Զակամ։ Երկու Զակամներս միասին Աղուանից Եսայի Կաթուղիկոսն (եր. 23) անուանում է «Ամիրշամ Ճատինլու որ են Զակամներն»։ Իսկ Առաք. պատ։ (եր. 9) որոշակի գրած է «Մելքիսեթ եպիսկոպոսն ի Վերին Զակամայ»։*

*Համարեա թէ Զակամներիս արևմտեան մասն այժմ կոչւում է Շամշատին, որ կարծում ենք, ունի մի ներքին կապ Ամիրշամ Շատինլու անուան հետ։ Հաւանական է թւում մեզ, որ Արաբացւոց ժամանակից մնացած լինին անունս գաւառիս վերայ, վասն զի արաբական բառ է Ամիր-Շամ (Դամասկոսի հրամանատար) անունս։*

8) *Կողթ գաւառիս մէջ է և Խաղխաղ քաղաքի աւերակն, ինչպէս գիտէ ընթերցողն։ Բոլորովին անյայտ է մեզ քաղաքիս հիմնարկութեան և աւերման տարեթիւերն և շինողի անունն, միայն յայտնի է որ քաղաքս ձմերոց էր Աղուանից Թագաւորներին* [1]։

*Համոզուած ենք որ աւերակս է Խաղռաղ քաղաքն և Զակամ գետակս է Լոփնաս գետն։ Մեր համոզմունքն հիմնուած է հետևեալ կէտերի վերայ։*

—Ա. *Որ Խաղխաղ քաղաքն գտնւում էր Կուր գետի աջ կողմում։*

Բ. *Որ խաղխաղ քաղաքս մօտ էր Վրաց սահմանին, քանզի Կուր գետի ձախ ափն պատկանում էր Վրաց։*

Գ. *Որ պատերազմն եղած է Խաղխաղ քաղաքի դիմացն և Պարսից յաղթուած զօրքն սկսած է Լոփնաս գետովն ի վեր փախչիլ դէպի ամուր անտառներն։ «Սեբուխտ. . . . ոչ եկաց մնաց ի կողմանս ճորայ, այլ կուտեաց զամենայն բազմութիւն զօրու իւրոյ և փութանակի անցանէր ընդ մեծ գետն Կուր անուն և պատահէր նմա (Վարդանայ) մերձ ի սահմանս Վրաց հանդէպ Խաղխաղ քաղաքի. . , ։ Անցանէր, բովանդակեր ամենայն զօրօք իւրովք, ռազմ արարեալ զբոլոր մեծութիւն դաշտին ի ներքս փակէր» (Եղիշ. եր. 140. Մով. Կաղ. եր. 87)։ «Ընդ այն ժամանակս (Ե. դարի երկրորդ քառորդում) Թագաւորն Ռոսմոսաքեան իւրովք զօրօք և Թորելեան գնդիւն գումարեալ ժողովեաց զամենայն զօրս Հոնաց և էանց յայս կոյս Կուրական*

---

1) *Եղիշէ եր.* 140 *„Ձմերոց էր Թագաւորացն Աղուանից“. Մով. Կաղ. եր.* 87. „ „ *Թագաւորութեանն* „ „։

Digitized by Google

գետոյն... Նստուցանէր զզակիշ իւր մերձ ի Խաղխաղ քաղաք» (Մով. Կաղ. եր 73)։

Պատմաբաններիս մատնանիշ արած բոլոր յատկութիւնները մենք գտանք միայն աւերակիս մօտ, որք են դ ա շ տ, Վ ր ա ց  ս ա հ մ ա ն ի մօտ, գ ե տ ա կ. որի եզերքով ճանահապարհ կայ, որ խոր և անտառապատ ձորերով առաջնորդում է մինչև Ճամբարակ գիւղն։ Չորրորդ և գլխաւոր փաստն այն է, որ ցարդ Խալխալ է կոչւում քաղաքիս աւերակին վերայ եղած Թրքաբնակ գիւղն։ Դաշտիս վերայ չկայ մի այնպիսի աւերակ քաղաք, որ ունենայ այդ բոլոր յատկութիւնները և անունը բացի Խաղխաղ աւերակիցս։

9) Ջաբրայէլ անունը կարծում ենք թէ գաւառս ստացած է Ջաբրայէլ հայ իշխանի անունից, ինչպէս Ջուանշիր իշխանից Ջուանշիր գաւառ (Գաղտ. եր. 201 և 182)։

10) Անյայտ է մեզ բերդիս շինողի անունն, շինութեան տարեթիւն և միանգամայն սորա անցեալն։

11) Անծանօթ է մեզ և այս բերդիս անցեալն, միայն տակաւին թարմ է հասարակութեան մէջ Աւան-իւզբաշու աւանդութիւնն և կենդանի սորա անունն և քաջութեան համբաւն։ Հարկ է յատնել թէ այս կողմերում բնակած է և Աւան անուն իշխան և Մէլիք-Աւան (Գաղտնիք եր. 201)։ Թէ երկուքիցս որն հիմնած է բերդս չգիտենք։

12) Ինչպէս միւս բոլոր բերդերն, նոյնպէս և բերդս պատկանում է Արցախի իշխաններին։ Եւ ինչպէս Գ տ ի չ է կոչւում Դողայ մօտին վանքն նմանապէս Գ տ ի չ է կոչւում և վանքիս մօտի բերդն։ Ամրոցի մասին գրում է Թովմայ Արծրունին (եր. 177-185) թէ Ազուանից հայ իշխաններից Ապումուսէ ոմն, հաւաքում է երկրի բազմութիւնը և «լէգէոնս զօրականաց զսակաւս (ամրանայ) ի լեառնն ամուր անուանեալն Քթիշ»։ Իմանալով Բուղա ոստիկանն մեծ զօրքով յարձակւում է Գտիչ բերդի վերա, բայց յաղթւում է չարաչար.։ Վերջապէս «եղև թիւ պատերազմաց նոցա (Բուղայի և Ապումուսի) ԻԸ. (28) անգամ և հարան զօրքն արքունի յայսքան հանդէսս և ի կռուի»։ Բուղան ակամայից ստիպեալ գրում և յայտնում է ամիրապետին, որից հրաման է ստանում ընդունել զԱպումուսէն մեծ պատուվ իբրև յաղթող զօրավար։ Վասնորոյ Բուղան «եհան ընդառաջ նորա (Ապու-Մուսէի) զունդս զունդս վառեալ զինու և ընտրեալ երիվարբօք և ետ տանել ընդ առաջ նորա նժոյգս սեծազարդս և երևելիս և երգեցիկս և գովասացս են»։ Բերդումս պատերազմեց և Դիզակի Մէլիք-Եսային և յաղթեց Իբրահիմ Ճըռ-խանին։ Արդէն յայտնի է, որ Դող աւանիս շրջապարիսպը շինած են Դողայ մէլիքներն և նորոգած Դող կամ Գտիչ բերդիս պարիսպը։

Digitized by Google

13) Դեզափայտ սարիս բարձրութիւնն է 8186 ոտք։ Սարիս կատարի վերայ եղած է Կ ա տ ա ր ո յ անուն նշանաւոր Վ ա ն ք։ Մենաստանիս մէջ ապաստանարան գտած էին Սանեսան թագաւորի երեք որդիքն Մովսէս, Դանիէլ և Եղիա 3870 մարդով, որք հաւատացած էին Յիսուս Քրիստոսին Ս. Գրիգորիսի քարոզութեամբն։ Գալիս է Սանեսան թագաւորն զօրքով [1]) նահատակում իւր որդիները և հաւատացեալները սրով։ Այսպէս նահատակուում են նաև Ռոմոսոք թագաւորի Թէվոփիլէ սուրբ զօրավարի որդիք-հաւատացեալ Մովսէս և Աներողոգէս Ագիստրոսեան գնդով միասին (Մով. Կաղ. եր. 73-78)։

Անծանօթ է մեզ Դեզափայտիս մօտ եղած բ ե ր դ ի անցեալն։

14) Ինչպէս տեսանք Հերհերի եկեղեցու արձանագրութեանց մէջ (որ Հովարան էր Ամարասայ վանքին) Քոշիգ կոչուած է ծովատեղ Գիւղս և եղած մէլիքանիստ աթոռ Մէլիք-Փաշայեանց ազնիւ տոհմին մինչև Մէլիք-Շահնազարեան Մէլիք-Բաղու ժամանակներն։ Առաք. պատմագիրն (գ. գլ.) յիշում է գրելով. «Մէլիք Փաշիկն ի Քօշիգ գեղջէ»։

15) Պատմութիւններից որոշակի երևում է մանաւանդ Մով. Կաղանկատուացուց, որ Ամարաս գիւղաքաղաքն (ոմանք ա ւ ա ն են անուանում և ոմանք գ ի ւ ղ ա ք ա ղ ա ք) շինուած է եղել Ամարասայ այժմեան վանքի մօտ։ «Երթեալ լուսաւորէր զՎրաց և զԱղուանից աշխարհն (Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ)։ Եւ երթար ի Հորանդ Գաւառ ուսուցանէր և խրատէր պահել զպատուիրանս Որդւոյն Աստուծոյ և արկանէր հիմն եկեղեցւոյ ի գիւղաքաղաքին Ամարասայ, և կացուցանէր զգործունեայս և հրամանատարս շինել զեկեղեցին». . . յետոյ գրած է. «Զօր (զսուրբ մարմինն Գրիգորիսի) բարձեալ աշակերտացն բերէին յԱմարաս գիւղաքաղաքն... անդ եդեալ առ եկեղեցոյն հուպ 'ի բեմն ի հիւսիսոյ կողմանէ (մի և նոյն տեղումն է և այժմ)» (Մով. Կաղ. եր. 28-31)։ Հաւանական է թուում մեզ, որ օդի ծանրութեան պատճառաւ գիւղաքաղաքի շինութիւնները փոխադրած լինեն յետոյ վանքիս մօտիցն հանդիպակաց սարին հիւսիսահայեաց լանջի վերայ, որի մեծ աւերակն մնում է արգէն, և որի մասին գրած ենք։ Աղուանից Վաչական Գ. թէ ինչպէս եկաւ գտաւ Սուրբ Գրիգորիսի գերեզմանը, ով ցանկանում է թող կարդա Մով Կաղ. գատ. Ա. գլ. ԺԹ-ԻԴ.»։

---

1) Յառաջ քան զտեսչաւորելն տեառն Սրասա ի թշնամեաց հրդեհեցան ի Դեզափայտ լերին ի Կատարոյ վանս . . . . Սուրբն Մովսէս, սուրբն Դանիէլ, սուրբն Եղիա. սոքա որդիք գոլով Սանեսանայ արքային Մասքութաց, որ աշակերտեալ սրբոյն Գրիգորիսի և երեք հազար ութ հարիւր և եօթանասուն այր ընդ նոսա։ Ամենեքեան սոքա ի լեառնն Դիզափայտ . . արինարբուն Սանեսան խուր սուսերի արկ զնոսա (Մով. Կաղ. եր. 92)։

16) Քարայրներս նշանաւոր դեր կատարած են ժամանակին. մէն մի անառիկ բերդի չափ օգնած է Արցախի Հայոց: Ցաւալին անհետացած չէ ժողովրդեան յիշողութիւնից և աւանդութիւնիցն քարայրներիս պատմութիւններն: Հունոտի քարայրում նախ երկար ժամանակ մնացած է Աւան-Իւզբաշին, որոյ անունը գովութեամբ է յիշում Աղուանից Եսայի կաթուղիկոսն (եր. 47): Ապա 1826 թուի ռուս պարսկական պատերազմի ժամանակ բնակում է քարայրումս Թարխանեան Սափարի իւզբաշին իւր քաջերով և չարունակ ալիւր հասցնելով Շուշին ազատում սովից (Գաղտ. եր. 362-366): Ահա այսպէս օգտակար եղած են քարայրներն. այսպէս և Աւանայ և Ամարաթներն այրերն:

17) Արդէն յայտնի է գրականութիւնից Աւետարանոցի և Շուշու բերդերի պատմութիւններն. բայց անհայտ են Բրդահոնջի բերդի անցեալն, միայն յայտնի է որ շինուած է Աղուանից իշխաններիցն: Ղալի-Խութ բերդի մասին գրած է Մով. Կաղանկատուացու շարայարողն (եր. 264) «էանց Բաբան զգետովն Երասխ ի Պարսից և յԱմարաս գաւառ բնակեցաւ, բան խաղաղութեան սկսաւ խօսել, զի 'ի հնազանդութիւն նմա եկեսցեն (պաշարեալ հայք) . . . . . Ել տալ պատերազմ ընդ ամրացելոցն ի բերդին: Յայնժամ ապաւինեալ բերդեցեացն ի զօրութիւնն Քրիստոսի . . . ի հարուածս սաստիկս հարկանէին զպարսկական գունդն և դերծեալք յայնմանէ զՔրիստոս փառաւորէին». Անծանօթ է մեզ նաև Աղջկաբերդի անցեալն:

18) Վանքս շինուած է Հայոց ՉԺԲ. թուականին Աշոտ թագաւորի որդի Շահանշահից, բայց նորոգուած է մերթ ընդ մերթ: Ոմանք կարծում են թէ վանքս շինուած է ոմն Յովհաննէս անուն վարդապետից, որի գերեզմանն կայ հիւսիսային փոքր խորանի մէջ և որի անունն գրուած է նոյն խորանի առաստաղի ծեփի վերայ. և ոմանք կարծումեն թէ շինուած է Յովսէփ անուն վարդապետից: Սակայն վարդապետներս նորոգած են միայն: Բայց հազար ափսոս, որ քայքայուում է հետղհետէ, զի փոքր ինչ խախտուած է տանիքից:

19) Վանքս շինուած է Ջալալ-Դօլան իւր բարեպաշտ հօր Վախթանկ իշխանի կտակի համաձայն, իսկ հրաշազան գաւիթը շինուած են ինքն Ջալալ-Դօլան, իւր ամուսին Մամքան և իւր որդի Աթաբակն իբր Դամբարան իւրեանց ցեղի համար: «Շինեաց (Ջալալ-Դօլայն) եկեղեցի մի գեղեցկազարդ յօրինուածով գմբէթայարդ երկնանման տաճար փառացն Աստուծոյ.... որ կոչի Գանձասար. հանդէպ Խոխանաբերդոյ 'ի տեղի շիրմի իւրեանց և յոլով ամս աշխատ եղեն ի նմա: Եւ իբրև առ զաւարտումն, արար նաւակատիս մեծահանդէս առ 'ի յօրհնել զեկեղեցին, անդ էր և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս բազում եպիսկոպոսօք, այլ և մեծ վարդապետն Վանական,

Digitized by Google

յոլով բաբունիք. անդ էին և սուրբ վարդապետքն Խաչենոյ Գրիգորիս և տէր Եղիա հարազատք միմեանց, զոր զարդարեալ էր Աստուած երկուց մարգով . . . և բազում քահանայիւք (700), և իբրև կնքեցաւ օծմամբ, ճաշ մեծ յօրինեալ ինքնին իսկ (Ջալ. Դօլ.) ձեռովք իւրովք պաշտէր զբազմեալսն . . . և եղև այս 'ի ՈՁԹ. Թուին Հայոց յաւուր մեծի տօնի, վարդաւառին» (Կիր. եր. 159)։ Ջալալ-Դօլաս Ղազուինում նահատակւում է Արղունին անօրէն հրամանաւն Հայոց ՉԺ. Թուին, որի մարմինը բերել տալով իւր որդի Աթաբակն ամփոփել է տալիս Գանձասարի գաւթում տաճարի դրան մօտ (Կիր. եր.234-236)։ Հարկ է յայտնել որ ականաւոր իշխանս Ջալալ-Դօլայ նահատակուած է ՉԺ. Թուին, իսկ սորա գերեզմանի շիրմաքարն կրում է Հայոց ՊԶ. Թիւը։ Ցայտնի է Թէ («Այս է հանգիստ մեծին Ջալալի. յաղաւԹս յիշեցէք Թվ. ՊՁ.») տապանաքարս կամ նահատակուԹիւնից 170 տարի յետոյ ձգուած է և կամ փոխուած է հին տապանաքարն և ձգուած նորս և կամ այլ է Ջալա-Դօլայի և այլ Ջալալի գերեզմաններն, բայց տապանաքարն միայն մի հատ է։

20) Մենաստանումս յիշատակ գրուած էր այն ձեռագիր աւետարանն, որ այժմ գտնւում է Շաքուայ Գեօզ-Բուլաղ գիւղում։ Բակ իշխանն (Եղիշ. Է. եղ. եր. 233) «եաւԹն հարիւր արամբ գնաց փախստեայ . . . յամուրն Արցախայ և կեցեալ բարեպաշտուԹեամբ . . . . մինչև յայս բարեպաշտ իշխանս Ջաջուռ և 'ի ումին սրգի Այեսալ քրիստոսասէր Վանինի, որ և ստացաւ զայս աստուածախաւս աւետարանս յիշատակ և փրկուԹիւն հոգւոյ հաւր իւրոյ բարեպաշտ իշխանին Ջաջռոյ և ետ 'ի սուրբ մենաստանն, որ կոչի Հաւապտուկ, որ է շինեալ յանուն սուրբ Աստուածածնին և է բնական տուն և շիրիմ Ջաջուռ իշխանին և նախնեաց իւրոց և է ի գաւառին Արցախայ, որկոչի Խոխանաբերդ» (Աղ. երկիր և Դրաց եր. 234-235)։

21) Բերդս շատ հին է և, ինչպէս կարծում ենք, շինուած է Հայոց Թագաւորներից և յետոյ ենԹարկուած Աղուանից իշխանուԹեան· Որպէս ակներև է Քարագլխի Հին-Հանգստարանի արձանագրուԹիւնիցն՝ Հասան մեծն բերդս տուած էր Սմբատ անուն ումն իշխանազնի իբր հայրենիք և գերեզմանատուն։ Բերդիս մասին դրում է Աղուանից պատմիչն (Մով. Կաղ. եր. 263) «ելին գաղտաբար 'ի Պարտաւայ արք ընտիրք 'ի Տաճկաց և յաւարի առին զԱմարաս գաւառ՝ գերի առեալ իբրև ոգիս հազարս և 'ի Մեծիրանաց սահմանի ամրացեալք 'ի տեղւոջն, որ կոչի Շիկաքար։ Ցայնժամ արի և շքեղատեսակն Սահղի Սմբատեան Եռանշահիկն տէր՝ քաջազօր եղբարբ իւրովք և զօրօք 'ի լուսանալ առաւօտուն 'ի վերայ յարձակեալ առհասարակ գիաԹաւալ զնոսա

Digitized by Google

ցիր և ցան կացուցանէին և որպէս յառխծոյ ժանեաց զգերեալսն ի բաց կորզէին»։

22) Հին է Կաչաղակաբերդիս շինութիւնն, որ կոչւում է և Խաչենոյ բերդ։ (Մով. Կաղ. եր. 272-273) «առեալ զմնացեալ դուստրն Սպրամ . . . մտանէ 'ի բերդն Խաչենոյ և . . ամուսնացուցանէ զՍպրամ ընդ Ատրնեսեհի Սահլի որդւոյ»։ Բայց յետոյ պատկանում էր Ջալալեաններին։

23) Ինչպէս Ուլու-պապ, նոյնպէս և Խոխանաբերդն պատկանում է Ջալալեաններին։ Գրում է Կիրակոս (եր. 185) վերջին բերդիս մասին. Ջալալ-Դօլայ «իբրև ետես զյարձակումն անօրինաց (Թաթարաց) ամրացոյց զբնակիչս իւոյ աշխարհին ի բերդն, որ կոչի Խոխանաբերդ . . . Եւ իբրև եկին պաշարել զնա, տեսին զի ոչ էր հնար առնուլ զամուրսն, կոչեն զնա սիրով խաղաղութեան առ իւրեանս և նա իմաստնաբար հաճեաց զմիտս նոցա»։ 24 և 25 Երկու բերդերս և Անանուն (Առաջաձորի մօտի) բերդն ևս պատկանում են Վախթանկեան-Ջալալեաններին. սակայն պատմութեանց մէջ չկայ ակնարկութիւն մէջ չկայ սոցա մասին։

26) Արդէն իմացանք որ Աղուանք էր կոչւում պատս։ Մովսէս (եր. 65 և 66) գրած է. «Ապա կամ եղև արքայի առնել ժողով յԱղուէն բազմամբոխ ատեան . . Ես Վաչական (Գ.) Աղուանից արքայ և Շուփհաղիշայ . . . . և ազատ մարդիկ և նահապետք Արցախայ . . . և այլք բազումք, որք միաբան առաջի իմ եկին 'ի հանգէս ի հովոցի տեղւոջս Աղուէնն»։ Արդ ժողովրդեան բերանում ցարդ մնացեալ Աղուանք և «ի հովոցի տեղւոջս Աղուէնն» կարծել են տալիս մեզ հաւատալ թէ ժողովն եղած է պատիս մօտերքում, թէ պատս է Աղուէնն, և ոչ թէ Աղուէ գաւառն, քանզի եթէ Աղուէ գաւառում եղած լինէր, կյիշէր պատմաբանն Գաւառ բառը. մանաւանդ թէ Աղուէ Գաւառում չկայ Հովասուն տեղ։

27) ԺԲ. դարում նշանաւոր էր Հաթերքս, այստեղ էին նստում Վախթանկեան իշխաններն։ Բայց որովհետև այս թագաւորական և իշխանազն ցեղի մէջ եղած են ժամանակից շատ Վախթանկներ և Հասաններ, վասն որոյ հարկ համարեցինք որոշել այստեղ, որպէս զի առիթ չտալ շփոթութեանց։

Ա. Վախթական Սմբատեան, որից ծնուած է Հասան, որի մասին գրած է Ս. Օրբել. (Բ. հատ. եր. 79-81) թէ սփնեաց Գրիգոր թագաւորն և՞իւր եղբայր Սմբատն սնգաւակ էին. «բայց միայն մի դուստր ունէր Գրիգոր (թագաւորն) Կատայ անուն . , . . բայց Գրիգոր որ իշխէր Բաղաց. ետ ածել ի Խաչենոյ իշխանացն մանուկ մի

Digitized by Google

Հասան անուն 'ի Գեռաքարեցեացն և ետ զ դուստր իւր Կատայն նմա 'ի կնութեան և կացոյց ժառանգ թագաւորութեան իւրոյ, և ինքն և եղբայր իւր Սմբատ . . մեռանի 615 թուին (Հայոց)։ Մինչ զերդն կամէին առնուլ (Տաճիկքն) Հասան կացոց բերդապահս և ինքն առեալ զկին իւր և զընտանիս 'ի գիշերի ել 'ի բերդէն և անց գնաց 'ի գաւառ իւր 'ի տուն 'ի Խաչենն»։ Հասան թագաւորից ծնում է Ղարա-Գրիգորն, որի կինն լինում է Դօփ դուստր իշխանաց իշխանի Սարգսին, սոցանից ծնուում է Քաջն-Հասան, որի ամուսինն է Մամքան դուստր Քրդին, սոցանից ծնում է Գրիգորն, որի կինն է Մեծ-Սիւնեաց Տարսայիճ իշխանի դուստր Ասփան։ Գրիգորից ծնուած է Վ ա հ ր ա մ իշխանն։ Այս ցեղին է վերաբերում Վերին-Խաչէնն, Հանդաբերդն, Տարն իւր վանքերով և Խաթրայ վանքն։

Բ. Հասան, որից ծնուում է Վախթանկ Սակառն [1]). Վախթանկ Սակառնի ամուսինն է Խորիշահ (քոյր է սա Սպասալար Զաքարէի և Իւանէի), որդի սոցա Ջալալ-Դօլայ-Հասան, որի ամուսինն էր Մամքան թոռն Բաղուց թագաւորին, սոցա որդին Աթաբակ են։ Այս ցեղին է պատկանում Վաղահասի եպիսկոպոսանոցն, Գանձասարայ և Սուրբ Յակովբայ և Վաճառի վանքերն և հանգստարաններն և Ականայ Խոխանայ, Նատրայ, Կաչաղակայ և Անանուն բերդերն։

Գ, Վախթանկ թագաւորազն, որի որդին է Հասան, որի կենակիցն էր Մամա դուստր Կիւրիկէ թագաւորին (սոքա այր և կին կրօնաւոր եղան Դատի վանքում), սոցանից ծնուում է Վախթանկ, որի ամուսինն էր Արզուխաթունն-Քուրդ իշխանաց իշխանի դուստրն, և քոյրն Դաւիթ և Սադուն իշխանների (Կիր, եր, 125)։ Այս ցեղին է պատկանում Դատի կամ Խոթա վանքն, Հաթերք-դղեակն և աւանն. Հաւքախաղացն և Հակառակաբերդն։ Գերդաստանիս մասին գրում է Գոշ-Մխիթարն (եր. 68-73) «բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն (Դատաստանագիրք գրելն) եղև ի թուականութեանս Հայոց ՈԼԳ, . . յայսմ անիշխանութեան թագաւորութեան մերոյ ի վաղնջուց, ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց ի կողմանս Խաչենոյ, ընդ ժամանակս անուանելոյ Հասանայ կրօնաւորեցելոյ և որդւոյ նորա Վախտանգայ 'ի դղեկին, որ անուանի Հայթերք»։

28) Աստղաբլրի մատրանս մէջ ամփոփուած է թագուհի անուն նահատակուհու մարմինն, որ Աղուանից երկրի Ուտի գաւառի բնիկ Բագնաց գիւղիցն էր և իշխանական ցեղից։ Նահատակուած է Հոնաց կամ Ռսմոսաքեան զօրաց Ագխտրոսեան գնդի գնտապետ Թէոփիլոս իշխանի հրամանաւ (Մով. Կաղ, եր. 73-77) նաև (եր. 160-164)։

---

1) Կոչուում է և Տ ա ն կ ի կ (տես Կիր. եր. 158)։

29) Հաւքախաղաց բերդս շինած է Աղուանից Ատրներսեհ իշխանի որդի Գրիգոր իշխանն (Մով. Կաղ. եր. 273)։ Իսկ թէ ով շինած է Հաթերք-դղեակը և Հակառակաբերդը-անյայտ է մեզ։ Միայն յայտնի է որ Թագաւորներն չափազանց մարդ կոտորած են Հաւքախաղացը գրաւելու ժամանակ (Կիր. եր. 157-158)։

30) Կանխաւ միացած է եղել Խաչեն գաւառի հետ Ջրաբերդ գաւառիս այն մասն, որ ընկած է Թարթառ գետի, Խաչեն գետակի և դաշտաբերանի մէջ։ Բաժանումն տեղի ունեցած է մէլիքութեան ժամանակ։ Մայրաքաղաքի հանգստարանի մատրան արձանագրութիւնից երևում է, որ փրկչ. 1260 թուին իշխում էր Ջալալ-Դօլի թոռն Ուքան իշխանն. (Տես Առաջաձոր գիւղի Անապ. արձանագ. մէջ)։

31) Թէ որից և երբ շինուած է քաղաքս չունինք հաւաստի տեղեկութիւն։ Միայն գիտենք որ մի ժամանակ եպիսկոպոսանիստ աթոռ եղած է։

32) Խազիրներն պաշարում են Պարտաւը, ամեն ոք աճապարում է փախչել և պատսպարուիլ Արցախեան լեռներում։ Աղուանից Վիրոյ Կաթուղիկոսն ևս փախչելով ապաստանում է քարայրիս, որը գուցէ շինած լինին այն ժամանակ և որը Կողթ ագարակ է անուանում Մով. Կաղկանդուացին (եր. 104-129)։ Խեղճ կաթուղիկոսն այստեղ ևս նեղուելով խուզարկու թշնամիներից, աճապարանօք փախչում է Ջարաբերդ ամրոցն Թարթառի ձորով։

33) Եղիշ-առաքեալի գլուխը գողանալով բերած և թաղած էին այստեղ Վաչական Գ. թագաւորի ժամանակ, վասն որոյ կոչում էր Գլխոյ վանքն. «Ապա հրաման տայր յուղարկել զնա . . . ի վերնակողմ գաւառն Մեծ-Կուէնից 'ի բարձրավանդակ լեառն, 'ի տեղի մենաստանի նորա ի Գլխոյ վանս» Մով. Կաղ. եր. 169 տես և 186)։ Բայց թէ երբ Հիւրեկ կամ Հոռեկ փոխուած է վանքիս անունն-անյայտ է։

34) Այս գիւղն առանձնապէս սեպհական էր Աղուանից թագաւորներին իբրև ամարանոց։ Վաչական Գ. յատկապէս շինել տուած է այս փոքրիկ, բայց գեղեցիկ եկեղեցին յանուն Պանդալեոնի, որի մէջ պահուում էր և գտնուած մասունքներն (Մով. Կաղ. եր. 49 և 62)։

35) Վաչական Գ.-ի թագուհու անունն Շուշանիկ էր (Մով. Կաղ. եր. 46), որդու անունն Պանդալիոն (եր. 47) և աղջկայ անունն Խնչիկ (եր. 62)։ «Եւ դուստր մի Խնչիկ անուն տղայ հասակաւ յոյժ սիրելի արքայի, (Վաչականայ), որոյ անուամբ շինեալ էր Դաստակերտ մի՝ տալ նմա մասն մի 'ի սուրբ նշխարացն, և 'ի նմին Դաստակերտի մեծապէս կատարի յիշատակ սրբոյն (Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի) պատւով» (Մով. Կաղ. եր. 62)։

Digitized by Google

36) Աւանդութեամբ ասում են որ վանքս հիմնարկուած է նոյն բարեպաշտ Վաչական Գ. Թագաւորից։ Մենաստանս, որ նախ կոչուած է Ներսմերհայ (տպ. ի Փարիզ Ներս-Միհրայ) ուխտ, յետոյ կոչուեցաւ Ջրվշտիկ։ Բայց առաքեալիս սուրբ մարմինը որ նախ ամփոփած էին Հիւրեկայ (Մով. Կաղ. եր. 9-10 Ուռեկան) վանքում, Վանքս շինուելուց յետոյ ապա փոխադրում են այստեղ, որ այժմ կոչւում է Եղիշառաքեալ։

37) Այս ամենաբարեպաշտ Թագաւորիս մասին գրուած է (Մ. Օրբել. Ա. հատ. եր. 128) «Ապա մեռան 'ի Բարկուշատ Թագաւորքն Վաչական և Արլ-Աբաս (փեսայ Վաչական Թագաւորիս)»։ Երևի թէ մեռնելուց յետոյ բերած և այստեղ ամփոփած են նոյն Թագաւորի մարմինը։

38) Լճակս առաջ եղած չէ, այլ գոյացած է 1139-ին. «'ի ՇՁԸ. Թուականին եղև շարժ սաստիկ և կործանուեցաւ քաղաքն Գանձակ . . . . փլաւ և լեռան Ալհարակ ի շարժմանէն և արգել զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծովակ, որ է մինչև ցայսօր, լինեն 'ի նմա ձկունք ազնիւ» (Կիր· եր· 65)։

39) 5000 ոտքից պակաս չէ գրեթէ սարիս բարձրութիւնն որի գագաթին վերա եղած մատրան տեղում շինուած է եղել մեծ վանք։ Վանքումս գրած է Հայոց ՌՃԻ·-իր Գանձակի Համտինա գուղացի Ղազար քահանան այն աւետարանը, որ այժմ կայ Ճալէթի վանքում (տես Աղ, եր. և գրացիք եր. 251)։

40) Առաքել պատ. (եր. 9) Մեծ-Շահ-Աբասի օրով Աղուանից երկրից Ասպահան գաղթած ժողովրդոց շարքում դնելով գրած է «գնացին Սարուխան բէկն և իւր եղբայր Նազարն յՈսկանապատ գեղջէ»։

41) Արդէն իմացանք որ այստեղ կան պղնձահանք և երկաթահանք, որք պատկանում էին Գարդման գաւառիս իշխաններին։ Աւանդաբար ասում են թէ Սուրբ Մեսրոպ պղնձահանքի ձորումս պատահած է Գարդմանայ Խուրս իշխանին և աղանդաւորներին։ Աւանդութիւնս արդարացնում է Խորենացին (գիրք Գ· գլ· կ.) գրելով. «ինքն (Սուրբն Մեսրոպ) դառնայ զԳարդմանաց ձորովն, զի և ի նմա լուաւ լինել յընկերաց նոցին աղանդոյն։ Զորս գտեալ, ածէ և զնոսա 'ի գիտութիւն ճշմարտութեան հանդերձ վերստին ուղղութեամբ իշխանին Գարդմանայ, որում անուն էր Խուրս։

42) Ինչպէս երևում է Գօշ-Մխիթար իւր դատաստանագրքի նախադրութիւնը (եր. 69-74) սկսած է վանքումս և վերջացրած Սուրբ Հռիփսիմէի վանքում (վերջին վանուցս մասին տես Փառիսոս գաւա-

Digitized by Google

ռի Բարսում գիւղի նկարագրութեանց մէջ)։ «Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն եղև 'ի Թուականութեանս Հայոց ՌԼԳ...... յայշխարհիս Առանայ 'ի նահանգիս որ կոչի Մայրաքաղաքիս Գանձակ՝ յանապատս և յեղբայրանոցս անուանեալ Դասնոյ, սկզբնաւորեալ 'ի լեռնակողմն մենաստանի կոչեցելոյ Հոռոմաչէն ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսանացն յիշեցելոց»։

43) Աւանդութիւն. Հետաքրքրութեան և ուշադրութեան արժանի վիպասանութիւնն, որ կապուած է այս գուղանի հետ։ «Մի շատ հարուստ մարդ է լինում Գիչին Սավար գիւղիս իշխանը։ Եօթն գուղան է ունենում մեր Գիչին իւր տանից պտկուած (գոյացած). ամեն մի գուղան ունենում է մի գունով եզներ. առաջի գուղանի եզները բոլորն էլ սև են լինում. Բ. գուղանին՝ բոլորն էլ սպիտակ. Գ-ինն՝ կարմիր, Դ-ինն՝ մոխրագոյն, Ե-ինն՝ մոզ կարմիր, ևն.։ Մեր Գիչին ունենում է ա ն հ ե ս ա պ ոչխար, տաւար, գոմէշ, այծ, եզնը, հերինջ, աչառ (արջառ)։ Իւր կալումն աջ ու ձախ չուռ է տուել 12 ջոխտ եզնը և կամնը։ Անհագին են Գիչու ցորենի և դարու հորերը։ Գիչու կալի մեծութեամբ կալ [1]) եղած չէ, տան մեծութեամբ՝ տուն ապրանքի մեծութեամբ՝ ապրանք, հարստութեան մեծութեամբ՝ հարստութիւն։ Էս սարիս երի (վերևի) կողմում եղած է ամառ ժամա. նակներում Գիչու ապրանքը. սարի գլխից մինչև Գիչու կաթնատունըն շարած է եղել թիւնկ (խեցեղէն խողովակ). սարի գլխին կթել են կովերը, ոչխարները և էծերը և կաթները լցած թիւնկերի մէջ և էսպէս հաւաքուած են բոլոր կաթները էս տեղ իւր կաթնատունն։ Գիչին ունեցած է 12 տղայ. սրանցից ամեն մէկը մին բանի պահապան է եղել. օրինակ մին ոչխարի հօտին վերայ, մին տաւարի նախրներին, մին՝ գոմէշների, մին՝ ձիերի, ևն.։ Հէնց համարի թա Գիչու տարեկան ծախած ոչխարի, բրդի, գոմշի, եզան, մսացուքի, ձիու փողը կէս մլեօնի (միլեօնի) է հասէլ։ Գիչին մի անգամ գնում է Գեանջա՝ տան համար հագուստեղէն առնելու, խանութպաններն աղքատ համարելով ծաղրում են։ Գիչին բարկանալով առնում է (գնել) մի խանութում գտնուած ամբողջ ապրանքը և տալիս է փողերը և զարմացնում ամբողջ քաղաքը։ Շահ-Աբասը լսելով Գիչու անունը՝ ղոնաղ է գալիս, մի շաբաթ մնում Գիչու տանն, ամեն օր ուտում. խմում իւր զօրքերով միասին. օրական 100 ոչխար և 25 հերինջ են մորթում ամենը կերակրելու համար. դու տես թէ հաց որչափ գնացած կըլինի։ Շահ-Աբաս այս սարերը շահական ֆերմանով պարգևումէ Գիչուն և շնորհակալութիւն յայտնելով հեռանում։

[1]) Արգարև չափազանց մեծ է Գիչու կալն և բակն.

Digitized by Google

այժմ երևում են միայն բերդերիս հիմքերն։ Այս բերդերից փոքր ինչ վար եղած է Հայոց թաղն և եկեղեցին, որի մէջ ամփոփուած ս Խոսրով Նահատակի մարմինն [1]։ Պարսիկներն եկեղեցիս փոխած են մզկթի, որը անուանում են Գ ե օ գ-ի մ ա մ։ Խոսրովի գերեզմանն եւ զարդարուած է թանղագին կերպասներով։ Շինութիւնս ամեն մասամբ նման է Պարտաւի Իմամզադէին, տարբերութիւնն այն է միայն որ Գեօգ-Իմամիս գաւիթն լի է գերեզմաններով և սորա գմբեթի արտաքին կողմն խաչազարդարուած է գոյնզգոյն մանր աղիւսներով։

Հին-Գանձակումս ծնած և սնած են Գօշ-Մխիթարն և պատմաբան Կիրակոս Գանձակեցին։ Գանձակումս Կաթուղիկոս օծուեցան ի չարս այլոց մանկահասակ Յովհաննէս և Գագիկ (Կիր. եր. 105 և 116)։

Իսկ Նոր-Գանձակիս վերայ եղած են Ռուս-պարսկական պատերազմներն, նախ 1804-ին դեկտ. 3-ին Ռուսներն յաղթում և գրաւում են քաղաքս, որը և Ե լ ի ս ա ւ է տ ա պ օ լ անուանում ի պատիւ Ելեսաւէտա Կայսրուհւոյն Ռուսաց։ Երկրորդ 1826-ին այս պատերազմում վերջնական կերպով յաղթումեն Պարսիկներն-

6) Կաղթ գաւառիս մէջ այժմ եւ գտնում են ջարդուած քարերում, ք ա ր ա խ ո ւ ն կ, ինչպէս ակնարկում է Խորենացին։ Գտնում են քարերը ջարդած ժամանակ. բայց խիստ սակաւ։

Շամքոր և Զակամ գետակների պատճառաւ երկու գլխաւոր մասերի բաժանուած է գաւառս և ստացած յետոյ երկու առանձին անուն- Շ ա մ ք ո ր և Զ ա կ ա մ։

7) Կողթ գաւառիս արևելեան մասում շինուած է Շամքոր [2]) քաղաքն Զ. դարում որպէս թէ յանուն Շաթ-Խազրի (Կիր. եր. 113-114)։

Բագրատունի Աշոտ Գ. Ո ղ ո ր մ ա ծ թագաւորի կրտսեր որդին Գուրգէն Թ. դարի վերջին քառորդում քաջութեամբ տիրում է ի միջի այլոց Սևորդեաց ձորին, Կայան և Կայծոն բերդերին (Վարդ. Բարձ. 122)։

Գուրգէն այս գործողութեամբ գնում է հիմը մի առանձին թագաւորութեան։ Գուրգենիս որդի Դաւիթ- Անհողին Ժ. դարի առաջին քառորդում յաջորդելով իւր հօր աւելի ընդարձակում է իւր տէրութեան սահմանները. հնազանդեցնում Թիփլիսի ամիրան, յաղթում Գանձակի Փադլոն ամիրային սրախողխող և գետաւէժ անելով նորա զօրքերը, տիրում Զաւէ և Կայենի և Քաւս կամ Քօստի և կողթ

1) Բնիկ Գանձակեցի է Խոսրով Նահատակս, որը, զՔրիստոս չուրանալու համար կապեցին թթենի ծառից և նահատակեցին, որի մարմինը ամփոփեցին հայք եկեղեցումս. (Նոյն յայսմ. հատ. Բ. եր. 5)։

2) Քաղաքումս ժողով գումարեց Աղուանից Միքայէլ կաթուղիկոսն (Մով. Կաղ. եր. 258)։

*գաւառներին և սոցա բոլոր բերդերին և ժառանգում Թագաւոր Աղուանից անունը։* (*Ս.սող. եր.* 257), *Այնուհետև Դաւիթ Թագաւորն յաղթում է Պարսից Ապուսուարի* 100,000-*ից բաղկացած զօրացն և տիրում Արցախի Գարդման գաւառին ևս և շատ բերդերի* (*Մատ. Ուռ. եր.* 92-96)։ *Աղուանից Թագաւոր կոչուեցաւ նաև Կիւրկէ Ա. որդի Դաւիթ Անհողինի, որովհետև տիրում էր Աղուանից երկրի հարաւ արևմտեան մասին այն է իւր հօր տիրած բոլոր գաւառներին և բերդերին։ Այս պատճառաւ Մատթ. Ուռ.* (*եր,* 278) *գրում է. «և Թագաւորք Աղուանից Գագիկ* (*Գուրգէն*) *և Դաւիթ և Կորիկէ* (*Կիւրիկէ*) [1]) *որք նստէին այժմուս ի Լոռէ քաղաք»։ Ժառունակաբար տիրեցին և սոցա որդիքն և Թոռներն։ Յետոյ նոյն գաւառները գրաւեցին Սելճուկեաններն պարսիկ զօրքով. ապա «Այսպէս և միւս իշխանն Զաքարէ անուն և եղբայր իւր Սարգիս հայրն Զաքարէի և Իւանէի, տոհմականք մեծ իշխանացն . . . առին բազում գաւառս ի Պարսից և դղեակս ամուրս զԳարդման, զՔարահերձ, և զՇրգեվանք, զՏաւուշ, զԿածարէթ և զՏէրունականն, զԳագ և զՇամքոր քաղաք ի նեղ ճարկ, զոր յետոյ էառ որդի նորա Վահրամ հայր Աղպուղին, պապն Վահրամայ և Զաքարէի և Իւանէի* [2])» (*Կիր. եր.* 95)։ *«Եւ ապա ձեռն տուեալ* (*Իւանէ եղբայր Սպասալարին*) *ազգայնոյն իւրոյ Վահրամայ որդւոյ Զաքարի եայ. առնու զՇամքոր»* (*Վարդ. Բարձր. եր.* 184)։

1235-*ին Թաթարներն գրաւում են նախ «առին զնա* (*զՇամքոր*) *. . . և այրեցին զշինուածն, որ ի նմա. ապա յարձակեցան ի վերայ այլ բերդիցն, որ ընդ իշխանութեամբ Վահրամայ ի Տէրունականն և յՇրգեվանքն, և ի Մածնաբերդն. զոր ունէր Կիւրիկէ Բագրատունի որդի Աղսարթանայ և ի Գարդման և յայլ կողմանս և ի Չարեք և ի Գետաբակս . . . ի Տաւուշ և ի Կածարեթ և ի Նոր բերդն և Գագ»* (*Կիր. եր.* 141-142)։ *Յետոյ դարձեալ ծաղկում է քաղաքս։ Վերջապէս քաղաքիս հայ բնակչաց մեծ մասն փոխադրվում է Թիփլիս*

---

1) *Աշոտ-Ողորմածի որդի Գուրգենից ծնուած էր Դաւիթ-Անհողին Թագաւորն, որից Կիւրիկէ Թագաւորն և Կիւրիկէից Աբաս Թագաւորն, որ տիրում էր Գարդման գաւառին և Մածնաբերդին, այսպէս և իւր հետագաները մինչև Մէլիք-Առստամ Բարսում գիւղի։*

2) *Սպասալար Զաքարէն և Իւանէն չեն սոքա, այլ ազգական են սոքա նոցա։ Սպասալարների համար գրած է Կիր. եր* 94 *Զաքարէ և Իւանէ էին „Որդիք Սարգսի բարեպաշտ իշխանի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարեայ որ հատուածեալ ի Քրթաց ի Բաբիրական խելէն* (*ևկն ի Հայաստան*)»*. Իսկ միւս Զաքարէի և Իւանէի մասին որոշ գրում է նոյն Կիր. եր.* 95. *Թէ միւս իշխաններն Զաքարէ և Սարգիս եղբարք էին բայց ազգական Սպասալար եղբարց։ Զաքարէ իշխանից ծնուած էր Վահրամ, որ հայր էր Աղպուղէին, և պապ Վահրամին և Զաքարէին և Իւանէին։ Վահրամ իշխանս էր վերև յիշուած բոլոր բերդերի տէր Թաթարաց եկած ժամանակ։*

և շինում իւր համար առանձին եկեղեցի, որ կոչւում է Զ ա մ ք ո ր-ց ւ ո ց Թ ա ղ և Զ ա մ ք ո ր ց ւ ո ց ե կ ե ղ ե ց ի։ Իսկ Զամքոր աւերակ քաղաքում մնացեալ նշանաւոր և աղիւսաշէն և բարձրագոյն դիտարանն կործանուում է 1840 Թուականին մեծ շարժով։

Գաւառիս ե ր կ ր ո ր դ մասն էր Ջակամ. որ կրկին է. Ստորին-Ջակամ և Վերին-Ջակամ։ Երկու Ջակամներս միասին Աղուանից Եսայի Կաթուղիկոսն (եր. 23) անուանում է «Ա մ ի ր շ ա մ Զ ա տ ի ն լ ո ւ որ են Ջակամներն»։ Իսկ Առաք. պատ։ (եր. 9) որոշակի գրած է «Մելքիսեթ եպիսկոպոսն ի Վ ե ր ի ն Ջ ա կ ա մ ա յ»։

Համարեա թէ Ջակամներիս արևմտեան մասն այժմ կոչւում է Շ ա մ շ ա տ ի ն, որ կարծում ենք, ունի մի ներքին կապ Ա մ ի ր շ ա մ Շ ա տ ի ն լ ո ւ անուան հետ։ Հաւանական է թուում մեզ, որ Արաբացւոց ժամանակից մնացած լինին անունս գաւառիս վերայ, վասն զի արաբական բառ է Ա մ ի ր-Շ ա մ (Դամասկոսի հրամանատար) անունս։

8) Կողթ գաւառիս մէջ է և Խ ա ղ խ ա զ քաղաքի աւերակն, ինչպէս գիտէ ընթերցողն։ Բոլորովին անյայտ է մեզ քաղաքիս հիմնարկութեան և աւերման տարեթիւերն և շինողի անունն, միայն յայտնի է որ քաղաքս ձմերոց էր Աղուանից Թագաւորներին [1]։

Համոզուած ենք որ աւերակս է Խ ա ղ ղ ա ղ քաղաքն և Ջակամ գետակս է Լ ո փ ն ա ս գետն։ Մեր Համոզմունքն հիմնուած է հետևեալ կէտերի վերայ։

—Ա. Որ Խաղխաղ քաղաքն գտնուում էր Կուր գետի աջ կողմում։

Բ. Որ խաղխաղ քաղաքս մօտ էր Վ ր ա ց ս ա հ մ ա ն ի ն, քանզի Կուր գետի ձախ ափն պատկանում էր Վրաց։

Գ. Որ պատերազմն եղած է Խաղխազ քաղաքի դիմացն և Պարսից յաղթուած զօրքն սկսած է Լոփնաս գետովն ի վեր փախչիլ դէպի ամուր անտառներն։ «Սեբուխտ. . . . ոչ եկաց մնաց ի կողմանս ծորայ, այլ կուտեաց զամենայն բազմութիւն զօրու իւրոյ և փութանակի ա ն ց ա ն է ր ը ն դ մ ե ծ գ ե տ ն Կուր անուն և պատահէր նմա (Վարդանայ) մերձ ի սահմանս Վրաց հանդէպ Խաղխաղ քաղաքի. . , ։ Անցանէր, բովանդակեր ամենայն զօրօք իւրովք, ռազմ արարեալ զբոլոր մեծութիւն դաշտին ի ներքս փակէր» (Եղիշ. եր. 140. Մով. Կաղ. եր. 87)։ «Ընդ այն ժամանակս (Ե. դարի երկրորդ քառորդում) Թագաւորն Ռոսմոսրեան իւրովք զօրօք և Թոբելեան գնդիւն գումարեալ ժողովեաց զամենայն զօրս Հոնաց և էանց յայս կոյս Կուրական

---

1) Եղիշէ եր. 140 „Ձմերոց էր Թագաւորացն Աղուանից“. Մով. Կաղ. եր. 87. „ „ Թագաւորութեանն „ „։

գետոյն... նստուցանէր զզակիչ իւր մերձ ի Խաղխաղ քաղաք» (Մով. Կաղ. եր 73)։

Պատմաբաններիս մատնանիշ արած բոլոր յատկութիւնները մենք գտանք միայն աւերակիս մօտ, որք են դ ա շ տ, Վ ր ա ց ս ա հ մ ա ն ի մօտ, գ ե տ ա կ. որի եզերքով ճանապարհ կայ, որ խոր և անտառապատ ձորերով առաջնորդում է մինչև Ճամբարակ գիւղն։ Չորրորդ և գլխաւոր փաստն այն է, որ ցարդ Խալխալ է կոչւում քաղաքիս աւերակին վերայ եղած Թրքաբնակ գիւղն։ Դաշտիս վերայ չկայ մի այնպիսի աւերակ քաղաք, որ ունենայ այդ բոլոր յատկութիւնները և անունը բացի Խաղխաղ աւերակիցս։

9) Ջաբրայէլ անունը կարծում ենք թէ գաւառս ստացած է Ջաբրայէլ հայ իշխանի անունից, ինչպէս Զուանշիր իշխանից Զուանշիր գաւառ (Գաղտ. եր. 201 և 182)։

10) Անյայտ է մեզ բերդիս շինողի անունն, շինութեան տարեթիւն և միանգամայն սորա անցեալն։

11) Անծանօթ է մեզ և այս բերդիս անցեալն, միայն տակաւին Թարմ է հասարակութեան մէջ Աւան-իւզբաշու աւանդութիւնն և կենդանի սորա անունն և քաջութեան համբաւն։ Հարկ է յատնել թէ այս կողմերում բնակած է և Աւան անուն իշխան և Մէլիք-Աւան (Գաղտնիք եր. 201)։ Թէ երկուքիցս որն հիմնած է բերդս չգիտենք։

12) Ինչպէս միւս բոլոր բերդերն, նոյնպէս և բերդս պատկանում է Արցախի իշխաններին։ Եւ ինչպէս Գ տ ի չ է կոչւում Դողայ մօտին վանքն նմանապէս Գ տ ի չ է կոչում և վանքիս մօտի բերդն։ Ամրոցի մասին գրում է Թովմայ Արծրունին (եր. 177-185) թէ Աղուանից հայ իշխաններից Ապումուսէ ոմն, հաւաքում է երկրի բազմութիւնը և «լէգէոնս զօրականաց զսակաւս (ամրանայ) ի լեառնն ամուր անուանեալն Քթիչ»։ Իմանալով Բուղա ոստիկանն մեծ զօրքով յարձակւում է Գտիչ բերդի վերա, բայց յաղթւում է չարաչար.։ Վերջապէս «եղև թիւ պատերազմաց նոցա (Բուղայի և Ապումուսի) ԻԸ. (28) անգամ և հարան զօրքն արքունի յայսքան հանդէսս և ի կռուի»։ Բուղան ակամայից ստիպեալ գրում և յայտնում է ամիրապետին, որից հրաման է ստանում ընդունել զԱպումուսէն մեծ պատուով իբրև յաղթող զօրավար։ Վասնորոյ Բուղան «եհան ընդառաջ նորա (Ապու-Մուսէի) գունդս գունդս վառեալ զինու և ընտրեալ երիվարբօք և ետ տանել ընդ առաջ նորա նժոյգս մեծազարդս և երևելիս և երգեցիկս և գովասացս ևն»։ Բերդումս պատերազմեց և Դիզակի Մէլիք-Եսային և յաղթեց Իբրահիմ ձըռ-խանին։ Արդէն յայտնի է, որ Դող աւանիս շրջապարիսպը շինած են Դողայ մէլիքներն և նորոգած Դող կամ Գտիչ բերդիս պարիսպը։

Digitized by Google

13) Դեղափայտ սարիս բարձրութիւնն է 8186 ոտք։ Սարիս կատարի վերայ եղած է Կ ա տ ա ր ո յ անուն նշանաւոր Վ ա ն ք։ Մենաստանիս մէջ ապաստանարան գտած էին Սանեսան թագաւորի երեք որդիքն Մովսէս, Դանիէլ և Եղիա 3870 մարդով, որք հաւատացած էին Յիսուս Քրիստոսին Ս. Գրիգորիսի քարոզութեամբն։ Գալիս է Սանեսան թագաւորն զօրքով [1]) նահատակում իւր որդիները և հաւատացեալները սրով։ Այսպէս նահատակուում են նաև Ռոստոմ Թագաւորի Թէվոփիլէ սուրբ զօրավարի որդիք-հաւատացեալ Մովսէս և Աներոզոդէս Ագիստրոսեան գնդով միասին (Մով. Կաղ. եր. 73-78)։

Անծանօթ է մեզ Դեղափայտիս մօտ եղած բ ե ր դ ի անցեալն։

14) Ինչպէս տեսանք Հերհերի եկեղեցու արձանագրութեանց մէջ (որ Հովարան էր Ամարասայ վանքին) Քօչիզ կոչուած է ծովատեղ Գիւղս և եղած մէլիքանիստ աթոռ Մէլիք-Փաշայեանց ազնիւ տոհմին մինչև Մէլիք-Շահնազարեան Մէլիք-Բաղու ժամանակներն։ Առաք. պատմագիրն (գ. գլ.) յիշում է գրելով. «Մէլիք Փաշիկն ի Քօչիզ գեղջէ»։

15) Պատմութիւններից որոշակի երևում է մանաւանդ Մով. Կաղականդացուց, որ Ամարաս գիւղաքաղաքն (ոմանք ա ւ ա ն են անուանում և ոմանք գ ի ւ ղ ա ք ա ղ ա ք) շինուած է եղել Ամարասայ այժմեան վանքի մօտ։ «Երթեալ լուսաւորէր զՎրաց և զԱղուանից աշխարհն (Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ)։ Եւ երթար ի Հաբանդ Գաւառ ուսուցանէր և խրատէր պահել զպատուիրանս Որդւոյն Աստուծոյ և արկանէր հիմն եկեղեցւոյ ի գիւղաքաղաքին Ամարասայ, և կացուցանէր զգործունեայս և հրամանատարս շինել զեկեղեցին»․ . . յետոյ գրած է. «Զօր (զսուրբ մարմինն Գրիգորիսի) բարձեալ աշակերտացն բերէին յԱմարաս գիւղաքաղաքն... անդ եդեալ առ եկեղեցոյն հուպ 'ի բեմն ի հիւսիսոյ կողմանէ (մի և նոյն տեղումն է և այժմ)» (Մով. Կաղ. եր. 28-31)։ Հաւանական է թւում մեզ, որ օդի ծանրութեան պատճառաւ գիւղաքաղաքի շինութիւնները փոխադրած լինեն յետոյ վանքիս մօտիցն հանդիպակաց սարին հիւսիսահայեաց լանջի վերայ, որի մեծ աւերակն մնում է արդէն, և որի մասին գրած ենք։ Աղուանից Վաչական Գ. թէ ինչպէս եկաւ դտաւ Սուրբ Գրիգորիսի դերեզմանը, ով ցանկանում է թող կարդա Մով Կաղ. դատ. Ա. գլ. ԺԹ-ԻԴ.»։

---

[1]) Յառաջ քան զտեսչաւորելն տեառն Արտասա ի թշնամեաց հրդեհեցան ի Դեղափայտ լերին ի Կատարոյ վանս . . . . Սուրբն Մովսէս, սուրբն Դանիէլ, սուրբն Եղիա. սոքա որդիք գոլով Սանեսանայ արքային Մասքութաց, որ աշակերտեալ սրբոյն Գրիգորիսի և երեք հազար ութ հարիւր և եօթանասուն այր ընդ նոսա։ Ամենեքեան սոքա ի լեառնն Դեղափայտ . . արինարբուն Սանեսան խուր սուսերի արկ զնոսա (Մով. Կաղ. եր. 92)։

16) Քարայրներս նշանաւոր դեր կատարած են ժամանակին. մէն մի անառիկ բերդի չափ օգնած է Արցախի Հայոց։ Ցակաւին անհետացած չէ ժողովրդեան յիշողութիւնից և աւանդութիւնիցն քարայրներիս պատմութիւններն։ Հոնոտի քարայրում նախ երկար ժամանակ մնացած է Աւան-Իւզբաշին, որոյ անունը դովութեամբ է յիշում Աղուանից Եսայի կաթուղիկոսն (եր. 47)։ Ապա 1826 թուի ռուս պարսկական պատերազմի ժամանակ բնակում է քարայրումս Թարխանեան Սափարի իւզբաշին իւր քաջերով և շարունակ ալիւր հասցնելով Շուշին ազատում սովից (Գաղտ. եր. 362-366)։ Ահա այսպէս օգտակար եղած են քարայրներն. այսպէս և Աւանայ և Ամարաթներն այրերն։

17) Արդէն յայտնի է գրականութիւնից Աւետարանոցի և Շուշու բերդերի պատմութիւններն. բայց անհայտ են Բրդահոնջի բերդի անցեալն, միայն յայտնի է որ շինուած է Աղուանից իշխաններիցն։ Ղալի-Խութ բերդի մասին գրած է Մով. Կաղանկատուացու շարայարողն (եր. 264) «էանց Բաբան զգետովն Երասխ ի Պարսից և յԱմարաս գաւառ բնակեցաւ, բան խաղաղութեան սկսաւ խօսել, զի 'ի հնազանդութիւն նմա եկեսցեն (պաշարեալ հայք) . . . . . եւ տալ պատերազմ ընդ ամրացելոցն ի բերդին։ Ցայնժամ ապաւինեալ բերգեցեացն ի զօրութիւնն Քրիստոսի . . . ի հարուածս սաստիկս հարկանէին զպարսկական գունդն և զերծեալք յայնմանէ զՔրիստոս փառաւորէին»։ Անծանօթ է մեզ նաև Աղջկաբերդի անցեալն։

18) Վանքս շինուած է Հայոց ՉԺԲ. թուականին Աշոտ Թագաւորի որդի Շահանշահից, բայց նորոգուած է մերթ ընդ մերթ։ Ոմանք կարծում են թէ վանքս շինուած է ոմն Յովհաննէս անուն վարդապետից, որի գերեզմանն կայ հիւսիսային փոքր խորանի մէջ և որի անունն գրուած է նոյն խորանի առաստաղի ծեփի վերայ. և ոմանք կարծումեն թէ շինուած է Յովսէփ անուն վարդապետից։ Սակայն վարդապետներս նորոգած են միայն։ Բայց հազար ափսոս, որ քայքայուում է հետզհետէ, զի փոքր ինչ խախտուած է տանիքիցն։

19) Վանքս շինուած է Ջալալ-Դօլան իւր բարեպաշտ հօր Վախթանկ իշխանի կտակի համաձայն, իսկ հրաշազան գաւիթը շինուած են ինքն Ջալալ-Դօլան, իւր ամուսին Մամքան և իւր որդի Աթաբակն իբր Դամբարան իւրեանց ցեղի համար։ «Շինեաց (Ջալալ-Դօլայն) եկեղեցի մի գեղեցկազարդ յօրինուածով գմբէթայարդ երկնանման տաճար փառացն Աստուծոյ.... որ կոչի Գանձասար. հանդէպ Խոխանաբերդոյ 'ի տեղի շիրմի իւրեանց և յոլով ամս աշխատ եղեն ի նմա։ Եւ իբրև առ զաւարտումն, արար նաւակատիս մեծահանդէս առ 'ի յօրհնել զեկեղեցին, անդ էր և կաթուղիկոսն Աղուանից տէր Ներսէս բազում եպիսկոպոսօք, այլ և մեծ վարդապետն Վանական,

Digitized by Google

յոլով բաբունիք. անդ էին և սուրբ վարդապետքն Խաչենոյ Գրիգորիս և տէր Եղիա հարազատք միմեանց, զոր զարդարեալ էր Աստուած երկուց մարդով . . . և բազում քահանայիւք (700), և իբրև կնքեցաւ օծմամբ, ճաշ մեծ յօրինեալ ինքնին իսկ (Ջալ. Դօլ.) ձեռովք իւրովք պաշտէր զբազմեալսն . . . և եղև այս 'ի ՈՁԹ. Թուին Հայոց յաւուր մեծի տօնի, վարգաւառին» (Կիր. եր. 159)։ Ջալալ-Դօլաս Ղազանի-նում նահատակուում է Արղունին անօրէն հրամանաւն Հայոց ՉԺ. Թուին, որի մարմինը բերել տալով իւր որդի Աթաբակն ամփոփել է տալիս Գանձասարի գաւթում տաճարի դրան մօտ (Կիր. եր.234-236)։ Հարկ է յայտնել որ ականաւոր իշխանս Ջալալ-Դօլայ նահատակուած է ՉԺ. Թուին, իսկ սորա գերեզմանի շիրմաքարն կրում է Հայոց ՊԹ. Թիւը։ Յայտնի է թէ («Այս է հանգիստ մեծին Ջալալի. յաղաւթս յիշեցէք թվ. ՊՉ.») տապանաքարս կամ նահատակութիւնից 170 տարի յետոյ ձգուած է և կամ փոխուած է հին տապանաքարն և ձգուած նորս և կամ այլ է Ջալա-Դօլայի և այլ Ջալալի գերեզմաններն, բայց տապանաքարն միայն մի հատ է։

20) Մենաստանումս յիշատակ դրուած էր այն ձեռագիր աւետարանն, որ այժմ գտնուում է Շաքուայ Գեօզ-Բուլաղ գիւղում։ Բակ իշխանն (Եղիշ. Է. եղ. եր. 233) «եաւթն հարիւր արամբ գնաց փախստեայ . . . յամուրն Արցախայ և կեցեալ բարեպաշտութեամբ . . . . մինչև յայս բարեպաշտ իշխանս Ջաջուռ և 'ի ումին որդի Այեսալ քրիստոսասէր Վանինի, որ և ստացաւ զայս աստուածախաւս աւետարանս յիշատակ և փրկութիւն հոգւոյ հաւր իւրոյ բարեպաշտ իշխանին Ջաջռոյ և ետ 'ի սուրբ մենաստանն, որ կոչի Հաւապտուկ, որ է շինեալ յանուն սուրբ Աստուածածնին և է բնական տուն և շիրիմ Ջաջուռ իշխանին և նախնեաց իւրոց և է ի գաւառին Արցախայ, որկոչի Խոխանաբերդ» (Աղ. երկիր և Դրաց եր. 234-235)։

21) Բերդս շատ հին է և, ինչպէս կարծում ենք, շինուած է Հայոց թագաւորներից և յետոյ ենթարկուած Աղուանից իշխանութեան։ Որպէս ակներև է Քարագլխի Հին-Հանդստարանի արձանագրութիւնիցն՝ Հասան մեծն բերդս տուած էր Սմբատ անուն ումն իշխանազնի իբր հայրենիք և դերեզմանատուն։ Բերդիս մասին գրում է Աղուանից պատմիչն (Մով. Կաղ. եր. 263) «Էլին գաղտաբար 'ի Պարտաւայ արք ընտիրք 'ի Ցաճկաց և յաւարի առին զԱմարաս գաւառ՝ գերի առեալ իբրև ազխս հաղարս և 'ի Մեծիրանաց սահմանի ամրացեալք 'ի տեղւոջն, որ կոչի Շիկաքար։ Յայնժամ արի և չքեղատեսակն Սահղի Սմբատեան Եռանչահիկն տէր՝ քաջազօր եղբարք իւրովք և զօրօք 'ի լուսանալ առաւօտուն 'ի վերայ յարձակեալ առհասարակ դիաթաւալ գնոսա

*ցիր և ցան կացուցանէին և որպէս յառիծոյ ժանեաց զգերեալսն ի բաց կորզէին»։*

22) *Հին է Կաչաղակաբերդիս շինութիւնն, որ կոչւում է և Խաչենոյ բերդ։ (Մով. Կաղ. եր.* 272-273) *«առեալ զմնացեալ դուստրն Սպրամ . . . մտանէ 'ի բերդն Խաչենոյ և . . ամուսնացուցանէ զՍպրամ ընդ Ատրներսեհի Սահլի որդւոյ»։ Բայց յետոյ պատկանում էր Ջալալեաններին։*

23) *Ինչպէտ Ուլու-պապ, նոյնպէս և Խոխանաբերդն պատկանում է Ջալալեաններին։ Գրում է Կիրակոս (եր.* 185) *վերջին բերդիս մասին. Ջալալ-Դօլայ «իբրև ետես զյարձակումն անօրինաց (Թաթարաց) ամրացոյց զբնակիչս իւոյ աշխարհին ի բերդն, որ կոչի Խոխանաբերդ . . . Եւ իբրև եկին պաշարել զնա, տեսին զի ոչ էր հնար առնուլ զամուրսն, կոչեն զնա սիրով խաղաղութեան առ իւրեանս և նա իմաստնաբար հաճեաց զմիտս նոցա»։* 24 *և* 25 *Երկու բերդերս և Անանուն (Առաջաձորի մօտի) բերդն ևս պատկանում են Վախթանկեան-Ջալալեաններին. սակայն պատմութեանց մէջ չկայ ակնարկութիւն մէջ չկայ սոցա մասին։*

26) *Արդէն իմացանք որ Աղուանք էր կոչուում պատս։ Մովսէս (եր.* 65 *և* 66) *գրած է. «Ապա կամ եղև արքայի առնել ժողով յԱղուէն բազմամբոխ ատեան . . Ես Վաչական (Գ.) Աղուանից արքայ և Շուփհաղիշայ . . . . և ազատ մարդիկ և նահապետք Արցախայ . . . և այլք բազումք, որք միաբան առաջի իմ եկին 'ի հանդէս ի հովոցի տեղւոջս Աղուէննն»։ Արդ ժողովրդեան բերանում ցարդ մնացեալ Աղուանք և «ի հովացի տեղւոջս Աղուէնն» կարծել են տալիս մեզ հաւատալ թէ ժողովն եղած է պատիս մօտերքում, թէ պատս է Աղուէնն, և ոչ թէ Աղուէ գաւառն, քանզի եթէ Աղուէ գաւառում եղած լինէր, կյիշէր պատմաբանն Գաւառ բառը. մանաւանդ թէ Աղուէ Գաւառում չկայ Հովասուն տեղ։*

27) *ԺԲ. դարում նշանաւոր էր Հաթերքս, այստեղ էին նստում Վախթանկեան իշխաններն։ Բայց որովհետև այս Թագաւորական և իշխանազն ցեղի մէջ եղած են ժամանակից շատ Վախթանկներ և Հասաններ, վասն որոյ հարկ համարեցինք որոշել այստեղ, որպէս զի առիթ չտալ շփոթութեանց։*

*Ա. Վախթական Սմբատեան, որից ծնուած է Հասան, որի մասին գրած է Ս. Օրբել. (Բ. հատ. եր.* 79-81) *թէ սննեաց Գրիգոր Թագաւորն և՞իւր եղբայր Սմբատն անզաւակ էին. «բայց միայն մի դուստր ունէր Գրիգոր (Թագաւորն) Կատայ անուն . , . . բայց Գրիգոր որ իշխէր Բաղաց. ետ ածել ի Խաչենոյ իշխանացն մանուկ մի*

Digitized by Google

Հասան անուն 'ի Գեռաքարեցեացն և ետ զ դուստր իւր Կատայն նմա 'ի կնութեան և կացոյց ժառանգ թագաւորութեան իւրոյ, և ինքն և եղբայր իւր Սմբատ . . մեռանի 615 թուին (Հայոց)։ Մինչ զբերդն կամէին առնուլ (Տաճիկքն) Հասան կացոյց բերդապահս և ինքն առեալ զկին իւր և զընտանիս 'ի գիշերի ել 'ի բերդէն և անց գնաց 'ի գաւառ իւր 'ի տուն 'ի Խաչենն»։ Հասան թագաւորից ծնում է Ղարա-Գրիգորն, որի կինն լինում է Դօփ դուստր իշխանաց իշխանի Սարգսին, սոցանից ծնուում է Քաջն-Հասան, որի ամուսինն է Մամքան դուստր Քրդին, սոցանից ծնում է Գրիգորն, որի կինն է Մեծ-Սիւնեաց Տարսայիճ իշխանի դուստր Ասփան։ Գրիգորից ծնուած է Վ ա հ ր ա մ իշխանն։ Այս ցեղին է վերաբերում Վերին-Խաչէնն, Հանդաբերդն, Ծարն իւր վանքերով և Խաթրայ վանքն։

Բ. Հասան, որից ծնուում է Վախթանկ Սակառն [1]). Վախթանկ Սակառնի ամուսինն է Խորիշահ (քոյր է սա Սպասալար Զաքարէի և Իւանէի), որդի սոցա Ջալալ-Դօլայ-Հասան, որի ամուսինն էր Մամքան թոռն Բաղուց թագաւորին, սոցա որդին Աթաբակ էն։ Այս ցեղին է պատկանում Վաղահասի եպիսկոպոսանոցն, Գանձասարայ և Սուրբ Ցակոփրայ և Վաճառի վանքերն և հանգստարաններն և Ականայ Խոխանայ, Նատրայ, Կաչաղակայ և Անանուն բերդերն։

Գ, Վախթանկ Թագաւորազն, որի որդին է Հասան, որի կենակիցն էր Մամա դուստր Կիւրիկէ Թագաւորին (սոքա այր և կին կրօնաւոր եղան Դատի վանքում), սոցանից ծնուում է Վախթանկ, որի ամուսինն էր Արզուխաթունն-Քուրդ իշխանաց իշխանի դուստրն, և քոյրն Դաւիթ և Սադուն իշխանների (Կիր, եր, 125)։ Այս ցեղին է պատկանում Դատի կամ Խոթա վանքն, Հաթերք-դղեակն և աւանն. Հաւքախաղացն և Հակառակաբերդն։ Գերդաստանիս մասին գրում է Գոշ-Մխիթարն (եր. 68-73) «բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն (Դատաստանագիրք գրելն) եղև ի թուականութեանս Հայոց ՈԼԳ, . . յայսմ անիշխանութեան թագաւորութեան մերոյ ի վաղնջուց, ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց ի կողմանս Խաչենոյ, ընդ ժամանակս անուանելոյ Հասանայ կրօնաւորեցելոյ և որդւոյ նորա Վախտանգայ 'ի դղեկին, որ անուանի Հայթերք»։

28) Աստղաբլրի մատրանս մէջ ամփոփուած է թագուհի անուն նահատակուհու մարմինն, որ Աղուանից երկրի Ուտի գաւառի ընիկ Բագնաց գիւղիցն էր և իշխանական ցեղից։ Նահատակուած է Հոնաց կամ Ռսմոսոքեան զօրաց Ագիստրոսեան դնդի գնտապետ Թէոփիլոս իշխանի հրամանաւ (Մով. Կաղ, եր. 73-77) նաև (եր. 160-164)։

---

1) Կոչուում է և Տ ա ն կ ի կ (տես Կիր. եր. 158)։

29) Հաւքախաղաց բերդս շինած է Աղուանից Ատրներսեհ իշխանի որդի Գրիգոր իշխանն (Մով. Կաղ. եր. 273)։ Իսկ թէ ով շինած է Հաթերք-դղեակը և Հակառակաբերդը-անյայտ է մեզ։ Միայն յայտնի է որ Թագաւորներն չափազանց մարդ կոտորած են Հաւքախաղացը գրաւելու ժամանակ (Կիր. եր. 157-158)։

30) Կանխաւ միացած է եղել Խաչեն գաւառի հետ Ջրաբերդ գաւառիս այն մասն, որ ընկած է Թարթառ գետի, Խաչեն գետակի և դաշտաբերանի մէջ։ Բաժանումն տեղի ունեցած է մէլիքութեան ժամանակ։ Մայրաքաղաքի հանդստարանի մատրան արձանագրութիւնից երևում է, որ փրկչ. 1260 թուին իշխում էր Ջալալ-Դօլի թոռն Ուքան իշխանն. (Տես Առաջաձոր գիւղի Անապ. արձանագ. մէջ)։

31) Թէ որից և երբ շինուած է քաղաքս չունինք հաւաստի տեղեկութիւն։ Միայն գիտենք որ մի ժամանակ եպիսկոպոսանիստ աթոռ եղած է։

32) Խազիրներն պաշարում են Պարտաւը, ամեն ոք աճապարում է փախչել և պատսպարուիլ Արցախեան լեռներում։ Աղուանից Վիրոյ Կաթուղիկոսն ևս փախչելով ապաստանում է քարայրիս, որը գուցէ շինած լինին այն ժամանակ և որը Կողթ ագարակ է անուանում Մով. Կաղկանդուացին (եր. 104-129)։ Խեղճ կաթուղիկոսն այստեղ ևս նեղուելով խուզարկու թշնամիներից, աճապարանօք փախչում է Ջարաբերդ ամրոցն Թարթառի ձորով։

33) Եղիշ-առաքեալի գլուխը գողանալով բերած և թաղած էին այստեղ Վաչական Գ. թագաւորի ժամանակ, վասն որոյ կոչում էր Գլխոյ վանքն. «Ապա հրաման տայր յուղարկել զնա . . . ի վերնակողմ գաւառն Մեծ-Կուէնից 'ի բարձրավանդակ լեռան, 'ի տեղի մենաստանի նորա ի Գլխոյ վանս» Մով. Կաղ. եր. 169 տես և 186)։ Բայց թէ երբ Հիւրեկ կամ Հոռեկ փոխուած է վանքիս անունն-անյայտ է։

34) Այս գիւղն առանձնապէս սեպհական էր Աղուանից թագաւորներին իբրև ամարանոց։ Վաչական Գ. յատկապէս շինել տուած է այս փոքրիկ, բայց գեղեցիկ եկեղեցին յանուն Պանդալեոնի, որի մէջ պահուում էր և գտնուած մասունքներն (Մով. Կաղ. եր. 49 և 62)։

35) Վաչական Գ-ի թագուհու անունն Շուշանիկ էր (Մով. Կաղ. եր. 46), որդու անունն Պանդալիոն (եր. 47) և աղջկայ անունն Խնչիկ (եր. 62)։ «Եւ դուստր մի Խնչիկ անուն տղայ հասակաւ յոյժ սիրելի արքայի, (Վաչականայ), որոյ անուամբ շինեալ էր Դաստակերտ մի՝ տայ նմա մասն մի 'ի սուրբ նշխարացն, և 'ի նմին Դաստակերտի մեծապէս կատարի յիշատակ սրբոյն (Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի) պատուով» (Մով. Կաղ. եր. 62)։

Digitized by Google

36) Աւանդութեամբ ասում են որ վանքս հիմնարկուած է նոյն բարեպաշտ Վաչական Գ. Թագաւորից։ Մենաստանս, որ նախ կոչուած է Ներսմերհայ (տպ. ի Փարիզ Ներս-Միհրայ) ուխտ, յետոյ կոչուեցաւ Ջրվշտիկ։ Բայց առաքեալիս սուրբ մարմինը որ նախ ամփոփած էին Հիւբեկայ (Մով. Կաղ. եր. 9-10 Ուռեկան) վանքում, Վանքս շինուելուց յետոյ ապա փոխադրում են այստեղ, որ այժմ կոչւում է Եղիշառաքեալ։

37) Այս ամենաբարեպաշտ Թագաւորիս մասին գրուած է (Ս. Օրբել. Ա. հատ. եր. 128) «Ապա մեռան 'ի Բարկուշատ Թագաւորքն Վաչական և Աբլ-Աբաս (փեսայ Վաչական Թագաւորիս)»։ Երևի թէ մեռնելուց յետոյ բերած և այստեղ ամփոփած են նոյն Թագաւորի մարմինը։

38) Լճակս առաջ եղած չէ, այլ գոյացած է 1139-ին. «'ի ՇՁԸ. Թուականին եղև շարժ սաստիկ և կործանեցաւ քաղաքն Գանձակ . . . . փլաւ և լեռան Ալհարակ ի շարժմանէն և արգել զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա, և եղև ծովակ, որ է մինչև ցայսօր, լինեն 'ի նմա ձկունք ազնիւ» (Կեր· եր· 65)։

39) 5000 ոտքից պակաս չէ գրեթէ սարիս բարձրութիւնն որի գագաթին վերա եղած մատրան տեղում շինուած է եղել մեծ վանք։ Վանքումս դրած է Հայոց ՌՃԻ·- իր Գանձակի Համտինա գուղացի Ղազար քահանան այն աւետարանը, որ այժմ կայ Ճալէթի վանքում (տես Աղ, եր. և գրացիք եր. 251)։

40) Առաքել պատ. (եր. 9) Մեծ-Շահ-Աբասի օրով Աղուանից երկրից Ասպահան գաղթած ժողովրդոց շարքում դնելով գրած է «գնացին Սարուխան բէկն և իւր եղբայր Նազարն յՌսկանապատ գեղջէ»։

41) Արդէն իմացանք որ այստեղ կան պղնձահանք և երկաթահանք, որք պատկանում էին Գարդման գաւառիս իշխաններին։ Աւանդաբար ասում են թէ Սուրբ Մեսրոպ պղնձահանքի ձորումս պատահած է Գարդմանայ Խուրս իշխանին և ազանդաւորներին։ Աւանդութիւնս արդարացնում է Խորենացին (գիրք Գ· գլ· կ·) գրելով. «ինքն (Սուրբն Մեսրոպ) գառնայ զԳարդմանաց ձորովն, զի և ի նմա լուաւ լինել յընկերաց նոցին աղանդոյն։ Զորս գտեալ, ածէ և դնոսա 'ի գիտութիւն ճշմարտութեան հանդերձ վերատին ուղղութեամբ իշխանին Գարդմանայ, որում անուն էր Խուրս։

42) Ինչպէս երևում է Գօշ-Մխիթար իւր դատաստանագրքի նախադրութիւնը (եր. 69-74) սկսած է վանքումս և վերջացրած Սուրբ Հռիփսիմէի վանքում (վերջին վանուցս մասին տես Փառխոս գաւա-

Digitized by Google

ռի Բարսում գիւղի նկարագրութեանց մէջ)։ «Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն եղև 'ի Թուականութեանս Հայոց ՌՂԳ...... յայշխարհիս Ատանայ 'ի նահանգիս որ կոչի Մայրաքաղաքիս Գանձակ՝ յանապատս և յեղբայրանոցս անուանեալ Դասնոյ, սկզբնաւորեալ 'ի լեռնակողմն մենաստանի կոչեցելոյ Հոռոմաշէն ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսանացն յիշեցելոց»։

43) Աւանդութիւն. Հետաքրքրութեան և ուշադրութեան արժանի վիպասանութիւնն, որ կապուած է այս գուղանի հետ։ «Մի շատ հարուստ մարդ է լինում Գիչին Սավար գիւղիս իշխանը։ Եօթն գուղան է ունենում մեր Գիչին իւր տանից պտկուած (գոյացած). ամեն մի գուղան ունենում է մի գունով եզներ. առաջի գուղանի եզները բոլորն էլ սև են լինում. Բ. գուղանինն՝ բոլորն էլ սպիտակ. Գ-ինն՝ կարմիր, Դ-ինն՝ մոխրագոյն, Ե-ինն՝ մոգ կարմիր, ևն.։ Մեր Գիչին ունենում է անհեսապ ոչխար, տաւար, գոմէշ, այծ, եզնը, հերինջ, աչառ (արջառ)։ Իւր կալումն աջ ու ձախ չուռ է տուել 12 ջոխտ եզնը և կամնը։ Անհագին են Գիչու ցորենի և դարու հորերը։ Գիչու կալի մեծութեամբ կալ [1]) եղած չէ, տան մեծութեամբ՝ տուն ապրանքի մեծութեամբ՝ ապրանք, հարստութեան մեծութեամբ՝ հարստութիւն։ Էս սարիս երի (վերևի) կողմում եղած է ամառ ժամա. նակներում Գիչու ապրանքը. սարի գլխից մինչև Գիչու կաթնատունըն շարած է եղել Թինկ (խեցեղէն խողովակ). սարի գլխին կթել են կովերը, ոչխարները և էծերը և կաթները լցած Թինկերի մէջ և էսպէս հաւաքուած են բոլոր կաթները էս տեղ իւր կաթնատունն։ Գիչին ունեցած է 12 տղայ. սրանցից ամեն մէկը մին բանի պահապան է եղել. օրինակ մին ոչխարի հօտին վերայ, մին տաւարի նախրներին, մին՝ գոմէշների, մին՝ ձիերի, ևն.։ Հէնց համարի Թա Գիչու տարեկան ծախած ոչխարի, բրդի, գոմշի, եզան, մսացուքի, ձիու փողը կէս մլեօնի (միլեօնի) է հասէլ։ Գիչին մի անգամ գնում է Գեանջա՝ տան համար հագուստեղէն առնելու, խանութպաններն աղքատ համարելով ծաղրում են։ Գիչին բարկանալով առնում է (գնել) մի խանութում գտնուած ամբողջ ապրանքը և տալիս է փողերը և զարմացնում ամբողջ քաղաքը։ Շահ-Աբասը լսելով Գիչու անունը՝ ղոնաղ է գալիս, մի շաբաթ մնում Գիչու տանն, ամեն օր ուտում. խմում իւր զօրքերով միասին. օրական 100 ոչխար և 25 հերինջ են մորթում ամենը կերակրելու համար. դու տես Թէ հաց որչափ գնացած կըլինի։ Շահ-Աբաս այս սարերը շահական ֆերմանով պարգևումէ Գիչուն և շնորհակալութիւն յայտնելով հեռանում։

[1]) Արդարև չափազանց մեծ է Գիչու կալն և բակն.

44) Քարայրիս [1]) մասին գրած է Կերակօս (եր. 103 և 105) «Ընաջինջ եղաք ի թագաւորաց և յիշխանաց. կաթուղիկոսունքն Աղուանից այսր անդր յածելով, վասն ոչ ունելոյ հաստատուն տեղի աթոռոյ։ Դէպ եղև նոցա գալ ի ք ա ր ա յ ր մի 'ի սահմանս բերդին՝ որ կոչի Ջարեք և անդ դադարիլ և անդուստ հովուել զհօտ իւրեանց»։ «Եւ կալաւ զաթոռն Աղուանից տէր Յովհաննէս զամս բազումս։ Սա հաստատեաց զաթոռ իւր 'ի սահմանս Ջարեքին ի քարի անդ՝ զոր ասացաք վերագոյն»։

45) Ոչ մի գաւառ զարդարուած չէ այնքան քարեայ խաչարձաններով, որքան Գարդման գաւառս և նոյն իսկ Գարդման աւանս։ Գեղեցիկ խաչարձաններով զարդարուած են աւանիս գերեզմաններն. թող այն, որ բաւականին ևս կոտրտած և ջարդած են մահմետականք։

46) Սարիս անունը յիշում է Ուխտանէս եպիսկոպոսն (եր.96) «Բայց է բլուր մի յաշխարհին Ուտիացւոց՝ մերձ առ ստորոտով լեռինն, որ կոչի Արաթիւն, որ դեռ ևս կոչի բլուրն այն Բարսղաբլուր» (այժմ կոչուում է բլուրս Դ ղ ո ւ մ (Ղաբաղ-Թափէ)։

Երբ երաշտ են լինում տարիներն, բարձրանում են սարիս գագաթն սրբասէր քահանայք, վեր առնում լճացեալ (գերեզմանի մօտից) ջրից մի մի փոքր քար և բերում գիւղերն, անում պատարագ. թափորով մի մաքուր և ջրալի ամանի մէջ ձգում քարը և ապա գալիս է անձրև։

Ա ւ ա ն դ ո ւ թ ի ւ ն. «Սուրբ Ճհնաւոր եղած է Արութիւնս, որ ձմեռներն բնակած է բարձր սարիս գլխին, իսկ ամառներն իջած՝ Կուր գետի եզերքն. որպէս զի իւր տնձն ճնշէ ամրան տաքութեամբ, մոծակներով, ճանճերով և բոռով, իսկ ձմրան՝ սարիս գագաթի անտանելի սառնամանիքներով»։

47) Այս բերդն պատկանում էր Արցախի Գարդման գաւառի իշխաններին՝ սկսեալ Ա ռ ա ն շ ա հ ի կ կամ Ե ռ ա ն շ ա հ ի կ իշխանների օրից վեր։ Մեր կարծիքով այս իսկ է Գարդման բերդն. իսկ սորա մօտինն՝ Մլլնաբերդն, որի մէջ վաղուց եղած է վանք. իսկ այժմ Նոբաշէն և փոքր եկեղեցին, որի մասին գրած ենք արդէն։ Մեր համեստ կարծիքով. կրկնում ենք, այս է Գարդման բերդն, որի մասին գրած է Յովհան. կաթողիկոսն (եր. 162) (Գնայ Բուղա ի գաւառն Գարդմանայ և պատնէշ և պաշարումն շուրջ զԳարդման բերդիւ եդեալ ըմբռնէ անտի և զիշխանն Գարդմանայ զԿարիճն»։ Բերդիս խիստ մօտ է և Հ ա ր ց հ ա ն գ ի ս տ գիւղն, որի հարաւային մօտից բարձրացած սարի վերայ ամփոփուած են գաւառիս կռապաշտ իշխանաց մարմիններն, թերևս այս պատճառաւ կոչուած է Հարց-Հանգիստ-Հարցհան-

---

[1]) Քարահերձ է անուանում Կիրակ. (եր. 95)

*գիստ։ Վարդան պատմիչն էլ գրած է. «Եւ յետ երեց ամաց անցելոց (սկզ. 1117-ին) դարձեալ եկն Տաճարն և էառ զԳանձակ շահաստան.... զՍագամ (Զակամ) զՔարահերձ, զՏէրևին (Տէրունական և զմեծ դղեկն Թագաւորանիստ զԳարդման, զՆրգեւանք, զՄածնաբերդ ...(տպ. Երուս. 1870)։*

*Կիւրիկեան Թագաւորներն հետզհետէ կորցնում են Գարդման, Փառիսոս, Քաւս կամ Քուստի և Զաւէ գաւառները և տիրում սոցա բոլոր բերդերին, ինչպէս գրած ենք կանխաւ։ Որ այլ է Մածնաբերդն (այժմ Մլգնաբերդ) և այլ Գարդման բերդն, որ երկու ամրոցներս գտնւում էին, Գարդման գաւառում, որ Մածնաբերդին իշխում էր Աղսարթան և Գարդման բերդին Վահրամ իշխանն, որոշակի յայտնում է Կիրակոս (եր, 89—80) «Աղսարթան, որ եղև ժառանգակալ Մածնաբերդոյ..... Գարդմանայ և Նրգեվանից և Տէրունականին և Տաւուշոյ և այլ կողմանց իշխանութեան Վահրամայ իշխանի»։ Գաւառներս բերդերով միասին գրաւում են Վրացիք և Վրացիների ձեռքից՝ Պարսիկներն և սոցանից՝ Զաքարէ և Սարգիս իշխաններն. «Զաքարէ... և եղբայր իւր Սարգիս.... առին բազում գաւառս 'ի Պարսից և զբերդս ամուրս զԳարդման, զՔարահերձ (միևնոյն քարտյրն է, որի մէջ նստում էին կաթուղիկոսներն, որը այստեղ անուանում է Քարահերձ) և զՆրգեվանք, զՏաւուշ, զԿածարեթ և զՏէրունականն, ևն.։»—(Կիր. եր. 95)։ Այժմ պարզ է որ Մածնաբերդն մնացած է նոյն Աղսարթանի ձեռքում, իսկ Գարդմանս՝ Վահրամին։*

*Անծանօթ են գաւառիս Ա. Գ. Դ, բերդերի բուն անուններն և անցեալն։*

48) *Թէ ով շինած է քաղաքս և որ թուին—անյայտ է մեզ. միայն յայտնի է որ քաղաքումս նստում էին հայ իշխաններ։ Ժ. դարի վերջերում մտերմական բարեկամութիւն և սերտ սէր հաստատուած էր Աղուանից և մեծ—Սիւնեաց իշխանների և Թագաւորների մէջ։*

*Մեծ-Սիւնեաց Սմբատ Բ. Թագաւորի կինն Շահանդուխտ Աղուանից Սևադայ իշխանի դուստրն էր։ Սևադայ իշխանիս որդի Սենեքերիմն եղաւ Թագաւոր Մեծ-Սիւնեաց։ Այս պատճ. Մեծ-Սիւնեաց Սենեքերիմ Թագաւորն պայծառացնում է քաղաքս եկեղեց. և բերդով. և կոչւում Թագաւոր Փառիսոսի. նոյնպէս և իւր որդի Գրիգորն..քանզի նոյն իսկ ժամանակներում բուն Աղուանից յարութիւն տուած Թագաւորութիւնն հաստատուած էր Դարբանդում։ Սեմիքերիմ Թագաւորս նահատակւում է Բաղաբերդում։ Գրիգոր Թագաւորից յետոյ Փառիսոս քաղաքս մնում է Հայ իշխանոց ձեռքում, ինչպէս տեսանք Փառիսոսի խաչերի արձանագրութեանց մէջ։ «Ի՛ շհը. Թվին փոխի յոշխարհէս մեծ վարդապետն Սարգիս, որ է 'ի «Փառիսոյ»* (*Ս. Անեցի եր.* 128). *Քաղաքումս ծնուած էր նաև Յովհաննէս սարկաւագ վարդապետն։*

Digitized by Google

49) Կիրակոս Գանձակեցին (եր. 105—106) Փառիսոս և Քաւս կամ Քուստի գաւառներիս վերին մասերը միացնելով անուանում է Միափոր գաւառ (այս է լեռների մէջ ընկած և լայնադող ձև ստացած գաւառ). իսկ Ղարամուրատիս վանքը՝ Խամշի։ Քարահերձում բնակող Աղուանից Յովհաննէս կաթուղիկոսն՝ ներուելով այլազգիներից՝ դիմում է Զաքարէ և Իւանէ իշխաններին. «Եւ նոքա (նոյն իշխաններն). մեծաւ պատուով ընկալան, և բնակեցոյց զնա Իւանէ ի Գաւառն Միափոր ի վանքն, որ կոչի Խամշի։ Սա(Յովհանն. կաթուղ.) սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ և հրաշալի (որ է այժմեան վանքն) և մինչև աւարտեալ էր, խափանումն եղև. զի եկն Սուլթանն Խորասանայ՝ Ջալալադին կոչեցեալ և եհար զթագաւորութիւնն Վրաց» Այնուհետև վանքումս էին բնակում Աղուանից կաթուղիկոսներն. (Կիր. եր. 171) որք յետոյ լրացնում են վանքիս պակասորդը։

Երկու Ղարա-Մուրատ գիւղերիս հայ բնակիչներն տեղափոխուած են Ճուլաւերի կողմերն։

50) Աւերակ գիւղիցս էր Մելքիսեթ եպիսկոպոսն, որ գաղթող ժողովրդի հետ գնաց Ասպահան, որի մասին գրում է Առաք. պատ. եր. 9. «Մելքիսէթ եպիսկոպոսն ի Վերին—Ջակամայ ի Մելիքզատա դեղջէ»։ Ահա այսպէս միևնոյն Փառիսոս գաւառի վերնամասն յաճախակի փոփոխութեանց ենթարկուելով կոչւում է Միափոր, ապա Վերին—Ջակամ և ապա Շամշադնի գաւառ։

51) Վանքիս մասին գրում է Կիրակոս (եր. 142) որ աշակերտ եղած էր Վանական վարդապետին, թէ մի անգամ շինած էր Վանական վարդապետն մի վանք այժմեան վանքի տեղում, որ աւերուած էր Ջալալադին Սուլթանից։ Սպա գրում է 208—209 երեսում. «առ Տէր փոխեցաւ (Վանական)... 'ի Վանսն, զոր իւր շինեալ էր, որ կոչի Խորանաշատ վասն յոլով եկեղեցեացն՝ որ 'ի նմա՝ ընկալաւ զանունն, որ կայ հանդէպ Երգեվանից Բերդին և 'ի թիկանց Տաւրգմանայ. առնէր շինուածս երևելիս. զաւիթ շինելով 'ի կափածոյ վիմաց 'ի դուռն մեծ եկեղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր. և զբան վարդապետութեան ուսուցանէր այնոցիկ, որ ժողովէին առ նա յամենայն գաւառաց . . . . . և տարեալ թաղեցին զնա 'ի գլուխ վանիցն յարևելից կուսէ, մօտ 'ի փոքրագոյն եկեղեցին, ուր էին գերեզմանք ազգատոհմին, զի ինքն (Վանական) այսպէս հրամայեաց. . . . . Եւ այս եղև յչ. (1251) թուին»։

52) Գրաւոր ոչինչ տեղեկութիւն չկայ բերդիս շինողի մասին, բայց աւանդաբար ոմանք ասում են թէ Սենեքերիմ թագաւորն շինել տուած է բերդս. ոմանք՝ թէ միայն նորոգած է։

53) Անյայտ է և բերդիս շինել տուողի անունն և տարեթիւն։

Digitized by Google

*Չարեքայ* (¹) *բերդ է անուանում կիր. (եր. 103—105և 142) ամրոցս, որ կայ ուղիղ Քարահերձին հուսիսային կամ հիւսիս-արևմտեան հանդէպ, Ճամբոր գետակի ձախ ափում։ Ինչպէս Փառիսոս բերդն, նմանապէս և այս պատկանում էր գաւառիս հայ իշխաններին, բայց ազատ մնացած չէր Թաթարների ճանկից, ինչպէս Չարէք ամրոցս նոյնպէս և Գետաբակ աւանն, որը բերդ է անուանում Կիրակոս (եր.31)։*

*Հին—Գետաբակի արևելեան հանդէպ կայ սուրբ Սարգիս անուն մի մատուռ (տես նոյն աւանի նկարագրութեան շարքում), որի մէջ, ասում են, բնակած է Յովհան—Մայրագամեցի մականուանեալ վարդապետն։ Հաստատում է այս կիրակոս (եր. 31) գրելով. «նա (Եզր կաթ.) ոչ տարաւ ընդ իւր արս իմաստունս, մանաւանդ զՅոհան վարդապետ Մայրավանեցի, որ յոյժ տեղեակ էր աստուածային գրոց.... իսկ նա (Եզր) փոխանակ զղջալոյ՝ Հալածեաց զ սուրբն (Յոհան) անարգանօք Մայրագոմեցի կոչելով . . . . Եւ երթեալ Յոհաննու ընտրեաց իւր տեղի լռութեան 'ի կողմանս Գետաբակս Բերդոյ։»*

54) *Վահրամ իշխանիս մասին արդէն տեղեկութիւն տուած ենք 7-րդ ծանօթ. մէջ։*

55) *Անծանօթ է մեզ բերդիս անցեալն և անունն. կայ և մի խիստ հին և աւերակ բերդանման շինութիւն Պատի գեղի արևմտեան կողմում և եկեղեցաձորի արևելեան կողմում՝ Օհանի բերդ անուն (Ազան—ղալա), որի շրջապատն գիւղեր են Թրքաբնակ։ Վարդ. բարձրբերդցի (եր. 134—135) դրում է. «Ի սոյն աւուրս կին մի՝ Մամ անուն՝ գայ 'ի Պարսից երեք որդովք ի գաւառն Փառիսոսոյ առ Գրիգոր փառաւոր իշխանն։ Եւ տան որդիքն պատանդ զմայրն և առնուն զՇօթս զբերդն Ճտմիրամայ, և անտի ընտանեցեալ ընդ Ալազիզ ամիրայն Գանձակայ՝ սպանին զնա և առին զԳանձակ . . . և սիրոյ աղագաւ գնացեալ առ նա Փիլիպէ որդի Գրիգորոյ, ըմբռնէ զնա 'ի կապանս զկնի մահուան հօրն և առնու ի նմանէ զՇաչուաշ և զՇօթս»։ Փառիսոս Գաւառիս բերգերն են Փառիսոս, Գետաբակ, Ջարեք կամ Մամռուտ, Վահրամ իշխանի բերդ, Օհան-բերդ և Աղջկայ բերդն, ընդ ամենն վեց բերդ։ Գոնէ մենք կարծում ենք, որ Ղզղալա կոչուածն է Ճամիրամայ (²) բերդն, Օհանինն՝ Շօթն և Վահրամինն՝ (Ղալաբոյուն) Շաշուաշն։*

56) *Քարայրիս մասին գրում է Կիրակոս (եր· 142—148) «մեծ վարդապետն Վանական, իւրովք աշխատութեամբ փորեալ էր իւր*

---

¹) *Առաքել վարդապետ (եր. 193) գրում է «Դաւիթ եպիսկոպոսն, որ էր 'ի Տոմքոռ ձորէն և 'ի ցեղէ իշխողաց, զոր Ղարամանենց կոչեն.... 'ի ձոր Տամքոռ ... շինեաց անապատ, զոր կոչեն Զարեքի անապատ»:*

²) *Շմեղ է կոչում բերդս Վարդան պատմիչն (եր. 18):*

Digitized by Google

քարայրս 'ի կատարս բարձրագոյն քարի միոջ, որ կայ հանդէպ գեղջըն. որ կոչի Ոլորուան, 'ի հարաւոյ կողմանէ Տաւուշ բերդի. և շինեալ էր յայրի անդ եկեղեցի մի փոքրիկ և անդ գադարէր գաղթութեամբ»։ Ապա պատմում է Կիրակոս թէ քարայրից գերի բռնուեցաւ թաթարներից Վանական վարդապետն և ինքն, որ աշակերտ էր նոյն Վանականին. . . . . ։

57) Գիւղս նշանաւոր մարդիկներ տուած է թէ՛ հայ եկեղեցականութեան և թէ՛ գրականութեան։ Տաւուշեցի էր Յովհաննէս վարդապետն, որ եղած է վարժապետ Գօշ-Մխիթարի և քարոզիչ։ (Կիր. եր.121). Գիւղիցս էր և Վանական վարդապետն, որի իսկական անունն է Յովհաննէս (Յառաջ. Գօշ. դատ. եր. 85). գիւղիցս է և Մելքիսեդեկ եպիսկոպոս Մուրատեանցն, որ նշանաւոր է իւր գրականութեամբ։

58) Վանքիս մասին դրած է Կիրակոս (եր. 89—90) Վասակ իշխանն Բագրատունի, «որ շինեաց զեկեղեցին հրաշաղան 'ի վանքն' որ Անապատ կոչի՝ հուպ 'ի Նոր բերդն առաջնորդութեամբ և ձեռնտուութեամբ արքեպիսկոպոսին Յովհաննիսի Տաւեցոյ քաղաքին Շամքորոյ և Գարդմանայ և Երգեվանիցն և Տէրունականին և Տաւշոյ . . . Եւ աւարտումն եկեղեցւոյն, որ օծաւ և կնքեցաւ յանուն սուրբ Աստուածածնի՝ 'ի ռձԹ. թուականին Հայնոց»։ Երևի թէ Վարագ անունը ստացած է վանքս Կենաց փայտի այստեղ բերուելուց յետոյ։

59) Վանքիտ մասին գրում է Կիրակոս (եր. 122—126) թէ եղաւ սաստիկ շարժ, կործանեցաւ Հին—Գետիկ վանքն, որ կար Կայենի գաւառում Աղստև գետի աջ կողմի վերայ. Այնուհետև Գօշ—Մխիթարն սկսում է շինել Նոր—Գետիկ վանքը (որ է այժմեանն)։ Տանձուտի ձորում։ Ա. Վանքն օծուում է յանուն Ս. Լուսաւորչի. Բ. յանուն Ս. Կարապետի։ Ապա գրում է. «Յայսմ ամի (ռխէ.) եղև աւարտ հռչակաւոր և խնգրատես եկեղեցւոյն (Նոր) Գետկայ, զոր շինեաց վարդապետն Մխիթար իւր միաբանօք ձեռնտուութեամբ Վաղթանկայ խաչենեցւոյ տեառն Հաթերքոյ և եղբարց իւրոց Գրիգորոյ և Գրիգորիսի և Խոյդանայ և Վասակայ և այլոց իշխանաց բարեպաշտաց որդւոց Քրթին Դաւթի և Սադունին, նաև քոյր նոցա Արզու խաթուն ([1]) կին Վաղթանկա Հաթերքեցւոյ. սա բազում ինչ օժանդակ եղև, (Արզու խաթուն) արար և վարագոյր գեղեցիկ դստերօք իւրովք ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, ի մազոյ այծից կակղագունաց ներկեալ պէսպէս և զանազան, գործ քանդակակերպ ևներկեալ պատկերօք, ճշգրդագոյն հանուածովք տնօրինականօք Փրկչին

---

1) Միևնոյն օրհնեալ տիկինն է, դուստր Քրթին, քոյր Դաւիթ և Սադուն իշխաններին և շինող Դատի վանուց հրաշաղան Գաւթին։

